# ԱՐՄԷՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ
## ՅՕԴՈՒԱԾՆԵՐ
## ԵՐԳԱՑԱՆԿ

Պատրաստեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

---

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԺԸ.

ԳԱՀԻՐԷ
2018

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ
# ՅՕԴՈՒԱԾՆԵՐ
# ԵՐԳԱՑԱՆԿ

Պատրաստեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

*ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ*
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԺԸ.

ԳԱՀԻՐԷ
2018

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

*Տգեղ արտաքինով անտաշ տղամարդ մը, Արմենակ Շահ-Մուրատեան, կը կատարէր տեսակ մը հրաշագործութիւն: Շինականի իր ձեռքը երգին կու տար, իր ընդոծին բնականութեամբ, անզերազանցելի բուրմունք մը եւ գունազեղում: Ո՛րքա՜ն թէ երգը մասնաւորապէս յղացուած ըլլար այդ ձեռքին համար:*

«Ազատն Կոմիտաս»

ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

Հռչակաւոր թենոր Արմենակ Շահ-Մուրատեանի (1878, Մուշ – 1939, Փարիզ) մասին ժամանակակից մամուլը արձանագրած է բաւական հարուստ ու հետաքրքրական տեղեկութիւններ ու մեկնաբանութիւններ, որոնց համախմբումն ու դասակարգումը կրնան նոր ու տարբեր լոյս սփռել մեներգիչի կեանքին ու գործունէութեան վրայ:

Հիմնուելով այս նիւթերուն, ինչպէս նաեւ քանի մը համեմատաբար նոր հրատարակութիւններու եւ հրապարակումներու վրայ, կարելի եղաւ տարեգրութեան ձեւաչափով ուրուագծել Շահ-Մուրատեանի ստեղծագործական ու կենսագրական ուղին:

Այս առումով, սոյն ժամանակագրութիւնը ընդամէնը առաջին փորձ մըն է, հետեւաբար, հեռու է ամբողջական ըլլալէ:

Հ. Ա.

# *ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ*

**1878, ՄՈՒՇ**

Կը ծնի Շահ-Մուրատեան (յետայսու՝ Շ-Մ.), որդի դարբին Սարգիսի։

1911-ի «Ինքնակենսագրութեան» մէջ Շ-Մ. կը նշէ՝ որ «[ծ]ննդեանս ճիշդ օրը յայտնի չէ, բայց ծնողացս պատմածին նայելով՝ վերջին Ռուս եւ թուրք պատերազմին զաւակ։» Ուրեմն, պէտք է ըլլայ 1877-1878-ին։

Մահուան վկայականին մէջ նշուած է 61 տարեկան (մահացած է 1939-ին), ուրեմն, պէտք է ըլլայ 1878։

1904-ին կը հաստատուի Փարիզ, 1906-ին կ'ընդունուի Փարիզի Երաժշտանոցը։ Փարիզի համար անհրաժեշտ էր ճշգրիտ թուական մը։ Երբ 1908 Յուլիս 2-ին կը ներկայանայ Երաժշտանոցի աշակերտական առաջին մրցոյթին, իր տարիքը կը ներկայացուի՝ 26 տարեկան 9 ամսական (տե՛ս վարը)։ *Comœdia illustré* կը հրապարակէ ծննդեան պաշտօնականացուած թուականը՝ 22 Սեպտեմբեր 1881։

- 'Au Conservatoire: les concours: les classes de déclamation lyrique', *Comœdia illustré*, 1er juillet 1909, 1re année, no. 13, p. 367.

- *«Արմենակ Ս. Շահ-Մուրատեան. ինքնակենսագրութիւն», Թէոդիկ, Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի, էջ* 258։ *«Ինքնակենսագրութիւն»-ը ստորագրուած է՝ «Բարիզ*, 1 *Մայիս* 1911»։

- *«Ինքնակենսագրութիւն», Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 17։ *Այս «Ինքնակենսագրութիւն»-ը՝ որ առաջին անգամ կը հրատարակուի յիշեալ գիրքին մէջ, շատ աւելի ընդարձակ է քան Թէոդիկի* 1912-*ի տպագրածը։ Ան անթուակիր է եւ կը վերջանայ այսպէս. «Պատերազմի (պատճառաւ) սկզբնաւորութեանը մեկնած եմ Ամերիկա, ուր մնացած ամբողջ տեւողութեանը եւ քաղաքացի դարձած եմ։ Երեք տարիէ ի վեր Ֆրանսա կ'ապրիմ։»* (*Անդ, էջ* 42։) *Շ-Մ. Ֆրանսա վերադարձած է* 1921 *Օգոստոսին, կը նշանակէ՝ այս «Ինքնակենսագրութիւն»-ը գրած է* 1924-*ին*։

- *Մահուան վկայական, Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարան, Շահ-Մուրատեանի դիւան, չթուագրուած նիւթ*։

## AU CONSERVATOIRE

M. CHAH-MOURADIAN. – [...] Né à Mouche (Turquie d'Asie), le 22 septembre

1881, il obtint l'an dernier un 2e accessit d'opéra.
*Comœdia illustré*, 1er juillet 1909, 1re année, no. 13, p. 367

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Բնիկ Մշեցի եմ։ Շահ-Մուրատենց դարբին Սրգոյի որդին – ինչպէս կ'անուանեն զիս քաղաքացիներս։ Ծննդեանս ճիշդ օրը յայտնի չէ, բայց ծնողացս պատմածին նայելով՝ վերջին Ռուս եւ թուրք պատերազմին զաւակ։
Բարիզ, 1 Մայիս 1911
*Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 258

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

«Շահմուրատեան» անունին ծագման մասին որեւէ տեղեկութիւն չկայ։ Սակայն ստոյգ է, թէ հինէն ի վեր մեր ընտանիքը այդպէս կոչուած է ու եղած է մեծ եւ բազմամարդ։ Ամբողջ Հայաստանի մէջ միայն երկու ընտանիք այդ անունը կը կրեն. մէկը՝ Ղարաբաղ (Շուշի), իսկ միւսը՝ Մուշ (քաղաք)։
[Փարիզ, 1924]
*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 17

### ՄԻՆՉԵՒ 1885, ՄՈՒՇ

Նախնական կրթութիւնը կը ստանայ տեղւոյն (Մուշ) դպրոցը։ Վաղ տարիքին կը բացայայտուի իր երգեցողական կարողութիւնները եւ ութ տարեկանին կը դառնայ ճանչցուած երգիչ։ Ութ տարեկանին կը ստանձնէ Մշոյ Ս. Մարինէ եկեղեցւոյ երգեցողութեան մեներգները։

- «*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան. Ինքնակենսագրութիւն*», *Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 258։
- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*,

*խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 17-20։

- *Մեղու Շնորհալի*, «*Շահ Մուրատենց Սրգոյի Արմօն*», *Հայրենիք*, 24 *Փետրուար* 1924, 25-*րդ տարի*, *թիւ* 3593, *էջ* 1։

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Նախնական կրթութիւնս առած եմ՝ նախ թաղիս տարրական կրթարանը, յետոյ տեղւոյս Միացեալի բարձր. նախակրթարանը։ Բնութիւնը զիս օժտած լինելով գեղեցիկ ձայնով, տղայ հասակէս, բացառիկ հակամիտութիւն մը ցոյց տուի դէպ ի երգեցողութիւն։ 8 տարեկան հասակումն իսկ՝ ճանչցուած երգիչ մըն էի...
Բարիզ, 1 Մայիս 1911

*Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 258

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Հայրս՝ Սարգիս – զոր տեղացիք (հայ, թուրք, քիւրտ) Սրգօ կ'անուանեն, տաղանդաւոր, աչքառու, բարի, ամէնքէն յարգուած դէմք մըն էր։ Արհեստով դարբին, սերունդէ սերունդ հասած էր իրեն այդ արհեստը։ Երկու անգամ Պոլիս եղած ու աշխատած գործարանի մէջ իբրեւ շէֆ... Իր անունը, համբաւը ամբողջ Մշոյ աշխարհին բոլոր ազգաբնակչութեան ծանօթ էր։ Վանք մըն էր մեր տունը, սուֆրան բաց ամբողջ օրը, բոլորին առջեւ անպակաս, «միայն հաւու կաթ կը պակսէր»...

Իր մասնագիտութենէն դուրս, հայրս չափազանց սիրահար էր աշուղական երաժշտութեան։ Լաւագոյն աշուղի մը չափ գիտէր աշուղական գրականութիւն ու երաժշտութիւն, թէեւ լաւ ձայն չունէր, սակայն գիտէր երգել եւ առիթ չէր փախցներ՝ հրաւիրելու մեր տունը ուրիշ աչքի զարնող հայ աշուղները եւ նուագողները (զուռնա, դափ, տամպուրա)՝ առնուազն ամիս անգամ մը։ Մեր տունը կը նմանէր Րաֆֆիի *Խենթ*ի մէջ նկարագրուած Ռէս Խէչոյի տանը։ Դժբախտաբար հօրս վերջին քանի մը տարիները աղէկ չանցան մեծ եղբօրս պատճառաւ, շատ երես առած, ամբարտաւան, կերուխումի հետեւող, ծախսող, որեւէ

ուխտագնացութիւն ձեռքէ չէր փախցներ ու ամէն անգամ գրեթէ կռիւներու պատճառ կը դառնար, չափազանց ու աչքի զարնող ֆիզիքական ոյժի տէր լինելուն՝ ուրիշների գլուխը կամ թեւը, քիթն ու բերանը պատռելուն կը բանտարկուէր։ Խեղճ հայրս ալ ամէն անգամն ահագին կաշառք տալով՝ հազիւ կրնար ազատել զինքը։ Գրեթէ անոր պատճառած վշտի մէջ մեռաւ հայրս 1899 Մեծ Պահքին։ Հօրս վերջին տարիների միակ զուրգուրանքի առարկան ես էի։ Դեռ երեք-չորս տարեկան եղած ատենս, երբ թաղին վարժարանի ուսուցիչը մեզ կ՚այցելէր, ի միջի այլոց, քրոջս տղուն եւ երկրորդ եղբօրս (որուն ծնողքս կը պաշտէին, այնչափ որ համեստ, ամօթխած եւ միակ գեղեցիկ տղան էր մէջերնիս) երգել կուտար, ես ալ առանց հրամանի կը կանգնէի անոնց քով ու որչափ կարող էի՝ կը պոռայի... Հիւրերը խնդալէն չէին դադրեր, սակայն մայրս վրայ կը հասնէր ու աղէկ ծեծ մը տալով՝ դուրս կը հանէր զիս սենեակէն...

Հայրս խելացի եւ բարի մարդ էր, արդէն այդ հասակէն ի վեր նկատած էր, որ տարօրինակ ձգտում մ՚ունիմ երգելու։ Ինքը լաւ տաւիղ կը նուագէր, գեղեցիկ, սէդէֆով զարդարուած փոքրիկ պուլղատի մը ունէր։ Նշմարելով, որ ես միշտ պուլղատին կը փնտռեմ, ուր որ նուագարանի ձայն մը լսեմ, հոն կը վազեմ, մօրս կ՚ըսէր. «Կնի՛կ, այս մեր Արմոն չափազանց սիրահար է երգի ու նուագի, պուլղատին այնպէս տեղ մը պահէ, որ չգտնէ, շատ կը վախնամ, թէ ապագային չալղըճի մը ըլլայ...»։ Որովհետեւ Մուշ այդ տարիներ նուագող մը չալղըճի կը համարուէր։ Սակայն, երբ հինգ-վեց տարեկան էի արդէն, հայրս թաղին ուսուցչին խնդրեց, որ հօգ տանի ինձ եկեղեցական երգեցողութիւն սորվեցնելու։ Կը յիշեմ, շատ յստակօրէն, առաջին անգամ սոլօ երգած կտորը՝ *Ամէն, հայր սուրբ* 2-րդ ձայնեղանակով։ Ասկէ զատ, մեր տան դրացի մէկ տղայէն (որը լաւ ձայն ունէր, կ՚երգէր ու կը յաճախէր Միացեալ ընկերութեան դպրոց) խնդրեց, որ ինձ սորվեցնէ երգեր՝ ազգային, եկեղեցական։

[Փարիզ, 1924]

***Արմենակ Շահմուրատեան**, կազմող՝ **Խաչիկ Սաֆարեան**, խմբագիր՝ **Հենրիկ Բախչինեան**, **Երեւան**, **Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն***, 1998, *էջ* 17-18

## ՇԱՀ ՄՈՒՐԱՏԵՆՑ ՍՐԳՈՅԻ ԱՐՄՕՆ

(հատուած)

ՄԵՂՈՒ ՇՆՈՐՀԱԼԻ

Արմենակ կամ Արմէ՝ ծնած է Մուշ. իր հայրը դարբին Սարգիս կամ Սրգօ շատ վարպետ արհեստաւոր մը եղած է։ Իր արհեստէն դուրս, Սրգօ՝ գուսանի (Աշուղի) մը չափ լաւ երգող էր ու կը նուագէր *Դամպուրա*։ Սրգօն աշխարհիկ

երաժշտութիւնը սիրելով հանդերձ՝ արտառոց գաղափար ունէր անոր մասին, ինչպէս արեւելքի մէջ իր ժամանակի մարդերը առհասարակ ունէին եւ տարբերութիւն կը դնէին եկեղեցական երաժշտութեան ու *Չալղըճիութեան* միջեւ:

Արմենակի հայրը աշուղական երաժշտութեան տիրացող մըն էր, *Չալղըն* կը սիրէր զայն եւ օրինակ առնէր իրմէ. կը պահէր Պուլղարինը (նուագարան մը) եւ կը պատուիրէր իր կնոջը, Արմոյին մօրը.

- Պահէ՛ սա Պուլղարին Արմոյէն, չըլլայ որ ձեռքն անցնի: Կը վախնամ որ *Չալղըճի* դառնայ. դէպի երաժշտութիւն զօրեղ հակումներ կը տեսնեմ իր մէջ:

Բայց Արմօն իր հօրը հարազատ զաւակն էր եւ պիտի քալէր անոր ճամբով, ոչ թէ դարբին ըլլալու այլ ըլլալու երգի դարբին մը, որուն նմանը ցայսօր չէր ունեցած հայ երգը:

Ութը տարեկան էր Սրգոյի Արմօն երբ *սօլօ* կ'երգէր Մշոյ Սբ. Մարինէ Մայր եկեղեցւոյ մէջ, նաեւ Սբ. Կարապետի վանքը՝ ուխտագնացութեան օրերուն՝ ուր հազարաւոր Տարօնցիներ եւ հայաստանցիներ կուգային «Մշոյ Սուլթան Սբ. Կարապետ»-ին իրենց մեծարանքը մատուցանելու:

***Հայրենիք***, 24 ***փետրուար*** 1924, 25-***րդ տարի***, ***թիւ*** 3593, ***էջ*** 1

### ԱՊՐԻԼ-ՄԱՅԻՍ 1885, ՄՈՒՇ

1885-ին Բարձր Դուռը Խրիմեան Հայրիկին կը կանչէ Պոլիս: Ճանապարհին Խրիմեան կ'որոշէ անցնիլ Մուշէն եւ քանի մը օր կը մնայ ու կը քարոզէ այնտեղ: Խրիմեանի ներկայութեամբ եկեղեցական արարողութիւններուն մեներգները կը վստահին 8-9 տարեկան Շ-Մ.ին:

- «***Ինքնակենսագրութիւն***», ***Արմենակ Շահմուրատեան***, ***կազմող՝ Խաչիկ Սաֆարեան***, ***Երեւան***, ***Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն***, 1998, ***էջ*** 18-19:

- ***Սարգիս եւ Միսաք Բդէեան***, ***Հարազատ պատմութիւն Տարօնոյ***, ***Գահիրէ***, ***Հրատարակութիւն Հայ Ազգային Հիմնադրամի***, 1962, ***էջ*** 32:

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

(հատուած)

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Խրիմեան Հայրիկը Վանից աքսորուած ատեն, եթէ չեմ սխալիր՝ 1886-ին [պէտք է ըլլայ 1885-ին, Հ.Ա.], Մուշէ անցաւ: Քաղաքիս երեք եկեղեցիներ այցելեց ու քարոզեց: Գրեթէ ութ-ինը տարեկան էի (մօրս ըսելով՝ ռուս-թուրք պատերազմի ծնունդ եմ), այդ ատեն արդէն լաւագոյն ու աչքի զարնող ձայն ունեցող եւ

սոլօ երգողն էի։ Ուր որ Հայրիկը կը խօսէր, հոն զիս կը տանէին երգելու։ Մեր թաղի եկեղեցիին (սուրբ Մարինէ թաղ) մէջն էի, որ Հայրիկը քարոզին մէջ ըսաւ. «Այս բթովը պիտի օծեմ հայ թագաւորը», - ե՛ւ դառնալով Գարեգին եպիսկոպոս Սրվանձտեանին՝ ըսաւ. «Խա՜, խայոց Խայրիկին հակառակորդ, նախանձող եկեղեցականներ շատ կան, տեսէ՜ք, սիրելի ժողովուրդ, մեր Գարեգինն ալ կ՚ուզէ խայոց Խայրիկ ըլլալ...», - ժպտախառն հեգնանքով մը։
[Փարիզ, 1924]
*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 18-19

## ՀԱՐԱԶԱՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՐՕՆՈՅ

ՍԱՐԳԻՍ ԵՒ ՄԻՍԱՔ ԲԴԷԵԱՆ

1885-ին, Խրիմեան Հայրիկ Պոլիս կանչուած էր կառավարութեան կողմէ եւ ան ալ իր ճամբորդութեան ուղին այնպէս մը ընտրած էր որ Հայաստանի իր սիրած վայրերէն անցնէր։ Տարօնի մէջ ապրած էր՝ իբրեւ վանահայր Ս. Կարապետ վանքին եւ կը փափաքէր Մուշէն անցնիլ։ Լուր տրուեցաւ մեզի որ Հայրիկ Երկուշաբթի Մուշ պիտի ըլլայ։ Քաղաքէն պատգամաւորութիւն մը ընդառաջեց իրեն մինչեւ Ցրօնք գիւղը։ Այդ քսան հոգինոց պատգամաւորութեան մէջ ես ալ կայի. բայց Հայրիկը, ըստ իր սովորութեան, աւելի փափաքելով իր սիրելի հասարակ ժողովուրդին՝ գիւղացիութեան մէջ գտնուիլ, այդ օրը Պուլանըք մնացած էր։ Յաջորդ օրը եկաւ։ Իսկ ես՝ նոյն օրը վերադարձայ քաղաք՝ Պոլիս մեկնող կարաւանին միանալու համար։ Յաջորդ օրը մեր կարաւանը ճամբայ ելաւ եւ ես 1885 Ապրիլ 30-ին Պոլիս հասայ։
*Սարգիս եւ Միսաք Բդէեան*, *Հարազատ պատմութիւն Տարօնոյ*, *Գահիրէ*, *Հրատարակութիւն Հայ Ազգային Հիմնադրամի*, 1962, *էջ* 32

### 1885-1889, ՄՈՒՇ

1885-ին կ՚ընդունուի Մուշի Միացեալ Ընկերութեան դպրոցը։ Այդ ժամանակ իշխանութիւնները հեռացուցած էին վարժարանի տեսուչ Մկրտիչ Սարեանը՝ իբր խռովարար, որուն փոխարէն տեսչութեան պաշտօնը կը վարէր Յովհաննէս Պէրպէրեան։

Ինքնաշխատութեամբ կը սորվի նոթագրութիւն, այնքան որ 12 տարեկանին ընդունակ կ՚ըլլայ դիւրութեամբ ձայնագրել լսածը եւ երգել նոթագրուածը։

1889-ին կը մահանայ հայրը։ Եղբայրը՝ ըլլալով մսխող մը, պատճառ կ՚ըլլայ

հօրենական ժառանգութեան կորուստին։ Արմենակի, փոքր քրոջ եւ մօրը վիճակը կը վատթարանայ։ Օգնութեան ձեռք կը մեկնեն մեծ քոյրն ու իր ամուսինը։

- *Արմենակ Ս. Շահ-Մուրատեան*, «*Հայ երգիչն ի Բարիզ*» [*Նամակ Բիւզանդիոնին*], *Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1։

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 19-21։

- *Սարգիս եւ Միսաք Բդէեան*, *Հարազատ պատմութիւն Տարօնոյ*, *Գահիրէ*, *Հրատարակութիւն Հայ Ազգային Հիմնադրամի*, 1962, *էջ* 32։

## ՀԱՅ ԵՐԳԻՉՆ Ի ԲԱՐԻԶ
[ՆԱՄԱԿ *ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻՆ*]

ԱՐՄԵՆԱԿ Ս. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Սկզբնական կրթութիւնս առած եմ Թաղիս եւ յետոյ Միացեալ Ընկ. Բարձր. Նախակրթարանին մէջ։ Ի միջի այլոց հոն ուսած՝ Հայկ. Եկեղց. ձայնագրութիւնը։
*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան*, «*Հայ երգիչն ի Բարիզ*» [*Նամակ Բիւզանդիոնին*], *Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Մշոյ Միացեալ ընկերութեան դպրոց մտնելուս թուականը կը զուգադիպի Մկրտիչ Սարեանի (ընդհանուր տեսուչ) վերջնական մեկնումի հետ... Միացեալի մէջ անցուցած դպրոցական կեանքիս լաւագոյն րոպէները այդ շրջանին կը պատկանին ու կը սկսին։ Առաջին անգամ Տամատեանն եղաւ միակ անձը, որ մասնաւոր ուշադրութիւն դարձուց վրաս ու գուրգուրաց։ Նկատելով, որ զիս ամէնուրեք այդ պատանի (եթէ չըսեմ մանուկ) հասակիս մէջ կը տանին երգելու հարսանիքներու, եկեղեցիներու, մեռելաճաշի, խնճոյքներու, վանքերու, եկեղեցիի օծման եւ այլն, եւ այլն։ Օր մը թուրքերէնի ուսուցիչ՝ արզուհալճի Կարապետ էֆէնտիի տունը հրաւիրուած էին բոլոր ուսուցիչները, ինչպէս եւ Տամատեանը (զիս ալ կանչած էր, որ երգեմ)։ Բնաւ չեմ մոռնար, կամացուկ մը զիս կանչեց մեկուսի ու ըսաւ. «Արմենակ, կ'արգիլեմ քեզ այսուհետեւ երթալ հոս եւ հոն երգելու, մեղք է

ձայնդ, կրնայ պատահիլ, որ չար մարդու մէկը թունաւորէ ձայնդ...», - եւ ասոր նման կարգ մը խրատականներ: Տամատեանը գործնական կերպով գնահատեց ձայնս մասնաւորապէս ու դպրոցական աշխատութիւնս՝ Միացեալի Պոլսոյ Կ. վարչութենէն բերել տալով ոսկէ խաչ մը իր վկայականովը... Իր տեսչութեան օրովը, անգամ մը, սուլթանի տարեդարձի օրովը հրավառութիւն պիտի ըլլար վարժարանում, այդ առթիւ հրաւիրուած էին կառավարական բարձրաստիճան պաշտօնեաներ՝ դպրոցի ուսուցչութեան, աշակերտութեան հետ: Ես ալ, փոխանակ դպրոցը երթալու, մութ կոխած ատեն կը բարձրանամ գերեզմանատունը (որը լեռան լանջին վրայ գտնուելուն՝ կ'իշխէ քաղաքին) ու կը սկսիմ երգել ազգային յեղափոխական երգեր: Ի՞նչ զարմանալի զուգադիպութիւն մը. «Չար սուլթանի ոսկէ թախտը ջարդուեցաւ, վայր ինկաւ, թախտի տակից հազար ազգաց ազատութիւն ծագեցաւ...», - երգած պահուս, կառավարական պաշտօնեաները կանգ կ'առնեն փողոցին մէջ ու զիս կը լսեն աղէկ մը: Երբ ընդհանուր դատախազին կը թարգմանեն ըսածս, նախ կը հայհոյէ... ու յետոյ մինչեւ վերջը կը կենայ, զիս կը լսէ ու կ'ըսէ. «Ի՞նչ գեղեցիկ ձայն...», - դպրոցը հասնելուն պէս կը պատմէ Տամատեանին:

Միացեալի աշակերտութիւնս կը զուգադիպի ազգային վերածնութեան եւ մասնաւորապէս յեղափոխութեան սկզբնական շրջանին: Եթէ Գամառ-Քաթիպան եւ ուրիշ յեղափոխական, ազգային ոգով գրողները հայ կեանքը օժտեցին յեղափոխական իրենց երգերովը, սակայն տարածողները, իբրեւ արդի դարու աշուղներ (տրուպատուր), ես ու ինձիպէսներ եղան այդ կեանքին ծնունդը՝ անով սնած եւ մեծցած լինելով: Եկեղեցական երգերէն դուրս Մշոյ եւ շրջակայքին մէջ երգուած երգեր էին՝ *Ձայն տուր, ով ծովակ*, *Թէ հայրենեաց*, *Զարթի, որդեակ*, *Մեզի մոռցաւ*, *Աղօթարան բացուեցաւ*, *Ի՞նչ անենք, ամօթ այդպէս ասողին*, *Բամբ որոտան*, *Սիփանայ քաջեր*, *Ի զէն, հայեր*, *Զէյթունցիներ*, *Տալուորիկ*, *Մեր սիրուն վայելչական տեղեր*, *Հիմի՞ էլ լռենք*, *Ազատութեան այս վառ սէրը*, *Ազատն Աստուած*, *Ի բիւր ձայնից*, *Հայ ապրինք* եւ այլն, եւ այլն:

Իմ ձայնագրութեան ուսուցիչս եղած է մշեցի պրն. Կարապետ Մալխասեան, որը իր լաւ երաժշտական կրթութիւնը առած է Էջմիածին՝ Ժառանգաւորաց վարժարանին մէջ: Չափազանց նախանձոտ եւ չար մարդ մըն էր, իրապէս չէր ուզեր հիմնովին սորվեցնել, որպէսզի չըլլայ, թէ իր հացը ձեռքէն խլեն... Ինձմէ աւելի մ'ընդունակ (եթէ ըսեմ՝ արտազայ կարգի, համեստութեան դէմ գործած չեմ ըլլար) աշակերտ ունեցած չէր, հազիւ թէ տարրական գիտելիքները սորված իրմէն, ինքն իրենս, ինքնաշխատութեամբ այնչափ առաջ գնացի, որ իրմէ շատ աւելի ազատօրէն կը կարդայի նոթան եւ կ'երգէի ամէն ինչ ալ՝ եկեղեցական երգեր, մեղեդի, շարական, արտասանութիւն, առաւօտեան, երեկոյեան, զի թէ Բերդակի հայերու երգեր...

12 տարեկան հասակիս մէջ, ինչ որ երգուէր կամ նուագուէր, կարող էի

հեշտօրէն ձայնագրել։

Հօրս մահուանէ ետքը [1889-ին, Հ.Ա.] մեծ եղբայրս հօրս ունեցած առնելիք-ները գանձեց հետզհետէ ու կերաւ, զիս եւ փոքրիկ քոյրս մօրս հետ երեսի վրայ ձգած՝ առանձին ապրեցաւ։ Վիճակնիս լաւ չէր, ունեցած կալուածքները (երկու խաղողի այգիներ) մայրս չէր կարող մշակել տար։ Միացանք մեծ քրոջս ու իր ամուսնու հետ. պատուական մարդ, մեզ նայեց իր հարազատ զաւակներու պէս՝ բարեկեցիկ կեանք մը չունենալով հանդերձ։

[Փարիզ, 1924]

*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 17-21

## ՀԱՐԱԶԱՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՐՕՆՈՅ

ՍԱՐԳԻՍ ԵՒ ՄԻՍԱՔ ԲԴԷԵԱՆ

1884-ին Սարեան էֆ. ձերբակալուած էր իբրեւ խռովարար, երբ իր քննական պտոյտը կը կատարէր։ Անոր փոխարէն պր. Պէրպէրեանն էր որ 1885-ին շրջանը լրացուց։

*Սարգիս եւ Միսաք Բդէեան*, *Հարազատ պատմութիւն Տարօնոյ*, *Գահիրէ*, *Հրատարակութիւն Հայ Ազգային Հիմնադրամի*, 1962, *էջ* 32

**1889-1891, Ս. ԿԱՐԱՊԵՏ, ՄՈՒՇ**

Մուշի առաջնորդ Մկրտիչ Խարախանեանի աջակցութեամբ մէկ ու կէս տարի կ'ուսանի Սբ. Կարապետի Ժառանգաւորաց վարժարանը, ուր միաժամանակ երգեցողութիւն կը դասաւանդէ եւ կը մասնակցի եկեղեցական երգեցողութեան։

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 21։

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Խարախանեանի առաջնորդութիւնը կը զուգադիպի այդ թուին (1889-ին)։

Աբրահամ էֆ. Հախիկեան, հեռուէհեռու ազգական, քաղաքային ժողովոյ անդամ, Խարախանեանի ուշադրութիւնը կը հրաւիրէ վրաս ու կը խնդրէ հարկ եղած պաշտպանութիւնը։ Յաջորդ դպրոցական տարեշրջանին կը ղրկէ Մշոյ սբ. Կարապետի Ժառանգաւորաց վարժարան, ուր տարի ու կէս կը մնամ։ Հակառակ աշակերտ վիճակիս, տղայոց երգեցողութեան դաս կուտամ ու եկեղեցւոյ զարդը կը լինիմ։

[Փարիզ, 1924]

*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 21

**1891-1892, ՄՈՒՇ**

Չդիմանալով Սբ. Կարապետի եկեղեցական կեանքին, մէկ ու կէս տարի ետք կը վերադառնայ Մուշ քաղաքը, ու կրկին կը յաճախէ Միացեալ Ընկերութեան վարժարանը։ Միաժամանակ, կ'երգէ եկեղեցիին մէջ փոխան նիւթական վարձատրութեան։ Վարդավառի եւ Աստուածածնայ տաղաւարներուն Խարախանեանի հետ կը մեկնի Սբ. Կարապետ վանքը եւ կը մասնակցի մեներգեցողութեան։

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 21-22։

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Վանական կեանքը չափազանց կ'ազդէ վրաս, կը զզուիմ, երկրորդ տարեշրջանի կիսուն, հակառակ դպրոցի վարչութեան, վանքի փոխանորդի եւ Խարախանեանի կամքին, ձմեռ ատեն, քաղաքը (Մուշ) կը մեկնիմ ու անմիջապէս Միացեալի վարժարանը կը մտնեմ։

Խարախանեան իրեն յատուկ բարեացակամ բնաւորութեամբ կը ներէ ինձ։ Մէկ կողմէն՝ դպրոցը կը յաճախեմ, միւս կողմէն՝ եկեղեցին կ'երգեմ ու նիւթապէս կը վարձատրուիմ։ Ամէն Վարդավառի եւ Աստուածածնայ տաղաւարներուն Սուրբ Կարապետի վանք կուգային ուխտաւորներ՝ Տաճկաստանի, Ռուսաստանի ամէն կողմերէն, մինչեւ Խրիմէն, Հայ Նախիջեւանէն՝ մօտ 20-30,000 բազմութիւն։ Խարախանեան զիս հետը կը տանէր ընդհանրապէս գիշեր ատեն՝ կառավարական ոստիկաններ հետերնիս։ Երբ վանքի *Հաւատամք*ը կը հասնէ-

ինք, գրեթէ ժամ մը հեռաւորութեան վրայ, կ՚ըսէր, որ երգեմ։ Երգելէս վերջը կը շարունակէինք ճամբանիս լեռն ի վեր։ Վանքի դռան առջեւ հասած ատենին դուռները բաց էին արդէն ու վանական միաբանութիւնը, մարդիկ մեզ կը սպասէին։ Սրբազանը կը հարցնէր իրենց շատ անգամ. «Ինչպէ՞ս գիտցաք մեր գալը»: «Արմենակի ձայնէն հասկցանք գալերնիդ», - կ՚ըլլար պատասխանը։ Այդ տարիքիս մէջն իսկ, մօտաւորապէս 14 տարեկան, ճանչցուած երգիչ մ՚էի Մուշէն դուրսն իսկ՝ ուխտաւորներուն շնորհիւ։

Մուշը, փողոցներէն անցած ատենիս՝ մեծ, պզտիկ, կին, աղջիկ մատով կը ցուցանէին զիս՝ մէկզմէկու ըսելով. «Սրգոյի Արմոն»։ Միայն Խարախանեանը չէր, որ մասնաւոր ուշադրութիւն կ՚ընծայէր ինձ, այլ ամբողջ քաղաքի հայրենակիցներս, որովհետեւ դպրոցիս մէջ՝ կարող, աչքառու աշակերտներէն էի եւ հրապարակին վրայ, էն լաւագոյն եւ հազուագիւտ ձայնով ու երգելու կարողութեամբ օժտուած եւ տարօրինակ ընդունակութիւն ունէի ձայնական երաժշտութեան մէջ։ [Փարիզ, 1924]

*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 21-22

## 1892-1894, ԷՋՄԻԱԾԻՆ

Մուշի առաջնորդ Ներսէս Ծ. Վ. Խարախանեանի ջանքերով, Էրզրումի ճամբայով կը մեկնի Էջմիածին, ուր երկու ու կէս տարի կ՚ուսանի Գէորգեան Ճեմարանը։ 1892-1893 ուսումնաշրջանի երաժշտութեան ուսուցիչն էր Քրիստափոր Կարա-Մուրզա։ Վերջինս կազմած էր նաեւ քառաձայն երգչախումբ ու Էջմիածինի մայր տաճարին մէջ կը կատարէր իր մշակած Պատարագը, ուր կը մեներգէր Շ-Մ.։

1893-1894 ուսումնաշրջանին համար Խրիմեան Հայրիկ կը հեռացնէ Կարա-Մուրզան եւ փոխարէնը կը նշանակէ նորաւարտ Կոմիտաս վարդապետ։ Հոկտեմբեր 1893-էն սկսեալ շուրջ մէկ տարի Շ-Մ.ի հայկական ձայնագրութեան ուսուցիչը կ՚ըլլայ Կոմիտաս վարդապետ։

1894 Նոյեմբերին, Կարապետ Կոստանեանի վարչութեան ժամանակ տեղի կ՚ունենայ ճեմարանի աշակերտներուն յայտնի ըմբոստութիւնը, որուն կը մասնակցի Շ-Մ.։ Բոլորը կը ձերբակալուին եւ քանի մը օր կը բանտարկուին։ Խրիմեան Հայրիկի հրամանով ըմբոստացող տաճկահայ ուսանողները, որոնց մէջ կը գտնուէր Շ-Մ., կը փոխադրուին Թիֆլիս՝ իրենց ուսումը շարունակելու Ներսիսեան Վարժարանին մէջ։

- *Արմենակ Ս. Շահ-Մուրատեան*, «*Հայ երգիչն ի Բարիզ*» [*Նամակ Բիւզանդիոնին*], *Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1։

- «*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան. ինքնակենսագրութիւն*», *Թէոդիկ*, *Ամէնուն տարե-*

*ցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 258։

- *Ա. Շահ-Մուրատեան*, «*Կոմիտաս վարդապետ. իր կեանքն ու գործը*», *Կոչնակ*, 30 *Օգոստոս* 1919, *ԺԹ. տարի*, *Թիւ* 35, *էջ* 1116։

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 22-27։

## ՀԱՅ ԵՐԳԻՉՆ Ի ԲԱՐԻԶ
### [ՆԱՄԱԿ *ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻՆ*]
### (հատուած)

ԱՐՄԵՆԱԿ Ս. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Տղայ հասակիս մէջ հայրս կորսնցուցի, թշուառ վիճակի մը մատնուած՝ Տ. Ներսէս Ծ. Վարդ. Խարախանեանը – այժմ եպիսկ. – Մշոյ Առաջնորդը, որդեգրեց զիս ու իր սեփական ծախքովը ղրկեց Էջմիածնայ Գէորգեան Ճեմարանը։ Այս տեղի երկուքուկէս տարուայ աշակերտութեանս մէջ, միայն մէկ տարի ուսած եմ Հայր Կոմիտասին Հայկ. եկեղեց. ձայնագրութեան կանոնական մասը, ձայնագրելու վարժութիւնը (dictée musicale) եւ ո՛չ եւրոպական ձայնագրութիւնը։ Ճեմարանի խռովութեան պատճառաւ, Խրիմեան Հայրիկը, բոլոր Տաճկաստանցի աշակերտները ղրկեց Թիֆլիզ, Ներսէսեան վարժարանը։

*Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
### (հատուած)

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Տղայ էի երբ հայրս կորսնցուցի՝ թշուառ վիճակի մը մատնուած։ Ներսէս Ծ. Վ. Խարախանեան Մշոյ առաջնորդը որդեգրեց զիս ու իր սեպհական ծախքով ղրկեց Էջմիածնայ Գէորգեան Ճեմարանը։ Այստեղ ճիշդ 2 ½ տարի աշակերտութիւն ըրի։ Կ. Կոստանեանի տեսչութեանը օրով՝ խռովութիւն կը ծագի Ճեմարանում, եւ Խրիմեան Հայրիկ Տաճկաստանցի բոլոր աշակերտները ղրկեց Թիֆլիս՝ Ներսիսեան վարժարան։

Բարիզ, 1 Մայիս 1911

*Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 258

## ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ
## ԻՐ ԿԵԱՆՔՆ ՈՒ ԳՈՐԾԸ
**(հատուած)**

Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

1892-ի աշունին՝ հանգուցեալ Ներսէս եպիսկոպոս Խարախանեան, բարեբարս, զիս ղրկեց Ճեմարան ուսանելու. այդ թուականին՝ Կոմիտաս Վարդապետ Ճեմարանի լսարանական բաժնի վերջին դասընթացքին կը հետեւէր: Յաջորդ տարին՝ հոգելոյս «Հայրիկ»-ը իր աքսորավայրէն՝ Երուսաղէմէն Սուրբ Էջմիածին ժամանեց, իբր տարի մը առաջ ընտրուած կաթողիկոս: Անոր առաջին գործն եղաւ Աեղրակեան Սրբազանի՝ Ճեմարանի ազատամիտ եւ արդիւնաշատ վարչութեան տեղը կարգել Գասպարեան Եպիսկոպոսի – Կոստանեանի պահպանողական վարչութիւնը: Կոմիտաս Վարդապետ, այս շրջանին առաջին անգամ լինելով, երաժշտութեան (հայ ձայնագրութեան) ուսուցիչ կը լինի Ճեմարանին, որուն աշակերտելու բախտն կ'ունենամ՝ այժմ յայտնի երաժշտագէտ Գրիգոր Միրզայեանցի հետ: Դժբախտարար Ճեմարանի խռովութիւնները վրայ կը հասնին – իբր արդիւնք պահպանողական խստրմբեր վարչական րէժիմի, եւ մենք ուրիշ հարիւրի չափ խռովարարներու հետ կը հեռացուինք Ճեմարանէն, զինուորական հսկողութեան տակ: Մեզմէ շատերս ընդունուեցանք Թիֆլիսի Ներսէսեան Դպրոցը:
*Կոչնակ*, 30 *Օգոստոս* 1919, *ԺԹ. տարի*, *Թիւ* 35, *էջ* 1116

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Խարախանեանը նիւթական որեւէ զոհողութիւն մը ըրած չէ ինձ, հակառակ իմ ընտանեկան գրեթէ աղքատ վիճակիս, մինչդեռ ամէնուրեք, ուր որ պատարագ կ'ընէր, իր փառքին համար կ'երգէի, հետեւաբար դժուար չէր իմ այս արժանիքներովս գրաւել հայրենակիցներուս հետ նաեւ Խարախանեանի ուշադրութիւնը: 1892-ին, երբ Էջմիածնոյ Ճեմարանի վարչութիւնը Տաճկահայ առաջնորդութեանց կը դիմէր՝ որոշ թուով աշակերտներ ղրկել Գէորգեան Ճեմարանին համար, Խարախանեանի առաջին ընտրելին ես եղայ եւ Խնուսէն՝ Զաքարեան Հրաչեան՝ իմ սբ. Կարապետի Աստուածածնայ վարժարանի ընկերներէս... ուխտագնացութե-

նէն ետքը Էրզրումցի Չափեան եւ Սանթուրճեան ընտանիքներուն յանձնարարեց զիս, որ կարելին ընեն՝ ապահով միջոցով մը ճամբու դնել զիս Էրզրումէն մինչեւ Էջմիածին: Էրզրումի ուխտաւորներուն անծանօթ չէի, անոնք զիս լսած էին սբ. Կարապետի եկեղեցին, ամէնքն ալ մասնաւոր խնամք եւ գուրգուրանք կը տածէին վրաս: Նստած ձիս աղէկ չէր, կը կաղար, ամէն ատեն ետ կը մնայի ուխտաւորներէն, որպէսզի կարաւանէն ետ չմնամ, կը սկսէի երգել: Բոլոր ուխտաւորներ, հարիւրն աւելի, կը կենային, մինչեւ որ զիրենք անցնէի, եւ այս կատակերգութիւնը կը կրկնուէր յաճախ:

Էրզրումէն անկարելի եղաւ ինձ անմիջապէս մեկնիլ: Քոլերան սկսուած էր քաղաքին մէջ, քարանթինա կար, այնպէս որ ստիպուեցայ երկու ամիս մնալ:

Էրզրումի առաջնորդն էր, նոյն ատեն, Ղեւոնդ եպիսկոպոս Շիշմանեան՝ շատ յարգուած ու սիրուած... Ղեւոնդ եպիսկոպոս ուժեղ ձայնով եւ խօսելու ընդունակութեամբ օժտուած եկեղեցական մըն էր՝ վերյիշուած արժանիքներուց զատ: Ուխտաւորներէն հասկցած էր իմ մասին, ամէն շաբաթ երեկոյեան կամ կիրակի առաւօտեան կը ստիպէր զիս եկեղեցի երթալ: Աւելորդ է ըսել՝ կարճ ժամանակի մէջ, ամէնքէն ճանչցած, սիրուած եւ ժողովրդական դէմքը դարձած էի Էրզրումին մէջ, այնպէս որ եկեղեցւոյ թաղականութիւնը որոշեց զիս դնել եկեղեցւոյ իբր դպրապետ: Անշուշտ, կարելի բան չէր այդ: Երբ քարանթինան վերցուեցաւ, ռուսական չափառին ընկերակցութեամբ (սուրհանդակ, որ հայ մըն էր) մեկնեցայ Էջմիածին: Այսպէս Խարախանեանի այս վերջին geste կուգար զիս ազատելու Տաճկաստան կոչուած դժոխքէն, ուր պիտի մնայի գամուած, շատ-շատ իբր տիրացու... Եթէ որոշ դիրքի մը հասած եմ, շնորհիւ Խարախանեանին է, որուն կապուած եմ յաւիտենական երախտագիտական զգացումով մը: Համբոյր իր յիշատակին:

Սահակ եւ Մեսրովբ, ինչ որ ըրին, չը պիտի կրնային ընել, թերեւս, եթէ Վռամշապուհ թագաւորն չլինէր ու չտրամադրէր ամէն միջոց իրենց նպատակին հասնելու: Այդպէս ալ Տամատեան եւ Մուրադ այնքան չպիտի կրնային իրենց յեղափոխական գործունէութեան (Տարօնոյ աշխարհի) մէջ դիմանալ եւ յաջողիլ, եթէ Խարախանեանի պէս մաքուր հոգի մը՝ ազգասէր, անշահախնդիր, անձնուէր եկեղեցական, իրենց տրամադրութեան զօրավիգ չհանդիսանար նիւթապէս եւ բարոյապէս:

Ամբողջ Պիթլիսի նահանգը յեղաշրջողը այդ երեքը եղան իբր հնչակեաններ: Վերջիններուն քայքայումէն ետէն՝ միայն 1896-ին դաշնակցականները եկան, պատրաստի հող գտան ինչպէս Տարօնոյ, այնպէս էլ ամբողջ Տաճկահայաստանի մէջ, ամէնուրեք:

Ճեմարան ընդունուած ատենս, տեսուչը Արիստակէս եպիսկոպոս Սեդրակեանն էր՝ մշակական, հետեւաբար ազատամիտ, Ռուսահայաստանի ամէնէն աչքառու, լուրջ եւ պատկառելի եկեղեցականներէն մէկը: Ճիշտ է, որ կաթողիկո-

սական տեղակալը Երեմիա եպիսկոպոսն էր, սակայն իրականին մէջ Արիստա-կէսի ազդեցութեան տակ, անոր տուած հրահանգներու համաձայն կը կառա-վարէր վանքը:

Թէեւ ճեմարանի ուսուցչական կազմը կազմուած էր ամէն հոսանքի տարրերէ (մշակական, արձագանքական եւ նոր-դարական), իրականին մէջ մեծագոյն մասը մշակականներ էին:

Տարի մը անընդհատ ազատամիտ աշակերտութիւնը ապրեցաւ խաղաղ, մեղուաջան ու անխռով կեանքը՝ Սեդրակեանի ազատամիտ եւ գաղափարական վարչութեան տակ: Աշակերտութիւնը եւ ուսուցչութիւնը չափազանց սիրալիր ու մտերիմ միութիւն մը կը կազմէին իրար հետ: Երաժշտութեան ուսուցիչը Կարա-Մուրզան էր: Կեանքիս մէջ առաջին անգամ իր օրովը լսեցի քառաձայն երգեցո-ղութիւնը: Հայկական ո՛չ ձայնագրութենէ եւ ո՛չ ալ եկեղեցական երաժշտութենէ կը հասկնար, բացի պատարագէն, զոր քառաձայն սորվեցուց մեզ եւ կ՚երգէինք Մայր տաճարին մէջ՝ պատարագի ատեն: Չափազանց տարօրինակ թուեցաւ ինձ, կը կարծէի, թէ «էշեր են որ կը պոռան այլանդակ ու աններդաշնակ...»: Սոլիստներն էին Գրիգոր Միրզայեանը ու ես: Միրզայեանը ունէր շատ քաղցր, երազուն, քնքոյշ արեւելեան ձայն մը: Դժբախտաբար այդ երազուն ձայնը դատա-պարտուած էր ապագային կորսուելու, իր ըսածին նայելով՝ դիֆթերիտէ:

Հայկական ձայնագրութեան տեսակէտով ճեմարանը (Ռուսաստանին մէջ) զիս չէր գոհացներ, որովհետեւ ինքնակատարելագործումիս տիրացած էի անոր եւ արդէն դասապետ էի եկեղեցիին մէջ ու յետոյ ալ ընդհանուր դասապետ:

1893-ի աշնան էր, որ Հայրիկը – տարի մը առաջ ընտրուած կաթողիկոս – եկաւ խանդավառ ընդունելութեամբ մը: Օծումին բախտ ունեցայ լսելու հայ նշանաւոր թենոր Ն. Շահլումեանը՝ լաւագոյն դրամատիկ թենորներէն մէկը, զոր լսած եմ կեանքիս մէջ ամէնուրեք: Բարձր, ուժեղ, գեղեցիկ թեմպրով մը օժտուած, բայց ի՜նչ դժբախտութիւն, երբ Եւրոպայէն վերադարձին առաջին անգամ իր դէպիւն ըրաւ Պետրոկրատի Մարինսկի Արքայական թատրոնում, orchestre-ին հետ չկրցաւ ընթանալ, լսողութեան պատճառով, բնականաբար դուրս հանուե-ցաւ թատրոնէն: Յետոյ ստիպուեցաւ Պետրոկրատի հայ եկեղեցիին մէջ երգել...

Հայրիկը... օծումէն ետքը, երբ առաջին անգամ ճեմարանը այցելեց, բոլոր պաշտօնութիւնը, աշակերտութիւնը, ճեմարանի քառաձայն երգչախումբը՝ Կարա-Մուրզայի առաջնորդութեամբ պաշտօնական յուզիչ ընդունելութիւն մը տուաւ իր վեհափառին:

Իբրեւ մշեցի, Հայրիկի հոգիին խօսել տալու համար *Կռունկ* երգել տուին ինձ: Հայրիկը յուզուած ըսաւ. «Խա՛, ձագո՛ւկս, խաբրիկ Վանէն կ՚ուզես, Մուշէն կ՚ու-զես...» եւ այլն: Բոլոր իր հետ եղողները յուզեց: Յետոյ հարցուց ինձմէն որ տեղացի ըլլալս, մշեցի ըլլալս գիտնալուն պէս ըսաւ. «Ասա՛ տեսնեմ, մշեցի լա՛ճ, այստեղի խաղողն լաւ է, թէ՞ Մշոյ»: Պատասխանեցի իրեն, թէ Մշոյ լաւ է, որովհետեւ կաշին

շատ բարակ լինելու ու քաղցր, ուտելու համար մէկ հատիկ է: «Շատ աղէկ ըսիր, այստեղի խաղողի կաշիին պէս մարդոց ալ կաշին հաստ է...»:

Այսպէս, գրեթէ երկու վայրկենի մէջ թէ՛ այդչափ բազմութիւնը լացուց եւ թէ՛ խնդացուց: Յետոյ աւելցուց. «Աhաւասիկ Արիստակէս եպիսկոպոս Սեդրակեան ամպոտ, խտացած քողով ծածկուած դէմք մ'ունի, բնաւ անկարելի է կարդալ զինքը»: Այս հանդէսի հետեւեալ օրը իմացանք, որ մեր սիրելի տեսուչը՝ Սեդրակեան սրբազանը, իր՝ առանց պատճառաբանելու հրաժարականը տուած է:

Հայրիկը Կարապետ Կոստանեանն հրաւիրեց՝ պահպանողական քլիքի խորհրդովը, որ երկու անգամ պաշտօնավարած էր Ճեմարանում... Իրեն աչառու, խիստ (despotisme) régime-ի պատճառով երկու անգամ խայտառակութեամբ դուրս հանած են Ճեմարանից աշակերտութեան ըմբոստացումովը: Այս անգամ ալ Կոստանեանը նոյն régime-ին հետեւեցաւ: Նախ՝ որ դպրոցի ուսուցիչներ, վերակացուներ, գրեթէ սակաւ բացառութեամբ, կը կազմէին նոր-դարականներ, իրեն գաղափարակիցներ ու հլու հպատակներ: Աշակերտութեան հետ (մեծագոյն մասը՝ մշակական եւ նոյնիսկ յեղափոխական շարժումներով հետաքրքրուող ու հետեւող) սկսան խտրական ոգի գործածել, այնպէս որ մշակականները կ'անւանէին Այծեր, իսկ իրենց գաղափարակիցները (արձագանքականները, նոր-դարականները)՝ Ոչխարներ: Առաջիններու նամակները կը բացուէր, կարդալէ ետքը միայն տիրոջը կը յանձնուէր, իսկ Ոչխարներունը՝ ոչ: Եթէ մշտական աշակերտ մը բարեկամ մը տեսնելու համար կիրակի օրը հրաման ուզէր, կը մերժուէր, իսկ par hasard արտօնուէր, դպրոցի ծառաներէն մէկը կը հետեւէր իրեն լրտեսելու:

Այսպէս կարգ մը չտեսնուած ու չլսուած խստութիւններն ու աչառութիւնները կամաց-կամաց աշակերտներու գրգռութեան պատճառ դարձան ու կամաց-կամաց երթալով, ուռչելով՝ վերջապէս 1894-ի աշունին աննախընթաց պոռթկում մ'ունեցան:

150 աշակերտներէն 100-էն աւելին մշակական անուանուած Այծեր էին: Խօսք մէկ ըրած՝ դասադուլ ըրինք ու յարձակուեցանք, տեսուչէն սկսեալ, բոլոր պաշտօնեաներուն վրայ... Մեր խռովութիւնը արձագանքուել էր վանքն ու Վաղարշապատը: Յաջորդող կիրակին (որոշած էինք) եկեղեցիէն ետքը ուղղակի վեհարան երթալ ու Հայրիկին խնդրել, որ կոստանեանն ու իր վարչութիւնը փոխել՝ պատմելով իրեն անձամբ վերջիններուս մեր հանդէպ ունեցած հակամանկավարժական արարքներն ու խստութիւնները: Իրօք, եկեղեցիէն ետքը բոլոր խռովարարներս, 80-100 հոգի, դիմեցինք վեհարան: Նախապէս կռահած ըլլալուն մեր մտադրութիւնը՝ 40-ի չափ թֆենկճիները... վեհարանի դռան առջեւ մեր յառաջ կտրեցին ու չթողուցին ներս մտնել: Այդչափ բազմութեան մը կրնայի՞ն դիմադրել, անշուշտ՝ ո՛չ... Հետեւեալ առաւօտեան Ճեմարանը ոստիկան զինուորներով շրջապատուեցաւ, մեզ՝ բողոքող աշակերտներս շրջապատած դէպի բանտը առաջնորդեցին, ուր մնացինք քանի մը օր: Զինախառն անձրեւով ու կծու ցուրտ

օր մը, հսկողութեան տակ, ճանապարհ դրուեցանք մինչեւ Երեւան: Առաջնորդարանին յանձնուեցանք, ուրկէ պարտաւոր էինք ցրուել տեղերնիս: Հայրիկը տաճկահայ ուսանողներուս կարգադրութիւն ըրած էր ուղղակի Ներսիսեան թեմական վարժարանը մտնելու ու այդտեղի տաճկահայերը՝ ճեմարան:

Մեր մեկնումէն առաջ, Ներսիսեան հոգաբարձութիւնը որոշած էր եղել, որ ոչ մի տղայ ներս առնուլ... ըլլայ տաճկահայ կամ ռուսահայ, բայց որովհետեւ կաթողիկոսը հրամայած էր ու պնդած իր ըրած կարգադրութեան անպայման գործադրութիւնը, լինելով վերին տեսուչ թեմական բոլոր դպրոցներու, ստիպուած մեզ՝ տաճկահայերուս ներս առին, այդպիսով պատճառ դառնալով հոգաբարձութեան որոշումը փոխել տալ ու ռուսահայերու մուտքն ալ դիւրացնել:

[Փարիզ, 1924]

*Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, էջ 22-27

## ՆՈՅԵՄԲԵՐ ԿԱՄ ԴԵԿՏԵՄԲԵՐ 1894-1897-Ի ՎԵՐՋԵՐԸ, ԹԻՖԼԻՍ

Կ'աշակերտէ Թիֆլիսի Ներսիսեան Վարժարանը: Այնտեղ կը մասնակցի Եկմալեանի երգչախումբին, նախ իբրեւ մեներգիչ, ապա՝ խմբավար: 1897-ին կ'աւարտէ Վարժարանը եւ չորս ամիս կը գործէ իբրեւ Եկմալեանի օգնական ուսուցիչ:

Թիֆլիսի մէջ ծանօթութիւններ կը մշակէ բազմաթիւ երաժիշտներու հետ: Առաջին անգամ կ'առնչուի թատրոնի եւ երաժշտութեան հետ, որոնք ուժեղ սէր կը յառաջացնեն եւրոպական երաժշտութեան հանդէպ:

Թիֆլիս կը մնայ երեք տարի:

- *Արմենակ Ս. Շահ-Մուրատեան*, «*Հայ երգիչն ի Բարիզ*» [*Նամակ Բիւզանդիոնին*], *Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1:

- «*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան. Ինքնակենսագրութիւն*», *Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 258-259:

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 27-28:

## ՀԱՅ ԵՐԳԻՉՆ Ի ԲԱՐԻԶ
### [ՆԱՄԱԿ *ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻՆ*]
### (հատուած)

ԱՐՄԵՆԱԿ Ս. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Այստեղ մասնակցեցայ, հանգուցեալ Մ. Եկմալեանի համբաւաւոր խումբին,

իբր մեներգող (soliste) եւ քիչ ատենէն ետք՝ իբր խմբապետ (chef de chœur): Սոյն պաշտօնս շարունակեցի շրջանաւարտ ըլլալէս ետքն ալ մօտ չորս ամիս, դպրոցի հոգաբարձութեան յատուկ պաշտօնագրովը: Թիֆլիզ, թէեւ ապրեցայ ընդամէնն երեք տարի, բայց երաժշտական կրթութեան տեսակէտովը շատ օգտակար եղաւ ինձ համար: Զայնիս եւ Պ. Եկմալեանի շնորհիւ շատ մը երաժիշտ անձնաւորութիւններու հետ ծանօթացայ եւ միւս կողմէն թատրոնն ու Opéraն ինծի անուղղակի դպրոց մը եղան: Հոս է որ անհուն սէր մը կ'ծագի իմ մէջս դէպի եւրոպական երաժշտութիւնն եւ անդիմադրելի պահանջ մը զայն սովրելու. սակայն նոր դժբախտութիւն մը արգելք պիտի ըլլար ինձ, անմիջապէս այդ իրագործելու:
*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան*, «*Հայ երգիչն ի Բարիզ*» [*Նամակ Բիւզանդիոնին*], *Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Այլ եւս գիշերօթիկ [Ներսիսեան Վարժարանի] կեանքէ զզուած, յաջողեցայ հանգ. Խորէն Եպս. Ստեփանէի պաշտպանութիւնը վայելելով դպրոցէն դուրս ապրիլ: Մասնակցեցայ Մ. Եկմալեանի համբաւաւոր խումբին: Նախ իբր մեներգող, յետոյ իբր խմբապետ: Սոյն պաշտօնս շարունակեցի շրջանաւարտ ըլլալէս ետքն ալ, մօտ 4 ամիս: Թէեւ ընդ ամէնը 3 տարի Թիֆլիզ ապրեցայ, բայց երաժշտ. Կրթութեան տեսակէտով՝ շատ օգտակար եղաւ ինձ համար: Զայնիս եւ Եկմալեանի շնորհիւ շատ մը երաժիշտ անձնաւորութեանց հետ ծանօթացայ, միւս կողմէ՝ թատրոն ու օբէռա անուղղակի դպրոց մ'եղան ինձ: Այստեղ է որ անհուն սէր մը կը ծագի իմ մէջ՝ դէպ ի եւրպ. երաժշտութիւն:
Բարիզ, 1 Մայիս 1911
*Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 258-259

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Ներսիսեան վարժարան մտնելուս պէս պրն. Եկմալեան տղաներէն հարցրած էր իմ մասին: Հակառակ որ սկզբէն ուզեցի խոյս տալ, որովհետեւ վերջին

դէպքերը իմ վրաս ազդած էին բաւականին։ Ներսիսեան վարժարան ընդունող (ճեմարանէն եկած) տաճկահայերէն ոմանք նախընտրեցին գիշերօթիկ ըլլալ։ Ոմանք ալ՝ ցերեկօթիկ, ես վերջինը ընտրեցի։ Վարժարանի հոգաբարձութիւնը վերջիններուս որոշ գումար մը կը վճարէր ապրուստի համար։ Ես ալ վերջիններուս կարգին կը պատկանէի։ Խորէն եպիսկոպոս Ստեփանէն Աստրախան մեկնելէ առաջ, իբր առաջնորդ, հոգաբարձութեան հետ խօսած էր, որ ինքը կը ստանձնէ ինձ ապրուստի միջոց, ծախքերս հոգալ՝ ներկայացնելով իր գնդապետ եղբօրը, որ ամէն ամիս կանոնաւորապէս տայ նշանակուած գումարը։

Մինչեւ շրջանաւարտ ըլլալս, կանոնաւորապէս ստացայ պէտք եղած գումարը...

Իբրեւ աշակերտ՝ միշտ աչքի զարնող եղած եմ եւ իբր երգիչ՝ ամէնուն ծանօթ, ուր որ եղած եմ գտնուիլ։ Եկմալեանի խումբին մէջ լաւագոյն սոլիստներ (մեներգող) էինք Տիգրան Նալբանտեան ու ես։ Թէեւ Եկմալեանի խումբի ամէն մէկ աշակերտ այնչափ կիրթ ճաշակ ունէր, գեղեցիկ կամ միջին ձայնով գիտէր երգել։

Հայութիւնը իր բովանդակ կեանքին մէջ Եկմալեանի Ներսիսեան վարժարանի խումբի պէս նմանը ունեցած չէ։ Ռուս կրիթիկները գրած են, թէ «Եկմալեանի խումբը ամբողջ մայր կայսրութեան եկեղեցական խուբերէն է՛ն աղէկներէն է»։ Ամէն կիրակի Թիֆլիս վանքի եկեղեցին ու բակը խռնուած էր ամէն ազգի երկսեռ բազմութեամբ, իր՝ Եկմալեանի քառաձայն խումբը կ'երգէր. Հպարտ եմ ըսելու՝ վերջին տարին ու կէսը ես էի խումբին կառավարողը (dirigeur) եւ քանի քանի օտար ու հայ երաժիշտներ Եկմալեանի ընկերակցութեամբ եկած ու պատարագէ ետքը շնորհաւորած են զիս։

Երբ վարժարանը աւարտեցի, իմ տեղս յաջորդ տարուան շրջանի համար պաշտօնի կանչուած էր հոգաբարձութիւնը Խորէն Մուրադբէկեան... առաջնորդ Երեւանի, սակայն Եկմալեանը գոհ չըլլալով իրմէն, զիս հեռագրով կանչեց, համոզեց, որ ստանձնեմ օգնական ուսուցչի պաշտօնը։ Միջանկեալ ըսեմ, որ Եկմալեան չէր կառավարեր խումբը, թէեւ ինքն էր սորվեցնողը։ Խումբի քանակը բնաւ 50 հոգիէն անդին չէր անցներ։ Այսպէս օգնական ուսուցիչ եղայ Ներսիսեան վարժարանում։ Աշակերտ եղած ատեն իսկ Եկմալեանը շատ կը սիրէր զիս, յաճախ իր տունը կը տանէր զիս, ինքը միայնակ էր, կ'ուտէինք, կը խմէինք (թէյ, կոֆէ, ոչ թէ ոգելից ըմպելիքներ)։

Ինքը Ժառանգաւորաց վարժարանի (Էջմիածնի) աշակերտ եղած լինելուն, շատ համեստ դպրոցական կրթութիւն մ'ունէր, զարմանալի չէր, որ իր բոլոր պաշտօնական թղթակցութիւնները ես կը գրէի։ Սակայն 5-րդ դասարան եղած պարագային Պետրոկրատի եկեղեցական հոգաբարձութեան դիմումի վրայ երգչական խումբ մը կը պատրաստէր ու կը սորվեցնէր հայ եկեղեցիին համար ու ինձի առաջարկեց, որ ստանձնեմ խմբապետութեան պաշտօնը ու խումբին հետ մեկնիմ Պետրոկրատ։ Չընդունեցի (եթէ հիմիկուան խելքը ունենայի, պէտք

էր երթալ, բանտարկութենէն, աքսորէ կ'ազատէի, ու ապագաս ալ աւելի աղէկ պիտի ըլլար՝ իբր երգիչ կամ երաժիշտ), որովհետեւ կ'ուզէի վարժարանը աւարտելէ ետքը որեւէ կերպով Եւրոպա երթալ եւ դժուար ալ չէր բարերար գտնել։

Եկմալեանի եւ իր միջոցաւ լաւագոյն դաշնակահար Յովսէփ Տէր-Դաւթեանի ընտանեկան յարկին տակ այցելող հայ, ռուս Գեղարուեստագէտներու ծանօթութիւնը, քաջալերութիւնը վայելած եմ, յաճախ լսած զիրենք։ Թիֆլիսի Արքունական թատրոն (opéra-ն) սովորական տունս եղած է, ուր քաղցս ու ծարաւս անցուցած եմ, ուրիշ ի՞նչ բան զիս կարող էր աւելի հետաքրքրել ու գոհացում տալ ատկէ զատ։ Ֆրանսական, իտալական եւ ռուսական օպերաներ լսած եմ, ինչպէս *Ֆաուստ*, *Կարմէն*, *Ռոմէօ Ջուլիէթ*, *Աֆրիկէն*, *Օթելլօ*, *Տրաւիատա*, *Աիտա*, *Ժիզն զա ցարեա*, *Եւկենի Անեկին*, *Փրենս Իգոր*, *Դեմոն* եւ այլն, եւ այլն, որոնք այսօր իսկ ռեպերտուարը կը կազմեն աշխարհիս օփերաներուն։

Ամէնէն շատ երգի հետեւելու ու արտասահման մեկնելու այդ առթիւ խորհուրդ տուողն եղած է Եկմալեան եւ Կոմիտաս վարդապետ։ Առաջինը ձայնս մշակելու, իսկ երկրորդը՝ աւելի composition-ը, սակայն բախտը ինձ անմիջապէս ուրիշ բան վերապահած էր։ Ներսիսեանի 5-րդ դասարանին եղած պահուն (1895-ին), երբ ռուս կառավարութիւնը հնչակեան շէֆերը եւ ուրիշ աչքի զարնող հայ յեղափոխականներ բանտարկեց, ես ալ զոհ գնացի այդ շարժման՝ բոլորովին իզուր տեղ։ *Արձագանք*ի խմբագիրներէն մշեցի Եզնիկը ծանօթ էր կառավարութեան իր Տաճկահայաստանի կեանքէն, մասնաւորապէս Մշոյ կեանքէն գրած գրգռիչ թղթակցութիւններովը։ Կառավարութիւնը չկրնալով զինք ձեռք ձգել, իբր անոր մտերիմ հայրենակից ու միշտ իրար հետ սերտ յարաբերութեան մէջ ըլլալնուս պատճառաւ տունս խուզարկեց, կարգ մը յեղափոխական, սոցիալիստական բրոշիւրներու հետ Եզնիկի քանի մը նամակներն ալ ձեռք բերեց՝ գրուած ինծի, թաքցուածը տեղից, որը մականուանուած էր ի վերին Երուսաղէմ։ Զիս ուղղակի ժանդարմներով ծածկուած ֆայտոնով ուղղակի բանտ առաջնորդեցին, ու քանիցս անգամ, զանազան ժամանակներու մէջ զինուորական ատեանին առջեւ հարցաքննութեան ենթարկուեցայ ու հակառակ ամէն անգամ կրած ապտակներուս՝ բնաւ Եզնիկի ուրտեղ ըլլալը չըսի։

Ինձի հետ բանտակից էր Շիրվանզադէն, ախալքալաքցի Վարդանեան, Թիֆլիսի հանրածանօթ Սեւ Սանդրօն եւ ուրիշներ։ Երկու ամիս տեւեց բանտարկութիւնս, հսկողութեան տակ արձակեցին զիս բարեբախտաբար եւ այդպիսով կարողացայ վարժարանս աւարտել 1897-ին ու օգնական կարգուեցայ վարժարանում։

Ըլլայ Ճեմարանում, ըլլայ Ներսիսեան վարժարանում, մշակական աշակերտներէն շատերը կը հետեւէին յեղափոխական շարժումներուն... Թիֆլիսում մենք՝ տաճկահայ ներսիսեանականները, առանձին groupe մը կը կազմէինք, սակայն, բացի հրապարակային (ընդհանուր) ժողովներէն, actif կերպով չէինք մասնակցեր՝ աշակերտական վիճակին մէջ լինելու համար, արդէն կենտրոնական

մարմինը չէր ալ ուզեր։
[Փարիզ, 1924]
*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող*՝ *Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր*՝ *Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 27-28

## 1897-Ի ՎԵՐՋԵՐԸ-1898-Ի ԿԷՍԵՐԸ, ԹԻՖԼԻՍ-ԱԽՍՏԱՖԱ-ՔԱՐՎԱՆՍԱՐԱ-ՂԱՐԱՔԻԼԻՍԷ-ԱԼԵՔՍԱՆԴՐԱՊՈԼ-ԿԱՐՍ-ՀԱՍԱՆ ԳԱԼԷ-ԷՐԶՐՈՒՄ-ՄՈՒՇ

Կուսակցական-յեղափոխական տարիներն էին։ Շ-Մ. եւ տաճկահայ ներսիսեանականները առանձին խումբ մը կը կազմեն եւ կը մասնակցին հրապարակային ժողովներու, խուսաբելով սակայն մասնաւոր գործողութիւններէ։

Իբր յեղափոխական, 1897-ի ձմռան սկիզբը Թիֆլիսի մէջ երեք ամիս կը բանտարկուի ռուսական կառավարութեան կողմէ, որմէ ետք Ախստաֆա-Քարվանսարա-Ղարաքիլիսէ-Ալեքսանդրապոլի բանտերը ճաշակելէ ետք կ'աքսորուի Կարս, ուր բանտարկուած կը մնայ 6-8 ամիս։ Թուրք հիւպատոսի միջամտութեամբ ճամբայ կ'ելլէ դէպի ծննդավայրը՝ Մուշ։ Երեք ամսուայ տաժանակիր ճամբորդութենէ ետք՝ անցնելով Հասան Գալէի եւ Էրզրումի բանտերէն, վերջապէս կը հասնի Մուշի բանտը։ Քանի մը օր ետք երաշխաւորութեամբ ազատ կ'արձակուի։

- *Արմենակ Ս. Շահ-Մուրատեան*, «*Հայ երգիչն ի Բարիզ*» [*Նամակ Բիւզանդիոնին*], *Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1։
- «*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան. Ինքնակենսագրութիւն*», *Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 259։
- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող*՝ *Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր*՝ *Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 29-34։

## ՀԱՅ ԵՐԳԻՉՆ Ի ԲԱՐԻԶ
### [ՆԱՄԱԿ *ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻՆ*]
### (հատուած)

ԱՐՄԵՆԱԿ Ս. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Կ'բանտարկուիմ կառավարութենէն իբր յեղափոխական ու երեք ամիս ետք կ'աքսորուիմ դէպի Տաճկաստան։ Ձմեռուան բուքին ու ցուրտին՝ հետիոտն, բանտէ բանտ՝ Կարս կ'փոխադրուիմ, ուր կ'մնամ մօտ ութ ամիս, մինչեւ որ հարկ եղած պաշտօնական բանակցութիւնները կ'կատարուին եւ թուրք հիւպատոսը

(զարգացած, կրթեալ եւ ազատամիտ անձնաւորութիւն մը), պէտք եղած նպաստաւոր տեղեկութիւնները կ'ստանայ Մշոյ տեղական կառավարութենէն ու ճամբայ կ'հանէ զիս դէպի ծննդավայր։

Հոս, արդարութիւնը կ'պահանջէ որ խոստովանիմ թուրք հիւպատոսին անգնահատելի ծառայութիւններն որ ըրաւ ինձ, եւ որուն կ'պարտիմ ամբողջ կեանքս։ Զիս Մուշ ղրկեց բոլորովին նպաստաւոր պայմաններու տակ եւ նոյն իսկ պաշտօնական յանձնարարագրին մէջ ծածկած էր բանտարկութեանս իսկական պատճառներն եւ խստիւ պատուիրած էր որ զիս յանձնէն ծնողացս ողջ եւ անվնաս...։

Կարսէն Մուշ գնալս դարձեալ հետիոտն եւ բանտէ բանտ մօտ երեք ամիս տեւեց եւ երաշխաւորութեամբ ազատ արձակուեցայ։

*Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Սակայն նոր դժբախտութիւն մը արգելք պիտի ըլլար ինձ՝ տարիներու փայփայած երազս իրագործելու։ Կը բանտարկուիմ Ռուսական կառավարութենէն, իբր յեղափոխական 3 ամիս ետք կ'աքսորուիմ Տաճկաստան։ Ձմեռուան բուքին ու ցուրտին, հետիոտն, բանտէ բանտ Կարս կը փոխադրուիմ, ուր կը մնամ 8 ամիս, մինչեւ որ հարկ եղած պաշտօնական բանակցութիւնները կը կատարուին եւ Թուրք ընդհանուր հիւպատոս Ֆուատ պէյ (զարգացեալ ազատամիտ անձ մը որուն կեանքս կը պարտիմ) պէտք եղած նպաստաւոր տեղեկութիւնները կ'ստանայ Մշոյ տեղական կառավարութենէն ու ճամբայ կը հանէ զիս դէպ ի ծննդավայրս։ Կարսէն Մուշ փոխադրութիւնս եղաւ, դարձեալ հետիոտն բանտէ բանտ, 3 ամիս։ Մուշ հասնելէս մի քանի օր ետք, երաշխաւորութեամբ ազատ արձակուեցայ։

Բարիզ, 1 Մայիս 1911

*Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 258-259

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Օգնական ուսուցչական պաշտօնս հազիւ թէ մի քանի ամիս տեւեց, օրէն մէկը

ոստիկանական պաշտօնեայ մը վարժարանէն զիս առաջնորդեց ոստիկանատուն, իբր թէ ոստիկանապետը խնդրոյ մը առթիւ զիս տեսնել։ Մինչդեռ Ներքին գործերու նախարարութենէն իմ եւ ինձ հետ եղող բանտարկեալներու մասին հրաման եկած է, որ տաճկահայերը՝ Տաճկաստան եւ ռուսահայերը Ռուսաստանի զանազան քաղաքները աքսորել։ Ոստիկանապետը անմիջապէս եւ շրփշիտակ բանտ ղրկեց, ուր մնացի ամսուայ մը չափ, մինչեւ որ պատրաստութիւն տեսայ, խիստ ձմեռ ատեն ուրիշներու հետ էթապով ճամբայ ինկայ դէպի Ալեքսանդրապոլ, Կարս։

Չպիտի մոռնամ երբեք հետեւեալ յուզիչ դէպքը. առաւօտ կանուխ, երբ դէպի կայարանը (երկաթուղու) տարին մեզ, Եկմալեանը, ուրիշ քանի մը բարեկամ ընտանիքներ, ընկերներ, Խարախանեան, Միսաք եւ այլն, եկած էին վերջին անգամ զիս տեսնելու։

Եկմալեանը տղու մը պէս կուլար, իրականին մէջ զիս շատ կը սիրէր ու կը գնահատէր՝ լինելով իր աջ բազուկը դպրոցին եւ եկեղեցիին մէջ, քառաձայն խումբին առաջնորդելուս տեսակէտով, այլապէս, այսինքն ուղղակի Եկմալեանէն դաս առած չեմ, ո՛չ հայկական եւ ո՛չ ալ եւրոպական։

Եկմալեան իր երաժշտական կրթութիւնը առած էր Պետրոկրատի conservatoire-ին մէջ. գրեթէ տասս տարի հետեւած անոր ու փայլուն կերպով շրջանաւարտ եղած։ Իրեն ուսուցիչ եղած են Չայկովսկին եւ Ռուբենշտայն աշխարհահռչակ մեծութիւններ։

Կովկաս վերադարձին, տարի մը, Թիֆլիսի կայսերական conservatoire-ի directeur եղած է։ Conservatoire-ի բացման ատեն, երբ հարց եղած է directeur-ի մասին ի Պետրոկրատ, Չայկովսկին խորհուրդ տուած է եղեր Եկմալեան կանչել այդ պաշտօնին...

Դժբախտաբար, Եկմալեան ոչ մէկ լեզու գիտէր հիմնովին, այդպէս ալ ռուսերէն, հակառակ 10 տարի Պետրոկրատ ռուս շրջանակին մէջ մնալուն։ Իր ուսումնական կարողութիւնը բոլորովին հակապատկեր կը ներկայացնէր երաժշտականին։ Շատ նուրբ, զգայուն երաժիշտ էր՝ դասական իմաստով։ Կոմիտասէն ալ աւելի յառաջ ներդաշնակած է հայ ազգային, կրօնական եւ ժողովրդական երգեր, իսկ պատարագը արական եւ իգական խառն խումբերու համար իր գլուխգործոցն է։

Այսպէս, 1897-ի ձմռան սկիզբներուն էթապով աքսորուեցայ Թիֆլիսէն։ Ճանապարհի վրայ գտնուած բանտերը գիշերելով՝ այսպէս Ախստաֆա եղաւ առաջին բանտը (Թիֆլիսէն յետոյ), ուր անցուցի գիշերը ուրիշ բանտարկեալներու հետ, հող հանդիպեցայ խումբ մը Ալեքսանդրապոլի եւ Կարսի շրջաններէն շղթայակիր հայերու, ոմանք Սիպիրիա եւ ոմանք ալ Սախալին պիտի երթային։ Ասոնք, իրենց գործած ոճիրներու բերումով, դատապարտուած էին տաժանակիր աշխատանքներու։

Գիշեր ատեն սկսան խումար խաղալ խմորէ շինուած զառերով. զիս ալ

ստիպեցին իրենց ընկերանալ։ Շիտակ ըսելով՝ վախէս համակերպեցայ իրենց, առաջին անգամ ըլլալով՝ շահեցայ, սակայն խաղին վերջը տարածս իրենց վերադարձուցի նոյնութեամբ, նախ՝ որ յաւիտենական դատապարտուածներ էին ու խեղճ, երկրորդ՝ կը վախնայի քնած ատեն գողնային իրենց դրամին հետ քովս պահուած դրամներս ալ։

Հետեւեալ առաւօտ կանուխքին, ցուրտին ու ձիւնին շարունակեցինք մեր ճամբան, այսպէս հետզհետէ անցնելով գիշերներ Քարվանսարա, Խարաքիլիսէ եւ այլն, եկանք Ալեքսանդրապոլ, ուր մնացի երկու շաբաթ։ Այդ կարճ ժամանակին մէջ ալ ընտելացած էի... գրեթէ բանտի կեանքին։ Այստեղ կային, ի միջի այլոց, ուրիշ ալեքսանդրապոլցի քաղաքական (յեղափոխական) յանցաւորներ՝ երիտասարդ, խանդավառ հայեր, որոնք լաւագոյն վերաբերում մ'ունեցան հետս ու հիւրասիրեցին զիս մինչեւ մեկնիլս։

Ալեքսանդրապոլէն դէպի Կարս ճամբորդութիւնս շատ նեղեց մեզ՝ ցուրտի, բուքի, ճանապարհը ձիւնով ծածկուած ըլլալուն պատճառով։ Շատ անգամ ձիւնը պատռելով, ճամբայ բանալով՝ կ'առաջանայինք, այսպէս հասանք վերջապէս Կարս։ Առաջնորդուեցայ բանտ, ուր հանդիպեցայ վանեցի մի քանի հայրենակիցներու, Միքայէլ Նաթանեանին եւ իր ընկերներուն։

Տաճիկ կառավարութիւնը զիրենց ներս չընդունելու պատճառաւ, եթէ չեմ սխալիր, դրկեց Պարսկաստանի սահման ու ազատ թողուց, որ անցնեն Պարսկաստան։ Սակայն ես այդ բարեբախտութիւնը չունեցայ, որովհետեւ փոքրիկ ատենս Տաճկաստանէն կանոնաւորապէս անձնագրով եւ ուսանելու համար եկած էի Ռուսաստան, հետեւաբար որեւէ յանցանքի մէջ գտնուած չլինելուս համար առժամապէս վար դրաւ կառավարութիւնը՝ տաճիկ հիւպատոսի խնդրանոյ վրայ, մինչեւ Մշոյ կառավարութենէն որոշ հրահանգներ գային։ Ռուս կառավարութիւնը զիս փոխադրեց զինուորական բանտ, բերդին մէջ, ուր մնացի 6 ամիսէն աւելի։ Տաճկահայ քաղաքական (յեղափոխական) յանցաւորները մեծ թիւ մը կը կազմէին, գրեթէ բոլորն ալ գաւառացիներ էին։ Մշեցիներ եւ խնուսցիներ մեծ թիւը կը կազմէին հոս, ինքզինքս միայնակ չէի զգար։ Ձայնս միշտ մեծ դեր կատարած է ամէնուրեք, ուր որ եղած եմ։ Բանտի մէջ միակ մխիթարութիւնն էին հայրենակիցներս, որոնցմէ շատերը ընտանիքի, զաւակի տէր, ազգային սրբազան նպատակի մը համար, զրկուած իրենց սիրելիներէն։ Իմ յեղափոխական, ազգային երգերը զիրենք կը սրտապնդէր ու կը թեթեւացնէր իրենց վիշտն ու կեանքի միօրինակութիւնը... Զինուորական բանտ լինելուն, զինուոր պահակներով շրջապատուած էի։ Եկող զինուորներէն սկսեալ մինչեւ chef-ը կը ճանչնային զիս...

Երբ Կարսէն մեկնելուս հրամանագիրը եկաւ Մուշի տեղական կառավարութենէն, ռուսական կառավարութիւնը զիս յանձնեց հիւպատոսարանին. մեկնելու պատրաստութիւնը տեսնելու չափ մնացի հոն։ Հիւպատոսը՝ Ֆուատ պէյ, չափա-

զանց լուրջ, կրթուած, լայնամիտ jeune turc մըն էր, ինձի նոյնիսկ հայ ազգային երգեր երգել կուտար ամէն երեկոյեան: Իր շատ մը հայ, թուրք տեղացի բարեկամները ձայնս լսելուն պէս կուգային հիւպատոսարան:

Եթէ 95-96-ի դէպքերը պատահած չլինէին, այդպէս ալ հայ-թուրք յարաբերութիւններու խզումը, կ'ուզէր զիս ղրկել Պոլիս, որովհետեւ կ'ափսոսար, որ երիտասարդ, ապագայ խոստացող տաճկահայ մը կորստի մատնուէր գաւառի մէկ տզէտ անկիւնը... Դարձեալ իր շնորհիւն էր, որ ճանապարհին վտանգ մը չհասաւ ինձ: Իմ մասին գրած յանձնարարական եղաւ պատճառը, որ ինձ ուղեկցող ոստիկան (հեծեալ) զինուորը, որը կը փոխէին տեղէ տեղ, խիստ քաղաքավար ու լաւ կը վարուէին ինձ հետ ու երբեք չէին հսկեր զիս: Արդարութիւնը ըրած ըլլալու համար ըսեմ, որ երբ ռուսական սահմանապահ պաշտօնեան զիս յանձնեց տաճկականին, ուշ լինելուն զօրանոց զիս առաջնորդեցին, ուր անցուցի գիշերը: Զինուորները, որոնք փոքրասիացիներ էին, այնչափ քաղաքավարօրէն թէյ ու սուրճ հրամցնելով՝ վարուեցան հետս իբրեւ հայրենակցի:

Հետեւեալ առաւօտ ճամբայ ինկայ դէպի Հասան-կալէ, ուր մնացի շաբաթ մը, յետոյ Էրզրում – ճիշտ 17 օր մնացի: Ծանօթացայ բանտարկուած հայերէն, դաշնակցական՝ Նարիմանին, ձիթողցի (Էրզրումցի) հայերու, զէնքի, սպանութեան պատրուակով բանտարկուած, ինչպէս Արամ Արամեանին (դաշնակցական շրջանային գործիչ, chef-ը) եւ ուրիշներ: Միջանկեալ ըսեմ, որ հնչակեան կուսակցութեան 95-96-ի պառակտումներէն ետքը (վերակազմեալ հին հնչակեան) դաշնակցականները արդէն բռնել էին ամէնուրեք Տաճկահայաստանը:

Բանտի մէջ Արամ Արամեան շատ շուտ մտերմացաւ հետս ու ամէն նիւթի, անցուդարձի մասին (կը խօսէինք): Ի միջի այլոց, ըսաւ, թէ ինչպէս բանտէն շարունակ թղթակցութեան մէջ է դաշնակցական Կետրոնական Մարմնի՝ վարչութեան հետ (Ժնեւ) ընդհանուր ապստամբութեան վրայ ծրագիր մը պարզելով, այսինքն՝ զինեալ խումբեր մտցնել Տաճկահայաստան, արդէն ժողովուրդը պատրաստ է ապստամբութեան, զէնքը կը պակսի, խումբերը մտնելով սահմանէն, յետոյ բաժնեն ժողովրդին ու կռուի բռնուեն ամէնուրեք եւ այլն, եւ այլն... Իմ պատասխանը եղաւ իրեն, թէ Տաճկաստան այնչափ ինկած չէ, որ չկրնայ պաշտպանել ինքզինքը բուռ մը հայերու դէմ: Եկող խումբերը սահմանէն ներս, քայլ մը անգամ չպիտի յաջողին ընել, իզուր տեղ, իզուր տեղ նոր ջարդի մը պատճառ պիտի ըլլայ:

Մօտ ապագան, չորս տարի ետքը, 1902-ին էր, որ դաշնակցական զինեալ խումբերը ուզեցին արշաւել սահմանէն ներս: Առաջին խումբը միայն ձիաւոր Թումանի առաջնորդութեամբ կարողացաւ Սասուն հասնիլ, այն ալ, բարեբախտաբար, իրենց անցնելէն ետքը, անմիջապէս տեղացող ձիւնը ծածկած էր ձիերու ոտքերուն հետքը, իսկ միւսները բոլորն ալ սպանուեցան... Ապագային, երբ Արամեանի բանտի եւ կուսակցական ընկերներէն Փիլոսեանին հանդիպեցայ

Փարիզ, որը ներկայ եղած էր բանտում Արամ Արամեանի եւ իմ խօսակցութեանս, յիշեցնել տուի իրենց իմ վերեւ գրածներուս ճշմարտութիւնը։

Էրզրումէն ետքը դարձեալ ոստիկան զինուորի մը հսկողութեան տակ մեկնեցայ Մուշ։ Հասնելուս պէս՝ զափթիէներու օֆիսը իջեցուցին զիս. հարիւրապետը, իմ տանս դրացին, լաւ ընդունելութիւն մը ըրաւ ինձ, արդէն բոլորն ալ կը ճանչնային հայրս ու պարագաներս։ Առաջին կոմիսարն ալ եկաւ, քանի մը անտեղի խօսքեր ըսաւ. միշտ միեւնոյնը պատասխանեցի, թէ պաշտօնական յանձնարարագրիս մէջ հայրենիքս դրկելուն պատճառը գրուած է։ Քիչ ետքը մայրս եկաւ, աչքերէս անմիջապէս ճանչցաւ զիս (ինչպէս միշտ) ու տղամարդու մը յատուկ քաջութեամբ նետուեցաւ գիրկս...

Նոյն օրն իսկ բարեկամի մը երաշխաւորութեան եւ հսկողութեան տակ արձակեցին զիս, եւ ամէն շաբաթ պարտական էի ներկայանալ ոստիկանատուն։

[...]

Ռուսաստանէն Մուշ եկած պարագային, մայրս կ'ապրէր քրոջս քովը, փեսան հազիւ ապրուստ մը կը ճարէր, այն ալ շատ դժուարութեամբ։ Գալէս տարի մը ետքը մեռաւ փեսաս՝ թողնելով երեք աղջիկ զաւակներ՝ քրոջս հետ։ Իմ պարտականութիւնս էր գոնէ ժամանակաւորապէս ապահովելու իրենց ապրուստը, ժամանակ մը մնալ Տաճկաստան։

[Փարիզ, 1924]

*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 29-34, 36

**1898-1900, ՍԲ. ԿԱՐԱՊԵՏ, ՄՈՒՇ**

Երկու տարի երաժշտութիւն կը դասաւանդէ Սբ. Կարապետի Ժառանգաւորաց Վարժարանը։

- «*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան. ինքնակենսագրութիւն*», *Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 259։

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 34։

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Յառաջիկայ ուսումնական տարեշրջանին համար, Ս. Կարապետի ժառան-

գաւորաց վարժարանին մէջ դասախօսելու հրաւէր ստացայ, ուր 2 տարի կեցայ բարեբախտաբար...
Բարիզ, 1 Մայիս 1911
***Թէոդիկ***, ***Ամէնուն տարեցոյցը***, 1912, ***վեցերորդ տարի***, ***էջ*** 259

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

1898 թուականին հրաւիրուեցայ ուսուցչութեան Մշոյ սբ. Կարապետ, Վարդան վարդապետի տեղապահութեան օրով։ Մշոյ առաջնորդը միշտ մնաց Խարախանեան, հակառակ իր աքսորական կեանքին (Երուսաղէմ՝ Իզմիրլեանին հետ)...

Մասնաւորապէս հայ եկեղեցական ձայնագրութիւնն ու երաժշտութիւնը շատ ամուր հիմքերու վրայ դրի, ոչ միայն դպրոցի աշակերտներուն, այլեւ վանքի միաբաններէն եւ ուրիշ տեղերէ եկող քանի մը ուշիմ երիտասարդներու առանձին պարապեցայ։ Յաջողեցայ իրենց սորվեցնել հայ եկեղեցական ձայնագրութեան արուեստը եւ 1899-ի Բաբկէն սրբազանին ներկայութեան շատ յաջող քննութիւն անցուցին, սրբազանի եւ իմ ստորագրութեամբ վկայականներով պսակուեցան։

Մշոյ մէջ ապրիլ ինձ համար բանտարկութիւն մըն էր։

Յեղափոխութիւնը կեանքը անտանելի դարձուցած էր. մարդասպանութիւն, աւերում, թալան, հրդեհ, ասոնք բոլորն ալ սովորական բաներ էին։ Չկար գիւղ մը, որ յեղափոխական տղայք հիւրընկալելուն կամ գիւղի մէջ գտնուելուն, զօրքերու, քիւրտերու հետ կռուելէն ու գիւղէն հեռանալէն ետքը աւերումին չենթարկուէր...

Այդ թուականին էր, որ Սերովբ փաշան սպանուեցաւ, որուն գլուխը ցցի վրայ բարձրացրած քաղաքի միջէն կառավարութեանը տարին իբրեւ աւար՝ զօրքերով ու պատուոյ միւզիքով (orchestre)։
[Փարիզ, 1924]
***Արմենակ Շահմուրատեան***, ***կազմող՝ Խաչիկ Սաֆարեան***, ***խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան***, ***Երեւան***, ***Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն***, 1998, ***էջ*** 34

### ՀՈԿՏԵՄԲԵՐ 1900-1902, ԿԱՐԻՆ (ԷՐԶՐՈՒՄ)

Ուսուցչութեան համար կը մեկնի Կարին։ Արծնեաց (տղոց) եւ Հռիփսիմեան (աղջկանց) վարժարաններու բարձրագոյն դասարաններուն կը դասաւանդէ

աշխարհագրութիւն, պատմութիւն, եկեղեցական պատմութիւն, տիեզերագիտութիւն, հայերէն եւ հայկական ձայնագրութիւն:

Կը նշանակուի եկեղեցւոյ դպրապետ, ուր կը կազմէ եռաձայն երգչախումբ եւ կիրակիները կը կատարէ Եկմալեանի Պատարագը:

- «*Կ. Պոլսոյ Հայ Թերթերից*», *Նոր-Դար*, 25 *Հոկտեմբեր* 1900, *Թիւ* 192, *էջ* 3:

- «*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան. Ինքնակենսագրութիւն*», *Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 259:

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 34-36:

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

1900 թուականին Կարին կը հրաւիրուիմ՝ ազգ. երկսեռ բարձր. վարժարանաց մէջ դասախօսելու եւ եկեղեցւոյ դպրապետութիւնը ստանձնելու: Այնտեղ, 4 տարուայ բեղուն պաշտօնավարութիւն մ'ունեցայ, մասնաւորապէս վայելելով առաջնորդ Զաւէն Վրդ. Եղիաեանի հոգածութիւնները: Իմ օրովս, Ա. անգամ պարտաւորիչ կը դառնայ հայկ. եկեղ. ձայնութեան ուսուցումը, որով կը յաջողիմ հիմը դնել հետզհետէ խմբական (երկձայն-եռաձայն) երգեցողութեան, ինչպէս եւ Եկմալեանի եռաձայն պատարագի կանոնաւոր երգեցողութեան սկզբնաւորութիւնը եկեղեցւոյն մէջ:

Բարիզ, 1 Մայիս 1911

*Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 259

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Առաջիկայ saison-ի համար [1900] չորս տեղերէ ուսուցչութեան հրաւիրուեցայ՝ Վանէն, Տրապիզոնէն, Էրզրումէն եւ Բաբերդէն: Էրզրումը նախընտրեցի՝ ռուսական սահմանին մօտիկ լինելուն:

Հոկտեմբերի սկիզբներուն մեկնող կարաւանին հետ, անձայն-անձուն

Էրզրում եկայ, ուր չորս տարի մնացի, նոյն աշխատութիւն հոս եւս: Արծնեաց (տղոց) եւ Հռիփսիմեան (աղջկանց) վարժարաններու բարձրագոյն դասարաններու (մանաւանդ աղջկանց Դ-րդէն Է-րդ) աշխարհագրութիւն, պատմութիւն, եկեղեցական պատմութիւն, տիեզերագիտութիւն, մանչերուն՝ նաեւ հայերէն եւ հայկական ձայնագրութիւն (կ'ուսուցանէի): Վերջինիս մէջ այնչափ առաջ գնացին, որ կարող էին ամէն ինչ նոթայով երգել, ձայնագրել: Ունէի քառաձայն երգչախումբ մը, Պոլիսն անգամ (ինչպէս եւ Իզմիր) չունէր այդ ատեն: Էրզրումի եկեղեցին ամէն կիրակի կը խռնուէր, լուսաւորչականներէն զատ կաթողիկներ, բողոքականներ, յոյներ՝ լսելու Եկմալեանի քառաձայն պատարագը:

Առաջին անգամ լինելով՝ համերգ մը տուի, որուն մասնակցեցան Սանասարեան վարժարանի մի քանի աշակերտներ ջութակով եւ տեսուչ Ս. Սողիկեանը դաշնակի accompagnement-ով...

Չորս տարի մնացի Էրզրում: Ամէն տարի զիս Տրապիզոն կը հրաւիրէին պաշտօնի՝ վեց օսմանեան ոսկի ամսականով, կը մնայի Էրզրում՝ երեք օսմանեան ոսկիով: Որովհետեւ գործ մը սկսած էի, չվերջացած չէի ուզեր հեռանալ:

Վերջին տարին Փարիզ մեկնած ատենս, եկեղեցւոյ սնտուկը ինձ պարտ էր մէկ ամբողջ տարուայ ամսականներս: Չեմ կարծեր, որեւէ օտար քաղաքացի ուսուցիչ մը այնչափ սիրուած ըլլայ էրզրումցիներէն ինձի չափ: Դեռ այսօր իսկ, երբ էրզրումցի մը, ըլլայ ընտանիք կամ անհատ, խանդավառ ընդունելութիւն կուտան ինձ, իրենց հանդիպած ատենս:

Էրզրում միշտ դաշնակցական կալուած մը եղած է, նոյնիսկ հնչակեանութեան ատեն, այնպէս որ, երբ 1902-ի զինեալ խումբերը կը պատրաստուէին գալ մէկ միւսի ետեւէն, դաշնակցական շրջանային գործիչ խարատախցի Գէորգ անունով երիտասարդ մը, օրէն մէկը ինձի կը ներկայանայ ծպտեալ ու կը խնդրէ պահուելու տեղ մը քաղաքին մէջ: Երբ իրեն կը հարցնեմ, թէ ո՞րու կողմէն կուգայ, կը պատասխանէ, թէ Կարսայ դաշնակցական Կետրոնական Կոմիտէի անդամներէն Երուանդ Համամճեանը (իմ ճեմարանի ընկերներէս) զիս Ձեզ յանձնարարեց: Անմիջապէս կ'առաջնորդեմ զինք դաշնակցական բարեկամիս՝ Միհրան Սապոնճեանին, որը իր տունը կը պահէ...

Օրէն մէկը Զատիկական տօնի ատեն Զաւէն առաջնորդ զիս կը կանչէ այն ատեն, որ երգչախումբս պատրաստ եկեղեցի պիտի երթան Զատկի ճրագալոյցին երգելու ու կը խնդրէ, թէ անմիջապէս քանի մը խանութներ այցելել, ինձի ծանօթ հայրենակիցներէ քանի մը դրուշ հաւաքել ու յանձնել այսինչ քահանային, որ բանտ պիտի երթայ, հայ բանտարկեալներուն հաղորդութիւն տալու պատրուակին տակ անոնց տայ:

Որպէսզի չմերժուիմ, ցուցակ մը կը կազմեմ, նախ իմ անունս կը գրեմ մէկ մէճիտ, որպէսզի հարուստ հայրենակիցներս տեսնեն ու ամօթէն աւելին գրուին: Կէս ժամ չանցած արդէն յաջողած էի 300 դրուշի գումար մը հաւաքել: Կարնոյ

մէջ, մանաւանդ վտանգաւոր ժամանակ, կէս ժամուայ մէջ այդչափ գումար մը հաւաքել մեծ բան է... այսպէս 6 տարիներ անցուցի հայ կրթական հարկերուն տակը, իմ համեստ աշխատութիւններս ընծայելու կրթական գործին։ Ամէն անգամ, երբ իմ բարեկամ պրն. Ապուլեանին (Սանասարեանի տեսուչ) կը հանդիպէի իրենց տանը կամ այլուր, միշտ կը յանդիմանէր զիս՝ ժամանակը պարապ անցնելու Տաճկաստան կոչուած դժոխք երկրում։
[Փարիզ, 1924]
***Արմենակ Շահմուրատեան***, *կազմող՝ **Խաչիկ Սաֆարեան**, խմբագիր՝ **Հենրիկ Բախչինեան**, **Երեւան**, **Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն***, 1998, *էջ* 34-36

**1903**

Կը գրէ ու կը հրատարակէ գիրք մը՝ *Ի՞նչ է կանանց նպատակը*։

- ***Հ. Ն. Տիրացուեան***, «***Հրատարակչական նորութիւններ***», ***Բազմավէպ***, ***Մայիս-Յունիս*** 1903, *թիւ* 5-6, *էջ* 208։

## ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ՆՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Հ. Ն. ՏԻՐԱՑՈՒԵԱՆ

Պ. Ա. Շահ-Մուրատեանը հրատարակած է *Ի՞նչ է կանանց նպատակը* անուամբ գիրք մը եւ մենք ալ հեղինակին կը հարցնենք. ի՞նչ է Ձեր նպատակը որ յոռետեսի ոգւով՝ փոքրիկ կոկիկ գրքի մէջ կնոջ վատ մասերը նկատողութեան կ'առնէք։ Գիտէ ամէն մարդ, ինչպէս կը գրէք, որ Եւան առաջին խաբուողը եղաւ. Սամսոն, Սողոմոն՝ հզօրագոյնը, իմաստնագոյնը՝ տկարներէ, կարճամիտներէ յաղթուողներ, խաբուողներ եղած են։ - Բայց զայս ալ պէտք է գիտնալ թէ մարդուս լեզուին եւ մանաւանդ գրչին տակ ճշմարիտը, գեղեցիկը՝ սուտի, տգեղի գունով, եւ սուտը կամ տգեղը գեղեցիկի, ճշմարտի երանգով կարող է ներկայանալ։ Արդ ինչո՞ւ տարօրինակ մտածումով ապաշխարող եւ արտասուող Մագդաղենացիի մեղաց թողութեան դէպքը կը յանդգնիք ծամածռել։ Խօսք չկայ թէ Ապաշխարութեան քարոզչին կենաց ճրագը մարողները Հերովդիադաներ եղան եւ թէ իգական սեռը ո՛չ միայն թոյլ անհատներու, այլ Աղեքսանդրներու, Լուդովիկոսներու, Նաբոլէոններու կործանմանցը առիթ եղած է։ Դուք կը ներկայացընէք կնոջ գրաւիչ ձեւերը եւ կեղծ լեզուին իսկութիւնը Տիւմայի անձնական վկայութիւնը մէջ բերելով։ Բայց աւելի կ'ախորժինք կարդալ գրքիդ վերջին գլուխը, ուր կը պարզէք Ձեզ մտերիմ Երիտասարդին այրի կնոջ մը շողոմարար եւ հեշտալի վարմունքէն, խօսքերէն խաբուելով ընկճուիլը, կործանիլը։ Այդ դէպքէն դրդեալ գրած էք *Ի՞նչ է*

*կանանց նպատակը* եւ կը խոստանաք *Օրիորդ* մակագրով երկրորդ հատոր մ'ալ ստեղծել՝ *ուհիներու* բացասական եւ դրական յատկութիւնները աշտանակի վրայ դնելու համար։

Գիտցի՛ր, պարոն, որ անօգուտ պիտի համարուէր Ձեր երկը հայութեան համար եթէ անոր վերջին գլուխի ընթերցումովը ըմբռնել չտար Ձեր նպատակը, որը ազնիւ է, ազգաշէն է. վասն զի Դուք կ'ուզէք զգուշացընել երիտասարդութիւնը, չի խաբուիլ՝ կնոջ խաբուսիկ, շողոքորթ եւ ընկճող լեզուէն, չի մատնուիլ անոր որոգայթին զի կը խայթէ, կ'ապականէ եւ կ'սպաննէ։

***Բազմավէպ***, ***Մայիս-Յունիս*** 1903, *Թիւ* 5-6, *էջ* 208

## ՍԵՊՏԵՄԲԵՐ 1904, ՏՐԱՊԻԶՈՆ-ՄԱՐՍԻԼԻԱ-ՓԱՐԻԶ

Որոշած ըլլալով հաստատուիլ Փարիզ, ֆրանսական շոգենաւով Տրապիզոնէն կը մեկնի Մարսիլիա։ Սեպտեմբերի վերջին շաբաթը՝ Փարիզի հայկական եկեղեցիի օծումէն մէկ շաբաթ առաջ, կը հասնի Փարիզ։

- *Արմենակ Ս. Շահ-Մուրատեան*, «*Հայ երգիչն ի Բարիզ*» [*Նամակ Բիւզանդիոնին*], *Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1։

- «*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան. ինքնակենսագրութիւն*», *Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 259։

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 36-37։

# ՀԱՅ ԵՐԳԻՉՆ Ի ԲԱՐԻԶ

## [ՆԱՄԱԿ *ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻՆ*]

**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ Ս. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

1900 թուականին Կարին կ'փոխադրուիմ եւ այնտեղի չորս տարուան պաշտօնավարութեանս ընթացքում կարողացայ հազարումէկ նեղութիւններով ու զրկանքներով համեստ գումար մը տնտեսել, որուն մեծ մասը կը յատկացնեմ մօրս, այրի քրոջս ու իր երեք որբերուն ապրուստին, որոնց միակ նեցուկն ու ապրուստն էի, մնացեալ մասովը կ'յաջողիմ անցագիր մ'առնել, Պէյրութ երթալու պատրուակին տակ։ Տրապզոն հասած ատեն ֆրանսական շոգենաւ մը կ'նստիմ եւ Մարսիլիայի գծով Բարիզ կը հասնիմ վերջապէս, յարմար ատենին։

*Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Բայց իմ նպատակս չէր Տաճկաստան մնալ։ Կարնոյ մէջ յաջողեցայ հազար ու մէկ զրկանքով համեստ գումար մը տնտեսել, որուն մեծ մասը կը յատկացնեմ մօրս, այրի քրոջս ու իր 3 որբերու ապրուստին, մնացեալ մասովը կը յաջողիմ անցագիր մ'առնել, Պէյրութ երթալու պատրուակին տակ։ Տրապիզոն հասած ֆրանսական շոգենաւ մը կը նստիմ եւ Մարսիլիոյ գծով Բարիզ կը հասնիմ վերջապէս, յարմար ատենին։ Մանթաշեանի ծախքով կառուցուած նորաշէն եկեղեցւոյ օծումը պիտի կատարուէր, ճիշդ շաբաթ մը վերջ։
Բարիզ, 1 Մայիս 1911
*Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, էջ 259

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Էրզրումի չորս տարուայ պաշտօնավարութենէս կարցի խնայել մօտ 150 օսմանեան ոսկի։ Ըսի պրն. Ապուլեանին այս բոլորը ու խնդրեցի իրմէն, որ քաղաքային բժիշկ Շերիֆ էֆէնտին (Սանասարեան վարժարանին ալ պաշտօնական բժիշկն էր) բժշկական վկայական մը տայ ինձ, իբր թէ կոկորդի հիւանդութեան համար ստիպուած էի Պէյրութ երթալ՝ տեղացի ձայնի մասնագէտին ցուցանելու ու դարմանելու զայն։ Պրն. Ապուլեան սիրով կատարեց խնդիրս, որ այնչափ կը գնահատէր ձայնս ու ապագաս։ Յաջողեցայ անձնագիր հանել Պէյրութին վրայ։ Ունեցած դրամներէս 100 ոսկին մօրս եւ քրոջս յատկացուցի, մնացեալ դրամով ճամբայ ինկայ դէպի Տրապիզոն, ուր մնացի շաբաթ մը։ Ֆրանսական Պաքէ ընկերութեան նաւով մեկնեցայ փոխանակ Պէյրութի... որ ֆարս մըն էր, դէպի Ֆրանսա. ամէն հայ չէր կարող ֆրանսական նաւերով մեկնիլ։ Իմ մեկնումիս նպաստեց Տրապիզոնի յայտնի վաճառականներէն տիար Օնիկ Մախոխեանը, որուն յանձնարարուած էի էրզրումցի Հանէմեան եղբայրներէն։
[Փարիզ, 1924]
*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, էջ 36-37

**ՍԵՊՏԵՄԲԵՐ-ՀՈԿՏԵՄԲԵՐ 1904, ՓԱՐԻԶ**

Փարիզահայ խմբակցութեան մը գրական-գեղարուեստական հաւաքոյթը: Արշակ Չօպանեան կը բանախօսէ Մկրտիչ Պէշիկթաշլեանի մասին: Հաւաքոյթէն առաջ, բոլորովին անծանօթ Շ-Մ. կը մօտենայ Չօպանեանին, կը ներկայացնէ ինքզինք եւ կը խնդրէ երեկոյթին կատարել մեներգ մը: Հաւանութիւն ստանալով կ'երգէ *Հայաստանը*: Ասիկա կ'ըլլայ իր առաջին ելոյթը Փարիզի մէջ:

- *Արշակ Չօպանեան*, «*Քրոնիկ*», *Անահիտ*, *Հոկտեմբեր-Նոյեմբեր-Դեկտեմբեր* 1939, *նոր շրջան*, *Ժ. տարի*, *Թիւ* 6, *էջ* 24:

## ՔՐՈՆԻԿ
**(հատուած)**

ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ

Ես զայն [Շ-Մ.ին, Հ.Ա.] ճանչցած եւ սիրած եմ առաջին օրէն իսկ ուր եկաւ Փարիզ: Իրիկուն մը ուր փարիզահայ խմբակցութեան մը գրական ու գեղարուեստական մէկ հաւաքոյթին՝ Մկրտիչ Պէշիկթաշլեանի վրայ բանախօսութիւն մը պիտի ընէի, Էտկար Շահինը՝ որ քովս էր՝ եւ ես տեսանք կարմիր լեցուն երեսներով գիրուկ երիտասարդ մը, (յետոյ աւելի առնական, բայց աւելի նիհար, տժգոյն ու ջղուտ դէմք մը առաւ) որ եկաւ ինքզինքն ինծի ներկայացնել, «անունս Շահ-Մուրատեան է, ըսաւ. Մշեցի եմ, երգիչ եմ, եկեր եմ արուեստիս մէջ կատարելագործուելու. կ'ուզէ՞ք որ այս իրիկուն երգ մը երգեմ:» Ձայնը՝ նոյն իսկ պարզ խօսակցութեան մէջ՝ անուշ *թէմպր* մը ունէր: Սիրով հաւանեցանք: Երեկոյթի ընթացքին՝ ան երգեց *Հայաստան երկիր դրախտավայրը*: Իր երգեցողութիւնը որ լի էր կրակով, ճաշակի պակասներ կը յայտնէր դեռ. բայց ի՜նչ ձայն: Այդ հոյակապ թէնօրի ձայնը զմայլանքով ծափահարուեցաւ ամենքէն: Զգացինք որ ապագայ մեծ երգիչ մը կար այդ նորեկին մէջ:

*Անահիտ*, *Հոկտեմբեր-Նոյեմբեր-Դեկտեմբեր* 1939, *նոր շրջան*, *Ժ. տարի*, *Թիւ* 6, *էջ* 24

**ԿԻՐԱԿԻ, 2 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1904, ՓԱՐԻԶ**

Բացումը կը կատարուի Փարիզի նորակայռոյց հայկական եկեղեցիին: Շ-Մ. կը մասնակցի օծումի արարողութեան երգելով *Խորհուրդ խորին* եւ այլ երգեր: Արարողութենէն ետք կ'ընդունուի իբրեւ եկեղեցիին դպրապետը ամսական 70 ֆրանքով:

- *Արշակ Չօպանեան*, «*Փարիզի Հայոց եկեղեցին*», *Անահիտ*, *Սեպտեմբեր-Հոկտեմբեր* 1904, *Զ. տարի*, *Թիւ* 9-10, *էջ* 160:

- *Արմենակ Ս. Շահ-Մուրատեան*, «*Հայ երգիչն ի Բարիզ*» [*Նամակ Բիւզանդիոնին*], *Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *թիւ* 4,382, *էջ* 1։

- «*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան. ինքնակենսագրութիւն*», *Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 259։

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 37-38։

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՆ

ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ

Պ. Մանթաշեանի ծախքով կառուցուած հայկական եկեղեցիին օծումը կատարուեցաւ Հոկտ. 2-ի կիրակի օրը։ Փարիզի Հայերը խուռն բազմութեամբ եկած էին ներկայ գտնուիլ, ու Պատարագին աւարտումէն յետոյ Պ. Մանթաշեանին յայտնեցին իրենց շնորհակալութիւնը։

Օտարներ չէին հրաւիրուած, եւ սակայն, մենք գիտենք որ շատ մը ֆրանսացի անձնաւորութիւններ կը փափաքէին ներկայ գտնուիլ այդ հանդէսին, այդ առթիւ Հայոց եկեղեցիին երաժշտութեան վրայ որոշ գաղափար մը կազմելու եւ միանգամայն այդպիսի հանդէսի մը ներկայ գտնուելով անգամ մը եւս Հայոց նկատմամբ իրենց համակրութիւնը յայտնելու համար. անհրաժեշտ էր հրաւիրել հայասէր Ֆրանսացիները, ինչպէս եւ Փարիզի կաթոլիկ ու բողոքական, նոյն իսկ յոյն ու ասորի, կղերին բարձրագոյն ներկայացուցիչները, մանաւանդ Փարիզի արքեպիսկոպոսը՝ կարտինալ Րիշարը որ – պէտք չէ մոռնանք – 1897-ին Մատլէն եկեղեցւոյն մէջ հանդիսաւոր պատարագ մատոյց հայ նահատակներուն հոգւոյն համար, ինչպէս եւ Ֆրոման աբբան որ այդ օրը հոյակապ եւ սրտաբուխ քարոզ մը խօսեցաւ քրիստոնէութեան համար չարչարուող Հայաստանը փառաբանելով. ասիկա պարտականութիւն մըն էր որ պէտք էր կատարուէր։ Ու բացատրելու իսկ պէտք չունինք բարոյական մեծ օգուտը զոր ատկից կրնար քաղել մեր ազգը։ Փարիզի Հայոց Թաղական Խորհուրդը այդ հրաւէրը չէ ուզած ընել թերեւս՝ նկատելով որ կանոնաւոր երաժշտական խումբ մը գոյութիւն չունենալով, հրաւիրեալ օտարականները շատ լաւ տպաւորութիւն մը պիտի չկրէին օծման հանդէսէն. Բայց միթէ արդէն բացարձակապէս անհրաժեշտ չէ՞ր կանոնաւոր երգեցիկ խմբի մը կազմութիւնը՝ օծումէն առաջ, ոչ միայն օծման հանդէսը ներկայանալի ընելու համար օտարներուն, այլ նոյն իսկ որովհետեւ ատի անուրանալի «պէտք» մըն է եկեղեցիին ներքին պայծառութեանը համար։

Հաճոյքով կ’իմանանք որ Փարիզի Հայոց Թաղական Խորհուրդը այժմ ինքն ալ սկսած է զգալ այդ պէտքին կարեւորութիւնը եւ մտադիր է միջոցներ ձեռք

առնել զայն ի կատար ածելու, օգտուելով Պ. Շահ-Մուրատեանցի ներկայութենէն ի Փարիզ: Պ. Շահ-Մուրատեանց, Կոմիտաս վարդապետի աշակերտներէն է, Եկմալեանի խումբը վարած է քանի մը տարի, շատ լաւ գիտէ Հայոց եկեղեցական երաժշտութիւնը, եւ օժտուած է հզօր ու շատ քաղցր ձայնով մը. իր առաջնորդութեամբ՝ խումբի մը կազմութիւնը մեծապէս կը դիւրանայ: Փարիզի հայ գաղութը շատ լաւ կարող է, - եւ սիրայօժար պատրաստ է – հայթայթել նիւթական միջոցները որ պէտք են այդ ծրագիրն իրագործելու համար. գեղեցիկ ու կանոնաւոր երգեցողութիւնը գլխաւոր շարժառիթներէն մին է որ եկեղեցին միշտ բազմութեամբ լեցուն պահելու կը նպաստէ, այնպէս որ ան՝ ինքնին՝ կը հանէ ծախքը որ պիտի յատկացուի այդ նպատակին: Ու երբ երգեցիկ խումբը կազմուի, ո եւ է մեծ տօնի առթիւ՝ կարելի պիտի ըլլայ հրաւիրել օտար հայասէրները հանդիսաւոր պատարագի մը: «Լաւ է ուշ քան երբէք»:
*Անահիտ*, *Սեպտեմբեր-Հոկտեմբեր* 1904, *Զ. տարի*, *Թիւ* 9-10, *էջ* 160

## ՀԱՅ ԵՐԳԻՉՆ Ի ԲԱՐԻԶ
[ՆԱՄԱԿ *ԲԻԻԶԱՆԴԻՈՆԻՆ*]
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ Ս. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Մանթաշեանի ծախքովը կառուցուած նորաշէն փառայեղ եկեղեցւոյն օծումը պիտի կատարուէր ճիշդ շաբաթ մը վերջ: Նպատակս էր առանց մէկու մը գլուխը ցաւցնելու՝ մասնակցիլ օծման, ուրկէ համոզուած էի որ եկեղեցւոյն հոգաբարձութիւնն անձնուիրաբար զիս վար դնէր անոր համար, հակառակ վխտացող տիրացուներու...: Այսպէս ալ եղաւ: Պ. Էգնաեան, որ եկեղեցւոյն հոգաբարձութեան ատենապետն էր, համեստ ամսական մը առաջարկեց ինձ դպրապետութեան պաշտօնին համար. ստիպուած էի ընդունիլ, եւ հետս բերած փոքրիկ գումարէն ալ քիչ քիչ ամսականներուս վրայ բարդելով, սկսայ ապրիլ եւ միւս կողմէն ձեռնարկել տարիներով երազած ու փափաքած գործիս:
*Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Մանթաշեանի ծախքով կառուցուած նորաշէն եկեղեցւոյն օծումը պիտի

կատարուէր, ճիշդ շաբաթ մը վերջ։ Նպատակս էր՝ առանց մէկու մը ցուցնելու՝ մասնակցիլ օծման, ուրկէ ետք համոզուած էի թէ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը զիս վար կը դնէր, անոր համար՝ հակառակ վխտացող տիրացուներու...։ Այսպէս ալ եղաւ։ Էգնաեան որ հոգաբարձութեան ատենապետն էր՝ համեստ ամսական մ՚առաջարկեց ինծ դպրապետութեան պաշտօնին համար. ստիպուած էի ընդունիլ, եւ հետս բերած փոքրիկ գումարէն քիչ քիչ ամսականներուս վրայ բարդելով սկսայ ապրիլ, միւս կողմէն ձեռնարկեցի վերջապէս տարիներով երազած ու փափաքած գործիս։
Բարիզ, 1 Մայիս 1911
*Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 259

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Եթէ որոշեցի Ֆրանսա երթալ, որովհետեւ նիւթական կարողութիւն եւ ուրիշ օգնող ձեռք մը չունէի, վստահ էի, թէ Փարիզի եկեղեցիի օծման երգելու ըլլամ նէ, անպատճառ զիս վար պիտի դնեն եկեղեցիին համար, նախ՝ որ ձայնիս գեղեցկութեան վրայ հաւատք ունէի, երկրորդ՝ եկեղեցական երաժշտութիւնը իր ամբողջութեամբ ինէ աւելի լաւ գիտցող մը չպիտի գտնուէր, յետոյ՝ ամուսնացած չլինելուս, ուսանելու պատճառաւ քչով գոհ պիտի ըլլայի։

Ոմանք թերեւս միամիտ համարեն զիս կամ չափազանց յաւակնոտ, սակայն վերեւի բոլոր ենթադրութիւններս իրականացան։ Մասնակցեցայ օծման. եկեղեցին լիքն էր հայ եւ օտար բազմութեամբ մը, ինչպէս եւ Մանթաշեան, Կ. Եզեանց, Եկնայեան եւ այլն, եւ այլն։

Որովհետեւ արարողութեանց մասնակցեալ բաւական թուով հայ երաժիշտներ կային ու կը փափագէին եկեղեցւոյ դպրապետ ըլլալ, եւ որպէսզի ամէն մարդ իր ուզած կտորը երգելու փափագով անհամաձայնութիւններ չըլլան, տէր Վռամշապուհ հայրը օր մը առաջ ժողովի հրաւիրեց երգիչներս եւ փոխադարձ համաձայնութեամբ մեր մէջ բաժնեցինք մեներգերը։ Ինծի տուին *Խորհուրդ խորին*։ Խորանին միջէն քաղցր ձայնով երգած ատենս, ուրիշներուն ըսելով, ամէն մարդ զարմացած ու հիացած իրարու երես կը նային՝ գիտնալու համար, թէ ով է երգողը... Միւս երգիչները այլեւս գիտցան, թէ որու հետ գործ ունին, ինծի ձգեցին երգել լաւագոյն կտորները։

Պատարագէն վերջ պարոն Եկնայեանը ինծի մօտեցաւ, հարցուց իմ ով ըլլալս, ինչ նպատակով Փարիզ գալս ու ինչ գործով զբաղուիլս, արդեօք չէի ուզեր

եկեղեցւոյ դպրապետ ըլլալ։ Երբ իրեն պատասխանեցի, որ երաժշտութիւն ուսանելու ու ձայնս կրթելու եկած եմ, ըսաւ. «Զաւա՛կս, գիտէք, որ եկեղեցին նոր է ու եկամուտ մը չունի, չենք կարող ձեզ ձեր արժանիքին չափով վարձատրել, եթէ կը գոհանաք ամսական 70 ֆրանքով ու միայն կիրակի օրեր եկեղեցին երգել՝ ուրախ կ'ըլլանք։ Ատկէ զատ կը խոստանամ ձեզի օգնել, եթէ որեւէ երաժշտական դպրոց յաջողիք մտնելու»։ Ընդունեցի իր առաջարկութիւնները շնորհակալութեամբ։ Առաջին տարին չարաչար կերպով աշխատեցայ քիչ մը ֆրանսերէն սորվիլ, գիտցածս avoir, être բայերէն անդին չէր անցեր։
[Փարիզ, 1924]
*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 37-38

## ՇԱԲԱԹ, 8 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1904, ՓԱՐԻԶ

Փարիզի Union Chrétienne-ի սրահին մէջ՝ հրապարակային բանախօսութիւն, նախաձեռնութեամբ նորակազմ Փարիզի Հայ Աշխատաւորաց Միութեան։ Բանախօս՝ Արշակ Չօպանեան, նիւթ՝ *Մկրտիչ Պէշիկթաշլեանի հանրային ու գրական գործունէութիւնը*։ Մամբրէ Մատենճեան կ'արտասանէ Պէշիկթաշլեանի *Թաղումն քաջորդւոյնը* եւ *Առ զեփիւռն Ալէմտաղին*, Շ-Մ. կ'երգէ *Դու զով խնդրես*։

- *Արշակ Չօպանեան*, «*Հայկական երեկոյթ մը ի Փարիզ*», *Անահիտ*, *Սեպտեմբեր-Հոկտեմբեր* 1904, *Զ. տարի*, *Թիւ* 9-10, *էջ* 157։

# ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ ՄԸ Ի ՓԱՐԻԶ

ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ

Խումբ մը Փարիզաբնակ Հայեր վերջերս շատ գեղեցիկ նախաձեռնութիւնն ունեցած են Փարիզի Հայ Աշխատաւորաց Միութիւն մը հիմնել, Փարիզի մէջ ցրուած հայ աշխատաւորները քով քովի բերելու, անոնց մէջ իրերօգնութեան ոգին զարգացնելու, ազգային զգացումը վառ պահելու նպատակով։ Այդ Միութիւնը որոշած է հրապարակային բանախօսութեանց շարք մը սարքել։ Ատոնց առաջինը տեղի ունեցաւ հոկտեմբեր 8-ի իրիկունը, Իւնիոն Քրեթիէնի սրահին մէջ։ Պ. Արշակ Չօպանեան խօսեցաւ Մկրտիչ Պէշիկթաշլեանի հանրային ու գրական գործունէութեան մասին, մասնաւորապէս ծանրանալով այն դերին վրայ զոր *Եղբայր եմք մեք*ի երգիչը հաստատած է իբր հաշտարար՝ Հայոց կրօնական պառակտումներուն մէջ։ Պ. Մամբրէ Մատենճեան արտասանեց Մ. Պէշիկթաշլեանի *Թաղումն քաջորդւոյնը* եւ *Առ զեփիւռն Ալէմաղին*։ Պ. Շահ-Մուրատ-

եանց երգեց *Դու զով խնղրեսը*: Ներկայ էին հարիւր երեսունի չափ ազգայիններ:
*Անահիտ*, *Սեպտեմբեր-Հոկտեմբեր* 1904, *Զ. տարի*, *Թիւ* 9-10, *էջ* 157

**1904-1905, ՓԱՐԻԶ**

Արշակ Չօպանեանի շնորհիւ Շ-Մ. կը ծանօթանայ երգչուհի Մարգարիտ Բաբայեանի հետ, որ կը դառնայ եւրոպական ձայնամարզութեան իր առաջին ուսուցիչը: Բաբայեան զայն կը նախապատրաստէ ընդունուելու Schola Cantorum:

- *Արշակ Չօպանեան*, «*Քրոնիկ*», *Անահիտ*, *Հոկտեմբեր-Նոյեմբեր-Դեկտեմբեր* 1939, *նոր շրջան*, *Ժ. տարի*, *Թիւ* 6, *էջ* 24:

## ՔՐՈՆԻԿ
**(հատուած)**

ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ

Զինքը ներկայացուցի Օրիորդ Մարգարիտ Բաբայեանին որ եւրոպական երաժշտութեան ուսման անոր առաջին վարպետը եղաւ:
*Անահիտ*, *Հոկտեմբեր-Նոյեմբեր-Դեկտեմբեր* 1939, *նոր շրջան*, *Ժ. տարի*, *Թիւ* 6, *էջ* 24

**1905, ՓԱՐԻԶ**

Փարիզի Ժան Կուժոն փողոցի եւ տ'Ալմա հրապարակին անկիւնը գտնուող ճաշարանի մը մէջ համակիրները կը նշեն Վռամշապուհ աւագ քահանայ Քիպարեանի (1855-1944) յիսնամեակը: Բարեկամական մթնոլորտի մէջ Շ-Մ. կ'երգէ Մշոյ ժողովրդական երգեր:

- *Ա. Նաւարեան*, «*Ժողովրդական երգեր*», *Բիւզանդիոն*, 8/21 *Ապրիլ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,405, *էջ* 1:

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐ
**(հատուած)**

Ա. ՆԱՒԱՐԵԱՆ

Ասկէ մէկ քանի տարիներ առաջ Բարիզաբնակ Հայ համակիրներու կողմէ հացկերոյթ մը սարքուեցաւ Քիպարեան Վռամշապուհ աւագ քահանային յիսնամեակին առթիւ, համեստ ճաշարանի մը մէջ՝ Ալմա հրապարակին եւ Ժան-

Կուժոն փողոցին անկիւնը։ Ուսանողներն՝ աղքատները մանաւանդ, որ շատ բան կ՚պարտին այդ բարեսիրտ քահանային, երախտայայտ բաժակաճառեր արտասանեցին։

Լռիկ մէկ կողմը նստած էր անծանօթ երիտասարդ մը, թխադէմ, կայտառ զաւառացի մը։ Երբոր շամբանեան բերուեցաւ, Հայր Վռամշապուհ խնդրեց այդ պարոնէն որ բան մը երգէ։ Ֆրանսերէն բառ մը չէր գիտեր, հետեւաբար հայերէն ստիպուած էր երգել։ Ճաշարանին մէջ մեզմէ զատ կը գտնուէին նաեւ ֆրանսացիներ – եւ հեռուն, *քէս*ին առջեւ նստած կլորիկ, գիրուկ, կարմրուկ կին մը՝ ճաշարանապետուհին։ Երիտասարդը՝ որ բնիկ Մշեցի էր, երգեց իր բնագաւառին գեղջուկ երգերը։ Ձայնը հնչուն, անուշ, այնքան դաշնակաւոր էր որ ելեկտրականացանք ամենքնիս ալ։ Ֆրանսացիները, բնութեամբ աւելի խանդավառ, ծափահարեցին երգերուն *օռիժինալ* ներդաշնակութիւնը եւ երգողին գեղեցիկ ձայնը։

- Ի՜նչ անուշ երգեր, բացագանչեց գիրուկ ֆրանսուհին, սքանչելի եղանակ... պարոնը թէնոռի ձայն ունի... կ՚երգէ սոխակի պէս – բայց օտար սոխակի պէս։

Այդ օտար սոխակը՝ Արմենակ Շահ-Մուրատեանն էր որ այսօր Թամանեօներու եւ Գարուզօներու յաղթապանծ ճամբէն կը քալէ։ Մաղթենք որ օտարութեան մէջ, զինովցնող ծափերու եւ դափնիներու մէջ չոռնայ իր հայրենիքն ու հայրենակիցները, ինչպէս ըրած է Մաքսուտեան։

*Բիւզանդիոն*, 8/21 *Ապրիլ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,405, *էջ* 1

### 1905-1906 ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆ, ՓԱՐԻԶ

1905-1906 ուսումնական տարեշրջանին կ՚ուսանի Vincent d'Indy-ի ղեկավարած Schola Cantorum-ին մէջ, հետեւելով տեսութեան եւ երգեցողութեան դասընթացքներուն։ Միաժամանակ կը հետեւի անձնական դասերու Pauline Viardot-ի (մեծծօ-սոփրանօ) մօտ։

Էգնայեան ամսական 40 ֆրանք կը յատկացնէ Շ-Մ.ին։

- «*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան. ինքնակենսագրութիւն*», *Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 259-260։

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 38-40։

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Կ՚ուզէի անպատճառ Conservatoire մտնել... սակայն գրեթէ անյաղթելի

դժուարութեանց առջեւ կը գտնէի ինքզինքս. ֆրանսերէն բառ մ'իսկ չգիտէի, ոչ ալ գիտակցութիւն ունէի եւրոպական երաժշտութեան, մինչդեռ երաժշտանոցի մրցումներուն մասնակցող մը ահագին պատրաստութիւն ունենալու է երաժըշտութեան եւ երգելու արուեստին մէջ…: - Հարկ էր պատրաստուիլ. 2 տարի հարկ եղաւ անոր համար, մանաւանդ վերջին տարին պէտք զգացի մտնել Schola Cantorum կոչուած երաժշտական մասնաւոր վարժարանը՝ նշանաւոր երգահան Վէնսան տ'Էնտիի հսկողութեան տակ։ Ասով ալ չգոհացայ. պարզ նամակով մը դիմեցի՝ անցեալ տարի հանգուցեալ՝ աշխարհահռչակ երգչուհի Տիկ. Բօլին Վիառտօի որը քննեց ձայնս, շատ հաւնեցաւ ու ձրի դաս տալու յանձնառութիւնն ունեցաւ եւ որ ո՛չ մի ջանք, ո՛չ մի բարոյական աջակցութիւն ինձ խնայեց. իր տան դուռները բաց էին ինձ համար ամէն ատեն. միշտ խրախուսեց զիս ու գուրգուրաց վրաս՝ մօր մը խանդաղատանքով։
Բարիզ, 1 Մայիս 1911
*Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 259-260

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Երկրորդ տարին՝ 1905-ին մտայ, Schola Cantorum, երգի ու թէորի միւզիքի հետեւեցայ, ուր մնացի միայն մէկ տարի։ Այդ տարիէն սկսեալ պրն. Եկնայեան ինձ օգնեց ամսական 40 ֆրանքով եւ շարունակեց մինչեւ Օփերա engager ըլլալս, ուրեմն հինգ տարի անընդհատ։ Schola Cantorum-ով չբաւականացայ։ Միւս կողմէն բոլորովին որոշած չէի աւելի ուժ տալ, իբր մասնագիտութիւն, ձայնիս թէ composition-ին, ատոր համար պէտք էր շատ հեղինակաւոր մէկու մը կարծիքը գիտնալ։ Ճիշտ է, ձայնս գիտէի եւ վստահ էի, թէ սովորական ձայն չէր, սակայն կարելի՞ էր ամբողջ ապագայ մը անոր վրայ հիմնել։ Այդ մտքով Սերտլեանին (թոքթոր) ֆրանսերէն նամակ մը գրել տուի նշանաւոր տիկին Փօլին Վիարտոյին (83-ամեայ)՝ խնդրելու իրմէն ժամադրութեան մը մէջ, իր հեղինակաւոր կարծիքը յայտնէր ձայնիս մասին։ Սերտլեանին հետ տուած ժամադրութեանը կը դիմէինք, քանի մը էքզեռսիսներ ընել տուաւ եւ եղանակ մը երգել իմ այն ժամանակուայ ջարդուփշուր ֆրանսերէն արտասանութեամբ… Շատ գուրգուրոտ վերաբերումով մը եւ խանդավառութեամբ ըսաւ. «Ապրե՛ս, ոչ միայն աղէկ է ձայնդ, այլ եթէ աշխարհիս մէջ կայ երեք հազուագիւտ ձայներ, մէկը ձերն է»։ Ու խնդրեց ուրիշ անգամ մըն ալ երթամ իրեն՝ յաջորդող շաբթու նոյն օրը։ Ուր գտայ ռուսահայ երգիչ, որ ձայնը խզուացուցած էր գրեթէ opération-ի մը առթիւ, եւ Մատամ

Վիարտոն մասնաւոր գուրգուրանք մը ունէր վրան եւ օգնած էր իրեն երաժշտական խանութ մը բանալուն եւ որուն տուած էր իր բոլոր գործերը վաճառելու արտօնութիւնը:

Նորէն ինծի երգել տուաւ ֆրանսերէնի հետ քանի մը հայերէն երգեր եւս, այս վերջիններէն շատ խանդավառուեցաւ... ու ետքը ինծի առաջարկեց, թէ արդեօ՞ք կ'ուզեմ իրմէ դասեր առնել: Անշուշտ, շնորհակալութիւն յայտնեցի իրեն այդ մասին (Սերտլեանը միշտ թարգմանս էր) ու միամտաբար ըսի իրեն, թէ միջոցներս չեն ներեր իրեն վճարելու: Խնդալով ըսաւ, որ «Ձեզմէ ոչ ոք դրամ կը պահանջէ, ընդհակառակը, հաճոյք մը պիտի ըլլայ ինծ ձեզ դաս տալս»: Մատամ Վիարտոյի հեղինակաւոր վկայութենէ ետքը որոշեցի ձայնովս զբաղուիլ վերջնականապէս: Հետզհետէ Մատամ Վիարտոյի յարաբերութիւնը իմ նկատմամբ ճիշտ հարազատ մօր պէս եղաւ, ամէն դասէ ետքը կը խօսակցէր հետս, պատմութիւններ կը պատմէր, ծանօթ ամէն մէկ վանկ արտասանելով եւ առոգանելով, որպէսզի կարելի եղածին չափ ընտելանայի ֆրանսերէն լեզուին: Որ ատեն ուզէի, իր դռները բաց էր իմ առջեւը, իր զաւակներն ալ (բոլորն ալ ամուսնացած) համակրանքով կը վերաբերուէին հետս:

Քանի քանի անգամ Մատամ Վիարտոն առաջարկած է ինծ նոյնիսկ նիւթապէս օգնել, միշտ ալ մերժած եմ զինքը, ըսելով, որ շնորհիւ հայրենակիցներուս՝ դրամի պէտք չունիմ... Փարիզէն հեռացած պարագային թղթակցած էր հետս մօր մը խանդաղատանքով... Իր նախկին աշակերտուհիներուն (ամուսնացած, դիրքի տէր) ծանօթացուցած էր հետս եւ անոնք ալ յարգանքով կը վերաբերուէին հետս:

Կատարախտի պատճառով, երբ այլեւս աչքերը տկարացան, խորհուրդ տուաւ Conservatoire-ը մտնեմ յառաջիկայ saison-ին: 1906-ի տարեշրջանին մասնակցեցայ Conservatoire-ի concours-ին, ընդունուեցայ, Schola Cantorum-ի երգի ուսուցիչ պրն E. Cazeneuve-ը այդ saison-ին փոխադրուած ըլլալով Conservatoire, իր դասարանը մտայ: Schola Cantorum-ի մէկ տարուայ աշխատութիւնս ինծ շատ օգտակար եղաւ, լինելով սոսկ կլասիկ հաստատութիւն մը Վենսան տ'Էնտիի direction-ի տակ: Այստեղ էր, որ իրապէս դարբնուեցաւ սրտիս, հոգիիս մէջ դասական երաժշտութեան (16, 17, 18-րդ դարերու) խորհրդաւորութիւնն ու վեհութիւնը:

Օր մը ուսուցիչս Faust-ի air-ը ինծ երգել տուած պարագային, դասարանին մէջ, տ'Էնտին ներս մտաւ ու արգիլեց շարունակել՝ ըսելով. «Իմ հաստատութեանս մէջ դասական երաժշտութենէն զատ ուրիշ բան չեմ ուզեր»:

Երբ Schola Cantorum-ը ձգեցի՝ Conservatoire երթալու համար, տ'Էնտին շատ ցաւ զգաց, միեւնոյն ժամանակ ըսած էր եղեր, թէ՝ «Ձեր ձայնին համար Conservatoire-ը միակ հաստատութիւնն է»:

Conservatoire մտնելէս ետքն ալ կ'այցելէի մատամ Վիարտոյին, երբ ուզենայի՝ կանչել կուտար, ամէն անգամ կ'ուզէր գիտնալ առաջադիմութիւնս, կ'երգէի իրեն

ու միշտ ալ մասնաւոր գուրգուրանքով խորհուրդներ կուտար։

Մատամ Վիարտոն այնչափ կը սիրէր զիս, որ հոգեվարքին մէջ, ուրիշ սիրելիներուն հետ զիս եւս հարցուցած ու փնտռած է, դժբախտաբար մինչեւ հասնելուս մեռած գտայ զինքը, այդ 19-րդ դարու ամենէն զարգացած, ամենէն նշանաւոր երգչուհին, նաեւ compositeur, pianiste, որուն buste-ը իր կենդանութեան Օփերայի musée-ի մէջ դրուեցաւ. որչափ հպարտ եմ, որ աշակերտ ու հոգեզաւակ ըլլալուն բախտը, գուրգուրանքն ունեցած եմ։

[Փարիզ, 1924]

*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 38-40

## ՀԻՆԳՇԱԲԹԻ, 25 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1906, ՓԱՐԻԶ

Փարիզի Երաժշտանոցի (Conservatoire de musique et de déclamation) տղամարդոց երգեցողութեան ընդունելութեան մրցոյթի նախնական փուլ։

Կը ներկայանան 129 թեկնածուներ, որոնցմէ 28-ը կ՚ընդունուին մասնակցելու երկրորդ եւ վճռական փուլին՝ որ տեղի պիտի ունենայ Հոկտեմբեր 30-ին։ 28-ի մէջ կը գտնուէին Շ-Մ. եւ թենոր Մուղունեան (վերջինս կը մահանայ 1907 Յուլիսին)։

- Bartholo, ‘Notes et potins’, *Le Radical*, 26 octobre 1906, 26e année, no. 299, p. 4.

## ԵՐԵՔՇԱԲԹԻ, 30 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1906, ՓԱՐԻԶ

Անցնելով Փարիզի Երաժշտանոցին (Conservatoire de musique et de déclamation) ընդունելութեան մրցոյթի երկրորդ փուլը, Շ-Մ. կ՚ընդունուի մեներգեցողութեան բաժինը։ Իր հետ կ՚ընդունուի նաեւ թենոր Մուղունեան։

Այս տարեշրջանին համար Երաժշտանոցի բոլոր բաժինները կ՚ընդունուին 13 օտարազգի (ոչ-ֆրանսացի) ուսանողներ, որոնց ուսանելու արտօնութիւն տրուած էր համաձայն 1905 Հոկտեմբեր 8-ի կանոնադրութեան 70-րդ յօդուածին։ Այս առումով, Շ-Մ. պաշտօնապէս կ՚ընդունուի իբրեւ Հայ, իսկ Մուղունեան՝ իբրեւ Ռուս։

Շ-Մ. Երաժշտանոցը կ՚ուսանի չորս տարի, որուն ամբողջ ընթացքին իրեն նիւթապէս կ՚օգնեն Էգնայեան, Մանթաշեան եւ Ներսէս Խան Ներսէսեան։

- ‘Communiques des théâtres et des concerts’, *Le Matin*, 31 octobre 1906, no. 8282, p. 4.
- ‘Courrier des théâtres’, *Le Petit journal*, 31 octobre 1906, quarante-quatrième année, no. 16,014, p. 4.
- ‘Gazette théâtrale’, *L’Écho de Paris*, 31 octobre 1906, 23e année, no. 8176, p. 4.
- ‘Théâtres et concerts’, *Le Journal*, 1er novembre 1906, quinzième année, no. 5145, p. 6.

- ‘Le théâtre’, *L’Intransigeant*, 3 novembre 1906, no. 9607, p. 3.

- ‘Courrier de la semaine’, *Le Monde artiste*, 4 novembre 1906, 46e année, no. 44, p. 591.

- ‘Échos’, *Le Mercure musical*, 15 novembre 1906, 2e année, nos. 21-22, p. 359.

- ‘Actes officiels et informations’, *La Revue musicale*, 1er février 1907, septième année, no. 3, p. 70.

- *Արմենակ Ս. Շահ-Մուրատեան*, «Հայ երգիչն ի Բարիզ» [Նամակ *Բիւզանդիոնին*], *Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1։

- «*Արմենակ Ս. Շահ-Մուրատեան. ինքնակենսագրութիւն*», *Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 260-261։

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 40-41։

## ՀԱՅ ԵՐԳԻՉՆ Ի ԲԱՐԻԶ
### [ՆԱՄԱԿ *ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻՆ*]
### (հատուած)

ԱՐՄԵՆԱԿ Ս. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Կ’ուզէի անպատճառ Conservatoireը մտնել, սակայն միւս կողմէն ո՛չ ֆրանսերէն բառ մը գիտէի եւ ո՛չ ալ գիտակցութիւն եւրոպական երաժշտութեան։ Հարկ էր պատրաստուիլ։ Երկու տարի վերջը Conservatoireի մուտքի concoursներուն մասնակցեցայ ու յաջողեցայ հոն մտնել իբր աշակերտ։ Այստեղն էր որ զգացի պահ մը հեռու մնալ արեւելեան երաժշտութեան տպաւորութիւններէն, որ այնքան աւերներ գործած էր իմ մէջս՝ եւրոպական երգելու արուեստին տեսակէտով եւ անոր վերջնական կապանքներէն ազատուիլ։ Ասոր համար անհրաժեշտ էր եկեղեցին չերգել այլ եւս – թողունք որ դպրոցին կանոնագիրն ալ կ’արգիլէր երգիչ աշակերտներուն դպրոցէն դուրս երգել։ Քօնսէրվադուառ մտնելս այնպիսի լաւ տպաւորութիւն մը յառաջ բերած էր տեղւոյս Հայ գաղթականութեան վրայ որ դիւրութիւն տուաւ ինձ նիւթական միջոցներ գտնել շատ հեշտութեամբ։ Այսպէս Պ. Պ. Ա. Մանթաշեան (վերջերս հանգուցեալ Միհրան էֆ. Յովակիմեանի միջնորդութեամբ) եւ Ա. Էգնայեան եւ Ներսէս Խան Ներսէսեան, ինքնաբերաբար իրենց կարողութեան չափով ինձ օգնեցին ուսանողական շրջանիս բովանդակ ընթացքին մէջ, որոնց պարտք կը համարիմ հրապարակաւ երախտագիտական խորին զգացումներս եւ անհուն շնորհակալութիւններս յայտնել, ինծի շռայլած նիւթական եւ բարոյական անգնահատելի զոհաբերութիւններուն համար։
*Բիւզանդիոն*, 11/24 *Մարտ* 1911, 15-*րդ տարի*, *Թիւ* 4,382, *էջ* 1

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

2 տարուան անդուլ աշխատութեան շնորհիւ յաջողեցայ մրցումներուն մասնակցիլ ու մտնել Գօնսէռվաթուառ իբր աշակերտ։ Հոդ էր որ ստիպուեցայ պահ մը հեռու մնալ արեւելեան երաժշտութեան աւերիչ տպաւորութիւններէն, որ ա՛յնքան սուղի նստած էր ինձ՝ եւրոպական երգելու արուեստին տեսակէտով, եւ անոր վերջնական կապանքներէն ազատիլ։ Ասոր համար անհրաժեշտ էր եկեղեցին չերգել այլ եւս, - թողունք որ դպրոցին կանոնագիրն ալ կ՚արգիլէր երգիչ աշակերտաց՝ դպրոցէն դուրս երգելը։ - Երաժշտանոց մուտքս այնպիսի լաւ տպաւորութիւն մը յառաջ բերած էր տեղւոյս հայ գաղութին վրայ, որ դիւրութիւն տուաւ ինձ նիւթական միջոցներ գտնել շատ հեշտութեամբ, նոյն իսկ շատերն ալ մերժելով։ Այսպէս Մանթաշեան, Էգնայեան (Schola Cantorum մտնելէս ի վեր) եւ Ներսէս Խան Ներսէսեան իրենց կարողութեան չափով ինձ օգնեցին այնչափ ազնուութեամբ՝ ուսանողական շրջանիս բովանդակ ընթացքին մէջ։

Բարիզ, 1 Մայիս 1911

*Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 1912, *վեցերորդ տարի*, *էջ* 260-261

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Conservatoire-ի մէջ մնացի չորս տարի, եթէ ֆրանսերէն գիտնայի՝ այդչափ ժամանակ կորսնցնելու պէտք չպիտի ունենայի, ինչո՞ւ, որովհետեւ ձայնիս գեղեցկութեամբ եւ երգելու բնական ընդունակութեամբ միշտ լաւագոյն ténor-ն էի, սիրուած ոչ միայն իմ ուսուցիչներէն, այլեւ directeur-էն, միւս բոլոր ուսուցիչներէն ու պաշտօնեաներէն։ Երբ իտալական Օփերայի խումբը իր ամբողջ կազմովը, մասնակցութեամբ Caruso-ի եւ ուրիշ նշանաւոր արթիսթներու, կարգ մը ներկայացումներ տուաւ Châtelet-ի թատրոն *Aida*-ի ներկայացման, հրաւիրեցին մեր Conservatoire-ի ուսուցչութեանը՝ աշակերտական կազմին հետ։ Ուսուցիչներէն մի քանին աշակերտներու ներկայութեանը այսպէս արտայայտուեցան. «Caruso-ի ձայնը գեղեցկութեան եւ charme-ի տեսակէտով ոչ մի առաւելութիւն ունի Շահ-Մուրատեանի ձայնէն. աւելի զօրաւոր է, այո՛, սակայն վերջինիս ձայնն ալ աւելի քնքոյշ, տաք եւ հրապուրիչ է»...

[...]

Կեանքիս ամենէն երազուն, խանդավառ, անհով եւ գաղափարական շրջանս ուսանողականն եղած է: Շնորհիւ Մանթաշեանին (մանաւանդ), Եկնայեանին եւ Ներսէս Խանին, նիւթական ոչ մի նեղութիւն կրեցի այդ շրջանին... Մանթաշեանը մասնաւորապէս շատ կը սիրէր զիս, զաւկին պէս. առանց կանչելու չէի երթար, որպէսզի մտքէն չանցնէր ուրիշ բան մը, որու համար ալ պատուիրած էր Սիմոնեանին (իր անձնական գրագիր), որ ամսականներս երթամ իրեն տուն առնեմ... [Փարիզ, 1924]

*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 40-41

## ՇԱԲԱԹ, 1 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1906, ՓԱՐԻԶ

Փարիզի Salle de la Société d'agriculture-ին մէջ՝ հայկական ժողովրդական եւ եկեղեցական երաժշտութեան նուագահանդէս ղեկավարութեամբ Կոմիտաս վարդապետի, նախաձեռնութեամբ Փարիզի Հայկական Միութեան:

Կոմիտաս կը վարէ յատուկ այս նուագահանդէսին համար կազմուած երգչախումբ մը:

Կը կատարուին խմբերգներ՝ *Սիփանայ քաջերը*, *Մեր դրանը խնկի ծառ*, *Անձրեւ եկաւ շաղալէն*, *Արի քե մատաղ*, *Թօլ արա, եզօ ջան*, *Ամպել ա ձիւն չի գալի*, *Սարերի վրով գնաց*, *Էս գիշեր լուսը տեսայ*, *Օրօր* (Ակնայ), *Չիզ տու քաշի*, *Հայր մեր*, *Յիշեսցուք*, *Խորհուրդ խորին*, *Ո՜վ զարմանալի*, *Գետ մի զարհուրիր*, *Այսօր ձայնն հայրական*, մեներգներ եւ զուգերգներ երգչախումբի կամ դաշնակի նուագակցութեամբ՝ *Հով արէք* (թենոր՝ Մուղունեան), *Իմ չինարի եարը* (մեծծօ-սոփրանօ՝ Մարգարիտ Բաբայեան), *Հաբրբան* (Մարգարիտ Բաբայեան եւ Մուղունեան), *Տէր ողորմեա* (Մուղունեան), *Չինար ես կեռանալ մի*, *Ծիրանի ծառ*, *Գարուն ա ձիւն ա արել*, *Լուսնակն անուշ*, եւ այլն: Կոմիտաս վարդապետ կը մեներգէ՝ *Տիրամայր* եւ *Հաւիկ մի պայծառ տեսի*, Շուշիկ Բաբայեան կը նուագէ Կոմիտասի դաշնակի պարերը: Շ-Մ. կը մեներգէ *Կռունկը*, որ ներկաներուն պահանջով կը կրկնուի:

- «*Հայկական նուագահանդէս ի Փարիզ*», *Անահիտ*, *Հոկտ.-Նոյ.-Դեկտ.* 1906, *Ը. տարի*, *Թիւ* 10-11-12, *էջ* 240:

- *Հրասպետ*, «*Սէնի ափերէն. Կոմիտաս վարդապետի համերգը*», *Բազմիկ*, 6 *Դեկտեմբեր* 1906, *Թիւ* 15(115), *էջ* 2-3:

- Louis Laloy, 'Musique arménienne', *Le Mercure musical*, 15 décembre 1906, 2e année, nos. 23-24, p. 423.

- J. C. 'Les œuvres récemment exécutées', *La Revue musicale*, 15 décembre 1906, sixième année, no. 24, p. 573.

- Paul Chio, 'Sensations d'Arménie', *L'Aurore*, 21 décembre 1906, dixième année, no.

3350, p. 2.

- «*Հայ երաժշտութեան նուագահանդէսը*», *Անահիտ*, *Յունուար-Փետրուար* 1907, *Թ*. *տարի*, *թիւ* 1-12, *էջ* 23-32։

# MUSIQUE ARMÉNIENNE

LOUIS LALOY

*Concert de musique arménienne populaire et liturgique dirigé par le R. P. Komitas, le 1er décembre 1906, Salle de la Société d'agriculture.*

Les mélodies citées dans notre précédente livraison et les paroles éloquentes de M. Tchobanian font trop hautement l'éloge de la musique arménienne pour que l'on me soupçonne d'exagération si je dis que ce concert a été une révélation et un émerveillement. Aucun de nous, je crois, sauf de très rares initiés, ne pouvait soupçonner les beautés de cet art qui n'est en réalité ni européen ni oriental, mais possède un caractère unique au monde de douceur gracieuse, d'émotion pénétrante et de tendresse noble. Des mélodies aux inflexions délicates et cependant précises, des rythmes souples et vivants, une musique qui vient toute du cœur et coule comme une eau fraîche, transparente et lumineuse. Il y a du soleil en ces chants, mais non pas le soleil dévorateur des déserts de l'Arabie et de la Perse: une clarté dorée, toute céleste, dont l'ardeur est une caresse à la blancheur des cimes, au vert des forêts et aux reflets des ruisseaux murmurants. Peut-être n'ont-ils pas tort, ceux qui placent en Arménie, au pied du mont Ararat, le Paradis terrestre. Car ce pays, dont l'histoire a été si malheureuse, est bien en effet une terre élue entre toutes, où la nature féconde et bienveillante prodigue à l'homme ses bienfaits. Une longue idylle, paisible, aimable et souriante, telle devait être, telle fut en effet la vie des campagnes arméniennes, en dépit de tous les fléaux qui les ont traversées. L'âme des hommes est restée digne de cette terre heureuse; elle a gardé, tout au fond d'elle-même, sa pureté native, sa confiance en la bonté des choses et son amour de la lumière et de la vie. Et ce précieux trésor d'ingénuité, qui ni les Turcs, ni les Kurdes, ni les Russes, plus barbares encore, n'ont su découvrir ni ravir, nous a été transmis intact en ces chants aux belles lignes, fleurs éclatantes et parfumées. Ce sont des chants d'amour, mélancoliques et passionnés comme en tous les pays du monde, mais avec une nuance particulière d'émotion tendre devant la beauté. Des chansons de travail, longs cris d'appel aux riches modulations, faits pour retentir d'une montagne à l'autre et exciter au travail le bœuf aimé, le frère, l'ami, presque le confident du laboureur arménien. Et encore des complaintes, où s'exhale librement toute la tristesse de l'abandon ou de l'exil: car il ne s'y mêle ni reproche ni révolte. Les chants liturgiques,

tout populaires aussi, n'ont rien de ce respect un peu craintif qui retient toujours le chant grégorien même en ses moments d'espoir et de confiance: ce sont les effusions d'une âme qui s'ouvre toute à son Dieu et lui livre, en un élan d'amour, toutes ses pensées et sa vie entière; on y sent vibrer une foi ardente et mystique qui atteint sans effort les sommets de l'extase réservés, en notre Occident, à de rares élus. Enfin les danses n'ont pas notre précipitation ni nos duretés rythmiques: tantôt graves et religieuses, tantôt douces comme un chant d'amour, ou légères d'une joie innocente, elles sont toujours profondément expressives, véritable musique des beaux corps harmonieux et libres. De ces danses nous n'avons eu, au concert, que les mélodies et non le spectacle, mais ce spectacle était évoqué par l'art délicat de Mlle Chouchik Babaïan, qui sait donner au piano les sonorités perçantes ou voilées des instruments nationaux, et garder intacte la grâce d'un rythme mouvant; on sent que l'artiste n'a pas seulement dans l'esprit des notes, du noir sur du blanc, mais qu'elle suit des yeux la danse, et nous la suivons avec elle: nous voyons le balancement prolongé, prélude de la ronde immense qui unit jeunes et vieux, tout un peuple, ou la souriante fantaisie des jeunes gens et des jeunes filles, les bonds légers, les tournoiements, les bras souples qui s'élèvent et ondoient comme des branches caressées par la brise... Admirable pays, où la danse est pour tous un langage naturel, où chacun peut s'abandonner à l'inspiration d'un beau soir, et faire de son être entier une image vivante de la joie, ou du regret, ou du désir!

Mlle Marguerite Babaïan, qui chantait plusieurs mélodies à ce concert, m'a paru en grand progrès: je lui connaissais depuis longtemps une voix souple, étendue et d'un timbre exquis, mais je ne lui connaissais pas encore cette netteté d'émission ni cette puissance qui a tenu la salle entière charmée et comme fascinée: nous lui devons peut-être les meilleurs moments du concert, ainsi qu'à M. Moughounian, son élève, qui possède une voix de ténor admirable et si bien posée qu'au point de vue du métier on peut dire que ce jeune homme n'a plus rien à apprendre. Il ne m'en voudra pas cependant si je lui dis que son interprétation, très musicale et émue, m'a paru quelquefois un peu théâtrale, et que j'aime beaucoup mieux, pour sa finesse, sa grâce et sa charmante sincérité, la manière de Mlle Babaïan. La voix plus fruste et sauvage de M. Chah-Mouradian a fait merveille dans les chants de labour, et le R. P. Komitas, qui n'a pas craint de venir diriger les chœurs et chanter lui-même des mélodies liturgiques, a atteint, dans le morceau correspondant à notre *Stabat Mater*, une intensité d'émotion qui allait presque jusqu'aux larmes et lui a valu une ovation. Rien de plus touchant que de le voir s'incliner avec douceur et dignité sous le grand capuchon noir, puis se rasseoir à l'orgue Mustel et reprendre la dernière strophe qu'il chante presque à voix basse, dans le secret des grandes douleurs, avec des accents de compassion prosternée et de gravité recueillie qui font sentir à l'âme la présence divine. Plusieurs autres mélodies ont dû être répétées aussi: le *Miserere*, chanté par M. Moughounian et que le chœur accompagne de

modulations saisissantes; la délicieuse chanson de Mlle M. Babaïan: *Mon bien-aimé pareil à un platane*; le chant d'émigrés de M. Chah-Mouradian. Rarement on avait vu une salle mieux remplie (plusieurs centaines de personnes durent être refusées à l'entrée) ni plus enthousiaste. Le R. P. Komitas, à qui revient tout l'honneur d'avoir recueilli ces mélodies et d'en avoir senti le premier les beautés, s'est aussi révélé comme un compositeur ingénieux et délicat, car il avait joint à la plupart d'entre elles un accompagnement de piano ou de chœur où se montre le sentiment le plus juste et le plus raffiné de la tonalité nationale et de la couleur. C'est une question bien difficile à trancher que celle de l'accompagnement des mélodies populaires. Mais il ne faut pas se plaindre lorsque des mains habiles et révérencieuses procèdent à cet habillement que le préjugé de nos oreilles rend peut-être nécessaire, ou tout au moins utile au début.
*Le Mercure musical*, 15 décembre 1906, 2e année, nos. 23-24, p. 422-424

## LES ŒUVRES RÉCEMMENT EXÉCUTÉES

J. C.

CONCERT ARMÉNIEN (SALLE DE LA RUE D'ATHÈNES). – Il faut vraiment être à Paris, pour assister à des auditions et à des spectacles aussi imprévus. La salle est remplie de personnes très élégantes, aux visages exotiques. Sur l'estrade, une trentaine de chanteurs que dirige un chef ayant sur la tête une sorte de sac pointu qui retombe jusqu'à mi-corps. Il n'a rien de commun avec un officiant de l'Inquisition, bien qu'il en évoque l'idée: c'est le R. P. Komitas, maître de chapelle de la cathédrale d'Etchmiadzine. Il dirige l'exécution de chants populaires qu'il a recueillis en Arménie, chants de travail agreste, chants d'amour (*mon bien-aimé, grand comme un platane...; - il marche, il brille, mon bien-aimé!*), chants d'émigré, berceuses, etc... entre lesquels s'intercalent des mélodies liturgiques: un *Pater*, un *Miserere*, un *Stabat*. Entre temps, une jeune fille vient s'asseoir au piano, et nous joue quelques danses populaires, exemptes de toute virtuosité, exemptes quelquefois même de rythme, et d'une expression très étrange. Les voix que j'ai entendues là (celles de MM. Chah-Mouradian, Moughounian, Guissard, Marchisio) sont remarquables, mais il me serait bien difficile d'émettre un jugement sur cette musique insolite pour nous: des fioritures inutiles dans la mélodie, l'abus des modulations, peu de rythme, - une application exagérée aux «nuances» et souvent au *pianissimo*, mais une saveur originale, voilà quelques-unes de mes impressions. Je regrette que le R. P. Komitas, qui paraît être un musicien très expert, ait harmonisé à quatre parties chantées les airs populaires recueillis par lui. Le chœur encadrant le soliste change absolument la nature du morceau exécuté et transforme une chanson en lourde

Georg Frideric Handel: *Messiah*, 'Every valley' (ֆրանսերէն)
César Franck: *La Procession*
Ambroise Thomas: *Mignon*, արիա
Georges Bizet: *Carmen*, 'La fleur que tu m'avais jetée'
Արիաներ Gluck-էն եւ Donizetti-էն

Մենանուագներով կը մասնակցին ջութակահար Rodion Mendelevitch եւ դաշնակահարուհի Emily Williamson: Դաշնակի նուագակցութիւն՝ Emily Williamson:

- Samuel Langford, 'M. Chah-Mouradian's Concert,' *The Manchester Guardian*, 18 December 1911, No. 20,394, p. 5.

- «*Հայկական լուրեր*», *Լուսաբեր-Արեւ*, 4 *Յունուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1083, *էջ* 3:

## M. CHAH-MOURADIAN'S CONCERT

SAMUEL LANGFORD

Admirable national spirit was shown in the support accorded to the concert of the young Armenian tenor M. Chah-Mouradian in the Association Hall by his compatriots in Manchester on Saturday afternoon, and the support was well deserved. Born at Moush, in the very heart of Armenia, where he became a singer in the Church as early as his fifth year, M. Chah-Mouradian came later to live in Paris, and by competition obtained a scholarship at the Conservatoire; afterwards he was awarded the gold medal which carried with it the right to sing at the Opera, where he appeared and won approbation as Faust last season. He has a fine natural voice, which still lacks a little ease in certain notes and has something of the hardness that seems characteristic of Armenian speech. By far his finest effort seemed to us his singing of the Armenian national song Haiastan. Comfort ye and Every valley sounded oddly enough to English ears in the French language, but it was refreshing to hear it sung for once without a single hackneyed effect. It certainly does not need them. La Procession (César Franck), an air from Mignon, the 'Flower Song' from Carmen, and arias by Gluck and Donizetti, which, formed altogether a notable programme, seemed sung, for the most part, with a little too restrained expression. expression. But the tone was, nevertheless, so natural and full that when this touch of coldness is conquered, M. Chah-Mouradian may hope to take a very high place in his profession.

He was assisted by M. Rodion Mendelevitch, who gave violin solos, and to whom it is at present perhaps a strength that he has, if anything, too little restraint. He is one of the happy players whom public performance seems to inspire. The accompanist, Miss

Emily Williamson, has readiness but an amiability of style that hardly sorted well either with the keen violin playing or the singing, nor yet with Rhapsodie of Liszt, which she played as a solo. The accompanist, who has to face often unnatural difficulties almost casually, has need to be a fine artist. M. Mendelevitch played a selection of the delightful little solos that have been made familiar by M. Kreisler. Are not violinists all imitators of M. Kreisler nowadays! But the inevitable comparison did not take away the interesting in this playing, which showed fine rythm and intensity, and except in the last piece – Kreisler's Caprice viennois – an easy accomplishment.
*The Manchester Guardian*, 18 December 1911, No. 20,394, p. 5

## ՀԱՅԿԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

Լոնտոնէն կը գրեն մեզ հետեւեալը.

«Փարիզի Օպերայի թէնօր Պ. Արմենակ Շահ-Մուրատեան իւր Լոնդօնի Bechstein Hall-ի եւ Մանչիսթըրի Association Hall-ի կոնցէրտներով սպասուած եւ արժանի գնահատումը գտաւ Անգղիացի երաժշտասէր հասարակութեան կողմից եւս: Անգղիական մամուլը պատկառելի համարումով վերաբերուեց դէպ հանդիսականները զմայլեցնող` այդ հայ երգիչը, որ օժտուած է մեծ հմտութեամբ եւ կիրթ ու ուժեղ ձայնով: Այդ նկատմամբ իսկ *Morning Post*-ը, ի միջի այլոց ասում է. «...Այդ թէնօր ձայնի որակը չափազանց հաճելի է իր ծայրայեղ ընդարձակ ծաւալման ժամանակ»: Պարոն Շահ-Մուրատեանի պրօգրամը, կազմուած է *Mignon*-ից, *Faust*-ից, *Carmen*-ից հատուածներէն, որ մեծ վարդապետութեամբ կ'երգէ շնորհալի արուեստագէտը: Երգած *Հայաստան, երկիր դրախտավայրը*` նոյնպէս մեծ ընդունելութիւն գտաւ: Թէ Լոնտոնի եւ թէ Մանչէսթըրի հայ գաղութների ստուար մասը Պ. Շահ-Մուրատեանը լսելու բարեպատեհութիւնից օգտուել էր: Անհատապէս հայերը հպարտութեամբ կը մատնանշէին այդ տաղանդաւոր երգիչ օտարազգի շրջապատին:

Պ. Շահ-Մուրատեան մտադիր է առաջիկայում Եգիպտոս անցնիլ, ուր եւ Եգիպտոսի Հայերը առիթ պիտի ունենան անձամբ լսելու հայ բաղդի այս միակ շնորհալի տաղանդը:»
«*Հայկական լուրեր*», *Լուսաբեր-Արեւ*, 4 *Յունուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1083, *էջ* 3

### ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 31 ՅՈՒՆՈՒԱՐ 1912, ԳԱՀԻՐԷ

Երեկոյեան կը հասնի Գահիրէ:

- «*Շահ Մուրատեան ի Գահիրէ*», *Լուսաբեր-Արեւ*, 3 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1095, *էջ* 2:

- «*Ա. Շահ-Մուրատեան՝ մեր մէջ*», *Հոսանք*, 4 *Փետրուար* 1912, *Ա. տարի*, *Թիւ* 4, *էջ* 59-61։
- «*Անթել Հեռագրի լուրեր*», *Մալէշ*, 4 *Փետրուար* 1912, *էջ* 14։
- *Կոմիտաս վարդապետի* 24 *Փետրուար* [*Հ. տ.*] 1912 *Թուակիր Նամակը* (*Կ. Պոլիս*) *Վահան Մալէզեանին* (*Գահիրէ*)։ *Կոմիտաս. Նամակներ, տեքստը կազմեց, առաջաբանը եւ ծանօթագրութիւնները գրեց Ցօղիկ Բեքարեան, խմբագիր՝ Օֆէլիա Բեքարեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարան*, 2000, *էջ* 101։

## ՇԱՀ ՄՈՒՐԱՏԵԱՆ Ի ԳԱՀԻՐԷ

Շահ Մուրատեան, ահաւասիկ անուն մը որ հռչակաւոր դարձաւ ամբողջ Եւրոպայի մէջ, պատիւ բերելով Հայութեան ընդհանրապէս եւ Մշեցիութեան մասնաւորապէս, քանի որ Շահ Մուրատեան Մշոյ զաւակն է, Մշոյ սարերէն խլուած քաղցրաձայն քանարիկ, որ եղած է Ֆրանսական բեմերու զարդը, եւրոպական՝ հասկացողի եւ մասնագէտի հիացումներէ պարուրուած։

Բարիզի Օբէրան, որ այնքան ժլատ է արուեստագէտներու հանդէպ, սիրայօժար բացած է իր դռները Շահ Մուրատեանի առջեւ, որ հոն իր տեղին բռնած է Ֆաուսթի դժուարին դերով։

Շահ Մուրատեան, իր Անգլիա վերջին ճամբորդութենէն – ուր ընդունուած է նոյնպէս մեծ պատուով, ինչպէս ծանուցինք ժամանակին *Լուսաբեր*ի էջերուն մէջ – շաբթու, չորեքշաբթի իրիկուն եկաւ Գահիրէ, ուր պիտի մնայ ատեն մը իր հրաշագեղ դայլայլը վայլել տալու նաեւ մեզ։

Կը յուսանք որ ազնիւ Գահիրէցին պիտի գիտնայ պատշաճօրէն քաջալերել տեղւոյս մէջ եւս Հայազգի տաղանդը, Շահ Մուրատեանը, ինչպէս իր բարի սովորութեամբը քաջալերած է Կովկասեան թատերախումբերը, Կոմիտաս վրդ.ները եւլն., հակառակ անոր որ, կարգ մը յոռետես ազգայիններ զգուշացուցած են զինք քօնսէռ տալու ձեռնարկելէ, նկատելով որ նպաստներու շրջան մըն է որ կ՚անցնէ Եգիպտոսի հայութիւնը։

Շիտակը այս առարկութիւնը մենք պատուաբեր չենք նկատեր, արդեօք, Եգիպտահայը մնաց, մնաց Շահ Մուրատեանի մը տոմսակի զինի՞ն մնաց կ՚ըսէք։
*Լուսաբեր-Արեւ*, 3 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1095, *էջ* 2

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ՝ ՄԵՐ ՄԷՋ

Մէկ քանի օրէ ի վեր ուրախութիւնն ունինք մեր մէջ վայելելու ներկայութիւնը հայազգի նշանաւոր *թէնօր* Տիար Ա. Շահ-Մուրատեանի, որ քաղաքս եկած է նուագահանդէս մը տալու մտադրութեամբ։

Շահ-Մուրատեան մեր ցեղին պատիւ բերող արուեստագիտական ամենէն զարմանալի յատկութիւններէն մին է։ Մշեցի երիտասարդ մը որ կեանքի բոլոր արգելքներուն դաւակցութեանը կուրծք տալով՝ կարող հանդիսացած է – իր հրաշալի ձայնին կարծես հրաշագործ ուժէն տարուած – երթալ Փարիզի Քօնսէրուաթուառը մտնել, եւ հոն յաղթանակելով՝ Փարիզեան Օբէրայի բեմին վրայ իր *տէպիւ*ն ընել Ֆաուստի դերին մէջ։ Այսքանը կը բաւէ որ մարդ իր գլխարկը յարգանքով հանէ տաղանդի ու կորովի այն անզուգական մարմնացումին առջեւ որ Շահ-Մուրատեանն է։

Բայց ստորեւ կուտանք – Թէոդիկի *Տարեցոյց*էն քաղելով – իր ինքնակենսագրութիւնը որ շատ աւելին պիտի զգացնէ եւ մտածել տայ մեր ընթերցողներուն։

Տարակոյս չունինք թէ Գահիրէի Հայութիւնը խանդավառ ընդունելութիւն մը պիտի ընէ Շահ-Մուրատեանին։

***Հոսանք***, 4 ***փետրուար*** 1912, ***Ա. տարի***, ***թիւ*** 4, ***էջ*** 59-60

## ԱՆԹԵԼ ՀԵՌԱԳՐԻ ԼՈՒՐԵՐ

Շահ Մուրատեան վերջապէս հասաւ Գահիրէ չորեքշաբթի կէս օրէն ետքը եւ ընդունուեցաւ Տեարք՝ Մալէզեանի, Առաքէլ Փափազեանի եւ այլոց կողմէ։

Շահ Մուրատեան իր հետ բերած է պատկառելի գումար մը դիմանալու համար տալիք քօնսէրներուն ծախքին, առաջուընէ լսած ըլլալով Գահիրէցւոց Հայասիրութիւնը։

***Մալէչ***, 4 ***փետրուար*** 1912, ***էջ*** 14

## ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՆԱՄԱԿԸ (ՊՈԼԻՍ) ՎԱՀԱՆ ՄԱԼԷԶԵԱՆԻՆ (ԳԱՀԻՐԷ)

**(հատուած)**

1912, 24 փետրուար, Կ. Պոլիս
Pangalti N 83 (47)

Սիրելի բարեկամ,
պ. Վահան Մալէզեան

Այժմ եգիպտահայերու պատուական հիւրն է ընտիր երգիչ Շահմուրադեանը, որու ունեցած աննախընթաց յաջողութիւններն ինձ անչափ ուրախացուցին, եւ կը պարծիմ իրաւամբ, երբ օտարները մեր մասին գիտութեան եւ գեղարուեստի

միջոցաւ է, որ լաւ գաղափար կը կազմեն, եւ այսպիսի գործունէութիւնն անջինջ ու քաղաքակրթիչ դեր ունի։ Շահ-Մուրադը, որ հայ հողին սերմն է, հայ ջրովը սնուած եւ հայ արեւով կիզուած, ունի ընտիր, պայծառ ու եռանդուն ձայն. հայերուս համար որքա՜ն պարծենալիքներ պիտի առթէ տակաւին նա, որ իր գործունէութեան գարնան շէմքին վերայ է կայնած. օտարները նախանձեցան եւ դաւեցին, բայց մենք պարտ ենք փայփայել եւ ջամբել։
*Կոմիտաս. Նամակներ*, *տեքստը կազմեց*, *առաջաբանը եւ ծանօթագրութիւնները գրեց Ցօղիկ Բեքարեան*, *խմբագիր՝ Օֆէլիա Բեքարեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարան*, 2000, *էջ* 101

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 5 ՓԵՏՐՈՒԱՐ 1912, ԳԱՀԻՐԷ**

Կ'այցելէ *Լուսաբեր-Արեւ* եռօրեայ լրագիրի խմբագրատունը։

- «*Հայկական լուրեր*», *Լուսաբեր-Արեւ*, 6 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1096, *էջ* 3։

## ՀԱՅԿԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

Երէկ տպարանս այցելեց հռչակաւոր երգիչ Շահ-Մուրատեանց, որ ինչպէս ծանուցինք, քաղաքս եկած է քօնսէռ մը սարքելու համար։

Համակրելի երիտասարդ մըն է իր արտաքինով եւ խօսուածքով, որ հակառակ իր եւրոպականացած արուեստագէտի երեւոյթին, կը պահէ առոյգ Մշեցիի մը կորովի դիմագիծը եւ տոհմիկ շեշտը։

Յարգելի հիւրին հետ ժամէ մը աւելի կը տեսակցինք սիրալիր կերպով, որոյ ընթացքին, ան շնորհակալութիւն կը յայտնէ Եգիպտահայ արուեստասէրներէ գտած ջերմ ընդունելութեանը համար, եւ կը յայտարարէ թէ շուրջ 15 օրէն յոյս կայ որ կարգադրուի ամէն բան ու իր քօնսէռը տայ։

Բազմակողմանի զարգացումի տէր մէկու մը հետ խօսակցելու հաճոյալի տպաւորութիւնն ալ կը ձգէ մեր վրայ, խօսելով՝ որքան ձեռնհասօրէն երաժշտութեան ու երգի արուեստի վրայ, նոյնքան մը եւ գիտակցօրէն քաղաքական եւ ազգային շատ մը խնդրաց վրայ։

Կը մաղթենք որ, Շահ-Մուրատեանց ինչպէս այլուր, նոյնպէս եւ հոս գոնէ համակրանքի տաք մթնոլորտ մը, քաղցր յիշատակներ տանելով մեզմէ Աղեքսանդրիա ուր մտադիր է մեկնիլ ամսոյս վերջերը եւ անկէ՝ Բարիզ, ստանձնելու նոր յանձնառութիւններ Բարիզեան բեմերու վրայ։

«*Հայկական լուրեր*», *Լուսաբեր-Արեւ*, 6 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1096, *էջ* 3

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 12 ՓԵՏՐՈՒԱՐ 1912, ԳԱՀԻՐԷ**

Կ'այցելէ Պուլաքի Գալուստեան Ազգային Վարժարանը, ընկերակցութեամբ Կարապետ պէյ Շէրիտճեանի: Հանդիպում կ'ունենայ աշակերտութեան եւ ուսուցչական կազմին հետ, որուն ընթացքին կ'երգէ քանի մը հայերէն երգեր, դաշնակի նուագակցութեամբ Արման Օգոստինոսեանի: Դպրոցին կը տրամադրէ իր յառաջիկայ նուագահանդէսի 20 ձրի տոմսակներ: Վարժարանի տնօրէն Մինաս Ծալեան նամակով մը կը յայտնէ իր շնորհակալութիւնը:

- «*Շահ-Մուրատեան նուագահանդէսը*», *Հոսանք*, 11 *Փետրուար* 1912, *Ա. տարի*, *Թիւ* 5, *էջ* 76:
- «*Հայկական լուրեր*», *Լուսաբեր-Արեւ*, 13 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1099, *էջ* 3:
- «*Անտիպ նամակներ*», *Ջահակիր*, 9 *Հոկտեմբեր* 1969, *նոր շրջան*, *Թիւ* 299, *էջ* 5:

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Շահ-Մուրատեան երկուշաբթի օր Կարապետ պէյ Շէրիտճեանի հետ այցելած է Գալուստեան վարժարանը եւ երկսեռ աշակերտներու փափաքին գոհացում տալով՝ մէկ քանի հայերէն երգեր երգած է:
*Հոսանք*, 11 *Փետրուար* 1912, *Ա. տարի*, *Թիւ* 5, *էջ* 76

## ՀԱՅԿԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

Հայազգի թէնօր Տիար Շահ Մուրատեան Կարապետ պէյ Շէրիտճեանի ընկերակցութեամբ երէկ այցելեց Պուլաքի Ազգային վարժարանը եւ ընդունուեցաւ տնօրէնին եւ ուսուցչական մարմնոյն հետ:

Շահ Մուրատեան Տնօրէնին կողմէ ներկայացուեցաւ երկսեռ ուսանողութեան, որոյ ի պատասխան Շահ Մուրատեան յուզեալ շեշտերով շնորհակալութիւն յայտնեց եւ ընդհանուր փափաքին վրայ քանի մը հայերէն երգեր երգեց իր զմայլելի ձայնովը, որուն ընկերացաւ Տ. Օգոստինոսեան դաշնակով:

Շահ Մուրատեան զգացուած նոյնպէս ուսանողութեան կողմէ գտած սիրալիր ընդունելութենէն եւ ուզելով հոգեկան հաճոյք մը պատճառել անոնց 20 ձրի տոմսակ տրամադրած է անձնուիրաբար ուսանողութեան, իր յառաջիկայ երկուշաբթի գիշերուան քօնսէրին:
*Լուսաբեր-Արեւ*, 13 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1099, *էջ* 3

## ՄԻՆԱՍ ԾԱԼԵԱՆԻ ՆԱՄԱԿԸ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻՆ

Մեծայարգ Տիար Շահ-Մուրատեան
Աստ
Տէր,

Յանուն Գալուստեան Ազգ. Վարժարանի երկսեռ ուսանողութեան՝ կը փութամ իմ ամենաջերմ շնորհաւորութիւնները յայտնել Ձեզ այնքան սիրալիր հրաւէրով, վայելելու գեղարուեստական անմոռանալի վայրկեաններ, որոնց տպաւորութիւններով պիտի ապրինք միշտ Տարօնի սոխակիդ յաջողութիւններով հպարտ:

Ընդունեցէք, տաղանդաւոր վարպետ, մեր ամենախորին հիացման եւ յարգանքի հաւաստիքը:

Տնօրէն Գալուստեան Ազգ. Վարժարանի
Մ. ԾԱԼԵԱՆ
*Ջահակիր*, 9 *Հոկտեմբեր* 1969, *նոր շրջան*, *Թիւ* 299, *էջ* 5

### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 12, ԵՐԵՔՇԱԲԹԻ, 13 ԿԱՄ ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 14 ՓԵՏՐՈՒԱՐ 1912, ԳԱՀԻՐԷ

Կ'այցելէ Պօղոս Նուպար փաշային, ուղեկցութեամբ Կարապետ պէյ Շէրիտճեանի: Պօղոս փաշա կը խոստանայ ընտանեօք ներկայ գտնուիլ երգահանդէսին:
- «*Քօնսէռ. Թէնօռ Շահ Մուրատեան*», *Լուսաբեր-Արեւ*, 15 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1010, *էջ* 2:

## ՔՕՆՍԷՌ
## ԹԷՆՕՌ ՇԱՀ ՄՈՒՐԱՏԵԱՆ

Տիար Շահ Մուրատեան, Կարապետ պէյ Շէրիտճեանի միջոցաւ ներկայացած է Վսեմ. Պօղոս փաշայի, որ երկար եւ սիրալիր տեսակցութիւն մը ունեցած է իրեն հետ, այս վերջինը ծանօթ ըլլալով իրեն արդէն Բարիզէն: Վսեմ. փաշան խոստացած է Բշ. Գիշեր ընտանեօք ներկայ գտնուիլ իր քօնսէրին:
*Լուսաբեր-Արեւ*, 15 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1010, *էջ* 2

### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 19 ՓԵՏՐՈՒԱՐ 1912, ԳԱՀԻՐԷ

Գահիրէի Թէաթր Ապպասի մէջ՝ Շ-Մ.ի առաջին երգահանդէսը Եգիպտոսի մէջ:

Յայտագիր.
Hector Berlioz: *La Damnation de Faust*, հատուած, մեներգ՝ Շ-Մ.
Ernest Reyer: *Sigurd*, արիա, մեներգ՝ Շ-Մ. (կը կրկնուի)
Giacomo Puccini: *Tosca*, արիա, մեներգ՝ Շ-Մ. (կը կրկնուի)
Gaetano Donizetti, մեներգ՝ Շ-Մ.
Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ. (կը կրկնուի)
Charles Gounod: *Roméo et Juliette*, զուգերգ՝ օր. Բակպիէ (սոփրանօ) եւ Շ-Մ.։
Pablo de Sarasate: *Պոհեմական եղանակներ*, ջութակ՝ պր. Կորսքի։
Թաւջութակ՝ պր. Պօնինի
Դաշնակ՝ պր. Ումպերթօ Վալանթինօ

- «*Շահ Մուրատեանցի քօնսէրը*», *Լուսաբեր-Արեւ*, 10 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1098, *էջ* 3։

- «*Շահ-Մուրատեան նուագահանդէսը*», *Հոսանք*, 11 *Փետրուար* 1912, *Ա. տարի*, *Թիւ* 5, *էջ* 76-78։

- «*Քօնսէր. Թէնօր Շահ Մուրատեան*», *Լուսաբեր-Արեւ*, 15 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1010, *էջ* 2։

- «*Քօնսէր Շահ-Մուրատեան*», *Մալէշ*, 18 *Փետրուար* 1912, *էջ* 14։

- «*Շահ-Մուրատեան նուագահանդէսը*», *Հոսանք*, 18 *Փետրուար* 1912, *Ա. տարի*, *Թիւ* 6, *էջ* 88։

- *Յովհաննէս Սեթեան*, «*Մեծ հայ արուեստագէտին*», *Հոսանք*, 18 *Փետրուար* 1912, *Ա. տարի*, *Թիւ* 6, *էջ* 88-89։

- *Գ. Հ.*, «*Քօնսէր. Շահ-Մուրատեան*», *Լուսաբեր-Արեւ*, 20 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1102, *էջ* 2-3։

- *Յովհաննէս Սեթեան*, [*Նամակ*], *Լուսաբեր-Արեւ*, 22 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1103, *էջ* 1։

- «*Շահ-Մուրատեան օտար կարծիքին առջեւ*», *Հոսանք*, 3 *Մարտ* 1912, *Ա. տարի*, *Թիւ* 7, *էջ* 108-109։

- *Հայկանոյշ Պալեան*, «*Ձայներ որ անցան...*», *Սուրէն Պարթեւեան*, *Եգիպտահայ տարեցոյցը*, *Ա. տարի*, 1914, *էջ* 142։

## ՇԱՀ ՄՈՒՐԱՏԵԱՆՑԻ ՔՕՆՍԷՌԸ

Հայազգի նշանաւոր թէնօր, Շահ-Մուրատեանցի քօնսէռը տեղի պիտի ունենայ յառաջիկայ երկուշաբթի, 19 Փետրվար Թէաթրը Ապպաս։ Տեղւոյս արուեստասէրներէ կազմուած յատուկ մասնախումբ մը արդէն կ՚աշխատի կարգադրութեանց։ Շաբթուս կը հրատարակենք յայտագիրը, որ ճոխ է ամէն կերպով։
*Լուսաբեր-Արեւ*, 10 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1098, *էջ* 3

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Յառաջիկայ երկուշաբթի իրիկուն, Փետրուար 19, Թէաթր Ապպասի մէջ տեղի պիտի ունենայ Շահ-Մուրատեանի նուագահանդէսը մասնակցութեամբ Օր. Բաքպիէի, Պրիւսէլի Մօնէ թատրոնէն, դաշնակահար Մ. Վալանթինօի, ջութակահար Մ. Կօրսքիի եւ թաւջութակահար Մ. Պօնինիի։ Շահ-Մուրատեան պիտի մեներգէ Պէռլիօզի *Տանասիօն տը Ֆօսթը*, Ռէյէրի *Սիկիւռ*էն, Բուչչինիի *Թօսքա*էն կտորներ, *Հայաստա՜ն*, ֆրանսերէնի վերածուած հայ ժողովրդական երգ մը, Տօնիզէթթիէն կտոր մը, եւ Կունօէն *տիւօ* մը Օր. Բաքպիէի հետ։

Գահիրէի հայերը, երկուշաբթի իրիկուն, Թէաթր Ապպաս պիտի դիմեն խուռներամ, ծափահարելու համար հայազգի նշանաւոր *թէնօռ*ը, որ սքանչացուցած է արդէն հոս, ընկերական կամ ընտանեկան շրջանի մէջ, զինք լսելու բաղդն ունեցողները։

***Հուանք***, 11 ***Փետրուար*** 1912, ***Ա. տարի***, ***Թիւ*** 5, ***էջ*** 76

## ՔՕՆՍԷՌ
## ԹԷՆՕՌ ՇԱՀ ՄՈՒՐԱՏԵԱՆ

Ականաւոր Հայազգի թէնօր Շահ Մուրատեանի այնքան սպասուած քօնսէռը կը տրուի յառաջիկայ երկուշաբթի գիշեր, Ապպասի թատրոնը ժամը 9ուկէսին ճոխ յայտագրով մը եւ մասնակցութեամբ Օր. Բաքպիէի, Պրիւսէլի թատրոնէն եւ Պ.Պ. Վալանթինօի, Կորսքիի, եւ Պօնինիի։ Տաղանդաւոր երգիչը պիտի երգէ՝

Պէրլիօզի *Տամնասիօն Ֆոսթ*ը, Րէյէրի *Սիկուր*էն, Բուչչինիէն եւ Տօնիձէթթիէն կտորներ։

Նոյնպէս պիտի երգէ ՀԱՅԱՍՏԱՆ հայրենաշունչ երգը։

Տոմսակները սպառելու մօտ են արդէն։ Վստահ ենք որ յարգելի Գահիրէցիները խուռներամ պիտի փութան երկուշաբթի գիշեր Ապպասի թատրոնը, ունկնդրելու Հայ տաղանդը եւ միեւնոյն ատեն հաճելի ժամանց մը ունենալու։

***Լուսաբեր-Արեւ***, 15 ***Փետրուար*** 1912, ***Ը. տարի***, ***Թիւ*** 1010, ***էջ*** 2

## ՔՕՆՍԷՌ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

ԳՐԻԳՈՐ ՀԱՄԲԻԿԵԱՆ (ՌԱՈՒԼ ԲՕՆՇՕՆ)

Մշոյ սարերէն սոխակն է թռեր
Բուրգերու ոտքին պահիկ մը թառեր.

Հայուն ծոցիկէն տարիներ, դարեր
Ասանկ անոյշ ձէն ծնունդ չէ առեր։
Ապպասի թատրոն վազեցէք Հայեր,
Ձեր ընտանիքով ճիշդ վաղը գիշեր,
Ունկնդրել անոր ականջներով ձեր
Որուն Եւրոպան ամբողջ հիացեր։
*Մալէզ*, 18 *Փետրուար* 1912, *էջ* 14

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Երկուշաբթի գիշեր, Թէաթր Ապպասի մէջ, *թէնօր* Շահ-Մուրատեան իր զմայլելի ձայնովը թովեց, սքանչացուց, գնովցուց բոլոր ներկաները։ Մեր հեթանոս գրչին համար յանդգնութիւն կը նկատենք գնահատութիւնը փորձել Շահ-Մուրատեանի պարզած տիրական արուեստին։ Ձայնին անպատում գեղգեղանքը միայն կը տարփողենք։ Հրաշալի՛ օրկան մը, իսկապէս, որ ամենէն յորդ ու հզօր ելքերէն մինչեւ ամենանուրբ նուաղումները կը մնայ մաքուր, պայծառ ու քաղցր, լեռնակունքի անապակ ջուրի մը պէս։ Շահ-Մուրատեան իր երգած առաջին կտորէն իսկ (*Տանապիօն տը Ֆօսթ*) տուած էր իր տաղանդին ամբողջ չափը, թէեւ ներկայ հասարակութիւնը մեզ քիչ մը յուսախաբ ըրաւ իր արուեստագիտական զգացումին վրայ, այդ առաջին շքեղութիւնը գաղջ ծափահարութեամբ մը ընդունելէ ետքը ամենաբուռն ծափերու արժանացնելով յաջորդ թիւը՝ ջութակի վրայ Մ. Կորքիի ճարտար մէկ աճպարարութիւնը Սարազաթի *Պոհեմական եղանակներ*ուն։ Բայց Շահ-Մուրատեան իր յաջորդական երեւումներուն մէջ կատարելապէս տիրացաւ գերեց ներկաներուն հիացումը։ Խօսքը չենք ըներ յայտագրին միւս թիւերուն, որոնք անհրաժեշտ թէեւ հաճելի միջակութիւններ էին։ Իսկ մեր սիրելի վարպետին, Տիար Յ. Սեթեանի, կը թողունք ստորեւ հրատարակուած իր յուզիչ տողովը թարգման կանգնիլ ազգային զգացումի այն խռովքին զոր Շահ-Մուրատեան առթեց իր հայրենակիցներուն։ - Թէաթր Ապպասի հսկայ թատրոնը մեծ մասամբ լեցուած էր, եւ երեկոյթը, կրնանք ըսել, կատարեալ յաղթանակ մը եղաւ Շահ-Մուրատեանի համար։

Մեր յաջորդ թիւով պիտի տանք թարգմանութիւնը այն գնահատական յօդուածներուն զոր տեղական օտար մամուլը նուիրեց Շահ-Մուրատեանի։

Շահ-Մուրատեան մտադիր է Աղէքսանդրիա ալ նուագահանդէս մը տալ՝ ուր վստահօրէն նոր յաղթանակ մը պիտի տանի։
*Հոսանք*, 18 *Փետրուար* 1912, *Ա. տարի*, *Թիւ* 6, *էջ* 88

# ՄԵԾ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏԻՆ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՍԵԹԵԱՆ

Սիրելի Շահ-Մուրատեան,

Տուրքեր, ընծաներ եւ սպասներ կան որ չեն կրնար փոխարինուիլ: Ձեր մատուցած ծառայութիւնը, ձեր մատակարարած հրճուանքը անոնցմէ են:

Դուք անհունօրէն գեղեցիկը, դուք անճառելի կերպով վսեմը ըմբոշխնել տալու անգին սպասը կ'ընծայէք մեզի. շնորհակալ ենք:

Անցեալ օր, երբ դուք երգեցիք *Հայաստանը* մատաղատի հայ ուսանողներուն, խորհրդաւոր եւ սրտաշարժ բան մը տեղի ունեցաւ, զոր ամենքս ալ նշմարեցինք. բոլոր այդ աղածրի հայորդիներուն գոյնը փոխուեցաւ. անոնց արիւնը գլուխնին խուժեց, կամ անձկութեամբ եւ հեշտութեամբ խառն սարսուռ մը տժգունեցուց անոնց այտերը: Արուեստագէտի ձեր հզօր կարողութիւնը անոնց երեսին մոյնքը յեղաշրջելու, անոնց մազերուն մէջէն յուզմունքի եւ հիացման սրսփանքը անցնել տալու հրաշքը գործեց: Առանց գիտնալու թէ ինչ կ'ըլլային, թովուեցան հմայուեցան, վերացան, յափշտակուեցան՝ իրենց հայրենիքին անունը պոռացուած լսելով այնպէս որպէս դուք միայն գիտէք պոռալ: Այդ աղաղակը, «Հայաստա՜ն», պիտի ըսէիր թէ անոնք կարծեցին թէ իրենք էին արձակողը, եւ իրենց մատղաշ կուրծքը ուժգին ուժգին տրոփեց ու հեւաց, ա՜յնչափ խռովք, ա՜յնչափ արցունք, ա՜յնչափ թրթիռ կար ձեր ձայնին մէջ, եւ դրիք անոնց լանջքերուն տակ: Ու ես կը հաւատամ որ անոնք այսուհետեւ, ամէն անգամ որ լսեն կամ կարդան այդ բառը, իրենց բնագաւառին քաղցրիկ անունը, ձեր ձայնը տակաւին լսել պիտի կարծեն, ու չպիտի դադրին սիրելէ այդ անունը, ու ձերն ալ, ազնիւ պարոն:

Գալով մեզի, չեմ կարող նկարել ձեզի հմայքի բովանդակ նոր տիեզերքը զոր դուք, գոգցես դիւթի գաւազանով, կը ծնցունէք մեր հոգւոյ մէջ եւ որ անճառ արտակացութեամբ մը կը լեցնէ զմեզ, միայն յայտարարեմ ձեզի որ մեր ուրախութիւնը այնչափ է տեսնելով հայ անունին ձեզմով անգամ մը եւս փառաւորումը աշխարհի առջեւ: Այո, դուք պարծանք մը եւս կ'աւելնաք մեր ցեղին պարծանքներուն վրայ, եւ ձեր գեղարուեստի մէջ կորզած դափնիները թաց են մեր խնդութեան արցունքներովը: Ապրի՜ք, շատ ու երջանիկ ապրի՜ք:

Արդէն արուեստի այդչափ հզօր ներկայացուցիչ մը լոկ պիտի բաւէր յափշտակելու համար, մեր խելագար ծափերուն հետ, նաեւ մեր հիացիկ խանդավառութիւնը եւ արտասուաթուրմ աղապատանքը: Բայց մենք բախտաւորութիւնը ունեցանք ձեզի հետ խօսելու եւ ձեր անձը ճանչնալու, եւ գնահատեցինք, ձեր մէկ քանի անկեղծիկ բառերուն վրայ, ամէն ինչ որ կայ ճշմարտապէս հայրենասիրական եւ գերազանցապէս արժանաւոր ձեր մեծատաղանդ անձնաւորութեան մէջ: Եւ երբ կը հաստատենք որ՝ ձեր մէջ՝ արուեստագէտը նոյնիսկ

թերեւս տեղի կուտայ ազգասէրին, երբ կը տեսնենք որ, երբ դուք մեր հայրենիքը կ'երգէք, ձեր սիրտը, ձեր հագագը, ձեր կուրծքը, ձեր կենդանի քնարը մէկ խօսքով, այնպիսի շեշտ մը կ'առնեն, որ կուլայ եւ կը լացնէ, ստոյգ չափը տալով հայրենիքին սիրովը բորբոքող ձեր զգացումներուն, այն ատեն ձեր տաղանդին համար մեր զգացած սիրոյն, մեր խանդաղատանքին, մեր սքանչացումին վրայ կ'աւելնայ այլապէս նուիրական բան մը. պաշտումը:

Թոյլ տուէք ուրեմն, սիրելի հայրենակից, թոյլ տուէք որ ձեզի ըսենք թէ ձեր տաղանդը պաշտելի է մեզի համար:

***Հոսանք***, 18 ***Փետրուար*** 1912, ***Ա. տարի***, ***Թիւ*** 6, ***էջ*** 88-89
***Լուսաբեր-Արեւ***, 22 ***Փետրուար*** 1912, ***Ը. տարի***, ***Թիւ*** 1103, ***էջ*** 1

## ՔՕՆՍԷՌ
## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Գ. Հ.

Թէաթրը Ապպասի ընդարձակ թատրոնը երէկ գիշեր թնդաց որոտընդոստ ծափերովը հոծ բազմութեան մը, ամէն անգամ որ աշխարհահռչակ հայազգի թէնօր Շահ-Մուրատեան, իր սոխակային դայլայլովը հաճելի անակնկալի մը առջեւ կը դնէր Գահիրէցիները, որոնցմէ ընտրեալ բազմութիւն մը ժամադիր եղած էր այդ հոգեկան-գեղարուեստական անմոռանալի երեկոյթին:

Հակառակ Կարգադիր Մասնախումբի անդուլ ջանքերուն օրերէ իվեր, թէեւ պարապ օթեակներ եւ թիկնաթոռներ կ'երեւէին դուն ուրեք, սակայն թատրոնին ընդարձակութիւնը նկատի առնելով պէտք է ըսել որ բազմութիւնը պատկառելի էր:

Առաջնորդ Ս. Հայրը անձամբ ներկայ էր, ինչպէս նաեւ Վսեմ. Պօղոս փաշան, Տիգրան խան Քէլէկեան, Հայ Քահանայից դասը, ազգ. Վարժարանաց ուսուցչական մարմինը աշակերտական պատգամաւորութեամբ մը, տեղական մամուլի գրեթէ բոլոր ներկայացուցիչները, գաղիացի եւ իտալացի շատ մը երգահաններ եւ արուեստագէտներ: Իսկ Օթեակները կը փայլէին կանացի արդուզարդի ճոխութեան մը մէջ, մեծ մասով գաղութիս Հայուհիներ եւ եւրոպացուհիներ:

Խլացուցիչ ծափերով կ'ողջունուի համակրելի արուեստագէտին մուտքը, որուն *Ֆոսթ*ը նոյնքան մը եւ աւելի խանդավառութեան մը մէջ կը վերջանայ:

Պ. Կորսքի, ճշմարիտ արուեստագէտ ջութակահար մը, քանիցս ի բեմ հրաւիրուեցաւ, որը իր ճպոտին ճարտարութեամբը քօնսէրին փայլը աւելցուց:

Օր. Բակպիէն, առ ի չգոյէ լաւագոյնի ճարուած բերուած այդ երգչուհին, իր մեներգովը շատ անախորժ տպաւորութիւն մը թողուց, իր հագագային ճիչերովը:

Պ. Շահ-Մուրատեան ապա երգեց *Միկուր*էն եւ *Թուքա*էն մէյմէկ կտոր, որոնք կրկնուեցան:

*Հայաստան*ը, որ երգեց այնքան խանդավառօրէն հմայեց ներկաները:

Պ. Շահ-Մուրատեան իր ամբողջ հոգին, էութիւնն էր որ կը դնէր այդ ցնցող երգին ելեւէջներուն մէջ:

Տառապող Մշեցին էր կատարելապէս որ արուեստագէտ կոկորդէ մը Հայաստանը կը ցայտեցնէր, զայն գալարելով, իր սրտին, հոգիին լարերուն մէջ՝ պահել ջանալով, կարծես չուզելով իրմէ զատել, թողուլ այդ սիրական Հայաստանը:

Ելեքտրականացած բազմութեան մը երկարատեւ ծափահարութիւններուն մէջ Շահ-Մուրատեան կրկնեց այդ հոգեզմայլ երգը, որ իր քօնսէռին *քլու*ն եղաւ:

Յարգելի արուեստագէտը թէեւ *Կռունկ* երգն ալ պատրաստած էր երգելու, բայց կ'երեւի յոգնեցուցիչ *պիս*երը պարտադրեցին զինքը զանց առնել:

Վերջին կտորը, *Ռօմէօ-Ժիւլիէթ*ը, լաւ անցաւ, թէեւ լաւագոյն պիտի անցնէր եթէ եւրոպացի երգչուհին իր ճիչերովը չմասնակցէր եւ այդպէսով չհարկադրէր Պ. Շահ-Մուրատեանը մեծ ճիգեր ընելու, իր ձայնը զերծ պահելու համար այդ ճիչերու անախորժ ազդեցութենէն:

Յանուն Կարգադիր մասնախումբի փունջ մը ձօնուեցաւ Օր. երգչուհիին եւ Պ. Շահ-Մուրատեանին սիրուն մետալ մը ոսկիէ, որուն մէկ կողմը քանդակուած է Սփինքսի խորհրդաւոր գլուխ մը եւ միւս կողմը՝ վերտառութիւն մը ի յիշատակ Պ. Շահ-Մուրատեանի Եգիպտոս այցին:

Բազմարդիւն ուսուցիչ Տ. Յ. Սեթեան եւս իր կողմէ մատոյց գրական գեղեցիկ գրուածք մը ինքնագիր, Պ. Շահ-Մուրատեանի տաղանդէն ներշնչուած:

Անկուշտ եւ անյագ տպաւորութեան մը տակ կը մեկնէինք թատրոնէն, կէս գիշերը անցած, հպարտ՝ Հայ եւ Տէր ըլլալնուս համար, այնպիսի Մեծ Տաղանդի մը որուն գեղեցիկ ձայնէն Եւրոպան անգամ հմայուած էր:

Պ. Շահ-Մուրատեան շաբթուս կը մեկնի Աղեքսանդրիա, հոն եւս հնչեցնելու համար իր անուշիկ գեղգեղանքը:

***Լուսաբեր-Արեւ***, 20 **Փետրուար** 1912, ***Ը. տարի***, ***Թիւ*** 1102, ***էջ*** 2-3

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՕՏԱՐ ԿԱՐԾԻՔԻՆ ԱՌՋԵՒ

*Ստորեւ թարգմանաբար կ'արտատպենք տեղական օտար թերթերու կողմէ Շահ-Մուրատեանի նուիրուած գնահատական տողերը, ցոյց տալու համար որ մեծատաղանդ թենօրին մեր ձօնած գովեստները ազգասիրական չափազանցութեան սովորական բնոյթը չունեցան բնաւ, ինչպէս պատահած է յաճախ ուրիշ հայազգի արուեստագէտներու պարագային մէջ:*

Հրաշալի թենորին՝ Պ. Շահ-Մուրատեանի հռչակը իր Գահիրէ գալէն առաջ հասած էր մեզի։

Յորմէհետէ երիտասարդ արուեստագէտը Գօնսէրուաթուարէն ելաւ, փարիզեան մամուլը միահամուռ լաւագոյն ընդունելութիւնն ըրած էր Օբէրայի նոր *բանսիօնէռ*ին։

Նշմարեցին մանաւանդ, եւ մենք ալ մեր կարգին կրցանք դիտել, «իր ձայնին հաճելի թրթռացումը, արտայայտութիւնը, հնչականութիւնը»։

Մէկ խօսքով՝ յաղթանակ մը եղաւ՝ որուն մենք կրկնութիւնը վայելեցինք երէկ գիշեր։

... Պ. Շահ-Մուրատեանի մասին ոչինչ պիտի ըսենք. արուեստագէտ մըն է բառին բոլոր նշանակութեամբը, որ մեզի ցոյց տուաւ, այլազան, նոյնիսկ պիտի ըսեմ անկապակից գործերու մէջ, իր տաղանդին չափը։

... Ներկաներուն հայրենասիրութիւնը հաճելիօրէն հմայուեցաւ լսելով *Հայաստանը*, ժողովրդական երգ մը։ Ինէ հեռու է քաղաքանութեան ոեւէ գաղափար, բայց կը կարծեմ որ շատ կ՚անտեսեն կոր հայ ժողովրդական երգը։ Անոր մեղեդին ախորժելի է, եւ հայ լեզուին ալ գեղեցկութիւնը թոյլատու է այնպիսի նուագներու որ երբէք զուրկ չեն հմայքէ։

*Ժուռնալ տիւ Գէռ*

* * *

Փառաւոր սրահ մը, երկուշաբթի գիշեր, ծափահարելու համար հայազգի թենոր Շահ-Մուրատեանը, որ առաջին անգամ կ՚երեւար Գահիրէի հասարակութեան առջեւ։ Բարեբաղդ եմ ըսելու որ իր յաջողութիւնը եղաւ անվիճելիօրէն ահագին։ Ամէն մէկ կտորէն վերջ բազմիցս բեմ հրաւիրուեցաւ եւ երկու անգամ ալ կրկնելու ստիպուեցաւ։ Իր կուրծքէն թռող առաջին խազերուն հետ, սրահէն տաք համակրութեան մթնոլորտ մը բարձրացաւ իրեն, եւ նուագահանդէսին մինչեւ վախճանը խանդագին ծափերու շարք մը եղաւ զոր եւ ոչ մէկ վերապահում վրդովեց։

Անձնապէս, ես շատ ճաշակեցի Պ. Շահ-Մուրատեանի ձայնը։ Անոր թրթռացումը շատ քաղցր է եւ շատ սիրուն, անոր յստակութիւնը հարուստ է, կատարելապէս լաւ աշխատուած է, կէս երանգներուն մէջ շատ նուրբ եւ ախորժելիօրէն երբներփուած [հաւանաբար՝ երփներանգուած կամ երփներկուած, Հ.Ա.], ճշգրիտ, հաւասար, յստակ եւ հնչուն։ Մեծ ապագայ ունեցող երգիչ մըն է, եւ լաւ գործ մը պիտի ըլլար՝ եթէ իրաւ է, ինչպէս կ՚ըսէին նրբանցքներուն մէջ, թէ Մ. Պարօշ միտք ունի անոր հետ պայմանագրուելու յառաջիկայ տարուան համար։

Շահ-Մուրատեան նուագահանդէսը, որուն Գահիրէի ամբողջ հայութիւնը ներկայ գտնուեցաւ, առաւելութիւնն ունեցաւ նաեւ մեզի անգամ մըն ալ ցոյց տալու գեղեցիկ համերաշխութեան մը տեսարանը։

*Բռօկրէ*

* * *

Ամենափայլուն սրահի մը առջեւ, երկուշաբթի գիշեր տեղի ունեցաւ Պ. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը, որ եղաւ ստուգիւ ճշմարիտ յաղթանակ մը: Արուեստագէտը, որ օժտուած է ձայնական հզօր յատկութիւններով, մեծապէս տօնուեցաւ: Ֆաուսթի *Տանասիօն*ին եւ *Միկիւռ*ի եղանակին մէջ խիստ շատ գնահատուեցաւ, նոյնպէս *Թօսքայ*ի ռոմանսին մէջ զոր Պ. Շահ-Մուրատեան ստիպուեցաւ կրկնել: Ճշմարիտ խելայեղութիւն մը առաջ բերաւ իր *Հայաստան*ը, ժողովրդական ու հայրենաբաղձիկ երգ մը զոր հրաշալի կերպով տուաւ, ներկաներն ալ մեծ մասամբ հայեր, չի սակարկեցին իրենց ծափերը: Մասնախումբը, որ կազմակերպած էր այս նուագահանդէսը, պատուական թենօրին նուիրեց ոսկիէ գեղեցիկ մետայլ մը, պատշաճ արձանագրութեամբ, ի յիշատակ այդ երեկոյթին:
*Իմբարցիալէ*

* * *

Փարիզի Մեծ Օբերայի թենօր եւ Գօնսէրվաթուարի առաջին մրցանակ Պ. Շահ-Մուրատեանի անձնաւորութիւնը, ընտրանքով կազմուած յայտագրի մը բաղադրութիւնը, ընկերներու որ իրենց մասնակցութիւնը բերին՝ յատկութիւնները, ձեռք ձեռքի տուած՝ ապահովցուցին փայլուն յաջողութիւնը նուագահանդէսին որ երկուշաբթի գիշեր Թէաթր Ապպասի մէջ տրուեցաւ:

Գետնայարկէն մինչեւ օթեակները՝ որոնցմէ եւ ոչ մին պարապ էր՝ անհամբերութիւնը բուռն էր որովհետեւ ամենքն ալ հետաքրքիր էին դատելու Փարիզի Օբէրային հայազգի թենօրը որ մեր ոստանին մէջ կը գտնուէր հիւրաբար:

Եւ հասարակութիւնը նուաճեցաւ իսկոյն Ֆաուսթի Տանասիօնի առաջին բառերէն սկսեալ: Պէրլիօզ արտայայտուեցաւ Պ. Շահ-Մուրատեանի կողմէ վայելուչ դասականութեամբ մը, եւ տաք, համակրելի ու մաքուր ձայնով մը: Երկարատեւ ծափեր եւ ի բեմ հրաւէրներ, ոչինչ պակսեցաւ խղճամիտ արուեստագէտին որ իր խիստ այլազան տաղադին չափը տուաւ, կարգաւ, Ռէյէրի *Միկիւռ*ին եղանակին մէջ, որ կը պահանջէ երաժշտական ուժեղ գիտութիւն մը, յետոյ Բուչչինիի *Թօսքայ*ին մէջ զոր տուաւ կիրքով: Ու երբ Պ. Շահ-Մուրատեան երգեց, յետոյ, *Հայաստան* ժողովրդական երգը, իր հայրենակիցները որ խուռներամ եկած էին այդ երեկոյթին, իրեն կրկին օվասիօն մը ըրին, եւ անշուշտ զգածուեցաւ ընդունելով իբրեւ յիշատակ մէտայլ մը, վրան ուղերձ մը արձանագրուած, զոր տուփի մը մէջ իրեն ներկայացուցին բեմին վրայ:
*Նուվէլ-դ-Էժիբսիէն*
***Հոսանք***, 3 ***Մարտ*** 1912, ***Ա. տարի***, ***Թիւ*** 7, ***էջ*** 108-109

## ՁԱՅՆԵՐ ՈՐ ԱՆՑԱՆ...
**(հատուած)**

ՀԱՅԿԱՆՈՅՇ ՊԱԼԵԱՆ

Հայուն երաժշտութեան մասին ունեցած ճաշակին եւ հասկացողութեան մէկ ուրիշ ապացոյցը կը տրուէր Բարիզի Conservatoireէն, ուր «Մուշի սոխակը» - ինչպէս անուանեցին զինքը – պատիւը կ'ունենար դժուարամերձ Օբէրային բեմէն դայլայլելու: Եգիպտահայը չէր կրնար երկար ատեն զրկուած մնալ Բարիզէն երգիչը լսելէ: Ու Շահ-Մուրատեան կուգար մեզի դասական մեծ վարպետներէն երգելու չը մոռնալով *Հայաստա՛*նը որուն կենսարար օդն ու ջուրը շինած էին իր ձայնական հրաշալի օռկանը:
***Սուրէն Պարթեւեան**, Եգիպտահայ տարեցոյցը, Ա. տարի*, 1914, *էջ* 142

### ՀԻՆԳՇԱԲԹԻ, 22 ՓԵՏՐՈՒԱՐ 1912, ԳԱՀԻՐԷ

Գալուստեան Ազգային Վարժարանի տնօրէն Մինաս Ծալեանի հետ երկրորդ անգամ կ'այցելէ Պօղոս Նուպար փաշային: Այցելութիւնը կը տեւէ քառորդ ժամ, որուն ընթացքին Ծալեան կը ներկայացնէ դպրոցին հետ կապուած խնդիրները:
«***Հայկական լուրեր***», ***Լուսաբեր-Արեւ***, 24 ***Փետրուար*** 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1104, *էջ* 3

## ՀԱՅԿԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

Ազգ. Վարժարանաց տնօրէն Տ. Մինաս Ծալեան առջի օր. Տ. Շահ-Մուրատեանի հետ այցելած է Վսեմ. Պօղոս փաշայի եւ քառորդ ժամու չափ տեսակցած է Ն. Վսեմութեան հետ դպրոցական կարգ մը խնդիրներու վրայ: Տնօրէն էֆ.ն առիթը յարմար նկատելով դիտել տուած է Վսեմ. փաշային, որ դպրոցը կարգ մը պէտքեր ունի:
***Լուսաբեր-Արեւ***, 24 ***Փետրուար*** 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1104, *էջ* 3

### ՇԱԲԱԹ, 24 ՓԵՏՐՈՒԱՐ 1912, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

Աղեքսանդրիոյ Սահմանադրական Ռամկավար Կուսակցութեան Ակումբին մէջ՝ գրական, գեղարուեստական ու թատերական հանդէս:

Կը մասնակցին՝ էօժէն Բաբազեան (դաշնակ), Մարօ Բաբազեան (դաշնակ), Վահան Մալէզեան (բանախօսութիւն), Միքայէլ Կիւրճեան եւ ընկերներ (երգիծական թատրոն): Շ-Մ. կը մեներգէ *Հայաստան*ը:

- *Թղթակից*, «*ՍաՀմ. ՌամԿ. Ֆէսթիվալը*», *Լուսաբեր-Արեւ*, 29 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *թիւ* 1106, *էջ* 2։
- «*Ռամկավար «Ֆէսթիվալը»*», *Հոսանք*, 3 *Մարտ* 1912, *Ա. տարի*, *թիւ* 7, *էջ* 110։

## ՍԱՀՄ. ՌԱՄԿ. ՖԷՍԹԻՎԱԼԸ
**(հատուած)**

ԹՂԹԱԿԻՑ

Հանդէսին «անակնկալ» մը պատճառեց տաղանդաւոր երգիչ Պ. Շահ-Մուրատեան որ ընդհանուր խանդավառութեան մէջ իր հիանալի ձայնով երգեց *Հայաստանը*։ [...]

Հապա Շահ-Մուրատեա՞նը, այդ ազնիւ երիտասարդը, որուն Ռամկավար երեկոյթին ըրած պատիւը ընդհանուր շնորհակալութեան արժանացաւ։
*Լուսաբեր-Արեւ*, 29 *Փետրուար* 1912, *Ը. տարի*, *թիւ* 1106, *էջ* 2

## ՌԱՄԿԱՎԱՐ «ՖԷՍԹԻՎԱԼԸ»

Կատարեալ յաջողութիւն մը եղաւ, անցեալ շաբաթ իրիկուն, Ս. Ռ. Կուսակցութեան Աղեքսանդրիոյ Ակումբին սարքած գրական, գեղարուեստական ու թատերական հանդէսը։ Ընտրեալ բազմութեան մը առջեւ՝ Տիկնայք Փափազեաններու շնորհը, Տիար Էօժէն Փափազեանի մոգիչ դաշնակահարութիւնը, Մէթր Մալէզեանի պերճախօսութիւնը, Տեարք Մ. Կիւրճեանի եւ ընկերներուն երգիծական աւիւնը զիրար ամբողջացուցին գեղեցիկ ներդաշնակութեան մը մէջ։ Բայց ինչ որ երեկոյթին անակնկալ ու գերագոյն հմայքը կազմեց՝ հրաշալի ձայնն էր թենօր Շահ-Մուրատեանին, որ պատահմամբ ներկայ գտնուելով՝ իրեն եղած խնդրանքին վրայ՝ հաճեցաւ երգել *Հայաստա՛նը*։ Շահ-Մուրատեան երիցս *օվասիօնէ* եղաւ ներկաներուն կողմէ։
«*Ռամկավար «Ֆէսթիվալը»*», *Հոսանք*, 3 *Մարտ* 1912, *Ա. տարի*, *թիւ* 7, *էջ* 110

### ՈՒՐԲԱԹ, 1 ՄԱՐՏ 1912, ԳԱՀԻՐԷ

Գահիրէի Մենա-Հաուզին մէջ՝ թէյասեղան ի պատիւ Շ-Մ.ի, նախաձեռնութեամբ Վահան Մալէզեանի։ Այս առիթով պտոյտ մը կը կազմակերպուի եւ կ'այցելէ Բուրգերը։
- «*Ի պատիւ ՇաՀ-Մուրատեանի*», *Հոսանք*, 3 *Մարտ* 1912, *Ա. տարի*, *թիւ* 7, *էջ* 111։

## Ի ՊԱՏԻՒ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ

Անցեալ ուրբաթ օր՝ Շահ-Մուրատեանի ի պատիւ՝ Մէթր Վ. Մալէզեան թէյ մը տուաւ ի Մէնա-Հաուզ, համակրելի արուեստագէտին եւ իր հիացող բարեկամներուն: Այս առիթով *օթօմօպիլ*ով պտոյտ մը կատարուեցաւ, եւ Շահ-Մուրատեան այցելեց Բուրգերը:
***Հոսանք***, 3 ***Մարտ*** 1912, ***Ա. տարի***, ***Թիւ*** 7, ***էջ*** 111

### ԵՐԵՔՇԱԲԹԻ, 12 ՄԱՐՏ 1912, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

Աղեքսանդրիոյ Ալհամպրա Թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երկրորդ երգահանդէսը Եգիպտոսի մէջ:

Յայտագիր.

Georges Bizet: *Carmen*-էն, մեներգ՝ Շ-Մ.

George Frideric Handel: *Messiah*-էն, մեներգ՝ Շ-Մ.

Ambroise Thomas: *Mignon*-էն, մեներգ՝ Շ-Մ.

Իտալերէն ռոմանս մը, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Կռունկ* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Փրոֆֆ-Գալֆայեան, *Opop*, մեներգ՝ Շ-Մ.

*Rhapsodie hongroise*, ջութակ՝ օր. Ֆ. Լեւի

*Lamento*, թաւջութակ՝ պր. Ռ. Լանցօնի

Grieg եւ Chopin, դաշնակ՝ Էօժէն Բաբազեան

Դաշնակի նուագակցութիւն՝ Էօժէն Բաբազեան

- «***Շահ-Մուրատեան Աղեքսանդրիոյ մէջ***», ***Հոսանք***, 3 ***Մարտ*** 1912, ***Ա. տարի***, ***Թիւ*** 7, ***էջ*** 111:
- ***Լեւոն Մկրտիչեան***, «***Շահ-Մուրատեանի նուագահանդէսը***», ***Լուսաբեր-Արեւ***, 9 ***Մարտ*** 1912, ***Ը. տարի***, ***Թիւ*** 1110, ***էջ*** 1-2:
- ***Թղթակից***, «***Շահ-Մուրատեան յԱլհամպրա***», ***Լուսաբեր-Արեւ***, 16 ***Մարտ*** 1912, ***Ը. տարի***, ***Թիւ*** 1113, ***էջ*** 2:
- «***Շահ-Մուրատեան նուագահանդէս***», ***Հոսանք***, 17 ***Մարտ*** 1912, ***Ա. տարի***, ***Թիւ*** 9, ***էջ*** 143:

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՄԷՋ

Մօտերս Աղեքսանդրիոյ մէջ տեղի պիտի ունենայ Շահ-Մուրատեանի եգիպտական երկրորդ նուագահանդէսը: Արդէն կազմուած է կարգադիր յանձնախումբ մը, որուն կը մասնակցին Տիարք՝ Տիգրան Կամսարական, Յովհաննէս Մութաֆեան, Ալիքսան պէյ Ճէվահիրճեան եւ ուրիշ տեղացի ականաւոր ազգայիններ:
***Հոսանք***, 3 ***Մարտ*** 1912, ***Ա. տարի***, ***Թիւ*** 7, ***էջ*** 111

# ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ԼԵՒՈՆ ՄԿՐՏԻՉԵԱՆ

Յառաջիկայ երեքշաբթի իրիկուն Աղեքսանդրիոյ Հայութիւնը բաղդաւորութիւնը պիտի ունենայ Ալհամպրայի թատրոնին մէջ լսելու հայազգի նշանաւոր թէնօր Շահ-Մուրատեանի նուագահանդէսը:

Շահ-Մուրատեան մեր գեղարուեստական կեանքին մէջ նշանաւոր դէմք մը կը ներկայանայ:

Հայաստանի ծոցէն, Մուշէն ծնած զաւակ, ինքզինքը նետեր է Կովկաս եւ աշխատեր է Ռուսահայոց մտաւորական կեդրոնին, Թիֆլիզի մէջ անհատականութիւն մը դառնալ շնորհիւ իր երգելու տաղանդին: Շատեր կան մեր մէջ որոնք առանձնայատուկ կարողութիւններ ունենալով հանդերձ, չեն գիտեր զանոնք արժեցնել, որով անօգուտ մարդիկ կը մնան թէ՛ ինքզինքնուն եւ թէ՛ իրենց համայնքին համար:

Շահ-Մուրատեան այս դասակարգին չի պատկանիր: Անիկա հայու ձեռներէց ոգի ունի իր մէջ եւ գիտէ օգտուիլ բնածիր կարողութիւններէն: Հա՛յ է, վերջապէս այս մարդը եւ Մշեցի հայ, ինչպէս պիտի ըսէինք «Եւ տէրտէրի տղայ»:

Աղէն, Թիֆլիզի Հայոց Մայր եկեղեցիին մէջ իր վրայ ուշադրութիւն կը հրաւիրէ իր գեղազմայլ ձայնովը, որուն այնքան գուրգուրանօք եւ խանդավառութեամբ գովեստ ըրաւ այլեւս համբաւաւորն Կոմիտաս վարդապետ:

Այո՛, ըստ Կոմիտաս վարդապետի, Մուշը Հայաստանի այն գաւառն է որ գեղեցկագոյն ձայները կ'արտադրէ: Եւ համակրելի ու ներհուն երաժիշտը ձեզի պիտի բացատրէ, պատմական *տօքիւմէնտ*ներով թէ, Հայաստանի այս խեղճուկ գաւառը, ամենէն աւելի հալածուածներէն մէկը քրդական հարստահարութիւններէն, այն գաւառն էր ճշդիւ ուր անցեալոյն մէջ ամենէն ծաղկեալ գեղարուեստը ունէինք, ուր չգիտեմ քանի՛ քանի՛ երաժշտանոցներ կը պահէինք, ուր *բազմաձայն* երաժշտութիւնն անգամ իր կատարելութեան հասած էր անանկ թուականի մը երբ Եւրոպան կիսավայրենի վիճակի մը մէջ կը գտնուէր...:

Տարիքն առած օրիորդ մը, օրին մէկը իր անձին վրայ խօսելով, ինծի ըսաւ – «Պարո՛ն, *մենք ալ ժամանակին բան մըն էինք*...»:

Կ'երեւայ թէ, յիշեալ օրիորդին ըսածին պէս, հայ ազգն ալ «ժամանակաւ բան մըն էր» եւ հիմակուանէն շատ աւելի բարձր քաղաքակրթութիւն մը ունէր, որուն հետքերը, գէթ ճարտարապետութեան տեսակէտով, սկսած են գտնել արդի Եւրոպայի բանասէրները, անանկ հետքեր՝ որոնցմէ կը հետեւի թէ մենք, սա խեղճ ու կրակ հայերս, ժամանակին քար հաներ ենք եւրոպացիներուն եւ անոնց ճարտարապետական ոճի դասեր անգամ տուեր...:

Գալով երաժշտութեան գեղարուեստին, թողլով որ Կոմիտաս վարդապետ

Եզնիկէն մէջբերումներ ընէ, Շահ-Մուրատեան քսաներորդ դարուն մէջ իր անձին օրինակովը կ'ապացուցանէ կոր իր գաւառին գեղարուեստական գանձերուն գոյութիւնը։

Գիտէ՞ք, Շահ-Մուրատեան ի՞նչ բանի կը նմանի։

Հին պատմութեան մէջ, օրինակի համար, գրուած է թէ այս ինչ նահանգը հարուստ է եղեր իր ոսկիի հանքերով։ Դարեր անցեր են եւ այլեւս այդ նահանգին, ո՛չ ալ իր հանքերուն վրայ չէ խօսուեր։ Արդի գիտնական-երկրաչափներ գացեր այդ գաւառը պտտեր են, տեսնելու համար թէ հին պատմութիւնը ո՞ր աստիճան իրաւունք ունէր իր հաւաստումներուն մէջ։ Հանածոյի նմոյշներ առեր եւ տարրալուծեր են զանոնք եւ հաստատեր են թէ՝ իրաւ ալ այդ նահանգը հին ատենը ոսկի կը պարունակէր, զի մինչեւ ցայսօր ալ իր կողերուն մէջ ոսկիի հարուստ ջիղեր գոյութիւն ունին։

Ճիշդ այդպէս ալ, մինակ Եզնիկ եւ ուրիշ հին պատմագիրներ չեն որ Մուշի գաւառին երաժշտական հանքերու մասին կը խօսին, այլ այդ հանքերու նմոյշները մէջտեղն են իբրեւ ապացոյց հին փառքերուն, եւ նմոյշներուն էն թանկագինը եւ էն հարուստն ալ նոյն ինքն Շահ-Մուրատեանն է։

Երեւակայեցէք որ այս Մուշեցին Թիֆլիսէն Բարիզ կ'անցնի եւ «Լուսոյ Մայրաքաղաքին» Երաժշտանոցը, աշխարհիս է՛ն հռչակաւորը, մտնելու համար հարիւրաւոր մրցակիցներու հետ քննութեան կը մասնակցի։ Երկու հարիւր ներկայացողներէն *տասն եւ վեց հոգի* միայն կ'ընդունուին, եւ Շահ-Մուրատեան այդ տասն եւ վեցին մէջն է...։ Մտածեցէք որ ասիկա արդէն շատ գնահատելի յաջողութիւն մըն է հայու համար։ Բայց Հայ երգիչը ատով ալ չի բաւականանար, իրեն համար պէտք կ'զգայ *առաջին* ըլլել բոլոր օտարներուն մէջ, ցոյց տալու համար կարծես թէ՝ իր գաւառը յանցելումն երաժշտական գեղարուեստի այնքան մոռցուած կեդրոն մըն էր։ Եւ կ'ստանայ *առաջին մրցանակը* ֆրանսական ոստանին Քօնսէրվաթուառէն...։

Որպիսի՜ փայլուն յաղթանակ Հայուն եւ Հայաստանին... եւ Մուշին, ո՛հ, այդ տարաբաղդ այլ գեղեցիկ ու գեղարուեստական Մուշին...։

Այսչափով չի գոհանար սակայն հայ գեղարուեստի բնագաւառին հայորդին, այլ Բարիզի համբաւաւոր Օբէրան կը մտնայ, կամ կը պահանջեն որ մտնէ...։

Շահ-Մուրատեան ինծի բացատրեց թէ Բարիզի conservatoireէն առաջին մրցանակ ստանալը բաւական *պէլալը* բան է. հարկ է ֆրանսական հայրենիքին երկու տարի ծառայել կամ 17,000 ֆրանք տուգանք վճարել, որով, հետեւաբար ինքը հարկադրուած էր, այդ պարտականութիւնը կատարելու համար, Բարիզի Օբէրան երգել։

Երգէ՛, տղա՛ս, երգէ՛. քու Բարիզի Օբերան մուտքդ, ուր այնքան արժանաւոր յաջողութեան մը տիրացար եւ այդ առթիւ Բարիզեան թերթերը քու անունդ եւ քեզմով ալ Հայութեան վարկը բարձրացուցին, քու այդ մուտքդ, կ'ըսեմ, Ֆրանսա-

կան կառավարութեան տուրք մը ըլլալէ աւելի, փառաւորումն է հայ երաժշտական գեղարուեստին եւ apothèoseը Մուշի գաւառին երաժշտական հռչակին։
Ու յառաջիկայ երեքշաբթի գիշեր, երբ ամենքս Ալհամպրա միանանք քեզի ունկնդրելու ու ծափելու, Շահ-Մուրատեանիդ հետ պանծացուցած պիտի ըլլանք միանգամայն հին հայկական ազնիւ գեղարուեստին ամենէն իսկատիպ եւ ճոխ նմոյշը...։
*Լուսաբեր-Արեւ*, 9 *Մարտ* 1912, *Ը. տարի*, *Թիւ* 1110, *էջ* 1-2

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ յԱԼՀԱՄՊՐԱ

ԹՂԹԱԿԻՑ

Եթէ ոչ նիւթական մեծ յաջողութիւն մը, բայց ապահովաբար բարոյական եւ գեղարուեստական աղուոր յաղթանակ մը տարաւ Շահ-Մուրատեան անցեալ երեքշաբթի գիշեր Աղեքսանդրիոյ Ալհամպրա թատրոնը։
Չենք կարող ըսել թէ Թատրոնը ծայրէ ի ծայր «լիքն» էր, ինչպէս Կոմիտաս վարդապետի նուագահանդէսին։
Բայց Ալհամպրայի թատրոնը լեցնելը դիւրին գործ չէ։ Կոմիտաս վարդապետին համար աշխատութիւնները գրեթէ 2 ամիս տեւեցին, մինչ Շահ-Մուրատեան բաւական ժամանակ չունէր իր առջեւ եւ ամէն ինչ պատրաստուեցաւ սոսկ 10-12 օրուան մէջ։ Ահա այս տեսակէտով, երեքշաբթի իրիկուան հանդիսականներուն թիւը կարելի չէ անգոհացուցիչ նկատել։
Շահ-Մուրատեան իր յայտագրին բոլոր բաժիններն ալ շատ յաջող կերպով երգեց։ Հասարակութիւնը ամէնէն աւելի ճաշակեց Հէնտէլի *Լը Մէսի*ն որուն յաջորդող *պիսերուն* տեղի տալով՝ համակրելի թէնօրը Իտալերէն Րօմանս մը երգեց, սրտի մօտիկ, քնքոյշ գոհար մը։
Իսկ *Կռունկ*ը Շահ-Մուրատեանի ձայնով եւ կողմէն երգուած, երաժշտական հազուագիւտ կտոր մը կը դառնայ եւ վստահ եմ որ երեկոյթի ամենէն յաջող մասը կազմեց ո՛չ միայն ներկայ Հայերուն՝ օտարականներուն համար ալ։
Սրբազա՛ն, անմատչելի՛, հոգեղէ՛ն բան մըն է Շահ-Մուրատեանի *Կռունկ*ը. անոր երգեցողութիւնը յարտասուս կը բղձկէ բոլոր մաքուր, բարի հոգիները։ Անիկա բանաստեղծութիւն մըն է որուն մէջէն ազնուական բողոք մը կը բարձրանայ Մարդկութեան Տառապանքին եւ Մարդկային Չարութեան դէմ։
Քիչ անգամ երաժիշտին տրուած է Ունայնութեան տրամաթախիծ Զգացումը ա՛յնքան ճշգրիտ, ա՛յնքան յուզիչ, ա՛յնքան վսե՛մ երանգներով եւ խազերով արտայայտել։ *Կռունկ*ին հեղինակը – ո՛ր անծանօթ, ո՛ր մոռցուած հայը, ո՞վ գիտէ – աշխարհի մեծագոյն երաժիշտներէն մէկն է ապահովապէս։

*Կռունկ*ը չորս տող երաժշտութիւն է. բայց այդ չորս տողը ամբողջ օբէրաներ կ՚արժէ, զի անոնց մէջ խտացուած են ՉԱՐՈՒԹԻՒՆԸ, ՏԱՌԱՊԱՆՔՆ եւ ՌԻՆԱՅ-ՆՈՒԹԻՒՆԸ:

Երբէք չափազանցած չեմ ըլլար, յայտարարելով թէ *Կռունկ*ին չորս տող ստեղծագործութիւնը Հայութիւնը անմիջապէս կը դնէ երաժշտական շատ բարձր սանդուխի մը վրայ:

Շահ-Մուրատեան երգեց նաեւ, շատ խնամով, *Հայաստան*ը եւ Բրօֆ. Գալֆաեանի *Օրօր*ը, բայց ասոնք հասարակ-տեղիք կտորներ են եւ չարժեր որ անոնց յիշատակութիւնն իսկ ըլլայ *Կռունկ*ին մօտ:

Շահ-Մուրատեան ապահովաբար մեր լաւագոյն երգիչներէն մին է եւ պատիւ կը բերէ հայ երաժշտութեան:

Նոր բան մը ըսած չենք ըլլար յայտնելով թէ քաղցրահնչիւն է անոր շեշտը եւ զօրաւոր է իր ձայնը:

Ինծի համար յամենայն դէպս, Շահ-Մուրատեան աւելի արժէք ունի քան իրմէ կրկնապատիկ զօրաւոր ձայն ունեցող թէնօրներ, որովհետեւ շատ դժուար է այս վերջնոյն մէջ գտնել *անոյշ* ձայնը, *համակրելի* խազը: Մինչդեռ այս տեսակէտով Շահ-Մուրատեան յիշեալներուն վրայ յատկանշանական առաւելութիւն ունի, որովհետեւ հայ է, եւ հայու ձայնը *անոյշ* կ՚ըլլայ:

Երանի թէ Հայուն *հոգի*ն ալ, իր ձայնին կիսով չափ *անոյշ* եղած ըլլար...

Շահ-Մուրատեանի աշխատակիցները, Օրիորդ Ֆ. Լէվի, հանրածանօթ ջութակահար արթիստը, Պ. Էօժէն Փափազեան, տաղանդաւոր վարպետը եւ Պ. Լանցօնի, ծանօթ թաւջութակահարը գեղեցիկ կերպով ամբողջացուցին այս գեղարուեստական երեկոյթը:

Օրիորդ Լէվի *Ռաբսօտի հոնկրուազ*ին, Տիար Էօժէն Փափազեան Կրիկի եւ Շօբէնի կտորներուն եւ Պ. Լանցօնի *Լամէնթօ*ի մէջ հիանալի կատարելութեամբ սօլօներ ածեցին եւ հասարակութեան բուռն ծափահարութեանց արժանացան իրաւամբ:

Շահ-Մուրատեանի երգերուն դաշնակով կ՚ընկերանար Տիար Էօժէն Փափազեան:

Եւրոպական թերթեր մեծ գովեստով կը խօսին այս նուագահանդէսին վրայ եւ համակրական տողերով ի վեր կը հանեն Շահ-Մուրատեանի անժխտելի տաղանդը: Իսկ *Կռունկ*ը կ՚որակեն հովուերգական քնարերգութեան գլուխ գործոց մը:

Վերջապէս ամէն տեսակէտով շքեղ երեկոյթ մը եղաւ Շահ-Մուրատեանի նուագահանդէսը:

Համակրելի թէնօրը երէկ մեկնեցաւ Բարիզ:

***Լուսաբեր-Արեւ***, 16 ***Մարտ*** 1912, ***Ը. տարի***, ***Թիւ*** 1113, ***էջ*** 2

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

Աղեքսանդրիոյ Ալհամպրա թատրոնին մէջ անցեալ երեքշաբթի իրիկուն, Շահ-Մուրատեանի եգիպտական երկրորդ նուագահանդէսը տեղի ունեցաւ յաջող կերպով:

Աւելորդ կը սեպենք տաղանդաւոր թենօրին գովեստն ընել՝ ներբողական կրկնութիւններէ խուսափելու համար:

Շահ-Մուրատեան յաջորդաբար երգեց *Քառմէն*էն, Հէնտըլի *Մէսի*էն, եւ *Մինեօն*էն կտորներ, եւ երկու հայկական երգեր, *Կռունկ*ը եւ Փրօֆ. Գալֆաեանի *Օրօր*ը:

Մենք արուեստագիտական եղբայրակցութեան խիստ ազնիւ ու սրտառուչ հակում մը կը հաստատենք Շահ-Մուրատեանի կողմէ այս վերջին կտորին ընտրութեանը մէջ՝ իր յայտագրին իբրեւ վերջին թիւը: Համակրելի թենօրին կէս արժէքն ունեցող ուրիշ հայ *արթիսթ* մը երբէք պիտի չի զիջանէր անտեսուած հայ երաժշտագէտի մը մէկ հեղինակութիւնը իր տուած նուագահանդէսին մէջ երգել. ատով պզտիկցած պիտի համարէր ինքզինքը: Շահ-Մուրատեան այդ փոքրոգութիւնը չունեցաւ, եւ ատով իսկ անսովոր վեհանձնութեան մը ապացոյցը տուաւ: Իր շատ մը ուրիշ բարեմասնութիւններուն հետ՝ ասիկա ալ իրմէ խանդատիչ յիշատակ մը պիտի մնայ մեր մտքին մէջ:

Շահ-Մուրատեանի այս նուագահանդէսին կը մասնակցէին ծանօթ ջութակահար Օր. Ֆ. Լէվի, թաւջութակահար Մ. Ռ. Լանցօնի եւ երիտասարդ ու տաղանդաւոր հայ դաշնակահարը Տիար Էօժէն Բաբազեան, որ թէ՛ Շահ-Մուրատեանի ընկերացաւ իր մեներգներուն մէջ, եւ թէ Կրիկէն ու Շօբէնէն երկու կտորներ նուագելով ներկաները հմայեց:

Նուագահանդէսը իբրեւ նիւթական արդիւնք գոհացուցիչ էր, տրուած ըլլալով որ Ալհամպրան Աղեքսանդրիոյ մեծագոյն թատրոնն է – ինչպէս Ապպասը՝ Գահիրէինը – եւ զայն լեցնելը դիւրին բան չէր:

Կը լսենք թէ Շահ-Մուրատեան ուրբաթ օր մեկներ է դէպի Փարիզ:

***Հոսանք***, 17 ***Մարտ*** 1912, ***Ա. տարի***, ***Թիւ*** 9, ***էջ*** 143

### ՈՒՐԲԱԹ, 15 ՄԱՐՏ 1912, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ-ՓԱՐԻԶ

Մարտ 15-ին կը մեկնի Աղեքսանդրիայէն, ուղեւորուելով դէպի Փարիզ:

- ***Թղթակից***, «***Շահ-Մուրատեան յԱլհամպրա***», ***Լուսաբեր-Արեւ***, 16 ***Մարտ*** 1912, ***Ը. տարի***, ***Թիւ*** 1113, ***էջ*** 2:

- «***Շահ-Մուրատեան նուագահանդէս***», ***Հոսանք***, 17 ***Մարտ*** 1912, ***Ա. տարի***, ***Թիւ*** 9, ***էջ*** 143:

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 15 ՅՈՒՆՈՒԱՐ 1913, ԳԱՀԻՐԷ**

Գահիրէի Théâtre Printania-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Jules Massenet: *Werther*-էն, մեներգ՝ Շ-Մ.

George Frideric Handel: *Messiah*-էն, մեներգ՝ Շ-Մ.

Georges Bizet: *Les Pêcheurs de perles*, 'Je crois entendre encore', մեներգ՝ Շ-Մ.

Փրօֆֆ-Գալֆայեան, *Opor*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ՝ *Կռունկ*, մեներգ՝ Շ-Մ.

Ludwig van Beethoven: Sonate *Appassionata*, առաջին մաս, դաշնակ՝ Հայկանոյշ Պալեան

Դաշնակի նուագակցութիւն՝ Հայկանոյշ Պալեան

Ջութակ՝ պր. Շքօլնիք

Թաւջութակ՝ պր. Ժիւլիէն Շօյէ

- «*Շահ-Մուրատեանի նուագահանդէսը*», *Լուսաբեր-Արեւ*, 4 *Յունուար* 1913, *Թ. տարի*, *Թիւ* 28, *էջ* 2։

- «*Շահ-Մուրատեան նուագահանդէսը*», *Լուսաբեր-Արեւ*, 9 *Յունուար* 1913, *Թ. տարի*, *Թիւ* 30, *էջ* 1։

- «*Շահ-Մուրատեան նուագահանդէսը*», *Լուսաբեր-Արեւ*, 14 *Յունուար* 1913, *Թ. տարի*, *Թիւ* 32, *էջ* 3։

- «*Ազգային արձագանգ*», *Լուսաբեր-Արեւ*, 16 *Յունուար* 1913, *Թ. տարի*, *Թիւ* 33, *էջ* 2-3։

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Տեարք Միհրան Ղազարեան, Ճանիկ Չաքըր, Վահան Մալէզեան, Արտաշէս Նետուրեան, Լեւոն Ուրախեան, Արմենակ Մէօթէմէտեան, Յարութիւն Ամիրայեան, Առաքել Փափազեան, Աշըգեան եղբարք կազմած են կարգադիր յանձնախումբ մը, որ կ'աջակցի համակրելի արուեստագէտին արժանի յաջողութիւն մը ընելու համար Շահ-Մուրատեան նուագահանդէսը որ տեղի պիտի ունենայ ամսոյս 15-ին, Բըրէնթանիա թատրոնին մէջ։

*Լուսաբեր-Արեւ*, 4 *Յունուար* 1913, *Թ. տարի*, *Թիւ* 28, *էջ* 2

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Կարգադիր յանձնախումբը մեծ եռանդով կը հետապնդէ նուագահանդէսին տոմսակներուն զետեղումը։ Յայտագիրը՝ բացի Շահ-Մուրատեանէն՝ կը պարունակէ խիստ շահեկան թիւեր, որոնք պիտի լրացուին տեղւոյս լաւագոյն

օտար արուեստագէտներէն։ Տիկին Հայկանոյշ Կ. Պալեան պիտի մասնակցի նուագահանդէսին՝ Պէթօվէնի *Appassionata*յին առաջին մասը նուագելով եւ դաշնակի վրայ ընկերանալով Շահ-Մուրատեանին։

Աճապարեցէ՛ք ապահովել ձեր տոմսակները՝ ամսոյս 15-ի իրիկուան համար՝ դիմելով Քաֆէ-Շիշա Պրն. Սուրէն Չաքմաքճեանին եւ Քաֆէ տը լա Բէ՝ Պրն. Արմենակ Փափազեանի մօտ։

*Լուսաբեր-Արեւ*, 9 *Յունուար* 1913, *Թ. տարի*, *Թիւ* 30, *էջ* 1

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Վաղը, Չորեքշաբթի իրիկուն, Բրէնթանիա թատրոնին մէջ տեղի պիտի ունենայ Շահ-Մուրատեան նուագահանդէսը, որուն պիտի մասնակցին՝ բացի նշանաւոր թենօրէն՝ Տիկին Հ. Կարօ Պալեան, եւ երկու օտար արուեստագէտներ Պ. Պ. Ժիւլիէն Շօլէ եւ Նքօլնիք։

Շահ-Մուրատեան պիտի երգէ Մասընէի *Վէրթէր*ը, Հէնտէլի *Մէսիա*ն, Պիզէի *Մարգրիտի որսորդները*, Բրօֆ. Գալֆայեանի *Օրօր*ը, եւ Կոմիտաս Վարդապետի *Կռունկ*ը։

Տիկին Հայկանոյշ Կ. Պալեան, որ դաշնակի վրայ պիտի ընկերանայ բոլոր թիւերուն, պիտի նուագէ նաեւ Պէթովէնի Appassionataյին առաջին մասը։

Աճապարեցէ՛ք ապահովել ձեր տոմսակները՝ դիմելով Քաֆէ Շիշա, Քաֆէ տը լա Բէ, եւ լրագրավաճառ Ա. Փափազեանին։

*Լուսաբեր-Արեւ*, 14 *Յունուար* 1913, *Թ. տարի*, *Թիւ* 32, *էջ* 3

## ԱԶԳԱՅԻՆ ԱՐՉԱԳԱՆԳ
### (հատուած)

Համակրելի թենօրը՝ թէեւ սաստիկ պաղառութեամբ մը նեղուած՝ փայլուն կերպով դուրս եկաւ իր ստանձնած բոլոր կտորներուն երգեցողութեան մէջէն, եւ դղրդագին ծափեր խլեց։

Նուագահանդէսին ամբողջ ընթացքին՝ Տիկին Հայկանոյշ Կարօ Պալեան կարճօրէն բռնեց դաշնակը, եւ առանձին ալ նուագեց Պէթօվէնի Appassionataյին առաջին մասը՝ արժանանալով ծափահարութիւններու եւ գեղեցիկ փաղկեփունջի մը։

Երկու օտար տաղանդաւոր նուագածուներ, Պ. Պ. Շքօլնիք եւ Շօյէ, մին ջութակի վրայ եւ միւսը թաւջութակի վրայ, հմայեցին ներկաները։

Երեկոյթը խիստ գեղեցիկ ու տպաւորիչ անցաւ ծայրէ ծայր։

*Լուսաբեր-Արեւ*, 16 *Յունուար* 1913, *Թ. տարի*, *Թիւ* 33, *էջ* 2-3

**1913, ԳԱՀԻՐԷ**

Գահիրէի մէջ Շ-Մ.ին կը ծանօթացնեն 17 տարեկան Արման Թոքաթեանին հետ՝ Մեթրոփոլիթըն օփերայի ապագայ երգիչը։ Շ-Մ. կը խանդավառուի իր ձայնով ու տաղանդով եւ զինք կը քաջալերէ երթալ Իտալիա ուսանելու։

- «*Շահմուրատեան եւ Թոքաթեան*», *Արեւ*, 20 *Դեկտեմբեր* 1934, *ԺԹ. տարի*, *Թիւ* 4851, *էջ* 4։

## ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ ԵՒ ԹՈՔԱԹԵԱՆ

Հայ վաստակաւոր երգիչ Արմենակ Շահմուրատեան, հետեւեալ յիշատակը կը պատմէ հռչակաւոր *թէնոր* Արման Թոքաթեանի մասին.

Գահիրէի մէջ երգահանդէս կուտայի երբ երկու հայ հարուստներ՝ Իփէկճեան եւ Օհանեան, ինձմէ խնդրեցին որ խօսիմ Արմանին, որովհետեւ իրենք չէին կրցած զայն որ ստիպել լրջօրէն աշխատի։

Խօսեցայ Արմանին հետ որ այն ատեն 17 տարեկան էր [ծնած է 1896-ին, Հ.Ա.] եւ զինքը համոզեցի թէ պէտք էր որ լրջօրէն նայէր իր ասպարէզին վրայ ու պէտք չէ որ Իտալիոյ մէջ ուսանելու պատեհութիւնը արհամարհէ։

- Պիտի աշխատիմ, խոստացաւ Արման։

- Ասիկա բաւական չէ, ըսի։

- Պատւոյս վրայ կ'երդնում որ պիտի աշխատիմ, եղաւ Արմանի պատասխանը։

Ու հիմա կը տեսնեմ թէ որքան լաւ բռներ է իր խօսքը։ 1920-ին լսեցի Արմանը երբ Ալիծ Քիւրքճեանի հետ կ'երգէր Էտամս Մէմորիըլ եկեղեցիին մէջ։ Իր երգեցողութիւնը լրանալէն վերջ քովս եկաւ ու ըսաւ.

- Երախտապարտ եմ ձեզի, Գահիրէի մէջ ինծի խօսած ըլլալնուդ համար։

Շատ զգածուեցայ իր անկեղծութեան ու հիացայ իր ձայնին վրայ, եւ ըսի.

- Եթէ խոստմնալից երիտասարդ երգիչ մը քեզի գայ, նայէ որ դուն ալ քու կարգիդ քաջալերես զինքը իր աշխատանքը շարունակելու։

*Արեւ*, 20 *Դեկտեմբեր* 1934, *ԺԹ. տարի*, *Թիւ* 4851, *էջ* 4

**ՓԵՏՐՈՒԱՐ 1913, Կ. ՊՈԼԻՍ**

Կը գտնուի Պոլիս եւ երկու անգամ կ'այցելէ Կոմիտաս վարդապետին։

- *Կոմիտաս վարդապետի* 1913 *Փետրուար* 9 *Թուակիր Նամակը* (*Պոլիս*) *Մարգարիտ Բաբայեանին* (*Փարիզ*)։ *Կոմիտաս. Նամակներ*, *տեքստը կազմեց, առաջաբանը եւ ծանօթագրութիւնները գրեց Ցօլիկ Բեքարեան*, *խմբագիր՝ Օֆէլիա Բեքարեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարան*, 2000, *էջ* 35։

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 7/20 ՄԱՐՏ 1913, ԹԻՖԼԻՍ**

Թիֆլիսի Արտիստական Ընկերութեան դահլիճին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Ա. ՄԱՍ

Georges Bizet: *Les Pêcheurs de perles*, ‘Je crois entendre encore’, մեներգ՝ Շ-Մ.

Wilhelm: *Romance*, ջութակ՝ Գ. Քալանթար

Иван Корнилов: *Спите орлы боевые*, մեներգ՝ Ի. Ն. Տեսնով (պարիթոն)

Ruggero Leoncavallo: *Pagliacci*-էն, մեներգ՝ Շ-Մ.

Բ. ՄԱՍ

Gaetano Donizetti: *L’elisir d’amore*, ‘Una furtiva lagrima’, մեներգ՝ Շ-Մ.

Giovanni Battista Pergolesi: *Aria*, ջութակ՝ Գ. Քալանթար

Léo Delibes: *Lakmé*, Stances, մեներգ՝ Ի. Ն. Տեսնով

Herman Bemberg: *Chant hindou*, մեներգ՝ Շ-Մ., ջութակ՝ Գ. Քալանթար

Դաշնակի նուագակցութիւն՝ Մ. Ցիցիանով

Յայտագիրէն դուրս.

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Կռունկ*, մեներգ՝ Շ-Մ. (կը կրկնուի)

- «*Երգիչ Արմենակ Շահ-Մուրադեան*», *Հորիզոն*, 27 *Փետրուար* [/12 *Մարտ*] 1913, *հինգերորդ տարի*, *թիւ* 44, *էջ* 2։

- «*Երգիչ Ա. Շահ-Մուրադեան*», *Մշակ*, 2 *Մարտ* [/15 *Մարտ*] 1913, *քառասուներկուերորդ տարի*, *թիւ* 46, *էջ* 4։

- *Մշակ*, 7 *Մարտ* [/20 *Մարտ*] 1913, *քառասուներկուերորդ տարի*, *թիւ* 50, *էջ* 1։

- *Սիրող*, «*Երգիչ Ա. Շահ-Մուրադեանի կօնցերտը*», *Մշակ*, 9 *Մարտ* [/22 *Մարտ*] 1913, *քառասուներկուերորդ տարի*, *թիւ* 52, *էջ* 3։

- *Ա. Ղազարեան*, «*Ա. Շահ-Մուրադեանի համերգը*», *Հորիզոն*, 10 *Մարտ* [/23 *Մարտ*] 1913, *հինգերորդ տարի*, *թիւ* 54, *էջ* 3։

- «*Տենոր Շահ-Մուրադեանի կոնցերտը*», *Տարազ*, *Մարտ* 1913, *քսանեւչորսերրորդ տարի*, *թիւ* 3, *էջ* 57։

- *Տպագրուած յայտագիրին լուսապատճէնը, Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարան, Շահ-Մուրատեանի դիւան*, *թիւ* 4։

## ԵՐԳԻՉ ՇԱՀ-ՄՈՒՐԱԴԵԱՆԻ ԿՕՆՑԵՐՏԸ

ՍԻՐՈՂ

Երգիչ Ա. Շահ-Մուրադեանը հանդէս եկաւ Թիֆլիսի հասարակութեան առաջ յատուկ կօնցերտով, որը տրվեց հինգշաբթի օր, մարտի 7-ին, Թիֆլիսի

Արտիստական Ընկերութեան դահլիճում։

Համերգի արած տպաւորութիւնը նպաստաւոր էր երգչի համար։

Շահ-Մուրադեան ունեցաւ աջողութիւն եւ շահեց ոգեւորված ծափահարութիւններ։

Հաճութեամբ արձանագրում ենք, որ Շահ-Մուրադեանը ունի ախորժելի տեմբրով, մաքուր հնչմամբ տենորային գեղեցիկ մի ձայն, որը գրաւիչ է հանդիսականի համար։

Երգչի ձայնը մշակված է եւ եւրօպական երաժշտութեան ընտելացած։ Շահ-Մուրադեանը երգում է ճաշակով եւ զգացմունքով։

Նա սկսեց իր կօնցէրտը Բիզէի *Մարգարիտ որոնողներ* օպերայից վերցրած մի արիայով, որը սկզբից իսկ ստեղծեց նպաստաւոր տրամադրութիւն երգչի համար։

Մենք շատ հաւանեցինք Շահ-Մուրադեանի երգածը թէ Դօնիցէտտիի ‘Una furtiva lagrima’ եւ թէ Բեմբերգի *Հնդկական երգ* գեղեցիկ ստեղծագործութիւնների կատարումները։ Վերջինս երգվեց ջութակի եւ դաշնամուրի ներդաշնակութեամբ։

Շահ-Մուրադեանը երգեցողութեան ընթացքում ունի տեւական շնչառութիւն, ընդունակ է ախորժալուր պիանօյով երգել ամբողջ տողեր եւ հնչեցնել ուժեղ զիլ ձայներ։

Երգչի թերութիւններին պէտք է վերագրել միօրինակ գունաւորութիւն պահպանելը երգերի մէջ՝ ըստ մեծի մասին մելամաղձիկ, երբեմն լալկան, եւ պարբերութիւնների փոխանակութեան թոյլ բնորոշումը։ Իսկ ընդհանրապէս Շահ-Մուրադեանի ձայնը մի գնահատելի գանձ է՝ որի հանդէս գալը արձանագրում ենք իբրեւ ուրախալի երեւոյթ։

Համերգին մասնակցում էին երգիչ Դեսնօվ եւ ջութակահար Գ. Քալանթար, որոնք սիրալիր կերպով մասնակցել էին Շահ-Մուրադեանի կօնցերտին։

*Մշակ*, 9 *Մարտ* [/22 *Մարտ*] 1913, *քառասուներկուերորդ տարի*, *Թիւ* 52, *էջ* 3

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱԴԵԱՆԻ ՀԱՄԵՐԳԸ

Ա. ՂԱԶԱՐԵԱՆ

Հինգշաբթի, ամսոյս 7-ին, Արտիստական թատրոնի սրահում տեղի ունեցաւ երգիչ Արմենակ Շահ-Մուրադեանի համերգը։

Քիչ անգամ կարելի է ստանալ այնպիսի գեղարուեստական մեծ բաւականութիւն, որպիսին մենք ստացանք երգիչ Շահ-Մուրադեանի երգերից։

Այդ երեկոյ սա ցոյց տուեց, որ իսկապէս տաղանդի տէր, մեծ եւ սքանչելի ձայն պիտի ունենալ, որպէս զի կարելի լինի Պարիզի Մեծ Օպերայի երգչի պատուին

արժանանալ, կամ թէ մեծ շնորքները միայն կարող կը լինին Պարիզի կոնսերւատորիայի առաջին մրցանակը ստանալ: Այս շեշտում ենք այն պարզ պատճառով, որ շատ անգամ տիտղոսը, որքան էլ նա ապահովւած լինի դիպլոմներով, չէ համապատասխանում կրողի արժանիքներին եւ նա միայն վարկաբեկում է այն հիմնարկութեան անունը, որի անունից ստացել է այդ տիտղոսը:

Երգիչ Ա. Շահ-Մուրադեանը դրամատիք տենօր է եւ ունի զօրեղ ու թաւ ձայն, թէ ամենաբարձր նոտաներում եւ թէ ստորին խաղերում ձայնը յստակ է, ամբողջական ու լիքը. ձայնի մէջ չի նկատւում եւ ոչ մի կեղծ կամ խզւած թել, նրա ձայնի անբռնազբօսիկ ելեւէջները ու տեմբրի դուրեկանութիւնը հիացնող են միանգամայն: Իր երգած երեք արիաներում Бизе-ի *Искатели жемчуга*-ի, Леонкавалло-ի *Паяцы* եւ Donizetti-ի 'Una furtiva lagrima'-ի, ինչպէս եւ H. Bemberg-ի, *Chant hindou*-ն միանգամայն սքանչելի էին: Քնքշութիւնն ու զւարթութիւնը Շահ-Մուրադեանի ձայնի էն յատկորոշ կողմերն են, որոնք մեծ գրաւականներ են նրա մեծ յաջողութեան:

Սրահը կիսով չափ դատարկ էր. հայ բարձր դասը, որ ամեն անգամ գլուխ է կոտրում օտար, թէկուզ եւ քիչ անւանի երգիչների համերգների ժամանակ, չնչին բացառութեամբ բացակայում էր. գուցէ պատճառը Շահ-Մուրադեանի անւան անծանօթութիւնն էր, չգիտենք. սակայն արժէ որ Շահ-Մուրադեանը իր համերգը կրկնէ մեծ հասարակութեան առաջ եւ ընդհանուրի սեփականութիւն դարձնէ այն հռչակը, որին իրաւամբ արժանի է Շահ-Մուրադեան:

Մի նկատողութիւն սակայն. խորհուրդ կտայինք պ. Շահ-Մուրադեանին, որ այսուհետեւ համերգ կազմելիս պատահական ույժերին մէջ տեղ չքաշէ, որովհետեւ դա մեծապէս վնասում ու թուլացնում է այն մեծ հմայքը, որ հանդիսականը ստանում իր երգերից:

Շահ-Մուրադեանը արժանացաւ բուռն ծափահարութեան, եւ սքանչելիօրէն երգեց հայերէն *Հայաստան* եւ *Կռունկ* երգերը: Վերջին երգը կրկնեց երկրորդ անգամ:

***Հորիզոն***, 10 ***Մարտ*** [/23 ***Մարտ***] 1913, ***Հինգերորդ տարի***, ***Թիւ*** 54, ***էջ*** 3

## ՏԵՆՈՐ ՇԱՀ-ՄՈՒՐԱԴԵԱՆԻ ԿՈՆՑԵՐՏԸ

Եկմալեանի աշակերտ երգիչ Շահ-Մուրադեանը, վերադառնալով իր հայրենիքը՝ Հայաստան, պարապում է առժամանակ ուսուցչութիւնով եւ խնայելով մի աննշան գումար, իրան զցում Պարիզ: Մտնում է կոնսերւատօրին, աւարտում մրցանակներով ու ստանում դէբիւտ օպերային թատրոնում: Հեշտ բան չէ Պարիզի մեծ օպերայում ընդունւել եւ երգել Ֆաուստ: Բայց մեր հայրենակցին

աջողում է այդ, շնորհիւ իր սքանչելի մաքուր, մշակւած, կիրթ ձայնին եւ զգացումով, ճաշակով արտայայտութեան։ Մարտի 7-ին Թիֆլ. Արտիստիկ. Ընկ. Սրահում տւաւ երգիչը իր առաջին կոնցէրտը, հէնց առաջին նօտաներից սփռելով անուշաբոյր մթնոլորտ։ Հիանալի են մեղմ նօտաները, լի թախիծով։ Բացակայ էր այս կոնցերտին Թիֆլիսի հայութիւնը. չէ՞ որ երգիչը հայ էր...
***Տարազ***, ***Մարտ*** 1913, ***քսանեւչորսերրորդ տարի***, ***Թիւ*** 3, ***էջ*** 57

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 25 ՄԱՐՏ / 7 ԱՊՐԻԼ 1913, ՊԱՔՈՒ**

Պաքուի Հասարակական Ժողովարանի դահլիճին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։
Յայտագիր.
Georges Bizet: *Les Pêcheurs de perles*, 'Je crois entendre encore', մեներգ՝ Շ-Մ.
Ruggero Leoncavallo: *Pagliacci*-էն, մեներգ՝ Շ-Մ. (կը կրկնուի)
*Chant*, մեներգ՝ Շ-Մ., թաւջութակ՝ Ֆինկելգտուգ
Կը մասնակցի երգչուհի Լ. Եակօվլեա
Յայտագիրէն դուրս.
Փրօֆֆ-Գալֆայեան, *Օրօր*, մեներգ՝ Շ-Մ.
Կոմիտաս վարդապետ, *Անտունի* («Սիրտս նման է»), մեներգ՝ Շ-Մ.
Հայերէն եւ ֆրանսերէն երգեր, մեներգ՝ Շ-Մ.
- ***Անտոն Մայիլեան***, «***Երգիչ Շահմուրադեանի համերգը***», ***Բաքուի ձայն***, 27 ***Մարտ*** 1913, ***առաջին տարի***, ***Թիւ*** 66, ***էջ*** 4։

## ԵՐԳԻՉ ՇԱՀՄՈՒՐԱԴԵԱՆԻ ՀԱՄԵՐԳԸ

ԱՆՏՈՆ ՄԱՅԻԼԵԱՆ

Երկուշաբթի, մարտի 25-ին, հասարակական ժողովարանի դահլիճում կայացաւ Պարիզի Մեծ Օպերայի երգիչ տէնոր Արմենակ Շահմուրադեանի համերգը, մասնակցութեամբ երգչուհի Լ. Եակօվլեայի եւ թաւջութակահար պ. Ֆինկելգտուգի։

Ով լսել է նրան Եկմալեանի ժամանակ, անշուշտ պիտի կարողանար գուշակել, թէ որպիսի մեծ քայլեր արած կըլինի նա կարճ ժամանակում Պարիզում։

Այն ժամանակ նրա ձայնը դարձեալ գրաւիչ ու քնքուշ էր, բայց Լիրիկական, իսկ այժմ փորձուած մանկավարժների ձեռքի տակ նա դարձել է դրամատիկական։

Երգիչը ստացել է Պարիզի Կոնսերվատորիայի առաջին մրցանակը եւ նրա ձայնի մասին մասնաւորապէս ֆրանսիական մամուլը մեծ գովեստներով է

խօսում: Դեռ նրա առաջին début-ի մասին, Ֆաուստի դերի մէջ, ֆրանսիական թերթերը գրում էին, թէ նա ցոյց է տուել լաւ ճաշակ, թէ նրա տէմբրը այնչափ դուրեկան է:

Համերգը բացեց Շահմուրադեանը Բիզէի *Искатели жемчуга*-ից երգելով:

Առաջին իսկ հնչիւններից նկատելի էր ֆրանսիական նուրբ շկօլան: Նրա ձայնի մէջ չկան չնչին կոկորդային հնչիւններ, ձայնը դուրս է գալիս կրծքից միանգամայն ազատ ու անսայթաք: Անչափ գրաւիչ է նրա pianissimo-ն:

Ուշագրաւ էր արիան *Պաեաց* օպերայից: Ահագին տարբերութիւն նկատւեց նրա առաջին եւ երկրորդ երգածի մէջ: Առաջին անգամ արիան այնքան էլ տպաւորիչ չէր, բայց երբ նոյն արիան երգեց երկրորդ անգամ, նրա մէջ կեանքը խօսեց, վառուող, փոթորկուող ու յուզուող կեանքը:

Այդ արիան ամենայաջող համարներից մէկը պիտի համարել:

Շահմուրադեանի երգած բոլոր երգերը ֆրանսերէն էին, բացի մի քանի հայկական երգերից:

Գրաւիչ ու սքանչելի էր ծրագրի վերջին համարը՝ Chant Violoncelle, piano: Դա գեղունի մի երգ էր, որին նւագակցում էին դաշնակն ու թաւջութակը: Երկու գործիքն էլ կարծես տանում, առաջնորդում էին երգչին երազների աշխարհն ու իլլիւզիա ստեղծում:

Գեղարուեստական երգի գեղեցիկ կատարումը առաջ բերեց ծափահարութիւնների տարափ:

Ծրագրից դուրս երգեց նաեւ հայերէն երգեր, հրապուրիչ ու բնորոշ էին նրա երգածներից Գալֆայեանի մեներգը եւ *Միրտս նման է* ժողովրդական երգը: Այդ երգերը երգեց արտիստին յատուկ մեծ ճաշակով ու իմաստալից:

Ժողովրդական երգերի մէջ նրան ամենահարազատ արտայայտիչը պիտի համարել: Նրա երգերը հնչում են con fuoco, խորին տաքութեամբ ու համարձակութեամբ:

Ժողովրդական *Միրտս նման է* երգին նա տուեց տարբեր գունաւորումներ, որով եւ միապաղաղ պարբերութիւնները դարձան աւելի գրաւիչ ու հետաքրքիր:

Համերգից յետոյ երկար ժամանակ հասարակութիւնը չէր հեռանում դահլիճից, բուռն ծափերի տակ ստիպելով կրկնել էլի մի քանի երգեր հայերէն եւ ֆրանսերէն:

Շնորհալի երգիչը ունեցաւ խոշոր յաջողութիւն:

Ցանկալի էր որ պ. Շահմուրադեանը մի համերգ եւս տար մատչելի գներով:

Հասարակութիւն շատ կար:

***Բաքուի ձայն***, 27 ***Մարտ*** 1913, ***առաջին տարի***, ***Թիւ*** 66, ***էջ*** 4

## ԿԻՐԱԿԻ, 5/18 ՄԱՅԻՍ 1913, ԹԻՖԼԻՍ

Թիֆլիսի Երաժշտական Դպրոցի դահլիճին մէջ՝ տարեկան երկրորդ գրական

երաժշտական երեկոյթ, նախաձեռնութեամբ *Պատանի* ալմանախի խմբագրութեան։

Յայտագիր.

Ա. ՄԱՍ. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Արշակ Յարութիւնեանի դասախօսութիւնը՝ *Պատանիների ինքնազարգացումը*

Բ. ՄԱՍ. ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ

Ռուսերէն եւ հայերէն արտասանութիւններ, ասմունքող՝ Լիւսի Սեւումեան

Ֆրանսերէն երկու երգ, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը* եւ *Աշուն*, մեներգ՝ Շ-Մ.

Կը մասնակցին նաեւ օր. Բաբալեան, պպ. Վարդիկեան, Միրզայեան եւ ուրիշներ

Գ. ՄԱՍ. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԲԱԺԻՆ

Աշըղ Հազիրի խումբը, մասնակցութեամբ Եազօրի (ճիանուր), Սանդրոյի (թառ) եւ ուրիշներու։

- «*Լրատու*», *Հորիզոն*, 24 *Ապրիլ* [/7 *Մայիս*] 1913, *հինգերորդ տարի*, *թիւ* 87, *էջ* 3։
- *Հորիզոն*, 3 *Մայիս* [/16 *Մայիս*] 1913, *հինգերորդ տարի*, *թիւ* 95, *էջ* 1։
- *Հորիզոն*, 5 *Մայիս* [/18 *Մայիս*] 1913, *հինգերորդ տարի*, *թիւ* 97, *էջ* 1։
- *Մշակ*, 5 *Մայիս* [/18 *Մայիս*] 1913, *քառասուներկուերորդ տարի*, *թիւ* 96, *էջ* 1։
- «*Պատանի ալմանախի երեկոյթը*», *Հորիզոն*, 7 *Մայիս* [/20 *Մայիս*] 1913, *հինգերորդ տարի*, *թիւ* 98, *էջ* 4։
- *Ազդագիր*, *Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարան*, *Աֆիշների դիւան*, *թիւ* 427։

## ՊԱՏԱՆԻ ԱԼՄԱՆԱԽԻ ԵՐԵԿՈՅԹԸ

Մայիսի 5-ին Երաժշտական Ընկերութեան դահլիճում տեղի ունեցաւ *Պատանի* ալմանախի նախաձեռնած երեկոյթը, որ սկսեց Ա. Յարութիւնեանի դասախօսութեամբ՝ կրթութեան մասին։

Հետաքրքրական թեմա էր դա՝ յատկապէս այդ օրւայ երիտասարդ եւ պատանի ունկնդիրների համար։ Դասախօսը հանրամատչելի կերպով պարզեց կրթութեան նշանակութիւնը, ապա նրա նպատակն ու կօնկրէտ խնդիրները։

Երեկոյթի երկրորդ բաժնում տիկ. Լիւսի Սեւումեանը ճաշակով արտասանեց ռուսերէն ու հայերէն երկու հատուածներ։ Տիկինը, ինչպէս սովորաբար, այս անգամ էլ ընդունուեց մեծ համակրութեամբ։

Հիացմունքով եւ ոգեւորութեամբ ընդունուեց երգիչ Շահմուրադեանը, որ երգեց

ֆրանս. կլասիկ հեղինակներից 2 բարդ հատուածներ եւ *Հայաստան երկիր դրախտավայր*. ապա միահամուռ ծափերից ստիպուած երգեց Ռ. Մելիքեանի *Վարդը* եւ *Աշունը*: Երգիչն օժտուած է մաքուր, ուժեղ եւ բոլոր նօտաներում միակերպ յաջողութեամբ հնչող թովիչ ձայնով: Դահլիճի հասարակութիւնը, որը, պէտք է խոստովանած, բաւական անկարգ էր, լսում էր պ. Շահմուրադեանին յափշտակութեամբ: Չենք կարող չյիշել այն ուրախալի երեւոյթը, որ հայ երեկոյթներին երգիչը կարողանում է հայերէն երգելու մի-երկու բան գտնել: Այսուհետեւ մայրենի երաժշտական գրականութիւնը կը զարգանայ. այդ ուղղութեամբ արդէն սկիզբ դրուած է մեր երաժիշտների կոչումից:

Վերջին բաժինը լիքն էր արեւելեան նուագներով ու երգերով. երգում էր աշըղ Հազրին եւ նուագում իր խմբի հետ:

Երեկոյթը վերջացաւ ժամը 12-ին մօտ. դահլիճը լիքն էր:

***Հորիզոն***, 7 ***Մայիս*** [/20 ***Մայիս***] 1913, ***Հինգերորդ տարի***, ***Թիւ*** 98, ***էջ*** 4

**ՀՈԿՏԵՄԲԵՐ 1913, Կ. ՊՈԼԻՍ**

Հոկտեմբերի կէսերուն կը ժամանէ Պոլիս:

- «***Մանր լուրեր***», ***Ազատամարտ***, 27 ***Սեպտեմբեր*** / 10 ***Հոկտեմբեր*** 1913, ***Թիւ*** 1324, ***Հինգերորդ տարի***, ***էջ*** 3:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

Ծանօթ երգիչ Պ. Շահմուրատեան որ, ինչպէս յայտնի է, երկու տարի առաջ կրցաւ Փարիզի օփէռայի բեմին վրայ երեւալ, եւ Եգիպտոսի մէջ ալ ծափահարուեցաւ գեղարուեստասէր հասարակութեան կողմէ, մօտ օրէն Պոլիս կը ժամանէ, ուր երգահանդէսներ պիտի կազմակերպէ:

***Ազատամարտ***, 27 ***Սեպտեմբեր*** / 10 ***Հոկտեմբեր*** 1913, ***Թիւ*** 1324, ***Հինգերորդ տարի***, ***էջ*** 3

**ՇԱԲԱԹ, 12/25 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1913 (ԿԷՍՕՐԷ ԱՌԱՋ), Կ. ՊՈԼԻՍ**

Պոլսոյ Մայր Եկեղեցիին մէջ (Գում Գաբու)՝ Ս. Պատարագ եւ հոգեհանգիստ հայ տառերու գիւտի 1500-ամեակին եւ հայ տպագրութեան 400-ամեակին զոյգ առիթներով:

Եռաձայն Պատարագը կ'երգէ Ղալաթիոյ Դպրաց Դասը՝ Կոմիտաս վարդապետի ղեկավարութեամբ: Երգեցողութեան կը մասնակցի Շ-Մ., որ կը մեներգէ *Ամենակալ* եւ *Տէր ողորմեա*: Մեղեդիները կ'երգեն Կոմիտաս վարդապետ եւ Շ-Մ.:

- «***Գիրի ու գիրքի մեծ տօնը***», ***Ժամանակ***, 13/26 ***Հոկտեմբեր*** 1913, ***Զ. տարի***, ***Թիւ*** 1603, ***էջ*** 2:

- «*Պոլսոյ Հանդէսները*», *Ազատամարտ*, 15/28 *Հոկտեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1338, *էջ* 1։
- *Փայլակ*, «*Մեծ յոբելեանը*», *Շանթ*, 1/14 *Նոյեմբեր* 1913, *Թիւ* 49, *էջ* 12։

## ԳԻՐԻ ՈՒ ԳԻՐՔԻ ՄԵԾ ՏՕՆԸ

### Ս. ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ժամը եւրոպական տասը կ'անցնէր՝ երբ սկսաւ բուն պատարագը, մասնակցութեամբ մայրաքաղաքս գտնուող վարդապետներու եւ քահանաներու, ինչպէս նաեւ Կոմիտաս վրդ.ի, Պ. Արմենակ Շահմուրատեանի ու Ղալաթիոյ Դպրաց Դասուն։ Օրուան պատարագիչն էր Պատր. Տեղապահ Տ. Գաբրիէլ Եպիսկ. Ճէվահիրեան, որուն կը սպասաւորէին վարդապետներ։

Պատարագի արարողութիւնները տեղի ունեցան եռաձայն, գրեթէ անթերի, մասնաւորապէս գնահատմանը արժանանալով օտարականներուն։

Ճաշու Աւետարանը իր բամբ ձայնովը կարդաց Ռոտոսթոյի առաջնորդ Տ. Գէորգ վրդ. Ասլանեանը։ Ինչպէս ըսինք, եռաձայն արարողութեանց մասնակցեցաւ յայտնի երգիչ Պ. Արմենակ Շահմուրատեան՝ շապիկ հագած՝ եւ առանձին երգեց *Ամենակալը*։ Վերաբերումի ատեն, հիացում եւ մասնաւոր հետաքրքրութիւն մը առթելով, Պ. Շահմուրատեանը երգեց նաեւ *Տէր ողորմեա*ն, նոյնքան հիանալի կերպով։

Արարողութեանց ընթացքին «մեղեդի»-ները երգեցին Կոմիտաս վրդ. եւ Պ. Ա. Շահմուրատեան։

Բայց մանաւանդ շատ փառաշուք եւ հանդիսաւոր եղաւ հոգեհանգստեան պաշտօնը. կը նախագահէր Պատր. Տեղապահ սրբազանը իր շուրջը ունենալով Հմայեակ, Մաղաքիա Տէրունեան, Գնէլ Գալէմքեարեան եւ Աղաւնունի սրբազանները, բոլորն ալ զգեստաւորուած եւ գաւազանակիր, ինչպէս նաեւ բազմաթիւ վարդապետներ, քահանաներ։ Երգեցողութիւնները շատ խորունկ կերպով տպաւորիչ էին։

Հոգեհանգիստի պահուն մոմ բաժնուեցաւ հանդիսականներուն, որոնց կարգին նաեւ դեսպանատանց թարգմաններուն, Աւետարանական Հայերու ներկայացուցիչներուն, տարբեր ազգութեանց եւ դաւանութեանց կրօնականներուն, վերջապէս բոլոր օտար հիւրերուն եւ ժողովրդեան։

Եկեղեցին կը շողշողար լոյսերու մէջ. այս առթիւ վառուած էին բոլոր ջահերը։
***Ժամանակ***, 13/26 ***Հոկտեմբեր*** 1913, ***Զ. տարի***, *Թիւ* 1603, *էջ* 2

# ՊՈԼՍՈՅ ՀԱՆԴԷՄՆԵՐԸ

## ՊԱՏԱՐԱԳԸ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏԸ

Բարեբաղդաբար հանդէսին առաջին մասը օրինակելի կարգապահութեամբ կատարուեցաւ եւ շատ խոր տպաւորութիւն գործեց թէ՛ հայ եւ թէ օտար հրաւիրեալներու եւ ժողովուրդին վրայ։

Օտար հիւրերուն մէջ կը նշմարուէին ռուս դեսպանատան թարգման Պ. Մանտէլշթամ, ֆրանսական դեսպ. Ա. թարգման Պ. Լըտու, գերման դեսպ. Բ. թարգման Վէպէր, ամերիկեան դեսպ. Թարգման Պ. Ա. Շմաւոնեան, ռումէն դեսպ. Ա. թարգման Պ. Լահայ, պարսիկ հիւպատոսը, Յունաց պատրիարքական փոխանորդը, Պուլկարներու Էկզարքի փոխանորդը, Ասորիներու պատրիարքական տեղապահը եւայլն։ Ներկայ էին նաեւ գրեթէ բոլոր օտար բարեգործական, կրթական եւ առեւտրական հաստատութեանց ներկայացուցիչները։ Աւելորդ է ըսել թէ՝ հայկական ամէն կարգի հաստատութիւններուն ներկայացուցիչներն էին որ կը կազմէին ներկայ հրաւիրեալներուն գրեթէ ամբողջութիւնը։ Կաթոլիկ եւ Աւետարանական հայ ժողովուրդի կողմէն ալ ներկայացուցիչներ հոն կը գտնուէին։

Պատարագեց պատրիարքական տեղապահ Ճէվահիրճեան եպիսկոպոս։ Շատ տպաւորիչ անակնկալ մը եղաւ ծանօթ տաղանդաւոր երգիչ Պ. Ա. Շահմուրատեանի մասնակցութիւնը, եւ Կոմիտաս վրդ.ի հետ այդ երկու *արթիսթ*ներու Ե. դարուն ստեղծագործութիւնը Ի. դարու վերջին կատարելագործութեամբը ըմբոշխնեցին մեզի, 15 դարերու հայ գեղարուեստական պատկերը տպաւորելով մեր երեւակայութեան մէջ։ Մասնաւորապէս օտար հիւրերը շատ լաւ գաղափար ստացան, մանաւանդ որ Ղալաթիոյ Դպրաց Դասը, Կոմիտաս վրդ.ի ղեկավարութեամբ, շատ ներդաշնակ եւ եռաձայն երգեց պատարագը։ Հոգեհանգիստն ալ եղաւ շատ պատկառելի եւ յուզիչ. հինգ եպիսկոպոսներ՝ պատարագի զգեստաւորութեամբ եւ բազմաթիւ վարդապետներ ու քահանաներ սեղանին վրայ՝ մասնակցեցան անոր։

Հոգեհանգիստին աւարտումէն ետք՝ օտար հիւրերը մեծարուեցան Երուսաղէմատան մէջ եւ շնորհաւորութիւններ մատուցին Պատրիարքական Տեղապահին։ Ազգային Ժողովին եւ Յոբելիանական Յանձնախումբին կողմէ՝ իրենց ատենապետները՝ շնորհակալութիւն յայտնեցին անոնց, որոնք մեկնեցան փոխադարձ շնորհակալութիւններով։

*Ազատամարտ*, 15/28 *Հոկտեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1338, *էջ* 1

## ՄԵԾ ՅՈԲԵԼԵԱՆԸ
**(հատուած)**

ՓԱՅԼԱԿ

Մասնաւորապէս յիշատակութեան արժանի է Շաբաթ առաւօտ Մայր Եկեղեցիի մէջ տեղի ունեցած հանդիսաւոր պատարագն ու հոգեհանգիստը, որուն անսովոր վեհութիւն մը տուած էր երկու հայ գեղարուեստագէտ-երաժիշտներու, Պ. Շահ-Մուրատեանի եւ Կոմիտաս վարդապետի երգեցողութեանց մասնակցութիւնը: Տեղական բոլոր օտար մամուլը հիացում արտայայտեց իրաւունքով: *Լա Թիւրքի* կը գրէր թէ, վերջին երեսուն տարուան շրջանին Պոլսոյ մէջ այսքան հանդիսաւոր տօն մը տեղի ունեցած ըլլալը չի յիշուիր: Մեր բարեկամներէն՝ իր սրամտութիւնով ծանօթ հայ-բողոքական մը, եկեղեցական երգեցողութիւններու վեհութենէն այնքան ազդուած էր որ, իր քով գտնուող պատուելիներուն ըսաւ պահ մը.

- Եթէ Աստուած աս աղօթքն ալ չլսէ, այլեւս ի զուր մի յոգնիք ձեր ձայնը հասցնելու համար Անոր, որովհետեւ կը նշանակէ թէ լսելիք չունի:

***Շանթ***, 1/14 ***Նոյեմբեր*** 1913, ***Թիւ*** 49, ***էջ*** 12

**ՇԱԲԱԹ, 12/25 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1913 (ԿԷՍՕՐԷ ԵՏՔ), Կ. ՊՈԼԻՍ**

Պոլսոյ Մայր Եկեղեցիին մէջ (Գում Գաբու)՝ յոբելեանական հանդէս հայ տառերու գիւտի 1500-ամեակին եւ հայ տպագրութեան 400-ամեակին զոյգ առիթներով:

*Ազատամարտ*ի խմբագրութիւնը հանդէսի պաշտօնական յայտարարութեան տակը իր կողմէ կ'աւելցնէ. «Ծ. Խ. – Երէկ վերջին պահուն իմացանք որ հոն պիտի երգէ նաեւ Պ. Շահմուրատեան»: Շ-Մ. հանդէսին ներկայ կը գտնուի առանց երգելու մտադրութիւն ունենալու: Հանդիսականները զայն տեսնելով օթեակին մէջ, ինքնաբուխ ծափահարութեամբ փափաք կը յայտնեն որ երգ մը երգէ: Կոմիտաս վարդապետ բեմէն կը յայտարարէ՝ որ Շ-Մ. շուտով երգահանդէս մը պիտի տայ ուր կրնան ունկնդրել իրեն:

- «***Համազգային մեծ յոբելեան***», ***Ազատամարտ***, 11/24 ***Հոկտեմբեր*** 1913, ***Հինգերորդ տարի***, ***Թիւ*** 1336, ***էջ*** 2:

- ***Փայլակ***, «***Մեծ յոբելեանը***», ***Շանթ***, 1/14 ***Նոյեմբեր*** 1913, ***Թիւ*** 49, ***էջ*** 12-13:

## ՄԵԾ ՅՈԲԵԼԵԱՆԸ
**(հատուած)**

ՓԱՅԼԱԿ

Միեւնոյն հանդէսին, ժողովուրդը Պ. Շահ-Մուրատեանը նշմարելով օթեակի մը մէջ, խանդավառ ծափեր ուղղեց արուեստագէտին հասցէին՝ անոր մէջ ցեղին հանճարին արտայայտութիւնը տեսնելու արդար հպարտութիւնով անշուշտ՝ եւ փափաք յայտնեց որ կտոր մըն ալ ան հաճի երգել։

Յանկարծ, Կոմիտաս վարդապետը, խոժոռ դէմքով մը, եկաւ բառին բուն իմաստով պաղ ջուր թափել ժողովուրդին այդ ցնծուն խանդավառութեան վրայ զոր իր գագաթնակէտին հասցուցած էր մանաւանդ, - մեծ հաճոյքով կը խոստովանինք, - իր խումբին անթերի կերպով երգած հրաշալի *Ո՜վ մեծասքանչ*ը։

- Այս որ անոր համար *փարա* չէք տուած, ըսաւ վարդապետը։ Ան ալ զատ *քօնսէռ* պիտի տայ, այն ատեն կ'երթաք *փարա*ն կուտաք, մտիկ կ'ընէք։

Յարգելի վարդապետը պէտք չէր մոռնար թէ ժողովուրդը իր տուած *փարա*յին իբր փոխարինութիւն Շահ-Մուրատեանի երգը պահանջելու ճղճիմ մտածումը չէր կրնար ունենալ, գոնէ՛ այդ օրը, այլ այսպէս կը կարծէր թէ այդ օրուան հայկական ընդհանուր տօնին ամէն մարդ իր ունեցած տաղանդէն բաժին մը պիտի բերէր սիրայօժար։

Եւ եթէ Պ. Շահ-Մուրատեան չերգելու պաճառ մը ունէր, - ինչ որ շատ հասկնալի է քանի որ կանխապէս հաւանութիւն տուած չէր ան, - այդ պարագան բացատրելու շատ աւելի պատշաճ ձեւեր չէին պակսեր Կոմիտաս վրդ.ին պէս սրամիտ մէկու մը համար։

Ժողովուրդին հետ այսպէս վարուիլ ներելի չէ։

***Շանթ***, 1/14 ***Նոյեմբեր*** 1913, ***Թիւ*** 49, ***էջ*** 12-13

### ԿԻՐԱԿԻ, 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ / 2 ՆՈՅԵՄԲԵՐ 1913, Կ. ՊՈԼԻՍ

Բերայի Ս. Երրորդութեան Եկեղեցիին մէջ՝ Սիմոն Զաւարեանի յուղարկաւորութեան արարողութիւնը։ Շ-Մ. կը մեներգէ *Տիրամայրն կայր հանդէպ խաչին*, Կոմիտաս վարդապետ՝ *Ի վերին Երուսաղէմ*, իսկ երկուքը միասին՝ *Հայր մեր*։

- «*Կիրակի օրուան Ազգային Յուղարկաւորութիւնը*», *Ազատամարտ*, 22 *Հոկտեմբեր* /4 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1344, *էջ* 1։

# ԿԻՐԱԿԻ ՕՐՈՒԱՆ
# ԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Եկեղեցիին բոլոր ջահերը լուսազարդուած էին։ Ընկուզինիէ շինուած դագաղը, մահաբեմի մը վրայ, դրուած էր եկեղեցիին մէջտեղը։ Իսկ դագաղին վրայ դրուած էր Հ. Յ. Դաշնակցութեան պսակը՝ համակ թարմ եւ գոյնզգոյն ծաղիկներէ պատրաստուած։

Մեռելական արարողութեանց կը նախագահէր պատր. տեղապահ Գաբրիէլ եպիսկ. Ճէվահիրճեան, իսկ կը մասնակցէին Հմայեակ Դիմաքսեան, Մկրտիչ Աղաւնունի, Գնէլ Գալէմքեարեան եպիսկոպոսները, հինգ-վեց վարդապետներ եւ տաս տասնըհինգ քահանաներ։

Եկեղեցիին Դասին մէջ սգակիր եկեղեցականներէն աչքի կը զարնէին նախորդ Պատրիարքներ Դուրեան եւ Արշարունի արքեպ.ներ, Մաղաքիա եպսկ. Տէրունեան, Պոլսոյ եւ Երուսաղէմի Պատրիարքական փոխանորդներ, Երուանդ եւ Սմբատ վրդ.ներ, Իզմիրի Առաջնորդ Մատթէոս վրդ., Ռօտոսթոյի առաջնորդ Գէորգ վրդ. Ասլանեան եւայլն։

Բերայի դպրաց դասը կը կատարէր երգեցողութիւնները՝ ներդաշնակօրէն։

Յայտնի երգիչ Պ. Ա. Շահմուրատեան իր թէնօռի բարձր, ուժեղ եւ ջինջ ձայնովը երգեց *Տիրամայրն կայր հանդէպ խաչին*ը, խոր տպաւորութիւն թողլով ներկաներուն վրայ, իսկ Կոմիտաս վարդապետ երգեց *Ի վերին Երուսաղէմ*ը։ Յետոյ երկուքը մէկ երգեցին *Հայր մեր*ը։ Երկու արուեստագէտներու մասնակցութիւնը գեղարուեստական դրօշմ մը ընծայեց եկեղեցական արարողութեանց։

Կատարեալ կանոնաւորութեամբ անցան եկեղեցական արարողութիւնները որոնց վրայ հսկելու պաշտօնը ունէր Ս. Երրորդութիւն եկեղեցիին լուսարարապետ Սահակ քահանայ Փափազեան։

*Ազատամարտ*, 22 *Հոկտեմբեր* / 4 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1344, *էջ* 1

## ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 23 ՀՈԿՏԵՄԲԵՐ / 5 ՆՈՅԵՄԲԵՐ 1913, Կ. ՊՈԼԻՍ

Ընդառաջելով իշխան Մէճիտ էֆէնտիի հրաւէրը, Շ-Մ. կ'այցելէ անոր ապարանքը, ուղեցութեամբ Կոմիտաս վարդապետի եւ տոքթ. Վ. Թորգոմեանի։ Շ-Մ. կ'երգէ կտոր մը եւ Մէճիտ կը խոստանայ ներկայ գտնուիլ երգահանդէսին։

- «*Մանր լուրեր*», *Ազատամարտ*, 24 *Հոկտեմբեր* / 6 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1346, *էջ* 3։

# ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

Երգիչ Պ. Շահմուրատեանի համբաւը լսելով, կայսերազուն իշխան Մէճիտ էֆ. փափաք յայտնած է զայն տեսնել: Երէկ, Կոմիտաս վրդ.ի եւ Տօքթ. Վ. Թորգոմ-եանի հետ՝ տաղանդաւոր երգիչը իշխանին ապարանքը գնաց եւ ներկայացաւ անոր: Մէճիտ էֆ. կտոր մը երգել տալով, իր հիացումը յայտնեց եւ խոստացաւ անպատճառ ներկայ ըլլալ Պ. Շահմուրատեանի նոյ. 3-ի նուագահանդէսին:
*Ազատամարտ*, 24 *Հոկտեմբեր* / 6 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1346, *էջ* 3

**ԿԻՐԱԿԻ, 3/16 ՆՈՅԵՄԲԵՐ 1913, Կ. ՊՈԼԻՍ**

Պոլսոյ Փըթի-Շանի ձմեռնային թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի առաջին պոլսական երգահանդէսը:

Յայտագիր.

Édouard Lalo: *Le Roi d'Ys*, արիա, մեներգ՝ Շ-Մ.

Ernest Reyer: *Sigurd*, արիա, մեներգ՝ Շ-Մ.

Herman Bemberg: *Chant hindou*, մեներգ՝ Շ-Մ.

César Franck եւ Christoph Willibald Gluck, մեներգ՝ Շ-Մ.

Դաշնակի նուագակցութիւն՝ Italo Selvelli

Կոմիտաս վարդապետ, *Սատրակն ասաց*, *Անտունի* եւ *Հայաստան* (կը կրկնուի), մեներգ՝ Շ-Մ.

Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ

Թաւջութակի մենանուագներ՝ Ժան Թրոեան

- *Ազատամարտ*, 23 *Հոկտեմբեր* / 5 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1345, *էջ* 3:
- *Ժամանակ*, 30 *Հոկտեմբեր* / 12 *Նոյեմբեր* 1913, *Զ. տարի*, *Թիւ* 1620, *էջ* 1:
- «*Ա. Շահ-Մուրատեան եւ եւրոպական մամուլը*», *Ազատամարտ*, 31 *Հոկտեմբեր* / 13 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1352, *էջ* 1-2:
- *Երուանդ Օտեան*, «*Տաղանդաւոր երգիչ Շահ-Մուրատեան*», *Մանանայ*, 2 *Նոյեմբեր* 1913 [*Հ. տ.*], *Թիւ* 4, *էջ* 64:
- *Ժամանակ*, 3/16 *Նոյեմբեր* 1913, *Զ. տարի*, *Թիւ* 1624, *էջ* 1:
- «*Արմենակ Շահ-Մուրատեանի առաջին համերգը. Հայ արուեստագէտին մեծ յաջողութիւնը*», *Ժամանակ*, 4/17 *Նոյեմբեր* 1913, *Զ. տարի*, *Թիւ* 1625, *էջ* 3:
- *Գեղամ Տ. Կարապետեան*, «*Տարօնի տատրակ չնորհալի Ա. Շահմուրատեան*», *Ազատամարտ*, 5/18 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1356, *էջ* 1:
- *Յակոբ Սիրունի*, «*Շահմուրատեանի համերգը*», *Ազատամարտ*, 5/18 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1356, *էջ* 2-3:
- *Երուանդ Օտեան*, «*Շահ-Մուրատեան համերգը*», *Մանանայ*, 9 *Նոյեմբեր* 1913 [*Հ. տ.*], *Թիւ* 5, *էջ* 79-80:

- *Շանթարգել*, «*Գրական եւ գեղարուեստական շարժում*», *Շանթ*, 1/14 *Դեկտեմբեր* 1913, *երրորդ տարի*, *թիւ* 51, *էջ* 48։

## ՏԱՂԱՆԴԱՒՈՐ ԵՐԳԻՉ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

ԵՐՈՒԱՆԴ ՕՏԵԱՆ

Բարիզի քօնսէրվաթուառէն փայլուն մրցանակով մը վկայական ստացած հայազգի երգիչը, որուն համբաւը շատոնց ի վեր լսած էինք, բախտ ունինք ժամանակէ մը ի վեր մեր մէջ վայելելու։

Պ. Շահ-Մուրատեան Պոլիս հասած է, երկու անգամ իր հիանալի ձայնը լսելի ըրաւ, նախ՝ Մայր եկեղեցիին մէջ, Մեծ Յոբելեաններուն առթիւ տեղի ունեցած եկեղեցական արարողութեան միջոցին եւ երկրորդ անգամ ալ հէ՜գ Սիմոն Զաւարեանի յուղարկաւորութեան հանդէսին, Բերայի Երրորդութեան եկեղեցիին մէջ։

Այդ երկու անգամներուն ալ Շահ-Մուրատեան հիացուց իր ունկնդիրները եւ արդարացուց իր համբաւը։ Միայն թէ բուն արուեստագէտը տակաւին երեւան չէր եկած, քանի որ համբաւաւոր երգիչը իր ձայնը հնչեցուցած էր միայն եկեղեցական երգեցողութեան մէջ։

Իսկ վաղը Կիրակի պիտի լսենք Շահ-Մուրատեանը Բըթի Շանի թատրոնին մէջ։ Բո՛ւն իր արուեստին կատարելութեան եւ բարձրութեանը մէջ եւ վստահ ենք որ իր սարքած համերգը մեծ յաղթանակ մը պիտի ըլլայ իրեն համար։

Կը լսենք թէ տաղանդաւոր արուեստագէտը դիտաւորութիւն ունի տակաւին մէկ քանի համերգներ տալ Պոլսոյ մէջ, մանաւանդ որ այս անգամ շատ քիչեր կրնան լսել ու ծափահարել զինքը։

*Մանանայ*, 2 *Նոյեմբեր* 1913 [*Հ. տ.*], *թիւ* 4, *էջ* 64

## ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՄԵՐԳԸ
## ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏԻՆ ՄԵԾ ՅԱՋՈՂՈՒԹԻՆԸ
### ԿԱՅՍԵՐԱԶՈՒՆ ԻՇԽԱՆ ՄԷՃԻՏ ԷՖԷՆՏԻ, ԴԵՍՊԱՆ ՄԸ ԵՒ ԵՒՐՈՊԱՑԻՆԵՐ ՆԵՐԿԱՅ Կ'ԸԼԼԱՆ ՀԱՄԵՐԳԻՆ

Երէկ Հայ ժողովուրդին ընտրեալ դասակարգը Բըթի-Շանի ձմեռնային թատրոնին մէջ հաճոյքը ունեցաւ ծափահարելու հայ երիտասարդ արուեստագէտ Պ. Արմենակ Շահ-Մուրատեանի տաղանդը։ Արուեստագէտին անվիճելի կարողութեան համբաւը ա՛յնքան կանուխէն տարածուած էր ժողովուրդին մէջ, եւ Գում-

Գաբուի ու Բերայի եկեղեցիներուն մէջ Պ. Շահ-Մուրատեանի ձայնը լսողները ա՛յնքան հմայուած էին որ, կարծես առաջին առիթի մը կը սպասուէր արուեստագէտը արժանաւորապէս ծափահարելու եւ մօտէն հիացում յայտնելու համար։ Թատրոնը իր ամէն կողմերով լեցուած էր բոլորովին, եւ ասեղ ձգելու տեղ չկար, ինչպէս կ'ըսէ ժողովրդական բացատրութիւնը։ Հոն էին Հայոց *Հայ-լայֆ* դասակարգը Հայ-Մամուլի ներկայացուցիչները, դպրոցական ուսանողներ, աշակերտուհիներ, եւ մանաւանդ եւրոպացի բարձրաստիճան անձնաւորութիւններ։ Կայսերական իշխան Ապտիւլ Մէճիտ էֆ., որուն գեղարուեստի հանդէպ տածած սէրը հանրածանօթ է, եւ որուն ներկայացած էր Պ. Շահ-Մուրատեան, երէկ թատրոնին մէջ իր ներկայութեամբը մեծ փայլ մը կուտար Համերգին եւ կը հպարտացնէր ամէն Հայ սիրտ։

Ներկաներուն մէջ կը նշմարուէին Սպանիական դեսպան Մ. Տօրի (որուն վերջին պահուն կարելի եղաւ օթեակ մը ճարել, բոլոր օթեակներն ալ կանխաւ բռնուած ըլլալուն պատճառով), Ռէժիի տնօրէն Մ. Ռամպէր եւ Տիկինը, Հանրային Պարտուց Վարչութեան տնօրէն Մ. Բիսար, Մ. Բիքար, կոմսուհի Օսթրօրօկ, նախկին վարչապետ Սայիտ փաշայի որդին, Տեարք Տիրան Քէլէկեան, Պետրոս Հալաճեան, Տօքթ. Թորգոմեան, Գրիգոր Զօհրապ, Տօքթ. Հալաճեան, Արշակ Գաբակէօզեան, Գառնիկ Ֆընտըգլեան, Տիրան Կիւմիւշկէրտան, Պէնոն Տէյիրմէնճեան, Յակոբ Էսայեան, Օննիկ Տէրունեան, Արմենակ Մանուկեան, Արսէն Շմաւոնեան, Աստուածատուր Հարենց, հայ եւ օտար թերթերու ներկայացուցիչներ եւ այլ բազմաթիւ անձնաւորութիւններ։

Կայսերական իշխան Մէճիտ էֆ. նստած էր ձախակողմի առաջին օթեակին մէջ, իր մօտ կը գտնուէին Տօքթ. Թորգոմեան, Պետրոս էֆ. Հալաճեան, իսկ Տիրան էֆ. Քէլէկեան, Տօքթ. Հալաճեան եւ Վարդգէս եւս իշխանին ներկայացան եւ պահ մը տեսակցեցան Նորին Բարձրապատուութեան հետ։

Ժամը մէկուկէսն էր տակաւին, ու սրահը լեցուած էր արդէն իսկ եւ ամէն ոք անհամբերութեամբ կը սպասէր վարագոյրին բացումին։

Վերջապէս ժամը ճիշդ 2-ին վարագոյրը բացուեցաւ, եւ որոտընդոստ ծափահարութիւն մը ծանոյց արուեստագէտին բեմ գալը։ Համերգին յայտագրին մեծ մասը եւրոպական ընտրեալ կտորներ կը կազմէին։

Շահ-Մուրատեան ամբողջ երկու ժամ հմայեց հանդիսականները։ Իր անքննադատելի գեղեցիկ ձայնին քնքուշ թրթռումներով եւ այլազան ելեւէջներովը առինքնեց զանոնք, իրապէս հոգեկան յափշտակութեան եւ վերացումի վայրկեաններ ըմբոշխնել տալով անոնց։ Երգերուն կ'ընկերակցէր դաշնակով, ծանօթ դաշնակահար Մ. Հ. Ֆուռլանի։ Երկրորդ երգը ջերմապէս ծափահարուեցաւ եւ Շահ-Մուրատեան երեք անգամ բեմ հրաւիրուեցաւ։ Ամէն անգամ որ երգերը վերջանային, իշխանը խանդավառօրէն կը ծափահարէր հայ արուեստագէտը եւ գլխու շարժումով իր մասնաւոր գոհունակութիւնը կը յայտնէր անոր։

Յայտագրին համաձայն, քանի մը կտորներ նուագեցին Մ. Հ. Ֆուռլանի (դաշնակով) եւ Մ. Ժան Թրոժանի (թաւ ջութակով) միասին. իսկ մէկ անգամ ալ Շահ-Մուրատեան երգեց անոնց նուագին ընկերակցութեամբ։

Յայտագրին Ա. Մասին վերջին կտորը կը կազմէր Հայկական գեղջուկ երգ մը՝ Կոմիտաս վարդապետի *Անտունի*ն, զոր Շահ-Մուրատեան երգեց հիանալիօրէն. Կոմիտաս վարդապետ իրեն ընկերացաւ դաշնակով։

Հայկական երգէն վերջ տրուեցաւ պզտիկ դադար մը, որու միջոցին հանդիսականները իրենց տպաւորութիւնները կը պատմէին իրարու, եւ հիացումնին կը յայտնէին, ա՜յնքան որ արուեստագէտին ձայնը ազդած էր իրենց վրայ։

Երկրորդ մասը սկսաւ դարձեալ Շահ-Մուրատեանի երգած Եւրոպական ընտիր կտորներով, զորս մերթ կ՚ընդհատէին միւս երկու օտար արուեստագէտներու նուագները։ Սակայն հանդիսականներուն մեծամասնութիւնը տենդոտ անհամբերութեամբ մը կը սպասէր Հայկական երգերուն, որոնք ամէնէն վերջը դրուած էին։

Շահ-Մուրատեան երգեց *Տատրակն ասաց* գեղջուկ երգը, որ խիստ լաւ տպաւորութիւն գործեց։ Այս երգը վերջանալուն՝ Բարատիին մէջ գտնուող Գուսան երգչախումբի անդամուհիները հանդիսականներուն խանդավառ ու երկարատեւ ծափերուն մէջտեղ երփներանգ թարմ ծաղիկներու փնջիկներ սկսան տեղացնել երիտասարդ արուեստագէտին վրայ, ու քանի մը վայրկեանի մէջ ամբողջ բեմը ծաղկանոցի մը երեւոյթը առաւ։

Կրկնակի ծափահարութիւններու վրայ, Շահ-Մուրատեան դարձեալ բեմ գալով, այս անգամ երգեց *Հայաստան երկիր դրախտավայր* երգը՝ յուզելով ներակները եւ արցունքներ խլելով անոնցմէ։ Արուեստագէտը իր հոգիէն, սիրտէն մաս մը կը դնէր կարծես իր շունչին մէջ եւ այդ շունչը կենդանի ու ոգեւորեալ թրթռումներով կը սաւառնէր հանդիսականներուն վրայ՝ հայրենասիրական եռանդով խանդավառելով զանոնք։ *Հայաստան*ը հրաշակերտ մըն էր, եւ արուեստագէտը ամէն շնորհաւորութեան արժանի է ատոր համար։ Մանաւանդ վերջին *Հայաստան*ին ցնցող «տա˝˝˝˝˝ն» մասնիկը հիանալի էր։

Իշխան Մէճիտ էֆ. մեկնեցաւ այս երգէն ետք։ Իշխանին մեկնումէն վերջ ժողովուրդին ընդհանուր փափաքին վրայ Պ. Շահ-Մուրատեան կրկնեց *Հայաստան երկիր դրախտավայր*ը, ուր երբ վերջացուց, Կոմիտաս վարդապետ, որ դաշնակով ընկերացած էր հայկական երգերուն, յանկարծ ոտքի ելաւ, ողջագուրուեցաւ երիտասարդ արուեստագէտին հետ, ու անոր ձեռքէն բռնելով հետեւեալ իմաստով քանի մը խօսք ըրաւ։

«Դո՜ւն, Հայաստանի զաւակ, հայրենի երգերովդ խանդավառեցիր մեր հոգիները։ Իմ ղեկավարութեանս տակ գտնուող Գուսան երգչախումբը յաւերժացնելու համար այն յիշատակը եւ հիացումը, զոր դուն ներշնչեցիր անոնց՝ քու երգերովդ, քեզի կը նուիրէ ասիկա»։

Ու Կոմիտաս վարդապետ թաւշապատ տուփի մը մէջ դրուած արժէքաւոր

նուէր մը տուաւ անոր։

Հանդիսականները մեկնեցան խիստ գոհ տպաւորութեան մը տակ, բայց լռիկ բողոքով մը թէ ինչո՛ւ ա՛յնքան շուտ վերջացաւ այս հոգեպարար վայելքը։

* * *

Կը լսենք թէ մայրաքաղաքիս հայաշատ կեդրոններէն ոմանք փափաք կը յայտնեն իրենց թաղերուն մէջ եւս վայելելու Շահ-Մուրատեանը։

*Ժամանակ*, 4/17 *Նոյեմբեր* 1913, *Զ. տարի*, *Թիւ* 1625, *էջ* 3

## ՏԱՐՕՆԻ ՏԱՏՐԱԿ ՇՆՈՐՀԱԼԻ Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ

ԳԵՂԱՄ Տ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ

Յարգելի հայրենակից,

Տատրակի գեղահնչիւն դայլայլդ դեռ կ'արձագանգէ թատրոնի կամարներուն տակ ու մեր սրտերուն վերեւը։

Միշտ, ծափ ու ծաղիկով զօրանա՛ս։

Ես արդէն ըմբոշխներ էի դայլայլներդ, երբ մանուկ էիր մատվարժ ու մատադատի, երբ՝ տաճարի մեղեդիին, մատուռի ստեղբին կը շաղէիր քու գեղգեղը սոխակի, կ'օրօրէիր, կը պրորէիր սրտերն ու դարտերը։

Չորակի ժամի պզտիկ խորանը՝ է՛ն օրերէն արդէն նեղ կ'իգար խորոտ ու խըրնկուն ձէնիդ, զոր գիտցար քաջապէս նըղնըղել ու եղանակել՝ Մասեաց Վաղարշապատէն մինչեւ Ֆրանսայի մեծ ոստանը ու սորվեցար երգերուն երգը՝ երաժշտական դժուարահաճ կաճառին, զուարթ փարիզցիներուն, առանց սակայն մոռնալու եւ պապենի երգերը – տաղն ու խաղը հովտաց հովիւին, ծմակաց ծաղիկին ու աղբրանց արունին։ – Ապրի՛ս։

Քու երեւումը տատրակի գեղգեղներով, զարթօնքը բերաւ մեզի յիշատակներուն՝ հայրենի երաժշտական մարած հանճարներուն, – Աստղիկներուն, Խաչատուրներուն, Մկրտիչներուն, Յակոբներուն ու նախիր մը քաղցրազրուցիկ *խաղ-զէռներուն*։

Առջի օր, երբ բուռերով ու բեռերով կը նուիրուէին քեզի ծափ ու ծաղիկներ ունկնդիր-համակիր երամէն, մենք ծաղիկներ չունէինք ու չի կրցինք հասցնել։ Ծաղկանց մեր աշխարհքը հեռուն ու խորուն էր։

Դափնիի այդ փնջակը հոն պէտք է տրուի քեզի, – ծաղիկ ծիծեռանց, ջրջընկնուած Մոգ-ձորի աղբերակով – մայրիկիդ քաղածը, քուրիկիդ հիւսածը –, անթառամ ծղօնը անթարշամ Տիրինկատարին ու ճշնարօտ այգեստանին Աստեղօնից խորհրդաւոր աւերակին։

*Գեղամ Տ. Կարապետեան*, «*Տարօնի տատրակ շնորհալի Ա. Շահմուրատեան*», *Ազատամարտ*, 5/18 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1356, *էջ* 1

# ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՀԱՄԵՐԳԸ

ՅԱԿՈԲ ՍԻՐՈՒՆԻ

Ազգային ինքնասիրութիւնը գգուող հանդէս մըն էր իրապէս կիրակի օրուան համերգը, զոր Շահմուրատեան հայ տաղանդաւոր երգիչը տուաւ Փըթի Շանի ձմեռնային թատրոնին մէջ՝ խանդավառուելու եկած ընտրեալ հայութեան մը ներկայութեան, որուն քով զգուիչ էր նաեւ տեսնել ներկայութիւնը բազմաթիւ օտարազգիներու, որոնք եկեր էին իրենց ծափի բաժինը բերելու հայ արուեստագէտին։

Պոլիսը շատ քիչ անգամ ականատես էր եղած նման ոգեւորութեան մը, զոր հայ հասարակութիւնը ցոյց տուաւ առջի օր, ծափահարելու փութալով իր մէկ տաղանդաւոր զաւակը։

Հասարակութեան ցոյց տուած այս խանդավառ ընդունելութիւնը ուշագրաւ երեւոյթ մըն է, որովհետեւ որքան ալ ներշնչուած ըլլայ ան հայ երգիչին համբաւէն, սակայն միւս կողմէ, գոնէ ինծի համար, հետեւանքն է ան հասարակութեան մէջ հետզհետէ զարթնող հետաքրքրութեան մը՝ դէպի մայրենի գեղարուեստն ու ցեղային հանճարը, որո́նց հանդէպ ցրտութեան եւ անտարբերութեան տխուր ապացոյցներ ցարդ շա́տ տուաւ, աւա́ղ։

Ու ձգտելով որ հասարակութիւնը խանդավառօրէն ծափահարէր իր զաւակը, ես, իմ անկիւնէս, կը ծափահարէի այդ զարթնող խանդավառութիւնը։

* * *

Արմենակ Շահմուրատեան, հարուստ թրթռականութեամբ (timbre) եւ զգայուն ուժեղութեամբ օժտուած այդ երգիչը կրցաւ ոչ միայն արդարացնել իր համբաւը, այլ նաեւ լուսաւոր հետք մը թողուց Պոլսոյ երաժշտական հորիզոնին վրայ, ուր դեռ նոյնքան փարթամ ձայնով որ եւ է արուեստագէտ չէ եկած երգել։

Իր յայտագիրը, կազմուած եւրոպական եւ հայկական երգերէ, կրցաւ մինչեւ ետք յուզման եւ սպասումի մէջ պահել ամբողջ սրահը։ Արուեստագէտը յաջորդաբար երգեց Սէզար Ֆրանքէ, Էտկառ Լալօէ, Րէյէրէ, Կլիւքէ, Պամպէռէ եւ Պիզէէ հատուածներ՝ որոնց դաշնակի վրայ կ՚ընկերանար Պ. Իթալօ Սէլվէլլի, եւ Կոմիտաս վրդ.ի դաշնաւորած *Տատրակն ասաց*ը եւ *Անտունի*ն, որոնց կը նուագակցէր Կոմիտաս վարդապետ։ Արուեստագէտին յաջողութիւնը մեծ էր մանաւանդ Լալօի *Լը Ռուա տ՚Իս*ին եւ Պամպէրի *Հնդկական երգ*ին մէջ, իսկ յայտագրէն դուրս երգուած *Հայաստան*ը վերջացաւ խանդազեղումի մը մէջ, մինչ Կոմիտաս վրդ.ի Գուսան երգչախումբին աշակերտուհիները վերնատունէն ծաղկեփունջեր կը թափէին վար։ Աւարտին, Կոմիտաս վրդ. թեւանցուկ բեմ գալով Շահմուրատեանի հետ՝ քանի մը զգածուած բառերէ ետք յանուն իր երգչախումբին ոսկիէ նրբակերտ խորհրդանշան մը նուիրեց։ Երգահանդէսին կը մասնակցէր նաեւ Պ.

Ժան Թրօեանի՝ իր թաւջութակին վրայ թիւրնդմէջ նուագելով։

Ու ցերեկոյթը աւարտած, հասարակութիւնը դեռ կը յամենար մեկնելու, մինչ արուեստագէտին ոսկիէ ձայնը դեռ կը թրթռար ականջներու մէջ եւ մինչեւ հոգիները։

«*Շահմուրատեանի համերգը*», *Ազատամարտ*, 5/18 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1356, *էջ* 2-3

## ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՀԱՄԵՐԳԸ

*Լա Թիւրքի* կը գրէ Շահ-Մուրատեանի համերգին առթիւ, «Հայկական տօն մը» խորագրին տակ.

«Հայկական կ՚ըսենք, որովհետեւ Պոլիսը ինչ որ կը հաշուէ իր մէջ իբրեւ հայ երեւելի, ուսանող եւ նոյն իսկ աշակերտ, երէկ ժամադրութիւն տուած էին Փըթի Շանի թատրոնին մէջ, ծափահարելու համար ազգային արուեստագէտը Շահ-Մուրատեան։ Խանդավառութիւնը իր գերագոյն աստիճանին հասած էր։ Հայերը հպարտ են Շահ-Մուրատեանով, եւ իրաւունք ունին։ Ան մաս կը կազմէ Փարիզի հայ արուեստագիտական ընտրեալ դասին, որ բարձր կը պահէ ազգային արժանապատուութիւնը։ Ասոնք անձեր են որ իրենց տաղանդին, յարատեւութեան եւ յաճախ յամառօրէն դիմադրուած զրկանքներու ուժով դիրքի հասած են։ Անոնք պատիւ կը բերեն, արդարեւ, իրենց ազգին։ Եւ երբ, ասոր պէս, կուգան իրենց հայրենակիցներուն գաղափար մը տալու իրենց կարողութեանց մասին, արդար է որ ցոյց տրուի այն խանդավառ ընդունելութիւնը՝ որուն արժանի են։ Այս ընդունելութիւնը երէկ կրկնուեցաւ քանիցս եւ մանաւանդ երբ արուեստագէտը, համերգին վերջը իր ամբողջ կարողութիւնը ի յայտ բերաւ Կոմիտաս վարդ.ի կողմէ ազգային եղանակներու վրայ դաշնակուած կտորներուն մէջ։ Հայաստանի երգը կրկնել տրուեցաւ, այնքան յուզմունքով երգուած էր, – գաղտնի եւ միեւնոյն ատեն հաղորդական յուզում մը։ Հայ աղջնակներ եկած էին ծաղկեփունջերով, զորս իրեն նետեցին վերնատունէն, եւ որոնցմով ծածկուեցաւ բեմը, Կոմիտաս վարդ.ի աշակերտները հանգանակութիւն մը ըրած էին նուիրելու համար անոր փոքր առարկայ մը, զոր Կոմիտաս վարդ. բեմին վրայ յանձնեց արուեստագէտին՝ կարճ ճառ մը արտասանելով։ Ներկայ էր իշխան Ապտիւլ Մէճիտ էֆ.։ Չպիտի յիշենք ներկայ հայ ընտանիքներու անունները, կը բաւականանանք եւրոպացիներունը յիշելով. – Սպանիական դեսպան Պ. տ'Օրի, Տիկին Պօման փաշա, կոմսուհի Օսթրօրօկ, Պ. եւ Օր. Րամպէռ, եւն.։

*Լէվանթ Հէրալտ* կը գրէ.-

«Հայկական մեծ տօն մը եղաւ աս, որ Փըթի Շանի թատրոնին մէջ հաւաքած էր, երէկ կէսօրէ ետք, հայ հասարակութեան երեւելիներէն խուռն բազմութիւն մը,

ինչպէս նաեւ օտարազգի անձնաւորութիւններ։

«Աննկարագրելի էր Շահ-Մուրատեանի յառաջ բերած խանդավառ ոգեւորութիւնը։ Այս երիտասարդ եւ տաղանդաւոր արուեստագէտը ջերմ խանդավառութեանց առարկայ դարձաւ։ Ամբողջ համերգը երկար ծափահարութիւն մըն էր ի պատիւ Պ. Շահ-Մուրատեանի, որ ստիպուեցաւ կրկնել բազմաթիւ կտորներ, ի միջի այլոց *Հայաստան*ի երգը։

«Մեզի համար նմանապէս հաճոյք մըն է արձանագրել ի պատիւ հայ ազգին, այս գեղարուեստական յաղթանակը։»

*Սթամպուլ* կըսէ.-

«Երէկ էր որ Փըթի Շանի ձմեռնային թատրոնին մէջ բազմաթիւ եւ ընտրեալ ներկաներու առջեւ տեղի ունեցաւ Փարիզի օփէրայի նշանաւոր երգիչ Պ. Շահ-Մուրատեանի համերգը։

«Կը ցաւինք որ այսօր չպիտի կարենանք մեծ տեղ յատկացնել խօսելու համար, ըստ արժանւոյն, այս հայ երգչին վրայ, որ իրապէս պատիւ մըն է արուեստին հետ հայրենիքին։

«Շահ-Մուրատեան լաւ դպրոցի կը պատկանի։ Իր ձայնը միատեսակ է ամէն ձայնալարի վրայ. տաք եւ համակրելի *թէմպր* ունի։ Պ. Շահ-Մուրատեան նշանաւոր հանդիսացաւ իր երգած բոլոր կտորներուն, մանաւանդ հայկական երգերուն մէջ։ Ներկաները երէկ արժանի խանդավառութիւնը ըրին հայ մեծ արուեստագէտին։

«Կոմիտաս վարդապետ երէկ ինքզինքը գերազանցեց իբրեւ հեղինակ եւ դաշնակող։»

*Մօնիթէօր* եւս յոյժ ներբողալից տողերու մէջ, կը գրէ հետեւեալը.

«Հայ հասարակութեան ամբողջ ընտրեալ մասը եկած էր ներկայ ըլլալու գեղարուեստական այս խիստ անսովոր հանդէսին, որ որքան խաղաղ, նոյնքան խիստ խանդավառ ազգային ցոյցի մը բնոյթը առաւ։»

«*ՇահՄուրատեանի Համերգը*», *Ազատամարտ*, 5/18 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1356, *էջ* 2-3

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՀԱՄԵՐԳԸ

ԵՐՈՒԱՆԴ ՕՏԵԱՆ

Լաւագոյն է ըսել Շահ-Մուրատեան յաղթանակը։

Բերա, Փըթի-Շանի թատրոնին մէջ, անցած կիրակի ցերեկ տեղի ունեցած համերգը արդարեւ ճշմարիտ յաղթանակ մը եղաւ տաղանդաւոր երգիչին համար որ ամբողջ երկու ժամ մեզ թովեց իր ձայնին հմայքին տակ։

Միեւնոյն ժամանակ հայ գեղարուեստական յաղթանակ մըն ալ եղաւ այս համերգը մեզ ամենուս համար։

Կոմիտաս վարդապետ եւ Շահ-Մուրատեան ցոյց տուին թէ հայ երաժշտութիւն մը, հայ ներդաշնակութիւն մը կայ որ կրնայ մրցիլ եւրոպականին հետ։

Հայկական երգերը ո՛չ թէ միայն թունդ հանեցին մեր սիրտերը, այլ հիացուցին նաեւ հոն գտնուող բամաթիւ օտարականները, որոնք մեզի հետ ու մեզի չափ ծափահարեցին զանոնք։

Փափաքելի է որ Շահ-Մուրատեան տակաւին մէկ քանի համերգներ ալ սարքէ, Բերա թէ այլուր, աւելի լայն տեղ մը տալով հայկական երգերուն։

Ընդհանուր փափաքը այն է նաեւ որ այդ համերգները տեղի ունենան հանրամատչելի մուտքերով, որպէսզի ամենքն ալ կարենան վայելել Մշեցի օժտեալ երգիչին ձայնն ու տաղանդը։

Կը սպասենք նոր համերգներու։

*Մանանայ*, 9 *Նոյեմբեր* 1913 [*Հ. տ.*], *Թիւ* 5, *էջ* 79-80

## ԳՐԱԿԱՆ ԵՒ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

ՇԱՆԹԱՐԳԵԼ

Շահ-Մուրատեանի առաջին նուագահանդէսը, որ տեղի ունեցաւ Բըթի-Շանի ձմեռնային թատրոնին մէջ, Նոյեմ. 3-ին, երաժշտական կատարեալ խրախճանք մը եղաւ մեզի համար։ Առաջին անգամն էր որ Պոլսահայ բեմին վրայէն հայեւրոպական երգիչ մը իր ձայնին վրդովիչ ներդաշնակութիւնովը կը յուզէր մեր սիրտերը։ Օբէրա տը Բառիի Թէնօր եւ Բարիզի Գօնսէրվաթուառէն առաջին մրցանակով պատուուած Ա. Շահ-Մուրատեան, իր ճկուն, ազնուական ձայնին տիրապետութեան տակ պահեց մեզ՝ գրեթէ ամբողջ նուագահանդէսի ընթացքին։ Կոմիտաս վարդապետ՝ իր զուտ հայկական սքանչելի երգերով հայուն նո՛ր ոգի եւ կենդանութիւն տուաւ. Շահ-Մուրատեան եւրոպական երաժշտութեան ամենէն ընտիր արտադրութիւններուն յաջող արտայայտութիւնովը՝ անգամ մը աւելի մեզի ապահովցուց թէ՝ Հայը արուեստներու ու գեղեցկութեան ընդունակ է։

*Շանթ*, 1/14 *Դեկտեմբեր* 1913, *երրորդ տարի*, *Թիւ* 51, *էջ* 48

[Լուսանկար]

### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 4/17 ՆՈՅԵՄԲԵՐ 1913, Կ. ՊՈԼԻՍ

Պոլիսէն նամակ կը գրէ Փարիզ՝ Արշակ Չօպանեանին։ Կը տեղեկացնէ, որ երգահանդէսին յաջորդ օրը ակումբին մէջ թէյ խմեց Մարտէն Յակոբեանի,

Գրիգոր Զօհրապի եւ ատամնաբոյժ Սուրէնեանի հետ, որոնց հաղորդեց Չօպանեանի գործունէութեան 25-ամեայ յոբելեանը նշելու անհրաժշտութիւնը Պոլսոյ մէջ։ Յետագային, իր «Քրոնիկ»-ներէն մէկուն մէջ, Չօպանեան պիտի յիշէր այս նամակը եւ տեղեկացնէր՝ որ պատերազմին պատճառով ծրագիրը չգործադրուեցաւ։

- *Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 49։

- *Արշակ Չօպանեան*, «*Քրոնիկ*», *Անահիտ*, *Հոկտեմբեր-Նոյեմբեր-Դեկտեմբեր* 1939, *նոր շրջան*, *Ժ. տարի*, *թիւ* 6, *էջ* 27-28։

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ

16 [հաւանաբար՝ 17, Հ.Ա.] Նոյեմբեր, 1913

Սիրելի Չօպանեան

Երէկի concert-էս ետք, այս երեկոյ club-ի մէկ սրահին մէջ պ. Մարտէն Յակոբեանի հետ թէյ խմած պարագային, պ. Զօհրաբ եւ Սուրէնեան (dentist) եկան մեզ մօտ նստեցան, աղուորիկ ձեւով մը խօսք բացի քո գործունէութեանդ մասին եւ գրեթէ կէս մը յանդիմանական եւ կէս մըն ալ յորդորական ձեւով շեշտեցի յոբելեանդ կատարելուն անհրաժեշտութիւնը, իբր երախտագիտական ցայտուն եւ իրական արտայայտութիւն մը քո քառորդ դարուայ արուեստագէտ ծառայութեան։ Մասնաւորապէս ծանրացայ Զօհրաբին վրայ, որ այդ գործին գլուխը կանգնի, իբրեւ գրագէտ եւ արժէք ունեցող մեծ մտաւորական մը. շատ սիրով ընդունեց իմ այս առաջարկը եւ գիւտ ըրածի մը պէս զոհ եղաւ ու մարմին տալու այդ առաջարկութեանս խոստացաւ մասնաժողով մը կազմել. յետոյ ըսի, որ կարծիքդ առնէ նախապէս։

Մինչ Զօհրաբ դիմացի սեղանի վրայ նստած քեզ կը գրէ այդ մասին, ես ալ ամենամեծ գործ մը կատարելու սրտի մեծ հրճուանքով քեզ կը գրեմ այս երկտողը։

Եթէ վերջերս փոքրիկ մը պաղութիւն մը անցաւ մեր մէջ, սակայն մէկու մը, մանաւանդ բարեկամի մը արժանիքն գիտեմ բարձր դասել անիմաստ նկատումներէ։ Ձեր առողջութեան, բարեկեցութեան հոգովս կը փափագիմ, որովհետեւ մեծ դէմք էք հայ իրականութեան մէջ եւ հայուն բոլոր գնահատութեան արժանի, որովհետեւ իրաւամբ անոր փառքերէն մինն էք։

Այդչափ ըրածս ու քեզի գրածս ընդունեցէք սիրող ու գնահատող սրտի մը իբր ճշմարիտ արձագանգ, այդ անկեղծ զգացումներով քեզ կը համբուրեմ։

Ա. Շահ-Մուրատեան

Յ. Գ. Եթէ երբեք պէտք տեսնաս այդ առթիւ ինձ գրել, ուղղէ նամակս Սէրթլեանին: Մարտին Յակոբեանը զիս տաքութեամբ մը շնորհաւորեց կարողանալու համար Զօհրաբը մէջտեղ հանելու:
*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 49

## ՔՐՈՆԻԿ
**(հատուած)**

ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ

Շահ-Մուրատեանի մէջ՝ շքեղ արուեստագէտին քով՝ կար եւ ազնիւ նկարագրով մարդ մը: Ատոր ապացոյցները, զոր մօտէն տեսած եմ, շատ են: Կ'ուզեմ հոս յիշատակել ատոնցմէ մէկ քանին: Ինք է որ վերջ դնելու համար այն ցրտութեան որ վերեւ յիշուած պարագաներուն հետեւանքով իր ինծի հետ ունեցած յարաբերութեանց մէջ մտած էր, 1913-ին, երբ քանի մը տարիէ ի վեր տեւող ջղային տկարութենէ մը կը տառապէի, ինքնաբերաբար խորհեր էր, Պոլիս գտնուած միջոցին, Գրիգոր Զօհրապին թելադրել որ իմ գրական գործունէութեանս քսանեւհինգամեակի տօնախմբումը կազմակերպէր, ինչ որ ըրաւ Զօհրապ՝ կազմելով յոբելեանական մեծ յանձնաժողով մը: 1914-ի պատերազմը պայթելով՝ այդ ծրագիրը ջուրն ինկաւ: Շահ-Մուրատեան, որ աղուոր նամակով մը ինծի հաղորդեց իր այդ նախաձեռնութիւնը, նորէն դարձաւ՝ ինչպէս առաջ՝ իմ ամենասիրելի բարեկամներէս մին, եւ մեր բարեկամութիւնը այլ եւս մինչեւ իր մահը մնաց անայլայլ:
*Անահիտ*, *Հոկտեմբեր-Նոյեմբեր-Դեկտեմբեր* 1939, *նոր շրջան*, *Ժ. տարի*, *թիւ* 6, *էջ* 27-28

### ՆՈՅԵՄԲԵՐ 1913, Կ. ՊՈԼԻՍ

Կը բնակի Կոմիտաս վարդապետի բնակարանը:

- *Կոմիտաս վարդապետի* 1913 *Նոյեմբեր* 20 / *Դեկտեմբեր* 3 *թուակիր նամակը* (*Պոլիս*) *Մարգարիտ Բաբայեանին* (*Փարիզ*)**:** *Կոմիտաս. Նամակներ*, *տեքստը կազմեց*, *առաջաբանը եւ ծանօթագրութիւնները գրեց Ցօլիկ Բեքարեան*, *խմբագիր՝ Օֆէլյա Բեքարեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարան*, 2000, *էջ* 38**:**

## ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՆԱՄԱԿԸ ՄԱՐԳԱՐԻՏ ԲԱԲԱՅԵԱՆԻՆ
**(հատուած)**

1913, 20/3 Նոյեմբեր, Կ. Պոլիս

Pangalti, Pera, 83(47)

Սիրելի՛ Մարգօ,

Արմենակ Շահմուրադեանն այստեղ է, ինձ մօտ, տանս. համերգը շատ յաջող անցաւ անցաւ, պատրաստւում է երկրորդի համար:

Քոյդ Կոմիտաս Վարդապետ

*Կոմիտաս. նամակներ*, *տեքստը կազմեց, առաջաբանը եւ ծանօթագրութիւնները գրեց Ցօղիկ Բեքարեան, խմբագիր՝ Օֆելիա Բեքարեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարան*, 2000, *էջ* 38

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 20 ՆՈՅԵՄԲԵՐ / 3 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1913, Կ.ՊՈԼԻՍ**

Գատըքէօյի ձմեռնային թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի Պոլիսի երկրորդ երգահանդէսը:

Յայտագիր.

Georges Bizet, Giacomo Puccini, մեներգ՝ Շ-Մ.

Դաշնակի նուագակցութիւն՝ Italo Selvelli

Կոմիտաս վարդապետ, *Կռունկ*, *Արօր տատրակ* եւ *Բամբ որոտան*, մեներգ՝ Շ-Մ.

Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ

Մասնակցութեամբ տիկ. Hélène Lapierre-ի

- «*Շահ-Մուրատեան նուագահանդէս*», *Ազատամարտ*, 13/26 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1363, *էջ* 3:
- «*Շահ-Մուրատեան Համերգը*», *Ժամանակ*, 16/29 *Նոյեմբեր* 1913, *Զ. տարի*, *Թիւ* 1632, *էջ* 3:
- «*Շահ-Մուրատեան Համերգ Գատը-գիւղի մէջ*», *Ազատամարտ*, 17/30 *Նոյեմբեր* 1913, *Հինգերորդ տարի*, *Թիւ* 1367, *էջ* 4:

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՀԱՄԵՐԳ ԳԱՏԸ-ԳԻՒՂԻ ՄԷՋ

Յառաջիկայ չորեքշաբթի գիշեր, 20 նոյեմբեր, Գատըքէօյի Ափօլլօն թատրոնին մէջ տեղի կ’ունենայ Փարիզի օփերայի յայտնի երգիչ Պ. Արմ. Շահ-Մուրատեանի

երկրորդ համերգը՝ մասնակցութեամբ Տիկ. Հելլէն Լափէրիէռի։ Պ. Շահ-Մուրատ-եան պիտի երգէ մասնաւորապէս Պիզէէն եւ Փուչչինիէն կտորներ՝ դաշնակի ընկերակցութեամբ Մ. Սէլվէլլիի կողմէ եւ *Կռունկը*, *Արօր տատրակը* ու *Բամբ որոտանը* որոնց դաշնակով պիտի ընկերանայ Կոմիտաս վրդ.։

Տոմսերը հիմակուընէ կը վաճառուին Գատըքէօյ Հայոց եկեղեցիին դիմաց Չպուքճեան դեղարանէն։

*Ազատամարտ*, 17/30 *Նոյեմբեր* 1913, *հինգերորդ տարի*, *թիւ* 1367, *էջ* 4

**ՇԱԲԱԹ, 23 ՆՈՅԵՄԲԵՐ / 6 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1913, Կ. ՊՈԼԻՍ-ԻԶՄԻՐ**

Պոլիսէն կը մեկնի դէպի Իզմիր, երգահանդէսներ տալու համար։

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 23 *Նոյեմբեր* / 6 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *թիւ* 1316, *էջ* 2։

**ՆՈՅԵՄԲԵՐ / ԴԵԿՏԵՄԲԵՐ 1913, ԻԶՄԻՐ**

Կը հասնի Իզմիր եւ հայկական մամուլը ջերմօրէն կ՛ողջունէ իր գալուստը։

- «*Շահ-Մուրատեան յԻզմիր*», *Դաշինք*, 26 *Նոյեմբեր* / 9 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *թիւ* 1318, *էջ* 3։

- *Ես*, «*Հայելիին մէջ*», *Դաշինք*, 27 *Նոյեմբեր* / 10 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *թիւ* 1319, *էջ* 1։

- «*Պ. Շահ-Մուրատեան*», *Դաշինք*, 28 *Նոյեմբեր* / 11 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *թիւ* 1320, *էջ* 2։

- *Ես*, «*Հայելիին մէջ*», *Դաշինք*, 30 *Նոյեմբեր* / 13 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *թիւ* 1322, *էջ* 1-2։

- *Մառի Պէյլէրեան*, «*Արուեստին առջեւ*», *Դաշինք*, 30 *Նոյեմբեր* / 13 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *թիւ* 1322, *էջ* 2։

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՅԻԶՄԻՐ

Պօլսահայերէն ետք Իզմիրահայերն պիտի ունենան բարեբաղդութիւնը լսելու այդ հայ արուեստագէտն որու համբաւը ստէպ լսելու պատեհութիւնը ունեցած էին, բայց ոչ առիթն զայն մօտէն վայելելու։

Հոս՝ Տիար Շահ-Մուրատեանի գովեստն ընելու հարկը բնաւ չենք տեսներ. անոր տաղանդը հանրածանօթ է եւ պիտի կրնանք այսպէս զայն մօտէն գնահատելու։

Արդէն իսկ ձեռնարկուած է Իզմիրի հայ տիկիններէ եւ պարոններէ

յանձնախումբ մը կազմելու, կարգադրելու համար հարկ եղածները յառաջիկային սարքուելիք *քոնսէռ*ին առթիւ:

Պիտի ունենանք նաեւ առիթներ անդրադառնալու Տիար Շահ-Մուրատեանի քոնսէռին եւ նաեւ ներկայելու արուեստագէտը Իզմիրի մէջ:

***Դաշինք***, 26 ***Նոյեմբեր*** / 9 ***Դեկտեմբեր*** 1913, ***Ե. տարի***, ***Թիւ*** 1318, ***էջ*** 3

## ՀԱՅԵԼԻԻՆ ՄԷՋ

ԵՍ

Պ. Շահ-Մուրատեան Իզմիր է:

Պատեհութիւնն ունեցայ զինք մօտէն ճանչնալու:

Չպիտի փորձուիմ անոր դիմագիծերը նկարագրելու, այսքան միայն պիտի ըսեմ թէ համակրելի արտաքին մը ունի, որ նախ եւ առաջ անմիջապէս կրնայ ըլլալ որ լաւ տպաւորութիւն մը չթողու, բայց երբ հետզհետէ սկսիս դիտել զայն եւ ուշի ուշով հետեւիլ իր շեշտին՝ երբ կ'խօսի, իր շարժուձեւերուն՝ երբ կ'ոգեւորուի, իր արտայայտութեանց՝ երբ կ'վիճաբանի, անմիջապէս համակրութեան մթնոլորտի մը մէջ կ'զգաս ինքզինքդ ու կ'կարծես թէ Պ. Շահ-Մուրատեան վաղեմի ծանօթ մըն է կամ արդէն հին բարեկամ մը:

Տաքարիւն, խօսուն, իր սկզբունքներուն տէր, իր արուեստագէտի տաղանդին հետ կ'մարմնաւորէ նաեւ գործնական մարդու կրկնակ յատկութիւնները, որոնք հազուագիւտ բացառութիւն մըն են ընդհանրապէս ու փնտռուած արժանիք մը ամէն ինքզինք յարգել գիտցողի, մանաւանդ երբ ան արուեստագէտ մըն է բառին իսկական առումով:

Շահ-Մուրատեան անկեղծ բնաւորութեամբ մը օժտուած, հասարակ մահկանացուներու վրայ թերեւս քիչիկ մը խստափոյթ տպաւորութիւն մը թողու, բայց այնպիսի ներդաշնակ ոճով ու շեշտով մը կ'արտայայտուի, ու այնքա՜ն ճշմարտանման անկեղծութեամբ մը կ'պարզէ իր միտքն, որ սիրայօժար կ'ունկնդրես իր տեսակէտներուն ու երբէք րոպէ մը իսկ չես անդրադառնար, թէ իր արտայայտութեան եղանակն համեմուած է սուր սլաքներով, խայթող հեգնանքներով կամ յատուկ ու նպատակին հասնող բացատրութիւններով:

Այժմ որ Պ. Շահ-Մուրատեան Իզմիր հասաւ, ի՞նչ պիտի ընենք, կուշտ ու կուռ պիտի հիանանք վրան չէ՞, պիտի գովենք, մեծ արուեստագէտ մը ըլլալը պիտի հռչակենք, յետո՞յ, երբոր *քօնսէր* մը սարքէ ո՜ դժբաղդութիւն, կամ օդը ցուրտ եղած պիտի ըլլայ, կամ անձրեւ, կամ կարկուտ, կամ ձիւն, կամ վերջապէս եթէ կլիման օգնութեան չհասնի մեզի, օրուան յանցանք պիտի գտնենք ու եթէ այդ ալ չըլլայ, շատ շատ պիտի ըսենք թէ *քօնսէր*ի մուտքն ամէն քսակներու համար

դիւրամատչելի չէր...:

Որովհետեւ Իզմիրցիքս առանձնաշնորհում մը ունենալ կ՚կարծենք, քանի մը *օխթարաքի*ով վայելելու ամենէ մեծ արժանիքները, ասիկա թող չափազանցութիւն մը չկարծեն քաղաքացիներս ու չսրտմտին, Շահ-Մուրատեանէ վարակւեցայ թող անգամուան մը համար ըլլայ, անկեղծ ըլլանք ու ուղղակի ըսելիքս ըսեմ, այսքան մը ներողամիտ բարեացակամութիւն յուսալից եմ վայելելու իզմիրցիներէն...:

Եւ չկարծուի թէ տարապայման գիներ պիտի նշանակուին մուտքի համար, ոչ, առայժմ վաղահաս իսկ է այս մասին խորհիլ, բայց Իզմիրին հոգեբանութեան ծանօթ ըլլալուս կ՚կանխեմ ինչ ինչ ծանօթ իրողութիւններ, անոնց վրայ այժմէն անդրադառնալով:

Շահ-Մուրատեան որ Գահիրէի մէջ անցեալ տարի այնքան մեծ ոգեւորութիւն մը առաջ բերաւ, ոչ միայն հայերու այլ նաեւ օտարներու առջեւ, եւ վերջերս Պոլսոյ մէջ այնքան խանդավառութեամբ ծափողջունուեցաւ օտարներէն եւ հայերէն հաւասարապէս, չեմ կարծեր թէ լաւ յիշատակ մըն ալ չտանի Իզմիրէն, որու արուեստագիտական նուրբ ճաշակին վրայ շատ բարձր գաղափարներով առլեցուն եկած է քաղաքս:

Իզմիրցւոց կ՚մնայ ճերմակ երես ելնել գործին մէջէն...:

***ես***, «***Հայելիին մէջ***», ***Դաշինք***, 27 ***Նոյեմբեր*** / 10 ***Դեկտեմբեր*** 1913, ***Ե. տարի***, ***Թիւ*** 1319, ***էջ*** 1

## ՀԱՅԵԼԻԻՆ ՄԷՋ

ԵՍ

Խա՜... խօ՜... հա՜... չա՜... չօ՜... չա՜... ներու պէս բաներ դարձեալ պիտի ըլլա՞ն, հիմակուց գիտնանք, նորէն չխաբուինք, ականջը կանչէ Կոմիտաս վարդապետին գօնսէրին պէս: Պ. Շահ-Մուրատեանը կ՚գովէք, հասկցանք, մինչեւ երկինք բարձրացուցիք, ատոր ալ աչք կ՚գոցենք, արդէն քիչ շատ համբաւը մենք ալ լսեցինք, բայց Աստուծոյ սիրոյն ըլլայ, ըսէք մեզի թէ ինչ տեսակ Գօնսէր պիտի ըլլայ:

- Ո՜չ, տիկիններ, ո՜չ օրիորդներ, ոչ պարոններ, խաի, խօսի պէս, չաթի, բաթի պէս բաներ չկան այս անգամ, եւրոպական նշանաւոր օբերաներէ հատուածներ կան ու իբրեւ հայ անշուշտ մէկ երկու հայերէն երգեր...:

Ինչ ինչ դասակարգերու մէջ ու ասոնք բաւական մեծկակ մեծամասնութիւն մը կ՚կազմեն, նկատելով որ մեր գեղարուեստասէր ընտրեալ դասակարգին կ՚պատկանին այս հնհնուքը կ՚տիրէ, Կոմիտաս վարդապետ չլսէ, անոր երգած երգերուն նմանողութիւն մը լսելու երկիւղէն բռնուած են, նոյն իսկ Պ. Շահ-

Մուրատեանի Բարիզի գոնսէրվաթուառէն պսակաւոր ըլլալը գիտնալով հան-դերձ, թէ ինչո՞ւ այս երկիւղը, որ այնքան ալ արդարանալի չէ, շատ որոշ է, Իզմիրցի հայերն ընդհանրապէս մէկ բառով գոհ չմնացին Կոմիտաս վրդ.ի անձնապէս երգածներէն, զմայլելով հանդերձ շատ կարճ ժամանակի մը մէջ քանի մը ձայներով, մեծկակ երգեցիկ աղջիկներու ու պատանիներու խումբ մը կազմել յաջողելուն:

Եւ ընդունելով միանգամայն թէ մեծ կարողութեան ու հեղինակութեան մը կարօտ էր այդ կազմակերպութեան յաջողութիւնը, չկրցան գնահատել անոնց երգած երգերը, որոնք ամենքն ալ միօրինակ գտան, նոյն թօնով, նոյն ձայներով, մինչդեռ եկեղեցական երգեցողութեանց մասը գնահատեցին, մանաւանդ երբ Կոմիտաս վրդպ. առիթն ունեցաւ Ստեփաննոսի տաճարին մէջ լսելի ընելու իր գրաւիչ ձայնը:

Իզմիրցին այսպէս է. ի՞նչ կրնանք ըսել, եւ եթէ այսօր Կոմիտաս վրդ. Իզմիր գայ նոյն իսկ բոլորովին տարբեր ծրագրով նոր քօնսէր մը կազմակերպելու, տարակուսելի է անոր յաջողութիւնն, որովհետեւ գեղարուեստասէր ժողովուրդն այն վախն պիտի ունենայ որ դարձեալ խա, խօի պէս բաներ պիտի հրամցնէ իրեն:

Պ. Շահ-Մուրատեանի պարագան տարբեր է սակայն, ան բոլորովին եւրոպական գօնսէր մըն է որ պիտի մեծարէ հանդիսականներուն եւ յաջողու-թիւնն ալ անխուսափելի կ'նկատեմ, որովհետեւ գոյանալիք հասոյթին կէսը վարժարանաց յատկացուելու կէտը շատ լաւ տպաւորութիւն մը պատճառած է առհասարակ վարժարանաց բոլոր բարեկամ եւ անձնուէր գործիչներուն եւ հասարակութեան վրայ, եւ այս պարագան գրգիռ մը պիտի ըլլայ նաեւ օտար-ներուն գնահատելու հայ արուեստագէտին ոչ միայն բարձր արժանիքն ու կարողութիւնը այլ նաեւ դէպի ազգային հաստատութիւններն իր բոլորանուէր անձուիրութիւնը:

Ո՞չ խա, խօ կայ, ո՞չ` չա չօ, հանգիստ եղիք...:

***Դաշինք***, 30 ***Նոյեմբեր*** / 13 ***Դեկտեմբեր*** 1913, ***Ե. տարի***, ***Թիւ*** 1322, ***էջ*** 1-2

## ԱՐՈՒԵՍՏԻՆ ԱՌՋԵՒ

ՄԱՌԻ ՊԷՅԼԷՐԵԱՆ

Վերջապէս մեր մօտն է Պր. Շահ-Մուրատեան, եւ քիչ օրէն պիտի ըմբոշխենք իր զմայլելի տաղանդին աննման վայելքը:

Ամեն անոնք որ երաժշտութեան ջերմեռանդ երկրպագուներ են, ամե՛ն անոնք որ բնութենէն աննիւթական ու երկնային վայելքով գինովնալու, անորմո՛վ վերա-նալու լայն ու բացարձակ ըմբռնողութեամբ, վերջապէս պիտի կրնան կուռ ու

կուշտ յագուրդ տալ իրենց հոգիին մէկ գերազանց պէտքին, որովհետեւ երաժշտութիւնը զգայուն հոգիին ամենակարեւոր եւ անհարժեշտ պէտքն է, ինչպէս հացը՝ մարմինին։

Զգայուն հոգին պէտքը կըզգայ թափառելու երբեմն ներդաշնակութեան աշխարհներու մէջ, զգայուն հոգին պէտքը կըզգայ յաճախ իրական կեանքի տգեղ մերկութիւններէն փախչելու եւ երազելու գերմարդկային սէրեր եւ մաքուր իտէական ըղձանքներ։

Երաժշտութեան ըմբռնողութիւնը երկնային բարիք մըն է, տրուած մարդկութեան անյիշատակ ժամանակներէ ի վեր, եւ ատիկայ այնքան սրտաշարժօրէն բնական է որ, նորածին մանուկն իսկ իր մօրկանը օրօր-երգովը կը հանդարտի ու կը քնանայ, երգելով կը բանայ իր աչուկները կեանքին, ու երգելով կաճի, կը ծլի ու կը ծաղկի։

Երգը՝ մեծ ցաւերու սփոփանքն է, խորունկ վէրքերու սպեղանին, ինչպէս նաեւ մեծ ուրախութիւններու հրճուանքը։

Միայն «չարերը երգ չունին»։

Ու երբ կը մտածեմ թէ՝ Պր. Շահմուրատեան, այդ ընդհանրական հիացումի եւ արդար ու ճշմարիտ գնահատումներու արժանացող արուեստագէտը Հայ մըն է, մե՛ր ցեղէն, մե՛ր արիւնէն, մե՛ր միսէն եւ մե՛ր ոսկորէն, կըսեմ ինքնին թէ՝ սքանչելի բան մը պիտի ըլլար երբ անոր տաղանդին վայելքը, անոր զգացումին կրակը, անոր գոյութեան ամէն մէկ մասնիկը վերջապէս մե՛ր ինչքը, մե՛ր սեփականութիւնը եղած ըլլար միայն։

Անիկայ միայն մեզի հմայէր, մեզի վերացնէր իր հիանալի ձայնին ալիքներովը. անիկա՛յ միայն ու միայն մեր սրտերը եւ հոգիները բարձրացնէր, ազնուացնէր իր երգին ճշմարտապէս երկնային շեշտերովը...։

Անիրաւ պահանջ մը, բռնաւոր ու բարբարոս փափաք մը արդարեւ...

Ի՛նչ ընել սակայն։

Սարսափելի կերպով նախանձոտ եղեր ես միշտ, եւ երազեր եմ իմ ցեղիս բոլոր տաղանդներն ու հանճարները սահմանափակել հայ միջավայրին մէջ, հայ միջավայրին համար եւ Հայուն նուիրուած տարամերժօրէն։

Եւ կը կարծեմ թէ արդար բան մը պիտի ըլլար այսպէս, որովհետեւ ի՛մ ցեղիս իրաւունքն է միայն օգտուիլ արգանդին այնքա՛ն տանջալից երկունքովը ծնունդ տուած զաւակներուն արժանիքներէն։

Ա՜խ... եթէ կարենայինք ապրեցնել մենք մեր մէջ մեր տաղանդները... ափսո՜ս...։

Պր. Շահմուրատեան Հայ է, Մշեցի հայ, Հայաստանի սրտին վրայ ծնած, հոն սնած ու մեծցած։

Իր սքանչելի ձայնը, ութը տարեկան հասակէն, կըսեն թէ՝ կը յուզէր, կը խռովէր հաւատացեալներու խուռներամ բազմութիւնը, երբ Աստուծոյ տաճարին մէջ

կը գոռացնէր սրբազան շարականներու վսեմ նօթերը։

Պիտի չի թուեմ հոս յամառ աշխատանքի եւ տանջալից յառաջդիմութեան ճամբուն վրայ իր կրած բոլոր տաժանքները, դառնութիւններն ու դժուարութիւնները։

Իր յաջողութիւնը զօրաւոր կամքի, աննկուն կորովի եւ ճշմարիտ տաղանդի փառաւոր յաղթանակը եղած է։

Եւ մխիթարական բան մըն է մեզ համար սա պարագան թէ՝ երբ մեզմէ շատ շատերը լուսաւորութեան կեդրոններու մէջ կ'այլայլին, կը փճանան ու կը կորսուին, ինքը մնացած է հոգիով, սրտով հայ, հիանալիօրէն խօսելով իր լեզուն, եւ կատարելապէս պահպանած իր զուտ հայկական շեշտը։

Եւ ի՜նչ գուրգուրանք, ի՜նչ սէր ազգային յարկերուն հանդէպ, ի՜նչ պաշտում մանաւա՜նդ հայ վարժարաններուն համար, ի՜նչ անկեղծ ուրախութիւն անոնց յառաջդիմութեան ի տես, եւ ի՜նչ խորունկ զմայլանք տեղւոյս վարժարաններուն դիրքին եւ շէնքերուն յարմարութիւններուն վրայ, գորովալի հետաքրքրութեամբ մը մանրամասն քննելով, պրպտելով, դիտելով ինչ որ վարժարաններու վիճակին եւ աշակերտութեան կեանքին կը պատկանի։

Եւ այդ ջերմ սիրոյն եւ անկեղծ գուրգուրանքին մէկ շատ կարկառուն ապացոյցը չէ՞ արդեօք այն հաւանութիւնը զոր տուած է ազգային վարժարաններու ի նպաստ կիսելու իր տալիք *բօնսէռ*էն յառաջ գալիք հասոյթը։

Ասիկայ աննախընթաց ժէսթ մըն է, ազնուական եւ փառաւոր։

Ու տեսնելով Պր. Շահ-Մուրատեանը ա՜յնքան ճշմարտօրէն եւ գործնականօրէն հայ, չեմ կրնար ցաւագին տխրութեամբ չյիշել ուրիշ հայ տաղանդներ օտար երկինքներու տակ, օտարին միայն ծանօթ, օտարի՜ն օգտակար, անունով միայն հայ, մոռցած իրենց ցեղը, անոր կարիքները, անզգայ անոր ծով ցաւերուն հանդէպ եւ կրսեմ բանաստեղծին հետ.

«Եթէ տաղանդէն շահ չունի Հայաստան,

Թքել եմ քու էլ, տաղանդիդ էլ վրան»։

***Դաշինք***, 30 ***Նոյեմբեր*** / 13 ***Դեկտեմբեր*** 1913, ***Ե. տարի***, ***Թիւ*** 1322, ***էջ*** 2

**ԿԻՐԱԿԻ, 1/14 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1913, ԻԶՄԻՐ**

Առաջնորդ Սրբազան Հօր հետ Շ-Մ. կ'այցելէ իր համաքաղաքացի մեծահարուստ բարերար Քերովբէ էֆ. Թօփալեանին։

- «***Ազգային անցուդարձ***», ***Դաշինք***, 3/16 ***Դեկտեմբեր*** 1913, ***Ե. տարի***, ***Թիւ*** 1324, ***էջ*** 2։

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Առաջնորդ Ս. Հայրը Կիրակի օր ընկերակցութեամբ Պ. Շահմուրատեանի

յատուկ շնորհակալութեան այցելութիւն տուաւ Ազն. Քերովբէ էֆ. Թօփալեանի, որ ինչպէս ծանօթ է իրեն յատուկ բարեպաշտիկ ազգասիրութեամբ 700 ոսկի նուիրած է Ս. Սահակի գերեզմանը հոյակապօրէն կառուցանելու համար։ Պ. Շահմուրատեան իբր Մշոյ զաւակ ջերմ փափաք յայտնած էր անձամբ ճանչնալու իր բնագաւառի բարերարը եւ յանուն Մշեցւոց անձամբ յայտնելու իր սրտագին երախտագիտութիւնը։
*Դաշինք*, 3/16 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1324, *էջ* 2

**ԿԻՐԱԿԻ, 8/21 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1913, ԻԶՄԻՐ**

Իզմիրի Ս. Ստեփաննոս տաճարին մէջ՝ հրաժեշտի Պատարագ Առաջնորդ Ս. Հօր եպիսկոպոսացումի ձեռնադրութեան համար դէպի Ս. Էջմիածին կատարելիք ուղեւորութեան առիթով։ Շ-Մ. անակնկալ մը կը մատուցանէ մեներգելով մեղեդի մը։

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 10/23 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1330, *էջ* 2։

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Կիրակի օր Առաջնորդ Ս. Հայրը իր եպիսկոպոսացման ձեռնադրութեան համար դէպի Ս. Էջմիածին կատարելիք ուղեւորութեան առթիւ հանդերձեալ էր հրաժեշտի Ս. Պատարագ մատուցանելու եւ քարոզելու Ս. Ստեփաննոսի տաճարին մէջ։ Առաջնորդ Ս. Հօր այս պատարագին վերապահուած էր նաեւ բոլորիս համար սրտագրաւօրէն գեղեցիկ եւ անսպասելի անակնկալ մը Պ. Շահմուրատեան – որուն տալիք զօնսէռը այդ օրուան պիտի զուգադիպէր – յանկարծ, ինքնաբերաբար եւ իր կողմէ բացառիկ պատիւ մը ու յարգանք մը ընծայել ուզելով Առաջնորդ Ս. Հօր Ս. Ստեփաննոսի կողմնակի մէկ դռնէն, ժողովուրդէն անտես մնալով մտած եւ կամացուկ մը իր տեղը գրաւած էր տաճարի ձախ աւանդատան մէջ եւ ահա այն պահուն, երբ Սրբազան պատարագիչը կըզգեստաւորուէր, սկսաւ աւանդատունէն հնչել Պ. Շահմուրատեանի երգած մեղեդիին երկնային ու անապակ վճիտ սլացումները։ Ժողովուրդը ափ ի բերան մնացած եւ կատարելապէս թովուած Պ. Շահմուրատեանի բրած աս անակնկալէն եւ հազիւ ամբողջովին ականջ կտրած տաճարի վսեմօրէն միապաղաղ լռութեանը մէջ, ահա անոր կարճ մեղեդիին ոսկեհնչուն ու սրտագրաւ նօթերը քաղցր երազի մը խուսափուկութիւնը յիշեցնող վայելքի մը նման վերջ գտած էին. Պ. Շահմուրատեան ինչպէս գաղտագողիկ եկած էր, նոյնպէս ալ գաղտագողիկ փախուստ տուեր էր աւանդատունէն, մինչ անոր երգին վերջին սրտայոյզ շեշտերը դեռ չէին մարած տաճարի կամարներուն տակ արձագանքներ ձեւացնելէ։ Առաջնորդ Ս.

Հօր հրաժեշտի Ս. Պատարագը անցաւ այսպէս սրտայուզօրէն տպաւորիչ եւ կատարելապէս ներդաշնակ, իսկ քարոզը մէկը եղաւ այն կարկառուն պերճախօսութիւններէն, որ իրեն յատուկ է՝ ժողովուրդին սրտին մէջ ամէն անգամ շինարար բան մը ստեղծելու գերազանցութեամբ առլի։
*Դաշինք*, 10/23 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1330, *էջ* 2

**ԿԻՐԱԿԻ, 8/21 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1913, ԻԶՄԻՐ**

Թէաթր տ'Իզմիրնի մէջ՝ Շ-Մ.ի առաջին երգահանդէսը Իզմիրի մէջ, ի նպաստ ազգային երկսեռ վարժարաններուն։

Յայտագիր.

Ա. ՄԱՍ

Édouard Lalo: *Le Roi d'Ys*, արիա, մեներգ՝ Շ-Մ.

Փրօֆֆ-Գալֆայեան, *Opop*, մեներգ՝ Շ-Մ.

Anton Rubinstein: *Mélodie*, դաշնակ՝ օր. Վ. Աշնան

Հ. Հովեան, *Soir d'été*, ֆրանսերէն արտասանութիւն՝ օր. Հ. Հովեան

Giacomo Puccini: *Tosca*, արիա, մեներգ՝ Շ-Մ.

Բ. ՄԱՍ

Georges Bizet: *Les Pêcheurs de perles*, 'Je crois entendre encore', մեներգ՝ Շ-Մ.

Հ. Հովեան, *Romance*, ֆրանսերէն արտասանութիւն՝ օր. Հ. Հովեան

Joachim Raff: *La Fileuse*, դաշնակ՝ օր. Վ. Աշնան

Herman Bemberg: *Chant hindou*, մեներգ՝ Շ-Մ., թաւջութակ՝ պր. Ա. Ռուսէլ

Դաշնակի նուագակցութիւն՝ Ժ. Փասքուարելլօ

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 3/16 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1324, *էջ* 2։

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 5/18 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1326, *էջ* 2։

- «*Մեծ գօնսէռ*», *Դաշինք*, 5/18 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1326, *էջ* 3։

- *Ա.ւօ*, «*Պ. Շահ-Մուրատեանի գօնսէրը*», *Դաշինք*, 6/19 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1327, *էջ* 1։

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 6/19 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1327, *էջ* 2-3։

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 7/20 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1328, *էջ* 2։

- *Ես*, «*Հայելիին մէջ*», *Դաշինք*, 8/21 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1329, *էջ* 1։

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 8/21 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1329, *էջ* 2-3։

- *Զարեհ Գազազեան*, «*Մարդ մը*» [*բանաստեղծութիւն*], *Դաշինք*, 10/23 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1330, *էջ* 1։

- «*Շահ-Մուրատեան նուագահանդէսը*», *Դաշինք*, 10/23 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1330, *էջ* 1-2։

- *Ես*, «*Հայելիին մէջ*», *Դաշինք*, 11/24 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1331, *էջ* 1։

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 11/24 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1331, *էջ* 3։

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Պ. Շահմուրատեանի գօնսէռի մասին կարելի եղած է համաձայնութիւն գոյացնել Թէաթրը տ'Իզմիրի տնօրինութեան հետ, որով գօնսէռը պիտի տրուի յառաջիկայ Կիրակի 8/21, կէսօրէ վերջ ժամը 6-8: Ազգ. վարժարանաց Տիկնանց Խնամակալութեան Ատենապետուհի Ազն. Տիկին Ս. Թ. Սպարթալը բարեսիրաբար յանձն առած է կազմել Տիկիններէ եւ այրերէ խառն միջազգային քօմիթէ մը գօնսէռի փայլն ու յաջողութիւնը ալ աւելի շատցնելու համար: Ազն. Տիկին Ս. Թ. Սպարթալը այս երեկոյ իր տան մէջ գօմիթէի անդամոց հետ խորհրդակցաբար պիտի կազմէ բռօկռամը եւ պիտի ընէ հարկ եղած կարգադրութիւնները: Ազն. Տիկին Մ. Ղ. Եսայեան եւս սիրով խոստացած է իր բոլոր ազդեցութիւնը ի գործ դնել գօնսէռին յաջողութիւնը կատարեալ ընելու համար: Սկզբամբ որոշուած է ոչ ոքի տոմսակ չի ղրկել: Վաղուընէ սկսեալ փափաքողք պիտի կարողանան գնել իրենց տոմսակները: Ցոյց տրուած ընդհանուր խանդավառութիւնը իրաւունք կուտայ մեզ յուսալու, որ Իզմիրի տարեգրութեանց մէջ աննախընթաց յաջողութիւն մը պիտի ունենայ այս գօնսէռը, ինչ որ ճշմարիտ գնահատում մը պիտի ըլլայ տաղանդաւոր հայ արուեստագէտին համար:
***Դաշինք***, 3/16 ***Դեկտեմբեր*** 1913, ***Ե. տարի***, ***Թիւ*** 1324, ***էջ*** 2

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Ինչպէս կը տեսնեն մեր ընթերցողները, մեր այսօրուան թիւով կուտանք մեծահոչակ Հայ թէնօռ Պ. Շահմուրատեանի Գօնսէռին յայտագիրը: Տաղանդաւոր հայ *քօնսէռիսթ*ը արդարեւ Իզմիրի գեղարուեստական տարեգրութեանց մէջ, իրաւամբ պիտի թողու անմոռանալի յիշատակ մը որչափ հայութեան, նոյնչափ Իզմիրի գեղարուեստասէր օտար հասարակութիւններու մտքին մէջ, որուն համար բան մը չէ խնայուած: Արդէն Գօնսէռի յաջողութիւնը գեղարուեստական տեսակէտով, ինքնին կ'ապահովէ հայ արուեստագէտին անունը, որուն կուգան իրենց շնորհալի օժանդակութիւնը բերել քաղաքիս ամենաբարձր դասու անդամներէն Ազն. Տիկիններէ եւ այրերէ կազմուած Միջազգային Յանձնաժողովոյ մը հմայքոտ անուններու շարքը, ինչպէս՝
Ազն. Տէր եւ Տիկին Է. Կիֆրէյ
Ազն. Տէր եւ Տիկին Ռ. Ուիթհօլ
Ազն. Տէր եւ Տիկին Է. Գարթալի
Ազն. Տօքթ. եւ Տիկին Ս. Բզալթօֆ
Ազն. Տէր եւ Տիկին Լ. Ֆուռլէ
Ազն. Տիար Ա. Ալիօթի

Ազն. Տիկին Մ. Սպարթալը
Ազն. Տէր եւ Տիկին Սօք. Պ. Կոստանդ
Ազն. Տէր եւ Տիկին Կ. Արապեան
Ազն. Տէր եւ Տիկին Ղ. Եսայեան
Ազն. Տէր եւ Տիկին Թ. Սպարթալը
Ազն. Տէր եւ Տիկին Վ. Սիվրիսարեան

Ու դարձեալ այս Մեծ Գօնսէռին իրենց շնորհալի մասնակցութիւնը պիտի բերեն Ազն. Օր. Տ. Աչնան՝ դաշնակով եւ Ազն. Օր. Հ. Հովեան՝ ֆրանսերէն ընտիր *մոնոլոկով*: Իսկ հանրածանօթ դաշնակահար Մ. Բասքուարէլլօ *աքօմբանեէ* պիտի ընէ դաշնակով եւ Պ. Ռուսէլ վիօլօնսէլով:

Պ. Շահմուրատեանի Գօնսէռը կը խոստանայ ըլլալ *սէզօնին* իր նմանը չունեցող գեղարուեստական արտակարգ յաջողութիւններէն մէկը: Մեծանուն արուեստագէտը ըմբոշխնելու համար, արդարեւ իրաւամբ մուտքի բարձր գիներ եթէ նկատելի են յայտագրին վրայ, չէ մոռցուած հոն՝ նոյնչափ մատչելի ընել՝ վայելել տալու համար հասարակութեան ամէն խաւերու եւ ամէն քսակներու յարմարող գիներ ալ նշանակել, քանի որ կը լսենք թէ ատիկա եղած է, որպէսզի, հակառակ պարագային, եթէ արուեստագէտը իր Պոլիս մեկնումը փութացնէ, ոչ ոք ինքզինք զրկուած զգայ: Ժողովրդական համեստ դասակարգերու վրայ այսպէս նրբօրէն մտածելու քնքուշ կերպն անգամ ինքնին թոյլատու բնոյթ մը չունի՝ յստակօրէն ցայտեցնելու հայ արուեստագէտին ունեցած սէրն՝ առ այն ժողովուրդը, որուն համար կը կարծենք թէ հայ հասարակութեան բարձր, ինչպէս նաեւ խոնարհ զաւակները պիտի գիտնան իրենց գնահատութիւնը բերել:

***Դաշինք***, 5/18 ***Դեկտեմբեր*** 1913, ***Ե. տարի***, ***Թիւ*** 1326, ***էջ*** 2

## Պ. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԳՕՆՍԷՌԸ

ԱՒՕ

Երբ Իզմիրի ձմեռնամուտին սա անայլայլ դաժան երկնային լալկանութիւնը ա՛լ իր միօրինակ ու անդադրում անձրեւները – առանց զրեթէ աչք բանալ տալու – մեր վրայէն կախած՝ ծովերուն վայրենի, խոժոռ ու խռովակոծ ամեհութիւն մը ու անհամբոյրութիւն մը տուաւ, ու մեր շրջանկարի լեռներուն դեռ երէկի այնչափ զմայլելիօրէն գեղեցկութեան վրայ իր մէգն ու մշուշը թօթուաց եւ ճերմակներ սկսաւ հագուեցնել սարերուն, մենէ շատերը սկսան սզաւորներու պէս հիւանդկախ սրտով մը հնհնալ արդէն եւ զգալ մերձաւոր միօրինակութեան մը տաղտուկին գալուստը եւ անոր իրենց հոգիին շատ մօտէն հպանցումը:

Իզմիրի բնակչութեան դատանքի հետամուտ ու հեւքոտ կեանքին կարծես մէկ

բնական ու անբաժան պէտքն ու հանգիստն է դարձած Քարափին վայելքը: Ու երբ ա՛ն ալ կը պակսի հիմա ձմեռնամուտի խստմբերութեան տակ, ալ ո՞ւր փնտռել յաճախ հոգիին անհրաժեշտ կազդոյրը եղող փոփոխութիւններու եւ տպաւորութիւններու վայելքը, ո՞ր այլուրութեան յաճախանքներուն մէջ:

Կը մնայ հրաժեշտ տալ Քարափի նոյն յաւիտենական սինէմաներուն, նոյն սրճարանային նստուկ կեանքին, որոնց կամարները ալ կըսկսին կարծես կապա-րի պէս ծանրանալ եւ սրտիդ վրայ փլչիլ իյնալ եւ կանուխ տունդ քաշուիլ:

Մեզի հետ շատեր ահա, հոգեկան այդ տպաւորութեան տակ ընկճուած՝ կըսպասէին կարծես բանի մը, որ կուշանար, որ պիտի փոփոխութիւն մը բերէր կարծես մեզի, ըլլար այդ կարճ ժամանակի մը համար: Բայց թէ ի՞նչ էր այդ: - Հազիւ աղօտ ոգեկոչում մը բարեկամի մը կողմէ, որ կըսէր ինծի.

- Ի՜նչ լաւ կըլլար, եթէ Պ. Շահ-Մուրատեան անգամ մը Իզմիր ալ այցելէր: Կարդացի՞ր Պոլսոյ անոր տիրական Գօնսէռներուն պերճանքը: Կայսերազուն Իշխանը զինքը երկիցս իր մօտ հրաւիրեր է: Գօնսէռի սրահները ասեղ ձգելու տեղ չէ մնացեր եւ խուռն բազմութենէ մը շատեր ոտքի վրայ կեցեր են:

Ու կրկնեց դարձեալ.

- Ի՜նչ լաւ կըլլար, եթէ Պ. Շահ-Մուրատեան անգամ մը Իզմիր ալ այցելէր:

Կ'ըսեն թէ սրտէ ի սիրտ ճամբայ կայ: Եւ ո՞վ գիտէ թէ ճիշտ չըլլայ այդ երեւոյ-թը՝ զգացումներու թէլէփաթիական հաղորդագրութեամբ մը բացատրուած:

Քանի մը օր վերջը բարեկամ մը հաւաստիօրէն ինծի կ'արտօրար լուր բերելու թէ՝ Պ. Շահ-Մուրատեան Իզմիր պիտի գայ՝ Գօնսէռ մը կազմակերպելու:

Բարեկամիս ըղձանքը կատարուած էր: Անմիջապէս «աչքի լուսեցի» քարթով մը՝ դեռ լրագրին չի հաղորդած լուրը:

Եւ ի՞նչպէս պիտի չի գար Պ. Շահ-Մուրատեան Իզմիր, Պոլիս գալէ գէթ անմիջապէս վերջ: Չէ՞ որ Իզմիրը մայրաքաղաքին մէկ անխուսափելի նախա-դուռն է, ինչպէս Բրօբիլէները Աթենական Ակրօպօլիսին, եւ եկւորն ու անցւորը իրեն կը քաշէ:

Քաղցր սրտհատնումի անհամբերութեամբ մը քանի մը օր իրեն սպասելէ վերջ, ահա մեր պարիսպներուն մէջ ունինք Պ. Շահ-Մուրատեանը:

Ու Կիրակի գօնսէռ պիտի տայ, ասիկա չի լսող չի մնաց կը կարծենք քանի որ հազիւ դեռ քանի մը օրուան եկած ամենքը, ամենքը մանրէն մեծը խրճիթէն սալօնը, իր Իզմիրի գեղակիցներէն մինչեւ անտարբեր ու օտար այլուրութիւնները իր վրայ կը խօսին արդէն:

Հայ մեծանուն արուեստագէտին անվիճելիօրէն տիրական տաղանդին թովչութիւններն էին որ արդէն շատ վաղուց լսեր էինք դժուարահաճ Բարիզէն: Ֆրանսական է՛ն կարեւոր թերթեր իրենց լայն էջերը բացած էին հայ տաղանդին համար իրենց առաջնակարգ քննադատներու վկայութիւնն ու գովեստները արձանագրելու: Ճշմարիտ համբաւները աշխարհի այդ մայրաքաղաքին մէջն է

որ կը նուիրագործուին ու կը վաւերանան։ Ֆրանսան, ինչպէս բոլոր աշխարհի, մեր պսակաւորներուն ու *լօռէա*ներուն համար ալ եղած է ու պիտի ըլլայ արուեստին ու գեղարուեստին խանձարուրն ու ներշնչարանը, լոյսին երկիրը ու լոյսին հայրենիքը...

Ահա թէ ինչո՛ւ աչքերնիս անոր վրայ կը յառենք...

Մինչեւ հիմա Հայը միայն իր արիւնոտ վէրքերով ճանչցուած Եւրոպային, Շահ-Մուրատեանի եւ իրեն պէսներու հոն երեւումը անուշ սփոփանքներ կուտայ Հայութեան։ Շահ-Մուրատեան դէմք մըն է կարկառուն եւ իրմով Հայը օտարին առջեւ բարձրացնող, որուն երախտիք կը պարտի իր տառապած ցեղը։

Ինքն ալ այդ տառապանքի աղիքէն փրթած բեկոր մը, Հայկական Մեծ Աղէտներու հալածական մէկ զաւակը, բոյնն աւերած ու թեւաթափ թռչուններու երամին հետ ինքզինք նետեր էր օրին մէկը Սէնի ափերը։ Հոն մեծցեր, հոն հռչակի տիրացեր էր։

Բարիզի մէջ իր հմայքոտ արուեստին լիակատար կարօտներէն յագեցած, - ինչ որ ամէն Հայ երիտասարդ տաղանդաւորի կը մաղթենք որ անդիմադրելի մէկ երազը ըլլայ, - հիմա եկած է իրեններուն մէջ՝ իր Բարիզեան արուեստին տիրականութիւնները պտտցնելու։

Իր տաղանդին բացարձակ ու անժխտելի հասունութիւններուն մէջ արդէն զինքը վայելեց Պոլսոյ բովանդակ հայութիւնը։

Եւ հիմա կուգայ անցընել քանի մը օրեր ալ մեր պարիսպներուն տակ, ուր արդէն պատնէշին վրայ է։

Կիրակի օր զինք պիտի ծափահարենք հպարտութեամբ, եւ մեզի հետ պիտի ծափահարեն օտարներն ալ։

Ինչպէս կը լսենք Քաղաքիս Վսեմ. Կուսակալը, Քաղաքապետն ու Յունաց Գերապատիւ Մետրոպոլիտ Սրբազանը մեր Առաջնորդ Ս. Հօր յայտնած են թէ ներկայ պիտի ըլլան եւ վայելեն Գօնսէռը։

Գօնսէռին կատարեալ յաջողութիւնն արդէն հիմակուընէ երաշխաւորուած է կրնանք ըսել։ Քաղաքիս բարձրագոյն դասին պատկանող Ազն. Տիկիններու եւ այրերու կողմէն կազմուած Միջազգային Յանձնախումբը եւ դարձեալ հայ եւ օտար ծանօթ գեղարուեստագէտներու շնորհալի մասնակցութիւնը, որոնց մէջ հայ արուեստագէտ Պ. Շահ-Մուրատեանի տիտանութիւնը պիտի իր ձայնական խոյանքները ելեւէջէ, կրնան բարձրագոյն յաջողութեան երաշխիքներ հաւաստել։

Պ. Շահ-Մուրատեանի Գօնսէռը ձմրան մեր սէզօնին *գլու*ն պիտի կազմէ՝ առանց ունենալու իր նախընթացն ու յետագան։

Մեծանուն արուեստագէտը իրաւամբ ընտրած է Թէաթռ տ'Իզմիռնի շքեղ բեմը։ Կը վախնանք սակայն թէ Իզմիրի թատերական աշխարհին այդ միակ ադամանդն եղող *պիժու* թատերասրահը փոքր գայ իր գեղանիստ լօժերով, փառթէռով եւ մանաւանդ արձականիստ անֆիթէաթրով ու կալըռիով որուն աթոռ-

ներուն համար անհաւատալի գին մը նշանակուած է, հասարակութեան խոնարհ խաւերուն ալ քսակին մատչելի ընծայելու համար Գօնսէռը, որպէսզի, հակառակ պարագային, եթէ արուեստագէտը իր Պոլիս մեկնումը փութացնէ, ոչ ոք ինքզինքը զրկուած զգայ։
*Դաշինք*, 6/19 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1327, *էջ* 1

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Վսեմ. Կուսակալ Րահմի պէյ, Ընդհ. Հրամանատար Բէրթէվ փաշա, Քաղաքապետ Էվլիազատէ Րէֆիգ պէյ, յունաց համակրելի մետրապոլիտ Տ. Խրիսօսթոմոս ամէնքն ալ շնորհակալութեամբ ընդունած են Առաջնորդ Ս. Հօր հրաւէրը, Կիրակի օր ի նպաստ Ազգ. վարժարանաց Պ. Շահմուրատեանի կողմէ տրուելիք մեծ Գօնսէռին եւ սիրով խոստացած են անպատճառ ներկայ գտնուիլ։ Աշնան էֆ. Առաջնորդ Ս. Հօր կողմէ յատկապէս կառավարչատուն երթալով Վսեմ. Կուսակալը եւ Վսեմ. Բէրթէվ փաշան պիտի առաջնորդէ իրենց յատկացեալ պատուոյ լօժը։ Կը տեղեկանանք թէ տոմսակները արդէն իսկ սպառելու վրայ են։ Փափաքելի էր որ այս շքեղ ու աննախընթաց Գօնսէռին առթիւ, ուր Թուրք եւ օտար ամենէն բարձրաստիճան անձնաւորութիւնք ներկայ պիտի գտնուին հարկ եղած հոգը տարուի կարգապահութիւնը պահելու եւ բացարձակապէս ո եւ է անկարգութեան տեղի չի տալու։ Արդէն այս մտօք կարգադիր յանձնաժողով մը կազմուած է հետեւեալ երիտասարդներէ՝ Տիարք Թագւոր Մաղաքեան, Կարապետ Տիլպէր, Տիգրան Պաքըճեան, Զարեհ Անտօնեան, Ստեփան Յ. Իփլիքճեան, Զարեհ Գազազեան, Գրիգոր Պէրկամալեան, Զաքարիա Աւետիքեան։ Ընդհանուր պատասխանատու գանձապետի պաշտօնը պիտի կատարէ Տիար Կարապետ Տիլպէր։
«*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 6/19 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1327, *էջ* 2-3

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Կիրակի ժամը 6-ին Թէաթրը տ'Իզմիրնի մէջ տեղի պիտի ունենայ Պ. Շահմուրատեանի մեծ ու շքեղ գօնսէռը։ Գօնսէռին արուեստական ու նիւթական յաջողութիւնը կրնանք ամէն կերպով ապահովեալ նկատել։ Այս անգամ մենք պիտի ուզէինք ծանրանալ անոր բարոյական յաջողութեան վրայ։ Կիրակի օր Հայ տաղանդն է որ պիտի փառաւորուի, եւ պատիւը բովանդակ Հայութեանն է։ Հայ ազգը, ներկայ ամէն ազգէ խուռն բազմութեան մէջ, իր մէկ զաւկին գտած խանդավառ յաջողութիւնը տեսնելով, իրաւունք պիտի ունենայ լռելեան հպարտանալու,

թէ ինք կարող է իր արգաւանդ ծոցէն դուրս տալ ամէն կերպ տաղանդներ ու արժանիքներ: Ինչպէս գրեցինք արդէն Վսեմ. Կուսակալը, Ընդհ. Հրամանատար փաշան, Քաղաքապետը, Յունաց Մետրոպոլիտը, գրեթէ բոլոր հիւպատոսները եւ բազմաթիւ օտարներ ներկայ պիտի գտնուին: Մեծապէս յանձնարարելի էր որ երբ այս բոլոր բարձրաստիճան օտարներուն, մեր մէկ զաւկին տաղանդը ցոյց տալով պիտի հպարտանանք, միւս կողմէ ցոյց չի տանք որ եւ է անկարգապահութիւն կամ անկանոնութիւն, որպէսզի գօնսէռին յաջողութիւնը ամէն կերպով կատարեալ ըլլայ:

Ի հարկէ դժուար է ամէն դասակարգէ հազարաւոր ժողովրդեան մէջ կատարեալ կարգապահութիւն պահել. բայց կը յուսանք որ այս մասին ժրաջան Կարգադիր Յանձնաժողովը ամէն կանխահոգ միջոցներ ձեռք կ'առնէ եւ տեղի չի տար ո եւ է անախորժ անկանոնութեան: Իզմիրի տարեգրութեանց մէջ միայնակ մնալու սահմանուած եւ Հայոցս կողմէ սարքուած այս աննախընթաց գօնսէռը պէ՛տք է որ ունենայ ամէն կերպով ամենակատարեալ յաջողութիւն մը:

*Դաշինք*, 7/20 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1328, *էջ* 2

## ՀԱՅԵԼԻԻՆ ՄԷՋ

ԵՍ

Ոգեւորութիւնը մեծ է ժողովուրդին մէջ, Շահ-Մուրատեան նուագահանդէսին համար:

Հանդէսին երկու օր է մնացած եւ արդէն հազիւ քանի մը օթեակներ մնացած են, իսկ ֆօթէյլներու մեծագոյն մասը արդէն ծախուած է:

Այս այսպէս պիտի ըլլար, տարակոյս չունինք, պատճառները բազմազան են եւ այլազան:

Նախ՝ Պ. Շահ-Մուրատեանի արժանիքն է որ մեծ դեր մը կ'կատարէ ժողովուրդի ունեցած խանդավառութեան, երկրորդ՝ վարժարանաց նպաստաւորուելու պարագան, երրորդ՝ համազգային երկսեռ յանձնախումբին վերին հսկողութիւնն եւ չմոռնանք ամենէ կարեւորը, երիտասարդ ոյժերու ջանքն ու աշխատութիւնը որ հրաշքներ կարող է գործել երբ միանայ ու հոգեւին գրկէ այս տեսակ արուեստագիտական եւ միեւնոյն ատեն բարենպատակ գործ մը:

Այդ երիտասարդ ոյժերն որոնց մէջ կը գտնուին Գ. Պերկամալեան, Զ. Աւետիքեան, Զ. Անտոնեան, Զ. Գազազեան, Թ. Մաղաքեան, Ս. Յ. Իփլիքճեան, Տ. Պաքըճեան ու մանաւանդ անխոնջ Կ. Պ. Տիլպէր, տարակոյս չկար որ յաջողութեամբ պիտի պսակուէին անոր ջանքերն, ու հասարակութեան ամէն խաւերէն անհամբերութեամբ պիտի սպասուէին սատարելու ու միեւնոյն ատեն գեղար-

ւեստական սիրուն ու հազուագիւտ ժամանց մը անցընելու համար, գնելու իրենց տոմսակները։

Թէեւ որոշուած էր տոմսակ չծախել, բայց վերջին պահուն ժողովուրդին յայտնած փափաքին գոհացում տալու համար որոշուեցաւ փոքրիկ շրջան մը ընել շուկային մէջ ու այդ կիսկատար շրջանն բաւական եղաւ ակնկալուածէն շատ աւելին ստանալու ու ասիկա ապացոյց մը չէ՞ ժողովուրդին ոգեւորութեան։

Եւ այդ հարիւրաւոր հազարաւոր անձերուն կողմէ եղած ընդունելութեան առջեւ կ՚գտնուի անձ մը որ երբ երիտասարդները կ՚մտնեն իր վաճառատունէն ներս ու կ՚բացատրեն իրենց նպատակը եւ միանգամայն վարժարաններու նպաստաւորուիլն, կ՚գոչէ, «ես դպրոց գացած չեմ, կարդալ չեմ գիտեր ու հետեւաբար տոմսակ ալ չեմ ուզեր», որպէս թէ իր հարուստի կոկորդէն բռնած ու «քսակդ կամ մահ» ըսած ըլլային իրեն։

Իրաւ է որ նմանօրինակ սիրուն ու զուարճացուցիչ դէպքեր կ՚պատահին այս տեսակ պարագաներու մէջ, բայց վերեւի պատմածս բաւական զուարճալի ու նաեւ բնորոշիչ ըլլալուն յարմար դատեցի ընթերցողներուս ներկայացնել։

«Դպրոց գացած չեմ, կարդալ չեմ գիտեր» ահա ձեզի տոմսակ չգնելու համար չքմեղանքի, արդարացումի վարկած մը, որպէս թէ այդ հարուստ վաճառականն անպատճառ դպրոց գացած ըլլալու էր, ուսման կարեւորութիւնը հասկնալու ու ի նպաստ վարժարաններու տրուած նուագահանդէս մը քաջալերելու համար։

Մարդուկը նախնական դարերու մէջ կ՚ապրի, ի՜նչ կրնանք ընել... համբերութիւն։

***Դաշինք***, 8/21 ***Դեկտեմբեր*** 1913, ***Ե. տարի***, ***Թիւ*** 1329, ***էջ*** 1

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Ինչպէս գիտենք, այսօր ժամը 6-ին Թէաթռ տ՚Իզմիռնի մէջ տեղի կունենայ Պ. Շահմուրատեանի Մեծ Գօնսէռը։ Այս Գօնսէռին համար իր հոյակապ դաշնամուրը (*փիանօա քէօ*) տրամադրած է Ազն. Տիկին Բօլին Ս. Սպարթալը։ Կը լսենք թէ Գօնսէռին յաջողութիւնը կատարելապէս ապահովուած է եւ նմանը չի տեսնուած բազմութիւն մը ամէն ազգէ եւ ամէն սեռէ վաղը հոն պիտի ժամադրուի հայ տաղանդը վայելելու համար։ Շատերու արտայայտած բուռն փափաքն է այժմէն գոնէ երկրորդ Գօնսէռ մըն ալ սարքել, բայց ենթադրելով որ կարելի ըլլայ այդ, գիներու տեսակէտով տարբերութիւն մը չի կրնար ունենալ երկրորդ Գօնսէռի մը պարագան։ Պ. Շահմուրատեան արդէն ընտրելով Թէաթրը տ՚Իզմիռնի նման Գօնսէռի ամենէն աւելի յարմարութիւն ունեցող միջավայր մը, ի նկատի ունեցած է գոհացում տալ եւ հասարակութեան ամեն դասակարգերուն մատչելի ընծայել իր Գօնսէռը. բարձրագոյն գիներէ մինչեւ խոնարհագոյն գիներ պիտի

գտնէ հոն փնտռողը: Պէտք է ի նկատի ունենալ միեւնոյն ժամանակ որ Գօնսէռը ի նպաստ վարժարաններու ալ ըլլալով, կրկին հանգամանք մըն ալ ունի:

Ինչպէս երէկ այս սիւնակներուն մէջ գրած էինք, աւելորդ չի ըլլար կրկին յիշեցնել որ մանաւանդ այս կարգի բացառիկ վեհութիւն ունեցող գօնսէռի մը մէջ ուր ամէն ազգէ ներկայացուցիչներ աչքի պիտի զարնեն, ամենէն աւելի փնտռուած բանն է կարգապահութիւնը եւ կանոնաւորութիւնը: Ազգային արժանապատուութեան նախանձախնդրութիւնը ու բարեկիրթ հասարակութեան մը համբաւը ունենալնիս այսօր հարկ է որ անթերի եւ լիովին ցուցադրենք: Այսպիսի միջավայրերու մէջ ժողովուրդներու հաւաքականութիւնը եւ համախռնումը յաճախ հայելիի նման ցոլացնող կողմեր ունի, մէկ հոգիի թերութիւնը յաճախ մանաւանդ ասանկ պարագաներու տակ, ամբողջութեան ու Ազգին կը վերագրուի: Ուրեմն բծախնդրութիւնը, կարգապահութիւնը եւ կանոնապահութիւնը յարգուած կըլլայ ամենուս կողմէ, երբ ամէն մէկը առանձնապէս կը հսկենք մեր վրայ եւ ձեռքէ չենք թողուր ողջախոհութիւնը:

Այս առթիւ պէտք է յիշենք նաեւ որ Գորտէլիոբնակ ժողովուրդի հանգստութեան համար ժամը 8-ին Իզմիրէ մեկնող շոգենաւը սովորականէն աւելի ուշ պիտի մեկնի Իզմիրէ, որպէսզի Գօրտէլիօի բնակչութիւնը իր հանգստութիւնը չ'կորսնցնէ:

***Դաշինք***, 8/21 ***Դեկտեմբեր*** 1913, ***Ե. տարի***, ***Թիւ*** 1329, ***էջ*** 2-3

## ՄԱՐԴ ՄԸ

### Հայ տաղանդ՝ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻՆ

ԶԱՐԵՀ ԳԱԶԱԶԵԱՆ

Միջոցին մէջ տենդավառ,
Ձայնըդ վըճիտ, երկնային:
Ի՜նչ հեւքերով կ'ուռենար,
Ի՜նչ երազներ կուլային...:

Հոգիիս մէջ հիւանդկախ,
Շունչըդ լեցուց ծիրանի,
Երջանկութիւն մը առկախ,
Ուր սէրս կ'այրէր պարմանի...:

Սակայն յանկարծ նետահար
Աչքերըս փակ ու անտես

Թռչունի պէս ինկայ վար...
Ու ձայնիդ հետ սիրակէզ
Մարդ մը կուլար զաղտնապէս...։
*Դաշինք*, 10/23 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1330, *էջ* 1

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Վերջապէս կիրակի երեկոյեան ունեցանք բաղդը լսելու հայ թէնօրը։

Պ. Շահ-Մուրատեան բառին լայնանագոյն իմաստով վարպետ մըն է, արուեստին նրբութիւններուն գիտակից եւ իր ձայնին, հրաշալի ձայնին տիրացած արուեստագէտ մը։

Երաժշտագէտ քննադատի մը յաւակնութիւնը չունիմ, խոր մանրամասնութեանց մէջ մտնելու, սակայն չեմ կրնար չմատնանշել հայ արուեստագէտին ձայնին նրբութիւնն ու ամեն ելեւէջներու անոր մարզուած ներդաշնակ արտայայտիչ շեշտերը։

Պ. Շահ-Մուրատեան յայտագրին համեմատ եւ յայտագրէն դուրս երգած հատուածներուն մէջ ցոյց տուաւ արուեստին մէջ իր տիրական ձայնին ճկնութիւնը, յուզում, թախիծ, լաց, զայրոյթ, հրճուանք, ուրախութիւն, հետզհետէ արտաբերուեցան այդ հնչուն առինքնող ձայնէն իր երգած եղանակներով եւ հանդիսատես հոծ ունկնդիրները հեւքոտ, շնչհատ, այլայլուն եւ յուզումնալից հետեւեցան անոր մէն մի ելեւէջներուն վերացած զմայլանքով մը։

«Տասը տարուան կեանքս երկարեցաւ» կըսէր համակրելի եւ շնորհալի տիկին մը որ Եւրոպա իր ըրած յաճախակի ճամբորդութիւններով բազմաթիւ առիթներ ունեցած է ունկնդիր ըլլալու նշանաւոր երգիչներու, որով իր խօսքերու արժէքն անոր գնահատող լեզուին վրայ ունին իրենց մեծ նշանակութիւնը։

«Հայ ըլլալուս այսօր հպարտ կ՚զգամ» կ՚ըսէր ուրիշ կարեւոր անձնաւորութիւն մը, եւ այսպէս ըստ կարգի կ՚երկարէր շարքը հիացողներու որոնք Պ. Շահ-Մուրատեանի մէջ կ՚տեսնէին կրկնակ յատկութիւններ՝ մեծ արուեստագէտը եւ հայը։

Եւ իրաւամբ Պ. Շահ-Մուրատեանով կիրակի օր հայութիւնն էր որ կ՚փառաւորուէր, եւ իր երախտագիտութիւնը կ՚արտայայտէր որոտընդոստ ծափահարութիւններու մէջ եւ օտարներու ու բարձրաստիճան ունկնդիրներու հոծ բազմութիւն մը իր «պրավօ»-ներով կ՚զգուէր հայուն արժանապատուութեան զգացումը։

Պ. Շահ-Մուրատեանով դարձեալ ի յայտ կուգար հայ տաղանդը, հայ արուեստագէտը կ՚բարձրացնէր հայ հոգիին մէջ հպարտութեան զգացումը։

* * *

Եւ կարելի չէ չյիշել Ազն. Օրիորդ Հ. Հովեան որ այդ հանդէսին բոլորանուէր կ'մասնակցէր իր բանաստեղծուհիի տաղանդն անգամ մըն ալ ցուցադրելով եւ իր հեղինակած ֆրանսերէն քերթուածները մեծարելով հիացիկ հանդիսականներու եւ մանաւանդ իր ձօնն առ հայ արուեստագէտին՝ Պ. Շահ-Մուրատեան խլեց անվերջանալի ծափեր։

Իսկ Ազն. Օր. Վ. Աշնան Կիրակի օրուան հանդէսին փայլը աւելցուց իր արուեստասէրի ճկուն մատներով ածելով քանի մը գեղեցիկ հատուածներ եւ արժանանալով հանդիսական հասարակութեան գնահատման եւ ծափերուն։

Վերջապէս Կիրակի օրուան նուագահանդէսը եղանակին միակ յիշատակելի քօնսէրը պիտի ըլլայ եւ Իզմիրի ամենազգի հասարակութիւնը չպիտի կրնայ երբէք մոռնալ Հայ մեծ արուեստագէտը։

Թատերասրահը իր օթեակներով, ֆօթէյլներով գրաւուած էր. ներկայ էին Վսեմ. Կուսակալ Ռահմի պէյ, զինուորական հրամանատար Բէրթէվ փաշա, Յունաց մետրապոլիտը, Իզմիրի Հայոց Առաջնորդ Ս. Հայրը, Կէօպէն զրահաւորի ծովակալը, հրամանատարը, բարձրաստիճան սպաներ, Գերման ընդհ. Հիւպատոսը, Աւստրօ-Հունգարիոյ ընդհ. Հիւպատոսը, Ֆրանսական ընդհ. Հիւպատոսը, Ռուսիոյ ընդհ. Հիւպատոսը, Պելճիգայի ընդհ. Հիւպատոսը, Սպանիոյ Հիւպատոսը եւ բոլոր հայ եւ օտար աչքառու անձնաւորութիւններն իրենց Տիկիններով։

Կիրակիի Շահ-Մուրատեան նուագահանդէսը Իզմիրի գեղարուեստական տարեգրութեանց մէջ իր անմոռանալի յիշատակը նուիրադրոշմեց։

***Դաշինք***, 10/23 ***Դեկտեմբեր*** 1913, ***Ե. տարի***, ***Թիւ*** 1330, ***էջ*** 1-2

## ՀԱՅԵԼԻԻՆ ՄԷՋ

ԵՍ

Պ. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը տրուեցաւ, սքանչելի կերպով յաջողեցաւ, ինչ որ արդէն գուշակել դժուար չէր, հիանալի բազմութիւն մը կար ունկնդիրներու, բայց սպասուածին չափ, յուսացուածին չափ լիք չէր թատրոնը, որ դեռ կրնար պարունակել շատ չըսեմ երեք հարիւր հոգի, նկատելով որ թատրոնը ամբողջովին լեցուելու համար կ'պարունակէ հազարէ աւելի տրամադրելի տեղեր, մինչդեռ ամբողջ ներկաներու թիւը 650է-700ի միջեւ կ'կայանար։

Ո՞ւր էին մեր Իզմիրնացի գեղարուեստասէր հայերն, եթէ առարկուի թէ սուղ էին նշանակուած գիներն, - որովհետեւ իրաւ է թէ վարժուած ենք 5-6 *օխթարաքի*ով յաւակնութիւնն ունենալ առաջնակարգ խումբեր տեսնելու, - պիտի պատասխանեմ թէ տասնըչորս ու 5 *օխթարաքիա*յով աթոռներ ալ կ'գտնուէին, թէեւ այս ալ խոստովանիմ թէ այդ տեղերն գրեթէ բռնուած էին ու կ'մնային բացը

քանի մը կարգ երկու մէճիտնոց տեղերը, ինչ որ կ'ապացուցանէ թէ միջակորեար դասակարգը փութացած էր հայ արուեստագէտն լսելու, ու աւելի ունեւոր դասակարգի մեծամասնութիւնն էր որ իր բացակայութեամբը կ'փայլէր:

Ասիկա բացարձակ ամօթ մըն է, աններելի յանցանք մը ամեն անոնց համար, որոնք շատ դիւրութեամբ կրնային այդ աննշան գումարը վճարել, աթոռի մը տիրանալու համար, հետեւաբար աթոռներու սղութիւնն ալ չէր կրնար շարժառիթ մը նկատել այդ բացակայութեան, ուրեմն ինչի՞ վերագրելու է իրենց այդ անմեկնելի բացակայութիւնը:

Անտարբերութեա՞ն թէ անհասկացողութեան:

Անտարբերութեան պիտի վերագրեմ իբրեւ մեղքերու ամենէ թեթեւը, որովհետեւ Շահ-Մուրատեան մը ամեն պատեհութեան չէ կարելի ունկնդրել ու զայն ունկնդրած ըլլալու հաճոյքը չէ կարելի ոեւէ կերպով փոխարինել:

Առնուազն Իզմիր իր արուարձաններով տասն եւ հինգ հազարէ քսան հազար հայ կ'հաշուուի, ուրեմն ատոր եւ ոչ իսկ հարիւրին հինգը ներկայ գտնուած է Կիրակի օրուան հանդէսին ու ասիկա մխիթարիչ ոչինչ ունի իր մէջ...:

Ա՞յս է ուրեմն Իզմիրցի հայուն գեղարուեստասիրութիւնը, ճաշակը, բանգիտութիւնը, գնահատումը, մե՛ղք, մե՛ղք...:

***Դաշինք***, 11/24 ***Դեկտեմբեր*** 1913, ***Ե. տարի***, ***Թիւ*** 1331, ***էջ*** 1

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Կարապետ էֆ. Տիլպէր, իբր պատասխանատու գանձապետ ի նպաստ Ազգ. երկսեռ վարժարանաց Թէաթրը տը Զմիրնի մէջ տրուած քօնսէրին, հետեւեալ հաշիւը ղրկած է մեզի հրատարակութեան համար.

| ՄՈՒՏՔ | | Լ. Օ. |
|---|---|---|
| 1 Լօժ | | 5 |
| 3 Լօժ Ավան-Սէն Լ. Օ. 3½էն | | 10.50 |
| 24 Լօժ Լ. Օ. 3էն | | 72 |
| 134 Ֆօթէյլ Տօրքէսթրը Լ. Օ. ½էն | | 67 |
| 48 Ֆօթէյլ Տօրքէսթրը Մճտ. 2էն | 96 | |
| 18 Ֆօթէյլ տը Պալքօն Մճտ. 2էն | 36 | |
| 94 Ֆօթէյլ տը Պալքօն Մճտ. 1½ | 141 | |
| Մճտ. | 273 | 50.50 |
| 234 Կալրոի 5 ութնոցէն | | 22.50 |
| Նուէր Ռուսիոյ հիւպատոսին կողմէ | | 1 |
| Գումար Լ. Օ. | | 228.50 |

| **ԵԼՔ** | **Լ. Օ.** |
|---|---|
| Թատրոնին վճար. | 25 |
| Ցրուիչ, թատր. պաշտօնէից, պահարան եւն. | 1.50 |
| 2 Ծաղկեփունջ | 0.50 |
| | 27 |

**Զուտ հասոյթը** 201.50

«*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 11/24 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1331, *էջ* 3

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 9/22 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1913, ԻԶՄԻՐ**

Կէսօրէն առաջ, Առաջնորդ Ս. Հայրը, գերմանական հիւպատոսարանի թարգման Ստեփան էֆ. Աւետիքեան եւ Շ-Մ. փոխ այցելութիւն տուին գերմանական «Կէպէն» զրահաւորի հրամանատարին եւ ծովային պայակոյտին, որոնք ներկայ գտնուած էին Շ-Մ.ի երգահանդէսին։

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 10/23 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1330, *էջ* 2։

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Երէկ կէսօրէն առաջ Առաջնորդ Ս. Հայրը, ընկերակցութեամբ Պ. Շահմուրատեանի եւ առաջնորդութեամբ Գերմանական հիւպատոսարանի պատուակալ թարգման Ստեփան էֆ. Աւետիքեանի, փոխ այցելութիւն տուաւ Գերմանական «Կէպէն» զրահաւորի վրայ անոր հրամանատարին եւ ծովային պայակոյտին, որոնք հաճած էին Կիրակի օր իրենց շքախումբով Պ. Շահմուրատեանի տուած գօնսէռին ներկայ ըլլալու եւ Հայ տաղանդը ունկնդրելու։ Այս առթիւ բացառիկ պատիւներ եղան Առաջնորդ Ս. Հօր եւ Պ. Շահմուրատեանի։ Ծովակալը իր մասնաւոր շնորհակալիքները յայտնեց Պ. Շահմուրատեանի՝ անոր տաղանդը այդպէս մօտէն եւ անմոռանալիօրէն վայելած ըլլալուն համար եւ շնորհաւորեց Առաջնորդ Ս. Հայրը որ Հայ Ազգը իր ծոցին մէջ այսպիսի հզօր տաղանդներ ունի։
*Դաշինք*, 10/23 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1330, *էջ* 2

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 9/22 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1913, ԻԶՄԻՐ**

Կէսօրէն ետք, Առաջնորդ Ս. Հայրը Էջմիածին մեկնելու համար կ'ուղեւորուի Համիտիէ նաւահանգիստը։ Հրաժեշտ տուողներուն մէջ կը գտնուէր Շ-Մ.։

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 10/23 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1330, *էջ* 2։

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 10/23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1913, ԻԶՄԻՐ**

Քաղաքական Ժողովի ատենապետ Տիրան էֆ. Աշնանի հետ շնորհակալական այցելութիւն մը կու տայ Իզմիրի կուսակալ Րահիմի պէյին, որ ներկայ գտնուած էր երգահանդէսին եւ նուիրած հինգ օսմանեան ոսկի։

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 11/24 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1331, *էջ* 3։

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Քաղաք. Ժողովոյ Ատենապետ Տիրան էֆ. Աշնան, երէկ, ընկերակցութեամբ Պ. Շահմուրատեանի շնորհակալութեան այցելութիւն մը տուին քաղաքիս Վսեմ. Կուսակալ Րահիմի պէյի, որ հաճած էր Կիրակի օր իր անձնական բարձր ներկայութեամբ պատուել Ազգ. երկսեռ վարժարանաց ի նպաստ տրուած Գօնսէռը։ Վսեմ. կուսակալը, որուն լուսամիտ եւ յառաջդիմասէր զգացումները իր դեռ հազիւ քանի մը ամսուան այնչափ կարճ պաշտօնավարութեան մը շրջանին մէջ իսկ ծանօթ են արդէն Իզմիրի բոլոր ազգաբնակչութեանց եւ մասնաւորապէս Հայոցս նկատմամբ, սիրալիր ընդունելութիւն մը ըրած եւ այս առթիւ դրուատալից գովեստներով խօսած է Պ. Շահ-Մուրատեանի տաղանդին վրայ իբր հիացող մը ու շնորհակալութիւն յայտնած է այդ հոյակապ Գօնսէռը անձամբ վայելած ըլլալուն համար։ Նորին Վսեմափայլութիւնը այս առթիւ հինգ Օսմ. ոսկի նուիրած է ի նպաստ Ազգ. վարժարանաց տրուած Գօնսէռին։

*Դաշինք*, 11/24 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1331, *էջ* 3

**ՈՒՐԲԱԹ, 20 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1913 / 2 ՅՈՒՆՈՒԱՐ 1914, ԻԶՄԻՐ**

Սբօրթինք Քլիւպ Թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երկրորդ երգահանդէսը Իզմիրի մէջ (նախապէս յատարարուած էր՝ 18/31 Դեկտեմբեր 1913)։

Յայտագիր.

Reynaldo Hahn: *Paysage*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Կռունկ*, մեներգ՝ Շ-Մ.

Ruggero Leoncavallo: *Pagliacci*-էն, մեներգ՝ Շ-Մ.

Charles Gounod: *Faust*-էն, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

*Բամբ որոտան*, մեներգ՝ Շ-Մ.

Դաշնակի նուագակցութիւն՝ պր. Ժ. Փասքուարելլօ

Liszt, Chopin, Sarasate, Massenet, դաշնակ՝ օր. Վ. Աշնան, ջութակ՝ օր. Մ. Մաքէրտիչ

- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 13/26 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1333, *էջ* 3։

- *Դաշինք*, 14/27 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1334, *էջ* 3։
- *Մեսրոպ Նուպարեան*, «*Սարքելի երկրորդ նուագահանդէսին առթիւ*», *Դաշինք*, 15/28 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1335, *էջ* 2։
- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 15/28 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1335, *էջ* 2-3
- «*Շահ-Մուրատեան նուագահանդէսը*», *Դաշինք*, 18/31 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1337, *էջ* 2։
- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 19 *Դեկտեմբեր* 1913 / 1 *Յունուար* 1914, *Ե. տարի*, *Թիւ* 1338, *էջ* 2։
- «*Շահ-Մուրատեան երկրորդ նուագահանդէսը*», *Դաշինք*, 22 *Դեկտեմբեր* 1913 / 4 *Յունուար* 1914, *Ե. տարի*, *Թիւ* 1341, *էջ* 1-2։
- «*Ազգային անցուդարձ*», *Դաշինք*, 22 *Դեկտեմբեր* 1913 / 4 *Յունուար* 1914, *Ե. տարի*, *Թիւ* 1341, *էջ* 2։
- «*Քարը տեղը դրաւ...*» [*երգիծանկար*], *Ճնար*, 1 *Յունուար* 1914, *Ա. տարի*, *Թիւ* 1, *էջ* 16։
- 'Échos,' *Comœdia*, 8 janvier 1914, 8e année, no. 2290, p. 1.

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Պ. Շահ-Մուրատեան իրեն եղած կրկին ու կրկին փափաքներէն չկրնալով խուսափիլ, ուրախութեամբ պիտի տեղեկանան մեր ընթերցողներն որ հաճած է համակրելի արուեստագէտն երկրորդ գոնսէր մըն ալ սարքելու Սբօրթինկ Գլիւ-պի թատերասրահին մէջ յառաջիկայ Չորեքշաբթի երեկոյեան, շատ դիւրա-մատչելի գիներով։ Վերջնական կարգադրութեանց յայտագրի ու գիներու մասին պիտի տեղեկութիւններ տանք յաջորդիւ։
*Դաշինք*, 13/26 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1333, *էջ* 3

## ՍԱՐՔԵԼԻ ԵՐԿՐՈՐԴ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԻՆ ԱՌԹԻՒ

ՄԵՍՐՈՊ ՆՈՒՊԱՐԵԱՆ

*Դաշինք*ի այսօրուան թիւը հաճութեամբ կը ծանուցանէր թէ Պ. Շահ-Մուրատ-եան՝ հայ անուանի արուեստագէտը որ Ֆրանսայի երաժշտանոցէ (conservatoire) առաջին մրցանակ շահած՝ Ֆաուսթի դերը կատարած էր Բարիզի մեծ թատրոն-նին մէջ, - նշանաւոր յաջողութիւն մ'անշուշտ ու գնահատական յարգանք մը իր բարձր տաղանդի մատուցուած - «յայտնուած փափաքներու համեմատ» կը պատրաստուի Սբօրթինկ Քլիւպի սրահին մէջ յառաջիկայ չորեքշաբթի գիշեր երկրորդ նուագահանդէս մը սարքել «շատ դիւրամատչելի գիներով»։
Մեզ մեծ ուրախութիւն պատճառելու բնոյթն ունէր անշուշտ *Դաշինք*ի աւե-

տած այդ հաճելի լուրը, քանզի այս անգամ առիթ պիտի ունենայինք լսել ու վայելել հայ նշանաւոր թէնօրը, հաճութիւն մը՝ որմէ դժբաղդաբար զրկուած էինք հիւանդութեան պատճառաւ:

Թող ներուի մեզ սակայն լսելի ընել մեր խոնարհ կարծիքն այս մասին: Շահ-Մուրատեանի առաջին նուագահանդէսին մեծ յաջողութիւնը՝ որ Իզմիրցիին համակրալից յարգանքը կ'արտայայտէր առ մեծանուն արուեստագէտն, եւ որ պատիւ մ'էր մատուցուած հայ նշանաւոր երգիչին բարձր տաղանդին, լաւ չէ կարծենք կեղակարծ ու թերեւս վտանգաւոր երկրորդ փորձի մ'ենթարկել: Նուագահանդէսի մը համար 2-3 ու մինչեւ անգամ 3½ ոսկի՛ օթեակի գին, ու ½ ոսկի թիկնաթոռներու գին, անօրինակ երեւոյթ մ'էր մեր Իզմիրին համար, ու գուցէ արուեստէ աւելի հասկցող ու հարուստ միջավայրի համար իսկ, եւ սակայն պարապ օթեակ ու թիկնաթոռ չի մնաց կարծենք. սքանչելի վերաբերում մ'անշուշտ Իզմիրցիին կողմէ առ հայազգի մեծ արուեստագէտն: Մեր կարծեօք Պարոն Շահ-Մուրատեան պէտք է գոհ մնայ այս յաջողութեամբ ու չձեռնարկէ երկրորդ փորձի մը նոյն իսկ մեծապէս զեղջուած գիներով, քանզի կը վախնանք թէ մի գուցէ (դժբաղդաբար հաւանական) յուսախաբութեան մատնուի, (ինչ որ ցաւ պիտի ըլլայ ամէնուս), ենթադրելով իսկ թէ անձնուէր Կարապետ Տիլպէր եւ իր ընկերները նոր ոյժեր գտնեն այս անգամ եւս ջանք չխնայելու հանդէսին նիւթական յաջողութեան. քանզի երաժշտական ճաշակը տակաւին շատ բաւականի զարգացած չէ մեր երկրին մէջ:

Միայն եւ միայն համակրելի երգիչին փառաց նախանձախնդիր ոգւով ու մեր ալ՝ յայտնի է՝ անձնական զրկումի գինով կ'ընենք այս դիտողութիւնը՝ մաղթելով որ հիմնապէս սխալած ըլլանք մեր վարկածի մէջ՝ եթէ Շահ-Մուրատեան խիզախէ յայտնուած անկեղծ կարծիքին հակառակ ընել այդ նոր փորձը՝ որու յաջողութեան փափաքող ենք ի բոլոր սրտէ:

Ծ. Խ. – Նուպարեան էֆ.ի այս խիստ անկեղծ տեսութիւնը հրատարակելով եւ անոր գործնական ու փորձառական տեսութեանց եւ մանաւանդ մեծանուն հայ արուեստագէտին հանդէպ իր տածած բարձր նախանձնախնդրութեան ոգւոյն բացարձակապէս իրազեկ ըլլալով հանդերձ, չենք ուզեր ըստ ամենայնի կիսել իր արտայայտած անձնական կարծիքներն այս առթիւ, քանի որ Պ. Շահ-Մուրատեան նման բարձր զգացումներու տէր արուեստագէտ մը չէր կարող իր առաջին զօնսէռի օրն իսկ իրեն յայտնուած բուռն փափաքներու բաւականութիւն չտալ եւ առանց նոր Գօնսէռի մը՝ առաթուր ընելով յայտնուած բաղձանքները՝ անցնիլ երթալ: Փափուկ գրութիւն մը արդարեւ Պ. Շահմուրատեանի համար, զոր պէտք է ի նկատի առնել եւ որուն համար է որ հայ արուեստագէտը մանաւանդ հարկադրուած կը զգայ տալ իր երկրորդ Գօնսէռը այնչափ ժողովրդականօրէն դիւրամատչելի պայմաններու տակ:

*Դաշինք*, 15/28 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1335, *էջ* 2

# ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Պ. Շահ-Մուրատեանի երկրորդ գօնսէռը պիտի տրուի չորեքշաբթի օր Սփօրթինկի մեծավայելուչ սրահին մէջ՝ այն գեղեցիկ ու հարկադրիչ պահանջումներէն յետոյ վերջապէս, որ առաջին գօնսէռի օրն իսկ յայտնուած բազմաթիւ խնդրանքներու եւ արտայայտուած բաղձանքներու գոհացում տալու բնոյթն ունի մեծ հայ թէնօռին կողմէ: Ասիկա ուրախութեամբ կը լեցնէ ամէն Իզմիրցի հայ արուեստասէրներու սիրտը եւ ապացոյց մը աւելի է թէ առաջին գօնսէռին համը բերաննիս մնացած, երկրորդի մը վայելքը կուզուի ապահովել:

Այս խիստ թելադրական երեւոյթը արդարեւ մտածել կուտայ ամէն անոնց որ հայկական հոգիին միշտ դէպի վերելքը կը դիտեն: Կար ժամանակ մը, երբ արուեստագէտն էր որ կը փնտռէր իր գեղեցիկ ձիրքերը ցուցադրելու նպատակայարմար միջավայր, եւ ինքն էր որ ի խնդիր անոր կը հետամտէր գտնել զինքը վայելելու հարկ եղած տարրերն:

Ժամանակ մը մեր արուեստագէտներուն բարձր շնորհները, մեր դերասաններուն գործերը, մէկ խօսքով մեր տաղանդի մարդոց արժէքները ցայտեցնելու համար կը թողէինք անսրտօրէն, որ անոնք ինքնին եւ իրենց անձնական հետապնդումներով միայն յարդարեն իրենց յաջողութեան ճամբան դռնէ դուռ, խանութէ խանութ մուրացկաններու պէս զիրենք թափառեցնելով՝ տոմսակ մը տեղաւորելու նուաստացուցիչ դերն ալ իրենց տալով որ կատարեն:

Ուրախալի է ըսել որ այդ ժամանակները, եթէ ոչ բոլորովին ալ անցած չեն, գէթ մասամբ բարեփոխուած են հիմա: Հիմա Հայ հասարակութիւնը բարձրացած եւ ինքնաբեր ժէսթով մըն ինքն է որ հետամուտ ըլլայ իր վայելքին համար անձամբ փնտռելու արուեստագէտին տաղանդը, դերասանին շնորհը, գրագէտին մտքին արդիւնքը: Ատեն մը վրայ ձգոց էր գրեթէ տաղանդին գնահատման համար հարկ եղածը ընել՝ տաղանդաւորին կողմէ մատուցուելով, հիմա տաղանդին վայելքը խնդրանք մը սկսած է դառնալ մատուցումի: Պ. Շահ-Մուրատեան անոնցմէ է որ զիրենք կարժեցնեն եւ փնտռել կուտան առանց ստորնացուելու: Վերջին Գօնսէռը ապացոյց մը աւելի է մեր ըսածին:

Թերեւս՝ Գօնսէռին օրուան՝ շաբթուան մէջ զուգադիպութիւնը իր ազդեցութիւնը ունենալ Գօնսէռի բազմամարդ ներկայութեան տեսակէտով, ինչպէս որ մեր այսօրուան թիւով Նուպարեան էֆ. ալ նախանձայուզօրէն իր դիտողութիւնը ըրած էր: Բայց ասիկա պատճառ մը չէ որ մենք մեզ զրկենք հազուագիւտ ներկայացող պատեհութենէ մը:

Պէտք է ի նկատի ունենանք Պ. Շահ-Մուրատեանի հիւր մը ըլլալու պարագան ալ եւ հարկ է որ մենք մեզ յարմարցնենք իր կարգադրութեան հետ եւ ոչ թէ զինքը յարմարցնենք մեր յարմարութեանց: Գօնսէռին Կիրակի կամ տօն օրուան չի զուգադիպիլը վստահ ենք թէ բնաւ ազդեցութիւն պիտի չունենայ եւ Պ. Շահ-

Մուրատեանի այս գերազանցօրէն ժողովրդային ալ զօնսէոն պիտի ըլլայ իրմով հպարտանալու եւ զինքը դղրդագին ծափահարելու նոր առիթ մը։
*Դաշինք*, 15/28 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1335, *էջ* 2-3

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Անշուշտ մեր ընթերցողներն ուշադրութեան առին որ Պ. Շահ-Մուրատեանի երկրորդ նուագահանդէսը տեղի պիտի ունենայ Սփօրթինկի թատերասրահին մէջ Ուրբաթ գիշեր ժամը 9½-ին։ Տարակոյս չունինք որ Իզմիրի գեղարուեստասէր հասարակութիւնը պիտի փութայ անգամ մը եւս լսել Հայոց պատիւ բերող այդ Հայ արուեստագէտն որ այս անգամ եւս ճոխ յայտագիր մը ընտրած է զոհ ձգելու ամենէ դժուարահաճները, բացի Կունօի՝ *Ֆաուստ*էն, Լէօնգավալօի՝ *Բալիաչի*էն եւ ուրիշ եւրոպական երգերէ, պիտի երգէ նաեւ հայերէն զանազան երգեր, ինչպէս նաեւ *Կռունկ*ը ու *Հայաստան երկիր դրախտավայր*ը։ Այդ նուագահանդէսին պիտի մասնակցին նաեւ շնորհալի օրիորդներն Աշնան ու Մկրտիչ, ինչպէս նաեւ Տիար Բասգուարէլլօ։ Այս նուագահանդէսն եւս առաջինին չափ գեղեցիկ ըլլալ կ՚խոստանայ այժէմ։
*Դաշինք*, 18/31 *Դեկտեմբեր* 1913, *Ե. տարի*, *Թիւ* 1337, *էջ* 2

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Հպարտ ու ուրախ պէտք է ըլլանք երբ կ՚տեսնենք որ օտար հասարակութիւններէ գնահատական հաւաստիքներ կ՚արտայայտուին առ հայ արուեստագէտն՝ Պ. Ա. Շահ-Մուրատեան, որ եղած փափաքներուն յօժարակամ երկրորդ նուագահանդէս մըն ալ տալու յօժարած է։ Այսպէս քաղաքիս զօրաբանակին հրամանատար Բէրթէվ փաշա լսելով, Քաղաքական Ժողովոյ ատենապետ՝ Տիրան էֆ. Աշնանէ որ Ուրբաթ գիշեր պիտի սարքուի երկրորդ նուագահանդէսն, փափաք յայտնած է ներկայ գտնուիլ, յայտնելով առաջինէն իր զգացած գեղեցիկ տպաւորութիւնը։ Պ. Շահ-Մուրատեան անմիջապէս Վսեմ. փաշային հրաւիրագիր մը ղրկած ըլլալով՝ փաշան փոխադարձ համակրական երկտող քարթով մը իր շնորհակալութիւնն ու հիացումն յայտնած է։

Ինչպէս կ՚տեղեկանանք այս երկրորդ քօնսէրին համար ի վաճառ տրուած տոմսակներն սկսուած են արուեստասէր հասարակութեան ամէն խաւերէն զնուիլ եւ այս պարագան ուրախառիթ է մեզի համար, անոր համար, որ հասարակութիւնը կ՚սկսի շարժիլ, կ՚սկսի արուեստագէտ մը յարգել անոր արժանիքին բարձրութիւնը ներքնապէս զգալով եւ գերիվեր դասելով սին ճղճիմութիւններէ

եւ շուկային հաշիւներէ։
*Դաշինք*, 19 *Դեկտեմբեր* 1913 / 1 *Յունուար* 1914, *Ե. տարի*, *Թիւ* 1338, *էջ* 2

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԿՐՈՐԴ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Ուրբաթ գիշեր Սբորթինկի թատերասրահին մէջ ի ներկայութեան երկսեռ ունկնդիրներու, տեղի կունենար այդ անհամբեր սպասուած նուագահանդէսը, որմէ Իզմիրցի հասարակութիւնը կ'կրէր այնպիսի տպաւորութիւն մը զոր վստահ ենք, թէ երբէք չպիտի կրնայ ջնջել իր յիշողութենէն։

Երկիցս անգամ տեղի կուտար ու պայծառ ու աստեղազարդ կ'բացուէր, յուշիկ ականջ տալու Հայ արուեստագէտին մշտահոս, զօրեղ ու յուզիչ ձայնին, որու թրթռուն ելեւէջները ցարդ կ'հնչեն մեր լռութեան լարերուն վրայ։

Ամեն դասակարգէ Հայ երկսեռ ու օտար հանդիսականներ փութացած էին ու գրեթէ շատ քիչ էին թափուր աթոռները, չփութացողները կորսնցուցին այդ գեղեցիկ ժամանցը, որու ամեն ատեն վիճակուելու բաղդն չներկայանար։

Պ. Շահ-Մուրատեան որոտընդոստ ծափերով կ'ընդունուէր բեմին վրայ ու կ'սկսէր յայտագրին համեմատ իր առաջին երգը, *Բէյսաժ*ը՝ Ռէյնալտօ Հահն, որու կ'յաջորդէր *Կռունկ*ը ու ո՞վ չգիտեր *Կռունկ*ը, կրնա՞ք ըսել թէ ծանօթ չէ այդ տխուր երգը, որու միօրինակութիւնը, լալագին շեշտը միայն կ'ճանչնանք, մինչդեռ Շահ-Մուրատեանի շրթներէն կ'աստուածանար այդ սովորական մեզի ծանօթ կարծըւած *Կռունկ*ը, որու ազդած տպաւորութիւնը, յուզեց, զգլխեց, հոգիներ գալարեցուց եւ աչքեր տամկացուց, այնքա՜ն անսովոր էր շեշտը, այնքան ներդաշնակ եւ միօրինակ ըլլալէ հեռի։ Հանդիսականներու ըրած ընդունելութիւնն անբացատրելի էր, հայ արուեստագէտն որոտընդոստ կ'ծափողջունուէր, սրահը կ'դղրդէր, եւ հակառակ այդ ամենուն, դեռ կ'թրթռային վերջին շեշտերը *Կռունկ*ին հոգեյոյզ մելամաղձոտութեան։

Իսկ մանաւանդ Լէօնգավալօի *Բալիաչի*ն, Կունօի *Ֆաուսթ*ը անգամ մըն ալ արտացոլացուցին հայ արուեստագէտին կարողութիւնն ու անոր ձայնին կատարելագործեալ դրոշմն։ Իզմիրցին անցեալի եւ ներկային մէջ ստէպ առիթներ ունեցած ըլլալով ունկնդրել այդ երկու եւրոպական ծանօթ կտորներուն, աւելի դիւրութեամբ կրնար բաղդատութեան դնել ցայսօր լսած արուեստագէտներու հետ Պ. Շահ-Մուրատեանի անմրցելի կարողութիւնն, մանաւանդ *Բալիաչի*ի ճաշակն առաջին անգամ մեծարած էր Իզմիրցիին Անսէլմին՝ ծանօթ արուեստագէտն, որու ձայնին նման ձայն մը դեռ չէր լսած Իզմիրի արուեստագէտ հասարակութիւնը։ Ուրբաթ գիշեր սակայն՝ ամենէ սկեպտիկները խոստովանեցան թէ Շահ-Մուրատեանի *Բալիաչի*ն չէր կրնար երբէք բաղդատութեան դրուիլ ուրիշներու հետ, այդ գալարուող նախանձի եւ վրէժխնդրութեան հուրով

չարչարուող անպատուուած, կաւատուած, եւ սակայն իր հասարակ խեղկատակի դիրքով նոյն իսկ լալու իրաւունք չունեցող խեղճ ամուսինին ողբը, զայրոյթը, լացը Շահ-Մուրատեան մը միայն կրնար պատկերացնել եւ հարկ կա՞յ աւելցնել թէ հայ արուեստագէտն ամբողջ հանդիսականներու կրկին ու կրկին ծափահարութեանց եւ գնահատման արժանացաւ. ստիպուելով՝ յայտագրէն դուրս՝ քանի մը ուրիշ հատուածներ եւս երգել ի մեծ գոհունակութիւն հանդիսականներու։

Իսկ նուագահանդէսին վերջին մասը փառաւորումն եղաւ հայ հանճարին, ամբողջ սրահին գմբէթը կարծես պիտի փլչէր, երբ Շահ-Մուրատեան երիցս բեմ հրաւիրուեցաւ հոն կրկին ու կրկին երգելու, հայկական քանի մը երգեր, եւ մանաւանդ *Հայաստան երկիր դրախտավայր*, *Բամբ որոտան* եւլն. եւլն.։

Նուագահանդէսին աւելի փայլ մը տալու համար անոր մասնակցած էին Օրիորք Վ. Աշնան եւ Մ. Մաքէրտիչ, դաշնակով եւ ջութակով, իրենց այս փափկանկատ հաճոյակատարութիւնն որքան պատուաբեր ազնիւ Օրիորդներուն, նոյնքան եւ շնորհաւորութեան արժանի կ'հանդիսանային յաչս ունկնդիրներու, որոնք ամենամեծ «հետաքրքրութեամբ եւ հաճոյքով հետեւեցան, Լիցի, Շօբէնի եւ Սարազաթի, Մասընէի Աստուածներուն։

Օրիորդ Աշնան միշտ անմեղունակ անսեթեւեթ անգամ մըն ալ եկաւ պարզութեամբ մը որ իրեն մասնայատուկ հրապոյրն կ'կազմէ՝ հաստատելու թէ՝ իր ճկուն մատներն ատակ են դժուարին եւ նուրբ հատուածներ նուագելու եւ Օրիորդ Մաքէրտիչ ժպտուն, անտարբեր, անփութութեամբ մը ձեռք կ'առնէր ճպոտին իր մասնակցութեան բաժինը նուիրելու հանդէսին։

Առանց լռութեան չենք կրնար անցնիլ Տիար Բասքուարէլօէ, որ իր վարպետ դաշնակահարի ընկերակցութիւնն, ամէն առթիւ ի յայտ կ'բերէ այնքան ազնուութեամբ, այնքան նրբութեամբ եւ անձնուիրաբար հիացում պատճառելով քաղաքէս անցնող բոլոր արուեստագէտներուն եւ մասնաւորապէս հանդիսական բազմութեան, Պ. Բասքուարէլլօ քաղաքիս մէջ անհրաժեշտութիւն մըն է եւ անոր ներկայութիւնը ստիպողական դարձած կարիք մը, առանց անոր չենք գիտեր թէ արուեստագէտներն ի՞նչպէս պիտի յաջողէին կազմակերպել իրենց նուագահանդէսները։

Վերջապէս հանդէսը լրացած էր, բայց կարծես թէ հանդիսականներն չէին ուզեր բաժնուիլ իրենց աթոռներէն, այնքան մեծ էր տպաւորութիւնը, այնքան խորունկ առաջ բերած ոգեւորութիւնը։

Տիկին Մ. Ղ. Եսայեան՝ որու արուեստագիտական նուրբ ճաշակն եւ հասկացողութիւնը գաղտնիք մը չէ եւ արուեստը միշտ քաջալերել եւ հովանաւորել իրեն համար սիրելի պարտականութիւն մը համարած է, նուագահանդէսի առաջին մասէն ետք նուիրեց հիանալի քամելիազարդ քնարաձեւ փունջ մը ի պատիւ հայ տաղանդաւոր արուեստագէտ՝ Պ. Ա. Շահ-Մուրատեանի։

Պ. Շահ-Մուրատեան Իզմիրցւոց մէջ կ՚թողու անմոռաց յիշատակ մը եւ տարակոյս չունինք թէ իր մէկէ աւելի ընդունած համակրական արտայայտութեանց բերմամբ, պիտի չմոռնայ կրկին Իզմիրցիները գոհացնել ապագային մէջ կրկին այցելելով հոն։

* * *

Պ. Շահ-Մուրատեան ստիպուած ըլլալով անմիջապէս մեկնիլ շաբաթ օր, Պոլսոյ մէջ յառաջիկային իր տալիք նուագահանդիսին իրեն արուեստին յատուկ պատրաստութիւններով զբաղելու համար, հետեւեալ երկտողը դրկած է, զոր սիրով կ՚հրատարակենք։

Սիրելի Պ. Հ. Մամուրեան

Թոյլ տուէք ինձ ձեր պատուական թերթին միջոցաւ սրտագին շնորհակալութիւններս յայտնել քաղաքիդ այն պատուական եւ յարգելի ընտանիքներուն եւ անհատներուն որոնք այնչափ գուրգուրանքով եւ հոգատարութեամբ վերաբերուեցան դէպի իրենց ազգակից հայ արուեստագէտը եւ խնդրել յատկապէս իրենցմէ ներողամտութիւն, ստիպողական մեկնումիս բանաւոր պարտաւորիչ պատճառաւն անձամբ առանձինն անոնցմէ հրաժեշտ չկրնալ առնելուս։

Բարեկամական անկեղծ յարգանքներով ձերդ

Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Իզմիր, 21 Դեկտ. 1913

*Դաշինք*, 22 *Դեկտեմբեր* 1913 / 4 *Յունուար* 1914, *Ե. տարի*, *Թիւ* 1341, *էջ* 1-2

## ԱԶԳԱՅԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁ

Պ. Ա. Շահ-Մուրատեան Իզմիրէ մեկնելէ առաջ գեղեցիկ նամակ մը ուղղած է Տիար Կարապետ Տիլպէրի, իր զեղուն ու սիրալիր զգացումներն արտայայտելով ու շնորհակալութիւն յայտնելով Իզմիրի Հայ երիտասարդութեան այդ անզուգական ներկայացուցիչին, որ սրտովին ու հոգեւին աշխատեցաւ Հայ արուեստին ու Հայ տաղանդին փառաւորման համար քաղաքիս մէջ։

*Դաշինք*, 22 *Դեկտեմբեր* 1913 / 4 *Յունուար* 1914, *Ե. տարի*, *Թիւ* 1341, *էջ* 2

## ÉCHOS

Ce qu’ils deviennent.

On se demande parfois ce que sont devenus, au bout de quelques années, – sinon au bout de quelques mois, – les triomphateurs des concours du Conservatoire.

— 16 —

**ՔԱՐԲԸ ՏԵՂԸ ԴՐԱՒ . . .**

ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ Կ'ԵՐԳԷ ԻԶՄԻՐԻ ՄԷՋ

ՀԱՅ ԼԱՅՖԸ (որ դժուարաւ օթեակի տոմս մը գնեց) Պրավ՛օ՜ Պրավ՛օ՜...

Բարափագի՝ ԱԶԳԱՅԻՆՃԻՆ է՛։ Ի՞նչպր է, Հայ ըլլալուդ իմացման չ'եղար հ'ա

*Քնար*, 1 Յունուար 1914, Ա. տարի, թիւ 1, էջ 16

Vous vous souvenez de Chah-Mouradian, ce jeune ténor qui remporta son premier prix d'opéra il y a deux ans. Nous ne savions pas si la carrière théâtrale lui avait souri. Et voilà que les journaux d'Orient nous apportent de ses nouvelles. M. Chah-Mouradian est à Smyrne. Il y organise des concerts et il est même allé se faire entendre à bord des navires européens de la rade.

Et voilà comment les lauréats de la rue de Madrid peuvent faire parfois, d'un chanteur, un prophète en son pays.

*Comœdia*, 8 janvier 1914, 8e année, no. 2290, p. 1

**ՇԱԲԱԹ, 21 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1913 / 3 ՅՈՒՆՈՒԱՐ 1914, ԻԶՄԻՐ-ՊՈԼԻՍ**

Յունուար 3-ին կը մեկնի Իզմիրէն դէպի Կ. Պոլիս։

- «*Շահ-Մուրատեանի երկրորդ նուագահանդէսը*», *Դաշինք*, 22 *Դեկտեմբեր* 1913 / 4 *Յունուար* 1914, *Ե. տարի*, *Թիւ* 1341, *էջ* 2։

**ԿԻՐԱԿԻ, 30 ԴԵԿՏԵՄԲԵՐ / 12 ՅՈՒՆՈՒԱՐ 1913, Կ. ՊՈԼԻՍ**

Շ-Մ., Կոմիտաս վարդապետ եւ Փանոս Թէրլէմէզեան կը բնակին միեւնոյն բնակարանը, Մուխթար պէյ պողոտայ։ Յունուար 11-12-ի գիշերը գողեր մտնելով 136 ոսկի կը գողնան։

- «136 *ոսկի գողցուած արուեստագէտներէ*», *Ժամանակ*, 31 *Դեկտեմբեր* / 13 *Յունուար* 1913, *Զ. տարի*, *Թիւ* 1677, *էջ* 3։

## 136 ՈՍԿԻ ԳՈՂՑՈՒԱԾ ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐԷ

Երեք Հայ նշանաւոր արուեստագէտներ՝ Կոմիտաս վրդ., Արմենակ Շահ-Մուրատեան եւ Փանոս Թէրլէմէզեան, Բերա, Մուխթար պէյ պողոտային վրայ տուն մը կը բնակին միասին։ Անցած գիշեր կարգ մը գողեր յիշեալ տունը կը մտնեն, երբ մեր արուեստագէտները կը քնանային եւ անոնց սնտուկները բանալով Կոմիտաս վրդ.ին 50, Շահ-Մուրատեանի ալ 86 ոսկին կը գողնան։ Իսկ Պ. Թէրլէմէզեան ո՛չ մէկ կորուստ կ'ունենայ։

*Ժամանակ*, 31 *Դեկտեմբեր* / 13 *Յունուար* 1913, *Զ. տարի*, *Թիւ* 1677, *էջ* 3

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 2/15 ՅՈՒՆՈՒԱՐ 1914, Կ. ՊՈԼԻՍ**

Փըթի Շանի ձմեռնային թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։ Կը մասնակցին՝ Կոմիտաս վարդապետ, Լազոս (ջութակ), Ռատէլիա (դաշնակ), Italo

Selvelli (դաշնակի նուագակցութիւն)։

- «*Հանդէս, ժողով, թատրոն եւլն.*», *Ազատամարտ*, 18/31 *Դեկտեմբեր* 1913, *հինգերորդ տարի*, *թիւ* 1393, *էջ* 4։

- «*Հանդէս, ժողով, թատրոն եւլն.*», *Ազատամարտ*, 28 *Դեկտեմբեր* / 10 *Յունուար* 1913, *հինգերորդ տարի*, *թիւ* 1402, *էջ* 4։

## ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 21 ՅՈՒՆՈՒԱՐ 1914, Կ. ՊՈԼԻՍ

Նամակ կը գրէ Փարիզ՝ Արշակ Չօպանեանին։ Փափաք կը յայտնէ յաջորդ թատերաշրջանին երգել Փարիզի օփերա-քոմիքին մէջ։

- *Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 50։

# ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ

Կ. Պոլիս, 1914, յունուար 21

Սիրելի Չօպանեան

Չգիտեմ Իզմիրից քեզ ուղղուած Նոր Տարուայ առթիւ շնորհաւորական քարտս ստացա՞ր, թէ՝ ոչ։ Չափազանց ուրախացայ, երբ Մկրտչեանի նամակով իմացայ քաջառողջ վիճակիդ մասին։

Չեմ կարծեր, որ մարտի 10-էն առաջ տեղդ գտնուիլ։ Ինչպէս կ'երեւի, հոդ կան բարեկամներ, որք կ'աշխատին առաջիկայ saison-ին համար զիս engager ընել Opéra-comique, մինչդեռ այդ անպիտան Ներսիսեանին մէկ խօսքը բաւ էր, որ ես հոն մտնէի, քանի որ շատ intime կերպով նոր directeurներուն հետ բարեկամ է։

Մի՞թէ ամէն հայ, հայու մը առաջադիմութիւնը կը բաղձայ... 1000 ֆրանքնոց չէքը նեղութիւն կրեցէք, խնդրեմ, զանձել ու յանձնել մեր բարեկամ Մկրտչեանին... Միշտ քո՝

Շահ-Մուրատեան

*Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 50

## ԿԻՐԱԿԻ, 12/25 ՅՈՒՆՈՒԱՐ 1914, Կ. ՊՈԼԻՍ

Պոլսոյ Փըթի Շանի թատրոնին մէջ նախատեսուած էր երգահանդէս Գուսան երգչախումբի մասնակցութեամբ, խմբավար՝ Կոմիտաս վարդապետ, ուր ելոյթ

պիտի ունենար Շ-Մ.։ Կոմիտասի անհանգստութեան պատճառով երգահանդէսը կը յետաձգուի մէկ շաբաթ եւ Շ-Մ. անկարող կ'ըլլայ իր մասնակցութիւնը բերել։

- «*Հանդէս, ժողով, Թատրոն եւլն.*», *Ազատամարտ*, 5/18 *Յունուար* 1914, *վեցերորդ տարի*, *Թիւ* 1408, *էջ* 6։

- «*Կարեւոր*», *Ազատամարտ*, 9/22 *Յունուար* 1914, *վեցերորդ տարի*, *Թիւ* 1410, *էջ* 3։

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 4/17 ՓԵՏՐՈՒԱՐ 1914, Կ. ՊՈԼԻՍ**

Պոլսոյ Ինիոն Ֆրանսէզի սրահին մէջ՝ նուագահանդէս, նախաձեռնութեամբ Մուրատ-Ռաֆայէլեան նախկին Սանուց Միութեան։ Կը մասնակցին՝ պր. տը Հէկէ (դաշնակ), օր. Սթէֆանի Քասթէլլի (երգչուհի), պր. Լակոս (ջութակ), պր. տը Ռատէյլիա (դաշնակ)։ Շ-Մ. կը մեներգէ՝ *Բամբ որոտան*, *Հայաստան* եւ երկու եւրոպական երգեր, դաշնակի նուագակցութեամբ Italo Selvelli-ի։

- «*Մուրատ-Ռաֆայէլեան Սանուց նուագահանդէսը*», *Ազատամարտ*, 6/19 *Փետրուար* 1914, *վեցերորդ տարի*, *Թիւ* 1433, *էջ* 3։

## ՄՈՒՐԱՏ-ՌԱՖԱՅԷԼԵԱՆ ՍԱՆՈՒՑ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Փայլուն երեկոյթ մը իր ամբողջութեան մէջ։

Մուրատ-Ռաֆայէլեան նախկին Սանուց Միութիւնը մեծ խնամք տարած էր այս բարենպատակ նուագահանդէսին համար, որ գեղարուեստական տեսակէտով եւս յաղթանակ մը եղաւ։ Հոծ թուով հասարակութիւն մը, ծայրէ ի ծայր գրաւած Ինիօն Ֆրանսէզի սրահը, խանդավառ արտայայտութիւններով վայելեց բոլոր այն արուեստագէտները որոնք հրաւիրուած էին գործադրելու նուագահանդէսին յայտագիրը։ Ծանօթ դաշնակահար Պ. տը Հէկէ, Օր. Սթէֆանի Քասթէլլի որ երեւան բերաւ ճկուն ու կիրթ ձայնի մը բոլոր շնորհը, յոյն երիտասարդ ջութակահար Պ. Լակօս որ ի յայտ եկաւ նուրբ արուեստագէտի մը ընդունակութիւններով, դաշնակահար Պ. տը Ռատէյլիա, մէկէ աւելի անգամներ բեմ հրաւիրուեցան։ Իսկ երգիչ Պ. Շահ-Մուրատեանի առաջ բերած խանդավառութիւնը աւելի հզօր էր, այնպէս որ հարկադրուեցաւ երկու անգամ բեմ գալու՝ յայտագրէն դուրս ուրիշ կտորներ երգել։ Առաջին անգամ երգեց *Բամբ որոտան* եւ *Հայաստան երկիր դրախտավայրը*, երկրորդ անգամ երկու կտորներ՝ եւրոպական երաժշտութենէ։ Դաշնակի ընկերակցութիւնը կը կատարուէր Պ. Սէլվէլլիի կողմէ։

Հասարակութիւնը գոհունակութեան խոր զգացումով մը մեկնեցաւ։

*Ազատամարտ*, 6/19 *Փետրուար* 1914, *վեցերորդ տարի*, *Թիւ* 1433, *էջ* 3

### ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 19 ՓԵՏՐՈՒԱՐ / 4 ՄԱՐՏ 1914, Կ. ՊՈԼԻՍ

Պոլսոյ Ամերիկեան Դեսպանատան մէջ՝ ճաշկերոյթ եւ ապա երաժշտական երեկոյթ, նախաձեռնութեամբ Ամերիկայի դեսպան եւ տիկին Մորկընթաուի: Երաժշտական երեկոյթին կը մասնակցին Գուսան երգչախումբէն 24 անդամներ, խմբավարութեամբ Կոմիտաս վարդապետի: Կը մեներգեն՝ Շ-Մ. եւ Կոմիտաս:

- ***Թանկօ***, «***Ամերիկ. դեսպանատան մէջ***», ***Շանթ***, 1/14 ***Մարտ*** 1914, ***երրորդ տարի***, ***թիւ*** 54, ***էջ*** 96:

### 1914-Ի ԱՌԱՋԻՆ ԿԷՍ, Կ. ՊՈԼԻՍ

Պոլսոյ Orfeon Records-ի համար Շ-Մ. կը ձայնագրէ 22 մեներգ՝ դաշնակի կամ հարմոնիումի նուագակցութեամբ, որոնք հրապարակ կ'ելլեն մինչեւ Մայիսի սկիզբ: Բոլոր սկաւառակները (78 rpm) ունին 25 սմ. (10-inch) տրամաչափ: Ահաւասիկ անոնց ամբողջական ցանկը.

1. *Տէր, կեցո դու զհայս*
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11585 (matrix: X 1978)
2. *Կիլիկիա* («Երբոր բացուին»)
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11586 (matrix: X 1979)
3. *Արաքսի արտասուքը* («Մայր Արաքսի»)
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11587 (matrix: X 1980)
4. Կոմիտաս վարդապետ, *Կանչէ, կռունկ*
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11588 (matrix: X 1981)
5. Կոմիտաս վարդապետ, *Հով արէք, սարեր ջան*
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11589 (matrix: X 1982)
6. Կոմիտաս վարդապետ, *Գարուն ա, ձուն ա արել*
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11590 (matrix: X 1983)
7. *Խորհուրդ խորին*
Հարմոնիումի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11591 (matrix: X 1994)
8. Մակար Եկմալեան, *Հայր մեր*
Հարմոնիումի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11592 (matrix: X 1995)

9. Մակար Եկմալեան, *Ամէն. Հայր սուրբ*
Հարմոնիումի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11593 (matrix: X 1996)
10. Մակար Եկմալեան, *Օրհնեալ է Աստուած. Քրիստոս պատարագեալ*
Հարմոնիումի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11594 (matrix: X 1997)
11. Մակար Եկմալեան, *Սուրբ, սուրբ*
Հարմոնիումի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11595 (matrix: X 1998)
12. *Ուրախ լեր, սուրբ եկեղեցի*
Հարմոնիումի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11596 (matrix: X 1999)
13. Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11597 (matrix: X 2005)
14. *Բամբ որոտան*
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11598 (matrix: X 2006)
15. *Արօր, տատրակ*
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11599 (matrix: X 2007)
16. Կոմիտաս վարդապետ, *Կռունկ*
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11600 (matrix: X 2008)
17. Կոմիտաս վարդապետ, *Անտունի*
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11601 (matrix: X 2009)
18. Կոմիտաս վարդապետ, *Հայրիկ, հայրիկ, քո հայրենիք*
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11602 (matrix: X 2010)
19. *Երազ* («Ես լսեցի մի անոյշ ձայն»)
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11603 (matrix: X 2011)
20. *Սիրուհիս*
Դաշնակի նուագակցութիւն՝ Կոմիտաս վարդապետ
Orfeon Record 11604 (matrix: X 2012)
21. Herman Bemberg: *Chant hindou* (ֆրանսերէն)
Դաշնակի նուագակցութիւն՝ անյայտ

Orfeon Record 11605 (matrix: X 2044)
22. Georges Bizet: *Les Pêcheurs de perles*, ‘A cette voix ... Je crois entendre encore’ (ֆրանսերէն)
Դաշնակի նուագակցութիւն՝ անյայտ
Orfeon Record 11606 (matrix: X 2045)

**ՇԱԲԱԹ, 6 ՅՈՒՆԻՍ 1914, ՓԱՐԻԶ**

Փարիզի հայոց եկեղեցիին մէջ՝ հայկական եկեղեցական երաժշտութեան ունկնդրութիւն, Երաժշտութեան Միջազգային Ընկերութեան Համաժողովի ծիրէն ներս։

Կոմիտաս վարդապետ կը մեներգէ *Լոյս զուարթ*, Մարգարիտ Բաբայեան՝ *Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր*, Շ-Մ.՝ *Տարածեալ*։ Զուգերգներ՝ Կոմիտաս եւ Շ-Մ., եւ Միսաքչեան եւ Շ-Մ.։ Եռերգներ՝ Մարգարիտ Բաբայեան իր երկու աշակերտուհիներուն հետ՝ Իսկուհի Գավանօզեան եւ Մաննիկ Պէրպէրեան։

- G. Linor, ‘Le Congrès de la Société Internationale de Musique: musique religieuse arménienne’, *Comœdia*, 7 juin 1914, 8e année, no. 2440, p. 3.

- A. Dorian, ‘Le Monde musical’, *Les Nouvelles*, 8 juin 1914, septième année, no. 1839, p. 4.

- E. Vuillermoz, ‘La Musique au concert’, *Comœdia*, 15 juin 1914, 8e année, no. 2448, p. 3.

- *Մարգարիտ Բաբայեան*, «*Հայ երաժշտութիւնը Պարիզի մէջ*», *Ազատամարտ*, 11/24 *Յունիս* 1914, *վեցերորդ տարի*, *թիւ* 1535, *էջ* 1։

- *Հրանոյշ Շահպազ*, «*Հայկական երաժշտութեան պանծացումը*», *Ազատամարտ*, 26 *Յունիս* / 9 *Յուլիս* 1914, *վեցերորդ տարի*, *թիւ* 1548, *էջ* 1։

- Giorgio Barini, ‘Musica e musicologia a Parigi’, *Nuova antologia di lettere, scienze ed arti*, quinta serie, Luglio-Agosto 1914, Roma: Sirezione della Nuova Antologia, 1914, p. 157-158.

- «*Հայ Պատարագը երաժշտական քոնկրէին առջեւ*», *Ֆրանսահայ տարեգիրք*, 1926, *Ա. տարի*, *էջ* 88։

## LE CONGRÈS DE LA SOCIÉTÉ INTERNATIONALE DE MUSIQUE MUSIQUE RELIGIEUSE ARMÉNIENNE

G. LINOR

Dans la soirée a eu lieu à l’église arménienne de la rue Jean-Goujon, par les soins et

sous la direction du révérend père Komitas, une très curieuse et captivante audition de musique religieuse arménienne qui accompagnait l'office des vêpres. Nous avons entendu, chantée par le révérend père Komitas lui-même, Mlle Babaïan et M. Chah-Mouradian, une série de psaumes, hymnes et cantiques d'un intérêt documentaire évident d'un caractère émouvant surtout, vraiment religieux, comme la cérémonie qui se déroulait en même temps sous nos yeux.
*Comœdia*, 7 juin 1914, 8e année, no. 2440, p. 3

## LE MONDE MUSICAL

A. DORIAN

Dans la soirée a eu lieu, à l'église arménienne de la rue Jean-Goujon, par les soins du Père Komitas, une très curieuse et captivante audition de musique religieuse arménienne qui accompagnait l'office des vêpres. Mlle Babaïan et M. Chah-Mouradian prêtaient leur concours à cette cérémonie émouvante comme la musique elle-même.
*Les Nouvelles*, 8 juin 1914, septième année, no. 1839, p. 4

## LA MUSIQUE AU CONCERT

E. VUILLERMOZ

Mais d'autres festivités furent parfaites. La musique religieuse arménienne fut glorifiée dans la chapelle de la rue Jean-Goujon par les soins du Père Komitas, avec une ferveur particulière. Plus intimement mêlés au drame sacré que dans les autres cultes, les chanteurs, revêtus de costumes liturgiques, sont ici les protagonistes de l'action symbolique. Ils ne craignent pas, au cours des hymnes, cantiques, psaumes et récits qui composent les vêpres arméniennes, d'accentuer, avec une dignité et une discrétion d'ailleurs parfaites, le côté dramatique et théâtral d'un office tel que celui de la veille de la Pentecôte exécuté à cette occasion. L'atmosphère musicale du rite arménien est infiniment prenante et réalise avec des moyens assez primitifs une couleur extraordinairement vive. Les pédales bourdonnantes qui soutiennent les mélodies imposent une harmonie d'un orientalisme savoureux. La voix émouvante de Mlle Babaïan qui roucoule les vocalises sacrées comme une colombe mystique, fut très remarquée au cours de cette audition. Elle devait, quelques jours plus tard, émerveiller tous les congressistes par une exécution réellement impressionnante à la Sainte Chapelle.

M. Chah-Mouradian a toujours ce timbre charmeur qui l'avait signalé à l'attention des musiciens au moment où il quitta notre Conservatoire national, mais sa voix semble avoir gagné encore en éclat et en rayonnement depuis qu'elle a repris un bain de soleil sur sa terre natale.
*Comœdia*, 15 juin 1914, 8e année, no. 2448, p. 3

## ՀԱՅ ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆԸ ՊԱՐԻԶԻ ՄԷՋ
**(հատուած)**

ՄԱՐԳԱՐԻՏ ԲԱԲԱՅԵԱՆ

Հայոց եկեղեցին ծայրէ ի ծայր լի էր շաբաթ իրիկուն, յունիս 6-ին: Աշխարհիս երաժիշտները այնտեղ էին, որոնք՝ խորին ակնածութեամբ ու մինչեւ իսկ յուզմունքով հետեւեցին ամբողջ արարողութեանը: Կոմիտաս վարդապետ մի քանի զմայլելի մեղեդիներ երգեց՝ իմ երկու սիրելի աշակերտուհիներուս՝ Օրիորդներ Իսկուհի Գավանօզեանի ու Մաննիկ Պէրպէրեանի հետ. մենք փոքրիկ կանացի խումբ էինք կազմել: Պ. Ա. Շահ-Մուրատեանը բերած էր իր ուժեղ եւ գեղեցիկ ձայնը, թէ՛ առանձին եւ թէ Կոմիտաս վարդապետին եւ Պ. Միքչեանին հետ մասնակցելով եկեղեցական երգերին:
***Ազատամարտ***, 11/24 ***Յունիս*** 1914, ***վեցերորդ տարի***, ***Թիւ*** 1535, ***էջ*** 1

## ՀԱՅ ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆԸ ՊԱՐԻԶԻ ՄԷՋ

*Լը Մօնտ միւզիքալ* երաժշտական հանդէսը խօսելով Հայոց եկեղեցւոյն մէջ տեղի ունեցած եկեղեցական երաժշտութեան հաւաքոյթին մասին, կ'ըսէ.

«Երկու օր ետք հաւաքուեցանք Ժան-Կուժօն փողոցի Հայոց եկեղեցին: Կոմիտաս վարդ. եւ Օր. Բաբայեան մեզ արդէն հայ երաժշտութեան խորհուրդներուն հաղորդակից ըրած էին: *Լը Մօնտ միւզիքալ* արդէն խօսած է այս արեւելեան արուեստին գեղեցկութեան եւ առանձնայատկութիւններուն մասին: Եկեղեցւոյ շրջանակը եւ եկեղեցական դասին տարազը ի վեր կը հանէին նոյն տպաւորութիւնը եւ կ'ոգեկոչէին մերինէն տարբեր աշխարհ մը: *Լոյս զուարթ սուրբ փառաց անմահի*ն էր որ կը փոփոխէր՝ Կոմիտաս վարդապետի եւ խումբին երգած *Լոյս զուարթ*ին մէջ, Օր. Մարգարիտ Բաբայեանի յուզիչ ոգեկոչումն էր՝ առ *Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր, սուրբ եւ անմահ*, խաչին վրայ տարածուած թեւերու տեսիլքն էր՝ զոր ընծայեց Պ. Արմենակ Շահ-Մուրատեան իր *Տարածեալ*ով, եւ բոլոր ասոնք բուրվառին շղթաներուն շշունչին եւ երկրպա-

զող ժողովուրդին ծնրադրութեանց մէջ: Այս արարողութիւնը՝ որ Հոգեգալուստի նախատօնակն էր՝ մեծ տպաւորութիւն գործեց բոլոր համաժողովականներուն վրայ:»
*Ազատամարտ*, 11/24 *Յունիս* 1914, *վեցերորդ տարի*, *Թիւ* 1535, *էջ* 1

## ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՊԱՆԾԱՑՈՒՄԸ
**(հատուած)**

ՀՐԱՆՈՅՇ ՇԱՀՊԱԶ

Համաժողովէն յետոյ, անոր անդամներուն մասնաւոր խնդրանքով Կոմիտաս վրդ. երաժշտական հաւաքոյթ մը սարքեց տեղւոյն Հայոց եկեղեցիին մէջ, Հոգեգալստեան նախատօնակի առիթով, մասնակցութեամբ մեր գնահատելի հայ թէնօռ Պ. Շահ-Մուրատեանի, Պ. Միսքճեանի եւ շնորհալի երգչուհի Օր. Մ. Բաբայեանի ու իր աշակերտներուն, օրիորդներ՝ Գավանոզ եւ Պէրպէրեան:
*Ազատամարտ*, 26 *Յունիս* / 9 *Յուլիս* 1914, *վեցերորդ տարի*, *Թիւ* 1548, *էջ* 1

## MUSICA E MUSICOLOGIA A PARIGI

GIORGIO BARINI

Una caratteristica cerimonia svoltasi una sera nella chiesa armena (rue Jean Goujon, ai Champs-Elysées) per l'officio dei Vespri, è riuscita straordinariamente suggestiva. La chiesa, non grande, dalla facciata sobriamente elegante, dalle linee semplici e armoniose nell'interno, è illuminata a sufficienza: la maggior luce è presso l'altare, di fronte al quale prendono posto l'arciprete, dal nero cappuccio, cantori, uomini e donne, coperti da ampi manti rossi, di cui la parte che sovrasta alle spalle, disegnata a forma di pellegrina, è di velluto dello stesso colore rosso cupo, coperto di ricchi ricami d'oro, al pari dell'alto colletto diritto. Si alternano durante l'officio varie forme di canto: dalla salmodia monodica al canto strofico a ritornello; si alternano le voci maschili e femminili, a solo e a coro. La forma predominante è quella di una melodia, più o meno riccamente ornata da melismi, di una sola voce, mentre il coro sostiene il canto con un protratto e invariato pedale, con intervallo di quinta, a bocca chiusa: è un mormorio dolce, misterioso, che forma una specie di atmosfera armoniosa, su cui si leva e spazia liberamente il solista. Se questi è uomo, il pedale armonico è tenuto dalle voci femminili, naturalmente più acute; per contro, il canto muliebre è sostenuto dall'armonia delle voci maschili: talvolta

nella chiusa di un cantico tutte le voci si uniscono nel ripetere la melodia finale. Ecco un canto salmodico eseguito dalla sola voce dell'arciprete, con risposte corali melodiche, che si ripetono, alternandosi col canto salmodico, con andamento strofico: una larga frase alleluiatica, ripetuta subito con più delicata dolcezza, chiude l'episodio, mentre l'incensiere, ritmicamente agitato, dà un suono come di lontani sonagli d'argento, e par segnare tenui riflessi luminosi sul tessuto armonioso delle voci musicalmente oranti.

Ai cantici ornati seguono canti più serrati e fermi: si ode perfino un coro a note martellate; nell'alternarsi delle voci si hanno talvolta degli scatti quasi improvvisi, di bella energia. In alcuni canti predomina la serie caratteristica dei suoni della scala così detta orientale (intervallo di un tono e mezzo tra due note consecutive, cui seguono, tra le altre due note ulteriori, intervalli di mezzo tono); il canto talvolta spazia oltre i limiti del modo cui si riferisce il doppio pedale corale, derivandone incontri arditamente vaghi; più versetti della medesima salmodia si chiudono con cadenze sempre variate. Ad un tratto, sul mormorio tenue del coro si leva una sola voce maschile con slancio estatico, in un canto largo ed eloquente, al quale fa seguito un episodio corale animato, vibrante, in cui le voci pare gareggino di vivacità, in un insieme persino incomposto; finchè di nuovo si eleva una sola voce femminile, dolce e penetrante, sulle note velate del coro, come una luminosa figura angelica disegnata sopra un tenue sfondo opalino. In fine, quasi assommando in una meravigliosa sintesi tutte le virtù di questa musica affascinante nei suoi ritmi elasticamente variati, nella morbidezza dei melismi delicati, nelle espressioni suggestivamente insinuanti dei modi ecclesiastici di tipo orientale, nella fusione e nei contrasti dei timbri sonori, si svolge un cantico armonioso, espressivo: sull'accordo discreto delle voci miste un gran grido della voce sola si leva, tenuto a lungo; le note protratte si risolvono in una fiorita ghirlanda di delicati melismi, finchè tutte le voci si uniscono e si fondono in un *amen* di meravigliosa dolcezza, mentre il tintinnio ritmico, argentino, dell'incensiere sembra gettare brillanti pagliuzze sullo sfondo tenue e delicato della mistica scena.

Rare volte ho assistito ad una cerimonia così profondamente suggestiva come i vespri della chiesa armena di Parigi: un'arte che sembra sgorgare con meravigliosa spontaneità da una fede sicura e sincera, come una fonte di limpidissima acqua da una roccia pura e salda al pari di un diamante; intimamente legata, immedesimata col tempio e col rito: in cui si fondono in un insieme armonioso pensieri e sentimenti, voci e atti, menti e cuori: ha in sè qualche cosa di sopraumano, e ci lascia ammirati e quasi sgomenti. E ci parve cosa naturale, necessaria, che la ammirabile voce calda ed espressiva della signorina Babaïan, le limpide voci delle sue giovani allieve, la magnifica voce armoniosa e pura di M. Chah-Mouradian si svolgessero con tanto nobile spontaneità e così straordinaria intensità espressiva: nè turbava o alterava lo stupendo concento qualche po' di raucedine che talvolta faceva sembrare lievemente affaticata la voce sicura del

padre Komitas, il dotto e appassionato cultore e illustratore della sacra musica armena, centro e anima della indimenticabile cerimonia.
*Nuova antologia di lettere, scienze ed arti*, quinta serie, Luglio-Agosto 1914, Roma: Sirezione della Nuova Antologia, 1914, p. 157-158

## ՀԱՅ ՊԱՏԱՐԱԳԸ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՔՈՆԿՐԷԻՆ ԱՌՋԵՒ

1914-ին Երաժշտական միջազգային հինգերորդ քօնկրէն Փարիզ գումարուած էր: Այս առթիւ Կոմիտաս Վրդ. որ այն ատեն Փարիզ էր, կազմակերպեց հայկական պատարագ մը որուն ներկայ եղան համաժողովին անդամները Հայ եկեղեցիին մէջ: Մէջտեղը կեցողն է Տ. Բաբկէն Եպս. Կիւլէսէրեան, աջակողմը՝ Տ. Վռամշապուհ Վրդ., ձախակողմը՝ Կոմիտաս Վրդ.: Դպիրներէն մին է՝ Պ. Ա. Շահմուրատեան, իսկ սարկաւագներէն մին՝ Օր. Մ. Բաբայեան: *Musica* հանդէսը որմէ կ'արտատպենք այս նկարը, հետեւեալ հատուածը գրած էր այս առթիւ.-

«Յունիս 6-ի իրիկունը Ժան Կուժօն փողոցի հայ եկեղեցիին մէջ տեղի ունեցաւ, ի պատիւ երաժշտական համաժողովի անդամներուն, հայածէս պատարագ մը՝ քօնկրէին ամենագիտուն եւ ամենագործօն մէկ անդամին՝ Գեր. Կոմիտաս Վրդ.ի կողմէ, ինքն ալ նշանաւոր երգիչ մը: Հոն ունկնդրուեցան ինքնատիպ նկարագրով երաժշտական գործեր, զորս երգեցին Օր. Բաբայեան որ սրբազան տաղերը կը վուվուէ միսթիքական տատրակի մը պէս եւ Պ. Շահմուրատեան, որուն յորդորակ ձայնը զուտ մետաղական հնչիւն մը ունի:»
*Ֆրանսահայ տարեգիրք*, 1926, *Ա. տարի*, *էջ* 88

### 1914-Ի ԿԷՍԵՐԸ, ՓԱՐԻԶ

Կը ծնի Արմենակ եւ Մարկըրիթ (ֆրանսուհի) Շահ-Մուրատեաններու միակ զաւակը՝ Էվըլին:

- *Ֆերտինանտ Գայմագամեան*, «*Շահ-Մուրատեանի դուստրը կը վերյիշէ իր հօրը հետ ապրուած օրերը*», *Ջահակիր*, 10 *Փետրուար* 1972, *Նոր շրջան*, *Թիւ* 415, *էջ* 4:

### ԴԵԿՏԵՄԲԵՐ (ՎԵՐՋԻՆ ՇԱԲԱԹ) 1914, ՆԻՒ ԵՈՐՔ

Կը հասնի Նիւ Եորք, իր ֆրանսուհի տիկնոջ՝ Մարկըրիթ Շահ-Մուրատեանի, եւ վեցամսեայ դստեր՝ Էվըլին Շահ-Մուրատեանի հետ:

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ*, 2 *Յունուար* 1915, *ԺԵ. տարի*, *Թիւ* 1, *էջ* 18:

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Նիւ Եորք հասաւ անցեալ շաբթու մէջ տաղանդաւոր երգիչ Տիար Ա. Շահմուրատեան, որ ինչպէս յայտնի է, Փարիզի Մեծ Օփէրային մէջ ծափահարուեցաւ, *Ֆաուստ*ի նման առաջնակարգ դերով մը ի հանդէս գալով:

Տիար Շահմուրատեան, նպատակ ունի Ամերիկայի գեղարուեստասէր հասարակութեան ներկայացնել դասական երաժշտութիւնը, համերգներու շարքով մը:

***Կոչնակ***, 2 ***Յունուար*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 1, ***էջ*** 18

**ԿԻՐԱԿԻ, 24 ՅՈՒՆՈՒԱՐ 1915, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Aeolian Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի Նիւ Եորքի առաջին երգահանդէսը:

Կը մասնակցին՝ օր. Րոզա Յակոբեան (երգչուհի), տիար Ֆրնտրզլեան (մեներգիչ), օր. Արուսեակ Կոստիկեան (դաշնակ) եւ տիար Օ. Թիմուրեան (ջութակ):

- «*Հանդէսներ եւ ժողովներ*», ***Կոչնակ***, 23 ***Յունուար*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4, ***էջ*** 97:
- ‘Concerts of the Week’, *The Sun*, 24 January 1915, p. 6.
- «*Հայ գաղթականութիւնը*», ***Կոչնակ***, 30 ***Յունուար*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 5, ***էջ*** 110-111:
- *Մ*., «*Հայ երգիչներ*», ***Կոչնակ***, 1 ***Մայիս*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 18, ***էջ*** 414:

## ՀԱՆԴԷՍՆԵՐ ԵՒ ԺՈՂՈՎՆԵՐ

Շքեղ նուագահանդէս, Տիար Ա. Շահ-Մուրատեանի կողմանէ, 24 Յունվար, 1915, Կիրակի երեկոյ, ժամը 8.15-ին, Իօլիըն Հօլին մէջ, 35 Ուէսթ 42-րդ Փողոց, Նիւ Եորք: Տիար Ա. Շահ-Մուրատեանի պիտի ընկերանան նաեւ ուրիշ ծանօթ արուեստագէտներ: Կարգադիր Յանձնախումբ ամեն ջանք չէ խնայած սոյն նուագահանդէսի յաջողութեանը համար, եւ կը սիրէ հաւատալ, թէ գեղարուեստը սիրող բոլոր Հայերը պիտի փութան իրենց բարեկամներուն հետ որոշեալ ժամուն ներկայ ըլլալ, քաջալերելու համար այդ Հայ տաղանդաւոր երգիչը, եւ միեւնոյն ատեն անոր երգերու ներշնչող հաճոյքը վայելելու:

Տոմսակներու գներն են 1.50 ու 1 տոլար, եւ 75 ու 50 սէնթ

ԿԱՐԳԱԴԻՐ ՅԱՆՁ.

***Կոչնակ***, 23 ***Յունուար*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4, ***էջ*** 97

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Յունվար 24, Կիրակի իրիկունը Նիւ Եորքի ամենէն նշանաւոր ժողովասրահ-

ներէն մէկին՝ Իօլիըն Հօլին մէջ նուագահանդէս մը տեղի ունեցաւ, որուն նմանը Նիւ Եորքի Հայ գաղութը երբեք տեսած չէր ասկէ առաջ։

Նուագահանդէսը կազմակերպուած էր Հայ տաղանդաւոր երգիչ Շահ-Մուրատեանի կողմէ՝ որ մեծ համբաւ հանած է Փարիզ, իբր *օբերայ*ի մէջ երգող, նոյնպէս եւ Լոնտոն, Պօլիս, եւ Եգիպտոս, այցելելով, ամեն տեղ ալ փառաւոր ընդունելութիւն գտած է իբր Հայ առաջնակարգ *արթիսթ*։ Քանի մը շաբաթ առաջ էր որ Ամերիկա հասաւ Տիար Շահ-Մուրատեան, գլխաւորապէս նպատակ ունենալով Ամերիկեան երաժշտական բարձրագոյն շրջանակներուն մէջ դիրք մը գրաւել։ Սակայն իր հայրենակիցներէն շատերուն փափաքանաց համաձայն՝ յարմար սեպեց Ամերիկեան հասարակութեան ներկայանալէ առաջ, անգամ մը երգել Հայ երաժշտասէրներու համար։ Եւ յաջողութիւնը այնքան մեծ, այնքան աչքառու էր, որ բառերով որակել դժուար է արդարեւ։ Նուագահանդէսին ներկայ եղող հազարէ աւելի Հայերէն ամեն մէկն ալ երբ սրահէն կը բաժնուէր այս բառերն էր որ կը կրկնէր. *սքանչելի էր, հիանալի էր, աննման էր*։

Տիար Շահ-Մուրատեան առաջին կարգի *թէնօր* է։ Անոր ձայնը այնպիսի անուշութիւն մը, այնպիսի ներդաշնակութիւն մը ունի, որ ուղղակի սրտի կը խօսի, եւ իր քաղցրահնչիւն ելեւէջներովը կը բերէ քեզի մեծ վարպետներու հոգեկան պատգամները։

Տիար Շահ-Մուրատեանի կ'ընկերակցէին ուրիշ Հայ տաղանդներ ալ, որոց ամենուն համար, իբր Հայ հպարտ ըլլալու ամեն պատճառ ունինք։ Օր. Ր. Յակոբեան, որ երկար տարիներէ ի վեր ձայնի կրթութեան տուած է ինքզինքը եւ նոր սկսած է բեմի վրայ երեւնալ, իսկապէս կրնայ կոչուիլ երաժշտական տաղանդ մը. ա՛յնքան յուզիչ եւ յանկուցիչ ձայնով մը երգեց իր մեներգները։ Օր. Արուսեակ Կոստիկեան, ուրիշ Հայ արուեստագիտուհի մ'է, որ իբր վարժ դաշնակահար, բացառիկ դիրք մը կը գրաւէ Ամերիկեան հայութեան մէջ։ Կարծես Օր. Կոստիկեանի դիւթիչ մատներուն տակ նիւթը հոգիացեր էր, եւ դաշնակը կը խօսէր մեծ վարպետներուն յոյզերովը լեցուած։

Տիար Ֆրնտըգլեան ալ երգեց մեներգ մը եւ բուռն կերպով ծափահարուեցաւ։ Տիար Օ. Թիմուրեան ջութակով ընկերացաւ դաշնակին երբ Շահ-Մուրատեան կ'երգէր Ֆրանսերէն դասական կտոր մը։

Իսկապէս ուրախալի էր տեսնել որ Նիւ Եորքի Հայ գաղութը այդքան մեծ խանդավառութեամբ եկած էր պատիւ ընելու Հայ տաղանդներու եւ միանգամայն վայելելու անոնց պատրաստած գեղարուեստական փառաւոր խնճոյքը։ Այս կը ցուցընէր թէ մեր ժողովուրդը սկսած է հաճոյք զգալ բարձրագոյն երաժշտութենէ, ինչ որ արդարեւ մխիթարական երեւոյթ մ'է մեր մէջ, քանզի երգն ու դաշնակը կ'ազնուացնեն ժողովուրդին սիրտն ու հոգին։

Նիւ Եորքի Հայ գաղութէն կարեւոր ազգայիններ մեծ ոգեւորութեամբ աշխատեցան այս հանդէսին յաջողութեանը՝ որոց, ինչպէս նաեւ բոլոր ժողովուրդեան

ցոյց տուած ջերմ համակրութեան համար խորապէս զգածուած Տիար Շահ-Մուրատեան իր խորին գնահատութիւնը կը յայտնէ *Կոչնակ*ի միջոցով Կարգադիր Յանձնախումբին, այս խօսքերով, - «Անկեղծ շնորհակալութիւնս կը յայտնեմ իմ նուագահանդէսի Կարգադիր Յանձնախումբին պատուարժան անդամներուն եւ բոլոր անոնց որ ուղղակի եւ անուղղակի իրենց ջանքերը չը խնայեցին այս նուագահանդէսը արդիւնաւոր եւ փայլուն ընծայելու։»
***Կոչնակ***, 30 ***Յունուար*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 5, ***էջ*** 110-111

## ՀԱՅ ԵՐԳԻՉՆԵՐ
**(հատուած)**

Մ.

Ամերիկայի երաժշտական բեմին վրայ ալ սկսած են փայլիլ Հայ տաղանդներ, որոնց հանդէպ պէտք է արձանագրել Ամերիկահայութեան հիացումն ու երախտագիտութիւնը։

Մեր տաղանդաւոր երաժշտագէտները, ոչ միայն կ՚ապացուցանեն, թէ բարի ազգերը երգ ունին, այլ նաեւ Ամերիկացիներու մէջ կ՚արթնցնեն Հայ երաժշտութիւնը ուսումնասիրելու եւ Հայերէն երգեր սորվելու բաղձանք մը։

Մէթրոփոլիթըն Օփէրա Հաուզի նշանաւոր երգչուհին, Մատամ Տէսթին, որ ներկայ կը գտնուէր Տիար Ա. Շահ-Մուրատեանի Նիւ Եորքի նուագահանդէսին, հիմա կ՚աշխատի ուսանիլ *Հայաստան, երկիր դրախտավայր*ի եղանակը։ Ասիկա մէկն էր այն կտորներուն, որոնցմով Տիար Շահ-Մուրատեան զմայլեցուց իր Նիւ Եորքի ունկնդիրները։
***Կոչնակ***, 1 ***Մայիս*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 18, ***էջ*** 414

### ԿԻՐԱԿԻ, 28 ՓԵՏՐՈՒԱՐ 1915, ՆԻՒ ԵՈՐՔ

Պատարագ Նիւ Եորքի Հայ Աւետարանական Եկեղեցիին մէջ։ Քարոզը կը խօսի Վեր. Խ. Կ. Պէննէեան։ Օրուան երգիչն էր Շ-Մ., որ դաշնակի նուագակցութեամբ կը մեներգէ երեք երգ.

César Franck: *La Procession*

George Frideric Handel: *Messiah*-էն

*Քրիստոս պատարագեալ*

Դաշնակի նուագակցութիւն՝ տիկ. Իսկուհի Մ. Չամալեան

- «***Հայ գաղթականութիւնը***», ***Կոչնակ***, 13 ***Մարտ*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 11, ***էջ*** 252-253։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

ՆԻՒ ԵՈՐՔ. – Փետրուար 28-ին, Կիրակի օր, քաղաքիս Հայ Աւետ. Եկեղեցիին մէջ արտասովոր բազմութիւն մը հաւաքուած էր օրուան բացառիկ պատգամախօսները լսելու։ Պաշտամունքին քարոզը խօսեցաւ Վեր. Խ. Կ. Պէննէեան, որ ներկայ համաշխարհային պատերազմը օրինակ առաւ եւ Պօղոս Առաքեալի «Բարի պատերազմը պատերազմէ» յորդորին վրայ քարոզեց։ Պատ. Պէննէեան եռանդագին շեշտերով հրաւիրեց Հայ երիտասարդութիւնը կռուելու գաղափարին եւ բարիին պատերազմը։ Տիար Ա. Շահ-Մուրատեան օրուան երգիչն էր։ Երգեց Սէզար Ֆրանքի *Թափօր*ը, Հէնտէլի *Մեսիայ*էն կտոր մը եւ Հայ եկեղեցւոյ պատարագէն «Քրիստոս պատարագեալ»-ը։ Տիար Շահ-Մուրատեան մեզի ցուցուց թէ ոչ միայն մեծ երաժիշտ մըն էր, որ կրնար իր հզօր ձայնը, աստուածատուր պարգեւ մը, ներդաշնակօրէն կառավարել արուեստին ամենէն նուրբ պահանջումներուն համաձայն, այլ մանաւանդ բարձրագոյն արուեստին հետ կը միացնէր զգացումը, լայն սրտի մը կեանքը։ Ասով էր որ անիկա կարող եղաւ արտայայտել կրօնական այն խորհուրդները, որ Հէնտէլ եւ անոր նման մէկ քանի մեծ վարպետներ յաջողած են աշխարհի ժառանգութիւն թողուլ։ Մեծ արուեստագէտներ թերեւս դեռ շատ պիտի ունենանք, սակայն քիչուոր պիտի ըլլան անոնք, որ կարող պիտի ըլլան աստուածային երաժշտութեան մեծագոյն վարպետներուն խորհուրդին թափանցել եւ զանոնք մեզի, հասարակ մահկանացուներուս հասկնալի կերպով թարգմանել։ Տիկին Իսկուհի Մ. Չամալեան արժանաւորապէս ընկերացաւ դաշնակի վրայ Տիար Շահ-Մուրատեանի ամեն մէկ կտորին մէջ՝ իր բաժինը նոյնքան արուեստով եւ նոյնքան զգացումով կատարելով։
***Կոչնակ***, 13 ***Մարտ*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 11, ***էջ*** 252-253

### ԿԻՐԱԿԻ, 4 ԱՊՐԻԼ 1915, ՖԻԼԱՏԵԼՖԻԱ

Ֆիլատելֆիայի Odd Fellows-ի սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։ Կը մեներգէ՝ *Բամբ որոտան*, ֆրանսերէն եւ իտալերէն երգեր։
Կը մասնակցին՝ օր. Ս. Րիչըրտս (դաշնակ) եւ պր. Է. Սթրասըր (ջութակ)։
- «***Հայ գաղթականութիւնը***», ***Կոչնակ***, 24 ***Ապրիլ*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 17, ***էջ*** 398։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

ՖԻԼԱՏԵԼՖԻԱՅի մեր թղթակիցը կը գրէ.
Գաղութս հազուագիւտ պատեհութիւնը ունեցաւ վայելելու Պ. Ա. Շահ-Մուրատեանի գեղեցիկ եւ անզուգական նուագահանդէսը, որ տրուեցաւ Ապրիլ

4-ի իրիկունը, *Ատ Ֆէլօ*ներու շէնքին մէջ։ Սրահը լեցուած էր երկսեռ հոծ բազմութեամբ մը, որուն մէջ մեծ թիւով Ամերիկացիներ ալ կային։

Որոտընդոստ ծափահարութիւնով բեմին վրայ երեւցաւ տաղանդաւոր երգիչը, եւ իր վերնաբամբ ձայնին դիւթիչ ոլորտներովը որոտացուց մեր ազգային քայլերգը, *Բամբ որոտանը*։ Ունկնդիրներուն հիացումն անսահման էր իր առաջին երգը լսելէ վերջ, որուն ապացոյցը տուին երկարատեւ ծափահարութիւններով։

Շահ-Մուրատեան երգեց նաեւ ֆրանսերէն եւ իտալերէն ընտիր կտորներ։ Նուագահանդէսին մէջ բաժին ունէին Միս Ս. Րիչըրտս եւ Մր. Է. Սթրասըր, մին դաշնակով եւ միւսը ջութակով, որոնք ճարտար եւ յաջող կերպով նուագեցին։ Այս գեղարուեստական խնճոյքը մեր ամենուն հիացումին առարկայ եղաւ, եւ զմեզ լեցուց պարծանքով, տեսնելով որ Հայ տաղանդ մը կը փայլի օտարներու առջեւ իսկ։

*Կոչնակ*, 24 *Ապրիլ* 1915, *ԺԵ. տարի*, *Թիւ* 17, *էջ* 398

### 1915, ԱՐԵՒՄՏԱՀԱՅԱՍՏԱՆ

Ցեղասպանութեան ընթացքին կ'ոչնչանայ Շահ-Մուրատեան գերդաստանը։ Ողջ կը մնան միայն ինք եւ հօրեղբօր որդի մը, Թուրքիայէն դուրս գտնուելնուն պատճառով։

- *Մեղու Շնորհալի*, «*Շահ Մուրատենց Սրգոյի Արմօն*», *Հայրենիք*, 24 *Փետրուար* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3593, *էջ* 1։

- «*Ինքնակենսագրութիւն*», *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 17։

## ՇԱՀ ՄՈՒՐԱՏԵՆՑ ՍՐԳՈՅԻ ԱՐՄՕՆ
### (հատուած)

ՄԵՂՈՒ ՇՆՈՐՀԱԼԻ

Դարբին Սրգոն [Արմենակի հայրը, Հ.Ա.] մեռաւ, երբ Արմօն 12 տարեկան էր, իսկ մայրը որ այնքան աղօթքներ մրմնջած էր «չար աչքերէ» ազատելու համար իր զաւակը, մեծ տարագրութեան միջոցին սպանուեցաւ, 86 տարեկան հասակին մէջ, իր թոռան թոռին հետ։

*Հայրենիք*, 24 *Փետրուար* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3593, *էջ* 1

## ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ
**(հատուած)**

ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Պատերազմը ամէն ինչ սրբեց. այսօր, միայն ես եւ ուրիշ հօրեղբօր տղայ մը (այժմ՝ Ամերիկա) մնացած ենք՝ երկրէն դուրս գտնուելուս շնորհիւ։
[Փարիզ, 1924]
*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 17

### ԿԻՐԱԿԻ, 9 ՄԱՅԻՍ 1915, ՉԻՔԱԿՕ

Չիքակոյի մասոնական տաճարի Oriental Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։ Կը մասնակցին՝ Jo Polak (ջութակ), Mae Doelling (դաշնակ) եւ տիկ. Յ. Պէզազեան (դաշնակ)։

Շ-Մ. կը մեներգէ՝ *Բամբ որոտան*, *Կռունկ*, *Հայաստան* եւ եւրոպական գործեր։

- «*Հանդէսներ եւ ժողովներ*», *Կոչնակ*, 1 *Մայիս* 1915, *ԺԵ. տարի*, *Թիւ* 18, *էջ* 433։
- ‘Music Calendar’, *The Chicago Tribune*, 9 May 1915, p. VIII.
- *Մտրակ*, «*Տաղանդաւոր Հայ երգիչը*», *Ասպարէզ*, 18 *Յունիս* 1915, *Է. տարի*, *Թիւ* 358, *էջ* 4։

## ՏԱՂԱՆԴԱՒՈՐ ՀԱՅ ԵՐԳԻՉԸ

ՄՏՐԱԿ

Հայ ժողովուրդի ինքնայատուկ, լաւագոյն ձիրքերով օժտուած, եւ անոր տառապանքով ապրած եւ ապրեցնող, տաղանդաւոր երգիչ Պն. Շահմուրատեանը լսելու թանկագին պատեհութիւնը ունեցայ Շիքակոյի մայիս իննի նուագահանդէսին մէջ։

Իր անդրանիկ այցելութիւնը անակնկալ մը եղաւ գաղութիս համար, որու գեղարուեստասէր հատուածը փութացած էր լսել զինք, աւելի ճիշդ վայելել, իր բնականէն հիանալի ձայնի, մարզուած արտաբերումները, որոնք որքան յուզիչ՝ նոյնքան հմայիչ, որքան դիւթիչ՝ նոյնքան զմայլելի էին։

Նուագահանդէսին կը մասնակցէին նաեւ օտար կարող արուեստագիտուհիներ։

*Բամբ որոտան*, *Կռունկ* եւ *Հայաստան* գեղեցիկ կտորներով մերթ բարձր, եւ ապա աստիճանաբար մեղմ, ձայնի ելեւէջներով ան դիւթեց հանդիսականները, որոնք կարծես զսպանակէ մը լարուած, անշշուկ ու արձանային լռութեամբ

աչքերնին յառած դէպի սրտի ամենախոր եւ ամենանուիրական զգացումներու թելերը վայրկենապէս ցնցելու զարմանալի յատկութիւններով օժտուած, տաղանդաւոր արուեստագէտը, պահ մը ինքզինքնին փոխադրուած զգացին դէպի զուլումի աշխարհը, վերյիշելով ոչ-բախտաւոր անցեալը այն երկրին՝ որ այսօր կրկին արիւնի եւ մոխրակոյտի քաօս մը կը ներկայացնէ, ու այդպէսով ապրեցան հեքը, մշուշապատ, այլ ապագայ ոսկեշող արշալոյսի մօտալուտ հեռապատկերի յոյսով զրահուած՝ Մայր Հայաստանի։

Տպաւորութիւնը խոր էր եւ տրամադրութիւնը չափազանց բարձր. ան իր հմայիչ անսպառ ձայնով, ստեղծեց տարօրինակ մթնոլորտ մը, ուր կարելի էր գտնել ճշմարիտ հայու մը բոլոր մաքուր զգացումներու համախմբումը։

Յարգելի երգիչը Հ. Յ. Դ. Շիքակոյի կոմիտէի կողմէ ստացաւ գեղեցիկ ծաղկեփունջ մը, որպէս գնահատութիւն իր ընդգրկած ասպարէզին մէջ ցոյց տուած հանճարին՝ որու մասին այնքան դրուատիքներ շռայլուած են նոյն իսկ օտար մամուլէն։

Պէտք է յիշել սակայն, որ կարգադիր յանձնախմբի դանդաղաշարժութիւնը եւ ալա-պատուելիական ոճով գրուած յայտարարութիւնները, պատճառ դարձան որ նիւթապէս այնքան ալ լաւ հասոյթ մը չի գոյանայ։

Եւրոպական ընտիր կտորներու եւ հայկական ռազմաշունչ եւ հայրենատենչ երգերու այնքան կենդանի եւ բնական կերպով երգուելէն ստեղծուած տաքուկ մթնոլորտէն դժուարաւ բաժնուեցան ներկաները։

Պատի՛ւ հայ երգիչ Շահմուրատեանին, եւ բոլոր անոնց՝ որոնք իրենց հանճարը, տաղանդը եւ ամէն ինչ ի սպաս կը դնեն հայ ժողովուրդին սրբազան զգացումներու նրբացումին եւ ազնուացումին։

***Ասպարէզ***, 18 ***Յունիս*** 1915, ***Է. տարի***, ***Թիւ*** 358, ***էջ*** 4

**ՇԱԲԱԹ, 22 ՄԱՅԻՍ 1915, ՈՒԷՅՆ (ՆԻՒ ՃԸՐՍԻ)**

Wayne Castle սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը ի նպաստ Մուշի ինքնապաշտպանութեան, կազմակերպութեամբ Հ.Յ.Դ. տեղական քոյր կոմիտէներուն։ Կը մասնակցին ամերիկացի երգչուհի մը եւ Արտաշէս Յակոբեան։ Դաշնակի նուագակցութիւն՝ օր. Lillian Shimberg։

Շ-Մ. կը մեներգէ՝ *Բամբ որոտան*, *Կռունկ* եւ *Հայաստան*։

- ‘Accompanist for Armenian Concert,’ *The Detroit Free Press*, 19 May 1915, p. 8.
- ***Ասուպ***, «***Նամակ Տիթրոյթէն***», ***Ասպարէզ***, 18 ***Յունիս*** 1915, ***է. տարի***, ***Թիւ*** 358, ***էջ*** 4։

## ACCOMPANIST FOR ARMENIAN CONCERT

Miss Lillian Shimberg, well known to Detroit music lovers, has been engaged as

accompanist for Shah Mouradian, in the concert to be given in Wayne Castle hall, Saturday evening, for the benefit of the Armenian national defense fund. Shah Mouradian is from the Paris conservatory and is ranked as one of the world's greatest tenors.
*The Detroit Free Press*, 19 May 1915, p. 8

## ՆԱՄԱԿ ՏԻԹՐՈՅԹԷՆ

ԱՍՈՒՊ

Հռչակաւոր երգիչ Պն. Ա. Շահմուրատեանի Ամերիկա գալը առիթ տուաւ Հ. Յ. Դ. տեղւոյս քոյր կօմիտէներուն իր հաճութեամբը նուագահանդէս մը կազմակերպելու, մէկ պայմանաւ սակայն որ արդիւնքը Մուշի ինքնապաշտպանութեան յատկացուէր: Մենք սիրայօժար ընդունեցինք քանի որ առով թէ՛ զինք լսելու եւ թէ՛ պարտականութիւն մը կատարելու պատեհութիւնը պիտի ունենայինք: Մայիս 22-ին տեղի ունեցաւ նուագահանդէսը մասնակցութեամբ տեղացի նշանաւոր երգչուհիի մը եւ ընկեր Արտաշէս Յակոբեանի: Տաղանդաւոր երգիչը գեղեցիկ ձայնով ներդաշնակ եւ աստիճանական ելեւէջներով երգեց *Բամբ որոտան*, *Կռունկ ուստի՞ կուգաս* եւ *Հայաստան* երգերը որոնցմով ելեկտրականացուց ներկաները: Խանդավառութիւնը մեծ էր տեղացիներու մէջ որոնք ֆրանսերէն գիտէին: Ներկայ էին տեղական թերթերու թղթակիցները: Վերջապէս հայուն պատիւը անգամ մըն ալ բարձրացաւ յանձին Պն. Ա. Շահմուրատեանի եւ պէտք է ըսել որ հակառակ հապճեպով ըլլալուն շա՜տ փառաւոր անցաւ նուագահանդէսը:
***Ասպարէզ***, 18 ***Յունիս*** 1915, ***Է. տարի***, ***Թիւ*** 358, ***էջ*** 4

### ԿԻՐԱԿԻ, 30 ՄԱՅԻՍ 1915, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Majestic Theatre-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

*Բամբ որոտան*, մեներգ՝ Շ-Մ.

Georges Bizet: *Les Pêcheurs de perles*, 'Je crois entendre encore', մեներգ՝ Շ-Մ.

Xavier Leroux: *Le Nil*, մեներգ՝ Շ-Մ.

Pablo de Sarasate, Pyotr Tchailovsky, Tor Aulin եւ César Cui (*Orientale*), ջութակ՝ տիկ. Ondricek

Pietro Mascagni: *Cavalleria rusticana*-էն, մեներգ՝ տիկ. Սվազլի (սոփրանօ)

Leopold de Wenzel: *Veux-tu?*, մեներգ՝ տիկ. Սվազլի

Դաշնակի նուագակցութիւն՝ պր. Winter

- «*Նուագահանդէս*», *Կոչնակ*, 22 *Մայիս* 1915, *ԺԵ. տարի*, *Թիւ* 21, *էջ* 429

- 'Shah-Mouradian Greeted by Capacity Audience,' *երաժշտաքննադատ* Philip Hale-*ի անձնական հաւաքածոյէն չբացայայտուած ամերիկեան լրագիր*, 31 *Մայիս* 1915, *Internet Archive*, https://archive.org/։

## SHAH-MOURADIAN GREETED BY CAPACITY AUDIENCE
### Tenor's Singing of Armenian Folk-Songs Delights Hearers

The Majestic Theatre was filled last evening at a concert given by A. Shah-Mouradian, tenor, assisted by Mrs. Sevasly, soprano, and Mrs. Ondricek.

Mr. Shah-Mouradian sang an Armenian march, an aria from Bizet's *Pêcheurs de perles*, Leroux's *Le Nil*, and several Armenian songs. He has a manly, resonant voice of sympathetic quality and fine range. His diction in French was excellent. His singing of Armenian folk-songs delighted the audience.

Mrs. Ondricek played pieces by Vile Toi, Sarasate, Tschaikowski and Tor Aulin. Cui's *Orientale*, an added number, was a feature of her performance.

Mrs. Sevasly sang two Armenian songs, an aria from Mascagni's *Cavalleria rusticana*, and Wenzel's *Veux-tu?* There was hearty applause and the program was lengthened. Mr. Winter was the accompanist.

*Երաժշտաքննադատ* Philip Hale-*ի անձնական հաւաքածոյէն չբացայայտուած ամերիկեան լրագիր*, 31 *Մայիս* 1915, *Internet Archive*, https://archive.org/

### ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 2 ՅՈՒՆԻՍ 1915, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Washington Irving High School Hall-ին մէջ՝ բացառիկ հանդէս ի նպաստ Նիւ Եորքի կարօտ հայ ընտանիքներուն, գործակցութեամբ Նիւ Եորքի երկու հայ եկեղեցիներուն եւ Հայ Գաղթային Ընկերակցութեան։

Յայտագիր.

Ատենախօսութիւն՝ Գեր. Բաբգէն եպիսկոպոս Կիւլէսէրեան եւ Վեր. Կ. Մ. Մանավեան

Bach-Saint-Saëns, Rubinstein եւ Chopin, դաշնակ՝ տիկ. Իսկուհի Չամալեան

*Դու զո՞վ խնդրես, մայր իմ անուշ* եւ *Լոեց, ամպերը*, մեներգ՝ օր. Ռօզա Յակոբեան (սոփրանօ)

Giuseppe Verdi: *Aida*, 'O patria mia', մեներգ՝ օր. Ռօզա Յակոբեան

Herman Bemberg: *Mort de Jeanne d'Arc*, մեներգ՝ օր. Լուսին Բարակեան (մեծծօ-սոփրանօ)

Georges Bizet: *Carmen*, Habanera, մեներգ՝ օր. Լուսին Բարակեան

*Մայր Արաքսի* եւ *Ո՛վ մեծասքանչ դու լեզու*, մեներգ՝ օր. Լուսին Բարակեան

*Բամբ որոտան* եւ *Արօրն ու տատրակ*, մեներգ՝ Շ-Մ.

Herman Bemberg: *Chant hindou*, մեներգ՝ Շ-Մ.

Émile Paladilhe: *Patrie!*, մեներգ՝ Փաօլօ Անանեան (պաս)

Ernest Ball: *He Knows!*, մեներգ՝ Փաօլօ Անանեան

Georges Bizet: *Carmen*, 'Votre toast, je peux vous le rendre', մեներգ՝ Փաօլօ Անանեան

Դաշնակի նուագակցութիւն՝ Viola Palmer:

- ***Կոչնակ***, 22 ***Մայիս*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 21, ***էջ*** 405։
- «***Ազդեր***», ***Կոչնակ***, 22 ***Մայիս*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 21, ***էջ*** 428-429։
- «***Հայ գաղթականութիւնը***», ***Կոչնակ***, 19 ***Յունիս*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 25, ***էջ*** 494-495։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Հազարէ աւելի ունկնդիրներ, Յունիս 2-ին, Սթայվըսընթի Հայ Սքուլի թատերասրահին մէջ, ըմբոշխնեցին նուագահանդէսը, զոր Նիւ Եորքի Հայաստանեայց Առաքելական Ս. Եկեղեցին, Հայ Աւետ. Եկեղեցին եւ Հայ Գաղթային Ընկերակցութիւնը գործակցաբար սարքեր էին՝ քաղաքին մեծաթիւ կարօտ Հայ ընտանիքներու օգնութեան միջոց մը հայթայթելու գերազանցապէս գովելի նպատակովը։

Բացառիկ խմբաւորումը համակրելի ատենախօսներու եւ արուեստագէտներու, որոնց իւրաքանչիւրը առանձնապէս իսկ պիտի կարենար մասնաւոր հրապոյր մը պարգեւել ո՛եւէ հաւաքոյթի, աննախընթաց փայլով մը կը գեղեցկացնէին այս նուագահանդէսը։

Գեր. Տ. Բաբգէն Եպիսկոպոս Կիւլէսէրեան եւ Վեր. Կ. Մ. Մանավեան բանախօսեցին, Տիկին Իսկուհի Մ. Չամալեան, Օր. Րօզա Յակոբեան, Տիար Ա. Շահ-Մուրատեան, Օր. Լուսին Բարակեան, Ուստրէն հրաւիրուած, Մր. Չարլզ Լաքս, Մ. Պէն Լաքս եւ Տիար Փաօլօ Անանեան յաջորդաբար զմայլեցուցին ներկաները դաշնակածութեամբ, երգեցողութեամբ եւ ջութակահարութիւնով։

Տիկին Չամալեան, վարպետի մը վայել ճարտարարուեստ դաշնակածութեամբ, սքանչելի կտորներ նուագեց Պախ-Սէն-Սանսի, Ռուպինշթայնի եւ Շօփէնի գլուխ-գործոցներէն։

Օր. Յակոբեան զգայաթրթիռ, հաճելի ձայնով մը երգեց *Դու զո՞վ խնդրես, մայր իմ անուշը*, *Լոեց, ամպերը* եւ Վէրտիի *Այտա* օփէրայէն «Օ՛, Փաթրիա միա» կտորը։

Օր. Բարակեան առաջին անգամն էր, որ Նիւ Եորքի Հայ երաժշտական բեմին

վրայ կ'երեւնար։ Տաղանդաւոր արուեստագիտուհիին փափկաճաշակ երգեցողութիւնը այս նուագահանդէսին ճշմարիտ վայելքներէն մէկը կազմեց։ Անիկա երգեց Պէմպէրկի *Մոռ տը Ժան տ'Արքը*, եւ Պիզէի *Քարմէն*էն «Հապանեռա»-ն, ինչպէս նաեւ *Մայր Արաքսի*ն ու *Ո՛վ մեծասքանչ դու լեզու*ն։

Տիար Շահ-Մուրատեան իր հզօրագեղ եւ հոգեզմայլ ձայնին քաղցրալուր բազմերանգութիւնը անգամ մըն ալ յայտնագործեց *Բամբ որոտանի*, *Արօրն ու տատրակի* եւ Պէմպէրկի *Շան էնտու*ին մէջ։

Նորութիւն մըն էր նաեւ Տիար Փաօլօ Անանեանի երեւումը։ Տիար Անանեան իբրեւ Նիւ Եորքի Մէթրոփալիթըն Օփէրա Հաուզի երգիչներէն մէկը, իր ուժեղ բամբ ձայնին կը միացնէր թատերական շարժուձեւեր, որոնք յատկանշական աւիւն մը, խանդոտութիւն մը կը հաղորդէին իր երգեցողութեան։ Անիկա երգեց Բալատիլի *Սօնկ ավ Բէթրի*ն, Ըրնէսթ Պօլի *Հու նօզը*, եւ Պիզէի *Քարմէն*էն «Թօրէատօր»-ը։

Միս Վայօլա Փալմըր դաշնակով կ'ընկերանար Օր. Բարակեանի, Տիար Անանեանի եւ Տիար Շահ-Մուրատեանի երգերուն։

Բոլոր արուեստագէտներն ալ իրենց տաղանդը ձրիաբար սպաս դրած էին այս նուագահանդէսին, զայն փառաւոր յաջողութիւն մը ընծայելու համար։
***Կոչնակ***, 19 ***Յունիս*** 1915, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 25, ***էջ*** 494-495

## ԿԻՐԱԿԻ, 20 ՅՈՒՆԻՍ 1915, ՓՐՈՎԻՏԵՆՍ

Փրովիտենսի Սիվիք թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։
Յայտագիր.
*Լի րօ տայ* (՞)
Կոմիտաս վարդապետ, *Հաբրբան*, *Կռունկ* եւ *Հայաստան*
*Արօր տատրակ*
Édouard Lalo: *Le Roi d'Ys*-էն
Hermann Bemberg: *Chant hindou*
Ջութակ՝ Արթաքի Պէրպէրեան
Դաշնակ՝ Վարդան Պէրպէրեան

- ***Արշաւիր Գիսակունի***, «***Տիար Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը***», ***Ասպարէզ***, 16 ***Յուլիս*** 1915, ***Է. տարի***, ***Թիւ*** 362, ***էջ*** 4-5։

# ՏԻԱՐ Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ԱՐՇԱՒԻՐ ԳԻՍԱԿՈՒՆԻ

Փրավիտէնսի հայ գաղութն ալ բաղդը ունեցաւ լսելու հայ տաղանդաւոր

երգիչ Շահ-Մուրատեանը յունիս 20-ին քաղաքի առաջնակարգ թատրոններէն մէկուն Սիվիքին մէջ։

Շահ-Մուրատեան օժտուած ըլլալով բնութեան պարգեւած չքնաղ ձայնով մը, նոյնպէս տիրացած ըլլալով երաժշտական բարձր արուեստի թեքնիքին կրցած է Փարիզի Կրանտ Օփերայէն մինչեւ Փրավիտէնսի բեմը իր ունկնդիրները ապրեցնել ու ապրիլ երգի աշխարհը։

Այն ինչ որ օտար եւ հայ մամուլին մէջ կարդացած ու լսած ենք, իր համբաւի մեծութեան մասին կը բաւէ, նոյն ու աւելի ներբողանքներ հիւսելը կրկնութիւն պիտի ըլլար։

Անիկա յոյժ գեղեցիկ ձայն մը ունի, կէս երանգներուն մէջ, եւ գիտէ երգել ու իր երգով ապրել ու ապրեցնել։

*Լի րօ տայ*ով բացուեցաւ երգահանդէսը, Շահ-Մուրատեան եկաւ մեզ տալ իր դիւթիչ ձայնը որ այնքան գեղեցիկ եւ յատկութիւններով հարուստ ու կատարելապէս կրթուած է, մարդ չէր կարող մէկ վայրկեան իսկ իր լարուած ուշադրութիւնը ուրիշ կողմ սեւեռել...։

*Հապըրպանը* ըլլալով մեծ տաղանդաւոր բանաստեղծ-երգիչի Կոմիտաս Վարդապետի ինքնատիպ սիրերգներէն մին՝ գնահատուեցաւ։

Շահ-Մուրատեան իր քաղցրահնչիւն ձայնով եկաւ աւելի անգնահատելի տպաւորութիւն առթելու ունկնդիրներու։

*Կռունկ*ը հայ դարաւոր դարիպին սպասումին խղճուկ ու ողորմուկ ողբն էր, որ մուշեցի երգիչը իր տատրակի վայիւն ձայնով եկաւ հայաստանցի ունկնդիրներէն արցունքի կաթիլներ քամել։

*Օր, օր*ը եւ *Օրօր տատրակ*ը, առաջինը Մայր Հայաստանի վրէժի ներշնչումն էր իր զաւկին ու դիւցազնութեան երգ-քարոզը իր որդւոյն։ Իսկ վերջինը հայ գիւղացիին հոգիէն փրթած զգայուն դարձաւ երբ Շահ-Մուրատեան երգեց։

Լալօի *Լէ Ռօյ տ'Իզ* եւ Շանթ-ի *Հինտուին*-ը օպերային ամէնէ բարդ կտորներէ էր, զոր միայն հայ երգիչին վերապահուած է երգել։ Վերջինը յուսահատութեան մատնուած հէգ սիրահարի մը տխուր ողբն ու հեկեկանքն էր, որուն Շահ-Մուրատեան կենդանի խօսուն արտայայտութիւն մը տուաւ իր դիւթիչ ու ճկուն ձայնով։

Իսկ *Հայաստան*ը տաղանդաւոր երգիչին հակման երգն էր իր քանսըրին, ո՛հ այն միայն Շահ-Մուրատեան երգելու է, ու պէտք է լսել այն միայն մշեցի երգիչէն։

«Հայաստան երկիր դրախտավայր...»

Ահա երեք բառեր, որոնց մէջ ցայտունօրէն կը խօսի տանջուած հայրենիքի հոգեմաշ սէրն ու անցեալ դիւցազնական փառքը, որ Շահ-Մուրատեանի ձայնով կը դառնայ աւելի զգայուն, տպաւորիչ, հմայիչ ու պատկերուն, որ հայաստանցին անմիջապէս կը փոխադրուի հայրենիքին գիրկը ըմբոշխնելու համար դրախտին առթած վայելքները։

Արդարեւ Տիար Շահ-Մուրատեան ոչ միայն տաղանդաւոր երգիչ մըն է, այլ իր երգին տաղանդին հետ նոյնացուցած է բանաստեղծի բոլոր յատկութիւնները։ Այն երգի ամէն մէկ բառը ամէն մէկ շեշտը իր հոգիին հետ նոյնացուցած է, ու իր ձայնին ելեւէջներու թրթռացումներուն հետ մաս մը կը դնէ իր հոգիէն ու սիրտէն ալ։ Վերջապէս ան տիրացած է բոլոր այն բարձր յատկութիւններուն որոնք գրաւական են համբաւաւոր ըլլալու համար։

Իր տաղանդի բարձրութիւնն ու ձայնին հրաշալիօրէն ճկունութիւնն էր որ հայաստանցին այնքան խանդավառ ու եռանդունօրէն կը ծափահարէր ֆրանսերէն երգերն ալ նման հայկական երգերու։ Նաեւ իր քաղցրահնչիւն ձայնին հետ, անոր առոգանութիւնն ու շեշտն ալ կը խօսէր ունկնդիրին սիրտին ու հոգիին հետ։

Շահ-Մուրատեան իր երգահանդէսին մէջ իրեն օգնելու համար, գնահատելի ընտրութիւն մը ըրած էր Արթաքի եւ Վարդան Պէրպէրեանները որոնց առաջինը ջութակով, երկրորդը դաշնակի լեզուով խօսեցան մեր հոգիի ու սրտին հետ ու այն տպաւորութիւնը թողուցին որ օր մը իրենք ալ հայ արուեստագէտներու շարքին մէջ պիտի ունենան իրենց համար պահուած դիրքն ու համբաւը։

Ուրեմն պատիւ երգիչ Շահ-Մուրատեանին եւ բոլոր այն մեծ տաղանդներուն որոնք իրենց տաղանդի եւ ընդունակութեան բարձրութեամբ ցեղին պատիւն ու փառքը կ'անմահացնեն։

[Կենսագրութիւնը]

*Ասպարէզ*, 16 *Յուլիս* 1915, *Է. տարի*, *Թիւ* 362, *էջ* 4-5

## ԿԻՐԱԿԻ, 12 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1915, ՌԻՍՏՐ

Ռւստրի Horticultural Hall-ին մէջ՝ նուագահանդէս ի նպաստ երկիրի կարօտեալներուն, կազմակերպութեամբ Ռւստրի Որբախնամ Միութեան։ Բանախօս՝ Գեր. Մուշեղ արքեպիսկոպոս։ Մեներգ՝ Շ-Մ.։

- «*Ազդեր*», *Կոչնակ*, 28 *Օգոստոս* 1915, *ԺԵ. տարի*, *Թիւ* 35, *էջ* 752։

## ՇԱԲԱԹ, 16 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1915, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքէն նամակ կը գրէ Փարիզ՝ Արշակ Չօպանեանին։ Գլխաւորապէս իր ցաւն ու դառնութիւնը կ'արտայայտէ Թուրքիոյ մէջ կատարուող բարբարոսութիւններուն հանդէպ։ Կը տեղեկացնէ իր նուագահանդէսներուն մասին, նշելով՝ որ, հակառակ իր ապրուստի դժուարութիւններուն, հասոյթներուն կէսը պիտի տրամադրէ տաճկահայ փախստականներուն եւ կռուողներուն։

- *Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 50-51։

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ

Նիւ Եորք, 16.10.1915

Սիրելիդ իմ Չօպանեան

Ոչնչով կարող եմ արդարացնել լռութիւնս... սակայն գիտցած եմ գործունէութիւնդ ու քո մասին քաղած տեղեկութիւններ այն անձնաւորութիւններէն, որոնց հետ թղթակցութեան մէջ ես։ Անշուշտ, ատիկա բաւական չէ բարեկամի մը, եղբօր մը հանդէպ ունեցած պարտականութեանց տեսակէտով... Հայկական արդի դժնդակ կացութիւնը այսօր գամած է ամէն հայու ուշն ու ուղեղը։ Բնաւ չեմ ցաւիր այս բանով, որ կեանքի, ապրուստի պայմանները դարձած են դժնդակ, գոնէ կ'ապրիմ, կ'ապրեցնեմ ու կը շնչենք... Հայրենիքի ծովացած ցաւերուն հետ մեծ, մեծկակ, բազմանդամ ընտանիք մը կորսուած, խոշտանգուած թրքական բարբարոսութիւններէն զիս կ'անդամալուծէ... Ցաւը համատարած է, մխիթարուինք ապագայի յոյսով... չէ՞ որ «Մահը ընկերով հարսանիք է» ինչպէս կ'ըսէ հայկական առածը։

Ամերիկահայ գործերու մասին ոչինչ ունիմ ըսելու քեզ. դուն ինձմէ աւելի տեղեակ ըլլալու ես՝ ունենալով յարաբերութիւններ այն տեղի աչքառու գործիչներուն հետ։ Սկսած եմ concert-ներուս շրջանը, որոնց հասոյթին կէսը պիտի ղրկեմ շիփ-շիտակ կաթողիկոսին՝ գործածելու տաճկահայ փախստականներուն եւ կռուողներուն։

Չափազանց ուրախ պիտի լինիմ քո մասին տեղեկութիւններ ունենալ քենէ, առայժմ այսքան, տաքուկ համբոյրներով՝ միշտ քո

Շահ-Մուրատեան

*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 50-51

### ԿԻՐԱԿԻ, 24 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1915, ՊՈՍԹՈՆ

Պոսթոնի Franklin Union Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը, որուն հասոյթին կէսը կը յատկացուի տաճկահայ փախստականներուն։ Շ-Մ. կ'երգէ հայկական եւ եւրոպական երգեր։ Կը մասնակցին՝ տիկ. Զապէլ Ա. Փանոսեան (սոփրանօ), տիկ. Քալօվա-Օնդրիշէք (ջութակ) եւ պր. Ճօրճ Էնտըրսըն (դաշնակ)։

- «*Ազդեր*», *Կոչնակ*, 23 *Հոկտեմբեր* 1915, *ԺԵ. տարի*, *Թիւ* 43, *էջ* 956։
- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ*, 6 *Նոյեմբեր* 1915, *ԺԵ. տարի*, *Թիւ* 45, *էջ* 993։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Պոսթոնի Ֆրանքլին Հօլի մէջ Հոկտ. 24-ի իրկունը Պր. Ա. Շահ-Մուրատեան

նուագահանդէս մը տուաւ օգնութեամբ Տիկնայք Զապէլ Փանոսեանի, Քալօվա-Օնդրիւէքի եւ Մր. Ճօրճ Էնտըրսընի: Սրահը արդէն լեցուած էր ժամը 8-ին, հազարի մօտ ունկնդիրներով, եւ մեծ բազմութիւն մը նախասրահին եւ շէնքին դրան առջեւ խռնուած, կը ջանար ներս մտնելու միջոց գտնել: Պր. Շահ-Մուրատեան իրեն յատուկ կորովով երգեց Եւրոպական եւ Հայկական գեղեցիկ երգեր: Միւս երաժիշտներն ալ իրենց բաժինները կատարեցին գոհացուցիչ կերպով:

Պր. Շահ-Մուրատեան տէրն է այն եզական կարողութեան, որուն բերնին մէջ Հայկական պարզ երաժշտութիւնը կը բարձրանայ, Եւրոպականին հաւասար կը լինի:

Պր. Շահ-Մուրատեան շնորհաւորութեան արժանի է, որ իր այս նուագահանդէսներով կը ջանայ գաղթականութեան երաժշտական ճաշակը բարձրացնել:
*Կոչնակ*, 6 *Նոյեմբեր* 1915, *ԺԵ. տարի*, *Թիւ* 45, *էջ* 993

### ԿԻՐԱԿԻ, 7 ՆՈՅԵՄԲԵՐ 1915, ՈՒՍՏՐ

Ուստրի Horticultural Hall-ին մէջ՝ նուագահանդէս ի նպաստ գաղթականներուն, կազմակերպութեամբ Ուստրի Ազգանուէր Հայուհեաց Միութեան: Կը մեներգեն՝ Շ-Մ. եւ տիկ. Զապէլ Ա. Փանոսեան (սոփրանօ):

- «*Ազդեր*», *Կոչնակ*, 9 *Հոկտեմբեր* 1915, *ԺԵ. տարի*, *Թիւ* 41, *էջ* 903:

### ՀՈԿՏԵՄԲԵՐ ԿԱՄ ՆՈՅԵՄԲԵՐ 1915, ԹՐՈՅ (ՏԻԹՐՈՅԹ)

Շ-Մ.ի երգահանդէսը:

- *Նամակ* (*Ֆրէզնօ*, 11 *Դեկտեմբեր* 1915) *Արշակ Չօպանեանին*: *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող*՝ *Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր*՝ *Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 51:

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ
**(հատուած)**

Ֆրէզնօ, 11.12.1915

Սիրելիդ իմ Չօպանեան

Ասկէ գրեթէ ամիս ու կէս առաջ, կինս ու ես նամակ մը գրեցինք քեզ Troy-էն, ուր գտնուած էի երգելու. չգիտեմ ստացա՞ր, թէ ոչ:

Համբոյրներով՝

քու Ա. Շահ-Մուրատեան

*Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 51

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 24 ՆՈՅԵՄԲԵՐ 1915, ՖՐԷԶՆՕ**

Նիւ Եորքէն կը հասնի Ֆրէզնօ նուազահանդէսներու համար։

- *Ասպարէզ*, 26 *Նոյեմբեր* 1915, *Ը. տարի*, *Թիւ* 381, *էջ* 1։
- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ*, 27 *Նոյեմբեր* 1915, *ԺԵ. տարի*, *Թիւ* 48, *էջ* 1071։
- «*Ա. Շահմուրատեան ի Ֆրէզնօ*», *Նոր կեանք*, 30 *Նոյեմբեր* 1915, *Ա. տարի*, *Թիւ* 40։
- «*Արուեստագէտ Ա. Շահմուրատեանի այցելութիւնը*», *Ասպարէզ*, 3 *Դեկտեմբեր* 1915, *Ը. տարի*, *Թիւ* 382, *էջ* 5։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Պ. Ն. Շահ-Մուրատեան, որ անցեալ շաբթու մէջ Նիւ Եորքէն մեկնեցաւ Ֆրէզնօ, Քալիֆօրնիա, կը խնդրէ իր հետ թղթակցիլ փափաքողներէն, որ հաճին իրեն գրել *Ասպարէզ*ի կամ *Նոր կեանք*ի խմբագրութեանց հասցէներուն միջոցաւ։
*Կոչնակ*, 27 *Նոյեմբեր* 1915, *ԺԵ. տարի*, *Թիւ* 48, *էջ* 1071

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ Ի ՖՐԷԶՆՕ

Արմենակ Շահ-Մուրատեան, հանրածանօթ հայ թէնօրը, մեզի հիւր է։ Անոր մասին, անոր քաշած նեղութեանց ու գտած յաջողութեանց մասին, անոր անձին եւ ձայնական անսպառ գանձին նկատմամբ շատ կարդացած ու լսած էինք 1910-էն ի վեր, երբ նա Փարիզի Քօնսէրվաթուառէն դուրս եկաւ մրցանակներու եւ մեծ յոյսերու հետ ընկերացած. բայց զայն տեսնելու բաղդը կը մնար անցեալ Չորեքշաբթի օրուան։ Նա եկաւ ու տեսանք զինքը. Շահ-Մուրատենց դարբին Սրգոյի տղուն մէջ ողջագուրեցինք մշակուած եւ նրբացած Վարպետը Գեղարուեստին, եւ հիմա կ'ըսպասենք անհամբեր, Դեկտեմբեր 15-ի երեկոյին, լսել անոր ձայնը, զմայլիլ անոր տաղանդին առջեւ, երկրպագել ու վերանալ անոր խազերու թրթռումներու խորանին առջեւ։ Սիրեցինք մեր Շահ-Մուրատեանը, բայց կ'ըսպասենք պաշտել իր գեղարուեստը որ թէեւ հայրենիք մը չունի, բայց կարծես հայացած ըլլալ կը թուի հայ երգչին մէջ՝ մեր ազգային զգացումները արթնցնելու ու հպարտութիւնը փայփայելու մէջ։

Շահ-Մուրատեան համակրելի երիտասարդ մըն է, Տարօնցիի տիպար մը։ Իր ամուր կազմին, յաղթ հասակին ու զօրաւոր դիմագծին մէջ մարմնացած գտանք

Մշեցիին պարզութիւնը, անկեղծութիւնը ու թոյլատու հոգին: Իր գտած յաջողու-թիւնները, արեւմտեան քաղաքակրթութեան նրբութիւնը, զարգացումի կնիքը ոչինչ կրցած են գողնալ անկէ իր ազգային զգացումներէն: Շահ-Մուրատեան Հայ մըն է եւ Հայ մնացած է բառին ընդարձակ նշանակութեամբ: Անոր առջեւ բացուած յաջողութեան ընդարձակ ասպարէզը, անունը, պատիւն ու հարստու-թիւնը կրցած չեն հրապուրել զայն՝ դուրս ելնելու այն սրբագործուած գծէն, որուն մէջ Հայութիւնը պահպանուած է՝ անյիշատակ դարերէ ի վեր, այլ ընդհակա-ռակը, անոնք Հայութիւնը ազնուացուցած, քաղցրացուցած եւ վսեմացուցած են իր գեղարուեստին մէջ: Նա սահմանուած է պատիւ բերել իր ցեղին ու անոր անունը իր անուան հետ աշխարհիս բոլոր անկիւնները հասցնել: Մենք իբրեւ Հայ շատ բան կը պարտինք անոր, եւ ինք իր ձայնը, իր անձը՝ բուն Շահ-Մուրատ-եանը իր ազգին կը պարտի: Մերն է անիկա. կը սիրենք զայն ու պիտի սիրենք միշտ, կը սիրենք իր գեղարուեստը իր անձին մէջ, կը սիրենք իր անձը իր գեղարուեստին մէջ:

Շահ-Մուրատեան երբ Փարիզի Քոնսերվաթուառէն ելաւ հինգ տարի առաջ ու Օփերային մէջ երեւցաւ առաջին անգամ Ֆաուսթի գլխաւոր մէկ դերով, իր անունն ու ապագան շինած էր արդէն: Փարիզեան մեծ թերթեր, որոնք շատ ժլատ են գովեստներ շռայլելու սկսնակներու համար, մեր Շահ-Մուրատեանին առջեւ լայն բացին իրենց սիւնակները...

Ամէն Հայ Դեկտ. 15-ի երեկոյին գալ լսելու է այս Հայ արուեստագէտը, որուն մէջ Արեւելքն ու Արեւմուտքը, Տարօնն ու Ֆրանսան, Մուշն ու Փարիզը ներդաշ-նակուած պիտի գտնենք:

Անոր Հայերէն երգերը վստահ ենք որ պիտի գան արթնցնել այս գաղութը իր նիւթապաշտ երազներէն սիրելու համար երգը, գեղարուեստը, մանաւանդ Հայ երգը, Հայ գեղարուեստը, որոնք պաշտօն ունին ազնուացնել մարդս ու բարձրա-ցընել զայն հասարակ կեանքի գռեհիկ մթնոլորտէն վեր:

Եկէք Շահ-Մուրատեանը լսելու:

*Նոր կեանք*, 30 *Նոյեմբեր* 1915, *Ա. տարի*, *Թիւ* 40

## ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏ Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ

Նախորդ չորեքշաբթի առաւօտեան ճեպընթացով Ֆրէզնօ ժամանեց տաղան-դաւոր երգիչ Տիար Արմենակ Շահ-Մուրատեան: Սանթա Ֆէի կայարանը փութացած էին բազմաթիւ հայրենակիցներ ողջագուրելու համար արուեստա-գէտը:

Այս խանդավառ ու սիրալիր ընդունելութիւնը զոր համբաւաւոր երգիչին վաղեմի ու նորստաց բարեկամները ցուցուցին՝ լաւ կը համեմատէր անոր

դիրքին ու արժանիքին։ Հոս ծանօթներու ա՛յնպիսի ընդարձակ շրջանակ մը ունի Պ. Շահմուրատեան որ դժուար թէ կրնայ քանի մը շաբաթուայ այցելութեամբ ազատիլ Քալիֆորնիոյ հիւրասիրութենէն։
*Ասպարէզ*, 3 *Դեկտեմբեր* 1915, *Ը. տարի*, *Թիւ* 382, *էջ* 5

**ՇԱԲԱԹ, 11 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1915, ՖՐԷԶՆՕ**

Ֆրէզնոյէն նամակ կը գրէ Փարիզ՝ Արշակ Չօպանեանին։ Կը տեղեկացնէ՝ որ էրզրումցի Յաբէթ Նշկեան, հետաքրքրուած ըլլալով Չօպանեանի գործունէութեամբ, 100 ֆրանքի չէք մը ուղարկած է իրեն Ծ-Մ.ի միջոցով։ Ծ-Մ. իր օգնութիւնը կ՚առաջարկէ *Անահիտ*ի բաժանորդներուն չվաճարած բաժանորդագիրերը գանձելու համար։

- *Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 51-52։

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ

Ֆրէզնօ, 11.12.1915

Սիրելիդ իմ Չօպանեան

Ասկէ գրեթէ ամիս ու կէս առաջ, կինս ու ես նամակ մը գրեցինք քեզ Troy-էն, ուր գտնուած էի երգելու. չգիտեմ ստացա՞ր, թէ ոչ։ 15 օրէ ի վեր հոս եմ, ուր մտադիր եմ քանի մը concert-ներ տալ մի քանի քաղաքներու մէջ։ Քանի մը օր առաջ բարեկամներէս մէկը՝ էրզրումցի պ. Յաբէթ Նշկեան, շատ հետաքրքրուեցաւ վիճակովդ, գուրգուրանքով ու մասնաւոր հոգածութեամբ, իրեն տուի գիտցած տեղեկութիւններս, օր մը ետք ինձ յանձնեց cheque մը 100 ֆրանքի ու խնդրեց ինձ զայն քեզ ղրկել։ Անշուշտ, եթէ հարուստ մը լինէր, աւելին պիտի ղրկէր, ատոր տարակոյս չունիմ, զի չափազանց ազնիւ ու հայրենասէր անձնաւորութիւն մ՚է ու գիտակից ինտելիկենտ մը, ինչպէս պիտի ըսէր Ռուսահայ մը։

Ես շնորհակալութիւն յայտնեցի իրեն քո կողմէն, թէեւ, սակայն, եթէ այս նամակս ու cheque-ն ստանալու լինի սիրելիութիւնդ, լաւ կ՚ըլլար, որ ստացագիր մը ղրկէիր ինձ՝ իրեն ցոյց տալու, որ դրամն ղրկած եմ քեզ, ուղղամտութիւնս իրեն ցոյց տալու նպատակով, ինչպէս ըսի։

Այս պարագան միտս ձգեց, որ Ամերիկայում, ինչպէս լսած եմ քեզմէ, շատ մը հայեր *Անահիտ*ի բաժանորդներէն, տակաւին քեզ պարտ են իրենց տասնեակ տարիներու բաժանորդագիրները. կարո՞ղ ես ու յարմար կը գտնե՞ս անոնց մէկ

ցուցակը նամակով մը ինձ ղրկէ, որ զանձեմ իրենցմէ զանոնք։ Ուրախ պիտի լինիմ այդչափ ծառայութիւն մը քեզ ընել։

Կը յուսամ, թէ այս անգամ վիճակիդ մասին կը գրես. կինս եւս շատ կը հետաքրքրուի անով ինձ հետ։ Հա՜, հա՜, հա՜. Evelyn-ս էլ շուտով ի վիճակի պիտի լինի քեզ գրելու։

Երեքս միասին քեզ կը ղրկենք մեր զգացումներէն լաւագոյնը եւ մաղթանքները շատ ու շատ՝ Նոր տարուայ առթիւ. իցիւ թէ նորութիւն մը բերէր մեր տառապեալ հայրենիքին...

Համբոյրներով՝

քու Ա. Շահ-Մուրատեան

Յ. Գ. Պատասխանդ ուղղէ ինձ՝ Նիւ Եորք, 614 135th str., A. Chah-Mouradian

*Արմենակ Շահմուրատեան*, կազմող՝ *Խաչիկ Սաֆարեան*, խմբագիր՝ *Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 51-52

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 15 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1915, ՖՐԷԶՆՕ**

Ֆրէզնոյի Fresno Theater-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Կոմիտաս վարդապետ, *Բամբ որոտան* եւ *Հայաստան*

Փրօֆֆ-Գալֆայեան, *Օրօր*

Reynaldo Hahn: *Chanson grise*

Այլ ֆրանսերէն երգեր

Իտալերէն երգ մը

Դաշնակի նուագակցութիւն՝ Թէօ (Թովմաս) Ըրվինկ

- «*Նուագահանդէս Ա. Շահ-Մուրատեանի*», *Ասպարէզ*, 3 *Դեկտեմբեր* 1915, *Ը. տարի*, *Թիւ* 382, *էջ* 1։

- «*Շահ-Մուրատեան նուագահանդէս*», *Նոր կեանք*, 7 *Դեկտեմբեր* 1915, *Ա. տարի*, *Թիւ* 41։

- «*Նուագահանդէսը*», *Նոր կեանք*, 21 *Դեկտեմբեր* 1915, *Ա. տարի*, *Թիւ* 43։

- *Վեստեան-Բուրվառ*, «*Երգէ՜, երգէ՜, սիրտի՛ն երգէ...*» [*Բանաստեղծութիւն*], *Ասպարէզ*, 24 *Դեկտեմբեր* 1915, *Ը. տարի*, *Թիւ* 385, *էջ* 2։

- *Մէլօման*, «*Շահ-Մուրատեան նուագահանդէսը*», *Ասպարէզ*, 24 *Դեկտեմբեր* 1915, *Ը. տարի*, *Թիւ* 385, *էջ* 6։

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

Շահ-Մուրատեանը չի լսել, երբ մանաւանդ ան հոս մեր մէջն է արդէն, կը

նշանակէ ոչ միայն չի գնահատել գեղարուեստը այլ եւ չի գնահատել զայն Հայ հռչակաւոր երգիչի մը մէջ որուն ձայնի գեղգեղումները գնահատուած են գեղարուեստի աշխարհի մէջ ամէն կողմէ։

Չարերը երգ չունին արտայայտութիւնը սխալ կերպիւ բացատրուած է։ Չարերը անոնք են, որ թէեւ երգ ունին, բայց զայն գնահատել չեն գիտեր, անկէ չեն ազդուիր ու ազնուանար։ Մենք՝ Հայերս, երգ ունինք եւ կը հաւատանք, թէ կը գնահատենք զայն ու կրնանք ազնուանալ անով։ Մեր երգերը, սակայն, մենք շատ քիչ անգամ, եթէ երբեք, լսած ենք արուեստագէտի մը բերնէն եւ բնականաբար դեռ չենք կրցած անոր գեղեցկութիւնը ըմբռնել, անոր վսեմութեան մէջ արբենալ։

Շահ-Մուրատեան այն Հայ երգիչն է, որ կրցած է հայ երգը իր ճշմարիտ վսեմութեան մէջ արտայայտել՝ թափանցելու ունկնդրի սրտին ու անոր հոգւոյ ազնուութեան։ Հայերէն լեզուն աղօթքի լեզուն է, հայերէն երգը բարութեան երգն է։ Բարիները միայն Հայերէն երգ ունին։

Ամեն Հայ գալ մտիկ ընելու է Շահ-Մուրատեանը, իր Հայերէն երգերուն մէջ մանաւանդ։ Այս առիթը ուրիշ անգամ չենք կրնար ձեռք ձգել աշխարհի այս հեռաւոր անկիւնին մէջ։ Անոր անոյշ ձայնին մէջէն պիտի լսենք Մայր Հայաստանի այն ձայնը, որ ցարդ խռպոտ կոկորդներէ խօսած էր մեզի։ Հայերէն երգը գիտնալու առիթ չենք ունեցած տակաւին։ Եկէ՛ք, որ ամէնքս վայելենք զայն պահ մը...

«*Շահ-Մուրատեան նուագահանդէս*», *Նոր կեանք*, 7 *Դեկտեմբեր* 1915, *Ա. տարի*, *Թիւ* 41

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Թատրոնը լեցուն էր։ Մօտերէն եւ հեռուէն Հայք եկեր էին անցեալ Չորեքշաբթի գիշեր Հայ թենորը մտիկ ընելու հոն։ Հայ գեղարուեստը եկած էր, յանձին Շահ-Մուրատեանի, Ֆրէզնօի Հայութիւնը ցնցելու, ոգեւորելու եւ գօտեպնդելու համար։

Յաջող եղաւ նուագահանդէսը՝ բառին լեցուն նշանակութեամբ։ Անոնք որ եկած էին լոկ Հայ երգիչ մը քաջալերած ըլլալու պարզ ու բարի նպատակաւ, խոստովանեցան թէ վայելած էին բան մը զոր դրամով կարելի չէր գնել, զի իրապէս գին չունէր այն. անգին էր անիկա՝ մանաւանդ իր Հայացած տարազին մէջ։ Շահ-Մուրատեան դիւթեց մեզ այդ իրիկուն, յուզեց ու լացուց, լացուց եւ զմայլեցուց։ Անոր ձայնին մէջ Իտալական բոցավառութիւնը կար, Սպանիականին քնքշութիւնը, Ֆրանսականին խրոխտութիւնը եւ Հայկականին դեռ անբացատրելի քաղցրութիւնը որ կարծես թէ բոլորի մէկ միութիւնը ներդաշնակօրէն կը ներկայացնէր։ Շահ-Մուրատեանի *Հայաստան*ը իւր գլուխ գործոցներէն մին եղած ըլլալ կը թուէր։ Անով էր որ երգիչը ժողովրդեան սրտի անդունդները փոթորկեց, լացուց մեզ ու պահ մը Դրախտավայր Հայաստանի մը ստուերովը

օրօրեց: Երբ վերջի վարագոյրը իջաւ *Հայաստան*ի վերջի յուզիչ նօթերուն վրայ ու լոյսերը ողողեցին թատերասրահը՝ ժողովուրդը արձանացած գտանք պահ մը իր աթոռին վրայ: Վերացած, մագնիսացած էր այն: Անոր դէմքը նոր արտայայտութիւն մը ունէր: Շատերուն թարթիչներուն մէջէն արտասուքի կաթիլները կը փայլէին արդէն: *Հայաստան*ը .... լացուցած էր մեզ: Անոր վերջի խազերը դեռ կը հնչեն մեր ականջներուն ու պիտի հնչեն երկար ժամանակ:

Դաշնակահար Փրօֆէսօրը, Թէօ Ըրվին, որ Սան Ուօզին Վէլիի մէջ ամենէն նշանաւոր դաշնակահար վարպետն է, վկայեց, անվերապահ կերպիւ, թէ Շահ-Մուրատեան ամենայաջող երգիչն էր որուն լսած եւ ընկերացած ըլլար ցարդ թատերաբեմին վրայ: Նոյն վկայութիւնը տուին զարմացմամբ այն քանի մը Ամերիկացիները, որոնք հաճած էին պատուել Հայ արուեստագէտին նուագահանդէսը:

Յայտագիրը կը բաղկանար երկու մասերէ: Առաջին մասին մէջ երգեց Շահ-Մուրատեան *Բամբ որոտան*ը եւ Իտալական կտոր մը, իսկ երկրորդ մասին մէջ էին *Օրօր*ն ու *Հայաստան*ը:

Ըսել թէ ժողովուրդը ծափահարեց զայն՝ սովորական բացատրութիւն մը կրկնել կը նշանակէ: Թատերասրահը թնդաց իր հիմերէն, երգիչը կրկին եւ կրկին անգամ բեմ գալ ստիպուեցաւ եւ *Օրօր*էն վերջ Մշեցիք փառաւոր ծաղկեփունջ մը ներկայացուցին անոր զոր գնահատեց մեծապէս:

Սակայն դեռ շատ Հայեր բացակայ կը մնային. շատեր զրկուած էին երգիչը լսելու պատեհութենէն: Հետեւեալ օրն իսկ ամէն կողմերէ պահանջ եղաւ Երգիչը լսելու նոր առիթի մը եւս: Գոհացում տալու համար անոնց, որոշուեցաւ երկրորդ նուագահանդէս մը եւս տալ: Ինչպէս որ կը տեսնուի այսօրուան յայտարարութենէն, Շահ-Մուրատեան այս անգամ պիտի երգէ քաղաքիս մեծագոյն թատրոնին մէջ, ու եկամուտին կէսը պիտի յատկացնէ Կովկասահայ կարօտելոց: Այս երկրորդ նուագահանդէսը տեղի պիտի ունենայ Յունվար 2-ին, Կիրակի օր, կէսօրէ յետոյ: Տոմսերը ի վաճառ հանուած են արդէն եւ վստահ ենք որ շատեր պիտի օգտուին այս առիթէն եւ միեւնոյն ատեն սատարած պիտի ըլլան Հայ կարօտելոց:

***Նոր կեանք***, 21 ***Դեկտեմբեր*** 1915, ***Ա. տարի***, ***Թիւ*** 43

## ԵՐԳԷ՛, ԵՐԳԷ՛, ՍԻՐՏԻ՛Ն ԵՐԳԷ...

ՎԵՍՏԵԱՆ-ԲՈՒՐՎԱՌ

Նուէր՝ սիրտի երգիչ Ա. Շահ-Մուրատեանին

Երգէ՛, երգէ՛, սիրտին երգէ քաղցրահունչ,

Սիրտի երգիչ, գեղեցկութի՛ւն հանճարին,
Լլկումներէն հայ հոգիներ անտէրունջ՝
Կ'ասպետանան, վրէժի հուրով կը վառին...

Երգէ՛, ո՛վ Յոյզ, թարմութիւնը հոգիին,
Աստուածներն են որ կ'արտասուեն ծնկամած,
Թրթռումներէն անոյշ ձայնիդ հեշտագին՝
Կ'ուզեն ըմպել Յոյզին նեկտարը փրփրած...

Երգէ՛, երգէ՛, սիրտի ասպետ, սի՛րտ երգէ,
Վանկերուդ մէջ ասպետօրէն, տիրական՝
Էութիւններ ձուլուած սէրէ ու կիրքէ՝
Կը զալարին, կը մորմոքին, կը հեւան...

Երգէ՛ երգիչ, սիրտի երգիչ, սիրտ երգէ,
Երգիդ վանկեր սիրտիս վրայ կը թառին,
Ու թմբիր մը հիւսուած սէրէ, զգանքէ՝
Զիս կը տանի նոր-աշխարհնե՛ր թմրագին...
Երգէ՛ երգիչ, սիրտի երգիչ, սիրտ երգէ...:
Ֆրէզնօ
*Ասպարէզ*, 24 *Դեկտեմբեր* 1915, *Ը. տարի*, *Թիւ* 385, *էջ* 2

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ՄԷԼՕՄԱՆ

Ֆրէզնոյի հասարակութիւնը վերջապէս բախտն ունեցաւ ամսոյս 15-ին լսելու հայազգի մեծանուն երգիչ Շահ-Մուրատեանը:

Շահ-Մուրատեանի անուան շուրջ այնչափ գրուած է հայ ու եւրոպական մամուլին մէջ, իր ձայնի ու արուեստի տիրապետութեան այնչափ բազմաթիւ դրուատումներ եղած են, որ եթէ այդ բոլորը ի մի հաւաքուէր՝ կ'ունենայինք հայ արուեստագէտի մը անուան պատիւ բերող հոյակապ գրականութիւն մը, որ նոյնքան պատուաւոր է զինքը արտադրող ժողովուրդին համար: Շահ-Մուրատեան մէկն է հայութեան այն դէմքերէն՝ որոնք օտար եւ յաճախ մեզ արհամարհող ազգերուն առջեւ կը ներկայացնեն հայ ցեղը ոչ իբրեւ լալկան ու յաւիտենապէս ստրուկ, անարգուած ու մուրացիկ ժողովուրդ մը, այլ իբրեւ հայ արուեստի, հայ տաղանդի ու ցեղային բարձր յատութիւններու ցայտուն օժիտ մը: Շահ-

Մուրատեանի անունը սերտօրէն կապուած է հայ անուան հետ։ Մենք հոս ունինք դէմքեր, որոնք իրենց որոշ ձիրքերուն կամ պատահականութեան շնորհիւ կրցած են անուն ու փառք վաստկիլ ամերիկեան հասարակութեան մէջ եւ բարձր, պատուաւոր դիրքերու տիրանալ։ Ունինք գեղարուեստի կամ գիտութեան տարբեր ճիւղերուն մէջ հռչակ հանող անհատներ, որոնք, սակայն, խզած են ամէն կապ հայ ծնունդի ու անուան հետ եւ ամօթ կ՚զգան իրենց ծագումը օտարներուն յայտնելու։ Շահ-Մուրատեան, սակայն, այն համակրելի շարքին կը պատկանի, որ գեղարուեստի աշխարհաքաղաքացիութեան մէջ մուտք գործած է իբրեւ ցեղի մը, ազգի մը ներկայացուցիչը, իր ուրոյն դիմագիծով, խառնուածքով ու բարձր արժանիքով՝ շեշտելու համար գոյութիւնը մեր ժողովուրդի ծոցին մէջ այնպիսի ընդունակութիւններու, զորս ամենէն քաղաքակիրթ ժողովուրդներն անգամ իրենց ազգային փառքը պիտի համարէին։

Ֆրէզնոյի հայութիւնը հեռաւոր արձագանգը միայն լսած ըլլալով հայ երգչին մասին եղած հիացման՝ իր սրտագին ընդունելութեամբ կրցաւ հաստատել որ գիտէ գնահատել մեր ցեղի լաւագոյն ներկայացուցիչ մը։

Մօտ 800-է բաղկացած հասարակութիւն մը, որուն մէջ հարիւրի չափ գեղարուեստասէր ամերիկացիներ կային՝ արտասովոր ոգեւորութեամբ ծափահարեց երգիչը իր առաջին երգէն՝ *Բամբ որոտան*էն ետք, զոր ան երգեց հազուադէպ ուժգնութեամբ եւ նրբութեամբ։ Կոմիտաս վարդապետի կողմէն ձայնագրուած այդ երգը պահած է իր հին, վենետիկեան բնոյթը, մասամբ միայն բարեփոխուած ըլլալով եւրոպական ռազմական մարշերուն յարմար հնչիւններով։ Շահ-Մուրատեան, սակայն, անպայման հետեւող մը չըլլալով՝ իր երգին մէջ կը դնէ ինքնայատուկ եղանակ մը՝ որ անօրինակ գեղեցիկ է եւ ազդու։ Հայկական երգերէն Չօպանեանի *Օրօր*ը, Գալֆայեանի ձայնագրութեամբ, երգեց նոյն վարպետութեամբ, զգայուն, թախծալի շեշտերով, եւ հարիւրաւոր ներկաները ստիպեց արտասուել։ Կոմիտաս վարդապետի *Հայաստան*ը նոյնչափ մելամաղձոտ ու հաճելի՝ ժողովուրդը գնահատեց անվերջ ծափահարութիւններով։

Օտար երգերէն Շահ-Մուրատեանի ամենէն յաջող հատուածն էր անտարակոյս Րէյնալտօ Հանի *Շանսօն կրիզ*էն, Փօլ Վէրլէնի բառերով հոյակապ սիրերգ մը։ Ֆրանսերէն դասական երաժշտութեան ձեւով յօրինուած այդ հոյակապ գործերէն մէկը՝ զմայլելի քաղցրութեամբ երգեց Շահ-Մուրատեան, եւ ամբողջ հասարակութիւնը, դիւթուածի պէս, շունչը կտրած ունկնդիր եղաւ անոր։ Ոգեւորութեան ու հիացմունքին չափ չկար։

Համակիր երիտասարդներու խումբի մը կողմէ Տիկ. Սիւզի Գապատայեանի ձեռամբ Շահ-Մուրատեանի մատուցուեցաւ շքեղ ծաղկեփունջ մը։

Շահ-Մուրատեանի յաջողութիւնը այնչափ մեծ էր եւ աչքառու, որ բազմաթիւ ամերիկացիներ հաճոյքով կը դիտէին, թէ առաջին անգամն էր, որ Ֆրէզնոյի մէջ լսուած էր, բառին լայն ըմբռնումով հմուտ եւ վարպետ երգիչ մը։ Տպաւորութիւնը

ընդհանուր հասարակութեան վրայ շատ մեծ էր եւ բոլորը կը ցաւէին, որ այլեւս պատեհութիւն չպիտի ունենային երկրորդ անգամ լսելու զինք։

Բրոֆ. Թովմաս Բրվին, յայտնի դաշնակահարը, որ այդ իրիկուն կ'ընկերակցէր մեր երգչին՝ հիացմունքով խոստովանեցաւ, որ առաջին անգամ իր կեանքին մէջ կը լսէր այնչափ հմուտ արուեստագէտ մը։

Մեր հայկական հանդէս ներկայացումները սովորաբար թերի են կարգապահութեան տեսակէտէն։ Այդ իրիկուն աննախընթաց կարգապահութեամբ անցան բոլոր երգերը. ժողովուրդը շնչատ հետաքրքրութեամբ կը հետեւէր անզուգական երգիչին։

Ուրախ ենք, սակայն, որ Շահ-Մուրատեան Արեւելք դառնալու իր նպատակը քանի մը շաբթուան համար յետաձգելով՝ որոշած է երկրորդ եւ վերջին անգամ երգել Ֆրէզնոյի մէջ, յառաջիկայ յունվար 2-ին։ Այս անգամ արդիւնքին կէսը ինք հաճած է նուիրելու Կովկաս ապաստանած փախստականներուն, Կաթողիկոսի միջոցաւ։

Լիայոյս ենք, որ զինքը մէկ անգամ արդէն լսող բոլոր հայրենակիցները պիտի ներկայ ըլլան նաեւ յունվար 2-ին երկրորդ անգամ եւս լսելու զինք, ինչպէս նաեւ անոնք, որ ինչ ինչ պատճառներով եկած չէին առաջին անգամ։

Շահ-Մուրատեանը լսել կը նշանակէ գեղարուեստական անմոռանալի հաճոյք մը վայելել, վայելք մը որ մեր չոր ու փայտացած գոյութեան մէջ է՛ն գերագոյն, էն վսեմ վայրկեանը պիտի կազմէ։

Հետեւեալ օրուան թերթերը – *Մօրնինկ Րիփըպլիքըն* եւ *Հէրըլտ* – բարձր գնահատականներով խօսեցան տաղանդաւոր հայ երգիչին դիւթիչ ձայնին եւ նիւթերու ընտրութեան մասին։ Աւելորդ չենք համարիր անոնցմէ մէջբերումներ ընել։

*Ֆրէզնօ Մօրնինկ Րիփըպլիքըն.* - «Յայտագրին վրայ նշանակուած էին 8 կտորներ որոնց իւրաքանչիւրը երաժշտական գոհար մըն էր։ Պ. Շահ-Մուրատեան անթերի ձայն մը ունէր։ Իր առաջին երգը – հայկական ռազմերգ մը – ծայր աստիճան խանդավառիչ էր։ *Օրօր*ը խիստ յուզիչ էր։ Քանի մը հատ ֆրանսերէն երգեր երգեց։ Իր վերջին երգը *Հայաստան, երկիր դրախտավայր*ը, այնքան հիանալի կերպով երգեց որ ամբողջ ունկնդիրները խելայեղօրէն զինքը ծափահարեցին։»

*Ֆրէզնօ Իվնինկ Հէրըլտ.* - «Երէկ իրիկուն Ֆրէզնօ թատրոնին նուագահանդէսին գնահատող բազմութիւն մը եկած էր, ունկնդրելու Ա. Շահ-Մուրատեանի, հռչակաւոր քնարերգակ-թէնօրին։

«Շահ-Մուրատեան մեներգեց հայկական քայլերգը (*Բա՛մ փորոտան*)։ Հանդիսականները կրկին ու կրկին ծափահարեցին զինք։ Անոր ձայնը յորդահոս՝ ունի այնպիսի առանձնայատուկ քաղցրութիւն մը զոր չէ կարելի գերազանցել։ Անոր ձայնը անպարագիր է եւ ան գիտէ արագօրէն իր ձայնը եղանակաւորել թէ՛ նուրբ եւ թէ առնական արտաբերումներու ժամանակ։

«Շահ-Մուրատեանի նուագահանդէսի յայտագիրը կը բաղկանար Ֆրէզնոյի մէջ նմանը քիչ ունկնդրուած երաժշտական հատընտիր հաւաքածոյէ մը։»
*Ասպարէզ*, 24 *Դեկտեմբեր* 1915, *Ը. տարի*, *Թիւ* 385, *էջ* 6

**ԴԵԿՏԵՄԲԵՐ (ՎԵՐՋԻՆ ՇԱԲԱԹ) 1915, ԼՈՍ ԱՆՃԵԼՈՍ**

Կարճ ժամանակով կը մեկնի Լոս Անճելոս, այնտեղ կայանալիք երգահանդէսին համար կարգադրութիւններ ընելու։

- «*Նուագահանդէսը*», *Նոր կեանք*, 21 *Դեկտեմբեր* 1915, *Ա. տարի*, *Թիւ* 43։

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Ա. Շահ-Մուրատեան երկու օրէն Լօս Անճըլըս կը մեկնի՝ հոն նուագահանդէս մը կազմակերպելու նպատակաւ նախնական կարգադրութիւններ ընելու եւ ժամանակին Ֆրէզնօ դառնալու համար։
*Նոր կեանք*, 21 *Դեկտեմբեր* 1915, *Ա. տարի*, *Թիւ* 43

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 29 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1915, ԼՈՍ ԱՆՃԵԼՈՍ – ՖՐԷԶՆՕ**

Լոս Անճելոսէն կը ժամանէ Ֆրէզնօ։

- «*Տեղական*», *Ասպարէզ*, 31 *Դեկտեմբեր* 1915, *Ը. տարի*, *Թիւ* 386, *էջ* 6։

**ԿԻՐԱԿԻ, 2 ՅՈՒՆՈՒԱՐ 1916, ՖՐԷԶՆՕ**

White Theater-ին մէջ՝ Շ-Մ.ի երկրորդ երգահանդէսը Ֆրէզնոյի մէջ։ Հասոյթին կէսը կը տրամադրուի Թուրքիոյ աղէտեալներուն։

Յայտագիր.

Camille Saint-Saëns: *La Cloche*, մեներգ՝ Շ-Մ.

Hermann Bemberg: *Chant hindou*, մեներգ՝ Շ-Մ., ջութակ՝ տիկ. Հէրիս

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան* եւ *Հաբրբան*, մեներգ՝ Շ-Մ.

Մեներգ՝ օր. Մարգարեան

Դաշնակ՝ օր. Հընթ

Դաշնակի նուագակցութիւն՝ Թէօ Ըրվին

- «*Նուագահանդէսը*», *Նոր կեանք*, 21 *Դեկտեմբեր* 1915, *Ա. տարի*, *Թիւ* 43։
- *Ասպարէզ*, 24 *Դեկտեմբեր* 1915, *Ը. տարի*, *Թիւ* 385, *էջ* 5։
- «*Տեղական*», *Ասպարէզ*, 7 *Յունուար* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 387, *էջ* 4։
- *Երուանդունի*, «*Շահ-Մուրատեան*», *Ասպարէզ*, 14 *Յունուար* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 388, *էջ* 6։

## ՏԵՂԱԿԱՆ

Պ. Շահ-Մուրատեանի երկրորդ նուագահանդէսը տեղի ունեցաւ 500-ի մօտ հայ եւ ամերիկացի հանդիսականներու ներկայութեան, Հուայթ Թատրոնին մէջ: Հայ արուեստագէտը կրկին եռանդուն ծափեր խլեց ներկաներէն: Այս յաջող նուագահանդէսին ընտիր նկարագրականը եւ գնահատականը, Պրն. Երուանդունիի գրչէն, կը հրատարակենք յաջորդ թուով:
*Ասպարէզ*, 7 *Յունուար* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 387, *էջ* 4

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

ԵՐՈՒԱՆԴՈՒՆԻ

Լսեցի՞ք Շահ-Մուրատեանը, եթէ ոչ՝ մեր կեանքի գեղեցկագոյն հաճոյքներէն մին կորսնցուցիք: Եթէ Ֆրէզնոյի մէջ կայ հայ մը որ կամայ ակամայ այլ եւ այլ պատճառներով հայ ազգի արդի այս մեծագոյն երգիչը լսելու առիթը կորսնցուց, կորսնցուց նաեւ հոգեկան հրճուանքի մը այս չքնաղ ժամանցը զոր միայն բարին ու գեղեցիկը կրնան գնահատել: Նոյնպէս եթէ կայ տեղական գեղարուեստասէր ամերիկացի մը որ կամ հայ անունէն նախապաշարուած եւ կամ երրորդական կամ միջին արթիսթ մը ըլլալու կասկածէն տարուբերեալ պատրուակներով փախցուց Մշոյ այս հայ սոխակը լսելու առիթը, այսու ցոյց տուաւ թէ՝ գեղարուեստական իր ճաշակը եւ կրթութիւնը տակաւին հասած չէ իր բարձր մակարդակին: Որովհետեւ Շահ-Մուրատեանը լսող տեղացի ամերիկացիք կը վկայեն թէ՝ աշխարհի լաւագոյն երգիչներէն մին լսելու բարեպատեհ առիթը վայելած են:

Այո, երբէք չափազանցած չենք ըլլար երբ «աշխարհի լաւագոյն երգիչներէն մին» կոչենք զայն, որովհետեւ Փարիզի Քօնսէրվաթուարէն յաջողագոյն քննութիւն մը անցընելով առաջին մրցանակին արժանանալ, եւ ուրիշ այլեւայլ դժուարին օբերաներու մէջ ֆրանսական եւ այլ եւրոպական խստապահանջ համայնքներու առաջ ծափահարութիւններ խլել շատ դժուարին բան մըն է զոր միայն կրնան շահիլ Մէլպաներ, Սէնտըրսըններ եւ Քարուսօներ, դժուարին նա մանաւանդ հայ օտարականի մը համար որ պարտի մաքառիլ այլ եւ այլ խութերու հանդէպ: Շահ-Մուրատեան իր բնական տաղանդովը, եւ անխոնջ աշխատութեամբը յաջողած է արժանաւորապէս շահիլ այս մեծ տիտղոսը եւ յաղթութեան այս դափնին այնչափ կը պատկանի իր անձին որչափ ընդհանուր հայութեան:

Եթէ ցաւալի կէտ մը կայ, այն ալ սա՛ է թէ Ֆրէզնօ քաղաքը այս տեսակ բարձր ներկայացուցիչ մը՝ ձայնական գեղարուեստի՝ արժանաւորապէս գնահատելու

անկարող է։

Շահ-Մուրատեան անցեալ կիրակի, կէս օրէն վերջ, *Հուայթ* թատրոնի մէջ համախմբուած հայ թէ օտար երկսեռ բազմութեան մը առաջ ցոյց տուաւ թէ ինքը նախ ամէն բանէ առաջ բառին բուն նշանակութեամբ ձայնական գեղարուեստի արթիսթ մըն է, որոյ նմանը շատ հազուադիպօրէն Խաղաղականի ափունքը ոտնակոխած է։ Եւ յետոյ ցոյց տուաւ թէ՝ իր հոգին ու ամբողջ էութիւնը հայ է եւ հայ պիտի մնայ։ Սէն-Սէնի *Զանգակը* եւ Պէրկմէնի *Հնդկական երգը*, երկուքն ալ բաւական դժուարին կտորներ էին, կատարեալ կարող երգչի մը ջիղերը փորձաքարի մը ենթարկելու աստիճան։ Եւ այս երկու բիէսներուն հեղինակները իրենց նօթերը աւելի վճիտ, աւելի ճշգրտօրէն արտաբերուած չի պիտի կրնային ակնկալել որչափ Շահ-Մուրատեանի ճոխ եւ հարուստ ձայնական մշակութենէն։

Երեք մասնաւոր կէտեր կան նշմարելի որոնք մեր սիրելի հայրենակիցը կրնան հաւասարցնել աշխարհի ուրիշ երեւելի երգիչներու պատւոյն, որոնցմէ միայն քիչերու վրայ կրնանք նշմարել այս առաւելութիւնները։

Առաջին. Շահ-Մուրատեան բնական դիւրաթեքութեամբ մը, առանց անբնական ճիգերու, կրնայ բարձրանալ, մարդկային ձայնի կարողութեան սահմանին մէջ, խաղի մը նօթերուն բարձրագոյն զէնիթը եւ ընդհանուր ունկնդրութեան վրայ պակուցիչ սքանչացում մը առթել, որչափ դիւրութեամբ իջնալ ձայնի ամենէն ստորին աստիճանները հազիւ թէ լսելի, որ սակայն կարելի է լսելի ըլլալ նոյն իսկ ընդարձակ թատրոնի մը մէջ առանց խռպոտ կամ կոշտ շեշտերու ազդեցութեան։ Անիկա նոյնչափ դիւրաթեք սահունութեամբ կրնայ երգել ֆրանսական երգ մը, որչափ հայերէն. խառնելով Արեւմտեանը Արեւելեանին հետ եւ այսպէս արտադրելով եղանակ մը որ կը դրդէ զգայուն սրտերու խորագոյն թելերը։ Երկրորդ՝ Շահ-Մուրատեան իր ձայնը արտադրելու համար երբէք դժուար ու անբնական միջոցներու եւ ջանքերու չի դիմեր։

Իր ձայնի բնական ճոխութիւնը եւ ձայնի արուեստին բարձր մշակութիւնը կարող կ՚ընեն Տարօնի այս քաղցրալուր թռչունը կառավարել ձայնի դժուարին ելեւէջները, հանգիստ եւ բնական դիւրութեամբ մը, առանց արտաքոյ կարգի ճիգերու օգնութեան։ Շահ-Մուրատեանի կուրծքն ու թոքերը կարծես յստակ, վճիտ ձայնական շեշտերու հրաբուխ մըն են, որոնք ալեծածան կոհակներու նման, կուրծքն ու թոքը պատռելով դուրս կը սլանան եւ կորովալիր կը բարձրանան նօթերու բարձրագոյն աստիճանը, եւ յետոյ մեղմօրէն սոխակի մը ախորժալուր դայլայլին կը խոնարհին մեղուանոյշ, յուզիչ մրմունջներով, որոնց առաջ ունկնդիրը կը զարմանայ թէ ձայնական վիթխարի ջահի մը առաջ իր աչքերը կը խտղտի՞ն թէ չէ Եղիւսեան դաշտի մը քաղցրաձայն սոխակի մը գեղգեղումէն իր հոգին ու սիրտը, նրբագոյն զգացմանց ազդեցութեան ներքեւ, հոգեկան հրճուանքով մը կը դողդղան։

Երրորդ. չի կրցինք նշմարել հայ արթիսթին վրայ այն բռնազբօսիկ

շարժուձեւերը զորս կը որդեգրեն կարգ մը թատրոնի արթիսթներ։ Շահ-Մուրատեան բեմի այնպիսի բնական պատրաստականութիւն մը ունի որ իսկոյն իր ունկնդիրներուն կը յայտնէ թէ ինք այնչափ լաւ երգիչ մըն է որչափ դերասան մը։ Անոր վրայ անբնական շարժուձեւեր չենք տեսներ։ Անսեթեւեթ շարժումներով, բնական դիրքով մը կ'երգէ իր երգը. իր ամբողջ հոգին, սիրտն ու զգացումն թրծելով իր նօթերուն մէջ։ Անիկա միայն չերգեր, այլ կ'զգայ, իր երգին հետ կ'ապրի, իր ունկնդիրներուն հոգին ու սիրտը կը յուզէ, կը յափշտակէ եւ կոհակի մը նման կը գլորէ անոնց երեւակայութիւնը անոյշ յիշատակութեանց խորհրդաւոր անդունդը։

Շահ-Մուրատեանի վրայ ակներեւ այս առաւելութիւնները պիտի կրնան ընել զինքը Եւրոպիոյ եւ Ամերիկայի ձայնական գեղարուեստի աշխարհին մէջ անսզիւտ տիպարներէն մին որոյ ներկայութիւնը ոեւէ գեղարուեստասէր համայնքի մը մէջ արժանաւորապէս պիտի կրնայ գնահատուիլ։

Բայց Շահ-Մուրատեան ա՛լ աւելի հրապուրիչ եւ քարոզչական կը դառնայ երբ իր խեղճուկ ազգին բարձրաթռիչ քայլերգները եւ մեղուանոյշ սիրերգերը կը ձայնէ։ Ֆրէզնոյի հայը երբէք չի պիտի մոռնայ անոր *Հայաստան* ու *Հապրպան*ը, կարծես Մշոյ քաջակորով մի աղեղնաւորն է որ կուրծքի հեւիհեւ մակընթացութեամբ մը հսկայ շեշտերով մեզ յայտնել կ'ուզէ թէ Հայաստան տակաւին կ'ապրի, թէեւ արիւնած, խողխողուած, ջլատուած։ Անցեալ կիրակի Հուայթ թատրոնի մէջ հաւաքուող հայ թէ օտար ունկնդիրք հաճոյալիր յիշողութեամբ մը չպիտի մոռնան այն ժամերը զորս վայելեցին ի շնորհս Շահ-Մուրատեանի։

*Հապրպան* գիւղական այդ պարզ հովուական սիրերգը, ինքնին բնական սիրային բանաստեղծութիւն մը, դրդեց բոլորի սրտերը, յուզելով գիւղացւոյն զգացմանց նրբագոյն թելերը։ Շատ աչքեր թրջեցան եւ սրտեր յուզուեցան երբ վերջին շեշտն ձայնեց Շահ-Մուրատեան *Հապրպան*ի նօթերէն։ Երբ հասաւ այս վայրկեանը որ ատեն ալ հայ արթիսթը իր վերջին նօթը պիտի հնչէր, ո՞վ ուզեց արդեօք ձգել իր աթոռը եւ զրկուիլ այդ չնաշխարհիկ ձայնական փարթամ խնջոյքէն։

Հիացո՜ւմ, սքանչացո՜ւմ եւ տեսակ մը ազգային բարի հպարտութիւն մը, միացած ներքին հոգեկան յափշտակութեան, ահա այս զգացմամբ էր որ կը ձգէր ամէն հայ թատրոնի սրահը, երբ ալ եւս Շահ-Մուրատեան բեմին վրայ չի պիտի երեւէր։

Անցեալ կիրակի օտարը զգաց թէ հայը միայն արիւնիլ, ընդվզիլ չէ որ գիտէ, այլ հայը կրնայ նաեւ երգել եւ սիրտ ու հոգի ցնցել ու թունդ հանել։ Հայը գիտէր թէ Մշոյ լեռն ու հովիտ քաջեր թունդ հայրենասէրներ արտադրած էր, բայց այսօր գիտցաւ թէ՝ Մուշ երգիչներ ալ կրնայ արտադրել, Շահ-Մուրատեաններ որոնք մինչեւ Եւրոպական մայրաքաղաքներու բեմերուն ելեկտրական ջահերուն առաջ կրնան փայլիլ, որոնք Տարօնի ձորերէն մինչեւ Շանզ Էլիզէի լուսավառ հրապարակները ու պողոտաները սաւառնելով Բարիզեան ձայնական Հէրքիւլէններուն

հետ ի միասին մրցանակներ ձեռք ձգել:

Բայց Շահ-Մուրատեան մեզ կը հարցնէր «Միթէ երգելն ալ կռիւ չէ՞»: Այո, ազնիւ հայրենակից, երգելն ալ կռիւ մըն է, զգայական, հոգեցունց կռիւ մը, ուր մարդ պահ մը խելակորոյս, նիւթական աշխարհը յետս ձգած, Բարւոյն եւ Գեղեցիկին յաւերժահարսանց պահապան կռուող զինուորն ըլլալ կը բաղձայ:

Փակելէ առաջ չի մոռնանք անցնիլ առանց յիշելու Օրիորդ Մարգարեան որ քանիցս ծափահարութեանց արժանացաւ իր քաղցրալուր եւ յստակ երգեցողութեան ի գնահատութիւն: Նուագահանդէսին փայլին սատարողներէն եղաւ Բրոֆ. Ըրվին իր վարպետ դաշնակահարութեամբ, միացած Օր. Հընթի, ինչպէս նաեւ Տիկ. Հէրիս որ ջութակով ընկերացաւ Շահ-Մուրատեանի *Հնդկական երգ*ի դժուար կտորի միջոցին: Շահ-Մուրատեան, Օր. Մարգարեան, Օր. Հընթ եւ Տիկ. Հէրիս ծաղկեալ փնջերով գնահատուեցան ժողովրդեան կողմանէ: Պ. Շահ-Մուրատեանի տրուած գեղեցիկ ծաղկեփունջը իր հայրենակից մշեցիներէն էր:

Պարոն Շահ-Մուրատեան կը մեկնի Լոս Անճըլէս, ուր ամսոյս 23-ին նուագահանդէս մը տալէ վերջ կը մեկնի Շիքակօ ուր կոչուած է մասնաւորապէս օբերայի մը մէջ մաս ունենալու:

Շահ-Մուրատեան բաղդատաբար մեզ եկած է անծանօթ մը, բայց այսօէր կը մեկնի ամէն Ֆրէզնոցի հայուն սրտին ու հոգւոյն մօտ իբր անկեղծ բարեկամ, թողլով անոր յիշողութեան մէջ համակրելի անձնաւործութեան մը ազնուագոյն տպաւորութիւնը եւ մեծ երգչի մը անմոռանալի համբաւը: Լիայոյս ենք թ ամերիկահայ ամէն հայ գաղութ արժանաւորապէս պիտի հիւրընկալէ մեծ երգիչը, ընձեռելով անոր ամէն միջոց իր ճիւղին յաջողութեան եւ գնահատման թէ օտարաց եւ թէ հայ հասարակութեան առջեւ:

Սրտալիր յաջողութիւն եւ ողջերթ կը մաղթենք իրեն, վստահացնելով զինքը թէ Ֆրէզնոցի եւ Քալիֆորնիացիհայը երբէք չի պիտի մոռրնայ Շահ-Մուրատեան անունը:

*Ասպարէզ*, 14 *Յունուար* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 388, *էջ* 6

## ԿԻՐԱԿԻ, 2 ՅՈՒՆՈՒԱՐ 1916, ՖՐԷԶՆՕ

Ֆրէզնոյի պր. Արշակի սրճարանին մէջ՝ մշեցիներու հացկերոյթ ի պատիւ իրենց հայրենակից Շ-Մ.ին: Շ-Մ. կ'երգէ՝ *Ձայն տուր ով ծովակ* եւ *Կռունկ*:

- *Ներկայ մը*, «*Մշեցիներու Հացկերոյթ մը*», *Ասպարէզ*, 7 *Յունուար* 1915, *Ը. տարի*, *Թիւ* 387, *էջ* 4-5:

## ՄՇԵՑԻՆԵՐՈՒ ՀԱՑԿԵՐՈՅԹ ՄԸ

ՆԵՐԿԱՅ ՄԸ

Ամսոյս 2-ին, կիրակի իրիկուն Ֆրէզնոյի Մշեցիները հացկերոյթ մը տուին ի պատիւ իրենց հայրենակից Պն. Ա. Շահ-Մուրատեանի։ Հացկերոյթը տեղի ունեցաւ նախկին Այնսթայն Հօլին – ներկայիս Պն. Արշակի սրճարանին մէջ, որ այդ օրուան համար յատկապէս զարդարուած էր գոյնզգոյն կամարներով։ Ներկայ էին մօտ 80 մշեցիներ, եւ իբր մինակ բացառութիւն՝ հրաւիրուած էր Պն. Ա. Մելիք, որ սեղանի կառավարիչ ընտրուեցաւ։ Եղան ատենախօսութիւններ եւ օգտաւէտ թելադրութիւններ մշեցիներու մտաւոր-բարոյական ինքնակրթութեան շուրջ։ Սան Ֆրանսիսքոյէն Ֆրէզնօ եկած Պն. Տիգրան Յակոբեան գեղեցիկ բանախօսութեամբ մը թելադրեց իր հայրենակիցները չը յուսահատիլ ներկայ ահաւոր աղէտներուն առջեւ, եւ ամփոփուելով ջանալ օգտակար ըլլալու թշուառ հայրենիքին, մասնաւորաբար երկրի կրթական գործին սատար հանդիսանալով։ Պն. Շահ-Մուրատեան շատ մը օգտաւէտ թելադրութիւններ ըրաւ, սահուն եւ զօրաւոր շեշտով մը։ Խօսեցաւ նաեւ Պն. Մելիք գեղարուեստի շուրջ, անոր կրթիչ դերը մատնանշելով ազգերու եւ անհատի նկարագրին մշակոյթին մէջ։ Պն. Շահ-Մուրատեան երգեց Րաֆֆիի *Ձայն տուր, ո՜վ ծովակ*ը եւ *Կռունկ*ը անօրինակ քաղցրութեամբ եւ ոյժով. ներկաներու շատերը արտասուեցին։ Եղան նաեւ հայկական պարեր եւ խմբերգներ, որոնք կատարուեցան աշխոյժով եւ հմտութեամբ, թէեւ ընդհանուր տրամադրութիւնը իր վրայ կը կրէր ազգային վերջին աղէտին թողուցած մելամաղձոտ ազդեցութիւնը։

Մասնաւոր գնահատութեան արժանի են Պն. Արշակ Տարպազանճեանի ջանքերը, որ իբրեւ հացկերոյթին կարգադրիչ՝ պէտք եղածը ըրած էր, երեկոյթը հաճոյալի դարձնելու։

***Ասպարէզ***, 7 ***Յունուար*** 1916, ***Ը. տարի***, ***Թիւ*** 387, ***էջ*** 4-5

**ԿԻՐԱԿԻ, 16 ՅՈՒՆՈՒԱՐ 1916, ՖՐԷԶՆՕ**

Ֆրէզնոյի Ս. Երրորդութիւն եկեղեցիին մէջ՝ պատարագ։ Շ-Մ. կը մասնակցի մեներգային երգեցողութեան։

Պատարագէն ետք Աստուր եւ Նազարէթ Թաղէոսեան եղբայրները իրենց բնակարանին մէջ ճաշկերոյթ մը կը կազմակերպեն ի պատիւ Շ-Մ.ի։

- «***Տեղական***», ***Ասպարէզ***, 21 ***Յունուար*** 1916, ***Ը. տարի***, ***Թիւ*** 389, ***էջ*** 6, 8։

## ՏԵՂԱԿԱՆ

Պրն. Ա. Շահ-Մուրատեանի քաղցր ժամերգութիւնը անցեալ կիրակի առաւօտ

Սբ. Երրորդութիւն եկեղեցւոյն մէջ՝ լսուեցաւ 2500-ի մօտ խուռներամ երկսեռ բազմութեան մը կողմէն: Նորակառոյց եկեղեցւոյն լուսացնցուղ գմբէթը կրկին ու կրկին արձագանգեց տաղանդաւոր երգիչին աղօթամրմունջ շարականները: Վճիտ աղբերակի մը նման անոր ձայնը կը յորդէր եւ կը լեցնէր ամբողջ ներկաներուն սրտերը հոգեկան անբացատրելի խնճոյք մը պատճառելով: Կիրակի օրուան պատարագը տօնական օրերու սրբանուէր հանդիսաւորութեամբը կատարուեցաւ: Վարդան Ծ. Վրդ. Գասպարեան գեղեցիկ ներբողական մը ըրաւ Պրն. Շահ-Մուրատեանի երգեցողութեան որ իրաւամբ իր ունկնդիրներուն սրտին վրայ դրոշմեց անջնջելի յիշատակ մը:

* * *

Յաւարտ եկեղեցական այս պաշտման՝ Աստուր եւ Նազարէթ Թաղէոսեան եղբայրներու բնակարանին մէջ փառաւոր ճաշկերոյթ մը տրուեցաւ ի պատիւ Պրն. Շահ-Մուրատեանի: Համադամ խորտիկներու ճոխ սեղանին շուրջ հաւաքուած էին պատուակալ հիւրէն զատ Գրիգոր Առաքելեան, Ա. Կ. Սէքլէմեան, Պետրոս Յակոբեան, Թ. Պ. Խնկեան, Յաբեթ Նշկեան, Եղիա Շահամիրեան, Ա. Մելիք, Արտաւազդ Ռստիկեան եւ Յ. Գապատայեան: Բաժակաճառեր խօսուեցան ի գնահատութիւն արուեստագէտ-երգիչին: Իսկ ընկ. Նազարէթի «ծաղիկ»աբանութիւնները տեսակ մը ախորժագրգիռ դրութեան մէջ պահեցին հրաւիրեալները:

Ջերմաջերմ համակրանքի խանդավառ ցոյցերու մէջ Պրն. Շահ-Մուրատեան իր հրաժեշտը առաւ նոյն երեկոյեան ճեպընթացով Լօս Անճըլէս մեկնելու համար:
*Ասպարէզ*, 21 *Յունուար* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 389, *էջ* 6

## ԿԻՐԱԿԻ, 16 ՅՈՒՆՈՒԱՐ 1916, ՖՐԷԶՆՕ – ԼՕՍ ԱՆՃԵԼՕՍ

Երեկոյեան Ֆրէզնոյէն կը մեկնի դէպի Լոս Անճելոս:
- «*Տեղական*», *Ասպարէզ*, 21 *Յունուար* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 389, *էջ* 8:

## ԿԻՐԱԿԻ, 23 ՅՈՒՆՈՒԱՐ 1916, ԼՕՍ ԱՆՃԵԼՕՍ

Լոս Անճելոսի Gamut Theater-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:
Յայտագիր.
*Բամբ որոտան*, *Արօր տատրակ*, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.
Ֆրանսերէն եւ իտալերէն երգեր, մեներգ՝ Շ-Մ.
Դաշնակ՝ տիկ. Ե. Ֆէրահեան եւ տիկ. Տավէրեան
- *Ասպարէզ*, 14 *Յունուար* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 388, *էջ* 5:
- *Խորէն Փափազեան*, «*Ուրախ երեկոյթ մը Լօս Անճըլէսի մէջ*», *Ասպարէզ*, 4 *Փետրուար* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 391, *էջ* 3:

# ՈՒՐԱԽ ԵՐԵԿՈՅԹ ՄԸ ԼՕՍ ԱՆՃԸԼԷՍԻ ՄԷՋ

ԽՈՐԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ

Քաղաքիս եւ շրջակայքի հայ եւ օտարազգի հասարակութեան խուռն բազմութիւն մը ամսոյս 23-ի երեկոյին գրաւած էր Կամըրթ թատրոնի բոլոր աթոռները, վայելելու տաղանդաւոր երգիչ Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը։ Ժամը 8 էր, որոտընդոստ ծափերու մէջ ժողովրդական համակրանքին արժանացող Տարօնի սոխակը սկսաւ գեղգեղել։

Հայերուն Մարսէյյէզը *Բամբ որոտան* երգուեցաւ։ Ալիշանի հանճարն ու Շահ-Մուրատեանի տաղանդը (երկուքն ալ աստուածային կայծեր) զրկախառնուած են իրար։ Առաջինը արտադրողն է գոհար բանաստեղծութեան, իսկ երկրորդը անոր հոգի տուողը, զայն շնչաւորողը։ Ի՜նչ գեղեցիկ ներդաշնակութիւն. չէ՞ որ եղանակին հետ տաղերն ալ կոչումն ունին ցնցելու, յուզելու եւ լացնելու։

Տիկին Ե. Ֆէրահեանի եւ Տիկին Տավէրեանի ճարտար դաշնակահարութենէն յետոյ հաճոյքը կ'ունենանք լսելու երկու երգեր եւս *Արօր տատրակ* եւ *Հայաստան, երկիր դրախտավայր*ը նմանապէս ֆրանսերէն եւ իտալերէն երգեր. խիստ յաջող, ըստ օտարազգիներու վկայութեան։

Սահած էին երկու երկար ժամերը, սակայն ժողովուրդը կը փափաքէր տաղաւարներ շինել հոն, չի զատուիլ այդ թովիչ մթնոլորտէն։ Երգահանդէսը վերջացած էր. իսկ հայ երգիչը իւրայիններուն համակրական եւ սիրաջերմ արտայայտութիւններուն արժանացաւ։

Շահ-Մուրատեանի ձայնը բնութեան բացառիկ պարգեւներէն է զոր քիչեր ունեցած են. իսկ արուեստական մշակոյթը այդ բնական պարգեւը յղկած, փայլեցուցած եւ արժէքաւոր դարձուցած է։

Անոր ձայնը գրաւիչ է, ուղղակի սրտի թելերուն դպչող, մերթ զեփիւռի պէս մեղմիկ եւ մերթ ջրվէժի մը պէս ահազնագոչ։

Ապրի Պրն. Շահ-Մուրատեան։

*Ասպարէզ*, 4 *Փետրուար* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 391, *էջ* 3

## ԵՐԵՔՇԱԲԹԻ, 8 ՓԵՏՐՈՒԱՐ 1916, ՍԱՆ ՖՐԱՆՍԻՍՔՕ

Սան Ֆրանսիսքոյի Palace Hotel-ի նուագահանդէսի սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Étienne Méhul: *Joseph*-էն

Gaetano Donizetti: *L'Elisir d'amore*-էն

Édouard Lalo: *Le Roi d'Ys*-էն

Camille Saint-Saëns: *La Cloche*
Herman Bemberg: *Chant hindou*
Դաշնակի նուագակցութիւն՝ Uda Waldrop
- *Pacific Coast Musical Review*, 8 February 1916, Vol. XXIX, p. 5.
- Abbie Gerrish Jones, 'Chah Mouradian's Concert,' *Pacific Coast Musical Review*, 19 February 1916, Vol. XXIX, p. 6.
- *Երուանդունի*, «*Շահ-Մուրատեանի շուրջ*», *Ասպարէզ*, 25 *Փետրուար* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 394, *էջ* 2-3, 6։

Mr. Chah-Mouradian, the great tenor of international fame, who as the tenor of the Paris Opera has charmed the patrons of music in France and the principal European cities, will give a complimentary concert at the Palace Hotel, Tuesday, February 8, at 3 p. m. He will be assisted by Uda Waldrop. Mr. Chah-Mouradian is presented by Walter Montague.
*Pacific Coast Musical Review*, 8 February 1916, Vol. XXIX, p. 5

## CHAH MOURADIAN'S RECITAL

ABBIE GERRISH JONES

A complimentary concert was given a number of invited guests on Tuesday afternoon of last week, by Chah Mouradian, a young Armenian tenor, who hails from the Grand Theatre National and L'Opera de Paris. The concert was, through the courtesy of the Palace Hotel management, given in the concert room of that hotel, and a goodly number of interested listeners were present. I think a happier selection of vocal numbers could have been made for such an occasion, as the work displayed a really beautiful vocal organ only at its biggest possibilities, the songs all being taken with a fervor of temperament that called out more fortissimo than the sweetness of the voice could endure without sacrificing quality. It is essentially an operatic voice and the singer is temperamentally well equipped for this work, but when in Bemberg's *Chant hindu*, he took two or three high tones on the mezzo voice, one could but wish there had been more, it was so exquisitely sweet. Uda Waldrop at the piano gave the singer support and confidence in his work. The program was as follows: *Joseph* (Méhul), *L'Elisire d'amore* (Donizetti), *La Cloche* (Saint-Saëns), *Chant Hindu* (Bemberg).
*Pacific Coast Musical Review*, 19 February 1916, Vol. XXIX, p. 6

# ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՇՈՒՐՋ

ԵՐՈՒԱՆԴՈՒՆԻ

Ամսոյս 8-ին, երեքշաբթի օր, ժամը 3-ին, Սան Ֆրանսիսքոյի Փալէս Հօթէլի նուագասրահին մէջ անուանի հայ երգիչ Տիար Արմենակ Շահ-Մուրատեան առաջին անգամ ներկայացաւ Ս. Ֆրանսիսքոյի թատերական մէկ քանի ներկայացուցիչներէ, լրագրաց քննադատներէ եւ ամերիկացի ու ֆրանսացի երաժշտագէտներէ բաղկացած երկսեռ անձնաւորութեանց առջեւ իր *Քոմփլիմէնթէրի* նուագահանդէսը տալու:

Իր ընտրած կտորները դժուար եւ արթիսթիք եղանակներ էին, որոնց առաջինն էր *Ժօզէֆ*, հեղինակութիւն Մէհիւլի, ԺԷ. դարու այդ մեծ դէմքին. երկրորդն էր *Լ'Էլիզէրէ տ'Ամօրէ*, Տօնիծէթիի սիրուն կտորներէն մին: Երրորդ եւ չորրորդ կտորներն էին Սէն-Սանսի *Լա Քլօշ*ը եւ Պէրմէնի *Շան հէնտու*ն:

Այդ օր հոտ հաւաքուող փոքրաթիւ, բայց գնահատիչ ու գիտակից ունկնդրութեան մէջ կը նշմարուէին տեղական ծանօթ հայ դէմքեր, ինչպէս նաեւ Ֆրէզնոյէն եւ Թըրլաքէն մասնաւորապէս զինքը լսելու համար եկած էին Տէր եւ Տիկին Գր. Առաքելեան եւ իրենց որդին Տիրան, Տէր եւ Տիկ. Յովսէփ Առաքելեան, Տէր եւ Տիկ. Տիգրան Առաքելեան: Սան Ֆրանսիսքոյի ամենատաղանդաւոր դաշնակահարներէն մին, Մր. Եուտա Ուալտրօբ դաշնակին վրայ կ'ընկերանար անուանի երգչին երգերուն:

Սթէնուէյ դաշնակը մասնաւորապէս նուիրուած էր Սան Ֆրանսիսքոյի ծանօթ Շէրմըն Էնտ Քլէյ ընկերութեան կողմանէ եւ նուագահանդէսի սրահը ի պատիւ նոր երգչին առաջին ներկայացման ձրիաբար շնորհուած էր Փալէս Հօթէլի կողմանէ: Հարիւրի չափ տեղական երգի աշխարհին մէջ ծանօթ անձանց հրաւիրագիրներ խրկուած էին: Ներկաներուն մէջ անոնք որոնք ուղղակի թատերական գործոց հետ առնչութիւն ունեցող անձինք էին, կրնայինք նշմարել, Մր. Կրինպօմ, Ս. Ֆրանսիսքօի թատերական եւ նուագային մեծ անձանց տեղւոյս հասարակութեան ներմուծող Իմփրէսարիօն, *Էկզէմինըր* օրաթերթի երաժշտութեան քրիթիքը, Մր. Ռէտֆիլտ Մէյսըն, ֆրանսական թերթի, *Ֆրանքօ Քալիֆորնիէն*ի խմբագիրը, Սան Ֆրանսիսքոյի ֆրանսական հասարակութեան քաջածանօթ Տիկին Ֆէրիէ, անուանի երգչուհին, ամերիկեան բեմին վրայ օձապտոյտ եւ դասական պարերու սկզբնաւորիչ Օրիորդ Լօի Ֆուլըր եւ իր յանձնակատարը որ նոյնպէս Նիւ Օրլէանսի *Լ'ապէյլ* թերթի միւզիքի քրիթիքը եղած է, Մր. Էտմընտ Ժիրարտօ, եւ շատ մը ուրիշներ որոնք կը ներկայացնէին Սան Ֆրանսիսքոյի ընտրեալ դասակարգի անդամներէն քանիները, եւ մեծ երգիչներ Սան Ֆրանսիսքօ ներմուծող յանձնակատարներէն մի քանին:

Նուագահանդէսը տրուեցաւ կարգ ու սարքի պատշաճ շուքով մը առանց ռեւէ

անախորժ ընդմիջումներու եւ ունկնդիրք լսեցին Մշոյ այս մեր երգեցիկ թռչունը հետաքրքիր հանդարտութեամբ մը եւ գնահատական ակնյայտնի արտայայտութիւններով: Միս Լօի Ֆուլըր, որ մեր հայրենակցին մրցանակը շահած եւ իր առաջին ներկայացումը տուած ատեն Փարիզ գտնուած է եւ ծանօթ է անոր մեծ համբաւին՝ յանձն առաւ ներկայացնել Շահ-Մուրատեանը ներկաներուն իբրեւ համբաւաւոր երգիչ մը, եւ մեծադղորդ ծափահարութեանց մէջ Օրիորդ Ֆուլըր ներկայացուց հայ երգիչը, որ բարիզեան շիք եւ գրաւիչ շարժուձեւով մը, գլխի համեստ եւ անսեթեւեթ խոնարհութեամբ ծանօթացաւ իր ունկնդիրներուն:

Հակառակ սրահին նուագահանդէսի անյարմար վայր մը ըլլալուն, հակառակ տամուկ եւ անձրեւոտ օդի մը կոկորդի փափուկ ջիղերուն վրայ ներգործած անախորժ ազդեցութեանց, Շահ-Մուրատեան հազիւ թէ հասած էր *Ժօզէֆ*ի խաղին ձայնական բարձրութեան զենիթը, մագնիսական քարշողութեամբ մը յափշտակեց ունկնդիրներու սքանչանքի մեղմաձայն փսփսուքները եւ իբր *Ժօզէֆ*ի վերջին նօթը Շահ-Մուրատեանի կոկորդէն դուրս կը սաւառնէր, Մէհիւլ արդէն իր գերեզմանական լռութեան մէջ աւելցուցած էր իր բարձր, պատկառելի նուագին արտայայտիչներուն շարքին մէջ ուրիշ ազգի մը արուեստագէտ մէկ ներկայացուցիչը, հայ ազգին ներկայացուցիչը, յանձին Շահ-Մուրատեանի: Բարձրաձայն ծափահարութիւններէ յետոյ, Շահ-Մուրատեան իր վիթխարի ձայնին՝ մելամաղձոտ եւ խրոխտ շեշտերէն իրարու գրկախառնած՝ սլացաւ Տօնիծէթթիի սիրային անուրջներու երկինքը, եւ խառնելով իտալական երփներանգ մթնոլորտի մը ջերմութիւնը Տարօնեան աշխարհի, լեռնական արձագանքներու գոռ շեշտերուն՝ անգամ մը եւս դղրտեց ներկայից սքանչացման զգացումները եւ ահա սահմանափակ ունկնդրութեան մը համեստ խումբը կ'որոտար իր դղրտագին ծափահարութեամբ, մինչեւ որ Շահ-Մուրատեան ստիպուեցաւ քանիցս գլխի խոնարհումներէն յետոյ դարձեալ վերադառնալ ի բեմ, ունկնդիրներու փափաքը գոհացնելու, տալու մեզ Էտուար Լալօի անմահ *Ռուա Տ'Իս*ը: Այս բիէսին բանաստեղծական եւ հոգեցունց ձայնական արտայայտութիւնը Շահ-Մուրատեան գիտէ արտաբերել այնպիսի բնական, եւ արուեստագէտի մը յատուկ մասնաւոր ժէսթով մը որ կարելի չէ երեւակայել թէ՝ Լալօ կրնար աւելի գեղեցիկ կերպով արտայայտուիլ, քանի ինչ որ Շահ-Մուրատեան յաջողած էր իր ձայնի գեղեցկութեամբ եւ մշակութեամբ:

Տաս վայրկեանի ընդմիջումէ մը յետոյ, Շահ-Մուրատեան մտաւ իր նուագահանդէսի երկրորդ փուլին մէջ: *Լա Քլօշ* եւ *Շան հէնտու*, Սէն-Սանս եւ Պէրկմէն, Շահ-Մուրատեանի ձայնի ճապուկ եւ գեղահնչիւն ելեւէջներուն մէջ, մերթ ունկնդիրներու ականջի թմբուկին բաղխելով իրենց հսկայ նօթերուն պատկառելի բարձրութիւնը, եւ մերթ անոնց սրտերուն անդունդին մէջ ցնցելով նրբազգած ներգոծութեան մը թրթռուն գուրգուրանքը անգամ մը եւս ներկայ ունկնդրութեան յայտնեցին թէ Շահ-Մուրատեան բարձր շրջանակի արթիսթ էր: Թէեւ ժողովուրդը

այս անգամ եւս դղրտագին ծափահարութեամբ ուրիշ կրկնութիւն մը եւս ուզեց, բայց Շահ-Մուրատեան համակրալիր շնորհակալութեան շարժումէ մը յետոյ մերժեց երեւիլ:

Մր. Կրինպօմ, թատրոնի սրահը ձգելէ առաջ, արտայայտեց իր կարծիքը թէ՝ Շահ-Մուրատեան սքանչելի երգող մըն է, ինչպէս նաեւ ներկայ եղող ունկնդիրներու բոլոր օտարազգի անդամները հաստատեցին զայն:

Շահ-Մուրատեան այսպէս իր համբաւի առաջին քայլը կ'առնէր Ամերիկայի մէջ եւ արդէն մէկէն կը ծանօթանար Սան Ֆրանսիսքոյի թատերական եւ երաժըշտական անձանց գլխաւորներէն մի քանիսին հետ, որոնց վկայութեամբ ընդունուած է թէ իրօք ձայնական գեղարուեստի տեսակէտով առաջնակարգ դպրոցի մը կը վերաբերէր եւ ապագան լի էր անոր համար յաջողութեան եւ համբաւի նոր նոր քայլերով:

Նուագահանդէսէն ետք ներկայից մեծ մասը շնորհաւորեց զինքը իր տարած յաջողութեան համար, այդ շնորհաւորողներէն, սակայն, մեծագոյնը կը հանդիսանար, Տիկ. Ֆէրիէ, ֆրանսացի երգչուհին, որ Շահ-Մուրատեանի հետ միասին աշակերտած է Փարիզի մէջ:

Ֆրանսական թերթեր մեծ գովեստով գրեցին իրենց երկրին մէջ մշակուած այս հայ երգչին համար: Մր. Մէյսըն, *Էկզէմինըր*ի քննադատը, կը կոչէր զայն արթիսթ մը որ գիտէ զարմանալի եղանակաւ մը իր ձայնական կարողութիւնը արտադրել. թէեւ մի քիչ դպած էր անոր ունեցած մեթոտին, որով յարձակած կ'ըլլար ֆրանսական մեթոտին վրայ: Մենք, սակայն, հակասութիւն մը կը գտնենք Մր. Մէյսընի այդ արտայայտութեան մէջ: Արթիսթ մը չի կրնար արթիսթ կոչուիլ, մինչեւ որ լաւ մեթոտ չունենայ, լաւ մեթոտ չունեցող մը չէ կարող յաջողութեամբ եւ սքանչացման արժան եղանակաւ երգել: Եթէ Շահ-Մուրատեան արթիսթ մըն է եւ կարող է երգել դժուարին կտորներ, արթիսթի մը յատուկ ճարտարութեամբ, ուրեմն, այդ արթիսթը պարտի նաեւ ունենալ լաւ մեթոտ: Երգիչ մը որ Իսկարիօթի եւ Քազընէօվի նման վարպետներու ձեռքէն առաջին մրցանակ կը խլէ, երգիչ մը որ ֆրանսական խստապահանջ ունկնդրութեան մը առաջ *Ֆաուսթ*ի գլխաւոր դերը ստանձնելով ֆրանսական թերթերու միահամուռ գնահատութեան եւ դրուագներուն կ'արժանանայ, չի կրնար գէշ մեթոտ ունեցած ըլլալ: Ասիկա տրամաբանական է զոր Մր. Մէյսըն կրնայ զգալ օր մը, երբ Շահ-Մուրատեանի յաջողութիւնն ու համբաւը, ինչպէս Եւրոպայի, Եգիպտոսի, Թիւրքիոյ մէջ, նոյնպէս Միաց. Նահանգաց մէջ եւս տարածուի:

Պարոն Շահ-Մուրատեան չուզեր իր արուեստին դափնիները ամերիկեան թերթերէն գնել, ինչպէս ոմանք կ'ընեն, բայց անոր արժանիքը եւ արուեստը յաջողապէս պիտի վարձատրուին երբ Շահ-Մուրատեանի անունը ընդհանուր Միաց. Նահանգաց մէջ, նուագասէր եւ թատերական աշխարհի մէջ անծանօթ չի մնայ:

Պրն. Շահ-Մուրատեան շաբաթ գիշեր մեկնեցաւ Ան Արպըր ուր համալսա-րանական աշակերտներուն պիտի երգէ Հէնտէլի *Մէսիա*ն եւ ուրիշ կտորներ եւ յետոյ կը մեկնի Տիթրոյթ ուր միեւնոյն բրօկրամը պիտի կրկնուի, ապա կը մեկնի Նիւ Եորք իր կնոջ եւ զաւկին քով, մնալով կարճ ժամանակ մը Շիքակոյի մէջ:

Շահ-Մուրատեան Նիւ Եորքի մէջ բազմաթիւ թատերական անձանց դիմելու քարտերով ու յանձնարարականներով մեկնած է եւ ամէն պատճառ ունինք հաւատալու թէ՝ Տարօնի թռչնիկը պիտի յաջողի եւ վերադառնայ Քալիֆորնիա նորանոր դափնիներով:

*Ասպարէզ*, 25 *Փետրուար* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 394, *էջ* 2-3, 6

**ՈՒՐԲԱԹ, 11 ՓԵՏՐՈՒԱՐ 1916, ՍԱՆ ՖՐԱՆՍԻՍՔՕ**

Սան Ֆրանսիսքոյի Երիտասարդ Քրիստոնեայ Ընկերութեան սրահը՝ Շ-Մ.ի երգահանդէսը ի նպաստ հայրենիքի թշուառներուն:

Gaetano Donizetti: *L'Elisir d'amore*-էն, մեներգ՝ Շ-Մ.

Édouard Lalo: *Le Roi d'Ys*-էն, մեներգ՝ Շ-Մ.

*Արօր տատրակ*, *Բամբ որոտան*, *Օրօր*, մեներգ՝ Շ-Մ.

*Forbidden Music*, մեներգ՝ օր. Լուսին Գաբրիէլեան

Մեներգ՝ օր. Վէրնա Անսիօ

Երկու գերմաներէն երգեր, մեներգ՝ օր. Լուիզ Ալպորն

Երկու կտոր, ջութակ՝ Ամելիա տը Մէյթօրենտ

Դաշնակ՝ օր. Մարիա տը Մէյթօրենտ

Դաշնակ՝ օր. Լանս

- *Երուանդունի*, «*Նամակ Սան Ֆրանսիսքոյէն*», *Ասպարէզ*, 3 *Մարտ* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 395, *էջ* 5:

## ՆԱՄԱԿ ՍԱՆ ՖՐԱՆՍԻՍՔՕՅԷՆ

ԵՐՈՒԱՆԴՈՒՆԻ

Ս. Ֆրանսիսքոյի Հայկ. Միութիւնը Պրն. Շահ-Մուրատեանի ներկայութենէն օգուտ քաղելով ջանք չի խնայեց կարճ ժամանակամիջոցի մը մէջ նուագահանդէս մը տալ որուն հասոյթը, ծախքերէն զատ, հայրենիքի թշուառներուն պիտի յատկացուէր:

Թէեւ նախօրօք Ֆորէսթըր Հօլի մէջ ազդարարուած էր նուագահանդէսը՝ բայց յետոյ Երիտ. Քրիստ. Ընկերութեան սրահը աւելի յարմար դատուեցաւ, քանի որ յիշեալ հաստատութիւնն ալ բարեհաճած էր առանց վճարմունքի սրահը

Միութեանս տրամադրութեան ներքեւ դնել: Փետր. 11, ուրբաթ գիշեր ժամը 8.30-ին հայ եւ տեղացի օտար ազգաց պատկանող քանի մը հարիւրէ բաղկացած բազմութեան մկ առաջ տեղի ունեցաւ այս նուագահանդէսը, զոր Հայկ. Միութիւնը հակառակ ժամանակի սղութեան յաջողած էր փութանակի սարքել կոկիկ եւ պատուաւոր եղանակաւ մը:

Ատենապետ Պր. Միհրան Սէյրանեան, նախ ներկայացուց Մր. Էկըրթ որ Քրիստ. Երիտ. Միութեան կողմանէ հակիրճ համակրական մի քանի խօսք ըրաւ, գովելով Սան Ֆրանսիսքոյի հայերը, որոնք հակառակ իրենց սահմանափակ թուոյն յաջողած էին քանի մը հարիւր ունկնդիրներ ի մի բերել ներկայ նուագահանդէսին առթիւ: Մր. Էկըրթէն յետոյ Պր. Սէրայլեան քանի մը բառ ըսաւ հայ տառապանքի մասին եւ օտարութեան մէջ գտնուող հայոց իրենց տառապեալ եղբարց օգնելու համար յանձն առած ջանից եւ համակրանաց մասին:

Օրիորդ Մարիա տը Մէյթօրէնտի դաշնակի վրայ ածած գեղեցիկ սօլօէ մը վերջ, Պր. Սէյրալեան համառօտ տեղեկութիւն մը տուաւ Պրն. Շահ-Մուրատեանի ձեռք բերած յաջողութեան մասին եւ ժողովրդեան բարձրաձայն ծափահարութեանց միջոցին երկրորդ անգամ ըլլալով տարօնցի մեծ երգիչը երեւցաւ Սան Ֆրանսիսքոյի բեմին վրայ: Իր ընտրած երգերն էին, Էտուար Լալօի *Ռուա տ'Իս* եւ Տօնիծէթթիի *Լ'Էլիզէրէ տ'ամօրէ*ն:

Օդին պայծառութիւնը իր օգուտն ունեցած էր, որովհետեւ այս երեկոյ Պրն. Շահ-Մուրատեան աւելի դիւրութեամբ կրցաւ խոյանալ երգուած երգոց պահանջած ձայնական բարձունքը, ալ աւելի քաղցր երանգ մը տալով բոլոր այն երգախառն շեշտերուն՝ որոնք այնչափ սիրուն տպաւորութիւն մը կը գործեն նուագասէր անհատի մը վրայ: Կրկնակի ծափահարութեանց եւ «պրավօ»-ներու ձայներու մէջ Շահ-Մուրատեան իր շնորհակալեաց խոնարհումները կը շռայլէր համեստ ժեստերով: Պրն. Շահ-Մուրատեանի հետեւեցան Ամելիա տը Մէյթօրէնտ ջութակի վրայ երկու գեղեցիկ կտորներով, Օրիորդ Տը Վէրնա Անսիօն ձայնական սօլօով, Օր. Տը Լանս դաշնակով, Օր. Լուիզ Ալպօրն երկու գերմաներէն երգերով: Յիշատակութեան արժանի կը գտնենք նաեւ Օր. Գաբրիէլեանի *Արգիլեալ երաժշտութիւնը* երգը, զոր անչափ համարձակ եւ մեկին ձայնով մը երգեց. այնպէս որ երկիցս ծափահարուեցաւ եւ ստիպուեցաւ երկու երգ եւս երգել: Օր. Գաբրիէլեան անվախ եւ համարձակ դիրք մը ունի, եւ իր ձայնը՝ թէեւ օփէրա երգելու աստիճան զօրաւոր չէ, բայց ճարտար մշակութեամբ կրնայ զարգանալ: Կը մաղթենք որ Ֆրէզնոյի հայ երգչուհեաց վրայ ուրիշ օգտաւէտ անդամ մըն ալ կ'աւելնայ յանձին այս գողտրիկ ձայնով օժտուած հայ օրիորդին, որուն հայրը վերջերս Ֆրէզնօ մեկնած է հոն հաստատուելու նպատակաւ:

Պարոն Շահ-Մուրատեանի հայերէն երգերէն առաջ Պրն. Սէրայլեան հակիրճ դիտողութիւն մը ըրաւ հայ նուագի ժողովրդական երգերու վրայ, որ ներկայ եղող օտարներէ հետաքրքրութեամբ ունկնդրուեցաւ: Կը ցաւիմ թէ՝ այս անգամ

անկարող եմ այդ դիտողութեան թարգմանութիւնը խրկել: Պրն. Մէյրայլեան կ՚ըսէր թէ հայերը երգի եւ նուագի աշխարհին մէջ մեծ դէմքեր շատ չէին արտադրած, որովհետեւ դարաւոր գերութեան եւ թշուառութեան պատճառաւ, միշտ աղերսարկու եւ լացող ազգ մը են մնացած եւ այս պատճառաւ անոնց երգերն ալ շատ տրտում եւ մելամաղձոտ են: Որովհետեւ հայերը շատ մեծ երգիչներ արտադրած չեն, այս պատճառաւ աւելի կը գուրգուրան եւ կը գնահատեն իրենց մէջ ժամանակ առ ժամանակ երեւցող երգիչները: Պրն. Մէյրայլեանի հակիրճ խօսքերը եւ տեղեկութիւնները այլ աւելի ազդեցիկ պիտի ըլլային, եթէ իր ձայնը սրահի մը մէջ խօսելու պատշաճութիւնը ունենար:

Վերջապէս հասած էր նուագահանդէսի ցուցակին վերջին մասը, որ վիճակւած էր նուագահանդէսի փայլը կազմող մեր երգիչ հայրենակցին:

Առաջին հայերէն երգն էր *Արօր տատրակ*ն, զոր Պ. Շահ-Մուրատեան այդ գիշեր այնչափ զգայուն եւ սրտաշարժ եղանակաւ մը երգեց, որ միայն ներկայ եղող հայ ունկնդրաց հոգւոյն խորաթափանց զգացումները թունդ հանելով, այլ ներկայ եղող օտարաց իսկ սքանչանք առթելով: Երկրորդ երգն էր հայ ազգի անմահ քայլերգը, *Բա մբ որոտան*: Երբ Շահ-Մուրատեանի ձայնը, իր կոկորդի բարդ ի բարդ մասերէն հսկայօրէն խրոխտ բացազանչութեամբ մը՝ յստակ սրինգի մը նման հնչուն՝ սրահին ամբողջ տարածութեամբ կը սլանար, իմ յիշատակութեանս ներգործութիւնը զիս կը տանէր անցելոյն անմոռանալի մէկ օրուան, երբ խոնարհաբար տակաւին պատանի մը ակնածանքի, պատկառանքի դողդոջուն զգայականութեամբ մը կը մօտենայի Վենետիկի Մխիթարեան հարց ճաշասրահին առաջ՝ հայ ազգի այն պատուական եւ զարմանալի ծերունոյն ձեռքը համբուրելու, որ այնչափ ռազմական եւ հայրենասիրական ոգիով մը գրած էր հայոց սրտին, հոգւոյն այնչափ մօտիկ այս քայլերգը: Վանական մթնոլորտի մէջ ուր աղօթք եւ խաղաղութիւն միայն կը տիրեն, ո՞վ կարող է երեւակայել թէ կղերական մը երբէք յաջողած ըլլայ գրել քայլերգ մը որ այնչափ ճշգրտօրէն կ՚արտայայտէ պատերազմիկ զինուորի մը ամենանուրբ տպաւորութիւններն իսկ: Եթէ Ղեւոնդ Ալիշան ուրիշ ոչ ինչ գրած ըլլար, այլ միայն *Բամբ որոտան*ը, կը վստահացնեմ ձեզ թէ՝ այդ մէկ հատիկ երգը կարող պիտի ըլլար Ղեւոնդ Ալիշան անունը յաւերժացնել: Այդ ոգիով գրուած պատերազմական քայլերգի մը համար ալ Շահ-Մուրատեանի տիտանեան ձայնը պէտք էր, ձայն մը որ երբ հայերէն կ՚երգէ բացայայտ ցոյց կուտայ թէ՝ իր սրտի տախտակներուն ներքեւ կայ հոգի մը որ կը պոռթկայ, կ՚եռայ, Տարօնի զաւակի մը բնատոհմիկ զգայականութեամբ: Դդրդագին ծափահարութեանց անվերջանալի արձագանքը ստիպեց Շահ-Մուրատեան անգամ մը եւս ատեան գալ եւ իր անոյշիկ *Օրօր*ովն հայ սրտերու յուսոյ եւ քաջալերութեան նինջը հրաւիրել:

Նուագահանդէսի աւարտումէն վերջ հայ թէ օտար ունկնդիրներու մեծագոյն մասը փափաքեցաւ ծանօթանալ այս համակրելի երգչին հետ եւ գնահատութեան

ի նշան ձեռքի ջերմ սեղմումներ շռայլել։ Փարիզի մէջ իր դասընկերուհիներէն Մատամ Ֆէրիէ եռանդագին կը ծափահարէր եւ քաջալերութեան կորովի խօսքերով իր վերջին բարեւը կը շնորհէր իր նախկին ընկերոջ։ Ֆրանսական ընդհ. հիւպատոս Պարոն Նէշէր, յատկապէս եկած էր զինքը տեսնելու եւ լսելու եւ հետեւեալ օրուան ճաշի հրաւիրել։ Ներկայ եղող ամերիկացիներ գովեստի եւ գնահատութեան արտայայտութիւններով կը մեկնէին։ Որն. Շահ-Մուրատեան այդ երեկոյ իր երկար, առատ սեւ մազերով, զգեցած կոկիկ եւ մաքուր պաշտօնական սեւազգեստով կատարեալ «բիկչըրէսք» դէմք մը կը ներկայացնէր այդ բազմութեան մէջ, ջանալով համակրելի եղանակաւ մը բոլորին հաճելի ըլլալ, օտար թէ հայ։ Հետեւեալ օր ֆրանսական ընդհ. հիւպատոս Պարոն Նէշէրի տունը ճաշի հիւրընկալուելէ վերջ, ժամը ութին մեկնեցաւ Ան Արպըր, Միշ. ուր պիտի երգէ տեղւոյն Համալսարանի աշակերտաց, կրկնելով միեւնոյն բրօկրամը ի Տիթրոյթ, մեկնելով ապա Նիւ Եորք ուր պիտի աշխատի թատերական ընկերութեան մը միջոցաւ նուագահանդէսի «թուռ» մը կազմակերպել։ Գեղարուեստը քաջալերել՝ հայրենիք, մարդկութիւնը քաջալերել ըսել է։

Կը խնդրենք Նիւ Եորքի հայ գաղութի ազդեցիկ եւ ծանօթ անձնաւորութիւններէն որ ջանք չի խնայեն մեր հայրենակցին սատարելէ նիւթապէս թէ բարոյապէս։ Ցոյց տանք օտարներուն թէ հայը միշտ հեծող, արիւնող ժողովուրդ մը չէ։ Հայը գիտէ նոյն իսկ մինչեւ Բարիզի ելեկտրավառ սրահներուն մէջ իր տաղանդովն ու հանճարով դափնիներ խլել։
*Ասպարէզ*, 3 *Մարտ* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 395, *էջ* 5

## ՇԱԲԱԹ, 12 ՓԵՏՐՈՒԱՐ 1916, ՍԱՆ ՖՐԱՆՍԻՍՔՕ – ԱՆ ԱՐՊՕՐ

Ֆրանսական ընդհանուր հիւպատոս Պարոն Նէշէրի տունը ճաշի հիւրընկալուելէ ետք, գիշերը Սան Ֆրանսիսքոյէն կը մեկնի ուղղուելով դէպի Ան Արպոր։
- *Երուանդունի*, «*Նամակ Սան Ֆրանսիսքոյէն*», *Ասպարէզ*, 3 *Մարտ* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 395, *էջ* 5։

## ՓԵՏՐՈՒԱՐ 1916, ԱՆ ԱՐՊՕՐ

Ան Արպորի համալսարանի աշակերտներուն համար՝ Շ-Մ.ի երգահանդէսը։
- *Երուանդունի*, «*Նամակ Սան Ֆրանսիսքոյէն*», *Ասպարէզ*, 3 *Մարտ* 1916, *Ը. տարի*, *Թիւ* 395, *էջ* 5։

## ԿԻՐԱԿԻ, 20 ՓԵՏՐՈՒԱՐ 1916, ՏԻԹՐՈՅԹ

Տիթրոյթի Garrick Theatre-ին մէջ՝ նուագահանդէս ի նպաստ հայ

աղէտեալներուն, կազմակերպութեամբ Ան Արպորի ուսանողներուն եւ Տիթրոյթի բոլոր հայ կուսակցութիւններուն։

Յայտագիր.

Հայկական երգեր, մեներգ՝ Զապէլ Փանոսեան (սոփրանօ)

*Մայր Արաքսի* եւ *Լռեց ամպերը*, մեներգ՝ Ռօզա Յակոբեան (սոփրանօ)

*Բամբ որոտան*, *Հայաստան* եւ եւրոպական երգեր, մեներգ՝ Շ-Մ.

*Հաբրբան*, զուգերգ՝ Զապէլ Փանոսեան եւ Շ-Մ.

Սեփական եւ այլ երաժշտահաններու գործեր, ջութակ՝ պր. Այգունի

Դաշնակի նուագակցութիւն՝ Միս Հէմիլթըն

- «*Շքեղ նուագահանդէս*», *Կոչնակ*, 12 *Փետրուար* 1916, *ԺԶ. տարի*, *Թիւ* 7, *էջ* 179։

- *Ազգ*, 18 *Փետրուար* 1916, *Ժ. տարի*, *Թիւ* 41-511, *էջ* 4։

- *Թղթակից*, «*Ամերիկահայ կեանք*», *Ազգ*, 28 *Փետրուար* 1916, *Ժ. տարի*, *Թիւ* 48-518, *էջ* 3։

## ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ԿԵԱՆՔ

ԹՂԹԱԿԻՑ

ՏԻԹՐՈՅԻԹ – Ամսոյս 18-ի իրիկունը Էն Արպըր Միշիկըն համալսարանի *Օտիթօրիըմ*ին մէջ ի ներկայութեան ուսուցիչներու եւ ուսանողներու եւ 20-ին՝ Տիթրոյիթի *Կէրիք* թատրոնին մէջ նախաձեռնութեամբ Միշիկըն Համալսարանի Ուսանողական Միութեան տեղի ունեցան հայկական նուագահանդէսներ ի նպաստ հայ կարօտեալներու։ Կ'աջակցէին Տիթրոյիթի բոլոր հայ կազմակերպութիւնները, եւ տեղւոյս հայութեան ստուար մասը՝ ներկաներու թիւը 1400-է աւելի էր։

Գաղութիս համար բարեբախտութիւն մըն էր լսել չորս հայ արուեստագէտներ՝ որոնք արդէն քաջ ծանօթ են Ամերիկահայութեան։ Տիկին Զապէլ Փանոսեան իր մեղանոյշ ու քնարերգակ ձայնով պահ մը մեզ հայ աշխարհը փոխադրեց։ Օր. Ռոզ Յակոբեան հակառակ իր անհանգստութեան նոյնքան դիւթիչ, կիրթ եւ յուզիչ ձայնով երգեց *Մայր Արաքսի*ն, *Լռեց ամպերը*, ինչպէս նաեւ եւրոպական ընտիր երգեր։ Պ. Շահ-Մուրատեան իր *թէնօր*ի հնչեղ ու յստակ ձայնով՝ հնչեցուց հայ քայլերգը, *Բամբ որոտան*, *Հայաստան* ու եւրոպական երգեր։ Իսկ Պ. Այգունի ջութակի վրայ կ'ածէր արուեստագէտի տաղանդով իր իսկ յօրինած ինչպէս նաեւ նշանաւոր երգահաններու կտորներ։ Նուագահանդէսը վերջ գտաւ Հայ գեղջուկ կեանքէ առնուած *Հապըրպան* երգով՝ զոր երգեցին Տիկ. Փանոսեան եւ Պ. Շահ-Մուրատ։ Մասնաւորապէս գնահատելի էր անձնուիրութիւնը օտարազգի օրիորդին, Միս Հէմիլթընի, որ դաշնակի վրայ կ'ընկերանար, եւ իր կարելին ըրած էր նուագահանդէսին յաջողութեանը համար։

Նոյն իրիկուն կարգադիր յանձնախումբը քաղաքիս *Էտիսըն* օթէլին մէջ հացկերոյթ մը տուաւ ի պատիւ տաղանդաւոր արուեստագէտներուն։ Ներկայ էին 50-ի չափ անձեր։ Անգամ մըն ալ պատեհութիւնը ունեցանք լսելու մեր արուեստագէտները, ու ներկաներէն տեղւոյս հովիւը Ս. Վրդ. Նազարէթեան եւ ուրիշներ կարճ բանախօսութիւններ ըրին՝ շնորհակալութիւն յայտնելով երաժիշտ արուեստագէտներուն, Ուսանողական Միութեան՝ ի մասնաւորի բժշկական ուսանող Պ. Աւետիս Գույումճեանի թափած ջանքերուն եւ Տիթրոյիթի Յանձնախումբին որ օրինակը կուտար համազգային միութեան ու գործակցութեան։

Երկու նուագահանդէսներէն իբր զուտ հասոյթ մօտաւորապէս 1500 տոլար գոյացաւ որ պիտի ղրկուի ուղղակի Վեհ. Կաթողիկոսին հայ կարօտեալներուն գործածուելու համար։

***Ազգ***, 28 ***Փետրուար*** 1916, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 48-518, ***էջ*** 3

### ԵՐԵՔՇԱԲԹԻ, 18 ԱՊՐԻԼ 1916, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի St. Regis պանդոկի սրահին մէջ՝ ժողով, կազմակերպութեամբ Նիւ Եորքի Ազգանուէր Հայ Տիկնանց Յանձնախումբին, նպատակ ունենալով շահագրգռութիւն արթնցնել քաղաքի ամերիկացի կիներուն մէջ եւ հայ կարօտեալներուն համար նպաստի գումարներ ձեռք բերել ամերիկեան աղբիւրներէ։

Յայտագիր.

Ա. ՄԱՍ

Ֆրանսերէն օփերայէ հատուած մը եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Անգլերէն օփերայէ հատուած մը եւ *Լռեց։ Ամպերը*, մեներգ՝ Ռօզա Յակոբեան (սոփրանօ)

Մեներգ՝ պր. Պոկերթ

Բ. ՄԱՍ

Ուղերձներ։ Խօսողներէն մէկն էր Պոլսոյ Ամերիկեան դեսպան Henry Morgenthau։

- «***Հայ գաղթականութիւնը***», ***Կոչնակ***, 29 ***Ապրիլ*** 1916, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 18, ***էջ*** 471-472։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

ՆԻՒ ԵՈՐՔ. – Նիւ Եորքի Ազգանուէր Հայ Տիկնանց Յանձնախումբը բացառիկ հայանպաստ ժողով մը գումարեց Ապրիլ 18, Երեքշաբթի կէս օրէն ետքը, քաղաքիս ամենալաւ հօթէլներէն Սէյնթ Րիճիսի ժողովասրահին մէջ ուր ներկայ էին Նիւ Եորքի հարուստ եւ ազնուական դասակարգէն Ամերիկացի 150-ի մօտ

կիներ։ Ազգանուէր Հայ Տիկնանց Յանձնախումբի սկզբնական նպատակներէն մէկը եղած է՝ շահագրգռութիւն արթնցնել քաղաքիս Ամերիկացի կիներուն մէջ, եւ հայրենիքի Հայ կարօտեալներուն համար նպաստի գումարներ ձեռք բերել Ամերիկեան աղբիւրներէ։ Ճիշդ աս նպատակով էր որ շաբաթներու ծանր աշխատութեամբ եւ իմաստուն միջոցներով Ազգանուէրի տիկինները յաջողած էին Ամերիկացի կիներու այդքան մեծ բազմութիւն մը մէկ տեղ բերել։ Արդէն քանի մը շաբաթ առաջ նոյն Յանձնախումբի բոլոր անդամները միասին այցելութեան գացած էին Պօլսոյ դեսպան՝ Մր. Մօրկընթօի եւ իր տիկնոջը, գոհունակութիւն յայտնելու անոնց Հայերու հանդէպ ցոյց տուած համակրութեանը եւ կարեկցութեանը համար։ Այդ առթիւ Մր. Մօրկընթոյի յայտնած ջերմ ընդունելութենէն քաջալերուած, ազգանուէր Հայ Տիկնանց Յանձնախմբին անդամները զայն հրաւիրած էին վերոյիշեալ ժողովին մէջ խօսելու, եւ անիկա սիրայօժար ընդունած էր անոնց հրաւէրը։

Հայանպաստ այս ժողովը այնպիսի կանոնաւոր եւ կատարեալ կարգադրութեամբ մը վարեցին Հայ տիկինները որ իսկապէս Հայ անուան պատիւ կը բերէր օտարներուն առջեւ, եւ մարդ հպարտ կը զգար ինքզինք, խորհելով թէ Հայու ճաշակով եւ Հայու խորհուրդով յառաջ եկած ընտիր ժողով մ'էր որուն փութացած էր ներկայ գտնուիլ Ամերիկեան զարգացեալ դասակարգի կիներու այդքան մեծ բազմութիւն մը։ Յանձնախումբի անդամներէն՝ Տիկին Գարակէօզեան, Տիկին Թավշանճեան եւ Տիկին Չիթճեան կը սպասաւորէին ժողովին կարգադրութեանցը, եւ ընկերութեան Ատենապետը՝ Տիկին Տօնչեան կը նախագահէր ժողովին։ Հայ տիկինները իրենց շնորհալի եւ բարեկիրթ կեցուածքովն ու շարժուձեւերովը արդարեւ արժանաւորապէս կը ներկայացնէին Հայ իգական սեռը Ամերիկեան ընտրեալ բազմութեան մը առջեւ։

Ժողովին առաջին մասը երգեցողութեան յատկացուած էր. երգեցին երկու ծանօթ Հայ երգիչներ. Պր. Ա. Շահ-Մուրատեան, եւ Օր. Ռօզա Յակոբեան, ինչպէս նաեւ Ամերիկացի երգիչ՝ Մր. Պօկէրթ։ Պր. Շահ-Մուրատեան երգեց ֆրանսերէն օբերայի կտոր մը եւ *Հայաստան*ը, իսկ Օր. Ռօզա Յակոբեան երգեց Անգլիերէն՝ օբերայի կտոր մը եւ *Լռեց։ Ամպերը*ը։ Աւելորդ է ըսել, թէ մեր երկու Հայ արթիսթներն ալ իրենց բարձր կարգի երգեցողութեամբը պատիւ բերին թէ Հայ անուան եւ թէ Հայ փաստին, ու ներկաները իրենց խորին գնահատումն ու հիացումը յայտնեցին խանդավառ ծափերով։

Ժողովին երկրորդ մասը կը բաղկանար երեք ուղերձներէ։ Առաջին երկու խօսողներն էին Ամերիկացի երէց մը, Մր. Սըլիվըն եւ Բրոֆ. Համլին, հանրածանօթ Տր. Համլինի որդին, որ դասատու է Քօլըմպիա համալսարանին մէջ։ Երկուքն ալ ամենաբարձր գովեստներով ու հիացումով խօսեցան Հայ ցեղին մասին, եւ ներկայացուցին Հայը իբր դիւցազն ժողովուրդ մը, որ հակառակ իր վրայ ճնշող արտաքին ազդեցութիւններու դարերու ընթացքին մէջ կարող եղած է վառ պահել

իր մէջ անկախութեան սէրը, եւ միշտ պատրաստ գտնուած է զոհուիլ իր բարձրագոյն իտէալներուն համար։ Ապա խօսքով Հայերու բարեմասնութեանց վրայ, Տր. Համլին ըսաւ, թէ իր դայեակը Հայ մ'է եղեր, ինք Հայերու հետ մեծցած է, եւ Հայերը շատ մօտէն ճանչնալով գիտէ թէ անոնք ընտիր ձիրքեր ունեցող, եւ բարձրաստիճան դաստիարակութեան ընդունակ ժողովուրդ մը կը կազմեն. յարեց նաեւ, թէ ապա այսպիսի ժողովուրդ մ'է որ բնաջնջուելու վտանգին մէջ կը գտնուի դէմ առ դէմ, եւ քրիստոնեայ Ամերիկայի վսեմ պարտականութիւնն է օգնութեան հասնիլ եւ փրկել այս արժէքաւոր ցեղը։

Յաջորդ խօսողն էր Պոլսոյ Ամերիկեան դեսպան՝ Մր. Մօրկընթօ, որ դիւանագէտի մը զգուշաւորութեամբը, կշիռի առնուած խօսքերով, արտայայտեց իր գաղափարներն ու զգացումները, որոնց ամենուն մէջ որոշապէս կը տեսնուէր թէ Հայուն հանդէպ համակրութեամբ լեցուն սիրտ մը ունէր։ Մր. Մօրկընթօ ըսաւ, որ թէպէտ իր պաշտօնին բերմամբը չէր կրնար ըսել ինչ որ պիտի ուզէր ըսել, սակայն իրմէ առաջ խօսողներուն Հայերու մասին բոլոր ըսածներն «այո» եւ «ամէն» կ'ըսէր։ Ապա պատմեց Հայերու գլխուն եկած տառապանքին ահաւորութիւններ կային տարաբախտ Հայերուն օգնութիւն հասցնելու, այնպէս որ ինք ստիպուած էր շատ հեռաւոր ճամբաներով օգնել կարօտեալ Հայերուն, բայց հիմա դժուարութիւնները մեծ չափով վերցուած են, եւ հետեւաբար Թուրքիոյ այլեւայլ կողմերը տեղափոխուած Հայերուն օգնութիւն հասցնել կարելի է, Ամերիկեան միսիոնարաց, Ամերիկեան զօնսօլներուն եւ մինչեւ իսկ Գերման միսիոնարաց մինջոցով։ Մր. Մօրկընթօ աւելցուց, թէ Հայերուն պէտքերը անհուն են, եւ ինք խորին համակրութիւն ու կարեկցութիւն ունի Հայոց հանդէպ։ Հուսկ ապա զօրաւոր ու յուզուած շեշտերով կոչում ըրաւ Ամերիկացի բարեսիրտ կիներուն որ առատ նուէրներ տան, քանզի, ըսաւ, եթէ շատ դրամ ըլլայ բոլոր կարօտեալ Հայերուն ալ օգնութիւն կարելի է հասցնել։

Մր. Մօրկընթօի ուղերձէն ետքը Տիկին Գարակէօզեան, Տիկին Թավշանճեան, Օր. Քիթապճեան եւ Օր. Յակոբեան պնակներ պտըտցուցին, կամաւոր նուէրներ հաւաքելու, եւ գոյացած հասոյթը 800 տոլար եղաւ։

Ապա մասնաւոր խնդրանքով մը Պր. Շահ-Մուրատեան կրկին երգեց նոյն ֆրանսական կտորը։ Մր. Մօրկընթօ ու իր կինը քիչ մը ուշ գալով ժողովին՝ Օր. Ռօզա Յակոբեանի մեներգը չէին լսած, ուստի ժողովէն ետքը, խնդրեցին իրմէ, որ իրենց տունը երթայ օր մը ու երգէ իրենց համար։

Ազգանուէր Հայ Տիկնանց Յանձնախումբի այս ձեռնարկը ամեն գովեստի եւ գնահատումի արժանի է, եւ կը յուսանք թէ անոր այս ուղղութեամբ ըրած ջանքերը աւելի մեծ յաջողութիւններով պիտի պսակուին։

Ազգանուէր Տիկնանց Յանձնախումբի անդամներն են Տիկնայք՝ Գարակէօզեան, Թավշանճեան, Թէլֆէեան, Կիւլպէնկեան, Յակոբեան, Չիթճեան, Տօնչեան, Քէլէկեան, Քիթապճեան եւ Օր. Կայծակեան։ Նպաստի այս Հայ Յանձնախումբին,

իբրեւ պատուոյ անդամներ, միացած են հետեւեալ հանրածանօթ Ամերիկուհի-ները.

Միս Ալիս Սթոն Պլէքուէլ, Միս Էլիզապէթ Տաճ, Միս Վըրճինիա Կիլտըսլով, Միսիս Հէնրի Վիլըրտ եւ Միսիս Ճօրճ Ուօշպըրն: Յանձնախումբին անդամակցած են նաեւ Միսիս Ֆէլիքս Էտլըր, Միսիս Սթիֆըն Ուայզ եւ ուրիշ կարեւոր Ամերիկուհիներ:

*Կոչնակ*, 29 *Ապրիլ* 1916, *ԺԶ. տարի*, *Թիւ* 18, *էջ* 471-472

**ՈՒՐԲԱԹ, 28 ԱՊՐԻԼ 1916, ՀԱՐԹՖՈՐՏ**

Հարթֆորտի Unity Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը, հովանաւորութեամբ պատերազմի կարօտեալներու Հայ Ազգային Գրասենեակի Հարթֆորտի մասնաճիւղին: Կը մասնակցին՝ տիկ. Զապէլ Փանոսեան (սոփրանօ) եւ Samuel J. Leventhal (ջութակ):

- *The Hartford Daily Courant*, 24 April 1916, p. 9.
- 'A. Chah-Mouradian, Tenor, to Appear Here,' *The Hartford Daily Courant*, 26 April 1916, p. 6.
- 'A. Chah-Mouradian,' *The Hartford Daily Courant*, 28 April 1916, p. 6.

## A. CHAH-MOURADIAN, TENOR, TO APPEAR HERE

A. Chah-Mouradian, tenor, will appear in a recital at Unity Hall Friday evening under the auspices of the Hartford branch of the Armenian National Bureau for Destitute Armenians. He will be assisted by Mrs. Z. Panosian, soprano, of Boston, and Samuel J. Leventhal, violinist, of Hartford. Mr. Chah-Mouradian has charmed the patrons of music in many of the principal European cities. He is said to possess a beautiful voice of firmness and sweetness and of amazing volume.

*The Hartford Daily Courant*, 26 April 1916, p. 6

## A. CHAH-MOURADIAN

A. Chah-Mouradian, tenor of the Paris Grand Opera, assisted by Mrs. Zabelle Panosian, soprano, of Boston and Samuel J. Leventhal, violinist of Hartford, will give a recital at Unity Hall Friday evening of Armenian and European music, for the benefit of war-stricken, destitute Armenians. Compensation Commissioner George B. Chandler will speak on various phases of the Armenian question. Armenian songs will be sung.

*The Hartford Daily Courant*, 28 April 1916, p. 6

**ՇԱԲԱԹ, 13 ՄԱՅԻՍ 1916, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Aeolian Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը: Հասոյթին կէսը կը յատկացուի Կովկասի տաճկահայ կարօտեալներուն: Կը մասնակցին՝ օր. Միլտրէտ Իսկեան (դաշնակ) եւ փրոֆ. Նիքօլաս Րիվերա (ջութակ):

Շ-Մ. կը մեներգէ՝ երեք օփերայի հատուածներ, *Արօր տատրակ*, *Հայաստան* եւ *Քրիստոս պատարագեալ*:

- ***Կոչնակ***, 6 ***Մայիս*** 1916, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 19, ***էջ*** 507:
- «***Հայ գաղթականութիւնը***», ***Կոչնակ***, 27 ***Մայիս*** 1916, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 22, ***էջ*** 575:
- «***Հայ գաղթականութիւնը***», ***Կոչնակ***, 19 ***Օգոստոս*** 1916, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 34, ***էջ*** 887:

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Մայիս 13, Շաբաթ երեկոյ Նիւ Եորքի Էյօլիին մեծ ժողովասրահին մէջ տեղի ունեցաւ Հայ ծանօթ երգիչ Պր. Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը: Սրահը բաւական լեցուած էր երաժշտասէր Հայերու բազմութեամբ մը, որ մեծ հաճոյքով մտիկ ըրաւ Հայ տաղանդաւոր երգիչին երգած երեք օփերայի կտորներ վարպետ արթիսթի մը խօսուն արտայայտութիւնովը: Բայց մասնաւորապէս անոր հայերէն երգերը *Արօր տատրակը*, *Հայաստանը* եւ *Քրիստոս պատարագեալը*, խանդավառեցին Հայ ունկնդիրները որք բուռն ծափերով յայտնեցին իրենց գնահատումն ու գոհունակութիւնը: Օր. Միլտրէտ Իսկեան՝ որ իբրեւ վարժ դաշնակահար համբաւ վաստկած է երաժշտական շրջանակներու մէջ, հիանալի ճարտարութեամբ նուագեց դաշնակի վրայ կտորներ: Բրոֆ. Նիքօլաս Րիվերա եւս ջութակի վրայ նուագեց երկու կտորներ: Ներկաները, երաժշտական խնճոյք մը վայելողներու տպաւորութեամբ, մեկնեցան սրահէն:
***Կոչնակ***, 27 ***Մայիս*** 1916, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 22, ***էջ*** 575

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Նիւ Եօրքի մէջ, տարւոյս Մայիսի 13-ին տեղի ունեցած Պ. Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսէն գոյացած 440 տոլար 50 սէնթ զուտ արդիւնքին կէսը, 220 տոլար 25 սէնթ, Կարգադիր Յանձնախմբին ձեռամբ ղրկուած է Վեհ. Կաթողիկոսին, յատկացուելու համար Կովկաս ապաստանած Տաճկահայ կարօտ փախստականներուն:
***Կոչնակ***, 19 ***Օգոստոս*** 1916, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 34, ***էջ*** 887

### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 15 ՄԱՅԻՍ 1916, ՖԻԼԱՏԵԼՖԻԱ

Ֆիլատելֆիայի Garrick Theatre-ին մէջ՝ հայոց ի նպաստ ժողով: Խօսողներէն մէկն էր Պոլսոյ Ամերիկեան դեսպան Henry Morgenthau: Կը մեներգեն՝ Շ-Մ. եւ Ռօզա Յակոբեան (սոփրանօ):

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ*, 3 *Յունիս* 1916, *ԺԶ. տարի*, *թիւ* 23, *էջ* 601:

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ
**(հատուած)**

Այս ժողովին մէջ երգեցին Րօզի Յակոբեան եւ Պր. Ա. Շահ-Մուրատեան: Անոնք ամենայաջող կերպով ներկայացուցին Հայ տաղանդը:

- *Կոչնակ*, 3 *Յունիս* 1916, *ԺԶ. տարի*, *թիւ* 23, *էջ* 601:

### 1-21 ՅՈՒՆԻՍ 1916, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Grand Central Palace-ին մէջ, երեք շաբաթ տեւողութեամբ տեղի ունեցաւ դաշնակից տէրութիւններուն նախաձեռնած պազարը ի նպաստ կարօտեալներուն, ուր տաղաւար ունէին հայերը: Այդ ընթացքին մէկ օր մը նշուեցաւ Հայկական Օրը (Armenian Day), ուր մեներգեցին տիկ. Անժէլ Տօնճեան (սոփրանօ) եւ Շ-Մ.:

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ*, 1 *Յուլիս* 1916, *ԺԶ. տարի*, *թիւ* 27, *էջ* 705:

### ՀԻՆԳՇԱԲԹԻ, 12 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1916, ՊՈՍԹՈՆ

Պոսթոնի Jordan Hall-ին մէջ՝ Փրօֆֆ-Գայֆայեանի ստեղծագործութիւններու նուագահանդէսը, ղեկավարութեամբ հեղինակին:

Յայտագիր (բոլոր գործերը Փրօֆֆ-Գալֆայեանի յօրինումներն ու մշակումներն են).

*Կիսաստուածները*, երգեհոն՝ Homer Humphrey

Մեներգներ՝ *Լացէք*, *Յոյս*, *Կռունկ*, *Ալէզարդ*, *Արաքս* եւ *Նոր օրօր*, մեներգիչներ՝ Շ-Մ., տիկ. Լիւսի Հալաճեան եւ օր. Րօզի Տօնապետեան

Խմբերգներ՝ *Խորհուրդ խորին*, *Սուրբ Աստուածածին*, *Սուրբ Սուրբ*, *Հայր երկնաւոր*, *Ամէն, եւ ընդ հոգւոյդ քում*, *Ամէն Հայր Սուրբ*, *Տէր ողորմեա*, *Եղիցի*, *Քրիստոս պատարագեալ*, եւ այլն:

- *Ազգ*, 11 *Հոկտեմբեր* 1916, *Ժ. տարի*, *թիւ* 237-707, *էջ* 4:
- ‘Armenian Music to be Heard,’ *The Christian Science Monitor*, 12 October 1916, p. 4.
- *ՍէՄէՆ*, «*Փրօֆֆ-Գալֆաեանի նուագահանդէսը*», *Ազգ*, 20 *Հոկտեմբեր* 1916, *Ժ. տարի*,

*Թիւ* 244-714, *էջ* 3-4։

- 'Notes about Music, Musicians and the Stage,' *Boston Herald*, 28 October 1916.
- «*Հայ երգը ճօրտըն Հօլի մէջ*», *Ազգ*, 16 *Նոյեմբեր* 1916, *Ժ. տարի*, *Թիւ* 267-737, *էջ* 3-4։

## ARMENIAN MUSIC TO BE HEARD

K. Proff-Kalfaian, an Armenian composer and lecturer on oriental music, formerly editor of Geroung, a journal devoted to Armenian and French music, appears in Jordan hall this evening in a program of his own works. He will be assisted by A. Chah-Mouradian, tenor; by a chorus of Armenian students, and by Homer Humphrey, organist. Of the 20 pieces which make up the program, six are ancient religious melodies, harmonised by the composer.
*The Christian Science Monitor*, 12 October 1916, p. 4

## ՓՐՕՖՖ-ԳԱԼՖԱԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ՍԷՄԷՆ

Հոկտ. 22-ին, հինգշաբթի իրիկուն Jordan Hall-ի սրահին մէջ տեղի ունեցաւ յայտնի երաժշտագէտ Տիար Փրօֆֆ-Գալֆաեանի Նուագահանդէսը։

Հակառակ որ հանդէսին ծանուցման ու այլ մանրամասնութեանց հազիւ մէկ քանի օր տրուած էր մեծ սրահը բաւականաչափ լեցուած էր երկսեռ հանդիսականներով, որոնց մէջ կերեւէին արուեստասէր ամերիկացիներ ալ։

Երկու մասի բաժնուած էր հանդէսը, առաջինը՝ ազգային մեներգներու եւ խմբերգի, իսկ երկրորդը՝ հայ եկեղեցական երաժշտական տաղանդին ծնունդն էին։ Հանդէսին խմբական երգեցողութեան մասին պէտք է ծանօթութիւն տալ։

Շատ երկար չըներ որ Գալֆաեան Ուսթրէն փոխադրուած է Պօսթոն, իր ներկայութենէն օգտուելով՝ ջանքեր եղան՝ եկեղեցւոյ երգեցողութիւնը կանոնաւորելու նպատակաւ հայ երաժշտական խումբ մը կազմակերպել։ Շաբաթը երկու իրիկուն յատկացուեցաւ խումբին երաժշտական մարզանքին։ Դժբախտաբար, հեռաւորութիւններու եւ այլ արգելքներու պատճառով մարզուողներ փափաքուած անթերի կանոնաւորութեամբ եւ անընդհատ դասերու չը հետեւեցան, մանաւանդ որ անոնք մեծաւ մասամբ նօթայի ալ տեղեակ չէին ու այս տարրերով ու այս պայմաններուն տակ ոչինչ կարելի էր սպասել երաժշտապետին ջանքերէն, որ սակայն յուսահատիլ չը գիտցաւ ու այդ աշակերտներէն երեւան բերաւ Հինգշաբթի իրիկուան երկսեռ խումբը, յայտնի օժանդակութեամբ Ուսթրի երգիչ

խումբի անդամներէն ոմանց, որոնք Փրոֆֆի ձեռքին տակ՝ անցեալ տարի՝ աւելի լաւ մարզուելու պատեհութիւնը ունեցեր էին։ Այս թերուս եւ կիսակատար խումբով՝ որ պէտք է խոստովանիլ թէ իր խակութիւնը չմատնեց՝ այդքան գեղեցիկ նուագահանդէս մը յաջողցնելը կապացուցանէ հայ երաժշտապետին գերազանց կարողութիւնը եւ իր արուեստագիտական տաղանդը։

Երկսեռ խումբը կը բաղկանար 40-42 հոգիներէ, իրենց ձայներու տեսակին կամ սեռին յատուկ կարգովը շարուած։ Սրահին երգեհոնը նուագահանդէսին բացումն ըրաւ քայլերգով մը – *Կիսաստուածները*, յետոյ ըստ յայտագրին՝ փոխն ի փոխ իրարու յաջորդեցին խմբերգներ ու մեներգներ, ամէնն ալ իրարմէ աւելի ներդաշնակ, անուշ ու յուզիչ։ Իբր մեներգներ – *Լացէք*ը, *Յոյս*ը, *Կռունկ*ը, *Ալէզարդը*, *Արաքս*ը, *Նոր օրօր*ը երգուեցան Տիկին Հալաճեանէ, Օր. Տօնապետեանէ եւ Պրն. Շահ-Մուրատեանէ, որոնք մեր երեւակայութեանց թռիչ տուին եւ մեր հոգիներուն մէջ յոյզ ու սարսուռ դրին իրենց արուեստագէտի տիրական ու հմայիչ ձայնովը։ Օր. Տօնապետեան այդ իրիկուն ինքզինք գերազանցեց, իր ճոխ ու որոտուն ձայնը սոխակի մը անուշ գեղգեղանքն ու թռչունի մը թրթռուն ճռուողումները կը ճօճեցնէր սրահին չորս բոլորտիքը ու մեր ներսի դին, իսկ Շահ-Մուրատեան ինչպէս միշտ այս անգամ ալ տէրն էր իր առինքնող, հարուստ ձայնին միշտ անուշ ու միշտ թովիչ։

Առաջին մասը աւարտած էր, «քանի մը խօսք» ըսելու ժամանակը տրուեցաւ Փրօֆ. Մինասեանի, որ ինքն ալ արուեստագէտի մը յատուկ գիտակցութիւնով շեշտեց երաժշտութեան արուեստին մեծութիւնն ու շնորհը ու ըսաւ թէ երգը Աստուծոյ լեզուն է եւ երաժշտութիւնը գեղարուեստներու թագուհին, պէտք է սիրենք երաժշտութիւնը, որովհետեւ անիկա ոչ միայն վայելք մըն է այլ անիկա մեզ գռեհիկ, ստորաքարշ բարքերէ վեր կը բարձրացնէ ու մեր հոգիները կազնուացնէ, կաղուորցնէ։ Գովեց երգիչ խումբը եւ անոր երաժշտապետին բարձր տաղանդը որ այս հանդէսը վայելելու առիթը կընծայեն։

Կարճ դադարէ մը ետք՝ սկսուեցաւ երկրորդ մասը – զուտ Եկեղեցական։ Պէտք է ըսեմ թէ Ամերիկահայ գաղութը՝ այս երկրին մէջ՝ բնաւ առիթը չէ ունեցած մտիկ ընելու իր եկեղեցիին սրբազան երգերուն հիասքանչ ու հոգեգրաւ երգեցողութիւնը երաժշտական արուեստին ընծայած ներդաշնակութեամբն ու կատարելագործութեամբը, որ կը թուի յատուկ ըլլալ Փրօֆֆ-Գալֆաեանի մը վարպետ մասնագիտութեան։

Մեր հայրենի երկրին աւերեալ եկեղեցիները յարութիւն կառնէին մեր գանկերուն մէջ աւելի գեղեցկացած, վսեմացած ու կատարելագործուած երեւոյթով ու խորհուրդով, երբ խումբը քառաձայն ու մեներգողները առանձին՝ երգեհոնի ընկերակցութեամբ՝ կերգէին ու սրահին մէջ կարձագանգէին *Խորհուրդ խորին*ը, *Սբ. Աճ.*ը, *Սուրբ Սուրբ*ը, *Հայր երկնաւոր*ը, *Ամէն, եւ ընդ հոգւոյդ*ը, *Ամէն Հայր Սուրբ*ը, *Տէր ողորմեան*, *Եղիցի*ն, *Քրիստոս պատարագեալը* եւն.։

Մարդ ըմբռնելու համար նօթագրուած հայ եկեղեցական երգեցողութեան վեհութիւնն ու շքեղութիւնը՝ ներկայ ըլլալու էր այս Նուագահանդէսին որու անմիջական ազդեցութեան տակ ինքզինքդ կզգաս եւրոպականացուած կամ շատ բարեկիրթ եկեղեցական հաւաքոյթի մը մէջ: Ներդաշնակ ու հոգեշունչ երգեցողութիւնը մտքիս մէջ տուն կուտար վեհ խորհուրդներու ու մաքրակրօն իղձերու, կըսէի ձեր հայ եկեղեցին՝ թէեւ այնքան հարուստ միսթիք գրականութեամբ ու երգերով ինչո՞ւ պիտի չկրնար մեզի վայելել տալ կրօնական այս երգեցողութեան օրհնեալ վայելքը՝ նոյն քաղցրութիւնն արձագանգելով մեր խորանին ու ձեր պատերուն վրայ, եւ ուր տարագիր Հայութիւնը կիրակիները գոնէ լեցուէր լսելու պատարագիչին քարոզը եւ հոգեկան կազդոյր զգալու եկեղեցիին երաժշտութեամբ:

Նուագահանդէսը իր երկու մասերով կատարեալ յաջողութիւն մը եղաւ, եւ ներկայ հանդիսականներուն ներշնչեց այն հաւատքը թէ յանձին Փրօֆֆ-Գալֆաեանի Պոսթոնցիները տաղանդաւոր ու կարող երաժշտագէտ մ'ունին իրենց մէջ, ու իրենց կը մնայ օգտուիլ իրմէ: Հանդէսի աւարտումին՝ Ամերիկացիներ շնորհաւորեցին մեր երաժշտապետը յայտնելով իրենց անկեղծ հիացումն ու գնահատումը, եւ ըսին ոմանք թէ նոյն այս հանդէսը կրկնելու է զուտ Ամերիկացիներուն համար, որոնք անկասկած պիտի սիրեն ու հիանան հայ ազգային թէ եկեղեցական երաժշտութեան վրայ:

Մենք ալ հրապարակաւ պարտք կը սեպենք շնորհաւորել Պր. Գալֆաեանը իր այս աննախընթաց ու զուտ արուեստագիտական ձեռնարկին համար եւ կը փափաքինք որ ասկէ ետք մեզի տար իր ուրիշ հեղինակութիւններուն ու գործերուն հանդիսաւոր արտայայտութիւնը: Ուրախութեամբ կիմանանք թէ իր գործերը տպագրելու ձեռնարկած է, Պր. Գալֆաեան՝ լաւագոյն բանն է որ պիտի ընէ, որովհետեւ ոչ միայն ամերիկահայութիւնը պիտի ճանչնայ իր մէջ ապրող գրեթէ միակ հայ երաժիշտը, այլ պիտի ձերբազատուի անհամ, մեղկ արեւելեան ու թրքական անարուեստ եղանակներէն ու անոնց տեղ պիտի ունենայ արուեստի թանկագին կտորներ:
*Ազգ*, 20 *Հոկտեմբեր* 1916, *Ժ. տարի*, *Թիւ* 244-714, *էջ* 3-4

## NOTES ABOUT MUSIC, MUSICIANS AND THE STAGE

A concert of Armenian songs and hymns under the direction of Mr. K. Proff-Kalfaian of Paris took place in Jordan Hall on the evening of Oct. 12. The program was in Armenian and there was no attempt to invite the attention of the general public. The songs were those inspired by national and religious feeling. Some of them, as *The Crane* and *Mother Arax*, have been translated into English. The music of Mr. Proff-Kalfaian

is described as eminently racial and expressive. “There was no trace of European feeling or method,” a correspondent writes, “no hint of cosmopolitanism – a high testimony to the power of the composer, who has had most of his training and spent all of his life as a producing artist in Paris.” The second part of the program consisted of hymns and liturgical music, *Holy God*, *The Body of the Lord*, *Lord Have Mercy Upon Us*, *The Lord's Prayer* were all sung in “classic Armenian” with ancient music harmonized and arranged by Mr. Proff-Kalfaian. He was assisted by Mr. Shah Mouradian, a tenor who was graduated at the Paris Conservatory. The chorus was made up of Armenian amateurs. “Two months only had been spent in rehearsal. None the less, they acquitted themselves admirably, a proof that our local Armenian colony is capable of high community effort.” We are indebted for these notes to Miss Bertha S. Papazian of the Civic Service House.
*Boston Herald*, 28 October 1916

## ՀԱՅ ԵՐԳԸ ՃՕՐՏԸՆ ՀՕԼԻ ՄԷՋ

Հայկական ձայնական երաժշտութիւնը, պարունակելով իր մէջ նաեւ ժողովրդական հին եղանակներ, մասամբ կրօնական ու մասամբ աշխարհիկ, հինգշաբթի իրիկուն Ճօրտըն Հօլի մէջ ներկայացուեցաւ՝ երկսեռ խումբի մը *սօլօ*ներու կողմէ՝ առաջնորդութեամբ Գ. Փրօֆֆ-Գալֆաեանի: Ընտրուած կտոր-ները Հայ լեզուաւ երգուեցան ունկնդիրներու ստուար հաւաքոյթի մը առջեւ, որոնց համար այդ լեզուն բնիկ էր:

Պոստոնաբնակ հայերը կը պատուէին իրենք զիրենք, ինչպէս նաեւ արուեստն ու այն հմուտ վարպետը, որ իրենց անցեալ ու ներկայ երգերը հաւաքելով ու իրենց մատուցանելով՝ կը վերապրեցնէր զանոնք: Անոնք աւելի լաւ ըրած պիտի ըլլային՝ եթէ իրենք զիրենք յանձնարարէին հասարակաց ուշադրութեան, եթէ միջոցներ ձեռք առած ըլլային՝ այդ եղանակները ունկնդրելու հաճոյքը տալու համար նաեւ իրենց այս տեղի դրացիներուն, որոնք աշխարհագրական միեւնոյն պատմութիւնը չունին: Այն ականջները, որ եւրոպական *մաժօր* եւ *մինօր* ութեակ-ներու վրայ գրուած երաժշտութեան վարժուած են, երջանիկ հակազդեցութիւնը ունեցան այս հարուստ եւ արտայայտիչ եղանակներով, որոնք հիւսուած են հին օճախներու ճախարակներով կերտուած *ձայն*երու վրայ: Անոնք որ կը կարծեն, թէ զգացումը կրնայ ազդու կերպով արտայայտուիլ երաժշտական *բանալի*ի արագ փոփոխութեամբ եւ գոյնզգոյն *հարմօնի*ներով, անոնք ցնծութեամբ պիտի զարմանան այն դասաւորումէն եւ այն այլազանութենէն, որ կարելի է՝ խմբերգի համար 9 խաղերու եւ մեներգի համար 12 խաղերու ելեւէջով մը: Եւ անոնք, որոնց վարժեցուցեր են կարծել թէ՝ օբէրայական *ռէսիթաթիֆ*ներ եւ եղանակներ, ինչ-պէս նաեւ *սիմֆօնի*ական տուբալեր եւ՝ այնպէս կոչուած՝ դասական երգերն են

որ կը կազմեն *մելօտի*ներու ամբողջական պատմութիւնը, անոնք ալ պիտի հրապուրուին՝ նախա-զօնսէրվաթօրիական վարպետներու երգերուն այս յայտնութենէն: Անոնք մասնաւորապէս ուրախ պիտի ըլլան որ պիտի կրնան վերջապէս ազատուիլ եւրոպական *մի-րէ-տօ*-ի եւ անոր պարբերութեանց ածանցումներուն վերջաբանական տարազներէն:

Հինգշաբթի իրիկուան Երաժշտութիւնը *Քօնսէրթ Հօլ*ի մը արժանի բարձր եւ վսեմ դիրքի մը մէջ էր, այնպէս՝ ինչպէս պատրաստուած էր Փրօֆֆ-Գալֆայեանի մը դասական հմտութեամբ օժտուած ձեռքերուն մէջ: Խմբերգի ու մեներգի կտորներուն միջեւ կատարուած ընտրութիւնը եղած էր տրամախոհութեամբ, եւ *հարմօնի*ական մասերը յաջող կերպով գրուած էին: Յայտագիրը սքանչելի կերպով ներկայացուեցաւ. խումբը, մեներգողները եւ նուագողները, բոլորն ալ հոգատարութեամբ սորված էին իրենց բաժինը: Մինչեւ իսկ Օբէրայի մէջ կրթուած արուեստագէտ մը, ինչպէս Պրն. Շահ-Մուրատեան, իր լաւագոյն ջանքերուն արժանի պատեհութիւն մը գտաւ:

ՔՐԻՍՉԸՆ ՍԱՅԷՆՍ ՄԱՆԻԹՕՐ

***Ազգ***, 16 ***Նոյեմբեր*** 1916, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 267-737, ***էջ*** 3-4

### ԿԻՐԱԿԻ, 12 ՆՈՅԵՄԲԵՐ 1916, ՓՐՈՎԻՏԵՆՍ

Փրովիտենսի Elk’s Auditorium-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը: Կը մասնակցին՝ տիկ. Հ. Տ. Մարկոսեան (սոփրանօ), օր. Է. Հաչկինս Պէլըթ (սոփրանօ), փրօֆ. Լ. Ֆ. Շօ (պարիթոն), Ն. Պէրպէրեան (ջութակ) եւ Վ. Պէրպէրեան (դաշնակ):

- ***Ազգ***, 14 ***Հոկտեմբեր*** 1916, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 239-709, ***էջ*** 3։
- ***Ազգ***, 6 ***Նոյեմբեր*** 1916, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 258-277, ***էջ*** 4։

### ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 13 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1916, ՊՈՍԹՈՆ

Պոսթոնի Պազարի ծիրին մէջ տեղի կ’ունենայ Հայկական Օր: Կը մեներգեն՝ Շ-Մ. եւ տիկ. Զապէլ Փանոսեան (սոփրանօ): Շ-Մ. կը մեներգէ՝ *Բամբ որոտան*:

- ***Կ. Յ. Գարակիւլեան***, «***Դաշնակիցներու պազարը եւ Հայոց բաժինը***», ***Ազգ***, 18 ***Դեկտեմբեր*** 1916, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 295-765, ***էջ*** 3։
- ***Թղթակից***, «***Տեղեկագրութիւն Պոսթոնի Պազարին Հայ յանձնախումբին***», ***Կոչնակ***, 27 ***Յունուար*** 1917, ***ԺԷ. տարի***, ***Թիւ*** 4, ***էջ*** 125-127։

## ԴԱՇՆԱԿԻՑՆԵՐՈՒ ՊԱԶԱՐԸ ԵՒ ՀԱՅՈՑ ԲԱԺԻՆԸ

Կ. Յ. ԳԱՐԱԿԻՒԼԵԱՆ

Երէկ [իմա՝ Դեկտեմբեր 13-ին, Հ.Ա.], չորեքշաբթի, Հայկական-Սերպիական

օրն էր Դաշնակիցներու Պազարին մէջ: Բնութիւնն ալ կը ժպտէր այս երկու փոքր ազգերու: Կ՚ուզէր, գոզցես, որ գէթ այդ օրը մեր տօնը կատարելու դիւրութիւնը կնծայէր մեզի: Երեկոյին հայ բազմութիւնը սրահը գրաւել կ՚սկսի: Ամէն տարիք ներկայացուած է հոն եւ ամէնուրեք հայ դէմքեր իրարու կը հանդպին, ժպիտներ կը փոխանակուին: Ամէն կողմ հայ շեշտը կը տիրէ, հայ կիներ ու աղջիկներ, իրենց տոհմային տարազին մէջ նկարչազեղ, եռանդով կը շրջին եւ ամէն կողմ զարդակոճակները կը պճնեն հայ կուրծքները: Հայերը վեհանձնօրէն կը շարժին, կը դնեն ինչ որ կրնան եւ հաճոյքով ու հպարտութեամբ կը կրեն իրենց զարդանշանները, խորհրդանշանները իրենց մարդասիրութեան: Ժամը 3-ին հայ սրտերը տրոփել կ՚սկսին, անձկալից նայուածքներ դէպի բեմը կուղղուին, աւելի քան 15,000 հոգիներու բազմութիւն մը, որու առնուազն մէկ երրորդը հայեր պարտէին ըլլալ, կը գրաւէ հանդիսասրահը: Պահ մը յետոյ Պրն. Շահ-Մուրատեան կ՚երեւի բեմին վրայ. գոհունակութեան սարսուռ մը կ՚անցնի հայ սրտերու մէջէն, ու երբ կ՚սկսի երգել, Ալիշանի անմահ քերթուածը, մեր ազգային մեծագոյն երգը *Բամբ որոտանը*, սրտերը տրոփել կ՚սկսին, երգիչ մը չէ որ կ՚երգէ, Հայաստանի ոգին է որ կը հնչէ վեհազօր, իր մէկ զաւկին փառաւոր ձայնին մէջէն եւ կ՚ոգեւորէ ու կը ներշնչէ ամբողջ ներկայ հայութիւնը: Կարելի չէ արժանապէս նկարագրել հոգիներու յուզումը, հայը գէթ պահ մը երջանիկ ու հպարտ կ՚զգայ եւ երբ երգիչը կը գոռայ, հրաշալի շեշտով մը եւ խրոխտ կեցուածքով մը «հապօն, յառա՜ջ, յառա՜ջ, յառա՜ջ, հայրենավրէժք հայկազունք» տպաւորութիւնը մեծ եւ սքանչելի կ՚ըլլայ: Որեւէ ուղերձ, որեւէ քարոզ, այս ներգործութիւնը չ՚էր կրնար ընել: Եւ հոս էր երրորդութիւնը Ալիշան բանաստեղծը, հայ դիւցազներգութիւն, Շահ-Մուրատեան, արտայայտիչը հայ երաժշտութեան բարձրագոյն արուեստին եւ հայրենասէր, գերանձնուէր հայ ժողովուրդ մը, գերիվեր քան իր աղէտը, տխուր բայց յուսալից, յաղթական ու սրբազան, կազմած էին երրորդութիւն մը, որու միացեալ փոխադարձ ներգործութիւնը հրաշալի էր պարզապէս: Այդ գերագոյն ժամը հայ կեանքի մէջ, Հայութեան վսեմ պատասխանն էր զինք բնաջինջ ընել փորձող ուժերուն, որչափ իրաւունք ունի Կլատսթոն երբ յայտնած է, ի լուր աշխարհի, իր պատմական կտակը «Հայաստանի ծառայել քաղաքակրթութեան ծառայել է»: Տարակոյս չ՚ունիմ թէ Պազարի ներկայ գտնուող հազարաւոր օտարներու մեծ բազմութիւնն այս ճշմարտութեան համոզուած տուն դարձան: Իսկ մենք հայերս գերերջանիկ զգացինք այդ մեծ երեկոյին առթիւ, բեղմնաւոր այն բոլոր մարմիններուն, որոնք կարելի ըրին հայկական այս հրաշափառ յայտնութիւնը:

***Ազգ***, 18 ***Դեկտեմբեր*** 1916, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 295-765, ***էջ*** 3

## ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 27 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1916, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքէն նամակ կը գրէ Փարիզ՝ Արշակ Չօպանեանին: Կը տեղեկացնէ՝

թէ վերջին տասը ամիսներուն ութ անգամ բարեգործական համերգներու մասնակցած է, իսկ իր երգահանդէսներու եկամուտին կէսը ուղարկած է կաթողիկոսին։ Յուսահատութիւն կ'արտայայտէ ամերիկահայ կեանքէն եւ կուսակցական հանգամանքներէն։

- *Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, էջ 52-54։

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ

Նիւ Եորք, 27. 12. 1916

Սիրելի Չօպանեան

Շատոնցէ վեր քեզ գրելու հաճոյքը չեմ ունեցած, սակայն միշտ հետեւած եմ հեռուից եղբօր մը գուրգուրանքով ու հետաքրքրութեամբ, ազգօգուտ գործունէութեանդ բոլոր շարժումներուն։

Կը յուսամ, թէ ֆիզիքական առողջութիւնդ լաւ է, հակառակ այնչափ մտազբաղ վիճակիդ։ Ես ալ, այսպէս թէ այնպէս, քարշ կուտամ կեանքս ընտանիքիս հետ, մէկ կողմէն կեանքս շահելով եւ միւս կողմէն կրցածիս չափ օգտակար լինելով ազգիս։ Անցեալ տաս ամիսներու մէջ ութ անգամ ձրի երգած եմ այս ու այն ազգային բարեգործական ձեռնարկներու ի նպաստ եւ իմ սեպհական մի քանի համերգներում կէսէն գոյացած 700 տոլլարի չափ գումար մը ղրկած եմ կաթողիկոսին ուղղակի։ Անշուշտ պիտի շարունակեմ նորէն կրցածիս չափ օգտակար ըլլալ։

Ասկէ քանի մը օր առաջ բարեկամս՝ պ. Յովսէփ Նշկեանը ինձ ղրկելով դարձեալ հարիւր ֆրանքի մը չէքը, կը խնդրէր ինձմէ զայն քեզ ղրկել։ Կը ցաւիմ, որ այս անգամ ճիշտ Նոր Տարիի առաջին օրը ձեռքդ չպիտի հասնի անցեալ տարուան պէս։

Ստանալուդ պէս, սիրելի Չօպանեան, ստացական մը եւ կամ իմ նամակիս մէջ ակնարկութիւն մը ըրէ, որ իրեն ցոյց տամ նամակս։

Փոքրիկս բաւականին մեծցած է ու շատ ուշիմ եւ հետաքրքիր եղած է, հիմիկուանէ արդէն ֆրանսերէն կը խօսի, գերմաներէն կը հասկնայ ու հայերէն եւ անգլերէն ալ...

Շիտակն ըսելով՝ ձանձրացայ այս Ամերիկայէն, մանաւանդ հայկական կեանքէն, որ ոչինչ ունի իրապէս յուսադրող, շնորհիւ իր կուսակցական ճղճիմ հանգամանքներու։

Չգիտեմ, սիրելի՛ս, արդէն լսա՞ծ ես մեր սիրելի բարեկամ տոքթ. Սերտլեանը

1915-ին ուրիշ շատ մը բժիշկներու հետ Էրզրում ղրկուած է եղեր ծառայելու, հոն բծաւոր թիֆոն բռնուեր ու մեռեր է դժբախտաբար խեղճ տղան...

Ամերիկեան նախկին դեսպանի անձնական գրագիր պ. Անտոնեանէն իմացայ, նաեւ ուրիշներէ, իր մահուան մասին: Կը զգամ, թէ որչափ ցաւ պիտի զգայ զգայուն սիրտդ այդ մեր տաղանդաւոր բարեկամի մահուան առթիւ: Հանգուցեալը ինծի պարտ էր մօտաւորապէս 2600 ֆրանքի չափ գումար մը, առանց պարտամուրհակի, այդ գումարէն 1200 ֆրանքը իր հրահանգով քո ձեռամբ – եթէ կը յիշես – տրուեցաւ իր գրքի հրատարակչին. պիտի խնդրէի քենէ, որ վերագիր մը տայիր այդ առթիւ՝ իր եղբայրներուն ցոյց տալու, եթէ պարագան գալու ըլլայ: Ինքը ապահովագրուած էր իմ անունիս... (1000 անգլ. ոսկիի): Պատերազմէ ետք, եթէ կարելի ըլլայ գանձել, այն ատեն իմ դրամս առնելէ ետքը, մնացածը կը յանձնեմ իր եղբայրներուն:

Նոր Տարուայ առթիւ ընդունէ անկեղծ շնորհաւորանքներս, երկար ու առողջ կեանք: Միշտ քո

Արմենակ Շահ-Մուրատեան

Յ. Գ. Կինս ալ յաճախ կը յիշէ քեզ ու կ'ուղղէ իր շնորհաւորանքները:

*Արմենակ ՇահՄուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 52-54

## ԿԻՐԱԿԻ, 21 ՅՈՒՆՈՒԱՐ 1917, ՊՈՍԹՈՆ

Պոսթոնի Hollis Street Theatre-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

César Franck: *La Procession*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Կանչէ կռունկ*, մեներգ՝ Շ-Մ.

*Անսկիզբն, էակից*, մեներգ՝ Շ-Մ.

Անգլերէն, ֆրանսերէն եւ հայերէն (*Կռունկ*) երգեր, մեներգ՝ տիկ. Զապել Փանոսեան (սոփրանօ)

Ջութակ՝ տիկ. Ondricek

Ֆլիւթ՝ George Hutchins

Դաշնակ՝ Ուելզ Ուեսթըն

- *Ազգ*, 30 *Դեկտեմբեր* 1916, *Ժ. տարի*, *թիւ* 304-774, *էջ* 1:

- *Ազգ*, 20 *Յունուար* 1917, *ԺԱ. տարի*, *թիւ* 15-789, *էջ* 4:

- 'Concert Draws Crowd,' *երաժշտաքննադատ* Philip Hale-*ի անձնական հաւաքածոյէն չբացայայտուած ամերիկեան լրագիր*, 22 *Յունուար* 1917, *Internet Archive*, https://archive.org/:

- *Գ. Փրօֆֆ-Գալֆաեան*, *«Պրն. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը»*, *Ազգ*, 30 *Յունուար* 1917, *ԺԱ. տարի*, *թիւ* 23-797, *էջ* 3:

## CONCERT DRAWS CROWD

An interesting program of Armenian, French, Russian and English music, given in concert form by A. Chah-Mouradian, tenor, with the participation of Mme. Zabelle Panosian, soprano; Mme Ondricek, violin, and G. Hutchins, flute, drew a large number of hearers at the Hollis Street Theatre, yesterday afternoon.
***Երաժշտաքննադատ*** Philip Hale***-ի անձնական հաւաքածոյէն չբացայայտուած ամերիկեան լրագիր***, 22 January 1917, *Internet Archive*, https://archive.org/

## ՊՐՆ. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Գ. ՓՐՕՖՖ-ԳԱԼՖԱԵԱՆ

Պրն. Ա. Շահ-Մուրատեանի վերջին նուագահանդէսը, որ տեղի ունեցաւ Յունուար 21-ին, Հոլիս թատրոնին մէջ, թէպէտեւ չէր կրնար – զուտ գեղարուեստական տեսակէտով – գերազանցել նախապէս տրուած *բոլոր* նուագահանդէսները, բայց եւ այնպէս, բաւական լաւ յաջողութիւն մըն էր:

Շահ-Մուրատեան, իր տիրական ու անդիմադրելի ձայնովը, անգամ մըն ալ եկաւ մեզ իմացնել թէ՝ մէկ հատիկ է մեր ամենուն Շահ-Մուրատը: Իր երգած կտորներուն մէջ, ես ամենէն աւելի սիրեցի Սէզար Ֆրանքին *Լա Բրօսէսիօն*ը, Կոմիտասին *Կանչէ կռունկ*ը: Շահ-Մուրատեան երգեց նաեւ *Անսկիզբն, էակից* Ծննդեան հարցը, Հայոց հին կրօնական երաժշտութեան այդ հիանալի նմոյշը: Չեմ ցաւիր յիշեցնել որ ամենէն շատ ծափահարուող կտորը չեղաւ այդ փառաւոր օրհներգը, ինչ որ կապացուցանէ թէ, արդարեւ, ամբոխները չեն կրնար գեղարուեստական գնահատութեան դատաւորներ ըլլալ...:

Տիկ. Անտրիչէք, ռուս վարպետ ջութակահարուհին մեզի տուաւ երաժշտական անասելի վայելքներու վայրկեաններ: Բայց, ես վստահ եմ, որ, կիրակի օրը, անոր *բլասթիք* հրապոյրէն տարուողները աւելի՛ բազմաթիւ էին՝ քան թէ անոր զուտ գեղարուեստական տաղանդին հիացողները:

Երգեց նաեւ Տիկ. Զ. Փանոսեան: Տիկինը երգեց Հայերէն, Ֆրանսերէն եւ Անգլիերէն երգեր, որոնց մէջ իր մեծագոյն յաջողութիւնը ունեցաւ *ալաթուրքա Կռունկ* երգովը...: Սրտի անհուն կսկիծո՛վ մըն է, որ կըսեմ ասիկա. որովհետեւ, այն պահուն, երբ ամէն մէկ «Հայ» ըլլալ ուզող Հայ կաշխատի, կը ջանայ իր վրայէն թօթափել՝ թուրքին մեր վրայ ձգած մեծ ու պզտիկ ազդեցութեանց բոլոր պիղծ հետքերը. այն պահուն, երբ մենք պիտի աշխատինք հայ «Հաւատքին» ետ դարձնել՝ «տաճկցած» կամ «տաճկնալու» վտանգին ենթարկուած մեր բոլոր սրբութիւնները. այն պահուն, երբ մենք արդէն ուխտեր ենք ազատագրել Հայ

Երգը իր բոլոր օտարամուտ անճոռնիութիւններէն, ու մեր հայ մտքին ու հայ հոգւոյն սրբազնագոյն զուգաւորումներէն կըսպասենք վաղուան Հայ Երաժշտութեան նուիրական յղացումները..., ճիշդ այն պահուն, ճշմարիտ կըսեմ, շիտակ չէ դեռ շարունակել հին սխալները, շիտակ չէ յաւերժացնել հայ *խանէնտէ*ներու գործած նախճիրները, սա չնաշխարհիկ տրամաբանութեամբ թէ ատկէ կախորժին կոր մեր բոլոր ամբակում աղաները եւ մեր բոլոր *կէս-հայ* աղբարիկները...:

Գալով Տիկ. Զ. Փանոսեանի ձայնին, բաւական քնքուշ է ան – թէպէտ քիչ մը ռնգային – բայց շատ փոքրիկ է՝ դասական կտորներ երգելու համար. անկեղծօրէն պիտի մաղթէի, որ Տիկինը ինզինքը նուիրէր *օբէրէթթա*յի երգեցողութեան մշակումին, որու մէջ մեծ յաջողութիւններ կրնայ ունենալ, նոյն իսկ յաղթանակներ տանիլ:

Քանի մը խօսք ալ՝ երգուած երգերու ընտրութեան մասին: *Հաբրբան*, *Այ այլուղը*, եւ այլն. ասոնք լուրջ եւ *քլասիք* հանգամանք ունեցող նուագահանդէսի մը մէջ երգուելիք բաներ չեն, ճիշդ ինչպէս *Օբրէ տը մա պլօնտ ք'իլ ֆէ պօն տորմիր*ը կամ *Վիէն, բուբուլը*, կամ ինչպէս *Չարէսազըմ*ը, *Սէնի կէօրտիւքճէ*ն, եւ այլն, որոնք՝ գեղարուեստական արժէքի տեսակէտով՝ միեւնոյն մակարդակի վրայ կը գտնուին. ո՛չ աւելի, ո՛չ պակաս: Ասոնք, շա՛տ շա՛տ, ժամանցի, *էյլէնճէ*ի համար սարքուած հանդէսի մը մէջ կրնան երգուիլ ու զուարճացնել ամբոխները, բայց որոնք երբեք պիտի չը կրնային հոգեկան ամենադոյզն գոհացում պատճառել բուն դաստիարակող գեղարուեստի ծարաւիներուն, իսկական եւ ճշմարիտ Երաժշտութեան անշահախնդիր եւ ուխտեալ երկրպագուներուն:

Իսկ եթէ չը կան – եւ իրա՛ւ ալ շատ քիչ կան – լուրջ եւ դասական բնոյթ ունեցող հայերէն աշխարհիկ երգեր, եթէ չը կա՛ն՝ լաւագոյն է չերգել, եւ կամ ընտրել կրօնական գեղեցիկ երգեր, որոնց – փա՛ռք Աստուծոյ – սովը չը կայ, այլ կը բաւէ միայն ընտրել գիտնալը: Եւ վստահ եմ որ Շահ-Մուրատեան կարող է լաւագոյն ընտրութեամբ մը պատրաստել իր նուագահանդէսներուն յայտագիրը – եթէ ուզէ:

Ցամենայն դէպս, պարտաւոր եմ խոստովանիլ թէ՝ իր բոլոր թերութիւններովը հանդերձ՝ նիւթական եւ բարոյական քաջալերանքի արժանի են Շահ-Մուրատեանի պէս աննման Հայ երգիչի մը տուած եւ տալիք բոլոր նուագահանդէսները: Մեր սիրելի հայրենակիցները թող բարեհաճին ըմբռնել – եւ ցուցնել թէ կըմբռնեն – այս ճշմարտութիւնը:

*Ազգ*, 30 *Յունուար* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 23-797, *էջ* 3

## ԿԻՐԱԿԻ, 28 ՅՈՒՆՈՒԱՐ 1917, ՍՓՐԻՆԿՖԻԼՏ

Սփրինկֆիլտի մէջ՝ ժողով-երգահանդէս, նախաձեռնութեամբ Հ. Բ. Ը. Միութեան Սփրինկֆիլտի Տիկնանց Մասնաճիւղին: Տեղի կ'ունենան ատենախօ-

սութիւններ: Մեներգ՝ Շ-Մ.:

- *Ազգ*, 18 *Յունուար* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 13-787, *էջ* 4:

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 27 ՄԱՐՏ 1917, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Washington Irving High School-ին մէջ՝ նուագահանդէս, հովանաւորութեամբ Գաղթային Ընկերակցութեան:

Յայտագիր.

Gaetano Donizetti: *La favorita*, 'O mio Fernando', մեներգ՝ օր. Լուսին Բարակեան (մեծծօ-սոփրանօ)

Giacomo Puccini: *Manon Lescaut*, արիա, մեներգ՝ օր. Լուսին Բարակեան

Փրօֆֆ-Գալֆայեան, *Օրօր*, մեներգ՝ օր. Լուսին Բարակեան

Giacomo Puccini: *Manon Lescaut*, արիա, մեներգ՝ օր. Ռօզա Յակոբեան (սոփրանօ)

Փրօֆֆ-Գալֆայեան, *Արիք հայեր*, մեներգ՝ օր. Ռօզա Յակոբեան

Jules Massenet: *Thaïs*, 'Violà donc la terrible cité' (Athanaëls' invocation), մեներգ՝ Ֆիլիփ Պէննէեան (պարիթոն)

Francesco Paolo Tosti: *Ideale* (Ideal), մեներգ՝ Ֆիլիփ Պէննէեան

Tanara: *Nina*, մեներգ՝ Ֆիլիփ Պէննէեան

Կոմիտաս վարդապետ, *Կռունկ* եւ *Արօր տատրակ*, մեներգ՝ Շ-Մ.

Երկու ֆրանսերէն երգեր, մեներգ՝ Շ-Մ.

Frédéric Chopin: Ballade, դաշնակ՝ օր. Արուսեակ Գոստիկեան

Franz Liszt: *Liebesträume*, դաշնակ՝ օր. Արուսեակ Գոստիկեան

Modest Mussorgsky: (?)*Impromptue passionné*, դաշնակ՝ օր. Արուսեակ Գոստիկեան

Դաշնակ՝ օր. Միլտրէտ Տիլինկ

- *Ազգ*, 26 *Մարտ* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 68-842, *էջ* 4:

- *Դատաւոր*, «*Մեծ նուագահանդէս մը*», *Կոչնակ*, 21 *Ապրիլ* 1917, *ԺԷ. տարի*, *Թիւ* 16, *էջ* 489-499:

## ՄԵԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ՄԸ

ԴԱՏԱՒՈՐ

Մարտ 27-ին իրիկունը Գաղթային Ընկերակցութեան հովանաւորութեան տակ տրուեցաւ շաբաթներէ ի վեր ծանուցուած նուագահանդէսը: Հանդիսատեղին էր Ուաշինկթըն Իրվինկ Հայ Սքուլի ժողովասրահը, Նիւ Եորքի ամենէն

գեղեցիկ սրահներէն մէկը, ուր հաւաքուած էր հազարէն աւելի երկսեռ բազմութիւն մը այդ գեղարուեստական երեկոյթը վայելելու։ Հանդէսին մէջ ներկայ էին բաւական թուով օտարազգիներ, երաժշտասէրներ։ Նկատելի էր մանաւանդ ներկայութիւնը Մ. Թանարայի, Իտալացի յայտնի երաժշտագէտին, որուն ձեռնասունններն են Մեթրոփոլիթըն Օբերայի կարող երգիչներէն շատերը։ Իր այս հանգամանքովը Մ. Թանարա կը համարուի երաժշտութեան ամենէն մեծ հեղինակութիւններէն մէկը։ Հանդէսին մէջ երգուեցաւ անոր հեղինակած երգերէն *Նինա*, որուն համար հեղինակը վարձատրուած է կարեւոր մրցանակով մը։

Վեր. Խ. Կ. Պէննէեան, Գաղթայինի տնօրէնը, բացաւ հանդէսը համառօտ ուղերձով մը եւ բացատրեց երեկոյթին նպատակը։ Ապա օրուան երաժիշտները կատարեցին իրենց պաշտօնը։

Օր. Լուսին Բարակեան, որ համբաւ հանած է Ուստրի *հայ սօսաիթի*ին մէջ իբրեւ կարող քոնթրալթօ, երգեց Տօնիձէթթիի *O միo Ֆէրնանտօ*, *Մանօ Լէսքո*էն Արիա եւ Բրօֆֆ-Գալֆաեանի *Օրօր*ը։ Օր. Բարակեան իր բաղդաւոր ձայնին հետ ունի նաեւ զայն գործածելու շնորհքը։ Մասնաւոր ուշադրութիւն կը գրաւէ նաեւ անոր թափանցիկ արտայայտութիւնը։

Օր. Ռօզա Յակոբեան, քաջածանօթ սոփրանոն, որ Նիւ Եորքի բնիկ զաւակն է, երգեց *Մանօ Լէսքո*էն Արիա եւ Բրօֆֆ-Գալֆաեանի *Արիք հայեր*ը։ Օր. Յակոբեան բարձր, խոր եւ զօրաւոր, ուրիշ խօսքով հզօր ձայն մը ունի։ Երկար եւ համբերատար կրթութեամբ տուած է իր ուժեղ ձայնին հլու քաղցրութիւն եւ թափանցելու ուժ։ Կը մաղթենք մեծագոյն յաջողութիւններ ալ տաղանդաւոր սոփրանոյին։

Պր. Ֆիլիփ Պէննեան, երաժշտութեան համաստեղութեան մէջ նորածագ պարիթոն մըն է։ Կը յուսանք շատ չանցած Մեթրոփոլիթըն Օբերայի բեմին վրայ տեսնել զայն։ Այս է արուեստագէտին նպատակը։ Պր. Պէննեան երգեց Մասէնէի *Ինվօքէյշըն աւ Աթանաէլ*ը, Թօսթիի *Այտիլ* եւ Թանարայի *Նինա*ն։ Անիկա յաջողած է իր ձայնին տալ կնօջական հրապոյր։ Անոր ձայնի առաջին շեշտին հետ իսկ կը սկսի սերտ մտերմութիւն մը ունկնդրին եւ իր միջեւ։ Պր. Պէննեան թատերական է իր արտայայտութեան մէջ։ Անոր ձայնին հետ կը թրթռան անոր ջիղերն ու ամբողջ էութիւնը։

Պր. Շահմուրատեան հայ գաղթականութեան *փէթ*ն է։ Աղլանդեանէ մինչեւ Խաղաղականի եզերքները անոր քաղցրահնչիւն ձայնը արձագանգ տուած է։ Երգեց Կոմիտաս Վարդապետի *Կռունկ*ը, *Արօր տատրակ*ը եւ երկու ֆրանսերէն երգեր։

Պր. Շահմուրատեանի ձայնը իր որակով իրաւցընէ հազուագիւտ տաղանդ մըն է։ Անոր խորութեան կամ բարձրութեան կարծես սահման չկայ։ Որքան բարձրացնէ անիկա իր ձայնը, ունկնդիրներ դեռ աւելին կ'ակնկալեն, որքան իր ձայնին խորը իջնէ եւ մեղմացնէ, ունկնդիրներ կ'ենթադրեն թէ դեռ մեծ մասը

իրենցմէ ծածկեց: Այս պատճառաւ որքան ինք շռայլ ըլլայ, ունկնդիրներ այնքան ագահ կըլլան եւ աւելին կը պահանջեն: Պր. Շահմուրատեան հայ երաժշտութիւնը մեզի մեկնաբանող առաքեալն է: Իր արտայայտութեան մէջ առաւելապէս հայրենասէր է: Կը մոռնայ իր ունկնդիրները եւ իր երգերուն մէջ կ՚ապրի:

Օր. Արուսեակ Գոստիկեան, ամերիկեան շրջանակներու մէջ համբաւ շինող դաշնակի դաստիարակը, նուագեց Շոփէնի *Պէլլըտ*ը, Լիսզթի *Սիրոյ երազ*ը եւ Մուսորկզքիի *Գարնան անհամբերութիւն*ը, յաւէտ ամչկոտ տեսակէն է, կարծես բազմութենէն կը վախնայ: Սպասելու ես որ գրաւուի իր երաժշտութեամբ, այն ատեն կը մոռնայ թէ իր ունկնդիրներն եւ թէ ինքզինք եւ ապա դաշնակի վրայ կը մաքառի իր նիւթին հետ մինչեւ դուրս կուգայ իբրեւ յաղթական վարպետ մը: Օր. Գոստիկեան մատներուն հպումը տիրական է անտարակոյս:

Օր. Միլտրէտ Տիլինկ նուագեց հին օրերուն քնարը, նահապետական, անուշ եւ ներդաշնակ: Արդարեւ բազմութիւնը գնահատեց օրիորդին մատուցած ծառայութիւնը:

Չեմ գիտեր թէ հազարաւոր ունկնդիրները ինչ տպաւորութեան տակ մեկնեցան, սակայն հայ շրջանակներու մէջ յաջորդ օրուան խօսակցութեան նիւթը նախորդ իրիկուան նուագահանդէսն էր եւ առանց բացառութեան ամէնն ալ կը խնդրէին որ այսօրինակ նուագահանդէսներ յաճախ կրկնուէին ժողովուրդին վայելքին եւ կրթութեան համար:

Գովեստ կար կազմակերպողներուն, գովեստ երաժիշտներուն եւ գովեստ մեծ բազմութեան որուն կարգաւոր եւ բարեկիրթ ընթացքը բոլոր հանդէսին միջոցին օտարականներուն ուշադրութիւնը գրաւած էր:
*Կոչնակ*, 21 *Ապրիլ* 1917, *ԺԷ. տարի*, *Թիւ* 16, *էջ* 489-499

## ԿԻՐԱԿԻ, 1 ԱՊՐԻԼ 1917, ՈՒՍՏՐ

Ուստրի Horticultural Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը: Կը մասնակցին՝ Ռօզ Տօնապետեան (մեծծօ-սոփրանօ), Տիկին Անտրիչէք (ջութակ) եւ Միս Ֆլօրի Ֆօրպզ (դաշնակ):

- «*Մեծ նուագահանդէս*», *Ազգ*, 7 *Մարտ* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 53-827, *էջ* 4:
- «*Մեծ նուագահանդէս*», *Կոչնակ*, 17 *Մարտ* 1917, *ԺԷ. տարի*, *Թիւ* 11, *էջ* 353:
- *Ազգ*, 24 *Մարտ* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 67-841, *էջ* 4:

## ՄԱՅԻՍ 1917, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Columbia-ի համար կը ձայնագրէ 8 մեներգ: Բոլոր սկաւառակները (78 rpm) ունին 25 սմ. (10-inch) տրամաչափ: Ահաւասիկ անոնց ցանկը.
1. Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*

Նուագախումբի նուագակցութեամբ
Columbia E 3459; 28014-F (matrix: 58297)
2. *Բամբ որոտան*
Նուագախումբի նուագակցութեամբ
Columbia E 3459; 28014-F (matrix: 58298)
3. *Արաքսի արտասուքը* («Մայր Արաքսի»)
Նուագախումբի նուագակցութեամբ
Columbia E 3460; 28015-F (matrix: 58299)
4. Կոմիտաս վարդապետ, *Սիրուհիս*
Նուագախումբի նուագակցութեամբ
Columbia E 3460; 28015-F (matrix: 58300)
5. *Յիշեսցուք ի գիշերի*
Ջութակի, թաւջութակի եւ դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 3506; 28016-F (matrix: 58315)
6. Մակար Եկմալեան, *Օրհնեալ է Աստուած. Քրիստոս պատարագեալ*
Ջութակի, թաւջութակի եւ դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 3461; 28019-F (matrix: 58316)
7. Մակար Եկմալեան, *Ամէն: Հայր սուրբ*
Ջութակի, թաւջութակի եւ դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 3461; 28019-F (matrix: 58317)
8. *Ուրախ լեր, սուրբ եկեղեցի*
Ջութակի, թաւջութակի եւ դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 3506; 28016-F (matrix: 58318-2)

**ԿԻՐԱԿԻ, 6 ՄԱՅԻՍ 1917, ՈՒՈՒՆՍՈՔԷԹ**

Ուունսոքէթի Park Theatre-ին մէջ՝ նուագահանդէս ի նպաստ Հայաստանի կարօտեալներուն, հովանաւորութեամբ Ուունսոքէթի Նպաստի Յանձնախումբին:

Յայտագիր.

*Տէր կեցո դու զհայս*, մեներգ՝ Շ-Մ.

Georges Bizet: *Les Pêcheurs de perles*, ‘Je crois entendre encore’, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Կանչէ Կռունկ*, մեներգ՝ Շ-Մ.

Jules Massenet: *Werther*-էն, մեներգ՝ Շ-Մ.

Claude Joseph Rouget de Lisle: *La Marseillaise*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Փրօֆֆ-Գալֆայեան, *Նոր օրօր* եւ *Ալէչարչար*, մեներգ՝ օր. Րօզի Տօնապետեան

Macheroni: *For All Eternity*, մեներգ՝ օր. Րօզի Տօնապետեան

Francesco Paolo Tosti: *Good-Bye*, մեներգ՝ օր. Րօզի Տօնապետեան

Johann Dubez, Georg Frideric Handel, Hesselberg, տաւիղ՝ տիկ. Ալիս Տէյվիս Աբրութ

Դաշնակի նուագակցութիւն՝ տիկ. Մէյպըլ Բօլ Սմիթ

- *Ազգ*, 2 *Մայիս* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 98-872, *էջ* 4:

- *Գ. Յ. Ն.*, «*Վունսաքէթի Նպաստօրի Յանձնախումբին նուագահանդէսը*», *Ազգ*, 23 *Մայիս* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 116-890, *էջ* 2-3:

## ՎՈՒՆՍԱՔԷԹԻ ՆՊԱՍՏՕՐԻ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Գ. Յ. Ն.

Մայիս 6-ի Կիրակէն յիշատակելի օր մը եղաւ քաղաքիս հայ գաղութին համար, ինչպէս նաեւ հինգ հարիւրէ աւելի բազմութեան մը համար, բաղկացած գլխաւորաբար ընտիր դասակարգի Ամերիկացիներէ եւ Ֆրանսացիներէ: Ասոնք այդ երեկոյին փութացած էին գովելի հետաքրքրութիւնով մը լեցուիլ քաղաքիս Փարք թատրոնին մէջ, լսելու հայ երաժշտութիւնը, ցաւի ու տառապանքի արտայայտութիւնը, հայ հայրենասիրութեան խանդավառող խրախոյսը, դարերէ ի վեր արդարութեան եւ իրաւունքի համար տանջուող նահատակուող ազգի մը բողոքը, եւ վերջապէս սրտէն վիրաւորուած բայց տակաւին խրոխտ կանգնած Հայաստանին ձայնը:

Առաջին անգամն էր որ Վունսաքէթ առիթը կ'ունենար լսելու հայ կարող օբերա երգիչ մը, Շահ-Մուրատեանի, Բարիզի Ազգային մեծ օբէրայի յաջող երգիչի մը անունը, ինչպէս նաեւ նպաստի յանձնախումբին կանոնաւոր գործունէութիւնը ու ջանքերը պատճառ եղած էին, քաղաքիս բոլոր երաժշտասէր ու հայասէր հասարակութիւնը միասին բերելու Փարք թատրոնին մէջ:

Ժամը 8.30 էր երբ Պրն. Ա. Շահ-Մուրատեան բեմին վրայ երեւցաւ հանդիսականներու բուռն ծափահարութիւններուն մէջ, ու իր առաջին երգը եղաւ Հայու մաղթանքը – *Տէր կեցո՛ դու զհայս*, ուր իր ձայնին դիւթիչ ազդեցութիւնովը, պահ մը լարուած պահեց ուշադրութիւնը բոլոր ունկնդիրներուն, որոնք կարծես անհուն տենչանք մը կ'զգային ըմբռնելու հայ լեզուին մէն մի վանկը մէն մի խաղը որ այնքան յստակօրէն ու հրապուրիչ անուշութիւնով մը կը թռէին Շահ-Մուրատեանի հոգիէն:

Հաւասարապէս գնահատուեցան իր ֆրանսերէն եւ հայերէն երգերը, ինչու որ հոն երաժշտութիւնը միայն կը տիրապետէր, ձայնի գեղարուեստը, որ իր

առանձին լեզուն ունի՝ համաշխարհային լեզու մը՝ հասկնալի բոլոր ազգերէն, իր վանկերովը, խազերովը եւ ներդաշնակ ու հմայիչ ելեւէջներովը:

Այս ամէնը յաղթականօրէն արտայայտեց Շահ-Մուրատեան իր *Տէր կեցո դու զհայս*, *Լէ Փէշէօռ տը փէռլ*, *Կանչէ Կռունկ*, *Վէռթէռ*, *Լա Մարսէյյէզ* երգերովը եւ մանաւորապէս իր նշանաւոր *Հայաստան*ովը, որուն մէջ Շահ-Մուրատեանի ձայնը իր ամբողջ գեղարուեստի նրբութիւնովն ու ուժգնութիւնովը երեւան կուգայ եւ ամէն Հայու սիրտ արդար հպարտութիւնով մը կը լեցնէր, հրաշալի վարպետութիւնով մը կը կառավարէր իր ձայնին ամէն ելեւէջները, հիացում պատճառելով ունկնդիրներուն երբ իր քաղցրահնչիւն ձայնը ամենաբարձր ու ուժգին արտայայտութենէ մը վերջ յանկարծ կարծես մոգական հպումով մը կը փոխուէր մեղմ ու հմայիչ մելոտիի մը, որ հետզհետէ իր քաղցր խազերուն մէջ կը մեղմանար ու կը նուաղէր, մինչդեռ ունկնդիրներ շունչերնին բռնած կը ջանային չկորսնցնել եւ ոչ մէկ խազ որ թէպէտեւ մրմունջի մը փոխուած այլ եւս, բայց տակաւին կը պահէր իր բոլոր հմայքը: Երեւակայութիւնն ալ Շահ-Մուրատեանի արուեստին մէջ մեծ տեղ մը կը բռնէ:

Ոչ նուազ գովեստի ու գնահատութեան արժանացաւ Օր. Րօզ Տօնապետեան որ այդ իրիկունը իր ճոխ ձայնին անուշ ու հմայիչ այդեցութիւնովը անմոռանալի յիշատակ մը թողուց քաղաքիս երաժշտասէր հասարակութեան մէջ: Իր երգերը *Նոր օրօր* եւ *Ալէչարչար*ը Փրօֆֆ-Գալֆաեանի, *Ֆօր օլ Իթըրնիթ*ի Մաշէրօնիի եւ *Կուտ Պայ*ը Թօսթիի այնքան սիրուեցան որ բուռն ու անընդհատ ծափահարութիւններով կրկին ու կրկին բեմ հրաւիրուեցաւ նոր երգերով գոհացում տալու ունկնդիրներու խանդավառ տենչանքին:

Օր. Տօնապետեան իր շնորհալի կեցուածքով ու շարժուձեւով գիտէր զգացում ու արտայայտութիւն դնել իր հրապուրիչ ձայնին մէջ: Երբեմն ուժգին եւ երբեմն մեղմ ու մելամաղձոտ մեղեդիներով, իր ձայնին բարձր թրթռումներուն մէջ իր ունկնդիրներուն հոգիներն ալ կը լեցնէր այն զգացումներով ինչ որ ինք կ'զգար այդ պահուն, ապրելով իր երգին մէջ: Իր ձայնին բնական հրապոյրը գեղեցիկ համակրանք մը ստեղծեց իրեն հանդէպ քաղաքիս երաժշտասէր հասարակութեան մէջ:

Նուագահանդէսին փայլը կ'աւելցնէր քաղաքիս արուեստագիտուհիներէն Միսիս Ալիս Տէյվիս Սբրութ իր ընտիր կտորներովը, Տիւպէզի, Հանտէլի եւ Հէսէլպըրկի գործերէն, որոնք երգեց ու նուագեց իր տաւիղով՝ արուեստագէտի գնահատելի նրբութիւնով մը: Երգերուն կ'ընկերանար Միսիս Մէյպըլ Բօլ Սմիթ դաշնակի վրայ, որ արժանի էր նաեւ գնահատումի իր վարժ նուագածութիւնովը բոլոր հայերէն, ֆրանսերէն եւ անգլիերէն դասական եղանակներուն:

Գեղեցիկ ծաղկեփունջերու արժանացան երեք երաժշտուհիներն ալ կրկնակի ծափահարութիւններով:

Ժամը 10-ին նուագահանդէսը լրացաւ *Մարսէյյէզ*ի եւ *Սթար Սփրինկլէտ*

*Պէննըր* Ամերիկեան ազգային երգովը որուն հանդիսականներ ոտքի կանգնած ունկնդրեցին եւ բուռն ծափահարութիւններու ու խանդավառութեան մէջ սկսեցին մեկնիլ թատրոնէն: Ամէնքին դէմքերուն վրայ որոշ կը տեսնուէր հաճելի երեկոյ մը վայելած ըլլալու գոհ տպաւորութիւնը, ինչպէս նաեւ իրենց խօսակցութիւններուն մէջ կը լսուէր համակրութեան մը անվերապահ արտայայտութիւնը հայ տաղանդին ու ազգին հանդէպ: Ազգային արժանապատուութեան բարոյական ու նիւթական յաղթանակ մըն էր որ իրաւունք կուտար ամէն ներկայ Հայու հպարտութիւն մը զգալու այդ իրիկունը:

Շնորհաւորութեան արժանի է նպաստաւորի Յանձնախումբը որ իր անխոնջ ջանքերովն ու ազդու կանոնաւոր գործունէութիւնովը սարքեց այսպիսի գեղեցիկ ու գնահատելի նուագահանդէս մը որ այնքան պատուաբեր հանդիսացաւ Հայ անունին:

***Ազգ***, 23 ***Մայիս*** 1917, ***ԺԱ. Տարի***, ***Թիւ*** 116-890, ***էջ*** 2-3

**ԿԻՐԱԿԻ, 13 ՄԱՅԻՍ 1917, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Aeolian Hall-ին մէջ՝ Հայ Տիկնանց Կարմիր Խաչի նուագահանդէսը:

Յայտագիր.

*Star Spangled Banner*, զուգերգ՝ տիկ. Անժէլ Տօնճեան (սոփրանօ) եւ տիկ. Hildegard Hoffmann Huss

Ֆրանսերէն եւ հայերէն երգեր, մեներգ՝ տիկ. Զապէլ Փանոսեան (սոփրանօ)

*Կռունկ*, մեներգ՝ տիկ. Զապէլ Փանոսեան

Ֆրանսերէն երգեր, մեներգ՝ տիկ. Hildegard Hoffmann Huss

*Ձայն տուր, ով ծովակ*, մեներգ՝ տիկ. Hildegard Hoffmann Huss

George Frideric Handel: *Largo*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Կռունկ* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Charles Gounod: *Roméo et Juliette*, 'Je veux vivre' (Waltz Song), մեներգ՝ տիկ. Անժէլ Տօնճեան (սոփրանօ)

Conod: *Duet*, զուգերգ՝ տիկ. Անժէլ Տօնճեան եւ Շ-Մ.

Claude Joseph Rouget de Lisle: *La Marseillaise*, զուգերգ՝ տիկ. Անժէլ Տօնճեան եւ Շ-Մ.

Pablo de Sarasate: *Zigeunerweisen*, ջութակ՝ Սուրէն Միւնի

Anton Arensky, Adolf von Henselt եւ Jean Sibelius, դաշնակ՝ օր. Ա. Քոստիկեան

Դաշնակի նուագակցութիւն՝ օր. Վօլլէրշթայն

- 'Concert for Armenians,' *New York Herald*, 14 May 1917, p. 12.
- «***Հայ գաղթականութիւնը***», ***Կոչնակ***, 19 ***Մայիս*** 1917, ***ԺԷ. տարի***, ***Թիւ*** 20, ***էջ*** 623:
- Գ. Վ. Ղազիկեան, «***Շքեղ նուագահանդէս մը Նիւ Եորքի մէջ***», ***Ասպարէզ***, 25 ***Մայիս*** 1917,

*Թ. տարի, Թիւ* 459, էջ 6:

## CONCERT FOR ARMENIANS

To raise funds to aid in getting Armenian political prisoners out of Turkey a concert was held yesterday afternoon in Aeolian Hall under the auspices of the A. R. F. Armenian Red Cross. About $2,600 was realized. Armenian artists with Armenian music entertained a large audience.

A. Chah-Mouradian, a tenor from the Grand Opera of Paris, sang Handel's Largo and Armenian songs, as well as the *Marseillaise*. Mme. Z. Panosian sang coloratura arias. Mme. Hildegard Hoffmann Huss sang French songs and Mme. A. Donchian was heard in the Waltz Song from Gounod's *Romeo and Juliet*, as well as in duets with Mr. Chah-Mouradian. Instrumental soloists were Miss A. Costikyan, who was heard in piano solos by Arensky, Henselt and Sibelius, and S. Sewny, violinist, who played Sarasate's *Ziguenerweisen*. The audience was made up mostly of Armenians.
*New York Herald*, 14 May 1917, p. 12

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Նիւ Եորքի Հայ Տիկնանց Կարմիր Խաչի նուագահանդէսը տեղի ունեցաւ անցեալ Կիրակի՝ Մայիս 13, կէսօրէ յետոյ՝ Էօլեըն Հօլի փառաւոր սրահին մէջ, ուր հոծ բազմութիւն մը փութացած էր յարգելով ճշդապահութեան օրէնքը:

Ժամը 3-ին – թէեւ 30 վայրկեան ուշ – հանդէսը բացուած հռչակուեցաւ, Անգլիերէն լեզուով, ապա Տիկ. Ա. Տօնչեան եւ Տիկ. Հիլտկարտ Հօֆֆման Հուս երգեցին՝ *Star Spangled Banner*-ը Պր. Հիլտկարտ Հօֆֆման Հուսի դաշնակի առաջնորդութեամբը, ու այսպէս իրարու յաջորդեցին օրուան արթիսթները:

Օր. Քոստիկեան դաշնակի վրայ ի յայտ բերաւ իւր կարողութիւնը իր ճարտար մատներովը, նոյնպէս եւ Օր. Վօլլէրշթայն (accompanist):

Տիկ. Փանոսեան Ֆրանսերէն սիրուն կտոր մը երգելէ վերջ սկսաւ Հայերէն երգել, եւ ահա հոս՝ Տիկ. Փանոսեանը աւելի լայն ասպարէզ գտաւ՝ իր տաղանդը արտայայտելու, ինչպէս նաեւ գնահատել տալու իր արուեստը. ան իր *լիրիգ* ձայնովը դիւթեց, յափշտակեց դարիպը, տանելով զայն իր երկիրը՝ ուրուականներ փնտռելու հոն:

Շատերուն համար նորութիւն մը եղաւ Տիկ. Հօֆֆման Հուսի *Ձայն տուր, ով ծովակը*, Հայերէն լեզուաւ: Օ՜, ասիկա փառաւոր դաս մը եղաւ այն բոլոր Հայ արթիսթներուն, որոնք Հայերէն «դժբախտաբար» չեն գիտեր, որով իրենց

կարողութիւնները չեն կրնար արտաբերել եւ սակայն մարմաջ մ'ունին ուրիշ լեզուաւ երգելու:

Պր. Սիւնին՝ բծախնդիր ջութակահար մըն է, որ կարող եղաւ դժուարին կտորներ նուագելու:

Հապա՞ Պր. Շահ-Մուրատեանը, մեր վէթէրան երգիչն է ան. Հայ երգը իր ձայնով կը դասաւորուի, կը գեղեցկանայ ու վերջապէս կ'ազդէ ու կը ներշնչէ: Պր. Շահ-Մուրատեանը կարող է երգել Բարիզի Grand Opéra-յի մէջ, ու մենք հիացանք ու գնահատեցինք՝ երբ լսեցինք իրմէ դասական երգեր, բայց անյագօրէն մտիկ ըրինք *Կռունկ*ը ու *Հայաստան*ը, զի ատոնք *մերն* են:

Հուսկ յետոյ Տիկ. Տօնչեան եւ Պր. Շահ-Մուրատեան *Marseillaise*-ով թնդացուցին Էօլեըն Հօլը, փակելով հանդէսը յիշատակելի տպաւորութեան մը տակ:
***Կոչնակ***, 19 ***Մայիս*** 1917, ***ԺԷ. տարի***, ***Թիւ*** 20, ***էջ*** 623

## ՇՔԵՂ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ՄԸ ՆԻՒ ԵՈՐՔԻ ՄԷՋ

Գ. Վ. ՂԱԶԻԿԵԱՆ

Մայիս 13-ին Նիւ Եորքի ամենագեղեցիկ սրահներէն Իօլեան Հօլին մէջ տեղի ունեցաւ Հ. Յ. Դ. Կ. Խաչի ու կօմիտէի մեծ նուագահանդէսը: Ծովածաւալ երկսեռ բազմութիւն մը գրաւած էր ընդարձակ սրահին բոլոր աթոռները գեղարուեստական այդ աննախընթաց ցերեկոյթը վայելելու համար:

Գեղեցիկ դասաւորումով մը առաջին երգողները Տիկ. Հաֆմըն Հուսս եւ Օր. Վօլլէրսթէյն միասին երգեցին *Սթար սփրէնկըլտ պէնըր*ը, որոնք կրցան ամերիկեան ազգային ոգւով լեցնել այդ ընդարձակ մթնոլորտը, ուր հանդիսականները յոտընկայս ծափերով պատասխանեցին իրենց ներշնչուիլը:

Օր. Ա. Կոստիկեան որ համբաւաւոր դաշնակահարը եղած է ամէն տեղ, այս անգամ եկած էր մասնաւոր փայլ մը աւելցնելու: Տիկ. Ա. Տօնճեան Նիւ Եորքի քաջածանօթ *սօբրանօ*ն, իր բախտաւոր ձայնին հետ ունի նաեւ արտայայտուելու շնորհքը: Ամերիկեան կտորները բուռն ծափեր խլեցին ժողովրդէն: Պրն. Սիւնի Փարիզի *օփէրա*յի նշանաւոր ջութակահարը իր քանի մը կտորներով արժանացաւ երկար ծափերի: Բոլոր հայերը հպարտ զգացին որ այսքան ճանչցուած արթիսթներ ունինք: Տիկ. Զ. Փանոսեան, հայ բեմերու աստղը, որ արձագանգ տուած է ամէն տեղ, մասնաւոր հետաքրքրութիւնով կրցած էր հաւաքել Նիւ Եորքի հայութիւնն ալ: Իր բեմի վրայ երեւիլը ու ժողովրդի խանդավառ ծափահարութիւնները մէկ եղան: Ժողովրդի երկար ծափահարութեան երգեց նաեւ երկու օտար կտորներ ու *Կռունկ*ը: Տիկին Փանոսեան իր այս ամենայաջող երգով իր ունկնդիրները տարաւ երեւակայապէս Հայաստան, լացեց ու լացուց բոլոր

հանդիսականները ի տես բոլոր այս նոր զարհուրանքներուն։

Կարգը ալ Պրն. Շահ-Մուրատեանին – հայութեան պատուաբեր արթիսթինն էր. Պրն. Շահ-Մուրատեան Ֆրանսայէն մինչեւ Ամերիկայի խորերը, ուր Փարիզի Օփէրայի հռչակաւոր երգիչը ճանչցուած է, այնպիսի լաւ եւ հիանալի տպաւորութիւն ձգած է որ բան մը չպիտի կրնամ աւելցնել իր եզակի տաղանդի մասին։ Պրն. Շահ-Մուրատեան թէեւ շռայլ էր իր երգերուն մէջ, բայց ունկնդիրները նոյնքան ագահ էին ու կը խնդրէին իրմէն։ Որքան գեղեցիկ դասաւորում մը սկզբնաւորութեան համար նոյնքան գեղեցիկ վերջաբան մը եկաւ իսկապէս եզակի ընելու այս նուագահանդէսը։

Տիկ. Տօնճեան ու Պրն. Շահ-Մուրատեան միասին երգեցին Քօնօռ-ի *Տուէթ* ու յետոյ *Մարսէյէզը*. ունկնդիրները յոտնկայս պաշտամունքի կեցած կարծես, տարուեցան ֆրանսական ազգ. երգերով ու վերջացնելու պահուն ժողովրդի բուռն ծափահարութիւնները ու ուռռաները սրահը կը թնդացնէին։ Գեղեցիկ գնահատում մըն էր որ նուագահանդէսի կազմակերպողները նուիրեցին մէյ մէկ ծաղկեփունջեր երգչուհիներուն։ Գովելի են կազմակերպողներու եռանդն ու ջանքերը։
***Ասպարէզ***, 25 ***Մայիս*** 1917, ***Թ. տարի***, ***Թիւ*** 459, ***էջ*** 6

**ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՅԻՍ 1917, ՉԻՔԱԿՕ**

Չիքակոյի մէջ՝ նուագահանդէս ի նպաստ Էջմիածինի Գէորգեան Ճեմարանի մէջ սանի մը որդեգրումին, նախաձեռնութեամբ Չիքակոյի Հայ Առաքելական Եկեղեցւոյ Հոգաբարձութեան։ Մեներգ՝ Շ-Մ.։

- «***Ազդեր***», ***Կոչնակ***, 28 ***Ապրիլ*** 1917, ***ԺԷ. տարի***, ***Թիւ*** 17, ***էջ*** 524։
- «***Ազդ***», ***Ազգ***, 5 ***Մայիս*** 1917, ***ԺԱ. տարի***, ***Թիւ*** 101-875, ***էջ*** 4։
- «***Ամերիկահայ կեանք***», ***Ազգ***, 3 ***Յուլիս*** 1917, ***ԺԱ. տարի***, ***Թիւ*** 149-923, ***էջ*** 3։

## ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ԿԵԱՆՔ

ՇԻՔԱԿՕ. – Ազգային գործունէութեան այս տենդոտ օրերուն մէջ Շահ-Մուրատեանի նուագահանդէսը, որ տեղի ունեցաւ Մայիս 20-ին Հայ Առաքելական Եկեղեցւոյ հովանաւորութեան տակ, ու գեղարուեստի երկու հայ ուսանողներու ձեռք բերած յաջողութիւնները Շիքակօցիներուս վրայ թողուցին տեսակ մը կազդուրիչ տպաւորութիւն։

Շահ-Մուրատեանի նուագահանդէսը այս անգամ աւելի յաջող էր։ Աւելի ստուար թիւով ունկնդիրներու ներկայութիւնը որոշ ապացոյց էր թէ Հայ ժողովուրդը կը վարժուի տեսնել գեղեցկութիւնը տոհմիկ երաժշտութեան ու կ՚սկսի

սիրել զայն թարգմանող՝ ցեղին տաղանդաւոր զաւակին՝ Շահ-Մուրատեանի գեղարուեստը:
*Ազգ*, 3 *Յուլիս* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 149-923, *էջ* 3

## ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 30 ՄԱՅԻՍ 1917, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Carnegie Hall-ին մէջ՝ համազգային-հրապարակային ժողով, նախաձեռնութեամբ Ազգային Միութեան Նիւ Եորքի մասնաճիւղին: Ատենախօսութիւն՝ Միհրան Տամատեան, Ստեփան Սապահ-Գիւլեան, Ա. Հանըմեան, Պատ. Հ. Խազօեան եւ Հրաչ Երուանդ: Մեներգ՝ տիկ. Ա. Տօնչեան եւ Շ-Մ.:

- *Ազգ*, 29 *Մայիս* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 121-895, *էջ* 4:

## ԿԻՐԱԿԻ, 22 ՅՈՒԼԻՍ 1917 (ՅԵՐԵԿԸ), ՓՐՈՎԻՏԵՆՍ

Պատարագ Փրովիտենսի Հայ Առաքելական Եկեղեցիին մէջ: Շ-Մ. կը մասնակցի երգեցողութեան մեներգելով *Խորհուրդ խորին*, *Սուրբ սուրբ*, *Ամէն հայր սուրբ* եւ կարգ մը մեղեդիներ:

- *Լրատու*, «*Շահ-Մուրատեան Բրավիտէնսի մէջ*», *Ազգ*, 31 *Յուլիս* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 168-942, *էջ* 3:

- *Ներկայ մը*, «*Ամերիկահայ*», *Պահակ*, 3 *Օգոստոս* 1917, *Է. տարի*, *Թիւ* 57 (412), *էջ* 3:

## ԿԻՐԱԿԻ, 22 ՅՈՒԼԻՍ 1917 (ԵՐԵԿՈՅԵԱՆ), ՓՐՈՎԻՏԵՆՍ

Փրովիտենսի Հայ Առաքելական Եկեղեցիին մէջ՝ երգահանդէս, նախաձեռնութեամբ եկեղեցիի հոգաբարձութեան:

Յայտագիր.

*Տէր կեցո դու զհայս*, *Հերիք ալ հայեր*, *Արօր տատրակ*, *Կանչէ կռունկ* եւ ֆրանսերէն երգեր, մեներգ՝ Շ-Մ.

*Իմ սիրելի զաւակունքս*, *Բամբ որոտան*, ֆրանսերէն եւ անգլերէն երգեր, մեներգ՝ օր. Լուսին Բարակեան (մեծծօ-սոփրանօ)

*Ալէկազ*, *Մայր Արաքսի*, հայկական ժողովրդական երգեր, անգլերէն եւ ֆրանսերէն երգեր, մեներգ՝ տիկ. Հայկանուշ Տէր Մարկոսեան

- *Պահակ*, 20 *Յուլիս* 1917, *Է. տարի*, *Թիւ* 53 (408), *էջ* 4:

- *Ազգ*, 21 *Յուլիս* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 160-934, *էջ* 4:

- *Լրատու*, «*Շահ-Մուրատեան Բրավիտէնսի մէջ*», *Ազգ*, 31 *Յուլիս* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 168-942, *էջ* 3:

- *Ներկայ մը*, «*Ամերիկահայ*», *Պահակ*, 3 *Օգոստոս* 1917, *Է. տարի*, *Թիւ* 57 (412), *էջ* 3:

# ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ԲՐԱՎԻՏԷՆՍԻ ՄԷՋ

ԼՐԱՏՈՒ

Վարդավառի տօնին առթիւ Բրավիտէնսի Հոգաբարձութիւնը Երգահանդէս մը սարքած էր, ուր հրաւիրուած էին երգելու Պրն. Շահ-Մուրատեան, Օր. Բարակեան, Տիկին Տէր Մարկոսեան եւ ուրիշներ։ Պրն. Շահ-Մուրատեան առաւօտեան հանդիսաւոր Ս. Պատարագի երգեցողութեան ալ իր մասնակցութիւնը բերաւ, բայց ի՜նչ մասնակցութիւն, եթէ *աստուածահաճոյ* ըսենք բնաւ սխալած չենք ըլլար, քանզի Բրավիտէնսի Եկեղեցւոյ խորանին առջեւ Շահ-Մուրատեանի տիրական ձայնին թրթռացումները Աստուած անգամ պիտի փափաքէր լսել, մանաւանդ *Ամէն հայր սուրբ*ը խորազդեցիկ, երկնասլաց ու հիանալի էր եւ յաւէտ անջնջելի պիտի մնայ անոր տպաւորութիւնը իմ եւ շատերու մտքի ալքերուն մէջ։ Այդ պահուն Շահ-Մուրատեանի ու Հայաստանեայց Առաքելական Եկեղեցիի արժանիքները կրկնապատկուեցան իմ գնահատմանս համար։ Եկեղեցին ասեղ ձգելու տեղ չիկար, ինչպէս սովորաբար կ'ըսուի, եւ դեռ անխղճաբար մեր կարգ մը կղերները բարեպաշտ ժողովուրդը կը դատապարտեն ըսելով թէ «Հայ ժողովուրդը եկեղեցիէն ուծացեր է»։ Տուր ժողովուրդին լուրջ քարոզ եւ ներդաշնակ ու գեղեցիկ երգեցողութիւն, անիկա միշտ պատրաստ է եկեղեցին լեցնելու. բայց երբ ժողովուրդին լսողութիւնն ու տեսողութիւնը չարաչար կը գործածուի, հոն թող չ'ակնկալուի ջերմեռանդութիւն եւ հաւատք։ Բրավիտէնսի հոգեւոր հովիւը իր քարոզին մէջ յայտարարեց թէ «ասիկա իմ վերջին պատարագս է Բրավիտէնսի մէջ, ես պիտի մեկնիմ, իմ չորս տարուան պաշտօնավարութեանս մէջ ինչ որ կրնայի ընել ըրի» եւ այլն. կը խորհէի թէ շատ մը ուրիշ բաներ կրնար ըսել, բայց բնաւ չէի ակնկալեր որ առանց խղճի խայթի այդպիսի յայտարարութիւն մը ընէր, երբ ամբողջ Բրավիտէնսցին կը վկայէ թէ ինքը այս գաղութին մէջ շատ բան կրնար ընել եւ *չըրաւ*։ Ինչ որ է երթայ բարով, մենք ալ ի վարձատրութիւն իր ծառայութեանց իր անունն ալ կ'աւելցնենք Բրավիտէնս եկող ու գացող կղերներու շարքին վրայ, իբրեւ պաշտօնավարող հովիւ։ Արժանիքի համեմատ վարձատրութիւն։

Երեկոյեան երգահանդէսն ալ խիստ փայլուն անցաւ, Տիկին Տէր Մարկոսեան եւ Օր. Բարակեան պարբերաբար տիրեցին ժողովրդի մտքին ու զգացումներուն իրենց մեղանոյշ ձայնով։ Սակայն Պրն. Շահ-Մուրատեանի *Կանչէ կռունկ*ը գլուխ գործոց մ'էր, ա՜հ, երանի թէ յաճախ առիթը ներկայացուի մեզ լսելու այսպիսի տաղանդներ, սակայն շատ մը կարեւոր ազգայիններ հակառակ իրենց փափաքին չէին ուզած իրենց ներկայութեամբ քաջալերել Հոգաբարձութիւնը եւ տոմսակները ետ վերադարձուցած էին, պարզ անոր համար որ Հոգաբարձութիւնը ժողովրդեան զգացումներուն հակառակ կը գործէ, Առաջնորդարանի եւ

Տեղապահ Սրբազանի հանդէպ հակառակ ընթացք մը բռնելով, եւ մենք շատ արդարացի կը գտնենք ժողովուրդի այս կեցուածքը: Եկեղեցւոյ շահն ու բարեկարգութիւնը իր հոգածութեան առարկայ ընող Հոգաբարձութեան մը համար անըմբռնելի պիտի մնայ այսպիսի ընթացք մը, բայց Բրավիտէնսի Հոգաբարձութեան անդամները դժբախտաբար զուրկ են իրենց կոչումը ըմբռնելու կարողութենէն, քանզի հաւատք չունին իրենց ծառայած գործին համար:
*Ազգ*, 31 *Յուլիս* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 168-942, *էջ* 3

## ԱՄԵՐԻԿԱՀԱՅ

ՆԵՐԿԱՅ ՄԸ

ՓՐԱՎԻՏԷՆՍ. – Յուլիս 22-ին շքեղ նուագահանդէս մը տեղի ունեցաւ Հայ Առաքելական Եկեղեցւոյ մէջ, սարքուած եկեղեցւոյ հոգաբարձութեան կողմէ:

Հակառակ տօթագին օրուան, խուռն բազմութիւն մը լեցուած էր լսելու հայ տաղանդի ցայտուն դէմքերը:

Հանրածանօթ երգիչ պ. Շահ-Մուրատեան հետզհետէ երգեց *Տէր կեցո*, *Հերիք ալ հայեր*, *Արօր տատրակ* եւ ֆրանսերէն երգեր որոնք կը գնահատուէին ներկաներու կողմէն որոտագին ծափահարութեամբ: Անկողմնակալ ըլլալու համար պէտք է ըսել, թէ պ. Շահ-Մուրատեան առաւօտեան ժամերգութեան պահուն աւելի եռանդուն եւ գեղեցիկ երգեց, անոր *Խորհուրդ խորին*, *Սուրբ սուրբ*ը եւայն կարգ մը մեղեդիները եկեղեցւոյ գմբէթը պատռելով դուրսը արձագանգ կը գտնէին:

Յետոյ Օր. Լ. Բարակեան բեմ բարձրացաւ: Յարգելի օրիորդը արուեստագիտուհու տիպար կեցուածքով երգեց ֆրանսերէն, անգլիերէն եւ հայերէն կտորներ, ի մէջ այլոց *Իմ սիրելի զաւակունքս*, *Բամբ որոտան*: Հանդիսականներու բաղձանքին վրայ երգեց քանի մը անգլիերէն հրաշունչ երգեր եւս, որոնք վերջացան յուզումի եւ ծափերու մէջ:

Վերջին երգչուհին էր տիկ. Հայկանուշ Տէր Մարկոսեան, որն իր սիրասուն ձայնով երգեց ֆրանսերէն, անգլիերէն եւ հայերէն երգեր, *Ալէկազ*, *Մայր Արաքսի* եւ կարգ մը ժողովրդական անուշ երգեր որոնք մեծապէս յուզեցին ներկաները: Յարգելի արուեստագիտուհին ստացաւ գեղեցիկ ծաղկեփունջ մը: Իր երգերը բոլորն ալ գնահատուեցան որոտագին ծափերով:

Այս նուագահանդէսին զուտ հասոյթը 200 տօլարի չափ եղաւ:
*Պահակ*, 3 *Օգոստոս* 1917, *է. տարի*, *Թիւ* 57 (412), *էջ* 3

**ԿԻՐԱԿԻ, 30 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1917, ՖԻԼԱՏԵԼՖԻԱ**

Ֆիլատելֆիայի նորակառոյց Հայ Առաքելական Եկեղեցւոյ օծումը։ Երգեցողութեան մեներգներով կը մասնակցի Շ-Մ.։

- *Կ. Սիտալ*, «*Օծումի մը առիթով*», *Կոչնակ*, 20 *Հոկտեմբեր* 1917, *Ժէ. տարի*, *Թիւ* 42, *էջ* 1259։

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ*, 3 *Նոյեմբեր* 1917, *Ժէ. տարի*, *Թիւ* 44, *էջ* 1309-1310։

## ՕԾՈՒՄԻ ՄԸ ԱՌԻԹՈՎ
**(հատուած)**

Կ. ՍԻՏԱԼ

Տասնեւութ դարերու բարեպաշտիկ մրմունջը եւ մեծ ժողովուրդի մը հոգիին անանուն մեղեդին էր որ կը հոսէր Շահ-Մուրատեանի կուրծքէն քա՛ղցր ու լիաթոք, ինչպէս հեքեաթունակ յոյսերգը Մեղրագետին՝ Մուշի պայծառ լուսնկայով մը օծուն, ու դիւթական ինչպէս ծփանքը Վանի ծովակին երբ արշալոյսի համբոյրին տակ նազանքով մը կ'արթննայ։ Ու մենք զմայլեցանք երգովը որ մեր դարաւոր կեանքէն էր ծնած որ մեր հոգիին հետ լուծուած հնչեր է մեզի համար։ Եւ սակայն, օտար ափունք մը պէտք էր մեզի, կարծես, անոր հայեցի դիւթանքը լիովին ապրելու համար։

*Կոչնակ*, 20 *Հոկեմբեր* 1917, *Ժէ. տարի*, *Թիւ* 42, *էջ* 1259

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ
**(հատուած)**

ՖԻԼԱՏԷԼՖԻԱ. – Ժամը 1-ին Գեր. Մուշեղ Արք. Սերոբեան, օծման հանդէսը բացաւ տեղւոյս հովիւ Արժ. Տէր Պետրոս քահանայ Վարդանեանի օգնականութեամբ, եւ ձայնակցութեամբ դպրաց դասին պետ մեծահռչակ երգիչ Տիար Ա. Շահմուրատեանի։

*Կոչնակ*, 3 *Նոյեմբեր* 1917, *Ժէ. տարի*, *Թիւ* 44, *էջ* 1309-1310

**ԿԻՐԱԿԻ, 11 ՆՈՅԵՄԲԵՐ 1917, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Hippodrome-ին մէջ՝ հանրային ժողով ի նպաստ հայ կարօտեալներուն։ Շ-Մ. կը մեներգէ՝ *Բամբ որոտան* եւ *La Marseillaise*։

- 'For Armenian and Syrian Relief,' *The New Armenia*, December 1917, Volume IX, No. 22, p. 367։

## FOR ARMENIAN AND SYRIAN RELIEF

The campaign for Armenian and Syrian Relief throughout Greater New York culminated in a great Mass-Meeting, at the Hippodrome, on Sunday afternoon, November 11. While patriotic and religious music of Armenia and America echoed through the galleries, Mgr. M. J. Lavelle, Dr. John H. Finley, Ex-Ambassador Henry Morgenthau, Senator Henri La Fontaine of Belgium, Rabbi Stephen S. Wise, Bishop David II. Greer and Mooshek Vorperian, an Armenian youth, told of the devastated Armenia, the "Belgium of the East." So deeply did they touch the hearts of a gathering of Americans and Armenians which filled the Hippodrome almost to the doors that approximately $50,000 was pledged in large contributions and about $15,000 more was given in money. More contributions were received after the meeting closed and it was estimated that the total gifts would reach $100,000.

It was said that the American Committee for Armenian and Syrian Relief hoped to raise $35,000,000 this winter to aid the 2,500,000 refugees, of whom 400,000 are children. Mr. Dunaway stated that he had the promise of each one of 1,000 business men in this city to interest three of their friends in order to swell the subscriptions.

After Mgr. Lavelle's prayer that the United States "be spared from the waters of hate and sin which threaten to engulf our nation with the rest of the world," Dr. Finley, who presided, told the big audience that America's purpose in the war was not merely to make the world safe for abstract democracy but also to make it safe for little living children. Senator La Fontaine of Belgium then asked that the United States do for the children of Armenia what it has already done for those of his own land.

The Hon. Henry Morgenthau, formerly Ambassador to Turkey, the next speaker, said that the Turks periodically had invaded Armenia, but could neither subdue nor assimilate the people, and adopted the policy of letting the Armenians store up honey for each fifty years and of then emptying the pot.

"When the present war came," he said, "the Turks needed money badly. The Treasury of Turkey was empty. The pay of the Turkish Army was three months overdue. The Government had to raise money in some way. It hit on the plan of disarming all the able-bodied men of Armenia and of putting them to menial work in the army. The women, children, and other men of the race either were driven into the desert or slaughtered wholesale. In many cases boatloads of Armenians, under pretense of deportation, were taken fifteen miles from their homes and dumped into the Black Sea. Prisoners were released and set to guard the Armenians while they were being driven from their homes into the desert. The men were all disarmed and scattered after they had been robbed. Virtuous Armenian girls were sold to Turkish officers for 80 cents apiece.

“By deportation and massacre the Turks attempted to accomplish in thirty days what Abdul Hamid had been unable to do in thirty years – to exterminate an entire people. But the American missionaries and diplomats would not permit it. The mistake the Mohammedans made was to think they could destroy a nation before the world heard of it.

“The Turks had the audacity to tell me that when they invaded Armenia they made a mistake by allowing the Armenians to continue to live there.*** Turkey has yet to learn that a people cannot be destroyed. Turkey is already paying for her crime. For she is passing out of the comity of nations while Armenia is entering into the comity of the civilized nations of the world. Just because the Armenians stood fast to the Christian faith in a Mohammedan land they were marked for slaughter.

“One of the blessed issues of this war of wars is to me this, that never, never, never, shall Armenia go back to the hands of those Mohammedan assassins!”

Rabbi Stephen S. Wise, declaring that “nothing in all the catalogue of German crimes was blacker than the countenance it gave to the murder of the Armenian nation,” continued:

“After all Armenia and Belgium suffer in the same way and for the same cause. The Mohammedans of the West and the Germans of the East, the Mohammedans of the Rhine and the Prussians of Asia Minor strive to punish Belgium and Armenia for the reason that they were ready to sacrifice themselves for the sake of honor and of faith.

“You will either save Armenia or else you will in part be guilty of the destruction of a people that deserves to live. I am not a Christian. I am a Jew. But I come here to-day as an American to help save the Armenian people. If the 400,000 orphans alive in Armenia to-day are allowed to starve, the Armenian race will be destroyed. Remember that the United States may have 400,000 orphans of its own before the war ends. Make the Armenian children foster children of the American people.

“The Armenian nation has been too long denied freedom, but shall not be denied much longer. When the end of the war comes, the American Government will see that Armenia shall never pass again as a province into the hands of the Turkish Government, assuming that the Turkish Government survive the war.”

Mooshek Vorperian, a seventeen-year-old refugee of Harpoot, told by way of example the story of his own broken home.

“My mother,” the boy said in a high, clear voice that penetrated every corner of the Hippodrome, “spoiled the pretty features of my two sisters in the hope that they would not attract the attention of the Turkish officers. One sister had her hair cut off, and then mother said to her, ‘I can cut off your hair, but I cannot pull out your pretty eyes.’ And then, soon after, a Turkish officer took her away.” The boy said she went to his harem and he has not seen her since.

Mooshek Vorperian was the only male survivor of a group of 3,000 men driven out of Harpoot by the Turks when war was declared. All of the 3,000, including his father, who was a professor at Euphrates College, were killed in a single night.

"We didn't waste any cartridges on the bunch," an officer told the boy the morning after the massacre. "Cartridges cost four cents apiece. We finished that lot with swords and axes. The only bother is that somebody must bury them now."

Mr. Armen Shah-Mouradian, the Armenian tenor of the Grand Opera of Paris, who was awarded the first prize upon his graduation from the Conservatory of Paris, and who made his debut in Faust, sang the Armenian national air and the *Marseillaise*.

Then, Rabbi Wise appealed to the audience for contributions. Among large donations were $20,000 from the Armenian National Union, $5,000 from an anonymous Armenian, $2.500 from A. & M. Karageuzian, $2,000 from the Women's Armenian Relief, $1,000 from Bishop Greer, $800 from Irene du Pont of Wilmington, Del., and $100 each from Rabbi Wise and Mgr. Lavelle.

*The New Armenia*, December 1917, Volume IX, No. 22, p. 367-368

## ՆՈՅԵՄԲԵՐ (ՎԵՐՋ), ՖԻԼԱՏԵԼՖԻԱ

Ֆիլատելֆիայի մէջ՝ նուագահանդէս, կազմակերպութեամբ եկեղեցւոյ հոգաբարձութեան։ Կը մեներգեն՝ Շ-Մ., Զապէլ Փանոսեան (սոփրանօ) եւ ուրիշներ։

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ*, 3 *Նոյեմբեր* 1917, *Ժէ. տարի*, *Թիւ* 44, *էջ* 1310։

## ՈՒՐԲԱԹ, 14 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1917, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Aeolian Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Ֆրանսերէն եւ անգլերէն երգեր, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Խորհուրդ խորին* եւ երկու երգեր, մեներգ՝ Շ-Մ.

Charles Gounod: *Faust*-էն, զուգերգ՝ տիկ. Անժէլ Տօնճեան (սոփրանօ) եւ Շ-Մ.

Թաւջութակ՝ պր. Marco Peyot

Երգեհոն՝ պր. Զ. Ն. Մաթէոսեան

Դաշնակի նուագակցութիւն՝ օր. Ս. Վօլէրսթըն

- 'Some December Concerts,' *The New York Times*, 2 December 1917.
- 'Calendar of Concerts,' *The New York Times*, 2 December 1917.
- *Կոչնակ*, 8 *Դեկտեմբեր* 1917, *Ժէ. տարի*, *Թիւ* 49, *էջ* 1458։
- 'Concerts of the Week,' *The Sun*, 9 December 1917, section 3, p. 3.
- 'Programs of the Week,' *The New York Times*, 9 December 1917, p. X5.
- 'Armenian Singer Heard,' *The Sun*, 15 December 1917, p. 9.

## PROGRAMS OF THE WEEK

A. Chah Mouradian, and Armenian singer, has a song recital on the Aeolian Hall schedule next Friday evening.
*The New York Times*, 9 December 1917, p. X5

## ARMENIAN SINGER HEARD
## A. CHAH-MOURADIAN, BARYTONE, GIVES CONCERT

A. Chah-Mouradian, a local Armenian barytone, gave his annual concert last night in Aeolian Hall. He was assisted by Mme. Angel Agnes Donchian, soprano; Marco Peyot, cello, and Zenas Matteossian, organist.

The programme was long and contained groups of solo numbers for each artist. The recital giver's selections included French and English songs and a song by Komitas Wardapet called *Khorhourt Khorine*, which Mr. Chah-Mouradian sang in Armenian and with an organ accompaniment.

He was also heard in two Armenian folk songs arranged by Wardapet. With Mme. Donchian he sang a duet from Gounod's *Faust*. The audience evinced much interest in the programme as a whole.
*The Sun*, 15 December 1917, p. 9

### ՇԱԲԱԹ, 15 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1917, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի *Կոչնակ* շաբաթաթերթը կը տպագրէ Շ-Մ.ի յօդուածը՝ «Հայ երաժշտութիւնը»:

**- Ա. Շահ-Մուրատեան**, «***Հայ երաժշտութիւնը***», ***Կոչնակ***, 15 ***Դեկտեմբեր*** 1917, ***ԺԷ. տարի***, ***Թիւ*** 50, ***էջ*** 1472-1473:

### ԵՐԵՔՇԱԲԹԻ, 1 ՅՈՒՆՈՒԱՐ 1918, ՊՈՍԹՈՆ

Պոսթոնի Jordan Hall-ին մէջ՝ նուագահանդէս, նախաձեռնութեամբ Ազգանուէր Հայուհեաց Ընկերութեան:

Յայտագիր.

*Կանչէ կռունկ*, *Արօր տատրակ*, *Սաթենիկի երգը* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Jules Massenet: *Élégie* ('Ô, doux printemps d'autre fois'), մեներգ՝ Շ-Մ.

Claude Joseph Rouget de Lisle: *La Marseillaise*, մեներգ՝ Շ-Մ.

*Քէլէր ցոլէր*, *Լորիկ*, *Ի բիւր ձայնից*, *Ո՜հ, ինչ անուշ*, *Իմ չինարի եար* եւ *Nymphs*

*and Fauris*, մեներգ՝ տիկ. Հայկանուշ Տէր Մարկոսեան

*Գնաց աշուն* եւ *Հաբրբան*, զուգերգ՝ տիկ. Հայկանուշ Տէր Մարկոսեան եւ Շ-Մ.

Charles Gounod: *Roméo et Juliette*-էն, զուգերգ՝ տիկ. Հայկանուշ Տէր Մարկոսեան եւ Շ-Մ.

Եօթը դասական կտորներ, ջութակ՝ տիկ. Օնդրիչէկ

- «*Շքեղ նուագահանդէս*», *Ազգ*, 27 *Նոյեմբեր* 1917, *ԺԱ. տարի*, *Թիւ* 240-1014, *էջ* 4։

- «*Շքեղ նուագահանդէս*», *Պահակ*, 30 *Նոյեմբեր* 1917, *Է. տարի*, *Թիւ* 91 (446), *էջ* 4։

- *Գեղապաշտ*, «*Հայուհեաց ազգանուէր ընկերութեան նուագահանդէսը*», *Փիւնիկ*, *Փետրուար* 1918, *Ա. տարի*, *Թիւ* 2, *էջ* 103-104։

## ՀԱՅՈՒՀԵԱՑ ԱԶԳԱՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ԳԵՂԱՊԱՇՏ

Կիւտէնեանի մասնագիտական նուագահանդէսէն յետոյ նոյնքան մասնագիտական երգահանդէս մը տեղի ունեցաւ Հայուհեաց Ազգանուէր Ընկերութեան անունով, յունվ. 1, 1918-ին, Բօստընի լաւագոյն սրահներէն Ճորդըն Հօլին մէջ։

Շահ-Մուրատեան քանի անգամներ երգած է Բոստընի մէջ. այս անգամ ալ ան առանցքը կը կազմէր երգահանդէսին։ *Կանչէ կռունկ*, *Արօր տատրակ*, *Սաթենիկի երգը*, *Հայաստան* անգամ մըն ալ լսեցինք Շահ-Մուրատէն, որ իր երբեմն մեղմ ու թաղծանուշ, երբեմն հզօր ու որոտացող ձայնով երկիւղած մթնոլորտ մը ստեղծեց։ Ան տիկին Տէր Մարկոսեանի հետ իբր *դուէտ* երգեց *Գնաց աշուն*, *Հապըր պան* եւ *Romeo and Juliette*, եւ միակ դասական կտորը որ որպէս սօլօ երգեց Շահ-Մուրատ Մասէնէի *Élégie*ն էր, առանց հաշուելու *Մարսէյյէզ*ը, որ տաղանդաւոր երգիչին բերանին մէջ  կատարեալ ուժգնութեան մէջ որոտումի պէս կը գոռար։

Շահ-Մուրատ երկու տարիէ ի վեր Ատլանտեանէն Խաղաղական իր համբաւը արդարացնող տաղանդը արդէն պտտցուցեր է. ան ծանօթ է բոլորին եւ սիրուած բոլորէն։ Ամերիկահայութիւնը գործնականապէս արդէն կ'ապացուցանէ իր համակրանքը, երբ իր անունը իբր երաշխիք ընդունելով թատրոն կը փութայ, հոգ չէ թէ երթայ լսել ինչ որ լսած է նախապէս։ Երգերը արուեստագէտ երգիչի մը բերանին մէջ երբէք չեն կորսնցներ իրենց քաղցրութիւնը, երբէք չեն հիննար, իսկ Շահ-Մուրատի արուեստագէտի տաղանդը պսակւած է Փարիզի Օփերայէն, պսակ մը, որ ամէն ճակատ չի կրնար բարձրանալ։

Առանց կրկնելու այն բառերը, որոնք Շահ-Մուրատի մասին ըսւած են ամէն

տեղ, ուր որ հայ արուեստագէտը երգած է եւ Ամերիկայի մէջ ալ, ուր երկու տարիէ ի վեր ան իր համբաւը կը պահէ իր բարձրութեան վրայ, մենք ոչինչ աւելի արժէքաւոր բան կրնայինք ըսել քան մէջբերել *Լը Փըթի փարիզիէն*ի քանի մը տողերը, որ Փարիզի Օփերայի բեմին վրայ իր *դէպյու*ին առիթով գրուած են.-

«Շահ-Մուրատեան, հայ երիտասարդ *տէնօր*ը, որ Կոնսէրվատուարի մէջ շատ փայլուն յաջողութիւններ ցոյց տուաւ իբր ուսանող, իր *դէպյու*ն ըրաւ Փարիզի Մեծ Օփէրայի բեմին վրայ, Ֆաուստի դերին մէջ։ Երիտասարդ արուեստագէտը աւելի քան արդարացուց այն բարձր յոյսերը, որ ներշնչած էր հանրային մրցումներու մէջ ցոյց տուած իր յատկութիւններով։ Անոր ձայնը, որ արտասովոր գրաւչութիւնով օժտուած է եւ ոսկի հնչիւն շեշտով արեւելեան քաղցրութիւն մը կը զգենու, հանրութեան ականջին ամենէն աւելի հաճելի թուեցաւ։ Պ. Շահ-Մուրատեան ինքնավստահութիւնով եւ գեղարուեստական ճաշակով գիտէ քաջ կերպով կառավարել իր ձայնը։ Անոր հաճելի երեւոյթը եւ գրաւիչ շարժուձեւերը իրեն համար կ’ընձեռեն բեմական յատկութիւններ, որոնք փորձառութեան շնորհիւ աւելի ու աւելի պիտի կատարեգործուին։ Անոր յաջողութիւնը շատ ապշեցուցիչ էր» (*Կոչնակ*)։

Տիկին Տէր Մարկոսեան, որ ամերիկահայ բեմերու վրայ քիչ անգամ կ’երեւի եւ որ այս նուագահանդէսին մէջ բերած էր իր մասնակցութիւնը, անպայման միւզիկի արուեստը կը հասկնայ յաջող կերպով. տիկինին ձայնը, բնութեան այդ շնորհը, զօրաւոր չէ. բայց յայտնի կերպով մարզուած է։ Ձայնի այդ մեղմութիւնը աւելի զգալի էր *դիւէտ*ներուն մէջ մանաւանդ, երբ Շահ-Մուրատեանի հզօր ձայնի տիրականութեան մէջ գրեթէ կը կորսուէր։ Մեր կարծիքով, Շահ-Մուրատեանի ձայնին հետ տիկին Տէր Մարկոսեանի ձայնը ներդաշնակ համադրոյթ մը չեն կրնար կազմել, որքան ալ միւզիկի արուեստը կատարեալ ըլլայ անոնց մէջ։

Տիկին Տէր Մարկոսեան երգեց նաեւ *Քէլէր ցոլէր*, *Լորիկ*, *Ի բիւր ձայնից*, *Ո՜հ, ինչ անուշ*, *Իմ չինարի եար* եւ *Nymphs and Fauris*։

Հայերէն երգերու մէջ որոշապէս զգալի է տիկինին ճիգը ձայնին տիրելու համար։ Մինչդեռ անգլիերէն երգը եւ օտար եղանակի վրայ յարմարցուած երգեր – ինչպէս *Ի բիւր ձայնից*ն ու *Ո՜հ, ինչ անուշ*ը – այնքան հեշտ ու անճիգ կ’երգէր տիկինը, միւս հայերէն երգերուն մէջ որոշ ճիգ մը ունէր։ Այդ արդիւնքն է հայ եւ օտար եղանակներու մեծ տարբերութիւններուն, որ օտար միւզիկի մէջ կիրթ ու մարզուած ձայն մը առանձին ճիգերու կը կարօտի հայկական միւզիկի մէջ։

Բառերու արտաբերումը, որ լրացուցիչ մաս մըն է երգի մը յաջողութեան եւ թողելիք տպաւորութեան, տիկին Տէր Մարկոսեանի երգերուն մէջ յստակ ու յաջող էին։

Տիկին Տէր Մարկոսեան անպայման իր տեղն ունի ամերիկահայ երգիչներուն մէջ։

Ազգանուէրի երգահանդէսը, ինչպէս կ’երեւի մեր թուած երգերէն, բացառապէս

կարելի է հայկական անուանել:

Տիկին Օնդրիչէկ, ռուս յայտնի ջութակահարուհին էր միայն, որ իր եօթը դասական կտորներով օտար բայց քաղցր շունչ մը խառնեց Ճօրդըն Հօլի մէջ ստեղծուած տաք մթնոլորտին մէջ:

Տիկին Օնդրիչէկ բօստընահայ նուագահանդէսներու մէջ փնռուած դէմք մը դարձած է արդէն: Եթէ միւզիկը գերազանցապէս սիրտի լեզուն է քան միտքի, տիկ. Օնդրիչէկ ամբողջ սիրտ ու զգացումէ կերտուած ջութակահար մըն է: Ան կ'ապրի ամէն մէկ թրթռում ու այդ ապրումն ալ կը հաղորդէ ունկնդիրներուն:
*Փիւնիկ, Փետրուար* 1918, *Ա. տարի, Թիւ* 2, *էջ* 103-104

**ԿԻՐԱԿԻ, 6 ՅՈՒՆՈՒԱՐ 1918, ՖԻԼԱՏԵԼՖԻԱ**

Նուագահանդէս, նախաձեռնութեամբ Հայ Ազգային Միութեան Ֆիլատէլֆիայի Մասնաճիւղին: Կը մասնակցին՝ օր. Լուսին Բարակեան (մեծծօ-սոփրանօ), Շ-Մ., օր. Ռիչարտ (երգչուհի) եւ պր. Ռաթէյ (ջութակ):

- *Թղթակից*, «*Նուագահանդէս մը եւ ընկերական հաւաքոյթ մը*», *Ազգ*, 2 *Փետրուար* 1918, *ԺԲ. տարի, Թիւ* 15-1043, *էջ* 3:

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ՄԸ ԵՒ ԸՆԿԵՐԱԿԱՆ ՀԱՒԱՔՈՅԹ ՄԸ

ԹՂԹԱԿԻՑ

Ֆիլատէլֆիա. – Յունուար 6-ի կիրակին Ֆիլատէլֆիայի Հայ տարեգրութեան գեղարուեստական բաժնին համար յիշատակելի օր մ'էր: Այդ օրը, Հայ Ազգային Միութեան Ֆիլատէլֆիայի Մասնաճիւղը հրաւիրած էր Հայ գաղութը ըմբոշխնելու երաժշտական վայելք մը: Յայտագիրը ճոխ էր, ներկայ խուռն բազմութիւնը այդ մասին գանգատ մը չունէր կը յուսամ. հոն կային Ամերիկահայ գեղարուեստի փայլուն աստղերէն երկուքը, Օր. Լուսին Բարակեան եւ Պրն. Ա. Շահ-Մուրատեան, նաեւ Ամերիկացի յայտնի սոփրանօ՝ Միս Րիչարտ եւ Վիգթօր Թօքինկ Մրշին Քըմփընիի Փրիմիըր Ուայօլինիստ Մր. Րաթէյ: Օր. Բարակեան Ֆիլատէլֆիոյ Հայութեան համար հաճելի յայտնութիւն մը եղաւ, իր Մեցցօ Սօփրանօ ձայնը ունի ամէն ճկունութիւն, կորով, ինչպէս նաեւ քաղցրութիւն, օրիորդը ո՛եւէ բեմի համար պարծանք կրնայ ըլլալ: Երանի՜ թէ քիչ մ'աւելի հետեւած ըլլար Հայ երաժշտութեան եւ Հայկական շեշտով երգէ, այն ատեն Հայերս աւելի պիտի գնահատէինք իր գեղեցիկ ձայնը: Պրն. Շահ-Մուրատեան ամենուս ծանօթ է եւ չեմ ուզեր իր գովեստն ընել որովհետեւ իր առոյգ ու կիրթ ձայնը լսել մեծ հաճոյք կը պատճառէ ամենուս ալ: Միս. Րիչարտ Ամերիկուհին հաճած էր իր ծառայու-

թիւնը ձրի ի սպաս դնել մեզ, իր կիրթ աղու եւ զօրաւոր Սօփրանօն հաճելի էր ամեն ականջի: Մր. Րաթէյ իբր վարժ ջութակահար մը, կարողացաւ իր աղեղը գործածել ու տալ այն զգացումները նուրբ նուագներու, որոնք միայն կարող ջութակահարներ կրնան այդ չափ ազդուօրէն արտայայտել: Նուագահանդէսը փակուեցաւ *Մարսէլէզ*ով եւ *Սթար Սփէնկլըտ Պէնըր*ով: Այդ նուագահանդէսի յաջող կազմակերպումը կարելի եղաւ Պրն. Կարապետ Շահինեանի, Հ. Ա. Միութեան ներկայացուցիչներու յանձնախումբի ատենապետին, անխոնջ ջանքերովը:

Ընկերական հաւաքոյթը Հ. Բ. Ընդհանուր Միութեանն էր, ուր ընկերական այնքան տաքուկ մթնոլորտ մը ստեղծուեցաւ, եւ անդամները դժուարաւ կրցան բաժնուիլ սրահէն: Ասիկա Բարեգործականին տարեկան անդամական ժողովն էր ուր Բարեգործականին տեղական Մասնաճիւղի տեղեկատուութիւնը տեղի ունեցաւ եւ վիճակով հրաժարեալ 4 անդամներուն տեղ ուրիշներ ընտրուեցան: Այդ հաւաքոյթին պարենաւորման մասը ամբողջովին հայթայթած էր Բարեգործականի Տիկնանց Օժանդակը եւ ա՛յնքան յաջող կերպով եւ կարգով ու կանոնով հիւրընկալեց ներկաները որ ամեն գովեստի եւ գնահատութեան արժանի է:

Բարեգործականի Տիկնանց Օժանդակը մօտաւորապէս տարի մ'առաջ կազմուեցաւ հինգ անդամուհիներով, այժմ ունի 20-է աւելի անդամուհիներ, վարչութիւնը լռիկ ու մնջիկ գործեց այդ տարուայ շրջանին Բարեգործականի տեղւոյս Մասնաճիւղի կողքին: Իր գործունէութեան վերջինը նամակով անդամներուն դիմելն էր, որ Ծնունդի առթիւ փոխան անպէտ նուէրներու երկրի կարօտելոց յատկացնեն այդ գումարները եւ այդպիսով հարիւր տօլարի մօտ գումար մը կարողացած էին հաւաքել: Մասնաւոր գնահատութեան արժանի են վարչութեան Ատենապետուհին՝ Տիկին Տիգրանուհի Գապազճեան եւ քարտուղարը՝ Տիկին Արաքսի Գալաճեան:

Տօքթ. Գրիգոր Պօհճելեան այդ երեկոյթին մէջ Բարեգործականին նուիրեց հարիւր տօլար՝ իր ամուսնութեան առթիւ:
***Ազգ***, 2 ***Փետրուար*** 1918, ***ԺԲ. տարի***, ***Թիւ*** 15-1043, ***էջ*** 3

**ՅՈՒՆՈՒԱՐ 1918, ԱՐԵՒԵԼԵԱՆ ԱՓ**

Երգահանդէսներ ԱՄՆ-ի Արեւելեան Ափի քաղաքները:
- «***Արմենակ Շահ-Մուրատեան***», ***Ասպարէզ***, 11 ***Յունուար*** 1918, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 492, ***էջ*** 5:
- «***Տեղական***», ***Ասպարէզ***, 25 ***Յունուար*** 1918, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 494, ***էջ*** 5:

## ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Հաստատ աղբիւրէ լուր ստացած ենք որ տաղանդաւոր Հայ երգիչ Արմենակ

Շահ-Մուրատեանը մեզի հիւր պիտի ըլլայ Յունվ. 15-ի մօտերը: Նա այժմ զբաղուած է Իսթի շրջաններու մէջ համերգներ կազմակերպելով եւ նշանաւոր Հայ երգիչը մի քանի անգամ ալ ելած է, Ամերիկայի Թուրքիոյ նախկին դեսպան Մօրկընթոյի առաջարկով, Հայ-Քուրտական Յանձնախումբի ժողովներուն մէջ: Մեծ յաջողութիւն ունեցած է Նիւ Եորքի Օտիթօրիըմին մէջ, ուր հազարաւոր հայեր եւ ամերիկացիներ զինքը ընդունած են մեծ ոգեւորութեամբ:

Շուտով պիտի ունենանք մեզ հետ *Հաբրպան*ի, *Բամբ որոտան*ի, *Հայաստան*ի աննման երգիչը: Լօս-Անճլըսի եւ Սան-Ֆրանսիսքոյի մէջ յատուկ ամերիկացի մէնէճըրներ պիտի կարգադրեն համերգներ, Ամերիկացիներու ներկայացնելու համար Հայ երգը:

Հիմակուանէ պատրաստուեցէք զինքը լսելու: Պատեհութիւնը մի՛ փախցնէք:
***Ասպարէզ***, 11 ***Յունուար*** 1918, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 492, ***էջ*** 5

## ՏԵՂԱԿԱՆ

Յայտնի երգիչ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆը, որ վերջին օրերս հոս կը սպասուէր, նամակով կը տեղեկացնէ որ ստիպուած է տասը օր եւս ուշանալ, Իսթի շրջաններում քանի մը Քանսըրթ (Համերգ) տալու համար: Յուսով ենք որ մեր սիրելի երգիչը շուտով տեղս կը ժամանի եւ մենք բաղդը կունենանք անգամ մը եւս լսելու իր քաղցր ձայնը:
***Ասպարէզ***, 25 ***Յունուար*** 1918, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 494, ***էջ*** 5

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 17 ՅՈՒՆՈՒԱՐ 1918, ՍԱԼԸՄ**

Սալըմի մէջ՝ նուագահանդէս: Կը մասնակցին՝ Շ-Մ. եւ տիկ. Հայկանուշ Տէր Մարկոսեան:

**-** ***Մեսրոպ***, «***Ամերիկա***», ***Տաւրոս***, 28 ***Փետրուար*** 1918, ***Ա. տարի***, ***Թիւ*** 9, ***էջ*** 141:

## ԱՄԵՐԻԿԱ

ՄԵՍՐՈՊ

ՍԷԼԸՄ. – Յունուար 17-ին նուագահանդէս մը տրուեցաւ, որուն կը մասնակցէին Պ. Շահ-Մուրատեան եւ Տիկին Տէր Մարկոսեան, բայց ես յստակ գաղափար մը չկրցայ կազմել թէ այս հանդէսը ի՛նչպէս կազմակերպուած էր, որովհետեւ տեղւոյս Հայանպաստ Յանձնախումբին ամենաեռանդուն անդամ-

ներէն Rev. Hart Branson քանի մը հրապարակային ժողովներու մէջ, եւ նոյնպէս նուագահանդէսի բացման ժամանակ յայտարարեց, որ հանդէսը Սէլըմի եւ Բիպօտիի հայերուն կողմէ կը տրուէր, որոնք բոլոր ծախքերը հոգացած եւ ամբողջ հասոյթը Հայ կարօտեալներուն յատկացուցած էին, միեւնոյն յայտարարութիւնը կը տեսնուէր մի քանի օրէ իվեր Սէլըմ Նիւզի մէջ, իսկ նուագահանդէսի տոմսակներուն վրայ, եւ տեղական թերթի մը մէջ տրուած յայտարարութենէն կ՚իմանայինք որ հանդէսը կը տրուէր տեղւոյս Ամերիկեան Յանձնախումբին հովանաւորութեամբ, ինպաստ հայ կարօտեալներու: Այժմ կ՚իմանանք թէ նախաձեռնարկները քանի մը Հայեր եղած են, նպատակ ունենալով հայ տաղանդը ծանօթացնել ամերիկացիներուն, բայց կը հաստատուի թէ մինչեւ անգամ ծախքերը չեն կրցած գոցել: Միւս կողմէ Ամերիկեան Յանձնախումբը կ՚սպասէ որ նուագահանդէսին ամբողջ հասոյթը իրեն յանձնուի, եւ այսպէս ստեղծուած է կացութիւն մը որ բաւական անհաճոյ է մեզ համար:
***Տաւրոս***, 28 ***Փետրուար*** 1918, ***Ա. տարի***, ***Թիւ*** 9, ***էջ*** 141

**ԿԻՐԱԿԻ, 10 ՓԵՏՐՈՒԱՐ 1918, ՖՐԷԶՆՕ**

Կը ժամանէ Ֆրէզնօ:

- «***Արմենակ Շահ-Մուրատեան մեզ Հետ***», ***Ասպարէզ***, 15 ***Փետրուար*** 1918, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 497, ***էջ*** 1։

## ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՄԵԶ ՀԵՏ

Կիրակի առաւօտեան Ֆրէզնօ ժամանեց հայերուս սիրելի երգիչ Ա. Շահ-Մուրատեան: Մօտ օրերս նա համերգ (քօնսըր) մը պիտի տայ եւ հաւատացած ենք որ ամէն հայ, ով անկեղծօրէն կը գնահատէ իր հարազատ տաղանդը, կը փութայ իր ներկայութեամբ պատուելու հայ երաժշտութիւնը եւ օգտուելու անկէ: Մոռնալու չենք որ նման պատեհութիւն քիչ կըլլան, մանաւանդ որ այս անգամին մեր տաղանդաւոր երգիչը երգերու նոր եւ հետաքրքիր շարան մը ունի՝ հայերէն, ռուսերէն, ֆրանսերէն:

Բարի գալուստ կը մաղթենք իրեն եւ յաջողութիւն՝ իր ձեռնարկներու մէջ:
***Ասպարէզ***, 15 ***Փետրուար*** 1918, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 497, ***էջ*** 1

**ԿԻՐԱԿԻ, 24 ՓԵՏՐՈՒԱՐ 1918, ՖՐԷԶՆՕ**

Ֆրէզնոյի White Theater-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

*Քրիստոս պատարագեալ*, *Քէլէ, քէլէ*, *Հաբբբան*, *Հայաստան*, *Օրօր*, *Արօր տատրակ*, *Marseillaise* եւ Tchaikovsky-էն երգ մը, մեներգ՝ Շ-Մ.

Charles Gounod: *Sérénade*, ջութակ՝ Վահան Կէֆէրեան

Մեներգ՝ օր. Աղաւնի Մարգարեան

Դաշնակ՝ Ի. Թաունըր

- *Ասպարէզ*, 22 *Փետրուար* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 498, *էջ* 1։

- «*Տեղական*», *Ասպարէզ*, 22 *Փետրուար* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 498, *էջ* 3։

- *Ա. Միքայէլեան*, «*Ա. Շահ-Մուրատեան*», *Ասպարէզ*, 22 *Փետրուար* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 498, *էջ* 4։

- *Սիսակ*, «*Ամերիկահայ կեանք*», *Ազգ*, 9 *Մարտ* 1918, *ԺԲ. տարի*, *Թիւ* 30-1030, *էջ* 3։

- *Ճ. Պ.*, «*Շահ-Մուրատեանի նուագահանդէսը*», *Ասպարէզ*, 11 *Մարտ* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 499, *էջ* 2։

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Ա. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

Մեզ հետ է նշանաւոր երգիչ Ա. Շահ-Մուրատեանը, որ Քալ. Այցելած է իր համերգները տալու Ֆրէզնօ, Լ. Անճըլէս, Սան Ֆրանսիսքօ եւ Րիվըր-Սայտ։

Փետրվար 24-ին, կիրակի երեկոյեան, Հուայթ թատրոնին մէջ, տեղի պիտի ունենայ իր առաջին համերգը։

Մենք չէ որ պիտի գովենք Շահ-Մուրատեանը, որ հայ բեմի պարծանքներէն է, որ իր տաղանդով հիացրած է հայերուն եւ բազմաթիւ օտարականներու։ Անիկա արդէն յայտնի է իր արուեստով եւ իր դպրոցով։

Ինչ որ յատկանշական է Շահ-Մուրատեանի մօտ – այդ, իր տաղանդէն դուրս, իր *Հայեցի* ըլլալն է։

Շատ դիւրութեամբ կրնար օտարանալ, նետուիլ ֆրանսիական մթնոլորտի մէջ, մոռնալ այն, ինչ որ հայկական է եւ աւելի լաւ պայմաններու մէջ գտնուիլ, քան է։

Շահ-Մուրատեանը մնաց հայ՝ իր ձայնով, իր ոգիով, իր սովորութեամբ եւ այդ պատիւ կը բերէ իրեն։

Այդ իր յատկութիւնը չպէտք է մնայ իր մօտ, այլ ամէն կերպ աշխատելու է որ *օտարներն ալ* զգան, հասկնան եւ սիրեն մեզ։

Հազար անգամ կրկնուած իրողութիւն է, որ Ֆրէզնոյի ամերիկացիներն այնքան ալ լաւ կարծիք չունին հայերուս մասին, որովհետեւ, հաւանօրէն, միշտ մեր բացասական, շահախնդրական կողմերը տեսած են։ Պէտք է շտկել այդ թիւր կարծիքը։ Եւ ատոր գլխաւոր միջոցներէն մէկն ալ մեր տաղանդի, մեր շնորհքի,

մեր երգի ցուցադրութիւնն է։

Օգտուեցէք այդ պատեհութենէն եւ ձեզ հետ բերէք նաեւ ձեր *ամերիկացի բարեկամները*։ Տուէք անոնց մի-մի տոմս, զոհաբերեցէք ձեր մէկ, երկու տոլարները, բերէք ձեզ հետ Շահ-Մուրատեանի համերգին՝ լսելու հայ երաժշտութիւնը, տեսնելու հայ տաղանդը եւ այն ատեն է միայն որ ամերիկացիները իրենց կարծիքը կսկսին փոխել, մտերմանալ, սիրել մեզ եւ իրենց օժանդակութիւնն ալ հասցնել։

Ահա պատեհութիւն։

Ամէն անգամ խօսելու չենք մեր ցաւերի, տանջանքի, կոտորածի, հալածանքի մասին։ Բաւական է որքան մենք ողբացինք, պաղատեցինք, լացինք։ Վերջ պէտք է տրուի մուրացկանութեան։

Անհրաժեշտ է որ մենք ցուցադրենք մեր ընդունակութիւնները, մեր տաղանդը, ապրելու մեր կամքը եւ արժանանանք յարգանքի եւ ո՛չ թէ արգահատանքի։ Մի՛ մոռնաք ձեր ամերիկացի բարեկամներուն, ձեր հարեւան այգեպաններուն, ձեր ծանօթ վաճառականներուն, ձեզի հետ գործ ունեցող պաշտօնեաներուն։

Այդ մեր հարցի պրօպագանդայի ամենէն լաւ եւ նպատակայարմար ձեւերէն մինն է։

Բացի այդ – պէտք է գալ Շահ-Մուրատեանին լսելու եւ մանաւանդ *Կռունկ*ն ու *Հայաստան*ը։

Շահ-Մուրատեանի *Հայաստան*ը, ես գիտեմ, քանի մը ուծացեալ հայերի ճամբի բերած է։

Շիքակոյի մէջ հայ մը, որ 25-30 տարի շարունակ հեռու մնացած է եղել հայկական շրջանակներէն, միշտ օտարներու հետ, միշտ փախուստ տուած է ազգային զոհաբերութիւններէ ու տեսակ մ'ալ ատելութեամբ լեցուած էր դէպի իր ցեղակիցները, պատահմամբ ներկայ կըլլայ Շահ-Մուրատեանի համերգին (քանսըրթ), կը լսէ *Հայաստան*ը, մեր սիրելի երգիչի խրոխտ եւ միաժամանակ քնքոյշ սիրով լեցուած ձայնն... ու կզգայ որ լաւ է հայ ըլլալ, հայ մնալ եւ հայ մեռնիլ։

Այդ իր փոփոխութիւնն արտասուալից աչքերով կը պատմէ իր բարեկամներուն եւ կուխտէ սիրել հայութիւնն ու ապրիլ անոր հետ։

Այդ մի օրինակն ալ բաւական է, որ Ֆրէզնոյի եւ շրջակայքի հայերն շտապեն՝ գեղարուեստական հաճոյք ստանալու, ինչպէս նաեւ հայրենասիրական զգացումները խորացնելու դիտումով, Շահ-Մուրատեանի քանսըրթին։ Բայց այդ մենք պարտաւոր ենք *գնահատել* մեր երգիչներուն, տաղանդներուն եւ հնարաւորութիւն տալ անոնց, աւելի յառաջդիմելու, աւելի զարգանալու համար։ Պէտք է պահել, պահպանել անոնց, որովհետեւ այդ պատիւ կը բերէ հայութեան եւ անոր դաստիարակուած ըլլալուն։

Երրեակ այս հանգամանքներով մենք մոռնալու չենք Փետրվար 24-ի կիրակի երեկոն։

Գալու ենք բոլորս, բազմութեամբ եւ բերելու ենք մեր ամերիկացի բարեկամներուն։

Տեսնենք թէ որքան ընդունակ ենք մեր այդ պարտքը կատարելու։
*Ասպարէզ*, 22 *Փետրուար* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 498, *էջ* 4

## ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ԿԵԱՆՔ

ՍԻՍԱԿ

ՖՐԷԶՆՕ. – Երգիչ Շահ-Մուրատեանն ալ վայելեցինք ամսոյս 24-ին, Հուայթ թատրոնին մէջ։ Հարկ չիկայ ներբողներ ընել անոր մասին, այն Ամերիկացիները որ ներկայ էին, անոր մասին տեղական թերթերու մէջ մասնաւոր գրութիւններով վեր հանեցին տաղանդաւոր երգիչի ձայնին բազմակողմանի առաւելութիւնները։

Երգեց նաեւ Օր. Մարգարեան։ Օրիորդը խիստ թրթռուն ու կրթուած անուշ ձայն մը ունի, եթէ շարունակէ, ապահովաբար գեղեցիկ ապագայ մը ունի։

Վահան Կաֆէրեան ջութակի վրայ ածեց Gounodի *Serenade*ը խիստ յաջող կերպով։ Մեծ ապագայ կը խոստանայ եթէ կարողանայ Եւրոպայի մեծ վարպետներու քով աշակերտել։

Հանդէսը իրական յաջողութիւն մըն էր։

Մօտ ատենէն Ազգային Միութիւնը կը պատրաստուի շքեղ հանդէսով մը տօնել Մեծն Վարդանի յիշատակը։

Հ. Ս. Ռ. Կուսակցութեան տեղւոյս Ակումբը կը պատրաստուի դասախօսական-համակրական ժողովներ ու երեկոյթներ սարքել։ Կը յուսանք թէ հանրութիւնը պիտի գնահատէ այս հանրօգուտ ձեռնարկները։
*Ազգ*, 9 *Մարտ* 1918, *ԺԲ. տարի*, *Թիւ* 30-1030, *էջ* 3

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Ճ. Պ.

Հակառակ օդին աննպաստ ըլլալուն 700-ի մօտ երկսեռ բազմութիւն մը անցեալ կիրակի երեկոյ ներկայ էր Հուայթ թատրոնին մէջ լսելու մեծանուն հայ երգիչը, պրն. Ա. Շահ-Մուրատեան։ Ունկնդիրներու մէջ էր ամերիկացի երաժըշտասէրներու ընտրեալ խմբակ մը՝ որ հաւասար եռանդով ծափահարեց հայ արուեստագէտին մատուցած երգահանդէսը։

Շահ-Մուրատեան իր իսկական դերի մէջ էր. – *Քրիստոս պատարագեալ*ին

մէջ ոգեշունչ մեղեդիով, *Քէլէ՛, քէլէ՛*ին մէջ զուարթ ու կենսախինդ, *Օրօր*ին մէջ խրոխտ ու մարտահրաւէր, *Արօր տատրակ*ին մէջ հմայիչ ու հովուերգակ, *Մարսէյիէէզ*ին մէջ ամպորոտ եւ դիւցազնական, *Հայրըպան*ին մէջ սիրանոյշ ու դիւթական, իսկ *Հայաստա՛ն, երկիր դրախտավայր*ին մէջ երկնային բարձունքները խուզարկող եւ անմահութեան լուսապսակը յօրինող, սաւառնող ոգին:

Վերացումի եւ հոգեկան յափշտակութեան այդ երկու ժամերը շա՛տ արագ սահեցան: Մենք չէինք ուզեր բաժնուիլ այդ իրիկուան մթնոլորտէն: Խանդավառ ծափահարութիւններու տարափով մը ունկնդիրները կրկին ու կրկին կը հրաւիրէին երգիչը որ տեղի տալով երգեց *Բա՛մ փորոտան*ը սարսուռ մը անցնելով պայքարի հաւատացող հայ սրտերէն:

Թէ ի՛նչ ընդունելութիւն գտաւ Շահ-Մուրատեան ներկայ եղող ամերիկացի արուեստագէտներէն՝ *Րիփըպլիքըն* օրաթերթի հետեւեալ գնահատականը կարելի է մէջ բերել ազգային հպարտութեամբ մը.-

«Երէկ իրիկուն, Հուայթ թատրոնին մէջ, ես այնպէս զգացի որպէս թէ տարօրինակ երկիր մը ինկած էի: Սակայն երբ յայտագիրը սկսաւ, գտայ որ երաժշտութիւնը այն կռուանն է որուն վրայ կը միանան բոլոր ցեղերը – անիկա աշխարհիս տիեզերական լեզուն է որ ազգութիւն չի ճանաչեր: Օղակը աւելի ամրապինդ դարձաւ երբ մանկամարդ օրիորդ մը երեւցաւ բեմին վրայ եւ երգեց ամերիկեան քայլերգը:

«Ա. Շահ-Մուրատեան նուագահանդէսին հոգին էր: Անիկա յայտագրին վրայ կերեւայ որպէս *թէնօր* Փարիզի Կրանտ Օփէրայէն եւ արդարեւ սովորականէն բարձր յայտագիր մըն էր զոր նա երգեց մեզի: Անիկա ունի ուժգին եւ քաղցր ձայն մը եւ իր ունկնդիրները յարաճուն թափով մը լարուած կը պահէ: Անոր Չայքօվսքիէն երգած կտորը հիանալիօրէն մատուցուեցաւ: Անիկա այս կտորին մէջ անհուն դրամատիկական զօրութիւն արտաբերեց: Ջերմագին ծափահարութիւններու իբր պատասխան երգեց չորս ուրիշ կտորներ ալ՝ որոնց մէջն էր *Մարսէյէէզ*ը ֆրանսերէնով:

«Իր բնիկ լեզուով երգած երգերը իրենց մելամաղձոտութեամբը մեծապէս ազդեցին ինծի: Անոնք չարչարուած ժողովուրդի մը մեղեդիները կը թուէին ըլլալ. թէեւ իմ շուրջ գտնուողներու ժպիտներէն, վստահ եմ թէ, երկրորդական եղանակներէն ոմանք բաւական զուարթացուցիչ էին:»

Նուագահանդէսին իրենց համակրելի մասնակցութիւնը բերին Վահան Կէֆէրեան իր ջութակահարութեամբը, օր. Աղաւնի Մարգարեան իր քաղցր երգեցողութեամբը եւ Ի. Թաունըր իր համեստ դաշնակահարութեամբը:

Պ. Շահ-Մուրատեան մտադիր է ասկէ անցնիլ հարաւ եւ Լօս Անճըլէսի, Փասատինայի ու Րիվըրսայտի մէջ համերգներ տալէ յետոյ վերադառնալ կրկին Ֆրէզնօ՝ ուր ամերիկեան գեղարուեստասէրներու նախաձեռնութեամբ պատրաստութիւններ կը տեսնուին տեղւոյս մեծ ժողովասրահին մէջ, ժողովրդական

գներով հրապուրել հասարակութիւնը որ առիթ մը ունենայ լսելու եւ գնահատելու հայ երգիչը։
*Ասպարէզ*, 11 *Մարտ* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 499, *էջ* 2

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 26 ՓԵՏՐՈՒԱՐ 1918, ՖՐԷԶՆՕ**

Ֆրէզնոյի Հ. Յ. Դ. Ակնունի գրադարան-ընթերցարանին մէջ՝ Շ-Մ.ի դասախօսութիւնը։ Նիւթ՝ *Հայ երաժշտութեան մասին*։

- «*Տեղական*», *Ասպարէզ*, 22 *Փետրուար* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 498, *էջ* 3։
- *Ունկնդրող*, «*Դասախօսութիւն*», *Ասպարէզ*, 11 *Մարտ* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 499, *էջ* 3։

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ՈՒՆԿՆԴՐՈՂ

Ֆրէզնօ. – Հայ նշանաւոր երգիչ պ. Ա. Շահ-Մուրատեանը իր դասախօսութիւնը կարդաց Հ. Յ. Դ. Ակնունի Գրադարան-Ընթերցարանի սրահին մէջ։ Երկսեռ հասարակութիւն մը եկած էր՝ ունկնդրելու հայ երաժշտութեան մասին տեղեկութիւններ։

Դասախօսը, որ իր նիւթին տէրն էր, տուեց մեզ մեր եկեղեցական, ժողովրդական երգերու մասին հետաքրքրական տեղեկութիւններ։ Մատնանշեց որ մեր երաժշտութիւնն ունեցել է արաբական, թիւրքական ազդեցութիւն... սովորական երգերի մէջ եւ մանաւանդ քաղաքներում։

Իսկական հայ երաժշտութիւնը փնտռելու է Հայաստանցու մօր զաւառ, որ անեղծ է մնացել զանազան ազդեցութիւններէ։

Մեծ գովեստով խօսեց հայ եկեղեցական շարականներու մասին, վերլուծեց անոնց խորհրդաւոր էութիւնն ու ձայնական կառուցուածքը, ըսաւ որ շատ յաճախ մենք այդ շարականները փոփոխութեան ենք ենթարկում... յարմարցնելով թրքական եղանակներուն։

Յարգելի դասախօսը շեշտեց որ մեր երաժշտութիւնը դեռ ուսումնասիրուած չէ եւ որ Գէորգ Դ. Կաթողիկոսի օրով սկսաւ այդ աշխատանքը որ Պոլսէն հրաւիրեց Թաշճեանը՝ նօտագրելու մեր շարականները։ Այս վերջինն ալ քանի մը տաղանդաւոր երիտասարդներ հաւաքեց իր շուրջ, որոնց մէջ նշանաւոր էր Եկմալեանը, որ ձայնագրեց եւ ներդաշնակեց պատարագի արարողութիւնները։ Ապա շեշտեց Կոմիտաս վարդապետի կատարած խոշոր բանասիրական աշխատանքները, Կարա-Մուրզայի քառաձայն երգեցողութիւնն տարածելը։

Մերթ ընդ մերթ օրինակներով նա կերգէր եւ տարբերութիւնները ցոյց

կուտար իր ըսածներուն:

Եղան բազմաթիւ հարցեր, որոնց պ. Շահ-Մուրատեանը պատասխանեց բաւարար կերպով:

Ժողովուրդն յոտնկայս ծափահարեց եւ շնորհակալութիւն յայտնեց իր տաղանդաւոր երգիչին:

Գիշերուայ ճեպընթացով Շահ-Մուրատեանը ճամբայ ելաւ դէպի Լ. Անճըլէս:
*Ասպարէզ*, 11 *Մարտ* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 499, *էջ* 3

### ԵՐԵՔՇԱԲԹԻ, 26 ՓԵՏՐՈՒԱՐ 1918, ՖՐԷԶՆՕ - ԼՈՍ ԱՆՃԵԼՈՍ

Գիշերուայ ճեպընթացով Ֆրէզնոյէն կը մեկնի դէպի Լոս Անճելոս:

- *Ունկնդրող*, «*Դասախօսութիւն*», *Ասպարէզ*, 11 *Մարտ* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 499, *էջ* 3:

### ՇԱԲԱԹ, 9 ՄԱՐՏ 1918, ԼՈՍ ԱՆՃԵԼՈՍ

Լոս Անճելոսի Gamut Club House-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը ի նպաստ հայ կարօտեալներուն, նախաձեռնութեամբ Լոս Անճելոսի Հայանպաստ Ընկերակցութեան:

- «*Լօս Անճըլէս*», *Ասպարէզ*, 8 *Մարտ* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 500, *էջ* 1:

- 'Concert Will Aid Armenian Relief,' *Los Angeles Evening Herald*, 8 March 1918, Vol. XLIII, No. 109, section 2, p. 1.

## CONCERT WILL AID ARMENIAN RELIEF

As a benefit for the Armenian war sufferers, the Armenian Aid society of Los Angeles will give a concert tomorrow evening at the Gamut club house, 1041 South Hope street. Native Armenian songs will be sung by Chah-Mouradian, a tenor. The singer was graduated from the Paris conservatoire, where he obtained the first prize. For years he sang in Paris grand opera. He is a native of Armenia. His folk songs will introduce a new music to Los Angeles. Several other artists will appear. All proceeds will go to Armenian relief.
*Los Angeles Evening Herald*, 8 March 1918, Vol. XLIII, No. 109, section 2, p. 1

### ԿԻՐԱԿԻ, 17 ՄԱՐՏ 1918, ՖՐԷԶՆՕ

Fresno Auditorium-ին մէջ՝ նուագահանդէս ի նպաստ Տարօնի որբերուն, նախաձեռնութեամբ Տարօն-Տուրուբերան Հայրենակցական Միութեան: Կը

մասնակցին՝ Շ-Մ., տիկ. Լուսիա Նշանեան (մեներգ), օր. Մէրի Անուշեան (մեներգ), օր. Սաթենիկ Մաղաքեան (դաշնակ), Ճէյմս Տէր Յակոբեան իր նուագախումբով:

- «*Հայկական մեծ նուագահանդէս. Ա. Շահ-Մուրատեան պիտի երգէ*», *Ասպարէզ*, 8 *Մարտ* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 500, *էջ* 1:

- *Ասպարէզ*, 15 *Մարտ* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 501, *էջ* 1:

- «*Տեղական*», *Ասպարէզ*, 22 *Մարտ* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 502, *էջ* 5-6:

## ՏԵՂԱԿԱՆ

Տարօն-Տուրուբերան Հայրենակցական Միութեան սարքած երգահանդէսը, անցեալ կիրակի իրիկուն, տեղւոյս Օտիթորիըմին մէջ, մեծ յաջողութիւն մը եղաւ թէ գեղարուեստական եւ թէ նպաստի տեսակէտներէն:

900-ի չափ երկսեռ բազմութիւն մը ժամանակին գրաւած էր աթոռները: Յայտագիրը ճոխ էր եւ երգիչ Ա. Շահ-Մուրատեանը այդ հանդէսի յաջողութեան միակ գրաւականը եղաւ:

Ճէյմս Տէր Յակոբեանի նուագախումբը հանդէսին փայլը կաւելցնէր: Օր. Մէյրի Անուշեան եւ Տիկ. Լուսիա Նշանեան մեներգներով գրաւեցին հանդիսականները: Օր. Սաթենիկ Մաղաքեան հիանալի ճկունութեամբ մը դաշնակի վրայ նուագեց Տ. Չուխաճեանի *Լէպլէպիճի Հօռ-Հօռ*ը, բուռն ծափահարութեան արժանանալով:

Աւելորդ է ըսել թէ Ա. Շահ-Մուրատեան իր ձայնին թովիչ ազդեցութեամբը անգամ մըն ալ ապրեցուց մեզ հայրենի տխրանուշ յիշատակներովը:
*Ասպարէզ*, 22 *Մարտ* 1918, *Ժ. տարի*, *Թիւ* 502, *էջ* 5-6

### ԱՊՐԻԼ 1918, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Columbia-ի համար կը ձայնագրէ 8 մեներգ: Բոլոր սկաւառակները (78 rpm) ունին 25 սմ. (10-inch) տրամաչափ: Ահաւասիկ անոնց ցանկը.
1. Կոմիտաս վարդապետ, *Ալագեազ սարն ամպել ա / Խնկի ծառ*
Ջութակի, թաւջութակի եւ դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 3929; 28022-F (matrix: 84315)
2. Կոմիտաս վարդապետ, *Կուժն առա / Գնա, գնա*
Ջութակի, թաւջութակի եւ դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 4201; 28020-F (matrix: 84316)
3. Կոմիտաս վարդապետ, *Հով արէք, սարեր ջան*
Ջութակի, թաւջութակի եւ դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 4009; 28018-F (matrix: 84341)

4. *Կիլիկիա* («Երբոր բացուին»)
Ջութակի, թաւջութակի եւ դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 4009; 28018-F (matrix: 84342)
5. *Խաւարել եմ*
Columbia E 4010
6. *Թող չերգէ բլբուլ*
Columbia E 4010

**ՄԱՅԻՍ ԿԱՄ ՅՈՒՆԻՍ 1918, ՀԱՅՎԸՐՀԻԼ**

Հայվըրհիլի մէջ՝ նուագահանդէս, նախաձեռնութեամբ Հայվըրհիլի Ազգային Միութեան տեղական մասնախումբին։ Կը մասնակցին՝ Շ-Մ., տիկ. Տէր Մարկոսեան եւ երկու ամերիկացի արուեստագէտներ։

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ*, 8 *Յունիս* 1918, Vol. XVIII, *թիւ* 23, *էջ* 2186-2187։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Հէյվըրհիլի Ազգային Միութեան տեղական մասնախումբի նախաձեռնութեամբ նուագահանդէս մը տրուած է որուն ներկայ գտնուած է քաղաքին ամբողջ հայ գաղութը, եւ Ամերիկացիներէ ալ ընտրուած բազմութիւն մը, որոնց մէջ էին քաղաքին նախկին քաղաքապետը, երէց մը, քաղաքին մեծ պանքաներէն մէկին նախագահը, եւ զինուորական բարձրաստիճան պաշտօնեայ մը։ Այս զինուորական պաշտօնեան ուղերձ մը խօսեցաւ եւ բարձր գովեստներով դրուատեց հայ ցեղը իր ընտիր յատկութեանցը համար։ Հանդէսին երաժշտական մասը լրացուցին Պ. Ա. Շահ-Մուրատեան, Տիկին Տէր Մարկոսեան եւ ուրիշ երկու ամերիկացի արթիսթներ։
*Կոչնակ*, 8 *Յունիս* 1918, Vol. XVIII, *թիւ* 23, *էջ* 2186-2187

**ԿԻՐԱԿԻ, 2 ՅՈՒՆԻՍ 1918, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Carnegie Hall-ին մէջ՝ ժողով Հայ Ազգային Միութեան օրուան առիթով։

Յայտագիր.

Ատենախօսութիւններ՝ պր. Տիքիճեան, տոքթ. Մ. Ս. Գաբրիէլեան, պր. Հրաչ Երուանդ եւ Վեր. Կ. Մ. Մանավեան

Արտասանութիւն՝ օր. Արշալոյս Քիւրքճեան

Դաշնակ՝ օր. Ա. Թագւորեան

Մեներգներ՝ Շ-Մ. եւ Ռօզա Յակոբեան (սոփրանօ)
Խմբերգ՝ Նիւ Եորքի Choral Union երգչախումբ
- «*Հայ գաղթականութիւնը*», *կոչնակ*, 8 *Յունիս* 1918, Vol. XVIII, *թիւ* 23, *էջ* 2186։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

**Յունիս 2 Կիրակի օրը.** Հայ Ազգային Միութեան մեծ օրն էր։ Ամէն Հայ կը սպասէր այդ օրուան գալստեան եւ քաղաքին հռչակաւոր Քարնիկի Հօլը ծայրէ ի ծայր, վեր ու վար լեցուած էր երկսեռ Հայերու հոծ բազմութեամբ։ Ժողովին յայտագիրը ճոխ էր, եւ կարգադրութիւններն ալ գովելի։ Ժողովին կ'ատենապետէր՝ իր բարեսիրութեամբը ծանօթ, Տիգրան Խան Քէլէկեան։ Եւ անուշ էր ներկաներուն վրայ տպաւորութիւնը՝ տեսնել հայ վաճառական մը բեմին վրայ իբրեւ տենապետը կարծեւոր հրապարակային ժողովի մը։ Ատենախօսներն էին Պր. Տիքիճեան, Տոքթ. Մ. Ս. Գաբրիէլեան, Պր. Հրաչ Երուանդ եւ Վեր. Կ. Մ. Մանավեան, որոց ամէնն ալ օրուան հրատապ խնդիրներուն շուրջը լուրջ տեսութիւններ պարզեցին եւ ժողովուրդին թէ խորհիլ տուին եւ թէ զգալ։ Գողտրիկ արտասանութիւն մը ըրաւ Օրիորդ Արշալոյս Քիւրքճեան, նուագեց Նիւ Եորքի հայուհիներէն վարպետ դաշնակահար Օր. Ա. Թագւորեան, եւ անուշ մեներգներ երգեցին Պր. Ա. Շահ-Մուրատեան եւ Օր. Ռօզա Յակոբեան։ Նաեւ երկու երգեր երգեց քաղաքիս Քօրըլ Եունիըն անուանուած երգիչ խումբը։ Աւելորդ է ըսել թէ այսպիսի գեղեցիկ յայտագիր մը ներկայացնող հանդէս մը մեծ գոհունակութիւն պատճառեց բոլոր ներկաներուն։ Հանդէսին ամենէն կարեւոր մասը հանգանակութիւնն էր, որուն արդիւնքը տրուած տեղեկութեանց նայելով 125,000 տոլար եղած է, որուն մէջ է նաեւ հայ հարուեստներու առանձինն խոստացած գումարը։ Յանձնախումբը բնականաբար ամէն ջանք պիտի թափէ աս գումարը հասցնել 160,000-ի որն է Ազգային Միութեան կողմէն Նիւ Եօրքի յատկացուած բաժինը։
*Կոչնակ*, 8 *Յունիս* 1918, Vol. XVIII, *թիւ* 23, *էջ* 2186

**ԿԻՐԱԿԻ, 16 ՅՈՒՆԻՍ 1918, ՈՒԵՍԹ ՀՈՊՈՔԸՆ**

Ուեսթ Հոպոքընի Adamson High School-ի ժողովասրահին մէջ՝ հայոց հանգանակային ժողով։
Ատենախօսներ՝ Զատիկ Մաթիկեան, Հրաչ Երուանդ եւ Վեր. Խ. Կ. Պէննէեան։
Մեներգ՝ Շ-Մ.։
- «*Հայ գաղթականութիւնը*», *կոչնակ*, 29 *Յունիս* 1918, Vol. XVIII, *թիւ* 26, *էջ* 2259։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Ուէսթ Հօպօքընի Հայոց հանգանակային ժողովը տեղի ունեցաւ Յունիս 16 Կիրակի օրը Էտըմսըն Հայ Սքուլի մեծ ժողովասրահին մէջ ուր հաւաքուած էր հազարի մօտ երկսեռ բազմութիւն մը: Օրուան ատենախօսներն էին Պրք Զատիկ Մաթիկեան, Հրաչ Երուանդ եւ Վեր. Խ. Կ. Պէննէեան: Ժողովը ժամը 3-ին սկսաւ եւ տեւեց իրիկուան մինչեւ ժամը 8-ը: Քաջածանօթ հայ երգիչ Պր. Ա. Շատ-Մուրատեան ինչպէս ուրիշ ժողովներու, այս հանգանակութեան ժողովին մէջ ալ իր ծառայութիւնը ի սպաս դրաւ Ազգ. Միութեան այս ձեռնարկին, եւ ժողովուրդը ուրախացուց եւ ներշնչեց իր հայրենաշունչ երգերովը: Բուն հանգանակութիւնը սկսաւ ժամը չորսին եւ տեւեց մինչեւ ժամը 8-ը, եւ հանգանակուած գումարը հասաւ 15,000-ի, մնացած 10,000-ն ալ յանձնախումբը պիտի գոյացնէ առանձին դիմումներով: Այս հանգանակութեան միջոցին մէկ քանի տգեղ երեւոյթներ կային, որ հաւանական է թէ ուրիշ տեղեր ալ կ'երեւին: Մէկը այն է որ նուիրատուներէն շատեր իրենց նուէրին չափը կ'որոշէին ուրիշներուն տուածին հետ բաղդատելով: Ե՞րբ պիտի սորվի մեր ժողովուրդը ուրիշներէն բոլորովին անկախ՝ զուտ պարտականութեան զգացումէն շարժեալ տալ իր նուէրը՝ եւ ոչ թէ տուողէն ու չտուողէն ազդուելով: Իսկ միւս տգեղ երեւոյթն ալ աս էր, որ երբ մէկը իր նուէրը կը յիշէր՝ եւ ուրիշներ կը խորհէին թէ աւելի պէտք էր տար, ժողովուրդին մէջ աղմուկ մ'է կը փրթէր «քի՛չ է քի՛չ է» եւ մարդուն զգացումներուն վրայ ճնշելով՝ աւելցնել կուտային իր նուէրը: Աս երեւոյթը չէ թէ միայն տգեղ է այլ վնասակար ալ, քանզի յաջորդ հանգանակութեան ժողովի մը չպիտի սիրէին ներկայ ըլլալ *քիչ է քիչ է* աղմուկին ենթարկուողներ: Երանի՜ թէ աւելի բարեվայել եւ բարեկիրթ ձեւեր որդեգրենք մեր ժողովները վարելու:
*Կոչնակ*, 29 *Յունիս* 1918, Vol. XVIII, *Թիւ* 26, *էջ* 2259

### ՀԻՆԳՇԱԲԹԻ, 4 ՅՈՒԼԻՍ 1918, ՈՒԱՇԻՆԿԹՈՆ

Ուաշինկթոնի մէջ՝ Ամերիկայի Ազատութեան Տարեդարձի հանդիսաւոր նշում, մասնակցութեամբ տարբեր ազգերու ներկայացուցիչներուն:

Հայկական թափօրին կը մեներգեն՝ տիկ. Զապէլ Փանոսեան (սոփրանօ) եւ Շ-Մ.:

- 'World in "4th fetes,' *The Washington Post*, 4 July 1918, p. 2.

- *Հայ Ազգային Միութեան Ֆիլատելֆիայի Մասնաճիւղ*, «*Հայկական Թափօրը Ուաշինկթընի մէջ*», *Ասպարէզ*, 2 *Օգոստոս* 1918, *ԺԱ. տարի*, *Թիւ* 521, *էջ* 2:

- «*Հայկական Թափօրը Ուաշինկթընի մէջ*», *Կոչնակ*, 10 *Օգոստոս* 1918, Vol. XVIII, *Թիւ* 32, *էջ* 2337:

## WORLD IN "4TH" FETES

Two singers of international repute will share in Armenia's offering to the celebration. A. Chah-Mouradian, tenor of the Paris Opera House, and Mme Z. Panossian, of the Boston Opera Company, will proclaim Armenia's suffering in song. The first episode of the pageant will depict the battle of Haik, forefather of Armenia, against the tyrant king of Babylonia in 2300 B. C.

Another episode will show the Armenian warriors of Christianity against the Persian fire worshippers in 451 A. D.

A huge banner erected near the Armenian setting will bear the following inscription "Mother Armenia, spirit unconquerable of a martyred nation." Bruised but not vanquished, rescued by Uncle Sam the champion of democracy.
*The Washington Post*, 4 July 1918, p. 2

## ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՓՈՐԸ ՈՒԱՇԻՆԿԹԸՆԻ ՄԷՋ
**(հատուած)**

ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ
ՖԻԼԱՏԵԼՖԻԱՅԻ ՄԱՄՆԱՃԻՒՂ

Տիկին Զապէլ Փանոսեան եւ Տիար Շահ-Մուրատեան հայ երգն ու գերզգայուն ոգին, Ուաշինկթընի հասարակութեան այնպիսի յաջողութիւնով մը ներկայացուցին որ պարծանքով միայն կրնար ուռեցնել մեր կուրծքերը։ Ծափերու հնչուն ալիքները լաւագոյն փաստերն էին այն անվերապահ գնահատումին եւ սքանչացումին որ մայրաքաղաքի հասարակութիւնը կարտայայտէր հայ արուեստին եւ արուեստագէտներու հանդէպ։ Մեր այս արթիսթներն ալ առանց ոեւէ նիւթական վարձատրումի բերեր էին իրենց շնորհալի տաղանդը թափորի հայ բաժինին աւելցնելու այն կախարդանքն ու արժէքը որ այլապէս պիտի չստացուէր։
***Ասպարէզ***, 2 ***Օգոստոս*** 1918, ***ԺԱ. տարի***, ***Թիւ*** 521, ***էջ*** 2

## ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՓՕՐԸ ՈՒԱՇԻՆԿԹԸՆԻ ՄԷՋ
**(հատուած)**

Տիկին Զապէլ Փանոսեան եւ Տիար Շահ-Մուրատեան Հայ երգն ու գերզգայուն ոգին՝ Ուաշինկթընի հասարակութեան այնպիսի յաջողութիւնով կը ներկայա-

ցուցին որ պարծանօք միայն կրնար ուռեցնել մեր կուրծքերը: Ծափերու հնչիւն ալիքները լաւագոյն փաստերն էին այն անվերապահ գնահատումին եւ սքանչացումին որ մայրաքաղաքի հասարակութիւնը կ'արտայայտէր Հայ արուեստին եւ արուեստագէտներու հանդէպ: Մեր այս երկու արթիսթներն ալ առանց ոեւէ նիւթական վարձատրումի բերեր էին իրենց շնորհալի տաղանդը՝ թափօրի Հայ բաժինին աւելցնելու այն կախարդանքն ու արժէքը, որ այլապէս պիտի չստացուէր:
*Կոչնակ*, 10 *Օգոստոս* 1918, Vol. XVIII, *Թիւ* 32, *էջ* 2337

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 4 ՅՈՒԼԻՍ 1918, ՈՒԱՇԻՆԿԹՈՆ**

Ուաշինկթոնի Shoreham պանդոկին մէջ՝ ընթրիք ի պատիւ Զապէլ Փանոսեանի եւ Շ-Մ.ի, նոյն օրուայ հայկական թափօրին իրենց ունեցած մասնակցութեան ի պատիւ, կազմակերպութեամբ տէր եւ տիկ. Նէճիպ Հէքիմեանի:

- 'Society: Gen. and Mrs. Crozier Hosts,' *The Wahington Post*, 5 July 1918, p. 7.

## SOCIETY

GEN. AND MRS. CROZIER HOSTS

Mr. and Mrs. Nejib Hekimian entertained a company at dinner last evening at the Shoreham, in honor of Madame Z. Panossian, prima donna of the Boston Grand Opera, and Mr. A. Chah Mouradian, tenor of the Paris Grand Opera, both of whom were here for the pageant yesterday and sang the Armenians' part in "Democracy Triumphant." The guests included many personal friends of the artists who are here in war work.
*The Wahington Post*, 5 July 1918, p. 7

**ՇԱԲԱԹ, 28 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1918, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի մէջ՝ հրապարակային ժողով Դ. Ազատութեան Փոխառութեան առիթով, նախաձեռնութեամբ Հայկական Յանձնախումբին:

Մեներգ՝ Շ-Մ. եւ Ֆիլիփ Պէննէեան (պարիթոն): Ուղերձ՝ պր. Պէյքըր եւ տոքթ. Մ. Ս. Գաբրիէլեան:

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ*, 26 *Հոկտեմբեր* 1918, Vol. XVIII, *Թիւ* 43, *էջ* 1683:

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Նիւ Եօրքի մէջ տեղի ունեցաւ, Սեպտ. 28 իրիկունը, հրապարակային ժողով

մը 4-րդ Ազատութեան Փոխառութեան առթիւ՝ կազմուած Հայկական Յանձնախումբին նախաձեռնութեամբ։ Ժողովին մէջ երգեցին մեր համբաւաւոր երգիչները՝ Տիարք Ա. Շահ-Մուրատեան եւ Ֆիլիփ Պէննէեան, եւ ուղերձներ խօսեցան Մր. Պէյքըր եւ Տօքթ. Մ. Ս. Գաբրիէլեան։ Ներկաները թուով այնքան մեծ չէին, բայց այդ ժողովին մէջ ծախուած Ազատութեան Տոմսերու գինը 25,000 տոլարի գումար մը եղաւ։ Իսկ Յանձնախումբին անխոնջ ջանքերուն իբրեւ արդիւնք՝ մինչեւ այսօր Ն. Եօրքի Հայերը գնեցին 260,000 տոլարի տոմս, եւ կը յուսացուի թէ այս գումարը պիտի բարձրանայ մինչեւ 300,000 տոլարի։
*Կոչնակ*, 26 *Հոկտեմբեր* 1918, Vol. XVIII, *Թիւ* 43, *էջ* 1683

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 2 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1918, ՆԻՒ ԵՈՐՔ**

Շ-Մ. Նիւ Եորքէն նամակ կը գրէ Փարիզ՝ Արշակ Չօպանեանին։ Կը տեղեկացնէ անձնական յանձնարարութիւններու մասին։ Իր կարծիքը կը յայտնէ Պօղոս Նուպարի, Միհրան Տամատեանի եւ հայ-թուրքական վերջին համաձայնութեան մասին։

- *Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 54-55։

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ

Նիւ Եորք, 2.10.1918

Սիրելի Չօպանեան,

Ժամանակին առած եմ նամակդ, դժբախտաբար չկրցի անմիջապէս պատասխանել սիրելութեանդ, սակայն ճիշտ է, որ կ'ուզէի միեւնոյն ժամանակ Suite մը տալ գրութեանդ։

Հրաչի մասին դիմեցի անմիջապէս հոս, Հ. Յ. Դաշնակցութեան կետրոնական վարչութիւն. ուրախ եմ ըսել, որ նա ի նկատի ունեցած է դիմումս եւ հարկ եղած կարգադրութիւն ըրած արդէն, այսինքն հող գրած ըլլալու է Ա. Հանըմեանին, որ պէտք եղած հոգատարութիւն չխնայուի Հրաչին։

Սիրելի Չօպանեան, ուրախ եմ՝ գէթ այս անգամ կրցի խնդիրքդ կատարել յանձին մեր սիրելի Զարդարեանի տաղանդաւոր մէկ զաւկին։

Ներփակ կը ղրկեմ կետրոնական վարչութեան ինձ գրած նամակը։

Այս այսպէս։

Պօղոս փաշայի պաշտօնի նկատմամբ յարուցած խնդիրը ու քննադատու-

թիւններդ իրաւացի են ու համաձայն հայ նոյնիսկ եկեղեցական տեսակէտի սահմանադրական զգացումին ու սկզբունքին: Տամատեան ու իրեն պէս մտածողներու, ինչպէս նաեւ քու, ազգավնաս կոչնականներու բռնած դիրքը – հայհոյողներն ու աղմկողները պնակալեզներու, կեղծաւորներու յատուկ ընթացքներ են – կարեւորութիւն մի՛ տուր անոնց, շարունակէ՛ քո ազգասէր գործունէութիւնդ, որուն համար կը պաշտեմ քեզ:

Սակայն չպիտի նեղանաս, սիրելի, եթէ, իբր եղբայրդ, թոյլ կուտամ քեզ յայտնել հետեւեալ համեստ կարծիքս. ինձ կը թուի, թէ Կովկասի վերջին յարաբերութիւններու մասին յայտնած կարծիքներդ – թուրքերու հետ ըրած հայոց հաշտութիւնը – անտեղի էին, որովհետեւ ոչ ոք գիտէր, թէ ան ինչ պարագաներու արդիւնք է. դուն Կովկաս կը ճանչնաս կովկասցիի մը պէս: Հոն կայ մտաւորականութիւն մը, որ չբաղդատուիր, գոնէ հոս տեղիներու հետ, որոնց մեծամասնութիւնը ամէն անցուդարձի մասին կը ճառէ, կը քննադատէ աջ ու ահեակ: Ըստ իս հայերու Կովկասի մէջ բռնած ընթացքը սոսկ դիւանագիտական հանգամանք ունի, իբր միակ հնարք՝ ազատելու 2 միլիոն հայութեանը, ես վստահ եմ, թէ ամէն ողջամիտ մարդ չպիտի դատապարտէր այդպիսի ընթացք մը: Ես համոզուած եմ, թէ ապագային, խնդրոյն մանրամասնութիւնները երբ հասնին, պիտի իրաւունք տաս այս կերպ մտածումին:

Կը յուսամ, թէ այլապէս աղէկ ես, քաղաքական վերջին դէպքերը, կը կարծեմ, թէ պատերազմը վերջին ֆազին մէջ դրաւ այլեւս, տարի մը չլրացած, պիտի տօնենք անոր վերջաւորութիւնը դաշնակիցներու փառաւոր եւ վերջնական յաղթութեամբ, որ մերն ալ է:

Համբոյրներով՝

քո Շահ-Մուրատեան

Յ.Գ. Տիկինս կը բարեւէ, փոքրիկս կը համբուրէ քեզ:

***Արմենակ Շահմուրատեան**, կազմող՝ **Խաչիկ Սաֆարեան**, խմբագիր՝ **Հենրիկ Բախչինեան**, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 54-55

## ԴԵԿՏԵՄԲԵՐ 1918, ՆԻՒ ԵՈՐՔ

Սարգիս Ծոցիկեանի գրական 25-ամեայ յոբելեանը տօնելու համար կազմուած Յանձնախումբին անունով Շ-Մ. կը ստորագրէ գրութիւն մը, ուր հրաւէր կը կարդայ հասարակութեան իր օժանդակութիւնը ներդնել ձեռնարկի գործադրութիւնը կարելի դարձնելու համար:

- «*Յոբելեանի մը առթիւ*», *Կոչնակ*, 7 *Դեկտեմբեր* 1918, Vol. XVIII, *Թիւ* 49, *էջ* 1896:
- «*Յոբելեանի մը առթիւ*», *Փիւնիկ*, 1 *Յունուար* 1919, *Բ. տարի*, *Թիւ* 1, *էջ* 832:

# ՅՈԲԵԼԵԱՆԻ ՄԸ ԱՌԹԻՒ

Բաւական ժամանակ անցած է այն օրէն, երբ Ֆրէզնօյի գրասէր ակնյայտնի մտաւորականներու խումբ մը՝ նկատի ունենալով Պր. Սարգիս Ծոցիկեանի քսան եւ հինգամեայ գրական բեղուն գործունէութիւնը որոշած էր նախաձեռնել անոր յոբելեանը տօնելու գաղափարը գործնական հողի մը վրայ դնել, եւ այդ առթիւ կազմուած էր յանձնախումբ մը։ Ճշմարտութեան պարտք մը կատարած ըլլալու համար պէտք է ըսել թէ ամերիկահայ բոլոր թերթերն ալ, մինչեւ իսկ Ա. Չօպանեանի *Վերածնունդը*, անկեղծ ընդունելութիւն մը ըրին այդ գաղափարական շարժումին եւ դրուատիքներով խօսեցան գրական այդ համեստ եւ մեղուաջան վաստակաւորի աշխատութեանց մասին։

Պր. Ս. Մ. Ծոցիկեանի Նիւ Եորքցի մօտիկ բարեկամները անտարբեր չմնացին այս շարժումին հանդէպ։ Անոնցմէ մէկ քանիներ իսկոյն քով քովի գալով յանձնախումբ մը կազմեցին։ Այս յանձնախումբը եթէ մինչեւ ցարդ գործնական քայլ մը չկրցաւ առնել՝ պատճառը՝ աննպաստ պարագաներն էին, ինչպէս Մէկ Միլիոնի հանգանակութիւնը, ամառուան տաքերը, ինֆլուէնձան եւայլն։

Այժմ բարեբախտաբար պարագաները ըստ բաւականին փոխուած ըլլալով՝ յանձնախումբս իր այս շրջաբերականով հրաւէր կը կարդայ Նիւ Եօրքի եւ ուրիշ քաղաքներու բոլոր գրասէր եւ կրթասէր Հայերուն որ իրենց գնահատումի զգացումները գործնականապէս արտայայտեն այս գրական համեստ աշխատաւորին որ քսան եւ հինգ երկար տարիներ հայ գրական ասպարէզին վրայ իր աչքառու բաժինը բերած է հրապարակագրական, վիպագրական եւ բանասիրական աշխատութիւններովը։

Կը յուսանք թէ պիտի գտնուին Պր. Ծոցիկեանի ծանօթ բարեկամներուն մէջ շատեր, որ պիտի սիրեն իրենց անկեղծ գնահատումի գործնական ապացոյցը տալ իրենց նուէրներովը։

Ի դիմաց Յանձնախումբի

Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Յանձնախումբի անդամներն են՝ Վեր. Խ. Կ. Պէննէեան, Տիարք Վ. Քիւրքճեան, Զատիկ Մաթիկեան, Տոքթ. Մ. Յովէսփեան եւ Ա. Շահ-Մուրատեան։
***Կոչնակ***, 7 ***Դեկտեմբեր*** 1918, Vol. XVIII, ***Թիւ*** 49, ***էջ*** 1896

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 12 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1918, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Հայկական Լսարանին մէջ՝ Շ-Մ.ի դասախօսութիւնը։ Նիւթ՝ *Հայկական երաժշտութիւնը*։ Ներկաներուն խնդրանքով, դասախօսութենէն ետք կ'երգէ քանի մը հայերէն երգեր։

**- *Թղթակից*, «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ*,** 28 ***Դեկտեմբեր*** 1918, Vol. XVIII, ***Թիւ***

52, *էջ* 1981։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

ԹՂԹԱԿԻՑ

ՆԻՒ ԵՕՐՔ. – Հայկական Լսարանի մէջ Դեկտ. 12 Հինգշաբթի իրիկուն հանրածանօթ հայ երգիչ՝ Տիար Ա. Շահ-Մուրատեան դասախօսութիւն մը աւանդեց նիւթ ունենալով *Հայկական երաժշտութիւնը*։ Առաջին անգամն էր որ այս հետաքրքրական նիւթին վրայ այսպիսի խնամքով պատրաստուած դասախօսութիւն մը կը լսէր հայ ժողովուրդը։ Տիար Շահ-Մուրատեան համբաւաւոր հայ երգիչ մ'է, առ ամեն Հայ գիտէ, բայց ոչ ոք գիտէր, ինքն իսկ չէր գիտեր թէ լաւ ատենախօս մ'ալ է։ Առաջին անգամն էր որ, ինչպէս ինք ըսաւ, հրապարակային բանախօսութիւն ընել կը փորձէր, եւ պէտք է ըսել թէ իր այս փորձը շատ յաջող էր։ Խօսեցաւ հայ երգիչը երաժշտութեան արուեստին վեհութեան եւ վսեմութեան վրայ, եւ շատ բնական կերպով մը բացատրեց թէ արուեստագէտ երգիչի մը ձայնն ու արուեստը չեն որ կը խօսին մեզի, այլ անոր հոգին է, անձն է որ ձայնին ելեւէջներուն մէջէն կուգայ կը դպչի մեր հոգիներուն եւ կը ներշնչէ, կը վերացնէ մեզ։

Խուռն բազմութիւն մը լեցուած էր սրահը ծայրէ ի ծայր, ու երբ Տիար Շահ-Մուրատեան աւարտեց իր դասախօսութիւնը՝ ժողովուրդը որոտընդոստ ծափերով երգ խնդրեց իրմէ, եւ ինքն ալ՝ թէպէտ երգելու եկած չէր, այլ դասախօսելու, բայց ազնուաբար չմերժեց ժողովուրդին խնդիրքը, անուշ անուշ երգեր երգեց ու ժողովուրդը ուրախացուց։ Այս առթիւ աւելորդ չէ յիշել թէ Տիար Շահ-Մուրատեան միշտ պատրաստ եղած է իր ծառայութեան բաժինը տալու հայ ժողովուրդին՝ ազգային բարենպատակ ձեռնարկներու մէջ։ Ազգային Միութեան «Մէկ միլիոն տոլար»-ի հանգանակութեան միջոցին առանց վարձատրութեան տասնէ աւելի քաղաքներու մէջ երգեց այդ նպատակին յաջողութեան նպաստելու շարժառիթով։ Սիրուած այս երգիչը կը պատրաստուի իր տարեկան նուագահանդէսը տալ Նիւ Եօրքի մէջ, յունվար 18 Շաբաթ երեկոյին։ Կը յուսանք թէ Նիւ Եօրքի բոլոր Հայերը պիտի փութան վայելել գեղարուեստական այդ երեկոյթը զոր Շահ-Մուրատեան ուրիշ երգիչներու ընկերակցութեամբ կը պատրաստէ հայ ժողովուրդին համար։

***Կոչնակ***, 28 ***Դեկտեմբեր*** 1918, Vol. XVIII, *Թիւ* 52, *էջ* 1981

## ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 18 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1918, ՖԻԼԱՏԵԼՖԻԱ

Ֆիլատելֆիայի Հայ Առաքելական եկեղեցիին մէջ՝ վաղամեռիկ ատամնաբոյժ

Տիրան Կիւմիւշկէրտանեանի յուղարկաւորութեան արարողութիւնը։ Շ-Մ. կ'երգէ աւուր պատշաճի շարականներ։

- *Թղթակից*, «*Տոքթ. Տիրան Կիւմիւշկէրտանեան*», *Կոչնակ*, 28 *Դեկտեմբեր* 1918, Vol. XVIII, *Թիւ* 52, *էջ* 1981։

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1918, ՖԻԼԱՏԵԼՖԻԱ**

Ֆիլատելֆիայի Whiterspoon Hall-ին մէջ՝ Ամերիկեան Յանձնախումբի հրապարակային ժողովը, ի նպաստ Հայաստանի անկախութեան։

Ատենախօսութիւններ ամերիկացիներու եւ հայերու կողմէ։ Մեներգ՝ Շ-Մ. եւ օր. Լուսին Բարակեան (մեծծօ-սոփրանօ)։

- *Թղթակից*, «*Ամերիկահայ կեանք*», *Պահակ*, 7 *Յունուար* 1919, *Ը. տարի*, *Թիւ* 102 (560), *էջ* 5։

- *Մ. Վ. Կարապետեան*, «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ Հայաստանի*, 11 *Յունուար* 1919, *ԺԹ. տարի*, *Թիւ* 2, *էջ* 54։

**1918, ՆԻՒ ԵՈՐՔ**

Բացի Ապրիլի ձայնագրութիւններէն, Նիւ Եորքի Columbia-ի համար կը ձայնագրէ հետեւեալ մեներգները.

1. Կոմիտաս վարդապետ, *Քէլէ, քէլէ*
Դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 4201; 28020-F (matrix: 58645)
25 սմ. տրամաչափ (10-inch)
2. Կոմիտաս վարդապետ, *Կանչէ, կռունկ*
Դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 3929; 28022-F (matrix: 58646)
25 սմ. տրամաչափ (10-inch)
3. *Արօր տատրակ*
Ջութակի, թաւջութակի եւ դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 5175 (matrix: 59542) (12-inch)
30 սմ. տրամաչափ (12-inch)
4. Կոմիտաս վարդապետ, *Անտունի*
Ջութակի, թաւջութակի եւ դաշնակի նուագակցութեամբ
Columbia E 5175 (matrix: 59543)
30 սմ. տրամաչափ (12-inch)

**1918, ՖՐԷԶՆՕ**

Ֆրեզնոյի 1918-ի *Ասպարէզ ժողովածու*ին մէջ կը ստորագրէ յօդուած մը՝ «Երկու խօսք երաժշտութեան ծագման մասին. ի՞նչ է ժողովրդական երգը»:

- ***Ա. Շահ-Մուրատեան**, «**երկու խօսք երաժշտութեան ծագման մասին. ի՞նչ է ժողովրդական երգը**», **Ասպարէզ ժողովածու**, **Ֆրէզնօ**, 1918, **էջ** 275-277։*

**4 ՅՈՒՆՈՒԱՐ 1919, ՆԻՒ ԵՈՐՔ**

Շ-Մ. Նիւ Եորքէն նամակ կը գրէ Փարիզ՝ Արշակ Չօպանեանին։ Կը տեղեկացնէ *Վերածնունդ*ի ամերիկեան բաժանորդագրութիւններուն մասին։

- ***Արմենակ Շահմուրատեան**, **կազմող՝ Խաչիկ Սաֆարեան**, **խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան**, **Երեւան**, **Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն**, 1998, **էջ** 55-56։*

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ

Նիւ Եորք, 4.1.919

Սիրելի Չօպանեան

*Հայրենիք*ի խմբագրութիւնը ինձի պատասխանեց, որ Հրաչի խնդիրը կարգադրուած է արդէն, այնպէս որ այդ մտահոգութիւնն ալ վերջ մը գտաւ։

*Վերածննդի* բաժանորդները – անոնք, որոնք իմ առաջարկութեան վրայ բաժանորդագրուեցան, միշտ տրտունջ յայտնած են, թէ թերթը իրենց ձեռքը հասած չէ կամ չէ ղրկուած. օրինակ պ. Թեմուրեանը (Ֆիլատելֆիա) 8 ամսէ ի վեր թերթի երեսը տեսած չունի, ատով հանդերձ պատրաստ է վճարելու։ Տեղական սովորութեամբ մը բաժանորդները կը վճարեն իրենց պարտքը այն ատեն միայն, երբ ձեր կողմէ հաշուեցուցակ մը, աւելի ճիշտ ստացագիր մը ղրկուի ամէն մէկին։

Դիւրութիւն մը տալու համար այս անգամ յաջողեցայ պատուական հայրենակից մը գտնել ու համոզել զինք, որ ստանձնէ գործակալի պաշտօնը։ Տոք. Յակոբեան (ատամնաբոյժ), որուն արժեքարտը պիտի ստանաք ներփակ։ Թող տոք. Համբարձումեանը հաճի անոր հասցէին ղրկել պիլ-երը, գանձելէ ետքը ձեզ ղրկէ։ Այդպէսով լաւ գործակալ մը եւս կ'ունենանք ի Ֆիլատելֆիա։

Այստեղի (Նիւ-Եորք) բաժանորդներէն՝ պ.պ. Վ. Տօնապետեան եւ Գ. Յակոբեանը չեն ուզեր շարունակել այլեւս այս տարուայ բաժանորդագրութիւնը, թերթի անկանոնութիւնը պատճառ բռնելով, իսկ հին պարտքերը պատրաստ եմ ես գանձել, միայն թէ հաճեցէք պիլ-երը ղրկել Վարդերեսեան եղբարց...

Կլեմանսոնի կառավարութեան բռնած դիրքը, մասնաւորապէս հայոց

նկատմամբ, զզուելի է. եթէ իրենք յաջողին վեհաժողովին մէջ իրենց նպատակին հասնիլ, այն ատեն պիտի գտնեն իրենց դէմ զինուած ու (...) հայոււն ողջ մնացած բեկորները: Փիշոնը առանց կարմրելու բարեկամներ գոչեց թուրքերը:

Չեմ կարծեր, թէ մասնաւորապէս Ամերիկան, Իտալիան, նոյնիսկ Անգլիան՝ անուղղակի թոյլ տան Ֆրանսայի այդչափ բռնապետական միտումներ ունենալ: Չպիտի զարմանամ երբեք, եթէ հաստատուի, թէ Պօղոս փաշան գաֆեր ըրած ըլլայ ֆրանսական կառավարութեան Հայաստանի նկատմամբ... Նոր Տարուայ առթիւ ընդունէ եղբայրական ջերմ համբոյրներս, երկար ու երջանիկ տարիներ կը մաղթեմ քեզ՝

Շահ-Մուրատեան

*Արմենակ Շահմուրատեան*, կազմող՝ *Խաչիկ Սաֆարեան*, խմբագիր՝ *Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, էջ 55-56

**ՇԱԲԱԹ, 18 ՅՈՒՆՈՒԱՐ 1919, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Washington Irving High School-ին մէջ՝ Շ-Մ.ի տարեկան երգահանդէսը:

Յայտագիր.

Իտալերէն եւ ֆրանսերէն երգեր, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Կը մասնակցին ամերիկացի երգչուհի մը եւ թաւջութակահար մը

- *Կոչնակ Հայաստանի*, 4 *Յունուար* 1919, *ԺԹ. տարի*, *Թիւ* 1, *էջ* 32:

- *Կոչնակ Հայաստանի*, 18 *Յունուար* 1919, *ԺԹ. տարի*, *Թիւ* 3, *էջ* 91:

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ Հայաստանի*, 8 *Փետրուար* 1919, *ԺԹ. տարի*, *Թիւ* 6, *էջ* 190:

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Յունուար 18, Շաբաթ իրիկուն, Նիւ Եորքի երաժշտասէր Հայութիւնը պատեհութիւն ունեցաւ վայելելու մեր տաղանդաւոր *արթիսթ*՝ Տիար Շահմուրատեանի գեղեցիկ նուագահանդէսը: Հինգ հարիւրէ աւելի բազմութիւն մը լեցուած էր ժողովասրահը լսելու Շահմուրատեանի անուշ երգերը: Երգեց իտալական եւ ֆրանսական ընտիր կտորներ արթիսթի մը յատուկ վեհութեամբը, երգեց նաեւ Հայուն սրտին այնքան մօտիկ՝ *Հայաստան*ը, եւ շարք մը ուրիշ հայրենաշունչ երգեր որոնց ամէնքն ալ յուզեցին հայ սրտերը, եւ ամէնքն ալ խանդավառ ծափերով գնահատեցին հայ տաղանդը: Տիար Շահմուրատեանի կ'ընկերակցէր Ամերիկուհի երգիչ մը եւ չէլլոիսթ մը: Երանի թէ բոլոր հայ գաղութները առիթ

ունենան աւելի յաճախ վայելելու այս կարգի գեղարուեստական ընտիր նուագահանդէսներ։
*Կոչնակ Հայաստանի*, 8 *Փետրուար* 1919, *ԺԹ. տարի*, *Թիւ* 6, *էջ* 190

## ԿԻՐԱԿԻ, 30 ՄԱՐՏ 1919, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Հայ Աւետարանական Եկեղեցիին մէջ՝ սրբազան երաժշտութեան ժողով մը։ Շարականներ կ'երգէ Շ-Մ.։

- *Կոչնակ Հայաստանի*, 29 *Մարտ* 1919, *ԺԹ. տարի*, *Թիւ* 13, *էջ* 412։

## ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 9 ԱՊՐԻԼ 1919, ՈՒԱՇԻՆԿԹՈՆ

Ուաշինկթոնի Church of Covenant-ին մէջ՝ ժողովրդական հանդիպում ի նպաստ միջին արեւելքի օգնութեան ֆոնտին, հովանաւորութեամբ Ուաշինկթոնի Միջին Արեւելքի Օգնութեան Կանանց Յանձնախումբին։ Ատենախօս՝ Dr. Newell D. Hillis, նիւթ՝ *Պոլշեւիզմը եւ իր վտանգը աշխարհին* (անգլերէն)։ Մեներգ՝ Շ-Մ.։

- 'Society,' *The Sunday Star*, 6 April 1919, part 3, p. 3.
- *The Evening Star*, 8 April 1919, p. 28.
- *The Evening Star*, 9 April 1919, p. 12.
- *The Washington Herald*, 9 April 1919, p. 5.
- 'Dr. Hillis on Bolshevism: Will Address Near East Relief Meeting: Mouradian will Sing,' *The Washington Post*, 9 April 1919, p. 5.
- *The Washington Post*, 9 April 1919, p. 14.

## SOCIETY

Among the Lenten events of unusual interest scheduled for the coming week is the mass meeting which will be held in the Church of the Covenant on Wednesday evening, April 9, at 8 o'clock. The affair is being given under the auspices of the Washington Women's committee for relief in the near east.

A program of special excellence has been provided. Dr. Newell Dwight Hillis of Brooklyn will lecture on "Bolshevism and Its Menace to the World."

A. Chah Mouradian, the gifted Armenian tenor, will sing two groups of songs. Mr. Mouradian thrills and delights all the audiences before which he appears and Washingtonians are anticipating a treat on this occasion.

Secretary Lane will preside, and short addresses will be delivered by some

prominent Washington men on the needs in the near east, the sutbject so close to the hearts of the committee.

Leading residents of Washington and representatives of official life will be present and the general public is invited to attend.

The committee which is actively engaged in securing the success of the mass meeting consists of Mrs. Cabot Stevens, chairman; Mrs. Richard Fay Jackson, vice chairman; Mrs. Daniel C. Chace, Mrs. Theodore W. Noyes, Mrs. Charles Wood, Mrs. Harvey W. Wiley, Mme. Grouitch, Mrs. W. S. Culbertson, Mrs. Waldo Leland, Mrs. Gilbert Grosvener, Mrs. Mitchell Carroll, Mrs. Edwin Stock, Mrs. E. Nisbet Wright, Mrs. Kenneth Frye and Mrs. Martin Clapp.
*The Sunday Star*, 6 April 1919, part 3, p. 3

## DR. HILLIS ON BOLSHEVISM
## WILL ADDRESS NEAR EAST RELIEF MEETING
## MOURADIAN TO SING

"Bolshevism and Its Menace to the World," is the subject of an address by the Rev. Newell Dwight Hillis, at a mass meeting of the Washington women's committee of the American committee in the Near East tonight at the Church of the Covenant at 8 o'clock. The program also includes musical numbers by A. Chah-Mouradian, a noted Armenian tenor, and an address by Mme. Grouitch, Secretary of the Interior Lane will preside.

The women's committee reported last night that urgent appeals for relief are still pouring into the national headquarters.
*The Washington Post*, 9 April 1919, p. 5

**ԿԻՐԱԿԻ, 25 ԱՊՐԻԼ 1919, ՏԻԹՐՈՅԹ**

Տիթրոյթի Arena Gardens-ին մէջ՝ Հայկական Բանակի Օրուան տօնակատարութիւն, ներկայութեամբ Յովհաննէս Քաջազնունիի:

Ատենախօսներ՝ Շահան Նաթալի եւ Նեվթոն Խան Ազգապետեան: Մեներգ՝ Շ-Մ.:

- *The Detroit Free Press*, 25 April 1919, p. 6.

**ԿԻՐԱԿԻ, 11 ՄԱՅԻՍ 1919, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Garrick Theatre-ին մէջ՝ ներկայացում, նախաձեռնութեամբ Հ. Բ.

Ը. Միութեան Տիկնանց Կեդրոնական Որբախնամ Մարմինին: Կը ներկայացուի *Մոխրիկ Խաղաղութեան Վեհաժողովին մէջ* թատերգութիւնը, հեղինակ՝ տիկ. Վ. Յակոբեան: Թատերգութեան ընթացքին շարականներ կ'երգէ Ճ-Մ.: Ներկայացումէն ետք Ճ-Մ. կը մեներգէ Կոմիտաս վարդապետի *Հայաստանը*:

- ***Կոչնակ Հայաստանի***, 3 ***Մայիս*** 1919, ***ԺԹ. տարի***, ***Թիւ*** 18, ***էջ*** 579:

- ***Ազգ***, 6 ***Մայիս*** 1919, ***ԺԳ. տարի***, ***Թիւ*** 56-1211, ***էջ*** 4:

- ***Տաւրոս***, 10 ***Մայիս*** 1919, ***Բ. տարի***, ***Թիւ*** 19, ***էջ*** 303:

- «***Տիկնանց Որբախնամ Ընկերութեան Հանդէսը***», ***Կոչնակ Հայաստանի***, 24 ***Մայիս*** 1919, ***ԺԹ. տարի***, ***Թիւ*** 21, ***էջ*** 669-671:

## ՏԻԿՆԱՆՑ ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԷՍԸ

Նիւ Եորքի Տիկնանց Որբ. Ընկերութիւնը իր գոյութեան քանի մը ամսուայ կարճ ժամանակաշրջանին մէջ արդիւնաւոր եւ գնահատելի գործունէութիւն մը ցոյց տուած է, եւ պատճառ ունինք հաւատալու թէ շատ չանցած մեծամեծ գործեր պիտի կրնայ կատարել Հայ որբերը խնամելու ներկայ համազգային մեծ շարժումին մէջ: Հետեւաբար իրաւունք ունի ան ակնկալելու ոչ թէ միայն Նիւ Եօրքի բոլոր Հայ կիներուն այլ նաեւ ամբողջ հայ հասարակութեան գործնական աջակցութիւնը եւ քաջալերութիւնը:

Տիկնանց Որբախնամ Ընկերութիւնը Մարտ 11-ի Կիրակին՝ որ *Մայրերու օրն* էր, առաջին անգամ ըլլալով հրապարակ եկաւ, եւ գեղեցիկ հանդէսով մը ծանօթացուց իր նպատակը եւ գործունէութիւնը Նիւ Եօրքի Հայութեան: Որբախնամի այս անդրանիկ հանդէսը ժողովուրդին բարձր գնահատմանը արժանացաւ եւ բացառիկ յաջողութեամբ մը պսակուեցաւ: Կէրիք թատրոնը՝ ուր տեղի ունեցաւ այս հանդէսը՝ ամբողջապէս լեցուած էր վեր ու վար՝ ծայրէ ի ծայր, հոծ բազմութեամբ մը, եւ հարիւրաւորներ ստիպուեցան ետ դառնալ տեղ չըլլալուն համար: Հանդէսին բոլոր կարգադրութիւններուն մէջ Հայ Տիկնանց անուանը եւ արժանապատուութեանը վայել ճաշակ եւ կանոնաւորութիւն մը կը տիրէր, որուն համար մասնաւոր գովեստի արժանի է կարգադիր յանձնախումբը: Ներկայացումը՝ որ հայ երկսեռ դերասաններու կողմէ տրուեցաւ հետաքրքրաշարժ էր եւ կրթիչ: Ներկայացման նիւթն էր Սինտրիլա կոչուած ծանօթ բարոյավէպը՝ զոր Տիկին Վարդուհի Յակոբեան՝ Որբախնամ Ընկերութեան ատենապետուհին՝ այնքան ճարտարութեամբ յարմարցուցած էր ներկայ հայկական կեանքին, կոչելով զայն *Հայաստանի ոգին Խաղաղութեան Վեհաժողովին մէջ*: Այս ներկայացման մէջ դերակատարներն էին, Տիկին Ա. Գարագաշեան, Մ. Չատրճեան, Ա. Յակոբեան, Ա. Եկէնեան, Օ. Պաշպազիրկեան, Ե. Պաշպէզիրկեան, Չէնդիկեան, Ճամճեան, Մանուկեան, եւ Պարոնայք Վ. Սազայեան, Ա. Անմահեան, Յ.

Տէմիրճեան, Գարագաշեան, Յ. Եօլճեան, Ա. Գույումճեան Գ. Երվանդեան։

Պէտք է ըսել թէ դերակատար հայ օրիորդներն եւ երիտասարդներն իսկապէս արժանի են բարձր գովեստի եւ գնահատանքի՝ իրենց ակնյայտնի յաջողութեանը համար, ամէնն ալ վայելչապէս կատարեցին իրենց դերերը, եւ բնական ու յստակ կերպով մը կարող եղան դուրս բերել խաղին բուն ոգին, այնպէս որ ժողովուրդը տեսաւ ու հասկցաւ թէ վերջապէս Արդարութիւնը երկար փնտռտուքներէ ետքը՝ կը գտնէ իրաւազուրկ եւ վիրաւոր Հայաստանը Խաղաղութեան Վեհաժողովին մէջ եւ կուտայ անոր իր դարաւոր բաղձանքը – *Ազատութիւն*։ Շնորհաւորելի է մանաւանդ Տիկին Յակոբեան որ այնքան ծանր աշխատութեամբ յաջողած էր պատրաստել այդքան կրթիչ, խորհրդաւոր եւ այժմէական ներկայացում մը։ Հանդէսին մէկ շատ կարեւոր մասը կը կազմէր ներկայացման միջոցին Տիար Շահ-Մուրատեանի երգած հոգեշունչ շարականները եւ հայրենատենչ երգերը որոնցմով ան հայ ժողովուրդին սրտին կը խօսէր եւ բարեպաշտ հոգիներու մէջ կ'արթնցէր կրօնական բարձր թռիչներ։

Ներկայացման երրորդ արարուածէն անմիջապէս առաջ՝ Որբախնամ ընկերութեան ի դիմաց՝ Տիար Վ. Քիւրքճեան յուզիչ ուղերձ մը խօսեցաւ՝ կոչ ընելով ներկաներուն որ անձնազոհ ոգւով մը շարժին ձեռք երկնցնելու որբախնամ Տիկնանց որ անոնք կարող ըլլան շուտով օգնութեան հասնիլ ազգին ծնողազուրկ հազարաւոր որբերուն։ Ապա Տիար Գարտաշեան խօսեցաւ՝ ներկայացնելով Հայուն օրուան անմիջական պէտքերը եւ հրաւէր կարդալով ներկաներուն որ իրենց ազգասիրութիւնը գործնականապէս ցոյց տան՝ որբեր որդեգրելով։ Եւ մեծ եղաւ ամենուս ալ զարմանքը եւ հրճուանքը միանգամայն երբ կարճ ժամանակի մը մէջ 205 որբեր որդեգրուեցան ներկաներուն կողմէն, եւ ասիկա նմանը չտեսնուած խանդավառութիւն մը ու ներշնչում մը յառաջ բերաւ բոլոր հանդիսականներուն մէջ։ Իւրաքանչիւր որբի խնամքին համար կը պահանջուի 60 տօլար, ըսել է այդ իրիկուն՝ Նիւ Եորքի Հայութիւնը բարձրօրէն գնահատելով որբախնամ տիկնանց այդ մայրախնամ ջանքերը՝ նուիրեց 12,300 տօլարի խոշոր գումար մը ի նպաստ 205 որբերու։ Հանդէսին վախճանին՝ Տիար Շահ-Մուրատեան զինուորական տարազ հագած՝ ձեռքը ունենալով հայկական մեծածաւալ դրօշակ մը՝ երգեց իր հռչակաւոր *Հայաստան*ը, ու երբ ժողովուրդը որոտընդոստ ծափերով սրահը կը թնդացնէր, Շահ-Մուրատեան շատ պատշաճօրէն ուզեց օգտագործել ժողովրդական այդ խանդավառութիւնը ի նպաստ որբերուն, աճուրդի դնելով հայկական դրօշակը՝ որ վերջ ի վերջոյ 400 տօլարի գնեց Տիար Սարգիսեան։ Հանդէսին տոմսերէն գոյացած գումարն էր 1200 տօլար որուն վրայ աւելցնելով 400 տօլար դրօշակի գինը, ամբողջ հասոյթը կը հասնի 1600 տօլարի։ Տիկնանց Որբախնամը հանդէսէն առաջ ունէր 120 որբեր, հանդէսին իբր արդիւնք՝ 205 որբեր ալ աւելնալով կ'ունենայ հիմա 325 որբեր, եւ քիչ ատենէն Որբախնամի Տիկինները կը յուսան բարձրացնել այդ թիւը մինչեւ 500 որբի որ կը

նշանակէ տարեկան 30,000 տօլարի պիւտճէ մը։ Այս նպատակաւ Տիկնանց որբախնամը արդէն ծրագրած է աշունը տօնավաճառ մը տալ՝ որուն համար աժմէն Նիւ Եօրքի հայ տիկիններ պէտք է սկսին պատրաստել ձեռագործներ եւ ծախու առարկաներ։ Այս հանդէսին նիւթական յաջողութենէն աւելի արժէքաւոր եւ կարեւոր էր անոր ձգած բարոյական խորունկ ազդեցութիւնը որով ներշըն-չուած՝ բաժնուեցան բոլոր ներկաները։
*Կոչնակ Հայաստանի*, 24 *Մայիս* 1919, ***ԺԹ.*** *տարի*, *Թիւ* 21, *էջ* 669-671

**ԿԻՐԱԿԻ, 18 ՄԱՅԻՍ 1919 (ԿԷՍՕՐԷ ԵՏՔ), ՊՈՍԹՈՆ**

Պոսթոնի Jordan Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Փրոֆֆ-Գալֆայեան, *Ապրի Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Գ. Միրզայեան, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Անտունի*, *Սարերի վրով*, *Էս գիշեր*, *Լուսնակն անուշ*, *Շողեր ջան* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Francesco Paolo Tosti: *Good-Bye*, մեներգ՝ Շ-Մ.

Jules Massenet: *Élégie* (‘Ô, doux printemps d’autre fois’), մեներգ՝ Շ-Մ.

Giacomo Puccini: *Tosca*, ‘E lucevan le stelle’, մեներգ՝ Շ-Մ.

Արա Պօյաճեան, *Գնաց աշուն*, զուգերգ՝ Շ-Մ. եւ Ռօզ Զուլալեան (քոնթրալթօ)

Henry Clough-Leighter: *My Lover, He Comes on the Skee*, մեներգ՝ Ռօզ Զուլալեան

*Լռեց ամպերը*, *Բամբ որոտան*, *Ծովակ*, *The Star-Spangled Banner*, մեներգ՝ Ռօզ Զուլալեան

Ջութակ՝ Alexander Blachman

Դաշնակի նուագակցութիւն՝ պր. Ուինթըր

- *Ազգ*, 1 *Ապրիլ* 1919, ***ԺԳ.*** *տարի*, *Թիւ* 41-1196, *էջ* 3։
- *Պահակ*, 25 *Ապրիլ* 1919, ***Թ.*** *տարի*, *Թիւ* 30, *էջ* 4։
- *Ազգ*, 26 *Ապրիլ* 1919, ***ԺԳ.*** *տարի*, *Թիւ* 52-1207, *էջ* 4։
- «*Շահ-Մուրատեան պիտի երգէ*», *Հայրենիք*, 17 *Մայիս* 1919, 20-*րդ տարի*։
- *Յովհաննէս Աւագեան*, «*Շահ-Մուրատեան Ճօրտըն Հօլի մէջ*», *Ազգ*, 24 *Մայիս* 1919, ***ԺԳ.*** *տարի*, *Թիւ* 64-1219, *էջ* 3։

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՃՕՐՏԸՆ ՀՕԼԻ ՄԷՋ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳԵԱՆ

Անցեալ կիրակի (Մայիս 18), Պօստօնի Ճօրտըն Հօլի մէջ տեղի ունեցաւ Ա.

Շահ-Մուրատեանի նուագահանդէսը՝ որ եզական էր իր տեսակին մէջ, ու այդպէս ալ արձանագրուած պիտի մնայ մեր մամուլի էջերուն մէջ։

Շահ-Մուրատեան արուեստագէտին համբաւը, այդ օր, հաւաքեր բերեր էր Պոստոնէն ու իր մերձակայ ու հեռակայ արուարձաններէն մեծ բազմութիւն մը՝ որ գրեթէ ամբողջութեամբ լեցուցեր էր սրահը։ Քիչ անգամ ինծի տրուած է տեսնել ատկէ աւելի խուռն բազմութիւն մը Ճօրտան Հօլի մէջ, ուր զանազան ազգի արուեստագէտներ – դաշնակահար, ջութակահար, երգիչ – բազմածախս ազդերով յայտարարուած իրենց նուագահանդէսը կամ երգահանդէսը կուտան։ Մեր մամուլը մեծ գոհունակութեամբ պէտք է արձանագրէ այս պարագան, որ ինքնին կուգայ ապացուցանել թէ Ամերիկահայը սովրած է գնահատել իր իսկական արուեստագէտները ու ազդուիլ ճշմարիտ արուեստին վերացնող յատկութիւններէն։

Շահ-Մուրատեանի նուագահանդէսին յայտագիրը ճոխ էր, եւ իր մէջ կը պարունակէր նաեւ *նոր* երգեր։ Դիտմամբ ստորագծեցի նոր բառը, շեշտելու համար այն խիստ բանաւոր առարկութիւնը՝ զոր նոյն օր, բեմին վրայէն այնքան պատշաճօրէն ըրաւ Շահ-Մուրատեան։ Երգիչն ալ, ժողովուրդին չափ, ու անկէ ալ հազար անգամ աւելի, հետամուտ է նոր երգերու, եւ կը փափաքի հինը չի կրկնել շարունակ։ Արուեստագէտը քաջ ծանօթ է ժողովուրդին հոգեբանութեանը, ու գիտէ որ հինին շարունակ կրկնութիւնը կրնայ վնասել իր արժանաւորապէս վաստկած համբաւին, եւ սակայն ի՞նչ կրնայ ընել Հայ երգիչը – որքան որ ալ օժտեալ եղած ըլլայ անիկա – երբ բուն իսկ ժողովուրդին ծոցէն չեն ելներ նորանոր երգահաններ՝ ճոխացնելու Հայ երաժշտութիւնը, արտադրելով նորանոր կտորներ եւ կամ հաւաքելով ու խաղի առնելով այս կամ այն գաւառի ժողովուրդի շուրթին վրայ թառած երգի պատառիկները։ Երգիչը երգահան չէ վերջապէս, ու հետեւաբար զարմանալի չէ, երբ մէկ քանի նուագահանդէսը անգամ մը, գրեթէ կը կրկնէ իր յայտագիրը։ Այս լուսաբանութիւնը անհրաժեշտ է քանի որ սա կամ նա պատճառով արուեստագէտին անուան մուր քսել ջանացողներ այս կէտն է որ կը շահագործեն ամենէն աւելի։

Շահ Մուրատեան, այս անգամ, իր յայտագրին մէջ դրած էր նաեւ կտորներ Գ. Միրզաեանէ որ իր իսկ վկայութեան համաձայն, Կոմիտաս Վարդապետի չափ արժանիք ունի Հայ երաժշտական աշխարհին մէջ, եւ հետեւաբար պէտք է որ Հայութիւնը ճանչնայ նաեւ իր այս արժանաւոր զաւակը եւ գնահատէ անոր կատարած դերը։

Ամերիկահայութիւնը դաստիարակելու, անոր մէջ գեղարուեստական ճաշակ արթնցնելու բեմին ու բեմականին հանդէպ պատկառանք տածելու գործին մէջ մեծ դեր կատարած է Շահ-Մուրատեան ու մենք մասնաւոր հաճոյքով մըն է որ կ’արձանագրենք այս տեղ այս պարագան։

* * *

Փրօֆֆ-Գալֆայեանի *Ապրի Հայաստանը*, Շահ-Մուրատեանի գոռ այլ եւ ներդաշնակ ու քաղցրալուր շեշտերուն տակ, ելեքտրականացուց մթնոլորտը, եւ ժողովուրդը, առաջին իսկ առթիւ, աւելի տաք, աւելի բաբախուն զգացումներով կապուեցաւ արուեստագէտին: Ասոր յաջորդող Միրզաեանի կտորները` որոնք անհունապէս նուազ գոռ էին ու այն համեմատութեամբ ալ առաւել փափուկ` անտարակոյս, նոյնքան յաջողութեամբ երգուեցան արուեստագէտէն, եւ նոյնքան խանդով ողջունուեցան ներկայ հասարակութենէն:

Կոմիտաս Վարդապետի *Անտունի*ն յաջողութեան գլուխ գործոց մըն էր ինքնին, ու ասիկա անոր համար որ Շահ-Մուրատեան ոչ միայն ապրեցաւ այդ կտորը, այդ վայրկեանին, բեմին վրայ, այլ եւ ապրիլ տուաւ մեզի, պուտ առ պուտ ծորելով մեր սրտին մէջ այդ կտորին ամբողջ բանաստեղծութիւնը` որ ա՜յնքան յատկանշական է, ա՜յնքան գերազանցօրէն հայացի ըլլալուն համար թերեւս.-

*Սիրտըս նըման է էն փըլած տընէր,*
*Կոտրեր գերաններ, խախտեր է սըներ.*
*Բուն պիտի դընեն մէջ վայրի հաւքեր,*
*Երթամ` ձի թալեմ էն ելման գետեր.*
*Ըլնիմ ձըկներու ճագերացըն կեր,*
*Ա՛յ, տօ լա՜ճ տընաւեր:*

Ժողովուրդի բուռն ծափահարութիւնները եւ անօրինակ ոգեւորութիւնը բաւ էին ապացուցանելու թէ անիկա իր սրտին շատ մօտիկ գտաւ *Անտունի*ին յաջորդող *Սարերի վրով*ն ու անոր յարակից *Էն գիշերը*, եւ *Լուսնակն անուշ*ն ու անոր յարակից *Շողերը*, որոնց ամենուն ալ մէջ բուն իսկ Հայ երաժշտական ու բանաստեղծական արուեստն էր որ կը ցոլար:-

*Սարերի վրով գնաց,*
*Եա՜ր, եա՜ր,*
*Արօտով, արօտով*
*Եարիս կարօտով*

*Էս գիշեր լուսը տեսայ,*
*Երի, մարալօ՛ ջէյրան.*
*Իմ եարը ղուրսը տեսայ,*
*Երի, մարալօ՛ ջէյրան*

ինչպէս նաեւ

*Լուսնակն անուշ, հովն անուշ,*

*Վա՜յ, լէ, լէ, լէ՜, լէ՜, լէ՜,*
*Վա՜յ, լօ, լօ, լօ, լօ, լօ,*
*Շինականի քունն անուշ։*
*Երնէ՜կ էն օրեր,*
*Որ կ'ելնենք սարեր։*

*Ամպել ա, ձիւն չի գալի,*
*Շողե՜ր ջան*
*Սարիցը տուն չի գալի*
*Շողե՜ր ջան,*
*Դու չորորա՛, դուն օրօրա*
*Շողե՜ր ջան,*
*Ամպի տակին ձուն կ'երեւայ*
*Շողեր ջան*, եւն.

Այս կտորներու մէջ յորդող Հայ շինական բանաստեղծութեան վայրի գեղեցկութիւնը, Շահ-Մուրատեանի ձայնի ներդաշնակ երելէջներովն ու բառերու ա՛յնքան յստակ, ա՛յնքան մաքուր, ու ա՛յնքան շինականի վայել հնչումներովն ու առոգանութեամբը առաւել եւս շեշտուեցաւ, ու տարաւ մեզ լուս գիշերին ու անուշ լուսնակին։

Պօյաճեանի *Գնաց աշունը*, զոր փոխն ի փոխ երգեցին Շահ-Մուրատեան եւ Տիկին Զուլալեան, ա՛յնքան հաճելի եկաւ ժողովուրդին, որ իր բուռն ու երկարատեւ ծափերով ստիպեց որ երգիչները վերակրկնեն զայն։ Այս կտորին մէջ, առաւել քան երբէք, Շահ-Մուրատեան ի յայտ բերաւ գաւառիկ հնչումները հարազատ գաւառացիի մը նման արտասանելու իր անստգիւտ յատկութիւնները։ Տիկ. Զուլալեան, այս կտորին մէջ, ցոյց տուաւ շիկնումի, վարանումի նշաններ՝ որոնք եթէ երգին յաջողութեանը տուժել տուին մասամբ, միւս կողմէն նպաստեցին պատկերացնելու բուն իսկ Հայուհին, որ շիկնոտ է, ամչկոտ է ի բնէ, ու հազիւ թէ համարձակութիւնը կ'ունենայ, աչքերը գետնին, մնջելու իր սէրը՝ սիրականին ներկայութեամբ։

Թօսթիի *Good bye*ին մէջ յայտնի յաջողութիւն մը ցոյց չի տուաւ Շահ-Մուրատեան, ու երգը՝ հազիւ թէ երգուած՝ մոռացութեան մատնուեցաւ արդէն իսկ։ Անհրաժեշտ տպաւորչութեան մը այս բացակայութիւնը անո՞ր պէտք է վերագրել արդեօք որ Շահ-Մուրատեանի բերնին մէջ Անգլիերէն հնչումները կը կորսնցնեն իրենց հարազատութիւնը եւ բառերը կը մնան անհասկնալի եւ երբեմն իսկ… թիւրիմանալի…։ Եթէ Անգլիերէն երգը յառաջ չի բերաւ ակնկալուած տպաւորութիւնը, միւս կողմէն սակայն Մասընէի *Élégie*ն երգուեցաւ ա՛յնքան կատարեալ յաջողութեամբ որ ամբողջապէս մոռցնել տուաւ մեզի իրեն նախորդող երգին թողուցած անախորժ տպաւորութիւնը, եւ ժողովուրդը նորէն ապրեցաւ իր տաք

ու բաբախուն զգացումները։

Անվերապահօրէն ըսեմ սակայն, որ ինծի համար, Շահ-Մուրատեան արուեստագէտը իր *թէնոռ* երգիչի չքնաղագոյն յատկութիւնները ի յայտ բերաւ Փուչինիի *Tosca*ին մէջ, ուրկէ երգեց միայն ա՛ն կտորը ուր Մարիօ Քավառատօսսի իր յուսահատ աղերսը կ՚եղանակէ ա՛յնքան կողկողագին,

*Երբ որ աստղունք կը փալփլէին շողարձակ*
*Եւ թեթեւ անուշահոտութիւնք կը բուրումնաւէտէին օդը,*
*Պարտէզին դուռը ճռնչեց*
*Եւ ոտք մը ներս սպրդեց անոր սահմաններէն,*
*Անոր ոտքն էր այն. այդ բուրբումնաւէտ էակը*
*Իր գողտր բազուկներուն մէջ գրկեց զիս*
*Ու ողողեց քաղցրագոյն համբոյրներով, ու պգտիկ գրգանքներով.*
*Ո՜վ ձեւի եւ դիմագծի աննման ներդաշնակութեամբ օժտուած չքնաղ արարած,*
*Սիրոյս երազը այժմ անհետացած է իսպառ,*
*Ես անհոգ կ՚ապրէի,*
*Իսկ այժմ, որ երբէ՛ք, երբէ՛ք ա՛յսքան սիրելի թուած չէր ինծ կեանքը,*
*Այժմ կը մեռնիմ անյոյս։*

Շահ-Մուրատեան, Ֆլօրիա Թոսքայի չքնաղագոյն պատկերը կարծես իր աչքերուն մէջ, իսկապէս ապրեցաւ յուսահատ սիրողի տագնապները, եւ կտորը երգեց այնպիսի յաջողութեամբ մը, որ դժուար թէ վեր կը մնար աշխարհահռչակ երգիչներու այս կտորին մէջ ցոյց տուած յաջողութիւններէն։

Տիկին Զուլալեան, որ իր գնահատելի մասնակցութիւնը բերած էր Շահ-Մուրատեանի նուագահանդէսին, երգեց *My lover he comes on the skee*, *Լռեց ամպերը*, *Բամբ որոտան*, *Ծովակ* եւ Ամերիկեան ազգային երգը։ Տիկին Զուլալեանի երգած բոլոր կտորներն ալ յաջող էին առհասարակ, եւ համակրելի երգչուհին ցոյց տուաւ թէ իրօք դէպի կատարելագործութիւն տանող ճամբուն վրայ կը գտնուի ինքը, ուր օրէ օր կը յառաջդիմէ։ Մեր երգչուհիներուն մէջ ամենէն աւելի լեցուն ձայնը ունի Տիկին Զուլալեան, ու մենք կը սիրենք հաւատալ, վաղը, ա՛յնքան կատարելագործած պիտի ըլլայ անիկա երգչուհիի իր յայտնի ձիրքերը, որ օտարներն իսկ անխառն հիացմամբ պիտի ողջունեն զինքը երաժշտական աւելի ընդարձակ սրահներու մէջ, զոր իր ձայնով լեցնելու շնորհքը տրուած է իրեն ի բնէ։ Որքան որ ալ ինք ռազմերգ երգելու ընդունակ եղած ըլլայ սակայն, նոյն օր Ճօրտըն Հօլի մէջ ցոյց տուաւ որ ինք, գէթ ներկայիս, աւելի յաջողութեամբ կ՚երգէ քնարերգական կտորները. ասիկա ապացուցուեցաւ *My lover he comes on the skee* երգով, զոր աննման յաջողութեամբ երգեց Տիկին Զուլալեան շնորհալի երգչուհին։

Ալէք. Պլէքմէն, Ռուս ջութակահարը, իր բոլոր կտորներն ալ նուագեց

այնպիսի ճարտարութեամբ մը՝ զոր լիապէս գնահատել դժուար թէ կարենանք մենք։

Դաշնակի վրայ երգիչին, երգչուհիին ու ջութակահարին կ'ընկերանար Մր. Ռւինթըր։

Յայտագրի աւարտումէն յետոյ Շահ-Մուրատեան անակնկալն ըրաւ բեմին վրայ երեւալով Հայկական հին մարտիկներու տարազով, եւ Հայկ. դրօշակ ի ձեռին անիկա երգեց *Հայաստանը*, որ խանդավառութեան ու ոգեւորութեան անօրինակ հոսանք մը ստեղծեց սրահին մէկ ծայրէն մինչեւ միւսը, ու աւարտեցաւ Հայաստանն իրենց սրտերուն մէջ կրող ու անոր տեսիլովը հրճուող ներկաներու բուռն ծափահարութեան տակ։

***Ազգ***, 24 ***Մայիս*** 1919, ***ԺԳ. տարի***, ***Թիւ*** 64-1219, ***էջ*** 3

## ԿԻՐԱԿԻ, 18 ՄԱՅԻՍ 1919 (ԵՐԵԿՈՅԵԱՆ), ՊՈՍԹՈՆ

Պոսթոնի Faneuil Hall-ին մէջ՝ Ազգային Ռամկավար Կուսակցութեան ժողովը։

Յայտագիր.

Բացումի խօսք՝ Տոքթ. Կ. Յ. Գալուստեան

*Հայաստան* եւ երկու հայերէն երգեր, մեներգ՝ Շ-Մ.

*Այրի՛ Հայաստան*, մեներգ՝ Ռոզ Զուլալեան (քնթրալթօ)

Փրօֆֆ-Գալֆայեան, *Ալէչարչար*, մեներգ՝ Ռոզ Զուլալեան

*The Star-Spangled Banner*, մեներգ՝ Ռոզ Զուլալեան

Ատենախօսութիւններ՝ տոքթ. Եարտըմեան, փրոֆ. Մ. Յ. Անանիկեան եւ Վահրամ Գրիգորեան

**- *Կ. Յ. Ժամկոչեան***, «***Ազգ. Ռամկավար Կուսակցութիւն***», ***Ազգ***, 24 ***Մայիս*** 1919, ***ԺԳ. տարի***, ***Թիւ*** 64-1219, ***էջ*** 3։

# ԱԶԳ. ՌԱՄԿԱՎԱՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆ

**(Պատմական Ժողով մը)**

Կ. Յ. ԺԱՄԿՈՉԵԱՆ

Մայիսեան ջինջ օրուայ մը երեկոյեան ցոլքերուն մէջէն կ'արշալուսէր փաղփուն արեւը յաղթական Ռամկավարութեան։ Ֆէնուըլ Հօլի պատմական սրահին մէջ կը պատմուէր Ռամկավարութեան սկզբունքի հին պատմութիւնը։ Հոծ բազմութիւնը՝ Պօսթընի Ազատութեան այդ Սրահին մէջ՝ ունկնդիր մը չէր միայն, այլ ուխտաւոր մը, հաւատաւոր մը Ռամկավարութեան յաղթանակին։

Օրուան ատենապետը ընկեր Տօքթ. Կ. Յ. Գալուստեան, ժողովը բացուած կը

յայտարարէ՝ ժողովին նպատակը իր յստակ ու մեկին խօսքերովը ներկաներուն բացատրելէ յետոյ։

Սրահին մէջ կ'երեւնան զոյգ մը դրօշակներ՝ Հայ զոյգ մը զինուորներու ձեռքը։ Ամերիկեան աստեղազարդ փառապանծ դրօշն էր որ կը յառաջանար դէպի բեմ, մարտիրոս Հայութեան նուիրական դրօշին հետ եւ հոծ բազմութեան բուռն ծափերուն մէջէն։

Ցոյցերու խանդավառ արտայայտութեան պահուն, բեմին վրայ, երկու դրօշներու մէջտեղ, կը տեսնենք Տարօնցի երգիչը, Ամերիկահայոց կողմէ միշտ փնտռուած մեր Շահ-Մուրատեանը։

Մեծ Հայաստանցին *Հայաստան*ն է որ կ'երգէ։ Շահ-Մուրատի *Հայաստան*ը ովկիանի մը ալիքներուն հնչիւնը ունի եւ ալիքներու պայթիւնը։ *Հայաստա՜ն*ը, որուտալից ձայնով մը կը սկսի, ու ապա հերոս հիւանդի մը հեւքը կ'առնէ, որ դիւցազնական շունչով մը կը վերջանայ։

*Հայաստան*ը Շահ-Մուրատի անմահացումը պիտի ըլլայ։

Գեղարուեստական առինքնող այս վայելքէն ետք, ընկեր Կ. Յ. Ժամկոչեան կը կարդայ Ազգային Ռամկավարական Կուսակցութեան ծրագիրը, որմէ ետք առաջին ատենախօսը ընկեր Տոքթ. Եարտմեան, բեմ կուգայ։ Ան իր խաղաղ ու հեզիկ բառերով կը պարզէ ներկաներուն Ազգ. Ռամկավար Կուսակցութեան անհրաժեշտութիւնը եւ անոր սկզբունքներուն կիրառութեան կարեւորութիւնը մեր ազգային կեանքին մէջ։

Բեմին վրայ նորէն կ'երեւի Շահ-Մուրատեանը, ու կ'երգէ մեզի։ Անոր երգին յետին մրմունջները կը կորսուին փոթորկալից ծափահարութիւններու մէջ։

Բեմին վրայ կ'երեւի երկրորդ ատենախօսը, ընկեր Փրոֆ. Մ. Յ. Անանիկեան։ Ան իր զեղուն զգացումներովը ողջունելէ յետոյ Ազգ. Ռամկավարական Կուսակցութիւնը, անհերքելի փաստերով եւ գործնական օրինակներով կը ցուցնէ անխուսափելի եւ հրամայողական պահանջը օրուան մէկ մեծ սկզբունքին՝ Ռամկավարութեան, որ պիտի ըլլայ ջահը Հայաստանի լուսաւորութեան եւ Հայուն զօրութիւնը։ Փրոֆ. Անանիկեան՝ երկիւղած հաւատաւորի մը համոզումով ջատագովեց Ռամկավար սկզբունքներու գործնականացումը Հայ կեանքին մէջ։ «Ռամկավարութիւնը աշխարհի տիրական, գործնական, ժողովրդային սկզբունքն է», ըսաւ ան, «դաւանանք մը, որուն համար միլիոնաւոր շիրիմներ կը բարձրանան այսօր Եւրոպայի եւ Հայաստանի դաշտերուն մէջ։ Հայաստանը Ռամկավարութեա՛մբ ճանչցնենք աշխարհի»։

Երրորդ անգամ ըլլալով բեմին վրայ կ'երեւի փրկութեան եւ ազատութեան փառքը եղող Տարօնցին։ Շահ-Մուրատեանի քաղցրալուր ու խիստ ոգեւորիչ երգէն վերջ, ատենապետը կը հրաւիրէ վերջին ատենախօսը, ընկեր Վահրամ Գրիգորեան։

«Ուխտաւորնե՛ր ենք հոս, բոլորս», ըսաւ յարգելի ատենախօսը, «ուխտաւոր-

նե՛րը խաչուող Հայութեան, որ այս նժդեհ ափանց վրայ նետուած, կարօտակէզ աչքերով վերադարձի ժամուն կ'սպասենք: Հայկական հարցին լուծումը ա՛յս երեկոյ Ռամկավարութեան նախատօնակէն կ'սկսի, եւ մենք՝ պիտի ցուցնենք թէ՝ պիտի կրնա՛նք արժանի ըլլալ զմեզ մեզի տրուած ազատութեան: Հայուն քաղաքական դաւանանքը չափանիշը պիտի ըլլայ մեր ազգային արժանիքին: Հայաստանի ապագայ փրկութիւնը, անոր պահպանումը եւ հզօրացումը Ռամկավարութեան որդեգրումի՛ն եւ գործադրումի՛ն մէջն են: Ռամկավարակա՛ն Հայաստան մը միայն պիտի կրնայ ապահովել Հայ Ազգին գոյութիւնը: Ռամկավարութիւնը աշխարհի՛ սկզբունքն է, աշխարհի քաղաքական հոլովոյթը կանոնաւորող միա՛կ ղեկը եւ խարիսխը: Այդ մեծ սկզբունքին ուխտաւորները պէտք է ըլլանք մե՛նք: Ամերիկեան Հանրապետութեան նախնիքը, որոնք *Ուխտաւոր Հայրեր* կոչուեցան, Ամերիկա ցամաք ելլելէ առաջ՝ այս ազգին Սահմանադրութիւնը նաւին վրայ գրեցին, եւ ծունկի եկած ուխտեցին հաւատարի՛մ մնալ անոր, եւ յետոյ ցամաք ելան: Այդ ուխտը կը կատարուէր «Աստուծոյ անունով»: Անիկա այդ նաւուն վրայ կը ծնէր եւ կը մկրտուէր Աստուծոյ անունով: Մենք ալ Հայաստանի նուիրական հողին վրայ ոտք դնելէ առաջ ուխտ մը ունինք ընելիք, այդ ուխտին պէս, սուրբ երդում մը՝ որ մեր նախատակաց յարութիւնը պիտի իրագործէ: Այդ ուխտը երկու բառով կ'արտայայտուի. - «ՀԱՅՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ»:

Ընկեր Գրիգորեանի ներշնչող խօսքերէն յետոյ բեմին վրայ կը տեսնենք միշտ փնտռուած, միշտ սիրուած երգչուհին, յանձին Տիկին Զուլալեանի: Նէ իր դաշն եւ հարուստ ձայնով եւ արուեստագէտի իսկական կարողութեամբ հետզհետէ երգեց *Ապրի՛ Հայաստան*ը, Փրօֆֆ Գալֆաեանի հոգեզմայլ *Ալէչարչար*ը, եւ արժանացաւ որոտընդոստ ծափերու: Հայուն ազատութիւնը երգող այդ հոգեխօսիկ երգչուհին կ'երգէ նաեւ Ամերիկեան ազգային երգը, որով կը փակուի այս պատմական ու յիշատակալի մեծ ժողովը:

Այս ժողովէն ետք Ազգ. Ռամկավարական Կուսակցութեան միանալու խոստումնագիրը ստորագրեցին 37 նոր ազգայիններ:

***Ազգ***, 24 ***Մայիս*** 1919, ***ԺԳ. տարի***, ***Թիւ*** 64-1219, ***էջ*** 3

## ՇԱԲԱԹ, 24 ՄԱՅԻՍ 1919, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Plaza Hotel-ին մէջ՝ ջութակահար Սուրէն Սիւնիի նուագահանդէսը: Նախատեսուած էր Շ-Մ.ի մասնակցութիւնը, բայց պաղառութեան պատճառով կորսնցնելով ձայնը չի կրնար ելոյթ ունենալ:

- ***Կոչնակ Հայաստանի***, 26 ***Ապրիլ*** 1919, ***ԺԹ. տարի***, ***Թիւ*** 17, ***էջ*** 520:

- «***Հայ գաղթականութիւնը***», ***Կոչնակ Հայաստանի***, 7 ***Յունիս*** 1919, ***ԺԹ. տարի***, ***Թիւ*** 23, ***էջ*** 736:

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 28 ՄԱՅԻՍ 1919, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Մեմորիըլ Եկեղեցիի ժողովասրահին մէջ՝ Հայ Աւետարանական Եկեղեցւոյ Երիտասարդաց Քրիստոնեայ Ընկերակցութեան տարեկան նուագահանդէսը։

Յայտագիր.

*Ապրի Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Ֆրանսական օփերաներէ հատուածներ, մեներգ՝ Շ-Մ.

*Հաբրբան*, զուգերգ՝ օր. Մարի Պաշպազիրկեան եւ Շ-Մ.

Ֆրանսերէն երգ, զուգերգ՝ օր. Մարի Պաշպազիրկեան եւ Շ-Մ.

Թաւջութակ՝ օր. Հէնս Քրօնօլտ

Դաշնակի նուագակցութիւն՝ օր. Ի. Փաթզ

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ Հայաստանի*, 7 *Յունիս* 1919, *ԺԹ. տարի*, *թիւ* 23, *էջ* 735։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Նիւ Եորքի Հայ Աւետ. Եկեղեցւոյ Երիտասարդ Քրիստ. Ընկերակցութիւնը իր տարեկան նուագահանդէսը տուաւ Մայիս 28 Չորեքշաբթի իրիկուն Մէմօրիըլ Եկեղեցւոյ ժողովասրահին մէջ։ Հանդէսը ճաշակաւոր խնամքով պատրաստուած էր, եւ գեղարուեստական իսկական երեկոյթ մը կրնար կոչուիլ, քանզի ամէն ոք որ քիչ թէ շատ սէր ու ճաշակ ունէր երաժշտութեան՝ հոգեկան վայելք մը զգաց՝ լսելով իրիկուան արուեստագէտներու քաղցրալուր նուագներն ու երգերը։ Դաշնակի վրայ հիանալի ճարտարութեամբ նուագեց դասական ընտիր կտորներ՝ Ամերիկացի դաշնակահար՝ Միս Ի. Փաթզ, Հայուն սրտին խօսող մեր Շահ-Մուրատեանը անգամ մ'ալ հմայեց ներկաները իր *Ապրի Հայաստան* հայրենաշունչ երգովը, ինչպէս նաեւ ֆրանսական *օբերաթիք* կտորներովը։ Մր. Հէնս Քրօնօլտ չէլօյի վրայ նուագեց շարք մը եղանակներ, մատներու այնպիսի ճկունութեամբ մը, որ կարծես չէլօյին թելերը լեզու էին ելած ու կը խօսէին ունկնդիրներու հոգիներուն ու անոնց բան մը կը հասկցնէին։ Ժողովուրդը բուռն ծափերով իր գնահատանքը յայտնեց, երբ Օր. Մարի Պաշպազիրկեան եւ Տիար Շահ-Մուրատեան զոյգ երգեցին *Հաբրբան*ը եւ ֆրանսական կտոր մը։ Օր. Մարի Պաշպազիրկեան որ Պոսթոնի համբաւաւոր Քօնսըրվաթօրիին մէջ ստացած է իր ձայնական կրթութիւնը՝ մելանուշ ձայնին կը միացնէ զգայուն հոգիի մը շեշտերն ու արտայայտութիւնը եւ ատով է որ կ'ազդէ իր ունկնդիրներուն։

Երաժշտական արուեստին մասնագէտ *քրիթիք* մը, արուեստագիտական տեսակէտէն նայելով թերեւս թերութիւններ ալ պիտի նշմարէր երգիչներուն ձայներուն ու անոնց շարժ ու ձեւերուն մէջ՝ սակայն մեզի հասարակ մահկանա-

ցուններուս համար, այս օրինակ նուագահանդէսներ ունին իրենց բարոյական ներշնչող ազդեցութիւնները եւ ճիշդ ատոր մէջն է այս նուագահանդէսին ալ արժէքը։
***Կոչնակ Հայաստանի***, 7 ***Յունիս*** 1919, ***ԺԹ. տարի***, ***Թիւ*** 23, ***էջ*** 735

### ՅՈՒՆԻՍ 1919, ՊՈՍԹՈՆ

Նկատի ունենալով Ճ-Մ.ի երգած *Հայաստան*ին ժողովրդականութիւնը, Պոսթոնի Պէրպէրեան Գրատունը կը հրատարակէ երգը, տիտղոսաթերթին վրայ մեծ տառերով դրոշմելով Ճ-Մ.ի անունը.

*Հայաստան*
Երգեց՝ Ա. Ճահ-Մուրատեան
Գրի առաւ եւ դաշնակեց՝ Կոմիտաս վարդապետ
Հրատարակիչ՝ Պէրպէրեան Գրատուն
H. G. Berberian
P. O. Box 34, Station A
Boston, Mass.
Գին՝ 50 սէնթ

- ***Ազգ***, 7 ***Յունիս*** 1919, ***ԺԳ. տարի***, ***Թիւ*** 70-1225, ***էջ*** 8։
- ***Ազգ***, 27 ***Սեպտեմբեր*** 1919, ***ԺԳ. տարի***, ***Թիւ*** 119-1274, ***էջ*** 8։

### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 2 ՅՈՒՆԻՍ 1919, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Adams Memorial եկեղեցիին մէջ՝ հայ աւետարանական եկեղեցիի հովիւ Վեր. Ա. Ա. Պետիկեանի ընդ Մառի Պաշպազիրկեանի պսակադրութեան արարողութիւնը։ Ճ-Մ. կ՚երգէ երկու շարականներ։

- «***Հայ գաղթականութիւնը***», ***Կոչնակ Հայաստանի***, 14 ***Յունիս*** 1919, ***ԺԹ. տարի***, ***Թիւ*** 24, ***էջ*** 772։

### ԿԻՐԱԿԻ, 8 ՅՈՒՆԻՍ 1919, ՊՈՍԹՈՆ

Պոսթոնի Lyceum Hall-ին մէջ՝ նուագահանդէս ի նպաստ հայ որբերուն, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նիւ Պրիթէյնի Կոմիտէին եւ Վերակազմեալ Հնչակեան Կուսակցութեան մասնաճիւղին։ Կը մասնակցին՝ Ճ-Մ., տիկ. Զապէլ Փանոսեան (սոփրանօ) եւ ուրիշ արուեստագէտներ։

- ***Հայրենիք***, 5 ***Յունիս*** 1919, 20-***րդ տարի***, ***Թիւ*** 2159, ***էջ*** 4։

**ՈՒՐԲԱԹ, 4 ՅՈՒԼԻՍ 1919, ՊՈՍԹՈՆ**

Boston Common հանրային զբօսայգիին մէջ՝ Ամերիկայի անկախութեան տարեդարձի տօնակատարութիւն։ Հայերը կը մասնակցին երկու մեներգիչներով՝ Շ-Մ. եւ Ռօզ Զուլալեան (քոնթրալթօ)։ Շ-Մ. կ'երգէ Փրոֆֆ-Գալֆայեանի *Ապրի Հայաստանը*, Ռօզ Զուլալեան՝ Փրոֆֆ-Գալֆայեանի *Նոր օրօրը*։ Շ-Մ. կը մասնակցի նաեւ ֆրանսական թափօրին՝ երգելով *La Marseillaise*-ը։

- Գ. Պ. Խ., «*Հայերը Պօսթըն Քամընի մէջ Յուլիս 4-ի առթիւ*», *Ազգ*, 15 *Յուլիս* 1919, *ԺԳ. տարի*, *Թիւ* 86-2141, *էջ* 3։

## ՀԱՅԵՐԸ ՊՕՍԹԸՆ ՔԱՄԸՆԻ ՄԷՋ ՅՈՒԼԻՍ 4-Ի ԱՌԹԻՒ

Գ. Պ. Խ.

Յուլիս 4-ին, Ամերիկայի մեծ Հանրապետութեան անկախութեան տարեդարձին առթիւ, Պօստոնի Ամերիկեան Կարգադիր Յանձնախումբին կողմէն Պօստօն Քամընի մէջ սարքուած հանդէսին մէջ Հայեր դարձեալ փայլեցան եւ անհուն գնահատութեանց արժանացան, շնորհիւ երկու յայտնի երգիչներու, յանձին Տիկին Զուլալեանի եւ Տիար Շահ-Մուրատեանի, որոնք Ամերիկեան բարձր շրջանակներու մասնաւոր խնդրանքներով Ազգային Միութեան կողմէն հրաւիրուած էին երգելու։

Հանդէսը բացուեցաւ երեկոյեան ժամը 8.15-ին դրօշազարդ *Ֆրակ Փօնտ*ի վրայ տեղաւորուած Իտալական *պէնտ*ի գեղեցիկ նուագածութեամբ։

Այլեւայլ ազգերու դրօշակներու կարգին աչքառու տեղը կը գրաւէր Հայկական պանծալի եռագոյն դրօշակը, որ կը ծփար՝ ֆրանսական ճակատի Ամերիկեան բանակէն յաղթական վերադարձող զինուոր Պր. Գէորգ Սահակեանի բազուկներով վեր բարձրացած։

Յայտագրի գործադրութեան առաջին պահուն, ֆրանսական ներկայացուցիչներ երգիչ չունենալով, մասնաւոր խնդրանօք Տիար Շահ-Մուրատեան ֆրանսական դրօշակը կրող զինուորին առաջնորդութեամբ բեմին վրայ երեւնալով, հիանալիօրէն երգեց *Մարսէյեէզ*ը, որուն անուշ եւ դիւթիչ եղանակաւորումը Շահ-Մուրատի տիրական ձայնով, կը յուզէր ժողովուրդին խանդավառ սրտերը։

Կարգը Տիկին Զուլալեանինն էր, որ Հայկական դրօշակին առաջնորդութեամբ, բեմ հրաւիրուելով, իր խրոխտ ու հմայիչ ձայնով երգեց *Հայաստան*ը եւ *Նոր օրօր*ը, այնքան ներդաշնակ եւ այնքան բարձրաձայն, որ բացօդեայ պարտէզին ընդարձակածաւալ տարածութիւնը ողողեց քաղցրահնչիւն եղանակներու վէտ վէտ ալիքներով։

Պրն. Շահ-Մուրատեան դարձեալ հրաւիրուեցաւ երգելու, որ այս անգամ զոռ

եւ յուզիչ ձայնով երգեց *Ապրի Հայաստանը*։

Ուրիշ երգեր ալ կարգաւ երգեցին եւ պարեցին ինքնուրոյն տարազներով։

Յայտագրի պարունակութեան վերջանալէն յետոյ, բոլոր ազգերու դրօշակներ ներկայանալով բեմին մէջտեղ մասնաւորապէս պատրաստուած բարձրութեան մը վրայ, Ամերիկեան յաղթապանծ դրօշակը ի ձեռին կեցող Մայր Քօլօմպիային, մատուցին իրենց շնորհաւորութիւնները Ամերիկեան անկախութեան առթիւ, որոնք վայելեցին սիրալիր ընդունելութիւն մը եւ ամփոփուեցան Հանրապետութեան աստեղազարդ դրօշակին հովանիին ներքեւ։

Այս առթիւ կ'արժէ յայտնել մեր խորին երախտագիտութիւնը եւ գնահատանքի անկեղծ զգացումները Տիկին Ջուլալեանի եւ Տիար Շահ-Մուրատեանի, որոնք իրենց արուեստագէտի տաղանդով, փառքն ու պարծանքը եղած են Ազգին, փայլելով լուսափողփող՝ Հայ գեղարուեստի հորիզոնին վրայ երեւցող ցանցառ աստղերու հետ։

***Ազգ***, 15 ***Յուլիս*** 1919, ***ԺԳ. տարի***, ***Թիւ*** 86-2141, ***էջ*** 3

## ԿԻՐԱԿԻ, 24 ՕԳՈՍՏՈՍ 1919, ՓՐՈՎԻՏԵՆՍ

Փրովիտենսի Strande Theatre-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը ի նպաստ Կոմիտաս վարդապետի, մասնակցութեամբ ուրիշ արուեստագէտներու։

- «***Կոմիտաս վարդապետ***», ***Ազգ***, 19 ***Օգոստոս*** 1919, ***ԺԳ. տարի***, ***Թիւ*** 102-1257, ***էջ*** 1։
- ***Ազգ***, 21 ***Օգոստոս*** 1919, ***ԺԳ. տարի***, ***Թիւ*** 103-1258, ***էջ*** 4։
- ***Կոչնակ Հայաստանի***, 23 ***Օգոստոս*** 1919, ***ԺԹ. տարի***, ***Թիւ*** 34, ***էջ*** 1101։

## ՇԱԲԱԹ, 30 ՕԳՈՍՏՈՍ 1919, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի *Կոչնակ* շաբաթաթերթը կը տպագրէ Շ-Մ.ի յօդուածը՝ «Կոմիտաս վարդապետ. իր կեանքն ու գործը», [Ա. մաս] (Բ. մասը՝ 7 Փետրուար 1920)։

- ***Ա. Շահ-Մուրատեան***, «***Կոմիտաս վարդապետ. իր կեանքն ու գործը***», ***Կոչնակ***, 30 ***Օգոստոս*** 1919, ***ԺԹ. տարի***, ***Թիւ*** 35, ***էջ*** 1115-1117։

## ԿԻՐԱԿԻ, 26 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1919, ԼՕՐԵՆՍ

Լօրենսի Օփերայի Թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։ Կը մասնակցին՝ տիկ. Վ. Պարսիկեան (սոփրանօ), տիկ. Ուաթսըն (դաշնակ) եւ պր. Ա. Պլէկմըն (ջութակ)։

- ***Ազգ***, 25 ***Սեպտեմբեր*** 1919, ***ԺԳ. տարի***, ***Թիւ*** 118-1273, ***էջ*** 3։
- ***Ազգ***, 25 ***Հոկտեմբեր*** 1919, ***ԺԳ. տարի***, ***Թիւ*** 134-1289, ***էջ*** 4։

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 7 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1919, ՈՒՍՏՐ**

Ուստրի Horticultural Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- *Ազգ*, 24 *Հոկտեմբեր* 1919, *ԺԳ. տարի*, *Թիւ* 133-1288, *էջ* 4։

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 16 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1919, Կ. ՊՈԼԻՍ**

Պոլսոյ *Ոստան* կիսամսեայ արուեստներու, գրականութեանց եւ գիտութեանց պարբերագիրը կը տպագրէ Շ-Մ.ի յօդուածը՝ «Հայ ժողովրդական երգը»։

- *Ա. Շահմուրատեան*, «*Հայ ժողովրդական երգը*», *Ոստան*, 16 *Դեկտեմբեր* 1919, *Գ. տարի*, *Թիւ* (4) 10, *էջ* 182-184։

**ԴԵԿՏԵՄԲԵՐ 1919, ՈՒՍՏՐ**

Ուստրի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ Հայաստանի*, 10 *Յունուար* 1920, *Ի. տարի*, *Թիւ* 2, *էջ* 52։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Անգամ մ'ալ Ուստրի հայ ժողովուրդը պատեհութիւն ունեցաւ լսելու սիրուած հայ երգիչ՝ Պ. Ա. Շահ Մուրատեանը, որուն նուագահանդէսը ներկաներուն վրայ խոր տպաւորութիւն մը թողուց։ Ուրախալի է տեսնել որ հայ ժողովուրդը իր ծով ցաւերով լի սրտին մէջ տակաւին կը պահէ գեղարուեստի սէր եւ ճաշակը։
*Կոչնակ Հայաստանի*, 10 *Յունուար* 1920, *Ի. տարի*, *Թիւ* 2, *էջ* 52

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 1 ՅՈՒՆՈՒԱՐ 1920, ՓԵԹԵՐՍՈՆ**

Փեթերսոնի մէջ՝ նուագահանդէս, կազմակերպութեամբ Հ. Բ. Ը. Միութեան Փեթերսոնի մասնաճիւղին։ Մեներգ՝ Շ-Մ. եւ օր. Զեփիւռ Գաբրիէլեան։ Ջութակ՝ Սուրէն Սիւնի։ Դաշնակ՝ օր. Միլտրէտ Իսկեան։

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ Հայաստանի*, 21 *Փետրուար* 1920, *Ի. տարի*, *Թիւ* 8, *էջ* 254։

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Փէթըրսընի Հ. Բ. Ը. Միութեան մասնաճիւղը նուագահանդէս մը տուաւ Յունվ.

1-ին, նոր տարիի առթիւ ի նպաստ որբերու: Երգեցին Տիար Ա. Շահ-Մուրատեան եւ Օր. Զեփիւռ Գաբրիէլեան որոց երկուքին ալ երգերը մեծ խանդավառութեամբ գնահատեց ժողովուրդը: Տիար Միւնի ջութակի վրայ իսկ Օր. Իսկեան դաշնակի վրայ ճարտարօրէն նուագեցին ընտիր եղանակներ: Նուագահանդէսէն զուտ եկամուտ գոյացաւ $334.42 եւ որ խրկուեցաւ իր նպատակին:
***Կոչնակ Հայաստանի***, 21 ***Փետրուար*** 1920, ***Ի. տարի***, ***Թիւ*** 8, ***էջ*** 254

## ՇԱԲԱԹ, 7 ՓԵՏՐՈՒԱՐ 1920, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի *Կոչնակ* շաբաթաթերթը կը տպագրէ Շ-Մ.ի յօդուածը՝ «Կոմիտաս վարդապետ. իր կեանքն ու գործը», Բ. մաս (Ա. մասը՝ 30 Օգոստոս 1919):

**- *Ա. Շահ-Մուրատեան*, «*Կոմիտաս վարդապետ. իր կեանքն ու գործը*, *Բ.*», *Կոչնակ Հայաստանի***, 7 ***Փետրուար*** 1920, ***Ի. տարի***, ***Թիւ*** 6, ***էջ*** 178-180:

## ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 8 ՄԱՐՏ 1920, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Pennsylvania Hotel-ին մէջ՝ ճաշկերոյթ ի պատիւ զօրավար Անդրանիկի:

Տիկ. Մարի Պետիկեան կը մեներգէ *Տէր կեցո դու զհայս*, Շ-Մ. կը մեներգէ *Հայաստան*:

**- «*Զօր. Անդրանիկ Նիւ Եօրքի մէջ*», *Կոչնակ Հայաստանի***, 20 ***Մարտ*** 1920, ***Ի. տարի***, ***Թիւ*** 12, ***էջ*** 375-376:

## ԿԻՐԱԿԻ, 18 ԱՊՐԻԼ, 1920, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի DeWitt Clinton High School-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

*Արօր տատրակ* եւ *Սարէն կուգայ*, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը* եւ *Աշնան երգ*, մեներգ՝ Շ-Մ.

Jules Massenet: *Élégie* (‘Ô, doux printemps d’autre fois’), մեներգ՝ Շ-Մ.

Fromental Halévy: *La Juive*-էն, մեներգ՝ Շ-Մ.

René Rabey: *Tes yeux!*, մեներգ՝ Շ-Մ.

*Ալագեազ*, մեներգ՝ տիկ. Մառի Պետիկեան

Ջութակ՝ Carl Tollefsen

Դաշնակի նուագակցութիւն՝ օր. Քօրին Ռօլէրշթայն

**- *Յովհաննէս Աւագեան*, «*Շահ-Մուրատեանի նուագահանդէսը*», *Կոչնակ Հայաստանի***, 1 ***Մայիս*** 1920, ***Ի. տարի***, ***Թիւ*** 18, ***էջ*** 565-566:

# ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳԵԱՆ

Ապրիլ 18-ին, Տը Ուիթ Քլինթըն Բարձր. Դպրոցի երաժշտական սրահին մէջ տեղի ունեցաւ տաղանդաւոր յայտնի երգիչ Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը՝ որուն ներկայ ըլլալ փութացած էր Նիւ Եորքի եւ շրջակայից ամեն տեսակ դասակարգի Հայութենէն ստուար բազմութիւն մը:

Նուագահանդէսին յայտագիրը ճոխ էր ու պարզ: Լայն հորիզոններ, բարդութիւններ չունէր անիկա: Հասարակութեան ճաշակին համաձայն պատրաստուած էր եւ կատարելապէս գոհացում կուտար անոր փափաքին:

Իրապէս ժողովրդական երգիչն է Շահ-Մուրատեան: Իր ներշնչումները ժողովուրդէն կ՚առնէ, եւ իր կարգին կը ներշնչէ, կը խանդավառէ առ հասարակ ժողովուրդը որ բուռն ծափերով կը գնահատէ իր այս հարազատ զաւակը:

Յայտագրին մէջ դրուած գրեթէ բոլոր երգերն ալ ժողովուրդը յաճախ լսած է Շահ-Մուրատեանի բերնէն, եւ եթէ անոնք վերստին կը հրամցուին, պատճառը այն է թերեւս որ հանրութիւնը ոչ միայն անձանձրոյթ մտիկ կ՚ընէ զանոնք այլեւս կը խանդավառուի, կ՚ոգեւորուի անոնցմով:

Ժողվուրդը իր հասողութենէն ոչ-բարձր եւ յաճախ ալ իրեն ծանօթ երգեր կ՚ուզէ լսել: Շահ-Մուրատեան գիտէ այս իրողութիւնը եւ խանդավառութեամբ ընդառաջ կ՚երթայ հանրութեան այս միտումին, եթէ իսկ ատիկա նոր յայտնութիւններ երեւան չի բերէ ի շահ իր համբաւին եւ ունկնդիր հասարակութեան աստիճանական զարգացման: Եւ սակայն Շահ-Մուրատեանի նուագահանդէսները անտարակոյս ունեցած են իրենց բարերար ազդեցութիւնը: Ասկէ հինգ տարի առաջ ամերիկահայ հասարակութիւնը շատ քիչ բան գիտէր Կոմիտաս Վարդապետի ու Միրզաեանի ժողովրդական երգեցողութեան մասին: Այսօր, գրեթէ ամեն հայ տան մէջ Շահ-Մուրատեան կ՚երգէ... Ֆօնօկրաֆի վրայ: Այնպէս որ հանրութիւնը լիապէս ծանօթ է այլեւս իր սիրական երգչի ժողովրդական գրեթէ բոլոր երգերուն, եւ դիտելի էր որ ներկաներէն ոմանք, իրենց շուրջը գտնուողներուն լսցնելու չափ բարձր ձայնով մը կ՚երգակցէին Շահ-Մուրատեանին, *Արօր տատրակ*ին, *Սարէն կուգայ*ին եւ այլ կտորներու մէջ:

Շահ-Մուրատեան հայ ժողովրդական երգերն երգելու մասնաւոր զաղտնիքը ունի: Ոչ ոք իրեն պէս եւ իրեն չափ կրնայ արտացոլացնել բուն իսկ այդ երգերուն մէջ դրուած ոգին, պարզ այլ անկեղծ շեշտը: Իր առոգանութիւնն ու արտայայտման եղանակը ա՛յնքան բնական են, ա՛յնքան հարազատ որ իրապէս երեւան կը բերեն այդ կտորներուն տոհմիկ երանգը:

Մեր երգահանները ժողովուրդին ծանօթացնելու գործին մէջ գնահատելի մեծ դեր կատարած է Շահ-Մուրատեան: Այս անգամ եւս իր դերին մէջն էր

անիկա, եւ այդ իսկ պատճառով Ռոմանոս Մելիքեանէ ընտրած էր երկու կտորներ – *Վարդ* եւ *Աշնան երգ*, որոնց մէջ մասնաւոր առաւելութիւններ չի կրցանք նշմարել սակայն։

Եւրոպական երգերու ընտրութիւնն ալ Շահ-Մուրատեան կատարած էր վերջին աստիճանի զգուշաւորութեամբ. մի՛ գուցէ գտնուէր կտոր մը որ անմատչելի ըլլար ժողովուրդին։ Այս պատճառաւ է անտարակոյս որ նախապատւութիւն տրուած էր Մասընէի հանրածանօթ, տխրանուշ եղերերգին (Էլէժի)։

Շահ-Մուրատեան իր տաղանդը առաւելապէս արժեցուց Հալըվիի *Հրէուհի*ին մէջ, զոր մեծ յաջողութեամբ երգեց։ Այդ կտորին մէջ էր որ Թէնոռի իր արժանիքները փայլեցան, եւ քիչ շատ գաղափար մը տուին իր ընդհ. արուեստին եւ ըմբռնումներուն նկատմամբ։ Անիկա երգին յատուկ յուզումով երգեց նաեւ Ռապէյի *Աչքերդ* զմայլելի կտորը։

Այս նուագահանդէսին իր մասնակցութիւնը բերած էր նաեւ տիկին Մառի Պետիկեան՝ որուն երգած հայերէն կտորներուն մէջ յաջողագոյնն էր *Ալագեազ*ը։

Տիկին Պետիկեանէ զատ այս նուագահանդէսին իր մասնակցութիւնը բերած էր նաեւ ջութակահար Քարլ Թօլէֆսընն՝ որ առ հասարակ յաջողութեամբ նուագեց հանրութեան հրամցուած իր կտորները։ Միայն թէ կրկնաթելերու վրայ (double stop) նուագած պահուն, ցուցուց որ ինքը լիապէս տիրացած չէ դեռ արուեստի նրբութիւններուն։ Ասով հանդերձ, Թօլէֆսըն ամէն յոյս կը ներշնչէր յառաջդիմելու եւ զարգանալու։

Դաշնակի վրայ երգիչներուն կ'ընկերակցէր Օր. Քօրին Ռօլէրշթայն։
***Կոչնակ Հայաստանի***, 1 ***Մայիս*** 1920, ***Ի. տարի***, ***Թիւ*** 18, ***էջ*** 565-566

**ԿԻՐԱԿԻ, 2 ՄԱՅԻՍ 1920, ԼԻՆ**

Լինի մէջ՝ հայկական թափօր եւ հանրային ժողով ի նպաստ Հայկական Հանրապետութեան բանակի հանգանակութեան, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան տեղական կոմիտէին։ Շ-Մ. կը մեներգէ *Հայաստան* եւ կը մասնակցի հանգանակութեան կազմակերպութեան։

- ***Երեմ. Գայլեան***, «***Հայերը Ամերիկայի մէջ***», ***Հայրենիք***, 15 ***Մայիս*** 1920, 20-***րդ տարի***, ***Թիւ*** 2446, ***էջ*** 3-4։

## ՀԱՅԵՐԸ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԷՋ

ԵՐԵՄ. ԳԱՅԼԵԱՆ

ԼԻՆ. – Վերջին քանի մը շաբաթները եղած են խինդեռանդ յուզումի շաբաթ-

ներ ամերիկահայութեան համար, որ փութկոտ ընթացքով յառաջ կը տանի Հայկական Հանրապետութեան բանակին համար կատարուած հանգանակութիւնները Հ. Յ. Դաշնակցութեան անդուլ աշխատանքովը:

Լինն ալ ուրիշ տեղերու նման, իր օրն ունեցաւ. – Մայիս 2-ը: Հ. Յ. Դ. տեղիս կօմիտէի հանգանակիչ յանձնախումբը ի պատիւ հիւրերուն կազմակերպեց թափօր մը տեղական նուագախումբի մասնակցութեամբ: Լինի հայ հասարակութենէն զատ քաղաքապետին մասնաւոր հոգածութիւնով մասնակցեցան նաեւ ոստիկաններ ալ, որ մեզ համար անակնկալ մըն էր. այս պարագան աւելի նորօրինակ ընդունելութիւն մըն էր եւ պատիւ մը թէ՛ Քէփթըն Մելիքեանի եւ թէ հայ բանակին: Հարկ չեմ համարիր հոս նկարագրել թափօրին մանրամասնութիւնները, միայն կ'արժէ յիշատակել որ Հայկական Հանրապետութեան եւ ամերիկեան դրօշակները իրենց վեհութիւնով թափօրը առաջնորդեցին մինչեւ քաղաքապետարանին առջեւ, անկէ ալ դէպի ժողովասրահը, ուր արդէն ժողովուրդը լեցուած էր:

Ուրիշ իտալական նուագախումբ մըն ալ փրօֆ. Լ. Գօրաննէլօի ղեկավարութեամբ, պատրաստ կ'սպասէր հոն, ժողովը բացուելուն:

Իտալական նուագախումբը կարգ մը ընտիր կտորներ նուագելէն վերջ մեկնեցաւ. միայն մնաց փրօֆ. Գօրաննէլօն իր պզտիկ տղային եւ աղջկան հետ որոնք վերջը երգելու իրենց պարտքը կատարեցին անվերջ ծափահարութիւններու տակ:

Ժողովը բացուեցաւ *Մեր հայրենիք* երգի փոփոխակովը, որ երգուեցաւ Պրն. Շահ-Մուրատեանի առաջնորդութիւնով: Ատենապետ ընկ. Պ. Պալունեան ժողովին նպատակը յայտնելէ յետոյ, հրաւիրեց ընկ. Յ. Չագմագճեան, որ վերլուծեց Հայկ. պատմութիւնը, թագաւորական շրջանները եւ անոնց անկումի ողբերգութիւնները: Այս տեսակ քաղաքական անցեալ մը չունենալու համար ներկայ Հայաստանի բանակին զօրավիգ կանգնիլ հարկ է, ըսաւ:

Քէփթըն Մելիքեան շատ կարճ բայց կուռ խօսեցաւ: Հայկական բանակին վրայ ակնարկ մը նետելով ըսաւ. «Անոնք իրենց կեանքը կուտան ամենամեծ զրկանքներու տակ, գոնէ դուք ձեր դրամը տուէք փրկուելու համար»:

Ուր որ Շահ-Մուրատեանը կը գտնուի, հոն ժողովուրդը նոր կեանքը կ'ստանայ:

Ընկ. Փ. Մինասեան, յայտնի բեմախօս, կարելի չէ որ զայն լսողը մասնաւոր արժէք չտայ անոր ըսածներուն: Ան օրինակներով ժողովրդին հասկցուց թէ ի՛նչպէս պէտք է օգնել բանակին զայն կանգուն պահելու համար: Անոնք իրենց կեանքի գնով Հայրենիքի սահմանները կը պաշտպանեն, եթէ կ'ուզէք ապրիլ՝ հագուեցուցէք ու զինեցէք բանակը, ըսաւ ան:

Հանգանակութիւնը բացուած յայտարարուեցաւ: Կարմիր Խաչը, Հանգանակիչ Յանձնախումբը, ընկ. Մինասեան եւ Պ. Շահ-Մուրատեան ահագին աշխա-

տանք կատարեցին հանգանակութիւնը յաջող ընելու համար։ Արդարեւ, ժողովուրդը գիտակցելով այս կենսական պահանջին կարեւորութեանը՝ անխտրաբար մասնակցեցան։

Սակայն, ուրիշ հաստուածներ սեղմ շրջանակներով ու տարբեր հանգամանքի տակ կատարեցին իրենց հանգանակութիւնները մասնաւոր զայրոյթ պատճառելով հայ գաղութին։

Գտնուեցան շատեր, որ Հայկական Հանրապետութեան եւ իր բանակին «Չենք հաւատար»-ի ռամիկ խօսքերով հեռու մնացին։

***Հայրենիք***, 15 ***Մայիս*** 1920, 20-*րդ տարի*, *Թիւ* 2446, *էջ* 4-5

**ԿԻՐԱԿԻ, 23 ՄԱՅԻՍ 1920, ՊՈՍԹՈՆ**

Պոսթոնի Jordan Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Giuseppe Verdi: *Don Carlos*, արիա, մեներգ՝ Շ-Մ.

Fromental Halévy: *La Juive*, արիա, մեներգ՝ Շ-Մ.

Jules Massenet: *Élégie* (‘Ô, doux printemps d’autre fois’), մեներգ՝ Շ-Մ.

*Հայրիկ, հայրիկ, քո հայրենեաց, Հերի՛ք, որդեակ, Վարդը, Աշնան երգ, Կանչէ կռունկ* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Մեներգ՝ օր. Edith Weye Wilson (քնթրալթօ)

Թաւջութակ՝ պր. Carl Stockbridge

Դաշնակ՝ պր. J. Angus Winter

- ***Հայրենիք***, 19 ***Մայիս*** 1920, 20-*րդ տարի*, *Թիւ* 2449, *էջ* 3։

- «***Շահ-Մուրատեանի երգահանդէսը***», ***Հայրենիք***, 22 ***Մայիս*** 1920, 20-*րդ տարի*, *Թիւ* 2452, *էջ* 3։

- ***Հայաստանցի***, «***Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը Պօսթընի մէջ***», ***Հայրենիք***, 29 ***Մայիս*** 1920, 20-*րդ տարի*, *Թիւ* 2458, *էջ* 4։

- ***Ներկայ մը***, «***Ա. Շ.-Մուրատեանի նուագահանդէսը***», ***Պահակ***, 10 ***Յունիս*** 1920, ***Ժ. տարի***, *Թիւ* 54-720, *էջ* 3։

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Առաջիկայ Կիրակի, Մայիս 23, ժամը կէսօրէն յետոյ 2-ին, տեղի պիտի ունենայ Շահ-Մուրատեանի երգահանդէսը Jordan Hall-ի մէջ։

Տարօնի սոխակը իր հարուստ եւ հմայիչ ձայնով, երգի արուեստին մէջ ձեռք բերած իր նախանձելի տիրապետութեամբ այնքան է ընտանի մէն մի ամերիկահայու, որ մեր կողմէն նոր ծանօթացումի պէտք չունի։

Պոսթոնի եւ շրջակայի հայութիւնը բաւական երկար ժամանակէ ի վեր պատեհութիւն ունեցած չէ ըմպելու աննման քաղցրութիւնը հայեցի երաժշտութեան, որ յատուկ է Շահ-Մուրատեանի։

Այդ թանկագին պատեհութիւնը պիտի ունենան Պոսթընի եւ շրջակայքի հայերը, Մայիս 23-ի Կիրակին։

Շահ-Մուրատեանի երգահանդէսը պիտի համեմուի ամերիկացի յայտնի արուեստագէտներու երգերովն ու նուագներովը։
*Հայրենիք*, 22 *Մայիս* 1920, 20-*րդ տարի*, *Թիւ* 2452, *էջ* 3

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ ՊՕՍԹԸՆԻ ՄԷՋ

ՀԱՅԱՍՏԱՆՑԻ

Պօսթընի եւ շրջաններու համար անձրեւային եւ տարօրինակօրէն խոնաւ օր մը եղաւ Մայիս 23-ի Կիրակի օրը։ Ընտրեալ, կոկիկ հասարակութիւն մը, օդը այնքան աննպաստ ըլլալով հանդերձ, հաւաքուած էր Jordan Hall, լսելու սիրուած եւ ծանօթ իր երգիչը, անգամ մը եւս հմայուելու անոր ջրվիժող եւ առինքնող ձայնին թովչութիւնովը։

Ա. Շահ-Մուրատեանը մէկն է մեր մէջ, որուն որքան լսելու ըլլայ մեր հասարակութիւնը՝ այնքա՛ն մը եւս լսել կը բաղձայ – կրկին ու կրկին։ Եւ այս անգամ, ապահովաբար շա՛տ բան կորսնցուցին ամէն անոնք, որոնք չեկան ու չլսեցին անոր *Don Carlos*էն առնուած Verdi-ի, եւ *La Juive*էն առնուած Halevy-ի Aria-ները։ Երկու *օփէրաթիք* կտորներ՝ զորս Շահ-Մուրատեան երգեց ձայնի այնքա՛ն վէտվէտուն ալիքներով, մերթ եթերային ոլորտներու առաջնորդող թովչական խաղերով եւ մերթ վրիժառու որոտումով մը միանգամայն։ Այնքա՛ն զգլխիչ ու տիրական ձայնով, Պօսթընի մէջ դեռ չէր երգած Շահ-Մուրատեան...։ Իսկ Massenet-ի Elegie-ն՝ առանձին գոհունակութիւն մը առթեց բոլոր հանդիսականներուն, որոնք իրենց ծափերուն տարափը այնքա՛ն մը երկարեցին։

Շահ-Մուրատեան ունէր հայերէն երգերու *կրուփ* մը. – *Հայրիկ, հայրիկ, քո հայրենեաց*, *Հերի՛ք, որդեակ*, *Վարդ*, *Աշնան երգ*, *Կանչէ կռունկ*, եւ ի վերջոյ՝ *Հայաստանը*, որ անգամ մը եւս՝ հայուն ռազմաշունչ եւ քաջակորով հոգիին խորէն ու հայուն իսկ հոգիին հնչեցուց ան...։

Շահ-Մուրատեանի համար հաճելի սովորութիւն է, իւրաքանչիւր անգամ նորութիւններով համեմուած program-ով մը երեւնալ հասարակութեան։ Եւ այս շատ ծափահարելի սովորութիւն է իսկապէս։ Մեր երիտասարդներէն եւ օրիորդներէն քանի՜ քանիները գիտեմ, որոնք ամէն անգամ, երբ առիթը կ'ընծայուի,

իրենց ունկնդիրի դերին մէջ, լռիկ ու մնջիկ կ՚աշակերտեն Ա. Շահ-Մուրատեանի, կը ծանօթանան զուտ հայեցի երգերու իսկական եղանակին հետ՝ եւ շատ հաճելի է իրենց համար, երբ կը սորվին երգել Շահ-Մուրատեանի իսկ երգած եղանակովը։

Քանի մը տարիներ առաջ, երբ տակաւին Շահ-Մուրատեանը իր ոտքը չէր դրած Աղլանտեանի ափին եզերքը, մեր մէջ հազուագիւտ էր հրապարակային հանդէս-ժողովներու եւ երեկոյթներու յայտագրերուն վրայ տեսնել երգիչ ու երգչուհիներու անուններ. դժուարաւ կը ճարուէին այնպիսիներ մանաւանդ, որոնք մեզի կարենային տալ զուտ հայ-երգը։ Այսօր, սակայն, շա՜տ է անոնց թիւը։ Եւ համեմատաբար՝ որքա՜ն նրբացած է մեր հասարակութեան ճաշակը... Ան՝ այսօր ոչ միայն անբաժանօրէն կապուած է հայ-երգին, այլեւ գիտէ գնահատել, դասաւորել, «որոտընդոստ կերպով» իր ծափահարելիք տեղն ալ սորված է եւ... հետզհետէ դժուարահաճ ալ կը դառնայ – *սոխակ*ին ու *ագռաւ*ին տարբերութիւնները ճշդելու չափ *դժուարահաճ*...։

Երանի թէ ունենայինք քանի մը հատ Կոմիտասներ, եւ ունենայինք *կրուփ* մը Շահ-Մուրատեաններ – ամէն ուր որ հայ սիրտ ու հայ հոգի կայ...։

Երգը ազնուացնող է։

Շահ-Մուրատեան այս *քօնսէր*ին իրենց մասնակցութիւնը բերած էին ամերիկացի *արթիսթ*ներէն Օր. Էտիթի Մէյ Ուիլսոն, երգչուհին, եւ Պ. Պ. Քարլ Սթօհքպրիճ ու Ճ. Անկըզ Ուինթըր – նուագողներ՝ թաւջութակով եւ դաշնակով, որոնք ծափեր խլեցին մեր հասարակութենէն։

Ե՞րբ անգամ մըն ալ պիտի լսենք Շահ-Մուրատեանը...։

***Հայրենիք***, 29 ***Մայիս*** 1920, 20-***րդ տարի***, ***Թիւ*** 2458, ***էջ*** 4

## Ա. Շ.-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ՆԵՐԿԱՅ ՄԸ

Մայիսի վերջերը Պօսթընի եւ շրջակայքի երկսեռ հայերը Ճօրտըն Հօլին մէջ կրկին լսեցին Պր. Ա. Շահմուրատեան։

Երգը որքան յաջող ու ներշնչող է նոյնքան սփոփիչ ու ազնուացնող դեր կը կատարէ ցաւէն ու տառապանքէն վշտահար հոգիներուն համար։ Ու ամեն անոնք որ երաժշտութեան զգայնոտ հոգին կապրեցնեն իրենց վշտակոծ կուրծքերուն տակ, եկած էին հայրենի կարօտով ծարաւ իրենց պապակը յագեցնելու։

Յաճախ լսած էինք *Հայրիկ հայրիկը*, *Հերիք որդեակը*, *Կանչէ կռունկ կանչէ*ն մեր ամաթէօր երգիչներէն ու երգչուհիներէն, բայց այդ օրը Շահ-Մուրատեան իր մարզուած ձայնին հմայող թրթռումներով կը պատկերացնէր Հայ հոգին իբրեւ

ջինջ ու յղկուած հայելի մը, որուն մէջ մարդիկ դիւրութեամբ պիտի տեսնէին այն ըմբոստութիւնը որ ցեղի մը նկարագիրը կ'ազնուացնէ ու կը ձեւացնէ:

Իր *Վարդ*ն ու *Աշնան երգ*ը բոլորովին նորութիւն մըն էին մեզ համար եւ Շահ-Մուրատեան այդ երգերը մեզի դարձուց նոյնքան հաճելի ու տպաւորիչ:

Շահ-Մուրատեան այդ օրը իր ռազմաշունչ Հայաստանին հետ նոյնքան արուեստական նրբութիւնով մը երգեց *La Juive*ը:

Այս նուագահանդէսին իրենց մասնակցութիւնը բերած էին ամերիկացի արուեստագէտներէն Օր. Էտիկ Մէյ Ուիլըրն երգչուհին, Պրնք. Քարլ Սթահքպրիճ եւ Ճ. Անկըչ Ուինթըր իրենց թաւ ջութակով եւ դաշնակով: Ներկաներու խլացուցիչ ծափերը արդէն իսկ գնահատումի արտայայտութիւններն էին անոնց ցուցադրած կարողութեան:

***Պահակ***, 10 ***Յունիս*** 1920, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 54-720, ***էջ*** 3

## ԿԻՐԱԿԻ, 30 ՄԱՅԻՍ 1920, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Carnegie Hall-ին մէջ՝ Հայաստանի Հանրապետութեան Բ. տարելիցի տօնակատարութիւն: Հայկական եւ ամերիկեան մեներգներ կը կատարեն Շ-Մ. եւ տիկ. Ռոզ Զուլալեան (քոնթրալթօ):

- «***Հայկական Հանրապետութեան երկրորդ տարեդարձը Նիւ Եորքի մէջ***», ***Կոչնակ Հայաստանի***, 12 ***Յունիս*** 1920, ***Ի. տարի***, ***Թիւ*** 24, ***էջ*** 773:

## ԿԻՐԱԿԻ, 8 ՕԳՈՍՏՈՍ 1920, ՊՐԱՆԹՖՈՐՏ (ՕՆԹԱՐԻՕ)

Պրանթֆորտի Allen Theatre-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

- ***Հայրենիք***, 28 ***Յուլիս*** 1920, 20-***րդ տարի***, ***Թիւ*** 2507, ***էջ*** 3:

- ***Խորդէն***, «***Շահ-Մուրատը Քանատայի մէջ***», ***Հայրենիք***, 12 ***Սեպտեմբեր*** 1920, 20-***րդ տարի***, ***Թիւ*** 2546, ***էջ*** 2:

# ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԸ ՔԱՆԱՏԱՅԻ ՄԷՋ

ԽՈՐԴԷՆ

Պրէնթֆօրտ. – Շարունակ կը լսէինք եւ կը կարդայինք ամերիկահայ թերթերու մէջ Պրն. Շահ-Մուրատեանի մասին, բայց մինչեւ ցարդ առիթը չէինք ունեցած զինքը լսելու, եւ շատերուս համար անհաւատալի կը թուէր անոր մասին գրուածները:

Օգոստոս 8-ի կիրակին անմոռանալի օր մը եղաւ քանատահայութեան

համար։ Ամբողջ քանատահայ երկսեռ երաժշտասէրները հաւաքուած էին Պրէնթֆօրտ Ալըն թատրոնը եւ մօտաւորապէս 350 հոգի անհամբեր կ'սպասէին նուագահանդէսի բացման։ Վերջապէս Պրն. Շահ-Մուրատ երեւցաւ բեմի վրայ բուռն ծափերու մէջ։

Մեր թերահաւատութիւնը փարատեցաւ երբ առաջին անգամ Պ. Շահ-Մուրատ սկսաւ *Բամ փորոտան*ը երգել։ Նուագահանդէսին կը մասնակցէին օտար տաղանդաւոր արուեստագէտներ ալ աւեցնելով հանդէսին փայլը։ Քաղաքիս տեղացիներէն նշանաւոր երաժշտագէտներ ներկայ էին որոնք հիացումով կը խօսէին Տարօնի Սոխակի մասին։ Երբ որ երգեց *Ալագեա՛զ*ը չնայելով որ իրենց համար անհասկնալի էր դարձեալ կը յարէին «իթ իզ փրիթի կուտ»։

Հանդէսը այնքան գրաւիչ էր որ շատեր չէին ուզեր դուրս ելլել նուագահանդէսին լրանալէն վերջն իսկ։

Կը յուսանք որ Պ. Շահ-Մուրատ շուտով պիտի վերադառնայ Հայաստան, ինչ որ իր ալ տրամադրութիւնն էր, օգտակար ըլլալու համար Հայաստանի նոր սերունդին՝ եւ մենք առիթը պիտի ունենանք զինքը վայելելու բուն իսկ երկրին մէջ։
***Հայրենիք***, 12 ***Սեպտեմբեր*** 1920, 20-*րդ տարի*, *Թիւ* 2546, *էջ* 2

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 21 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1920, ՖԻԼԱՏԵԼՖԻԱ**

Ֆիլատէլֆիայի The New Century Club-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

*Ո՜հ, ինչ անուշ*, *Վարդը*, *Աշուն*, *Սարերը ման եմ եկել*, *Սարերի հովին մեռնիմ* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Jules Massenet: *Élégie* (‘Ô, doux printemps d’autre fois’), մեներգ՝ Շ-Մ.

Pyotr Tchaikovsky-էն երգ մը, ֆրանսերէն եւ անգլերէն երգեր, մեներգ՝ Շ-Մ.

Զուգերգ՝ Շ-Մ. եւ օր. Սարա Րիչարտզ Ճհան (սոփրանօ)

Ֆրանսերէն եւ անգլերէն երգեր, մեներգ՝ օր. Սարա Րիչարտզ Ճհան

Pablo de Sarasate: *Zigeunerweisen*, ջութակ՝ պրն. Ճհան Րիչարտզ

Fritz Kreisler: *Caprice viennois*, ջութակ՝ պրն. Ճհան Րիչարտզ

**- *Գալուստ Յ. Գալուստեան***, «***Պրն. Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը Ֆիլատէլֆիոյ մէջ***», ***Հայրենիք***, 18 ***Դեկտեմբեր*** 1920, 22-*րդ տարի*, *Թիւ* 2627, *էջ* 4։

## ՊՐՆ. Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ ՖԻԼԱՏԷԼՖԻՈՅ ՄԷՋ

ԳԱԼՈՒՍՏ Յ. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ

Պրն. Ա. Շահմուրատեան գարնան Եւրոպա մեկնելուն պատճառաւ ձեռնար-

կած է նուագահանդէսներու շարքի մը հայաշատ քաղաքներու մէջ։ Ասոնց կարգին էր նաեւ հոկտեմբեր 21-ի հինգշաբթի երեկոյեան ժամը 8.30-ին Ֆիլատէլֆիոյ The New Century Club-ին մէջ տեղի ունեցած նուագահանդէսը։

Հանդէսին ներկայ էին 100-է աւելի գեղարուեստասէր բազմութիւն մը։ Խանդավառ ծափերու մէջ բեմ եկաւ տաղանդաւոր երգիչը եւ նուագահանդէսի մասին քանի մը խօսքով բացատրութիւն տալէ վերջ, երգեց *Ո՜հ, ինչ անուշ*ը եւ իր ներդաշնակ թրթռացումներովը ու վարժ ելեւէջներովը հանդիսականները յուզեց ու կրկնակի ծափահարուեցաւ։ Սոյն երգէն վերջ «Տարօնի Սոխակը» երգեց *Վարդ* եւ *Աշուն* երգերը, եւ իր սիրոյ խօսքերովը կրցաւ բոլոր սիրահար սրտերը յուզել, ու բուռն ծափեր խլել ներկաներէն։

Հանդիսականներուն ծանօթացնելու համար նաեւ եւրոպական երաժշտութիւնը, հրաւիրուած էին օտար արուեստագէտներ, որոնք իրենց մասնակցութեամբը հանդէսին փայլը աւելցուցին եւ ներկաներու գնահատութեան արժանացան։

Օր. Սարա Րիչարտզ Ճհան (սօբրանօ), երգեց անգլիերէն եւ ֆրանսերէն կտորներ իսկ պրն. Ճհան Րիչարտզ ջութակի վրայ նուագեց Gipsy Airs եւ Caprice viennois կտորները շատ մեծ յաջողութեամբ։

Տաղանդաւոր երգիչը յաջորդաբար երգեց ֆրանսերէն լեզուով զանազան գեղեցիկ երգեր, եւ զուգերգ մը Օր. Ս. Րիչարտզ Ճհանի հետ։

Պրն. Շահ-Մուրատեան *Սարերը ման եմ եկել* եւ *Սարերի հովին մեռնիմ* երգերով յուզեց ներկաներու հայրենաբաղձ սրտերը իսկ *Հերիք որդեակ*ով վրիժառութեան անհուն տենչ մը ստեղծեց։ Դղրդագին ծափերով եւ խանդավառութեամբ ընդունուեցան սոյն երգերը։ Մեծ յաջողութեամբ մեներգեց Չայքովսքիէն (ռուսերէն) կտորներ, *Էլէժի* ֆրանսերէն լեզուով եւ ուրիշ անգլիերէն եւ ֆրանսերէն կտորներ։

Վերջաբանն եղաւ իր անզուգական *Հայաստան*ը որ ըստ հայրենասէր երգչի առաջարկութեան յոտնկայս ունկնդրուեցաւ։ Ներկաները մեկնեցան գոհ եւ ուրախ սրտով։

Իր վերջին նուագահանդէսով պ. Շահ-Մուրատեան անգամ մըն ալ տեղույս գեղարուեստասէր հասարակութեան գովասանքին եւ գնահատութեան առարկայ դարձաւ, եւ շատեր իրական ցաւ կ'զգան անոր մեկնումին առթիւ։

Վստահ ենք որ ամերիկահայ հասարակութիւնը չպիտի մոռնայ պ. Շահ-Մուրատեանի կատարած դերը եւ հայ արուեստագէտն ալ գոհ սրտով է որ պիտի հեռանայ գեղարուեստասէր հասարակութեան կողմէ իր գտած ընդունելութեան առթիւ։

***Հայրենիք***, 18 ***Դեկտեմբեր*** 1920, 22-*րդ տարի*, *թիւ* 2627, *էջ* 4

**ԿԻՐԱԿԻ, 14 ՆՈՅԵՄԲԵՐ 1920, ՈՒՍՏՐ**

Ուստրի մէջ՝ Կիլիկիոյ հանգանակութեան հրապարակային ժողով: Ատենախօսներ՝ Երուանդ Մեսիաեան եւ Վեր. Հ. Յ. Խազոյեան: Հայերէն մեներգներ կը կատարէ Շ-Մ.:

- *Ազգ*, 10 *Նոյեմբեր* 1920, *ԺԴ. տարի*, *Թիւ* 260-1592, *էջ* 4:

- «*Հայ գաղթականութիւնը*», *Կոչնակ Հայաստանի*, 27 *Նոյեմբեր* 1920, *Ի. տարի*, *Թիւ* 48, *էջ* 1438:

**ԿԻՐԱԿԻ, 28 ՆՈՅԵՄԲԵՐ 1920, ՓՐՈՎԻՏԵՆՍ**

Փրովիտենսի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

- *Հայրենիք*, 11 *Նոյեմբեր* 1920, 20-*րդ տարի*, *Թիւ* 2596, *էջ* 2:

**ԿԻՐԱԿԻ, 12 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1920, ՓՐՈՎԻՏԵՆՍ**

Փրովիտենսի Elk's Auditorium-ին մէջ՝ ժողով, նախաձեռնութեամբ Ուաշինկթոնի Դեսպանատան Գնման Յանձնախումբին: Խօսք՝ զնդ. Նեւտոն Խան, տոքթ. Ադամեան եւ պր. Փ. Սինասեան: Մեներգ՝ Շ-Մ.:

- «*Կարեւոր ժողովներ*», *Հայրենիք*, 11 *Դեկտեմբեր* 1920, 22-*րդ տարի*, *Թիւ* 2621, *էջ* 2:

**ԿԻՐԱԿԻ, 26 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1920, ՊՈՍԹՈՆ**

Պոսթոնի Franklin Union Hall-ին մէջ՝ Ազգային Ռամկավար Կուսակցութեան հրապարակային ժողովը: Ժողովը կը փակուի Շ-Մ.ի մեներգով՝ *Հերի՛ք որդեակ*:

- *Կիրակոս Ա. Զագարեան*, «*Պոսթոնի Ռամկավար Ակումբին Հրապարակային Ժողովը*», *Ազգ*, 1 *Յունուար* 1921, *ԺԵ. տարի*, *Թիւ* 1-1635, *էջ* 2:

## ՊՈՍԹՈՆԻ ՌԱՄԿԱՎԱՐ ԱԿՈՒՄԲԻՆ ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԺՈՂՈՎԸ
**(հատուած)**

ԿԻՐԱԿՈՍ Ա. ԶԱԳԱՐԵԱՆ

Ժողովը փակուեցաւ հանրածանօթ երգիչ՝ Տիար Ա. Շահ-Մուրատեանի *Հերի՛ք որդեակ* գոռ ու դաշն երգով, որոտընդոստ ծափերու մէջ:

- *Ազգ*, 1 *Յունուար* 1921, *ԺԵ. տարի*, *Թիւ* 1-1635, *էջ* 2:

**ԿԻՐԱԿԻ, 2 ՅՈՒՆՈՒԱՐ 1921, ՊՈՍԹՈՆ**

Պոսթոնի Jordan Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը: Կը մասնակցին՝ տիկ. Ռօզ Զուլալեան (քոնթրալթօ), օր. Celia Goldman (ջութակ), օր. T. Goldman (դաշնակ) եւ տիկ. N. S. Watson (դաշնակ):

- *Հայրենիք*, 11 *Դեկտեմբեր* 1920, 22-*րդ տարի*, *Թիւ* 2621, *էջ* 5:

- «*Շահ-Մուրատեանի վերջին նուագահանդէսը Պօսթընի մէջ*», *Հայրենիք*, 1 *Յունուար* 1921, 23-*րդ տարի*, *Թիւ* 2638, *էջ* 3:

- *Ազգ*, 1 *Յունուար* 1921, *ԺԵ. տարի*, *Թիւ* 1-1635, *էջ* 3:

- *Վահէ-Հայկ*, «*Երգ եւ գեղեցկութիւն* (*Շահ-Մուրատեանի նուագահանդէսին առիթով*)», *Հայրենիք*, 8 *Յունուար* 1921, 23-*րդ տարի*, *Թիւ* 2643, *էջ* 3:

- *Վահան Թոթովենց*, «*Շահ-Մուրատեանի վերջին նուագահանդէսը*», *Ազգ*, 17 *Յունուար* 1921, *ԺԵ. տարի*, *Թիւ* 13-1647, *էջ* 3:

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՎԵՐՋԻՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ ՊՕՍԹԸՆԻ ՄԷՋ

Պօսթընի եւ շրջակայքի հայութիւնը վերջին պատեհութիւն մըն ալ պիտի ունենայ լսելու պ. Շահ-Մուրատեանը յառաջիկայ կիրակի, յունվար 2, ժամը 2.30-ին Ճօրտըն Հօլին մէջ:

Պարոն Շահ-Մուրատեան այլեւս կարիք չունի ծանօթացուելու եւ ռէքլամի: Իր վերջին տարիներու ներկայութիւնը՝ ամերիկահայ գաղութին մէջ՝ բաւական եղաւ որ բոլորս առանց հատուածական խտրութեան գնահատենք այն անզիւտ ձիրքը զոր բնութիւնը պարգեւած է իրեն եւ այն մեծ տաղանդը, որով ազնուացած ու վսեմացած է իր բնատուր ձիրքը:

Վստահ ենք թէ Պօսթընի եւ շրջակայքի հայութիւնը պիտի ուզէ վերջին անգամ մըն ալ ըմբոշխնել մեր տոհմիկ երգիչին քաղցր ու հոգեզմայլ մեղեդիները:
*Հայրենիք*, 1 *Յունուար* 1921, 23-*րդ տարի*, *Թիւ* 2638, *էջ* 3

## ԵՐԳ ԵՒ ԳԵՂԵՑԿՈՒԹԻՒՆ (ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԻՆ ԱՌԻԹՈՎ)

ՎԱՀԷ-ՀԱՅԿ

Շահ-Մուրատեան՝ երգի այս երիտասարդ վարպետը, օժտուած արուեստագէտ մըն է, ծնած ու ձեւակերպուած բնազաւառի հողին վրայ: Անիկա ճանչցած է

ցեղին հարազատ հոգին, եւ ժամանակակից երաժշտութեան բարձրագոյն դաստիարակութիւնով շինուած ու կատարելագործուած։

Ունի կորովի եւ ազնուական կեցուածք մը՝ եւ անոր մէջ թրվռուն եւ մանկատիպ հոգի մը՝ ուրկէ մեր սրտին մօտիկ երգեր ու երազներ կը քակուին եւ հայ հողերէն բաժնուած մեր հոգիներուն կը փաթթուին տարիներով փնտռուած կարօտի մը պէս։

Այս պատճառով անոր երգերը մեր ականջներուն կը զարնուին ճշմարիտ գեղեցկութիւններու պէս, որոնց պիտի սիրէինք մտիկ ընել ու անոնց մօտ սպասցնել մեր հոգին ընդերկար։ Այս գեղեցկութիւնները՝ որոնցմէ մեր նայուածքը կը յամառի բաժնուիլ, նոյնիսկ ճեպընթացի արագութիւն մը եթէ հեռացնէ մեզ անոնցմէ, անտարակոյս ունին ուժգին հաղորդականութիւն մը մեր հոգիի տարրերուն հետ, այս հաղորդականութիւնը ո՛րքան խորունկ եւ ուժեղ կապեր ունենայ, ա՛յնքան զօրաւոր կ'ըլլան քաղցրութիւնը, երգը, նուագը, բոյրը, թրթռումը, շարժումն ու մնացած բոլո՛ր հմայքները, որոնք այդ գեղեցկութիւններուն հանդերձանքը կը կազմեն։

Մեր հոգիին միջավայրը զինք ծնող հողն է այդ հողին երգն է, երազն է, գեղեցկութիւնն է, անոր հովերուն եւ ջուրերուն բարբառն է։ Անկէ դուրս բոլո՛ր սոյլերն ու երգերը, ձայներն ու թրթռումները սովորակա՛ն հմայքներ կը բերեն մեր հոգիին, որովհետեւ, նուազ հաղորդական են անոր հետ։

Ուրեմն, մեր աշխարհէն բերուած գեղեցկութիւնը, երգի, նկարի կամ քերթուածի ձեւով, մտերմութիւն մըն է, եղբայրութիւն մը, քոյր հոգիի մը շունչը ինքնաբուխ եւ ինքնեկ, որ ներկայացուելու, որակուելու պէտք չունի երբէք, մէ՛կ լսելով կը սիրենք, մէ՛կ տեսնելով կը փարինք։

Այսպիսի գեղեցկութիւն մը, կը կարծեմ, պէտք չէ՛ բազում ածականներով որակել, յիմար փորձ մը պիտի ըլլար այդ՝ անհունը գրչի ու թուղթի տափակ մեքենականութեան մը մէջ բռնադատելու։ Աւելորդ ջանք մըն է նաեւ զայն հասարակութեան մօտեցնել, միջակութիւնները այդ արարողութեան կ'ենթարկուին, անսովոր՝ երկինքէն ինկած լուսաւոր շղարշ մը ունի իր վրայ, գործածուելէն յոգնած ածական մը՝ կրնայ ցեխացայտքի մը պէս իյնալ հոն եւ եղծել անոր միապաղաղ լոյսը։

Երգ, քերթուած, նկար կամ արձան՝ երբ տաղանդի հրաշալի համբոյրովը կենդանացած են, պէտք է մնան ազնուական զահի մը վրայ, ժուժկալ եւ պիտանի բառերու հետ, գովասանքի քայքայիչ ծեքծեքումներէ հեռի, թափանցիկ շղարշի մը մէջ՝ մերկ եւ յստակ։ Շատ թրթռուն պիտի ըլլան անոնք, ա՛յդ գեղեցկութիւնները, ու պիտի մնա՛ն այդպէս. եւ երբ մեր հոգիներէն անցնին անշիջանելի ճառագայթ մը պիտի ձգեն հոն, հմայք մը՝ որ կը տեւէ։

Ո՛վ պիտի յիմարութիւնն ունենար – գեղեցիկը տեսնել կարենալէ ետք – ածականներով ծանրաբեռնելու ծաղիկի մը անկենդան թերթիկը՝ որ հեռաւոր օր

մը մեր գեղին մէջ, անհետացող ձեռքէ մը եկեր պառկեր է մեր յուշատետրին մէջ մեռնիլ չգիտցող յիշատակի մը հետ: Մեր դաշտերուն ծաղիկն է ան, մեր սրտին ծաղիկը, ուրեմն, գուրգուրանքով պէտք է մօտենալ, բիւրեղը չփշրելու համար: Որքա՛ն նոր ու նոյնիսկ հասուն գրողներ կան, որ գեղեցկութիւններ կը քայքայեն անոնց վրայ ճառախօսելով:

Ասկէ զատ, ինծ կը թուի որ, գեղեցկութեան առջեւ պէտք չէ նախապաշարել ուրիշին սիրտը՝ այնպիսի որակումներով, որոնք կրնան քայքայել տպաւորութիւնները եւ արգիլել յայտնութիւնը գեղեցկագիտութեան առհաւանական բնազդին: Իրենց ցեղին հարազատ գեղեցկութիւնները պէտք է տալ անհատներուն, երգով կամ քերթուածով՝ ու սնուցանել զանոնք այդպէս: Հոգին պէտք է շարժի գեղեցկութեան քով այնպէս ինչպէս մանկական շրթունքը մօր մը ստինքներուն վրայ, կամ ծարաւ նայուածք մը՝ մթնշաղին մէջէն մօտեցող, երազուա՛ծ ստուերի մը առջեւ:

Արուեստները հոգիին են, ուղեղը՝ մանաւա՛նդ սրտէն հեռացած ուղեղը պէտք չէ շատախօսէ հոն, ցուրտ հովերուն յաճախանքը՝ կոշտ համբոյրի մը պէս կրնայ փետտել ծաղկունակ փափկութիւնները՝ բոլո՛ր գեղեցկութիւններուն:

* * *

Շահ-Մուրատեան օժտուած մըն է, հայ աշխարհը օժտեր է զինք, իր երգերուն հեղեղումը՝ անհաշուելի ժամանակներու աղջամուղջին մէջէն, լոյսի գծի մը պէս երկարող՝ հայ ցեղին ապրելու աղաղակն է: Լսեցէ՛ք *Հայաստանը*, *Ապրի Հայաստանը* ռոմանթիզմով ուռած է եւ վարդապետական ծանրութիւն մը ունի իր վրայ:

Հայրենի դաշտերէն քաղուած երգերը՝ նո՛յն այդ դաշտերէն եկած բոլոր հոգիներուն մէջ լեցուցին անանուն հմայքներ, անո՛յշ սարսուռներ:

Այս յաջողութիւնը երաժշտական դաստիարակութեան չպարտիր Շահ-Մուրատեան, ամէն երգել կրցող պիտի կրնար յաջողիլ [տպագրուածը անընթեռնելի է, Հ.Ա.]:

Կոմիտաս վարդապետէն ետք, Շահ-Մուրատեան նաեւ կրցաւ լսել մեր հողերուն մրմունջը, եւ փոխադրել զայն հեռաւոր կայքեր, ուր որ հայ հոգին գացեր էր եւ ուր որ հայ հոգին կարօտէն լացեր էր:

Ինծի համար բոլորովին ձախող գործ մըն է, անխուսափելիօրէն արուեստական փորձ մը հայ հոգին չճանչնալ եւ անոր սէրերն ու երազները, վիշտերն ու տառապանքը երգել: Հարազատ արուեստը խաթարուելէ ետք, կը խաթարուին նաեւ տպաւորութիւնները, գոյնը կը կորսուի եւ արտադրութիւնը այլանդակութիւն մը կը դառնայ:

Ամերիկահայ նորագոյն երգիչներէն զատ անուն եւ համբաւ շինողներն անգամ այս անկումներէն չեն կրցած ձերբազատուիլ: Լսե՞ր էք անոնց օտարոտի հնչումները, որոնք անխնայ կը քայքայեն: «Արուեստագէտներ» որ՝ մոռցեր են արուեստին էական ջիղը ուժովցնելու...:

Տիկ. Զուլալեան անտարակոյս վարպետուհի մըն է, ամերիկահայ բեմի հազուագիւտ քաղցրութեան մէջ կրցած է իւրացնել. իր շրթունքները ֆրանսական հնչումներուն կը յամառին հպատակիլ սակայն, ինչ որ պատահեցաւ *Լամուր*ը երգելու ատեն:

Պ. Շահ-Մուրատեան երգահանդէսներուն պէտք է տայ աւելի շատ հայ երգ, մեր գեղեցկութեան իսկական շատրուանները դարձնելու համար զանոնք:

***Հայրենիք***, 8 ***Յունուար*** 1921, 23-*րդ տարի*, *Թիւ* 2643, *էջ* 3

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՎԵՐՋԻՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

ՎԱՀԱՆ ԹՈԹՈՎԵՆՑ

Առանց վիրաւորելու մեր տաղանդաւոր երգիչ Շահ-Մուրատեանի անհատական զգացումները, ինչո՞ւ իր վերջին նուագահանդէսը, Պոսթոն, Յունվ. 2, 1921, չի կոչել *Շահ-Մուրատեան – Տիկին Զուլալեան նուագահանդէս*:

Որովհետեւ Տիկին Զուլալեան այնքան շունչ սպառեց,

Որովհետեւ այդ շունչը այնքան քաղցրագին էր որքան...

Որովհետեւ Տիկին Զուլալեան սրահը լուսաւորեց այնքան, որքան...

Ես լսած եմ Շահ-Մուրատեան առաջին անգամ 1915-ին, Կովկաս մեկնելէ առաջ, եւ լսեցի զինքը Յունվար 2-ին Ճօրտըն Հօլի մէջ:

Ես կը կարծէի տեսնել Շահ-Մուրատեանի ձայնը աւելի կրթուած, աւելի սարսռուն, աւելի յանկուցիչ:

Անիկա այն էր ինչ որ էր 1915-ին:

Պատճառը ինքը երգիչը գիտէ:

Բայց այս ըսելով ես պիտի չուզէի Շահ-Մուրատեանի անգնահատելի արժէքը նսեմացնել երբեք:

Շահ-Մուրատեանէն աւելի սիրելի է մեզի համար գեղեցիկ արուեստը:

Գեղեցիկ արուեստը կը պահանջէ իր քուրմերէն բարձրացում իր սանդուխներէն վեր ամէն օր եւ ամէն վայրկեան:

Մեր երգչի քով անհունին կայծը չի պակսիր, բաւական է, որ նա բոցավառել գիտնայ զայն:

Իմ բացակայութեան պատճառով ես չէի կրնար ըսել թէ արդեօք Ամերիկահայ գաղութը քաջալերա՞ծ է Շահ-Մուրատեանը թէ ոչ:

Որովհետեւ եթէ պէտք է աշխարհը ապահովէր *տէմօքրասի*ի համար, աշխարհը պէտք է ապահովել նաեւ *փօէզի*ի համար:

Արդեօ՞ք Ամերիկահայ գաղութը չէ կրցած ապահովել գաղութի աշխարհը Շահ-Մուրատեանի համար:

Միայն այսքանը կարող եմ ըսել, որ Պոսթոնի գաղութը Յունվար 2-ին եկած էր լեցնելու Շահ-Մուրատեանի նուագահանդէսին դահլիճը։

Փաստ է, որ Ամերիկահայ գաղութը մեծագոյնը կը պարտի Շահ-Մուրատեանին, որ եկաւ արթնցնելու լսելու ճաշակ, երգը եւ փօէզին վայելելու սէրը։

Անկարելի է, որ Շահ-Մուրատեանի Հայ ժողովրդական երգը մեզ չի բարձրացնէ գերագոյն հրճուանքին։

Մեր ժողովրդական երգը ազգային ամենէն թանկագին հարստութիւնն է։

Այդ երգը կ'անցնի Շահ-Մուրատեանի քնարէն յանկուցիչ գեղեցկութեամբ։

Շահ-Մուրատեան յաջող է նաեւ քլասիք երաժշտութեան մէջ, միայն ֆրանսերէն շեշտերը պէտք է աւելի եւ աւելի փափկացնել։

Տիկին Զուլալեան... ահա այն երգչուհին, որ պիտի մնայ մեզ մօտ եւ մենք պատեհութիւնը պիտի ունենանք լսելու ուրիշ անգամներ։

Զուլալեան պարզ է իր ձեւերուն մէջ, ինչպէս իր երգած ժողովրդական երգերը։

Տիկին Զուլալեանի ձայնը կը բղխի առանց ճիգի, առանց ոտքի մատներուն վրայ ցատկելու, օրօրուն, չափազանց զգայուն եւ դողդոջ՝ մեզ կը վերընծայէ բարձրագոյն գեղարուեստական վայելք։

Տիկին Զուլալեան երբեք պէտք չէ միջոց տայ իր ձայնի մշակման քաղցրօրէն տառապագին աշխատանքին մէջ, եթէ ոչ անիկա կարող է կորսնցնել իր վճիտութիւնը, իր սահունութիւնը եւ կապոյտներու արձագանգը։

Այս նուագահանդէսէն դուրս պէտք էր թողուէին *Ապրի Հայաստանը*, *Հերիք որդեակը*, որոնք տափակ են եւ շատ հին, անոնց տեղը կարելի էր աւելցնել ժողովրդական երգեր։

Տիկին Զուլալեան պէտք ունի նաեւ իր ֆրանսերէնը մշակելու։

Յաջող էին ջութակը եւ դաշնակները։

Ամերիկահայ գաղութը աւելի բոցավառ կերպով պէտք է քաջալերէ իր երգիչները։

Երգը մեզ կարող է փրկել շատ մը տգեղութիւններէն, որոնք Ամերիկահայ գաղութի «քաղաքակրթութիւն»-ը կը պղտորեն։
***Ազգ***, 17 ***Յունուար*** 1921, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 13-1647, ***էջ*** 3

## ՅՈՒՆՈՒԱՐ 1921, ՓՐՈՎԻՏԵՆՍ

Փրովիտենսի Elk's Auditorium-ին մէջ՝ հրապարակային ժողով, նախաձեռնութեամբ Դեսպանատան Գնումի Յանձնախումբին։ Խօսք՝ բժ. Աղամեան, Փ. Մինասեան եւ Շ-Մ.։ Մեներգ՝ Շ-Մ. եւ օր. Կէրտանեան։

- «***Հայերը Ամերիկայի մէջ***», ***Հայրենիք***, 28 ***Յունուար*** 1921, 23-***րդ տարի***, ***Թիւ*** 2660, ***էջ*** 2։

## ՀԱՅԵՐԸ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԷՋ

Փրօվիտէնս. – Դեսպանատան գնումի յանձնախումբի կողմէ սարքուած հրապարակային ժողովը տեղի ունեցաւ Էլքս սրահին մէջ: Ատենապետ Բժ. Ղազարեան ժողովին նպատակը բացատրեց քանի մը հակիրճ խօսքերով: Երգեցին օր. Կէրտանեան եւ պրն. Շահ-Մուրատեան: Խօսեցան Բժ. Աղամեան եւ Փ. Մինասեան, որոնք երկուքն ալ շեշտեցին դեսպանատան կարեւորութիւնը, եւ մասնաւորապէս անոր ստեղծած նպաստաւոր կարծիքը մեր ժողովուրդի զոհաբերութեան մասին:

Հակառակ որ շաբաթներէ ի վեր յանձնախումբը կազմուած էր, սակայն ան շատ թերի էր իր աշխատանքին մէջ, եւ մեր կարծիքով, հանգանակութենէն սպասուած արդիւնքը չգոյանալուն պատճառը յանձնախումբին թերութիւնն էր: Կ՚արժէ յիշել որ պրն. Շահ-Մուրատեան իր արուեստագէտի հանգամանքով քանի մը խօսք ըսաւ նպատակին շուրջ, եւ իր զարմանքն յայտնեց ներկաներու ցոյց տուած վերաբերմունքին համար: Օր. Կէրտանեան իր ստացած ծաղկե-փունջը վաճառեց նպատակին համար:
*Հայրենիք*, 28 *Յունուար* 1921, 23-*րդ տարի*, *Թիւ* 2660, *էջ* 2

**ԿԻՐԱԿԻ, 27 ՓԵՏՐՈՒԱՐ 1921, ՖՐԷԶՆՕ**

Ֆրէզնոյի White Theater-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը: Կը մասնակցին՝ օր. Տիրուհի Առաքելեան (սոփրանօ), օր. Ա. Մարգարեան (ջութակ) եւ պր. Earl Towner (դաշնակ):
- *Նոր կեանք–Միսուան*, 18 *Փետրուար* 1921, *Ջ. տարի*, *Թիւ* 355, *էջ* 4:

**ԿԻՐԱԿԻ, 6 ՄԱՐՏ 1921, ԼՈՍ ԱՆՃԵԼՈՍ**

Լոս Անճելոսի Blanchard Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:
- *Նոր կեանք–Միսուան*, 25 *Փետրուար* 1921, *Ջ. տարի*, *Թիւ* 357, *էջ* 4:

**ԱՊՐԻԼ 1921, ՍԷՆԹ ԼՈՒԻՍ**

Սէնթ Լուիսի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:
- «*Հայ գաղթականութիւնը*», *Հայաստանի կոչնակ*, 23 *Ապրիլ* 1921, *Թիւ* 17, *էջ* 583:

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

[Վ]երջերս Սէյնթ Լուիսի մէջ Տիար Ա. Շահ-Մուրատեան տուաւ երգահանդէս

մը՝ որու մասին տեղական Կլօպ-Տէմօքրաթ թերթը ներբողներ հիւսելով ի միջի այլոց կ՚ըսէ.

«Արուեստագէտը (Շահ-Մուրատեան) ունի հարազատ տրամաթիք թէնօր ձայն մը՝ որ իր ստացած ուղիղ մարզանքին հետեւանօք, կրնայ նոյնքան ազդուութեամբ գործածել *լիրիք* կտորներու համար։ Իր թէքնիքական զարգացման որպէս ապացոյց հազիւ թէ պէտք կայ յիշատակելու իր այն կարողութիւնը՝ որով առանց յայտնի ճիգի, բայց եւ այնպէս մեծ ազդուութեամբ, ամենաբարձր ուժգին *թոն*էն ամենամեղմ ու դաշն *թոն*ին կ՚իջնէ։ Անիկա առանց դժուարութեան կատարեց այս ցնցող փոխանցումը՝ իր բնիկ ժողովրդական երգերէն շատերուն մէջ։»

*Հայաստանի կոչնակ*, 23 *Ապրիլ* 1921, *Թիւ* 17, *էջ* 583

## ԿԻՐԱԿԻ, 24 ԱՊՐԻԼ 1921, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի DeWitt Clinton High School-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

*Քրիստոս պատարագեալ*, մեներգ՝ Շ-Մ.

Jules Massenet: *Hérodiade*-էն, մեներգ՝ Շ-Մ.

Reynaldo Hahn: *Chanson grise*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Հով արէք*, *Գարուն*, *Ալագեազ սարն ամպել ա* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Giacomo Puccini: *Tosca*-էն, մեներգ՝ Շ-Մ.

Տիգրան Չուհաճեան, *Ոհ ինչ անուշ*, մեներգ՝ Շ-Մ.

Փրօֆֆ-Գալֆայեան, *Օրօր*, մեներգ՝ տիկ. Մառի Պետիկեան (սոփրանօ)

Կոմիտաս վարդապետ, *Կուժն առա* եւ *Չինարի եար*, մեներգ՝ Մառի Պետիկեան

Michael Arne: *The Lass with the Delicate Air*, մեներգ՝ Մառի Պետիկեան

Ռուսական ժողովրդական՝ *Վոլկայի երգը*, մեներգ՝ Մառի Պետիկեան

*Արիք հայեր*, մեներգ՝ Մառի Պետիկեան

Luigi Boccherini, Charles-Marie Widor, թաւջութակ՝ Arturo de Espinoza

Դաշնակի նուագակցութիւն՝ օր. C. Wolerstein

- *Հայրենիք*, 16 *Ապրիլ* 1921, 23-*րդ տարի*, *Թիւ* 2726, *էջ* 5։

- *Ազգ*, 22 *Ապրիլ* 1921, *ԺԵ. տարի*, *Թիւ* 93-1727, *էջ* 3

- «*Հայ գաղթականութիւնը*», *Հայաստանի կոչնակ*, 23 *Ապրիլ* 1921, *ԻԱ. տարի*, *Թիւ* 17, *էջ* 583։

- «*Շահ-Մուրատեանի նուագահանդէսը*», *Հայաստանի կոչնակ*, 14 *Մայիս* 1921, *ԻԱ. տարի*, *Թիւ* 20, *էջ* 679-680։

- *Յ. Յ. Կարմիրեան*, «*Պրն. Շահ-Մուրատեան Նիւ Եօրքի մէջ*», *Հայրենիք*, 15 *Մայիս* 1921, 23-*րդ տարի*, *Թիւ* 2750, *էջ* 2։

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Նիւ Եորքի Տը Ուիթ Քլինթըն Հայ Սքուլի Օտիթորիըմի մէջ, կոկիկ բազմութեան մը ներկայութեան Ապրիլ 24-ին տեղի ունեցաւ Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը՝ որուն իրենց պատուակալ մասնակցութիւնը բերած էին սիրուած երգչուհի Տիկին Մառի Պետիկեան եւ թաւ ջութակահար Մր. Արթիւրօ Էսփինօզա: Դաշնակի վրայ արուեստագէտներուն կ'ընկերակցէր Օր. Ս. Ռւօլըրշթայն:

Նուագահանդէսը բացաւ Շահ-Մուրատեան երգելով *Քրիստոս պատարագեալը*. անիկա մէջ ընդ մէջ երգեց Մասընէի *Հէրօտիա*ի օփերայէն կտոր մը, Րէյնալտօ Հանի *Շանսօն կրիզ*ը, Կոմիտաս վրդ.ի *Հով արէք*ն ու *Գարունը*, եւ Փուչինիի *Թօսքա*յէն կտոր մը ուր ի մասնաւորի ի յայտ բերաւ Թէնօրի իր արուեստը:

Ժողովուրդի բուռն ու խանդավառ ծափահարութեանց տեղի տալով, Շահ-Մուրատեան յայտագրէն դուրս երգեց ուրիշ մէկ քանի կտորներ ալ, *Ռհ ինչ անուշ*, *Ալագեազ սարն ամպել ա՛*, եւն.:

Տիկին Պետիկեան, մէջ ընդ մէջ երգեց Փրօֆ-Գալֆաեանի *Օրօրը*, Կոմիտաս վրդ.ի *Կուժն առա* եւ *Չինարի եարը*, Միշէլ Առնի *Տը լէս ուիթ տը տէլիքէյթ էր*ն ու Ռուսերէն Վօլկա գետին երգը՝ ուր Տիկին Պետիկեան դրաւ իր արուեստին ուժգնութիւնն ու նրբութիւնը ըստ պարագային: Տիկին Պետիկեան եւս, ժողովուրդին խանդավառ արտայայտութեանց տեղի տալով, յայտագրէն դուրս երգեց կտոր մը – *Արիք հայեր*:

Թաւ ջութակահար Արթիւրօ Էսփինօզա զանազան կտորներ նուագեց Պօշէրինէն եւ Ուիտօրէն եւ տաք գնահատութեան արժանացաւ ներկաներէն:

Հանդէսը փակեց Ա. Շահ-Մուրատեան, երգելով Հայաստանը՝ որուն տպաւորութեան տակ ներկաները մեկնեցան գոհ եւ ուրախ:

***Հայաստանի կոչնակ***, 14 ***Մայիս*** 1921, ***ԻԱ. տարի***, ***Թիւ*** 20, ***էջ*** 679-680

## ՊՐՆ. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՆԻՒ ԵՕՐՔԻ ՄԷՋ

Յ. Յ. ԿԱՐՄԻՐԵԱՆ

Պ. Շահ-Մուրատեան, ծանօթ երգիչը՝ օժտուած է արուեստագէտի բնատուր տաղանդով, ան ձեւակերպուած է իր հայրենի հողին վրայ եւ կը ցոլացնէ ցեղին հարազատ հոգին ժամանակակից երաժշտութեան բարձրագոյն դաստիարակութիւնով շինուած եւ կատարելագործուած:

Ունի կորովի եւ վայելուչ կեցուածք եւ հոգի մը՝ ուրկէ կը բղխին մեր սրտին

եւ երազներուն մօտ երգեր, որոնք պարուրելով մեր հոգիները տարիներու կարօտը կը յագեցնեն:

Մենք կը սիրենք երկար լսել պ. Շահ-Մուրատեանը, որովհետեւ եւրոպական երաժշտութեան քով կը գտնենք մեր հայրենի երգերը այնքա՜ն քաղցր ու հմայիչ...:

Երգը, նուագը, նկարն ու արձանը հմայք մը ունին, եւ գեղեցիկ հոգիներու ցոլացումն են, անոնք մարդկային մտքի եւ սրտի ազնուացման սատարելով ճաշակը կը զարգացնեն գեղեցիկին եւ բարւոյն ըմբռնումը կը խորացնեն եւ հոգին կը վերացնեն:

Ո՞վ չէ կարող հրապուրուիլ ի տես իսկական գեղարուեստին, որ հեռու է բռնազբօսիկ եւ տափակ ըլլալէ եւ որ կուգայ հաղորդակցութիւն մը ստեղծել մեր հոգւոյն մէջ:

Պ. Շահ-Մուրատեան օժտուած մըն է բնատուր ձիրքերով. հայ աշխարհը օժտերէ զատ, դարերու տառապանքով ծանրաբեռնուած մայր երկիրը՝ իր վիրաւոր կրծքին վրայ սնուցած է զինքը: Հայրենի բուրաստանէն քաղուած են երգերը՝ եւ մեր հոգիները կը լեցնեն անհուն հմայքով եւ անուշ սարսուռներով:

Պ. Շահ-Մուրատեան կրցած է լսել հայրենի երկրի երգը եւ զայն հաղորդելով այս հեռաւոր ափերուն վրայ թառած հայրենաբաղձ հոգիներուն՝ կուգայ արծարծել կարօտը հայ աշխարհին:

Պ. Շահ-Մուրատեանի վերջին երգահանդէսն էր որ տեղի ունեցաւ Նիւ Եօրքի մէջ: Ան՝ հեռանալով Նոր Աշխարհէն մեծ բաց մը կը թողու այս գաղութի կեանքին մէջ, որ կտրուած մայր հայրենիքէն, կարօտն ունի լսելու հայ երգը իր հարազատ հնչումներով:

Տիկին Պետիկեան եւս կը մասնակցէր այդ երգահանդէսին. ան ունի երգելու յատկութիւններ եւ քաղցրահնչիւն ձայն մը եւ ամերիկահայ գաղութի կարող երգչուհիներէն մէկն է:

Երգահանդէսներ եւ նուագահանդէսներ պէտք է անպակաս ըլլան այս գաղութին համար, հայ երգը իր բնական գեղեցկութիւնով հարկ է տալ, եւ այդ միջոցաւ սփոփել հայրենակարօտ հոգիները:

*Հայրենիք*, 15 *Մայիս* 1921, 23-*րդ տարի*, *Թիւ* 2750, *էջ* 2

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 30 ՄԱՅԻՍ 1921, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Webster Hall-ին մէջ՝ Հայաստանի Հանրապետութեան Գ. տարելիցի տօնախմբութիւն: Մեներգ՝ Շ-Մ.:

- «*Տօնախմբութիւն Հայաստանի Հանրապետութեան երրորդ տարեդարձի*», *Հայաստանի կոչնակ*, 4 *Յունիս* 1921, *ԻԱ. տարի*, *Թիւ* 23, *էջ* 765:

### ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 1 ՅՈՒՆԻՍ 1921, ՆԱՅԱԿԱՐԱ ՖՈԼՍ

Ոչ-պաշտօնական նուագահանդէս՝ դաշնակահարուհի Alice Babcock Trott-ի բնակարանը: Կը մեներգէ Շ-Մ.:

- 'We Have With Us Today Preserver of Armenian Folksong,' *The Niagara Falls Gazette*, 4 June 1921, p. 7.

### ԿԻՐԱԿԻ, 12 ՅՈՒՆԻՍ 1921, ՆԱՅԱԿԱՐԱ ՖՈԼՍ

Նայակարա Ֆոլսի Lyceum-ի լսարանին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Ջութակ՝ Florence Hammond Wescott

Դաշնակ՝ Alice Babcock Trott

Երգահանդէսի վերջաւորութեան երեք արուեստագէտները միասին կը կատարեն George Frideric Handel-ի *Largo*-ն:

- 'We Have With Us Today Preserver of Armenian Folksong,' *The Niagara Falls Gazette*, 4 June 1921, p. 7.
- 'A New Caruso Sings Sunday,' *The Niagara Falls Gazette*, 11 June 1921, p. 4.
- 'Many Delighted at Lyceum Concert,' *The Niagara Falls Gazette*, 13 June 1921, p. 5.

## WE HAVE WITH US TODAY PRESERVER OF ARMENIAN FOLKSONG
## Chah-Mouradian, "Caruso of the Armenians," is to Sing Sunday Night

"The Caruso of the Armenians" is the name by which admiring audiences have christened Chah-Mouradian of the Grand Opera, Paris, who is spending part of his vacation in this city, and who will be heard at a concert in the Lyceum auditorium, Sunday night, June 12. This is the first public appearanee of Chah-Mouradian in Niagara Falls, although he was the guest of honor at an informal recital held Wednesday night at the home of Miss Alice Babcock Trott for music lovers of this city.

The noted singer has been in this country six years, during which time he has given concerts in all the leading cities of the United States. Although he has frequently been a visitor here, where his friends have importuned him again and again to give a concert, he has not found it possible to yield to their desire until this summer.

Chah-Mouradian started his career as a singer when he was eight years of age, at which time he began to sing regularly at church in the town of his birth, Moush, Armenia. He is a graduate of the Armenian college at Tiflis. After having exhausted the

musical training possible in his own country, he went to Paris, where he engaged in study for years, and where he won prizes both from the Conservatory of Paris and the Grand Opera Paris. While in his own country and in France his services as a teacher were widely sought. In England, Italy, Russia, and even in the countries of the east, his concerts have won him high tribute.

But it is not as a great singer, or as a teacher that Chah-Mouradian wishes himself to be known. He has given his life to the rescuing of Armenian music from the enslaving influence of the Turk, and is therefore known as "the Saviar of Armenian Music," and the best known authority on Armenia national, religious and folk songs. Those whom he cannot reach in person he reaches on the victrola. His people eagerly drink in the melodies that they perhaps have never heard, but which they at once love because they know that they belonged to the Armenians before the cruel domination of the Turks stamped them out. Through Chah-Mouradian the Armenians are coming into their own, and the banal Turkish strains are giving way to the lovely Armenian melodies.

During the war Chah-Mouradian became well known in relief work. His singing was many times instrumental in raising large sums for Armenian relief. During this time an Armenian oriental rug merchant in Washington gained great popularity with senators and congressmen through his large collection of records sung by Chah-Mouradian. The little rug shop frequently contained distinguished company, all drawn by the mables of Chah-Mouradian's voice.

Although he sings in several languages besides the Armenian, Chah-Mouradian will make a specialty of the Armenian songs at his concert here on June 12. He will be assisted by Florence Hammond Wescott, violinist, and Alice Babcock Trott, pianist, to whose genius as musicians he has paid many compliments.

*The Niagara Falls Gazette*, 4 June 1921, p. 7

## A NEW CARUSO SINGS SUNDAY

The concert arranged for Sunday night at 8:15 o'clock in the Lyceum auditorium, will give the people of Niagara Falls their first opportunity to hear the golden tenor of Chah- Mouradian, the "Caruso of the Armenians," who has given up part of his vacation to comply with the request of his friends to sing in this city. The distinguished visitor, who has sung in all the leading cities of this country and Europe, will share honors Sunday night with Florence Hammond Wescott, violinist, and Alice Babcock Trott, pianist, well- known musicians of Niagara Falls, who will take part in the concert.

Chah-Mouradian will make a specialty, Sunday night, of the Roumanian national and folk songs for which he has become best known, Mrs. Wescott and Miss Trott will

play classical and semi-classical selections that will display their abilities to excellent advantage.

*The Niagara Falls Gazette*, 11 June 1921, p. 4

## MANY DELIGHTED AT LYCEUM CONCERT
## Chah-Mouradian, Armenian Songster, and Falls Aides, Make Life Worth Living

The concert given last night in the Lyceum auditorium by Chah-Mouradian with the assistance of Florence Hammond Wescott and Alice Babcock Trott was enthusiastically received by the music lovers of the city who were present. In the power and range of his voice as well as in his technique, Chah-Mouradian last night proved himself worthy of the title given him by his admirers, "the Caruso of the Armenians." The Armenian folk songs of which Chah-Mouradian makes a specialty, delighted his countrymen, who made up a large part of the audience.

Mrs. Wescott was her usual fascinating self last night. Miss Trott, at the piano, played no small part in the success of the concert, while the three artists, heard together in a final number, Handel's *Largo*, with violin obligato, left a lasting impression on their audience.

*The Niagara Falls Gazette*, 13 June 1921, p. 5

### ՇԱԲԱԹ, 27 ՕԳՈՍՏՈՍ 1921, ՆԻՒ ԵՈՐՔ-ՓԱՐԻԶ

Ռօշամպօ շոգենաւով Շ-Մ. իր ընտանիքին հետ կը մեկնի Նիւ Եորքէն, վերջնական բնակութիւն հաստատելու Փարիզ:

Ամերիկա կեցութեան ընթացքին Շ-Մ., տիկինը եւ դուստրը ստացած էին ամերիկեան քաղաքացիութիւն: Փարիզ վերադառնալու պատճառներէն մէկը Շ-Մ.ի ֆրանսուհի տիկինն էր, որ կը տառապէր հայրենաբաղձութենէ:

- «*Հայ գաղթականութիւնը*», *Հայաստանի կոչնակ*, 3 *Սեպտեմբեր* 1921, *ԻԱ. տարի*, *թիւ* 36, *էջ* 1084։

- *Ֆերտինանտ Գայմագամեան*, «*Շահ-Մուրատեանի դուստրը կը վերյիշէ իր Հօրը Հետ ապրուած օրերը*», *Զահակիր*, 10 *Փետրուար* 1972, *նոր շրջան*, *թիւ* 415, *էջ* 4։

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԴՈՒՍՏՐԸ ԿԸ ՎԵՐՅԻՇԷ ԻՐ ՀՕՐԸ ՀԵՏ ԱՊՐՈՒԱԾ ՕՐԵՐԸ
**(հատուած)**

ՖԵՐՏԻՆԱՆՏ ԳԱՅՄԱԳԱՄԵԱՆ

Օր. Իվըլին Շահ-Մուրատեան [Շ-Մ.ի դուստրը, Հ.Ա.], որ ներկայիս [1971-ին, Հ.Ա.] Փարիզ կը բնակի, վերջերս փափաքեցաւ Նիւ Եորք այցելութիւն մը տալ, վերյիշելու համար իր մանկութեան տարիները՝ զոր վեց ամսու հասակէն մինչեւ եօթը տարեկան, իր ծնողքին հետ անցուցած էր Ամերիկայի մէջ, մինչեւ որ բժիշկները՝ Ֆրանսացի իր մօրը հայրենաբաղձութեան իբր դարման, իրենց յանձարարած էին վերադառնալ Եւրոպա։
*Ջահակիր*, 10 *Փետրուար* 1972, *նոր շրջան*, *թիւ* 415, *էջ* 4

### ՀՈԿՏԵՄԲԵՐ (ԱՌԱՋԻՆ ՇԱԲԱԹ) 1921, ՓԱՐԻԶ

Շահ-Մուրատեան ընտանիքը կը հասնի Փարիզ։
- «*Ժամանում*», *Ապագայ*, 15 *Հոկտեմբեր* 1921, *Ա. տարի*, *թիւ* 44, *էջ* 4։

## ԺԱՄԱՆՈՒՄ

Յայտնի երգիչ Պ. Շահմուրատեան անցեալ շաբթուս Ամերիկայէն ժամանեց քաղաքս։
*Ապագայ*, 15 *Հոկտեմբեր* 1921, *Ա. տարի*, *թիւ* 44, *էջ* 4

### ՀԻՆԳՇԱԲԹԻ, 17 ՆՈՅԵՄԲԵՐ 1921, ՓԱՐԻԶ

Փարիզի Café Voltaire-ին մէջ՝ թէյասեղան ի պատիւ Հմայեակ Խոսրովեանի, նախաձեռնութեամբ Փարիզի հայ ուսանողներու։ Կը մեներգէ Շ-Մ.։
- «*Թէյասեղան ի պատիւ Պ. Հմայեակ Խոսրովեանի*», *Ապագայ*, 19 *Նոյեմբեր* 1921, *Ա. տարի*, *թիւ* 49, *էջ* 3։

## ԹԷՅԱՍԵՂԱՆ Ի ՊԱՏԻՒ Պ. ՀՄԱՅԵԱԿ ԽՈՍՐՈՎԵԱՆԻ

Առջի իրիկուն Բարիզի հայ ուսանողները թէյասեղան մը տուին, Քաֆէ

Վօլթէրի մէջ, ի պատիւ Պ. Հմայեակ Խոսրովեանի, որ նախ ճառով մը վեր հանեց հայ ուսանողութեան դերը եւ յետոյ հաճելի եւ զուարթ ոճով մը պատմեց Թօրլագեանի դատավարութենէն դրուագներ: Ուսանողներէն ալ ոմանք խօսք առին: Եղան արտասանութիւններ երիտասարդ դերասաններու կողմէ: Երգեց Պ. Ա. Շահմուրատեան բացառաբար:

Պ. Խոսրովեան հայ ուսանողները հրաւիրեց թէյի, զոր տեղի անբաւականութեան պատճառով, փոխանակ իր օթէլին, պիտի տայ Café Dumesnilի սրահին մէջ, 73 Bd. Montparnasse, յառաջիկայ երկուշաբթի, 21 նոյեմբեր, իրիկուան ժամը 9-ին:
*Ապագայ*, 19 *Նոյեմբեր* 1921, *Ա. տարի*, *Թիւ* 49, *էջ* 3

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 12 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1921, ՓԱՐԻԶ**

Փարիզի Concert Touche-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը: Նախապէս յայտարարուած էր Դեկտեմբեր 5-ին, բայց Շ-Մ.ի անհանգստութեան պատճառով կը յետաձգուի մէկ շաբաթ: Կը մասնակցին՝ օր. Տէմիրճեան (ջութակ) եւ Տիրան Ալէքսանեան (թաւջութակ):

- «*Պ. Ա. Շահմուրատեանի երգահանդէսը*», *Ապագայ*, 19 *Նոյեմբեր* 1921, *Ա. տարի*, *Թիւ* 49, *էջ* 4:
- «*Պ. Ա. Շահմուրատեանի երգահանդէսը*», *Ապագայ*, 26 *Նոյեմբեր* 1921, *Ա. տարի*, *Թիւ* 50, *էջ* 4:
- *Ապագայ*, 10 *Դեկտեմբեր* 1921, *Ա. տարի*, *Թիւ* 52, *էջ* 4:
- «*Պ. Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը*», *Ապագայ*, 24 *Դեկտեմբեր* 1921, *Բ. տարի*, *Թիւ* 2, *էջ* 4:

## Պ. Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Յայտնի եւ տաղանդաւոր հայ երգիչ Պ. Շահմուրատեան, որ վերջերս Ամերիկայէն վերադառնալով մտադիր էր Եգիպտոս անցնելու անմիջապէս, բարիզահայ իր համակիրներուն կողմէ յայտնուած փափաքին գոհացում տալու համար հաւանած է երգահանդէս մը տալ դեկտ. 5-ին Concert Toucheի մէջ: Եւրոպական զանազան վարպետներէ առնուած երաժշտական կտորներու կարգին Պ. Շահմուրատեան պիտի երգէ նաեւ հայկ. երգեր:
*Ապագայ*, 19 *Նոյեմբեր* 1921, *Ա. տարի*, *Թիւ* 49, *էջ* 4

## Պ. Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Առջի երկուշաբթի 12 դեկտ.ի իրիկուն, Թուշի սրահին մէջ տեղի ունեցաւ մեր

տաղանդաւոր երգիչ Պ. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը, որուն կը մասնակցէին ծանօթ ջութակահարուհի Օր. Տէմիրճեան եւ թաւջութակահար Պ. Տիրան Ալէքսանեան։ Հայ եւ օտար բազմութիւն մը փութացած էր լսելու Պ. Շահ-Մուրատեանը որ մասնաւորապէս ծափահարուեցաւ հայ երգերու մէջ։

Դժբախտաբար նուագահանդէսին կազմակերպութիւնը թերի էր եւ հարկ եղաւ երկար ատեն սպասել։

***Ապագայ***, 24 ***Դեկտեմբեր*** 1921, ***Բ. տարի***, ***Թիւ*** 2, ***էջ*** 4

### ՅՈՒՆՈՒԱՐ (ԱՌԱՋԻՆ ՇԱԲԱԹ) 1922, ԳԱՀԻՐԷ

Կը ժամանէ Գահիրէ։

- «***Պ. ՇահՄուրատեան եգիպտոսի մէջ***», ***Արեւ***, 11 ***Յունուար*** 1922, ***Է. տարի***, ***Թիւ*** 108 (1019), ***էջ*** 3։

### ԿԻՐԱԿԻ, 19 ՓԵՏՐՈՒԱՐ 1922, ԳԱՀԻՐԷ

Գահիրէի Էզպէքիէ Թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։ Կը մասնակցին՝ փրոֆ. Էտկար Մարիա Բրունէտտի (թաւջութակ) եւ տիկ. Հայկանոյշ Կ. Պալեան (դաշնակի նուագակցութիւն)։

- ***Արեւ***, 3 ***Փետրուար*** 1922, ***Է. տարի***, ***Թիւ*** 117 (1028), ***էջ*** 2։

- ***Տեղեկատու***, «***Մեր արուեստագէտ հիւրերը***», ***Արեւ***, 24 ***Փետրուար*** 1922, ***Է. տարի***, ***Թիւ*** 126 (1037), ***էջ*** 3։

## ՄԵՐ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏ ՀԻՒՐԵՐԸ
**(հատուած)**

ՏԵՂԵԿԱՏՈՒ

Վերջերս խօսք մէկ ըրածի պէս իրարու ետեւէ Գահիրէ եկան հայ գեղարուեստի քանի մը ներկայացուցիչներ, դժբախտաբար շատ գէշ ատեն մը ընտրեր են այս ժամադրութեան համար, զի տրամադրութիւնները թոյլ եւ քսակները պարապ են։ Հակառակ ասոր պէտք է խոստովանիլ թէ բարոյական յաջողութիւններ վայելեցին։ Կանաչեանի Համերգը եւ Շահ-Մուրատեանի Նուագահանդէսները նիւթական տեսակէտով ալ մէյմէկ յաղթանակներ եղան։ Առաջինը յայտնութիւն մը եղաւ։ Մե՛ղք որ Աղեքսանդրիոյ մէջ չի գիտցան գնահատել այս արուեստագէտը որ Կոմիտաս Վարդապետի յաջորդը ըլլալ կը խոստանայ։ Շահ-Մուրատեան ճանչցուելու պէտք չունի, թէեւ յոգնած բայց իր ձայնը մեր մէջ անմրցելի կը

մնայ. կը կարծեմ որ հայ երգերը քիչ մը աւրած են իր ձայնը:
*Արեւ*, 24 *Փետրուար* 1922, *Է. տարի*, *Թիւ* 126 (1037), *էջ* 3

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 21 ՓԵՏՐՈՒԱՐ 1922, ԳԱՀԻՐԷ**

Գահիրէի Հայկական Սրահին մէջ՝ թէյասեղան ի պատիւ Շ-Մ.ի, կազմակերպութեամբ խումբ մը գեղարուեստի բարեկամներու:

- *Արեւ*, 20 *Փետրուար* 1922, *Է. տարի*, *Թիւ* 124 (1035), *էջ* 2:

**ՅՈՒՆՈՒԱՐ-ՓԵՏՐՈՒԱՐ 1922, ԳԱՀԻՐԷ**

Շ-Մ. եւ տիկինը, Երուանդ Մսրլեան եւ տիկինը եւ Բարսեղ Կանաչեան միասին կ'այցելեն Գահիրէի Բուրգերը եւ կը լուսանկարուին:

- *Սաւառնակ*, 23 *Յունուար* 1954, *էջ* 3:

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 23 ՓԵՏՐՈՒԱՐ 1922, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

Աղեքսանդրիայէն նամակ կը գրէ Գահիրէ՝ Մարտիրոս Պալաեանին: Կը տեղեկացնէ երգահանդէսներու կարգադրութեան մասին:

- «*Անտիպ նամակներ*», *Ջահակիր*, 9 *Հոկտեմբեր* 1969, *նոր շրջան*, *Թիւ* 299, *էջ* 5:

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆԱՄԱԿԸ ՄԱՐՏԻՐՈՍ ՊԱԼԱԵԱՆԻՆ

Ալէքսանդրիա, 23-2-922

Սիրելի Պալայեան

Կը յուսամ թէ տիրացու Ղազարոսեան քեզ յանձնեց երկու թուղթի պատառիկները, որոնցմով կը խնդրէի սիրելիութենէդ, կարգադրել տպագրութեան հաշիւները:

Հոդ եղած ատեն ինձ ներկայացուցին զայն սակայն առանց կարմրելու, միայն այդտեղինները հաշուած էին 480 դրշ. ես քմծիծաղով մը իրենց ըսի թէ այդ խնդիրը կը յանձնեմ Պրն. Պալայեանին անիկա շատ աղէկ գիտէ անոնց արժէքը եւ ինչ որ վճարելու ըլլայ ազատ է:

Ձեզի ըսեմ, որ այսօր թուղթը շատ արժնցած է, իրենց գործածած թուղթը յայտագրերու համար շատ աղէկէն չէ: 700 փրոկրամի, 500 պահարանի, այդչափ ալ սիրքիւլերի (այն էլ սխալ, այսինքն Yի փոխարէն A տպած) եւ 500էն 550 տոմսերու եւ ընկալագիրներու համար, 480 դրշ. պահանջելը՝ պարզապէս

էտեպսիզութիւն է, ոչ աւել ոչ պակաս։ Ատոնք բոլորը իբր թուղթ, աշխատանքէ դուրս, 100-125 դրշ. հազիւ թէ արժէ։ Երբ իրեն վճարուի 2,5 ոսկի, եթէ շատ գլուխ ցուցնեն 3 ոսկի վճարել, ոչ մէկ փարա աւելի։

Յետոյ չը մոռնանք այդ վճարումի դրամէն զեղջել 300 դրշ. Մ.ի առած 6 ռէզէրվէ տոմսակներուն իբր փոխարժէք։

Լսեցի Կանաչեանէն որ Վահրամ Աստուածատուրին հասցէին դրամներ եկած է, բարի եղիր մինչեւ գալս այն կողմ անցնիլ ու հաշիւները ճշդել, ինչպէս եւ Աբրահամեանին հետզհետէ բերածներուն։

Այստեղէն շատ բան չեմ յուսար չը նայելով եղած յուսադրութիւններուն, տակաւին երկու օր կ'ըսէ որ տոմսերը շրջաբերութեան հանուած են։ Երգահանդէսէն անմիջապէս ետքը հող կուզամ։ Առ այժմ սիրալիր բարեւներս։

Մնաք բարւօք, անզամ մ'եւս իմ շնորհակալութիւններս եւ երախտագիտութիւնս քեզ յայտնելու անկեղծութեամբ միշտ Քոյդ

Ա. Շահ-Մուրատեան

*Ջահակիր*, 9 *Հոկտեմբեր* 1969, *նոր շրջան*, *թիւ* 299, *էջ* 5

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 28 ՓԵՏՐՈՒԱՐ 1922, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

Աղեքսանդրիոյ Ամերիքըն Միշընի սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Ա. ՄԱՍ

Կոմիտաս վարդապետ, *Հով արէք*, *Գարուն* եւ *Կռունկ*, մեներգ՝ Շ-Մ.

Pier Adolfo Tirindelli: *Chanson plaintive*, թաւջութակ՝ փրոֆ. Լանզոնի

Édouard Lalo: *Le Roi d'Ys*-էն, մեներգ՝ Շ-Մ.

George Frideric Handel: *Largo cello obbligato*, մեներգ՝ Շ-Մ.

Բ. ՄԱՍ

Կոմիտաս վարդապետ, *Արօր տատրակ* եւ *Քէլէ, քէլէ*, մեներգ՝ Շ-Մ.

Tommaso Giordani – David Popper: *Caro mio ben*, թաւջութակ՝ փրոֆ. Լանզոնի

David Popper*: Feuillet d'album* (Andantino cantabile), թաւջութակ՝ փրոֆ. Լանզոնի

Léo Delibes: *Arioso*, մեներգ՝ Շ-Մ.

Pyotr Tchaikovsky: *Déception*, մեներգ՝ Շ-Մ.

Alexander Grechaninov: *Berceuse cello obbligato*, մեներգ՝ Շ-Մ.

Յայտագիրէն դուրս.

*Ձիգ տու, քաշի* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

- *Արեւ*, 22 *Փետրուար* 1922, *է. տարի*, *թիւ* 125 (1036), *էջ* 3։

- *Կ.*, «*Պ. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը*», *Արեւ*, 3 *Մարտ* 1922, *է. տարի*, *թիւ* 129 (1040), *էջ* 1-2։

# Պ. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Կ.

Պ. Շահ-Մուրատեան նորեկ մը չէ ոչ իր արուեստին ոչ ալ Աղեքսանդրիոյ մէջ, ուր տասը տարի առաջ առիթն ունեցանք զինքը ծափահարելու։ Անվիճելիօրէն ժամանակակից մեծագոյն Հայ երգիչն է ան, ըլլայ իր բնատուր ձիրքերովը, ըլլա՛յ իր technique պատրաստութեամբը, ըլլա՛յ իր երկարատեւ վարժութեամբը։ Պ. Շահ-Մուրատեան Վարպետ մըն է արդէն, որ Բարիզի Օբերայի բեմին վրայ, հասարակութեանց թերեւս ամենէն դժուարահաճին առջեւ յաջողապէս débuter ընելէ յետոյ Ամերիկայի մէջ բոլորած է երկար ու փայլուն ասպարէզ մը ծանօթացնելով ինքզինքը օտար գեղարուեստասէր շրջանակներու։

Անոնց համար որոնք արդէն ծափահարած էին Պ. Շահ-Մուրատեան, երեքշաբթի օր Ամերիկեան Միսիօնի սրահին մէջ տուած իր երգահանդէսը ո՛չ մէկ տեսակէտով յուսախաբութիւն մը եղաւ։ Ընդհակառակը։

Պ. Շահ-Մուրատեանի հոյակապ ձայնը ոչինչ կորսնցուցած է արդարեւ իր ծաւալէն, իր զօրութենէն (puissance) եւ իր քաղցրութենէն ալ, մինչ արուեստագէտը կը թուի հասած ըլլալ իր արուեստին բացարձակ տիրացումին եւ իր տաղանդին լիալիր հասունութեանը։

Մե՜ղք որ երգչին անօրինակ կերպով հուժկու ձայնին համար, մանաւանդ երբ լսելի կ'ընէր իր ամենէն գոռ խաղերը, շատ պզտիկ կուգար սրահը, որուն acoustiqueը արդէն շատ հեռի է անթերի ըլլալէ։ Այդ ձայնին մեծ թատրոն մը կը վայելէր ստուգիւ։

Շահ-Մուրատեանի երգացանկը կը բաղկանար Կոմիտաս Վարդապետէն յարդարուած հայկական ամենասիրուն երգերէն, ինչպէս նաեւ եւրոպական դժուարին կտորներէ։

Անշուշտ բնազաւառի զաւկի, *Հայաստանցի Հայու* իր հանգամանքին կը պարտի Բարիզի Conservatoireին նախկին ամենափայլուն աշակերտը եւ Օբէռայի երբեմնի թէնօրը այն հարազատ, վաւերականօրէն հայացի ոգին եւ շեշտը զոր, անկախաբար իր վարպետ երաժշտի ճարտարութենէն, դրաւ *Հով արէք*ի, *Գարուն*ի, *Արօր տատրակ*ի պէս այնքան պարզօրէն եւ սրտաշարժօրէն գեղեցիկ, բնականօրէն հմայիչ երգերու մէջ, եւ որոնցմով խանդաղատեցուց թովեց իր ունկնդիրները։

Բրօկրամէն դուրս ըլլալով, խանդավառ «bis»-երու հրաւէրին վրայ, Պ. Շահ-Մուրատեան սքանչելի կերպով երգեց Հայ մշակին երգը *Արա հօ՜*, որ շատերու համար հմայիչ նորութիւն մը եղաւ, այնքան իսկատիպ, *բնատիպ* էր եղանակը, այնքան *երաժշտականօրէն պատկերալից*, եթէ կարելի է ըսել, թէեւ այս բացատրութիւնը առաւելապէս կը պատշաճի այն գերազանց արուեստին որով ան

հաւատարմօրէն ներկայացուց, ապրեցուց, *եղա՛ւ* իր եզը *երգելով* վարող Հայ մշակն իսկ...։

Եւրոպական վարպետ երաժիշտը ինքզինքը տիրաբար ցուցուց Լալօի *Roi d'Ys*ին, Հէնտէլի *Largo-Cello*ին, Չայքովսքիի *Déception*ին, Կրէչանինօֆի *Berceuse*ին, Տէլիպի *Arioso*ին մէջ, խլելով ամենաբուռն ծափեր հանդիսականներէն։

Եւ էն վերջը, երբ ամբողջ սրահը խանդավառուած, ovation մը կ'ընէր արուեստագէտին, անիկա իբր *հուսկ բանք* երգեց *Հայաստանը*, որ անգամ մը եւս, Պ. Շահ-Մուրատեանի մերթ աղու, մերթ զոռ ձայնին մոգութեամբը՝ թունդ հանեց հայ հոգիները։

*Արեւ*, 3 *Մարտ* 1922, *Է. տարի*, *Թիւ* 129 (1040), *էջ* 1-2

## ԿԻՐԱԿԻ, 7 ՄԱՅԻՍ 1922, ԻԶՄԻՐ

Իզմիրի Սիպէլ (Sporting) թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։ Կը մասնակցին՝ Տ. Զախարին (ջութակ) եւ Ժ. Փասքուարելլօ (դաշնակ)։

- *Արեւելեան մամուլ*, 2 *Մայիս* 1922, 43-*րդ տարի*, *Թիւ* 2844, *էջ* 3։
- «*Երգահանդէսը*», *Արեւելեան մամուլ*, 9 *Մայիս* 1922, 43-*րդ տարի*, *Թիւ* 2850, *էջ* 4։
- *Ա. Շահ-Մուրատեան*, «*Շնորհակալիք*», *Արեւելեան մամուլ*, 11 *Մայիս* 1922, 43-*րդ տարի*, *Թիւ* 2852, *էջ* 4։
- *Էքօ տը Ֆրանս*, «*Պ. Շահ-Մուրատեանի նուագահանդէսը*», *Արեւելեան մամուլ*, 16 *Մայիս* 1922, 43-*րդ տարի*, *Թիւ* 2856, *էջ* 4։
- *Դոկտ. Գ. Ամատեան*, «*Երգիչ Շահ-Մուրատեան. մահուան առիթով* (*յիշողութիւններ*)», *Արեւ*, 2 *Յունուար* 1940, *ԻԵ. տարի*, *Թիւ* 6390, *էջ* 2։

# ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի կէսօրէ յետոյ երկսեռ հանդիսականներու ստուար ներկայութեան տեղի ունեցաւ Պ. Շահ-Մուրատեանի երգահանդէսը, Սբօրթինկի թատերասրահին մէջ։

Ամենաջերմ ընդունելութեան մը արժանացաւ Հայ արթիսթը հանդիսականներէն որ կրկնակի ծափերով ողջունեց անոր վերերեւումը Իզմիրի մէջ։

Չպիտի փորձէինք երգահանդէսին արուեստագիտական մանրամասնութեանց մէջ մխրճիլ, աւելի մասնագէտներու թողլով այդ փափուկ կէտը, միայն կրնանք ըսել թէ Պ. Շահ-Մուրատեան կրցաւ առինքնել սրահը որ մինչեւ վերջ մնաց անոր դիւթանքին տակ։ Նոյնքան գնահատուեցան նաեւ Պ. Զաքարեան եւ Պ. Բասքարէլլօ առաջինը իր թաւ ջութակով եւ երկրորդը իր դաշնակի

ընկերակցութեամբը։
*Արեւելեան մամուլ*, 9 *Մայիս* 1922, 43-*րդ տարի*, *Թիւ* 2850, *էջ* 4

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

...Խմբագիր

Բարի եղէք թոյլ տալու ինձ ձեր թերթի միջոցաւ յայտնել իմ խորին շնորհակալութիւնները նուագահանդէսի յարգելի յանձնախումբին իր գնահատելի ջանքերուն համար։ Այս առթիւ պարտ կը համարիմ իմ երախտագիտութիւնս ներկայել Պ. Ա. Գալփագեանի որ այնչափ անձնուիրութեամբ տրամադրելի ըրաւ իր ժամանակը եւ վաճառատունը նուագահանդէսի յաջողութեան համար։ Նմանապէս շնորհակալութիւն Զարթօնք Լ. Միութեան յարգելի երիտասարդ անդամներուն, իրենց համակրութեան համար, որոնք գեղեցիկ ծաղկեփունջով մը արտայայտեցին։
*Արեւելեան մամուլ*, 11 *Մայիս* 1922, 43-*րդ տարի*, *Թիւ* 2852, *էջ* 4

## Պ. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Պ. Շահ-Մուրատեանի կողմէ տրուած նուագահանդէսը փառաւոր եւ արդար յաջողութեամբ մը պսակուեցաւ, որովհետեւ մինչեւ *կալըրի*ները լեցնող հասարակութիւնը ինքնաբերաբար եկած էր տոմսակները առնելու կիշէէն, ինչ որ սովորական չէ այս երկրի մէջ ուր նուագահանդէսի տոմսակներ զետեղելու արհեստը պիտի կրնար զբաղում հայթայթել անգործ միջնորդներու։

Այս յաջողութիւնը պատուաբեր է մեր արուեստագէտին՝ որ այնքան ճարտարօրէն կ'արդարացնէ այսօր այն ողոքալի վարձատրութիւնները որոնց առարկայ դարձաւ՝ Բարիզի Երաժշտանոցին մէջ փայլուն կերպով իր ուսումը աւարտելէ յետոյ։ *Միւզիքա* հանդէսը 1909-ի իր Սեպտ.ի թիւին մէջ, խօսելով Երաժշտանոցի մրցմանց արդիւնքներուն վրայ, եւ ակնարկելով Պ. Շահ-Մուրատի՝ որ օբէրայի երկրորդ մրցանակով վարձատրուած էր, սապէս կը գրէր. «Անիկա արուեստագէտ մըն է զոր վերստին պիտի գտնենք առաջիկայ տարի։»

Արդարեւ, 1910-ի մրցումին մէջ, Պ. Շահ-Մուրատեան կ'ստանայ իր օբէրայի առաջին մրցանակը՝ ճոխացած օբէրա-քօմիքի եւ երգի մէյմէկ երկրորդ մրցանակներով։ *Միւզիքա*ի մեծանուն քննադատ՝ Ժօրժ Բիօշ, 1910-ի Սեպտ.ի թիւին մէջ Ազգ. Երաժշտանոցի պսակաւորներուն մէջէն մասնանիշ կ'ընէ Պ. Շահ-

Մուրատեանը՝ իբր «թէնօր մը որուն ձայնը յաճախ արեւու տաքութիւն մը ունի» եւ կ'աւելցնէ. «գովելի է քննիչ յանձնաժողովը որ անոր ապահովեց օբէրայի առաջին մրցանակ մը»: Այս կանխատեսութիւններն ու գնահատումները լիուլի իրագործեց՝ իր կիրակի օրուան ունկնդիրներուն խանդավառ ծափահարութիւնները խլող երգիչը՝ իր ընդգրկած ասպարէզով:

Պ. Շահ-Մուրատեան՝ համեստ բայց իսկապէս արուեստագիտական ճաշակով պատրաստած իր յայտագրին մէջ՝ մեզի լսելի ընել տուաւ ճշմարիտ, գեղեցիկ եւ պատուական երաժշտութիւն մը, իրաւամբ արհամարհելով ձայնի չափազանց բարձրութիւնները եւ սուր խաղերու ուժգնութիւնները, ընդհանրապէս՝ գերազանց հանդիսանալով կիսաերանգի այլազան գոյներուն մէջ:

Յայտագրին պարունակած զանազան կտորներուն մէջ կային Կոմիտաս Վարդապետի հաւաքած եւ սխրալիօրէն դաշնակաւորած երգերը որոնք մեծ մասամբ շինական են եւ որոնց սկզբնական եղանակները խիստ հաւանօրէն մասամբ անծանօթ կը մնան: Այս երգերը հողի անբաղդատելի համ մը ունին, վերին աստիճան նկարչական են եւ պատկերներ ու տպաւորութիւններ ոգեկոչող հանգամանք մը կը կրեն, մանաւանդ *Մշակին երգը* որ պարզապէս հրաշալիք մըն է:

Յայտագիրը վերջացաւ *Հայաստան* երգով որ ինքնատիպ եւ ներոյժ գեղեցկութիւն մը ունի եւ որ խանդավառ ծափահարութիւններով ողջունուեցաւ ունկնդիրներէն:

ԷՔՕ ՏԸ ՖՐԱՆՍ

***Արեւելեան մամուլ***, 16 ***Մայիս*** 1922, 43-***րդ տարի***, ***Թիւ*** 2856, ***էջ*** 4

## ԵՐԳԻՉ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ
## ՄԱՀՈՒԱՆ ԱՌԻԹՈՎ
## (ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ)
**(հատուած)**

ԴՈԿՏ. Գ. ԱՄԱՏԵԱՆ

Ես զինքը առաջին անգամ տեսնելու եւ մօտէն ճանչնալու հաճոյքն ունեցայ Իզմիր 1920-ին [պէտք է ըլլայ՝ 1922-ին, Հ.Ա.] երբ կը վերադառնար Եգիպտոսէն ուր բրած էր երգի շրջապտոյտ մը: Ճամբորդութեան միջոցին՝ պաղառութեան հետեւանքով ցնցդատապ մը ունեցած էր զոր կը դարմանէի: Շատ եռանդուն եւ խանդավառ գտայ զինքը, նուիրուած որքան հայ երգին, նոյնքան ալ ազգային ճակատագրին: Զինքը երկրորդ անգամ լսող իզմիրցիները կը հաւաստէին թէ

նախկին ձայնի հնչականութիւնը եւ քաղցրութիւնը պահած չէր։ Այսուհանդերձ հոն ալ ստեղծեց խանդավառութիւն։
*Արեւ*, 2 *Յունուար* 1940, *ԻԵ. տարի*, *Թիւ* 6390, *էջ* 2

**ԿԻՐԱԿԻ, 18 ՅՈՒՆԻՍ 1922, Կ. ՊՈԼԻՍ**

Պոլսոյ Փըթի-Շան թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Մակար Եկմալեան, *Տէր կեցո դու զհայս*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Արօր տատրակ* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Léo Delibes: *Arioso*, մեներգ՝ Շ-Մ.

Reynaldo Hahn եւ Pyotr Tchaikovsky, մեներգ՝ Շ-Մ.

George Frideric Handel: *Largo*, մեներգ՝ Շ-Մ., ջութակ՝ Ժագ Ֆիշպերկ

Franz Schubert: *Ave Maria*, ջութակ՝ Ժագ Ֆիշպերկ

Pablo de Sarasate: *Tarantella*, ջութակ՝ Ժագ Ֆիշպերկ

Fritz Kreisler: *Caprice viennois*, ջութակ՝ Ժագ Ֆիշպերկ

Fritz Kreisler: *Tambourin chinois*, ջութակ՝ Ժագ Ֆիշպերկ

Դաշնակի նուագակցութիւն՝ Arkadie Kouguell

- *Ժողովուրդի ձայնը-Ժամանակ*, 11 *Յունիս* 1922, *Դ. տարի*, *Թիւ* 1119, *էջ* 3։
- *Ճակատամարտ*, 16 *Յունիս* 1922, *ԺԲ. տարի*, *Թիւ* 2912, *էջ* 3։
- «*Պ. Շահմուրատեանի նուագահանդէսը*», *Ճակատամարտ*, 18 *Յունիս* 1922, *ԺԲ. տարի*, *Թիւ* 2914, *էջ* 2։
- «*Նուագահանդէս*», *Ճակատամարտ*, 18 *Յունիս* 1922, *ԺԲ. տարի*, *Թիւ* 2914, *էջ* 3։
- *Գէորգ Կուրվարենց*, «*Պ. Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Ճակատամարտ*, 20 *Յունիս* 1922, *ԺԲ. տարի*, *Թիւ* 2915, *էջ* 2։
- *Մ.*, «*Պ. Ա. Շահմուրատեանի երգահանդէսը*», *Ժողովուրդի ձայն-Ժամանակ*, 21 *Յունիս* 1922, *Դ. տարի*, *Թիւ* 1127, *էջ* 2։

## Պ. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Այսօր, կէսօրէ վերջ, Փըթի-Շանի մէջ տեղի կ'ունենայ Փարիզի մեծ օփերայէն տաղանդաւոր հայ երգիչ Պ. Ա. Շահմուրատեանի նուագահանդէսը, մասնակցութեամբ ռուս յայտնի արուեստագէտներու։

Պ. Շահմուրատեանի երգը անծանօթ չէ Պոլսեցիներուն, երբ պատերազմէն առաջ հոս էր ինքը։ Այս նուագահանդէսը հասարակութեան համար լաւագոյն առիթ մըն է գեղարուեստական ճշմարիտ վայելք մը ունենալու համար։
*Ճակատամարտ*, 18 *Յունիս* 1922, *ԺԲ. տարի*, *Թիւ* 2914, *էջ* 2

## Պ. Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ԳԷՈՐԳ ԿԱՌՎԱՐԵՆՑ

Կիրակի օր, Փըթի Շանի թատրոնին մէջ տեղի ունեցաւ Պ. Ա. Շահ-Մուրատեանի կազմակերպած երգահանդէսը՝ մասնակցութեամբ ռուս ջութակահար Պ. Ժագ Ֆիշպէրկի եւ դաշնակահար փրոֆ. Քուկելի։

Երաժշտասէրներու եւ օտար երաժիշտներու հոծ բազմութիւն մը փութացած էր կանուխէն թատրոն, լսելու համար հայ երգիչը՝ որուն ինը տարի առաջ թողած ազդեցութիւնը այնքան թարմ էր տակաւին շատերու սրտին մէջ։

Նուագահանդէսին առաջին թիւը կը կազմէր Մ. Եկմալեանի *Տէր կեցո*ն՝ զոր յուզումով երգեց Պ. Շահ-Մուրատեան։

Պ. Ֆիշպէրկ՝ փրոֆ. Քուկելի ընկերակցութեամբ նուագեց վիպական երաժըշտութեան մեծագոյն վարպետներէն Շուպէրթի *Ավէ-Մարիա*ն, եւ մեծանուն երգահան-ջութակահար Սարազատի *Թարանթէլլա*ն, առաջինը զգացման, իսկ երկրորդը ճարտարութեան մէջ մէկ փոքր գլուխ-գործոցներ։

Պ. Ֆիշպէրկ ջերմապէս ծափահարուեցաւ։ Անիկա ունի ճպոտի զմայլելի ճկունութիւն, արտայայտութեան դիւրութիւն ու տաք խառնուածք։ Իր եռանդը, սակայն, կը վնասէ երբեմն aiguëներու ճշտութեան։ Պ. Ֆիշպէրկ նուագեց նաեւ Քրայզլէրի *Քափրիս վիէննուազ*ը եւ *Թամպուրէն շինուա*ն, նոյնքան յաջողութեամբ։

Պ. Շահ-Մուրատեան առաւելութիւններ ի յայտ բերաւ՝ Լէօն Տէլիպի *Արիոզօ*ին ու մանաւանդ Հէնտըլի *Լարկօ*ին մէջ՝ որ գեղեցկահիւս եռանուագ մըն է, ճարտար դեմերգ մը ներդաշնակուած։ Բայց ամէնէն աւելի յոյզ ու արուեստ դրաւ ան Ռէյնալտօ Հանի եւ Չայքօվսքիի վիպերգներուն մէջ։

Տաղանդաւոր արուեստագէտը նորութիւններով կուգայ։ Իր արտայայտութեան եղանակը նրբացած է եւ հասկացողութիւնը աւելի խորացած, թէեւ մասամբ կորսնցուցած ըլլալ կը թուի իր շունչին լայնութիւնն ու ձայնին թրթռականութիւնը՝ բարձրագոյն ձայնոլորտներու անհրաժեշտութեան պարագային։

Կոմիտաս վրդ.ի *Արօր ու տատրակ*ը եւ մանաւանդ *Հայաստան*ը՝ որոնց համար, կարծես, երգիչը մասնաւորապէս պահած ըլլար իր հոգիին ամբողջ յոյսն ու կրօնակը խանդավառութեամբ ծափահարուեցաւ։

***Ճակատամարտ***, 20 ***Յունիս*** 1922, ***ԺԲ. տարի***, ***Թիւ*** 2915, ***էջ*** 2

## Պ. Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Մ.

Կոմիտաս վարդապետին օրով Պոլսեցին գոնէ տարին մէկ երկու անգամ

առիթը կ'ունենար գեղարուեստական ճշմարիտ վայելք մը ունենալու։ Տարաբախտ վարդապետին կազմակերպած համերգներուն ծարաւէն պապակած բազմութիւն մը փութացած էր կիրակի օր Բրթի Շանի թատրոնը, գեղարուեստի եւ մանաւանդ ժողովրդական տոհմիկ երգերու իր ծարաւը յագեցնելու։

Պ. Շահմուրատեանի երգահանդէսը՝ մասնակցութեամբ ռուս ջութակահար Մ. Ժազ Ֆիշպէրկի եւ դաշնակահար Բրօֆ. Քուկէլի, իր ընդհանուր գիծերուն մէջ յաջող անցաւ։ Առաջին մասին մէջ Պ. Շահմուրատեան զգացումով երգեց Եկմալեանի *Տէր կեցո*ն։ Ան աւելի մեծ յաջողութիւն ցոյց տուաւ Լէօ Տէլիպի *Արիօզօ*ին եւ Հէնտըլի *Լառկօ*ին, ինչպէս նաեւ Ռէյնալտօ Հահնի եւ մանաւանդ Չայքօվսքիի վիպերգներուն մէջ։ Իսկ վերջին պահուն երգուած *Արօր տատրակ*ն ու *Հայաստան*ը խանդավառութեամբ ծափահարուեցան։

Պ. Շահմուրատեանի երգահանդէսին յաջողութիւնը շատ բան կը պարտի Պ. Ֆիշպէրկի եւ Բրօֆ. Քուկէլի, որոնք վարպետի ճարտարութեամբ նուագեցին Սարազատի *Թարանթէլլա*ն եւ Շուպէրթի *Ավէ-Մարիա*ն։

***Ժողովուրդի ձայն-Ժամանակ***, 21 ***Յունիս*** 1922, ***Դ. տարի***, ***Թիւ*** 1127, ***էջ*** 2

**ՅՈՒՆԻՍ 1922, ՊՈԼԻՍ**

Կ'այցելէ Երուսաղիմատուն (Վիքրի հոմ) որբանոցը, ուր կը հանդիպի որբերուն հետ եւ կ'երգէ *Հերիք որդեակք* եւ *Արօր տատրակ*։

***- Արամ Պետրոսեան***, «***Անմոռանալի երգիչը Արմենակ Շահմուրատեան. մշեցի գիւղացին Փարիզի Օփերային մէջ***», ***Բուլիս***, 1 ***Յունուար*** 1963, 17-***րդ տարի***, ***Թիւ*** 1 (385), ***էջ*** 11։

## ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ԵՐԳԻՉԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ ՄՇԵՑԻ ԳԻՒՂԱՑԻՆ ՓԱՐԻԶԻ ՕՓԵՐԱՅԻՆ ՄԷՋ
**(հատուած)**

ԱՐԱՄ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Զինադադարի օրերուն, երբ Պոլիս հանդիպած էր երգահանդէսներ տալու, ան չէր մոռցած որբերը, որոնք բախտակից եղած էր այնքան կանուխէն։ Երուսաղիմատուն եկած էր, այն ժամանակ Վիքրի Հոմի որբանոց մեր տան դիմացը, բախտազուրկ հայորդիները ոգեւորելու իր երգերով։ Տնօրէնին ծանօթ էի, ասկէ զատ Կեդրոնականի դասընկերներս հոն էին, պէտք էր օգտուիլ առիթէն։ Որքա՛ն անհամբերութեամբ սպասեցի իրիկուան։ Մեր երգիչը որբանոցին պարտէզը մտերմիկ խօսակցութեան մը բռնուած էր տղոց հետ։ Շատ չանցած վեր ելաւ։ Քանի մը ուղերձներէ եւ երգերէ ետք, կարգը իրն էր։ Շահմուրատեան երգեց

*Հերիք որդեակք*ը գեղեցիկ եւ ներդաշնակ շարժուձեւերով, բայց իր երգածը օփերէթային սովորական եղանակը չէր, բոլորովին տարբեր հիմայք, տարբեր ներգործութիւն մը ունէր։

Տաղանդաւոր երգիչը կարճ բացատրութենէ մը վերջ երգեց նաեւ *Արօր տատրակ*ը, այն կենդանի եւ խանդավառ շունչով, որուն գաղտնիքը միայն ինք գիտէր։ Դաժան կեանքի մը լուսանցքէն շողացող այդ լոյսի նշոյլը, պարզ է, գեղեցիկ, սակայն այլաբանական։

***Քուլիս***, 1 ***Յունուար*** 1963, 17-***րդ տարի***, ***Թիւ*** 1 (385), ***էջ*** 11

### ԿԻՐԱԿԻ, 1 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1922, ՓԱՐԻԶ

Փարիզի հայկական եկեղեցիին մէջ՝ հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգիստ Ա. Մանթաշեանի, եկեղեցիի հիմնադրութեան տարեդարձին առիթով։ Արարողութեան կը մասնակցի Շ-Մ.։

- «***Բարիզի եկեղեցիին տարեդարձը***», ***Ապագայ***, 14 ***Հոկտեմբեր*** 1922, ***Բ. տարի***, ***Թիւ*** 44, ***էջ*** 4։

### ՇԱԲԱԹ, 27 ԿԱՄ ԿԻՐԱԿԻ, 28 ՅՈՒՆՈՒԱՐ 1923, ՊՐԻՒՔՍԷԼ

Պրիւքսէլի Union Coloniale սրահին մէջ՝ հայկական նուագահանդէս։ Կը մասնակցին՝ Արմենիա երգչախումբ (խմբավար՝ Վարդան Սարգիսեան), Շ-Մ. եւ Մարգարիտ Բաբայեան (մեծծօ-սոփրանօ)։

- «***Հայկ. համերգ Պրիւքսէլի մէջ***», ***Արեւ***, 7 ***Փետրուար*** 1923, ***Թ. տարի***, ***Թիւ*** 49 (1208), ***էջ*** 2։

- «***Հայկ. նուագահանդէս Պելճիքայի մէջ***», ***Արեւ***, 20 ***Փետրուար*** 1923, ***Թ. տարի***, ***Թիւ*** 59 (1218), ***էջ*** 2։

- «***Հայերգ ի Պելճիքա. Արմենիա երգչախումբը***», ***Թէոդիկ***, ***Ամէնուն տարեցոյցը***, 1926, 20-***րդ տարի***, ***էջ*** 485-486։

## ՀԱՅԿ. ՀԱՄԵՐԳ ՊՐԻՒՔՍԷԼԻ ՄԷՋ

Պ. Վ. Խօրասանճեանի ջանքերով եւ նիւթական օժանդակութեամբ Պրիւքսէլի մէջ երաժիշտ Պ. Սարգիսեանի ղեկավարութեան տակ կազմուած է հայ եւ պելճիքացի երգիչներէ բաղկացած 50 հոգինոց երգեցիկ խումբ մը որ հայկական համերգ մը տուած է Պրիւքսէլի մէջ։ Բացի երգեցիկ խումբէն համերգին մասնակցած են հայ երաժշտագէտներ Օր. Մ. Բաբայեան եւ Պ. Շահ-Մուրատեան։ Գնահատելի ձեռնարկ մըն է այս որով պելճ հասարակութիւնը ծանօթացած է հայ գեղարուեստի մէկ ճիւղին՝ հայ երաժշտութեան հետ։ Ձեռնարկը մեծ ընդունելութեան առարկայ եղած է։

***Արեւ***, 7 ***Փետրուար*** 1923, ***Թ. տարի***, ***Թիւ*** 49 (1208), ***էջ*** 2

## ՀԱՅԿ. ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ՊԵԼՃԻՔԱՅԻ ՄԷՋ

Յունվար 28-ի իրիկունը, Պրիւքսէլի Ւնիօն Քօլօնիալի ընդարձակ սրահին մէջ տեղի ունեցած է հայկ. նուագահանդէս մը, մասնակցութեամբ Օր. Մ. Բաբայեանի եւ Պ. Ա. Շահմուրատեանի։

Արմենիա հայ նորակազմ երգչախումբը, ղեկավարութեամբ Պ. Վարդան Սարգիսեանի, երգած է հայ ժողովրդական երգեր, որոնք խոր տպաւորութիւն գործած են մանաւանդ պելճիքացի ունկնդիրներուն վրայ։

*Էնտէքանտանս Պելժ* եւ *Լը Սուար* թերթերը գովեստով կը խօսին մասնաւորաբար հայ արուեստագէտներու եւ ընդհանրապէս հայ տոհմիկ երաժշտութեան մասին։

***Արեւ***, 20 ***Փետրուար*** 1923, ***Թ. տարի***, ***Թիւ*** 59 (1218), ***էջ*** 2

## ՀԱՅԵՐԳ Ի ՊԵԼՃԻՔԱ. ԱՐՄԵՆԻԱ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ
**(հատուած)**

1922-ին հիմնուած Արմենիա Երգչախումբը տուաւ 4 երգահանդէս, առաջին 2-ը՝ Պրիւսէլ եւ Անվէրս, 27 եւ 29 Յնվր. 1923-ին, Ւնիօն Գոլոնիալի եւ Սէռքլը Ռուայեալ Առդիստիքի սրահները, մասնակցութեամբ Օր. Մարգարիտ Բաբայեանի, Ա. Շահմուրատեանի եւ 50 պելժեւհայ երկսեռ երգողներու։

***Թէոդիկ***, ***Ամէնուն տարեցոյցը***, 1926, 20-***րդ տարի***, ***էջ*** 485-486

### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 29 ՅՈՒՆՈՒԱՐ 1923, ԱՆՎԵՐՍ

Անվերսի Cercle Royale Artistique-ին մէջ՝ հայկական նուագահանդէս։ Կը մասնակցին՝ Արմենիա երգչախումբ (խմբավար՝ Վարդան Սարգիսեան), Շ-Մ. եւ Մարգարիտ Բաբայեան (մեծծօ-սոփրանօ)։

- «***Հայերգ ի Պելճիքա. Արմենիա երգչախումբը***», ***Թէոդիկ***, ***Ամէնուն տարեցոյցը***, 1926, 20-***րդ տարի***, ***էջ*** 485-486։

### ՀԻՆԳՇԱԲԹԻ, 8 ՓԵՏՐՈՒԱՐ 1923, ԱՄԵՐԻԿԱ

Օլիմփիք շոգենաւով Փարիզէն կը հասնի Ամերիկա։

- «***Հայ գաղթականութիւնը***», ***Հայաստանի կոչնակ***, 17 ***Փետրուար*** 1923, ***ԻԳ. տարի***, ***Թիւ*** 7, ***էջ*** 212։

**ՇԱԲԱԹ, 10 ՓԵՏՐՈՒԱՐ 1923, ՖՐԷԶՆՕ**

Կը մեկնի Ֆրէզնօ նուագահանդէսներ տալու նպատակով:

- *«Հայ գաղթականութիւնը»*, *Հայաստանի կոչնակ*, 17 *Փետրուար* 1923, *ԻԳ. տարի*, *թիւ* 7, *էջ* 212:

**ԿԻՐԱԿԻ, 11 ՄԱՐՏ 1923, ՖՐԷԶՆՕ**

Ֆրէզնոյի White Theater-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

Մակար Եկմալեան, *Հայր մեր*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Ով զարմանալի*, *Լուսնակն անուշ*, *Շողեր*, *Երկինքն ամպել ա*, *Հայաստան*, եւն., մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Հաբրբան* եւ *Ալ այլուղս*, զուգերգ՝ օր. Զարուհի Էլմասեան (սոփրանօ) եւ Շ-Մ.

Léo Delibes: *Arioso*, մեներգ՝ Շ-Մ.

Alexander Grechaninov: *Berceuse*, մեներգ՝ Շ-Մ.

Wolfgang Amadeus Mozart: Aria, մեներգ՝ Շ-Մ.

Մեներգներ, օր. Զարուհի Էլմասեան

Pyotr Tchaikovsky: *Melody*, ջութակ՝ օր. Արաքսի Մարգարեան

Kéler Béla: *Der Sohn der Heide*, ջութակ՝ օր. Արաքսի Մարգարեան

- *Ասպարէզ*, 2 *Մարտ* 1923, *ԺԵ. տարի*, *թիւ* 936, *էջ* 3:

- *Վրոյր*, *«Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը»*, *Ասպարէզ*, 9 *Մարտ* 1923, *ԺԵ. տարի*, *թիւ* 938, *էջ* 1:

- *Ունկնդիր մը*, *«Շահ-Մուրատեանի երգահանդէսը»*, *Ասպարէզ*, 13 *Մարտ* 1923, *ԺԵ. տարի*, *թիւ* 939, *էջ* 4:

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ՎՐՈՅՐ

Մօտ երկու տարուայ բացակայութենէ մը յետոյ, դարձեալ մեր մէջ կը տեսնենք տաղանդաւոր երգիչ Շահ-Մուրատեանը, որ իր առաջին երգահանդէսը պիտի տայ վաղը չէ միւս օր, քաղաքիս Հուայթ թատրոնին մէջ:

Մանաւանդ Ֆրէզնոյի հայութեան համար անծանօթ չէ Շահ-Մուրատեան, որու այնքան յուզիչ, կենդանի ու առնական ձայնը վայելած է ան քանի մը անգամ, դեռ պահելով իր հոգու մէջ տպաւորութիւնները այն երգերուն, որոնք մերն են, հարազատ սեփականութիւնը մեր ժողովուրդին, եւ որոնք առաւելապէս Շահ-

Մուրատեաններու զմայլելի արուեստին շնորհիւ է որ կ՚ստանան առանձին հմայք, գրաւչութիւն եւ ոյժ:

Շահ-Մուրատեան, որ օժտուած է եւրոպական արուեստագէտի մը առաւելութիւններով, մեր մէջ եղած է տարածողն ու ժողովրդականացնողը հայ երգին ու երաժշտութեան, որոնք շատ քիչերու միայն ծանօթ են: Մեր անզուգական վարպետներուն – Կոմիտաս Վարդապետներու գործը թերի պիտի մնար, եթէ մեր ժողովուրդին ու գիւղացիին շրթներէն այնքան խնամքով հաւաքուած ու գեղեցկօրէն դասաւորուած երգերը չերգուէին Շահ-Մուրատեաններու կողմէ:

Կ՚ըսենք Շահ-Մուրատեաններու կողմէ, որովհետեւ մենք հայերս ընդհանրապէս երգել չե՛նք գիտեր: Դարաւոր ստրկութեան ներքեւ կքած, միշտ տանջըւած, միշտ տառապած, լացի ու օգնութեան աղաղակներով աշխարհը լեցուցած հայը, ամենէն խրոխտ, վսեմ ու առնական երգերուն մէջ անգամ, ակամայօրէն, կը դնէ լացի ու տրտմութեան շեշտ մը: Մենք կ՚աշխատինք կրկնել մեր երգերուն մէջ մեր ժողովուրդի ողբերգական պատմութիւնը միայն, երբ ունեցած ենք սակայն ազգային կեանքի պայծառ շրջաններ ալ, ունեցած ենք ըմբոստումներ, հերոսական պայքարներ, քաղաքական յաղթանակի օրեր, որոնք սակայն քիչ անգամ կ՚երգուին մեր կողմէ:

Այդ տեսակէտէն Շահ-Մուրատեան հարազատ երգիչն է մեր ժողովուրդին, ան կ՚երգէ հազուագիւտ յաջողութեամբ ոչ միայն մեր տառապանքի, այլ մանաւանդ մեր ոգորումներու, մեր գեղեցիկ յաղթանակներու երգերն ալ:

Երկու օր վերջ անգամ մը եւս կը լսենք զինքը, որ մեզ պիտի տայ ապահովաբար վայելքը ոչ միայն եւրոպական գեղեցիկ երգերու, այլեւ ժողովրդական եւ յեղափոխական երգերու, որոնցմով պիտի կրնանք թարմացնել մեր հոգիները, որոնք մանաւանդ այս օրերուն այնքան ճնշուած ու ծանրաբեռնուած են սպաննիչ վհատութեամբ:

Այս Կիրակէ լսենք ամենքս ալ Շահ-Մուրատեանը: Երգիչը կ՚ուզէ լսողներ՝ ինքզինքը վարձատրուած զգալու համար:

***Ասպարէզ***, 9 ***Մարտ*** 1923, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 938, ***էջ*** 1

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ՈՒՆԿՆԴԻՐ ՄԸ

Մարտ 11-ի Կիրակի օրը, Հուայթ թատրոնին մէջ տեղի ունեցաւ Պ. Շահ-Մուրատեանի երգահանդէսը: Այն կարեւոր բազմութիւնը, որ եկած էր լսելու երգիչը, ապացոյց մըն էր որ Ֆրէզնոյի հայութիւնն ալ գիտէ արուեստը գնահատել եւ իր բարոյական ու նիւթական տուրքը տալ արուեստագէտին:

Շահ-Մուրատեան երգեց նախ Եկմալեանի *Հայր մերը* եւ Կոմիտաս վարդապետի *Ով զարմանալի*ն, իսկ այնուհետեւ մէջ ընդ մէջ, տաղանդաւոր Կոմիտասի երգերէն *Լուսնակն անուշ*, *Շողեր*, *Երկինքն ամպել ա*, *Հաբրբան*, *Ալ այլուղս* եւն., վերջին երկու երգերը Օր. Էլմասեանի ընկերակցութեամբ։ Պ. Շահ-Մուրատեան երգեց նաեւ եւրոպական քանի մը կտորներ – *Արիօզօ*, *Պէռսէօզ*, իսկ Մոցառտէն՝ *Առիա*։

Մասնագէտներն են միայն որ պիտի կրնան խղճամիտ գնահատութիւնը կատարել Շահ-Մուրատեանի երգահանդէսին։ Հասարակ ունկնդիր մը սակայն, որպիսին ես, ունեցայ անմիջապէս այն տպաւորութիւնը թէ՝ գոնէ այդ օրը Շահ-Մուրատեան հրապարակ չեկաւ իր ձայնի ամբողջ փարթամութեամբն ու շքեղութեամբը։ Հայկական, ժողովրդական երգերէն աւելի, հոգածութեամբ ու խնամքով երգուեցան իր կողմէ եւրոպական կտորները, եթէ չհաշուենք *Հայաստան*ը, որ յաջողութեամբ երգեց ամենէն վերջ։ Ինձ թուեցաւ որ Շահ-Մուրատեան իր երգած հայկական երգերուն մէջ իսկ կը դնէր եւրոպական երգի շեշտը։

Օր. Արաքսի Մարգարեան ջութակի վրայ նուագեց երկու գեղեցիկ կտորներ, առաջինը *մէլօտի* մը՝ Չայքովսքիէն, երկրորդը՝ *Տէր Զոհն տէր Հայտ*ը՝ Քէլէր Պէլաէն։ Իսկ Օր. Էլմասեան երգեց թէ առանձին եւ թէ Շահ-Մուրատեանի ընկերակցութեամբ։ Որքան որ օրիորդի ձայնը բաւական գեղեցիկ էր, բայց յայտնի էր որ չէր հասկնար իր երգած հայկական երգերու իմաստը, այդ է պատճառը որ *Հաբրբան*ի եւ *Ալ այլուղս*ի նման ժողովրդական երգեր մեզ չապրեցուցին այդ րոպէին։

Շահ-Մուրատեան մտադիր է ուրիշ քաղաքներու մէջ ալ երգահանդէսներ տալ։ Ի սրտէ կը ցանկանք որ յառաջիկային տալիք իր երգահանդէսները անցնին աւելի յաջողութեամբ։

***Ասպարէզ***, 13 ***Մարտ*** 1923, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 939, ***էջ*** 4

## ԿԻՐԱԿԻ, 25 ՄԱՐՏ 1923, ՖՐԷԶՆՕ

Ֆրէզնոյի Civic Auditorium-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը, նախաձեռնութեամբ Տարօն Տուրուբերանի Հայրենակցական Միութեան Ֆրէզնոյի մասնաճիւղին, նախագահութեամբ զօրավար Անդրանիկի։

Յայտագիր.

Բացման խօսք՝ զօրավար Անդրանիկ

Հայկական երգեր, մեներգ՝ Շ-Մ.

Երգեր, մեներգ՝ օր. Տիրուհի Զուլալեան

*Ալ այլուղս* եւ *Հաբրբան*, զուգերգ՝ օր. Տիրուհի Զուլալեան եւ Շ-Մ.

Երկու եւրոպական կտորներ, ջութակ՝ օր. Արաքսի Մարգարեան

Դաշնակի նուագակցութիւն՝ օր. Աննա Ղազարեան

- *Ասպարէզ*, 16 *Մարտ* 1923, *ԺԵ. տարի*, *Թիւ* 940, *էջ* 6։

- «*Տեղական*», *Ասպարէզ*, 16 *Մարտ* 1923, *ԺԵ. տարի*, *Թիւ* 940, *էջ* 8։

- «*Տեղական*», *Ասպարէզ*, 23 *Մարտ* 1923, *ԺԵ. տարի*, *Թիւ* 942, *էջ* 7։

- *Լրատու*, «*Տեղական*», *Ասպարէզ*, 27 *Մարտ* 1923, *ԺԵ. տարի*, *Թիւ* 943, *էջ* 4։

- *Ներկայ մը*, «*Բաց նամակ Տարօն Տուրուբերան Հայրենակցական Միութեան*», *Ասպարէզ*, 30 *Մարտ* 1923, *ԺԵ. տարի*, *Թիւ* 944, *էջ* 6։

- «*Մեկնում եւ շնորհակալութիւն*», *Ասպարէզ*, 30 *Մարտ* 1923, *ԺԵ. տարի*, *Թիւ* 944, *էջ* 8։

- *Թղթակից*, «*Կեանքը Ֆրէզնոյի մէջ*», *Հայաստանի կոչնակ*, 21 *Ապրիլ* 1923, *ԻԳ. տարի*, *Թիւ* 16, *էջ* 500։

## ՏԵՂԱԿԱՆ

ԼՐԱՏՈՒ

Անցեալ Կիրակի կէս օրէ յետոյ քաղաքիս Սիվիք Օտիթըրիըմին մէջ տեղի ունեցաւ Տարօն-Տուրուբերանի նախաձեռնութեամբ կազմակերպուած երգահանդէս մը, Զօր. Անդրանիկի նախագահութեամբ։ Ներկայ էին 3-400 ունկնդիրներ։

Երգահանդէսին գլխաւոր երգիչն էր պ. Շահ-Մուրատեան, որ մի քանի նոր հայկական երգեր երգեց, եւ այս անգամ աւելի յաջող դուրս եկաւ քան իր երգահանդէսին մէջ, հակառակ այն իրողութեան, որ վերջին անգամ պայմանները աւելի աննպաստ էին։

Մի քանի գեղեցիկ կտորներ երգեց Օր. Տիրուհի Զուլալեան, *Ալ այլուղ* սի ու *Հապրպան*ի մէջ ընկերանալով պ. Ա. Շահ-Մուրատեանի։

Պ. Ա. Զաքարեան նուագեց երկու եւրոպական կտորներ ջութակի վրայ։

Երգիչներուն եւ ջութակահարին կ’ընկերանար Օր. Աննա Ղազարեան՝ դաշնակի վրայ։

*Ասպարէզ*, 27 *Մարտ* 1923, *ԺԵ. տարի*, *Թիւ* 943, *էջ* 4

## ԿԵԱՆՔԸ ՖՐԷԶՆՈՅԻ ՄԷՋ

ԹՂԹԱԿԻՑ

Վերջերս Ֆրէզնոյի հայ գաղութը պատեհութիւնը ունեցաւ լսելու Շահ-Մուրատեանին հոգեզմայլ երգերը, երկու տարբեր երգահանդէսներուն մէջ, որոնցմէ մին Ուայթ Թատրոնի, իսկ միւսը Սիվիք Օտիթորիըմի մէջ տեղի ունեցաւ մեծ յաջողութեամբ։ Վերջինը մեծ մասամբ հայկական էր։ Շահ-Մուրատեան,

իբրեւ տաղանդաւոր արուեստագէտ, այս առթիւ պանծացուց իր ցեղին գեղարուեստական տաղանդը, իր եղանակներուն գեղեցկութեամբն ու ներդաշնակ ելեւէջներովը։
*Հայաստանի կոչնակ*, 21 *Ապրիլ* 1923, *ԻԳ. տարի*, *Թիւ* 16, *էջ* 500

## ԿԻՐԱԿԻ, 1 ԱՊՐԻԼ 1923, ԼՈՍ ԱՆՃԵԼՈՍ

Լոս Անճելոսի Music-Art Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- *Ասպարէզ*, 23 *Մարտ* 1923, *ԺԵ. տարի*, *Թիւ* 942, *էջ* 7։

## ԿԻՐԱԿԻ, 6 ՄԱՅԻՍ 1923, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Ս. Լուսաւորիչ եկեղեցիին մէջ՝ սգահանդէս ի յիշատակ ողբ. Տոքթ. Գարեգին Փաստրմաճեանի, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան Շրջանային Մարմինին։ Շ-Մ. կը մեներգէ *Տէրունական աղօթքը* եւ այլ երգեր։

- *Տեղեկատու*, «*Սգահանդէս ի յիշատակ ողբ. Գարեգին Փաստրմաճեանի*», *Հայաստանի կոչնակ*, 12 *Մայիս* 1923, *ԻԳ. տարի*, *Թիւ* 19, *էջ* 595։

- *Հրատ*, «*Սգահանդէս՝ ողբ. Գ. Փաստրմաճեանի յիշատակին Նիւ Եորքի մէջ*», *Ասպարէզ*, 25 *Մայիս* 1923, *ԺԵ. տարի*, *Թիւ* 960, *էջ* 4։

## ԿԻՐԱԿԻ, 10 ՅՈՒՆԻՍ 1923, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Metropolitan Auditorium-ի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

*Հազար երանի*, *Սեւ կաքաւիկ*, *Վայրի ծաղիկ*, *Լուսնակ շողեր*, *Երկինքն ամպել է*, *Թուի, թուի*, *Ինչո՞ւ պինկէօլը մտար*, *Հայաստան*, եւ այլն, մեներգ՝ Շ-Մ.

Francesco Paolo Tosti: *Ideale*, մեներգ՝ Շ-Մ.

Wolfgang Amadeus Mozart: *Don Giovanni*, Aria, մեներգ՝ Շ-Մ.

Pablo de Sarasate: *Gypsy Airs*, ջութակ՝ Jascha Fishberg

Դաշնակի նուագակցութիւն՝ փրոֆ. Քուշնարեան

- «*Երգահանդէս*», *Հայաստանի կոչնակ*, 19 *Մայիս* 1923, *ԻԳ. տարի*, *Թիւ* 20, *էջ* 641։

- «*Շահ-Մուրատեանի երգահանդէսներ*», *Հայրենիք*, 20 *Մայիս* 1923, *25-րդ տարի*, *Թիւ* 3361, *էջ* 2։

- *Հայաստանի կոչնակ*, 2 *Յունիս* 1923, *ԻԳ. տարի*, *Թիւ* 22, *էջ* 704։

- *Յովհաննէս Աւագեան*, «*Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Հայաստանի կոչնակ*, 16 *Յունիս* 1923, *ԻԳ. տարի*, *Թիւ* 24, *էջ* 751։

# ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳԵԱՆ

Յունիս 10-ին, Նիւ Եորքի Մեթրոփոլիթըն Օտիթորիըմի մէջ, կոկիկ այլ գեղարուեստասէր, ընտրեալ բազմութեան մը ներկայութեան տեղի ունեցաւ հանրածանօթ, սիրուած երգիչ (թէնօռ) Տիար Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը:

Յայտագիրը կազմուած էր խնամով: Շահ-Մուրատեան թէնօռ երգչի իր արուեստը ի յայտ բերաւ Թօսթիի *Իտէալ*ին, ու մանաւանդ Մոցարթի *Տօն Ճիովանի* Օբերայի *Էրիա*-ի մէջ: Անիկա անբաղդատելի հարազատութեամբ երգեց հայ ժողովրդական երգերը. – *Հազար երանի*, *Սեւ կաքաւիկ*, *Վայրի-ծաղիկ*, *Լուսնակ շողեր*, *Երկինքն ամպել է*, *Թուի, թուի*, *Ինչո՞ւ Պինկէօլը մտար* եւն.:

Արդարեւ Շահ-Մուրատեան այն ազգային երգիչն է որ ունի մաքուր առոգանութիւն, Հայացի հնչում, ժողովրդական շեշտ եւ գիտէ նոյնութեամբ թարգմանել ժողովուրդի ոգին: Անոր երգերու եղանակաւ ժողովրդական բանաստեղծութիւնը կրկնակի հրապոյր կ'ստանայ եւ հայ երգը կ'ապրի բեմին վրայ: Իր *Հայաստան*ը նորէն թունդ հանեց սրտերը ու խանդավառեց ներկաները: Անկարելի է անվերապահ գնահատութեամբ չարձանագրել այն դերը՝ զոր Շահ-Մուրատեան տարիներէ ի վեր կը կատարէ Ամերիկահայ գաղութին ազգային, տոհմիկ զգացումները վառ պահելու եւ զանոնք երգին արուեստովը տաքցնելու գործին մէջ: Ամերիկահայ հասարակութիւնը՝ որ ցարդ ա՛յնքան գուրգուրոտ վերաբերութիւն մը ցոյց տուած է այս երգչին վերաբերմամբ, տարակոյս չիկայ թէ յուսաբեկութեան այս օրերուն ալ ցոյց պիտի տայ նոյն վերաբերութիւնը եւ պիտի փութայ ներկայ ըլլալ անոր սարքած երգահանդէսներուն՝ ուր անիկա հայ երգին, հայ արուեստին արձագանգովը՝ շիթ առ շիթ յոյս պիտի ներարկէ երակներէն ներս:

Հայ ժողովուրդը, ամենուրեք, պարտի գնահատել արժէքը իր անկապտելի ժառանգութեանց – երգին ու արուեստի այլ արտադրութեանց՝ որոնցմով կ'անմահանայ ազգ մը:

Շահ-Մուրատեան՝ ինչպէս միշտ՝ այս անգամ եւս խանդավառութեամբ ողջունուեցաւ ունկնդիր հասարակութենէն: Երգուած ամեն կտորէ վերջ, ծափահարութիւնները ա՛յնքան բուռն ու երկարատեւ եղան, որ անիկա ժողովուրդին փափաքին գոհացում տալու համար ստիպուեցաւ կամ մասամբ կրկնել, եւ կամ յայտագրէն դուրս կտորներ երգել:

Շահ-Մուրատեանի երգահանդէսին իր մասնակցութիւնը բերած էր նաեւ ջութակահար Եաշա Ֆիշպըրկ՝ որուն նուագած կտորներէն կ'արժէ յիշատակել մանաւանդ Սարասաթի *Ճիփսի Էրգ*: Մր. Ֆիշպըրկի նուագած կտորները եւս

արժանացան խանդավառ ընդունելութեան։

Դաշնակի վրայ արուեստագէտներուն կ'ընկերակցէր կարող դաշնակահար Փրոֆ. Քուշնարեան՝ որ միանգամայն ծանօթ է որպէս ղեկավար օրքէսթրայի։

*Հայաստանի կոչնակ*, 16 *Յունիս* 1923, *ԻԳ. տարի*, *Թիւ* 24, *էջ* 751

## ԿԻՐԱԿԻ, 17 ՅՈՒՆԻՍ 1923, ՊՈՍԹՈՆ

Պոսթոնի Franklin Union Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- «*Շահ-Մուրատեանի երգահանդէսներ*», *Հայրենիք*, 20 *Մայիս* 1923, 25-*րդ տարի*, *Թիւ* 3361, *էջ* 2։

- «*Երգահանդէս Ա. Շահ-Մուրատեանի*», *Հայրենիք*, 12 *Յունիս* 1923, 25-*րդ տարի*, *Թիւ* 3379, *էջ* 2։

## ԿԻՐԱԿԻ, 24 ՅՈՒՆԻՍ 1923, ՏԻԹՐՈՅԹ

Տիթրոյթի Glendale High School Auditorium-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- «*Շահ-Մուրատեանի երգահանդէսներ*», *Հայրենիք*, 20 *Մայիս* 1923, 25-*րդ տարի*, *Թիւ* 3361, *էջ* 2։

- «*Երգահանդէս Ա. Շահ-Մուրատեանի*», *Հայրենիք*, 16 *Յունիս* 1923, 25-*րդ տարի*, *Թիւ* 3383, *էջ* 2։

## ԿԻՐԱԿԻ, 1 ՅՈՒԼԻՍ 1923, ՓՐՈՎԻՏԵՆՍ

Փրովիտենսի Elk's Auditorium-ին մէջ՝ խմբերգային երգահանդէս։

Յայտագիր.

Խմբերգներ, խմբավար՝ Ռ. Տիգրանեան

*Վայրի ծաղիկ* եւ *Տույ տույ*, մեներգ՝ Շ-Մ.

*Երեւան բաղ եմ արել*, մեներգ՝ օր. Տոնապետեան

Ալեքսանդր Սպենդիարեան, *Այ վարդ*, մեներգ՝ օր. Տոնապետեան

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը*, մեներգ՝ օր. Խալընեան

*Սեւ կաքաւիկ* եւ *Հարսանեկան երգեր*, զուգերգ՝ օր. Տոնապետեան եւ օր. Խալընեան

*Արեւելեան պարեր*, դաշնակ՝ օր. Սարգիսեան

- *Հայրենիք*, 22 *Մայիս* 1923, 25-*րդ տարի*, *Թիւ* 3362, *էջ* 2։

- *Հայրենիք*, 22 *Յունիս* 1923, 25-*րդ տարի*, *Թիւ* 3388, *էջ* 2։

- *Յ. Խ. Մարգարեան*, «*Հայերը Ամերիկայի մէջ*», *Հայրենիք*, 11 *Յուլիս* 1923, 25-*րդ տարի*, *Թիւ* 3403, *էջ* 2։

# ՀԱՅԵՐԸ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԷՋ

Յ. Խ. ՄԱՐԳԱՐԵԱՆ

ՓՐԱՒԻՏԷՆՍ. – Յուլիսի մէկին տեղի ունեցաւ երաժշտագէտ Ռ. Տիգրանեանի երգահանդէսը, որուն կը մասնակցէր նաեւ երգիչ պ. Շահ-Մուրատեան: Առանձին հոգատարութեամբ պատրաստուած էր երգահանդէսի յայտագիրը, ուր կային *Վայրի ծաղիկ*, *Միրուն գիշեր*, *Երեւան բաղ եմ արել*, *Տույ, տույ*, *Հոռովել*, *Վարդը*, *Այ վարդ*, եւլն.:

Պ. Շահ-Մուրատեան գեղեցկօրէն երգեց *Վայրի ծաղիկ* եւ *Տույ տույ*: Խմբերգներն անցան կանոնաւոր եւ յաջող: Խումբին մէջ կային կարգ մը շնորհալի ուժեր, որոնք աշխատութեամբ կրնան արժանիքներ դառնալ այս գաղութի կեանքին մէջ: Ատոնցմէ են օրիորդներ Տոնապետեանն ու Խալընեանը: Օր. Տոնապետեան մեներգեց *Երեւան բաղ եմ արելը* եւ *Այ վարդ*: Օր. Խալընեան երգեց *Վարդը*: Որքա՜ն գեղեցիկ երգեցին այս երկուքը *Սեւ կաքաւիկ* եւ *Հարսանեկան երգեր* զուգերգները:

Օր. Սարգիսեան վարժ կերպով դաշնակահարեց *Արեւելեան պարեր*ու շարքը:

Ներկաներու չափազանց քչութիւնը խրախուսիչ չէր: Փափաքելի էր, որ աւելի հետաքրքրութիւն ու քաջալերութիւն ցոյց տրուէին նման գործերու:

*Հայրենիք*, 11 *Յուլիս* 1923, 25-*րդ տարի*, *Թիւ* 3403, *էջ* 2

## ԿԻՐԱԿԻ, 8 ՅՈՒԼԻՍ 1923, ՈՒՍՏՐ

Ուստրի մէջ՝ խմբերգային երգահանդէս, խմբավար՝ Ռ. Տիգրանեան: Կը մասնակցի Շ-Մ.:

- *Հայրենիք*, 22 *Մայիս* 1923, 25-*րդ տարի*, *Թիւ* 3362, *էջ* 2:

## ՀՈԿՏԵՄԲԵՐ-ՆՈՅԵՄԲԵՐ 1923, ՊՐԻՒՔՍԷԼ

Պրիւքսէլի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

Ալեքսանդր Սպենդիարեան, Ռոմանոս Մելիքեան եւ Վարդան Սարգսեան, մեներգ՝ Շ-Մ.

Եւրոպական երգեր, մեներգ՝ Շ-Մ.

Ջութակ՝ օր. Լիտի Տէմիրճեան

- *De Standaard*, 28-10-1923, p. 5:

- *Վարդ*, «*Պ. Ա. Շահ-Մուրատեան Բելճիգայի մէջ*», *Հայաստանի կոչնակ*, 22 *Դեկտեմբեր* 1923, *ԻԳ. տարի*, *Թիւ* 51, *էջ* 1623:

# Պ. Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ԲԵԼՃԻԳԱՅԻ ՄԷՋ

ՎԱՐԴ
(Պրիւսէլի թղթակից)

Հայ երաժշտութիւնն ու երաժշտագէտները մասնաւոր ուշադրութեան մը սկսած են արժանանալ Բելգիոյ մէջ, շնորհիւ այն համերգներուն որոնք տարի մը առաջ կազմակերպուեցան այստեղ, Պ. Վ. Սարգսեանի ղեկավարութեան տակ, մեծ մասամբ բելժ սիրողներու օժանդակութեամբ եւ Օր. Բաբաեանի ու Պ. Շահ-Մուրատեանի մասնակցութեամբ։ Կ'արժէ յիշատակել որ այս գեղեցիկ շարժումը նախաձեռնողները, - Բրիւսէլաբնակ Տէր եւ Տիկին Խօրասանջեաններու, - քաջալերուած բելժ հասարակութեան գնահատումէն, նիւթական թէ բարոյական ոեւէ ջանք չեն խնայեր շարունակելու եւ զարգացնելու համար ստեղծուած ոգեւորութիւնը ի պատիւ հայ արուեստին։

Այս անգամ Պ. Ա. Շահ-Մուրատեան, առանձնապէս իր անունով, Բրիւսէլի եւ Անվէրսի մէջ կազմակերպեց երկու նուագահանդէսներ, որոնք անտարակոյս կոչուած եղան թափ մը եւս տալու բելժ ժողովրդի այս համակրանքին դէպի Հայութիւնը։

Պ. Ա. Շահ-Մուրատեան կը պահէ իր ձայնին բովանդակ ուժն ու թափը, ինչպէս նաեւ այն բացառիկ գոյնը, որը Հայաստանի հողէն ու օդէն սնանող ծաղիկներուն է միայն սեփական, եւ որը, մինչեւ այսօր ալ, բաւական է զինքը զատորոշելու եւրոպացի մեծահամբաւ «թենօր»-ներու շարքին մէջ։ Տեղական թերթերը մեծ գովեստով կը յիշատակեն իր ձայնին այս գոյնի մասնայատկութիւնը, եւ կը գնահատեն զինքը ռուսական ու մանաւանդ հայ երգերու մէջ, որոնցմով մեր ազգակից արուեստագէտը ճշմարտապէս գերազանցեց ինքզինքը։

Պ. Շահ-Մուրատեան մեզի հաճոյքը տուաւ լսելու Պ. Պ. Սպենդիարեանի, Մելիքեանի եւ Սարգսեանի գործերէն, որոնք յաջողութեամբ եկան ամբողջացնելու մեծ խնամքով ընտրուած ու ամենէն դժուարահաճներն իսկ գոհացնելու կոչուած յայտագրին եւրոպական թիւերը։

Յայտագրին մէջ թանկագին բաժին մը վերցուցած էր նաեւ մեծատաղանդ ջութակահարուհի Օրիորդ Լիտի Տէմիրճեան, որ հակառակ իր թարմ տարիքին, արդէն լրացած «Վիրտիւօզ»-ի մը համբաւը կը վայելէ Ֆրանսայի, Անգլիոյ եւ Բելգիոյ մէջ։ Օրիորդ Տէմիրճեան, կին ջութակահարներու մէջ հազուագիւտ բացառութիւն մըն է իր առնական յատկութիւններով։ Գաղտնիքն ունի իր նուագարանէն դուրս բերելու ձայնի մեծագոյն զանգուածը, բոլորովին ընտիր գոյնով մը։ Քաջավարժ «տէկնիք» մը եւ ինքնավստահ ու զգայուն ճպոտ մը։ Շնորհներ որոնք աւելնալով իր աչքառու եւ գրեթէ անթերի ֆիզիքականին վրայ, զինքը կը դարձնեն մին այն արուեստագէտներէն որոնք համակրանքի

հոսանքներ ստեղծելու են կոչուած, իրենց հմայքին տակ գտնուող հասարակութեան մէջ: Օր. Լիտի Տէմիրճեան որ կրկնապէս ծաղկազարդուեցաւ, ինքն իսկ նորայոյս ծաղիկ մըն է հայ անունը զարդարող:

Միեւնոյն համակցութեամբ պսակուեցաւ նաեւ Անվէրսի նուագահանդէսը: Պ. Շահ-Մուրատեան, շնորհաւորելի է իր ձեռք բերած յաջողութեան համար, ու կրկնապէս շնորհաւորելի է այն պատուաբեր եղանակին համար որով կազմակերպեց իր հանդէսները: Արդարեւ Բրիւսէլի եւ Անվէրսի Հայութիւնը, բացառութիւն մը ըլլալով, չի նմանիր ան արտասահմանի բազմաթիւ գաղութներուն որոնք, իրենց արուեստագէտները կը սիրեն մուրացկանի տեղ դնել, անոնց մէջ որոնել ու քաջալերել շողոքորթ նկարագիր մը, եւ շնորհք մը ըրած ըլլալ ենթադրել զիջանելով երթալ լսելու զանոնք: Պ. Շահ-Մուրատեան, բարձր բռնեց հայ արուեստագէտին բարոյական վարկը ինչ որ արժանաւոր ձեւով մը գիտցաւ գնահատել Բելգիոյ հայ գաղութը:
*Հայաստանի կոչնակ*, 22 *Դեկտեմբեր* 1923, *ԻԳ. տարի*, *Թիւ* 51, *էջ* 1623

**ՀՈԿՏԵՄԲԵՐ-ՆՈՅԵՄԲԵՐ 1923, ԱՆՎԵՐՍ**

Անվերսի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

- «*Պ. Ա. Շահ-Մուրատեան Բելճիգայի մէջ*», *Հայաստանի կոչնակ*, 22 *Դեկտեմբեր* 1923, *ԻԳ. տարի*, *Թիւ* 51, *էջ* 1623:

**ԿԻՐԱԿԻ, 3 ՓԵՏՐՈՒԱՐ 1924, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Metropolitan Auditorium-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

- «*Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսներ*», *Հայրենիք*, 9 *Յունուար* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3554, *էջ* 2:

- *Հայաստանի կոչնակ*, 2 *Փետրուար* 1924, *ԻԴ. տարի*, *Թիւ* 5, *էջ* 130:

- «*Երգահանդէս*», *Հայաստանի կոչնակ*, 2 *Փետրուար* 1924, *ԻԴ. տարի*, *Թիւ* 5, *էջ* 149-150:

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

Յառաջիկայ Կիրակի, Փետր. 3, Նիւ Եորք, Մեթրօփօլիթըն Օտիթօրիըմի մէջ տեղի պիտի ունենայ տաղանդաւոր եւ սիրուած երգիչ Պրն. Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը՝ որուն իրենց մասնակցութիւնը պիտի բերեն նաեւ օտար յայտնի *արթիստ*ներ:

Կ'իմանանք թէ այս երգահանդէսին մէջ պիտի երգուին ու նուագուին նոր դասական կտորներ:

Շահ-Մուրատեանի անունը ա՛յնքան ծանօթ է հասարակութեան, եւ իր դերը՝ մանաւանդ ազգային ժողովրդական երաժշտութեան կալուածին մէջ՝ այնքան ակնյայտնի, որ մենք աւելորդ կը նկատենք ծանրանալ այդ մասին։ Ու ժողովուրդը՝ որ ցարդ կրցած է գնահատել այս երգչին արուեստը, անշուշտ այս անգամ եւս ինքզինք պիտի չի զրկէ երգահանդէսին ընծայելիք վայելքէն։
*Հայաստանի կոչնակ*, 2 *Փետրուար* 1924, *ԻԴ. տարի*, *Թիւ* 5, *էջ* 149-150

**ԿԻՐԱԿԻ, 17 ՓԵՏՐՈՒԱՐ 1924, ՊՈՍԹՈՆ**

Պոսթոնի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- «*Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսներ*», *Հայրենիք*, 9 *Յունուար* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3554, *էջ* 2։

**ՈՒՐԲԱԹ, 22 ՓԵՏՐՈՒԱՐ 1924, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Grand Army Hall-ին մէջ՝ հանդէս խնճոյք ի նպաստ Հ. Յ. Դ. Չըլսիի Ժողովրդային Տան շինութեան։

Բացումի խօսք՝ ընկ. Ա. Միքայէլեան, արտասանութիւն՝ տիկ. Ա. Գալուստեան, ատենախօսութիւն՝ ընկ. Ա. Ջամալեան, մեներգ՝ Շ-Մ., կատակաբանութիւն՝ պր. Մ. Զօրեպանեան։

- *Հայրենիք*, 21 *Փետրուար* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3591, *էջ* 3։

**ՇԱԲԱԹ, 23 ՓԵՏՐՈՒԱՐ 1924, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Fifth Ave. Banquet Hall-ին մէջ՝ նուագահանդէս եւ պարահանդէս, նախաձեռնութեամբ Ամերիկայի Հայ Գաղթային Ընկերակցութեան։ Պարերու դադարի միջոցին ելոյթ կ՚ունենան՝ Շ-Մ., Թորգոմ Պէզազեան (պարիթոն), Ա. Քալանթար (մեներգ), Մաշա Սուրաբեան (սոփրանօ), օր. Edna White (թրոմփէթ), Alma Clayburgh (սոփրանօ) եւ Maurice Ambutter (թենոր)։

- *Հայրենիք*, 20 *Փետրուար* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3590, *էջ* 4։

**ԿԻՐԱԿԻ, 2 ՄԱՐՏ 1924, ՀԷՅՎԸՐՀԻԼ**

Հէյվըրհիլի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- «*Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսներ*», *Հայրենիք*, 10 *Փետրուար* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3582, *էջ* 2։

- «*Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսներ*», *Հայրենիք*, 20 *Փետրուար* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3590, *էջ* 2։

**ԿԻՐԱԿԻ, 9 ՄԱՐՏ 1924, ՊՈՍԹՈՆ**

Պոսթոնի Franklin Union Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը*, *Աշնան երգ* եւ *Վայրի ծաղիկ*, մեներգ՝ Շ-Մ.

Ալեքսանդր Սպենդիարեան, *Այ վարդ*, մեներգ՝ Շ-Մ.

Hermann Bemberg: *Chant hindou*, մեներգ՝ Շ-Մ.

Georges Bizet: *Les Pêcheurs de perles*, 'Je crois entendre encore', մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Ուռենի*, զուգերգ՝ տիկ. Ռօզ Զուլալեան (քոնթրալթօ) եւ Շ-Մ.

Արա Պօյաճեան, *Գնաց աշուն*, զուգերգ՝ տիկ. Ռօզ Զուլալեան եւ Շ-Մ.

Գրիգոր Սիւնի, *Սարերի հովին* եւ *Ո՜վ դուք սարեր*, մեներգ՝ տիկ. Ռօզ Զուլալեան

Փրօֆֆ-Գալֆայեան, *Մայր Արաքսի*, մեներգ՝ տիկ. Ռօզ Զուլալեան

*Երեւան բաղ եմ արել*, մեներգ՝ տիկ. Ռօզ Զուլալեան

Camille Saint-Saëns, *Samson et Dalida*, Aria, մեներգ՝ տիկ. Ռօզ Զուլալեան

Ջութակ՝ Alessandro Niccoli

Դաշնակի նուազակցութիւն՝ տիկ. Mimmi Stratton

- «*Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսներ*», *Հայրենիք*, 10 *Փետրուար* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3582, *էջ* 2։

- *Հայրենիք*, 4 *Մարտ* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3600, *էջ* 4։

- *Լութֆի*, «*Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Հայրենիք*, 15 *Մարտ* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3610, *էջ* 2։

- *Յարութիւն Մեհրապեան*, «*Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Հայրենիք*, 16 *Մարտ* 1924, 25-*րդ տարի*, *Թիւ* 3611, *էջ* 3։

- «*Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Հայաստանի կոչնակ*, 29 *Մարտ* 1924, *ԻԴ. տարի*, *Թիւ* 13, *էջ* 404։

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ԼՈՒԹՖԻ

Մարտ 9-ին տեղի ունեցաւ հայ տաղանդաւոր երգիչին՝ Շահ-Մուրատեանի գօնսէրը Franklin Union Hall-ին մէջ, Պոսթըն։ Կը մասնակցէին տիկ. Ռ. Զուլալեան, mez. soprano, A. Niccoli ջութակահար եւ Mrs. M. S. Watson դաշնակահար։

Բրօկրամը կը բաղկանար հայ եւ օտար երգերէ։ Պ. Շահ-Մուրատեան սովորականին պէս, այս անգամ ալ կրցաւ մագնիսացնել իր ունկնդիրները, հակառակ ձայնի տեղատուութեան, որ բնական է միջազգային համբաւ վայելող երգիչներու

համար իսկ: Իր ձայնին մետաղը տակաւին կը պահէ ջերմութեան, քաղցրութեան եւ շարժումի երանգները եւ որոնց ազդեցութեան տակ չիյնալ, չարբենալ անկարելի է: Անդադրում ծափերը, օվասիոնները ապացոյց էին այս բանին: Ան կը մնայ դեռ հայ անմրցելի երգիչը:

Տիկ. Զուլալեան տուաւ քանի մը հայ երգեր: Անիկա ձայնի փոթորկայոյզ ովկիանոս մը ունի իր մէջ: Կնոջ մը համար արուեստի այսքան հզօր ազդակ, իսկապէս որ ափչեցուցիչ է: Այս տեսակէտէն կարելի է կոչել անիկա Շահ-Մուրատեանի counter-part-ը:

Պ. Niccoli միջակ ջութակահար մըն էր: Ոչինչ կար արտակարգ իր լարերուն, զգացումներուն մէջ:

Կարծեմ առիթ է ըսելու, որ Շահ-Մուրատեան ճիշդ ժամանակին կը վերերեւի ամերիկահայութեան մէջ, մոլորուած ճաշակները գեղարուեստօրէն սանձահարելու համար եւ որոնց գեղեցիկ ծնունդ տուողը առաջին անգամ ինք եղաւ:

Այժմ, *Արշին մալ ալան* եւ անոր նման թեթեւ, *Քամըն* խաղերն են, որ ժողովուրդի զգացումներուն հետ կը սիրաբանեն: Շահ-Մուրատեան, Սիւնի եւ Մեհրապեան, կարող են եւ պէտք է ժողովուրդը արուեստի երանաւէտ զինովութեան կանչեն: Դժբախտաբար, մեզմէ շատեր գեղարուեստական ստեղծագործութիւնը եւ անոր ֆակտօրները սխալ հասկցած են: Անճոռնի խնդուքները չեն, որ անհատը կը մղեն կենսունակութեան, այլ` անկեղծ զգացումի այն մաքուր երակը, որ բնականօրէն կը սկզբնաւորուի հոգիէն եւ կը վազէ դէպի տարածականութիւն, շարժականութիւն...:

***Հայրենիք***, 15 ***Մարտ*** 1924, 25-***րդ տարի***, ***Թիւ*** 3610, ***էջ*** 2

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ՅԱՐՈՒԹԻՒՆ ՄԵՀՐԱՊԵԱՆ

Կիրակի, մարտ 9-ին Ֆրէնքլին Եունիըն Հօլին մէջ տեղի ունեցաւ պ. Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը, մասնակցութեամբ երգչուհի Ռոզ Զուլալեանի, ջութակահար Ալեքսանդր Նիկօլիի, որոնց կը նուագակցէր դաշնակով տիկ. Mimmi Stratton: Յայտագիրը կազմուած էր հայ եւ եւրոպական երաժիշտներու գործերէն:

Պ. Ա. Շահ-Մուրատեանը միակ հայ երգիչն է, որ ելնելով մայր երկրի հարազատ ծոցէն` ստանալով հայկական կրթութիւն, ապրած ըլլալով հայ ժողովրդական երգի ոգին, կրցած է հարազատօրէն եւ լաւագոյն կերպով արտայայտել հայ երգը: Այդ տեսակէտից, պ. Շահ-Մուրատեանը որպէս երգիչ, մեծ ծառայութիւն է մատուցած հայ երաժշտութեան, տարածելով ամենուրեք հայ երգը, մանաւանդ

ամերիկահայ գաղութում, ուր, եթէ չեմ սխալւում, հայ երգի առաջին կարապետն է եղած։ Այդ տեսակէտից պ. Շահ-Մուրատեանը միանգամայն արժանի է հայ ժողովրդի առանձին գնահատման։

Պ. Շահ-Մուրատեանը երգեց հետեւեալ հայ երաժիշտների գործերը. – Ռ. Մելիքեանի *Վարդ*, *Աշնան երգը*, *Վայրի ծաղիկ* եւ *Ուռենի* զուգերգը, Ա. Սպենդիարեանի *Այ վարդը* եւ Ա. Պօյաճեանի *Գնաց աշուն* զուգերգը տիկ. Ռոզ Զուլալեանի հետ։

[Լրագիրի օրինակը պատռած ըլլալուն զանց կ'առնեմ երեք պարբերութիւն, Հ.Ա.]

Առաջին անգամ առիթ ունեցայ լսելու տիկ. Ռոզ Զուլալեանը։ Տիկնոջ ձայնը ուժեղ եւ հազուագիւտ միջին (մեցօ) սոփրանօ է, լեցուն եւ գեղեցիկ հնչականութեամբ. վերի եւ վարի սահմաններուն ձայնի ծաւալը բաւականին մեծ է իր ռեժիստրներուն մէջ. մանաւանդ շատ գեղեցիկ են միջին հնչիւնները։ Տիկինը ունի նաեւ լաւ գլխի ձայներ (մեցօ վոչէ)։ Տիկ. Զուլալեան, եթէ ամբողջովին եւ լրջութեամբ նուիրուի երաժշտութեան, անպայման հայ լաւագոյն երգչուհիներից մէկը պիտի լինի, մանաւանդ որ, լաւ մեցօ սոփրանօներ շատ հազուագիւտ են։ Տիկ. Զուլալեանը երգեց, Սիւնիի *Սարերի հովին* եւ *Ով դուք սարեր*, Գալֆայեանի *Մայր Արաքսի*ն եւ հայ ժողովրդական երգերէն *Երեւան բաղ եմ արել*։

Եւրոպական կտորներէն՝ տիկ. Զուլալեան երգեց Saint-Saëns-ի Aria – *Սամսոն Դալիլա* օփէրայէն։

Հայերէն երգերի մէջ տիկ. Զուլալեանը իր ձայնի համար անյաջող ընտրութիւն էր արել, բացի *Մայր Արաքսի*էն։ Սակայն, *Սամսոն Դալիլա*յի մէջ, յարգելի երգչուհին կրցաւ ի յայտ բերել իր ձայնի բոլոր գեղեցկութիւնները եւ երգելու կարողութիւնը։

Կը մաղթենք տիկ. Զուլալեանին, որ լրջութեամբ հետեւի երաժշտութեան եւ իր ձայնի մարզման։ Երգելու արուեստին մէջ, ինքը կարող է անպայման մեծ ապագայ ունենալ։

Ջութակահար Նիկօլին՝ բարեխղճօրէն նուագեց յայտագրի մէջ եղած իր բաժինը։

Նոյնանման երգահանդէսները եւ նուագահանդէսները, անկասկած ունին իրենց բարոյական խոշոր նշանակութիւնը, մեր ժողովրդի բարոյական դաստիարակութեան եւ յառաջդիմութեան համար, մանաւանդ հայրենիքից կտրուած ամերիկահայ գաղութներու մէջ։ Այդ տեսակէտից նման երեւոյթները միանգամայն քաջալերելի եւ խրախուսելի են։

***Հայրենիք***, 16 ***Մարտ*** 1924, 25-***րդ տարի***, ***Թիւ*** 3611, ***էջ*** 3

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Պոսթոն, Ֆրէնքլին Հօլի մէջ, Մարտ 9-ին, յայտնի երգիչ Ա. Շահ-Մուրատեան

տուաւ յաջող եւ տպաւորիչ երգահանդէս մը՝ մասնակցութեամբ երգչուհի Ռոզ Զուլալեանի եւ ջութակահար Ալէքսանդր Նիկօլիի։ Շահ-Մուրատեան երգեց Ռ. Մելիքեանի *Վարդը*, *Աշնան երգը*, *Վայրի ծաղիկը* եւ *Ուռենի* զուգերգը, Ա. Սպէնդիարեանի *Այ վարդը* եւ Ա. Պօյաճեանի *Գնաց աշուն* զուգերգը։ Զուգերգին կը մասնակցէր Տիկին Զուլալեան։ Եւրոպական կտորներէն երգեց Պէնպըրկի *Շան հինտու*ն ու Պիզէի *Լէ Փէշէօռ տը փըրլը*։

Տիկին Զուլալեան երգեց Սիւնիի *Սարերի հովի*նն ու *Ո՞վ դուք սարերը*, ու Գալֆայեանի *Մայր Արաքսի*ն։ Անիկա երգեց նաեւ *Երեւան պաղ եմ արել* ժողովըրդական յայտնի երգը։

Դաշնակի վրայ երգիչներուն կ'ընկերակցէր Միմի Սթրէթըն։

***Հայաստանի կոչնակ***, 29 ***Մարտ*** 1924, ***ԻԴ. տարի***, ***Թիւ*** 13, ***էջ*** 404

**ԿԻՐԱԿԻ, 23 ՄԱՐՏ 1924, ՌԻՍՏՐ**

Ռւստրի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- «***Ա. Շահ-Մուրատեանի նուագահանդէսներ***», ***Հայրենիք***, 20 ***Փետրուար*** 1924, 25-***րդ տարի***, ***Թիւ*** 3590, ***էջ*** 2։

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 24 ՄԱՐՏ 1924, ՖՐԷԶՆՕ**

Կը ժամանէ Ֆրէզնօ։

- «***Պ. Ա. Շահ-Մուրատեան Ֆրէզնոյի մէջ***», ***Ասպարէզ***, 27 ***Մարտ*** 1924, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 1065, ***էջ*** 4։

## Պ. Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՖՐԷԶՆՈՅԻ ՄԷՋ

Անցեալ Երկուշաբթի երեկոյ քաղաքս ժամանեց տաղանդաւոր երգիչ Պ. Շահ-Մուրատեան։

Ապրիլ 13-ի Կիրակի օրը, կէսօրէ վերջ ժամը 2-ին, Հուայթ թատրոնի մէջ, ան պիտի տայ իր երգահանդէսը, ուր հայազգի ծանօթ երգիչը պիտի երեւի բոլորովին նոր երգերով։

***Ասպարէզ***, 27 ***Մարտ*** 1924, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 1065, ***էջ*** 4

**ԿԻՐԱԿԻ, 13 ԱՊՐԻԼ 1924, ՖՐԷԶՆՕ**

Ֆրէզնոյի White Theater-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Գրիգոր Սիւնի, Անուշաւան Տէր-Ղեւոնդեան եւ Փրոֆֆ-Գալֆայեան, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Վայրի ծաղիկ* եւ *Տույ-տույ*, մեներգ՝ Շ-Մ.

*Երեւան բաղ եմ արել* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Francesco Paolo Tosti եւ Nikolai Rimsky-Korsakov, մեներգ՝ Շ-Մ.

Ջութակ՝ օր. Արաքսի Մարգարեան

Դաշնակ՝ օր. Պէաթրիս Տարագ

- «*Պ. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Ասպարէզ*, 20 *Մարտ* 1924, *ԺԶ. տարի*, *Թիւ* 1062, *էջ* 2։

- *Ասպարէզ*, 25 *Մարտ* 1924, *ԺԶ. տարի*, *Թիւ* 1064, *էջ* 3։

- «*Պ. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Ասպարէզ*, 12 *Ապրիլ* 1924, *ԺԶ. տարի*, *Թիւ* 1072, *էջ* 3։

- «*Պ. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Ասպարէզ*, 15 *Ապրիլ* 1924, *ԺԶ. տարի*, *Թիւ* 1073, *էջ* 4։

- «*Հայ գաղթականութիւնը*», *Հայաստանի կոչնակ*, 3 *Մայիս* 1924, *ԻԴ. տարի*, *Թիւ* 18, *էջ* 565։

## Պ. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Երկու օր առաջ, Ապրիլ 13-ին, Հուայթ թատրոնի մէջ տեղի ունեցաւ ծանօթ երգիչ Պ. Շահ-Մուրատեանի երգահանդէսը, որ եղաւ կատարեալ յաջողութիւն մը։ Հսկայ տարբերութիւն կար անցեալ եւ այս տարուայ իր երգահանդէսներուն միջեւ։ Յայտագրի գրեթէ բոլոր երգերը, հայկական եւ ամերիկեան, որոնք մեծ մասամբ մինչեւ այժմ չէին երգուած իր կողմէ, Շահ-Մուրատեան երգեց այնպիսի շունչով ու գեղեցկութեամբ, որ բոլոր ունկնդիրները ապրեցան հոգեկան ճշմարիտ յափշտակութեան եւ վերացումի վայրկեաններ։

Այս անգամ Կոմիտաս վարդապետի երգերէն չտուաւ մեզ Շահ-Մուրատեան, բայց իր յայտագիրը հարուստ էր Գր. Սիւնիի, Տէր Ղեւոնդեանի, Փրոֆֆ-Գալֆաեանի ու մանաւանդ Ռ. Մելիքեանի երգերով։ *Երեւան պաղ եմ արել* հայրենի յուզիչ երգով սկսաւ ան իր քոնսերը, ու վերջացուց զայն *Հայաստան*ով, որուն վարպետ ու հոյակապ երգիչն է մեր մէջ պ. Շահ-Մուրատեան։

Շահ-Մուրատ յաջողութեամբ երգեց նաեւ մէկ քանի գեղեցիկ կտորներ օտար հեղինակներէ, բայց մշեցի երգիչի ամէնէն հարազատ կալուածը հայկական երգերն են, զոր երգելու ժամանակ կ'ապրի ան լիովին եւ մեզ ալ կը յուզէ։

Ան երգեց Թօսթիէն, Քօրսաքօֆէն, մենք զինք ծափեցինք, բայց ո՛րքան յուզուեցանք երբ երգեց իր *Հայաստան*ը, կամ Ռոմանոս Մելիքեանի *Վայրի ծաղիկ*ը, մանաւանդ *Տույ-տույ*ը, որոնք դեռ կը հնչեն մեր ականջներուն։

Յաջողութիւն կը մաղթենք արուեստագէտ Շահ-Մուրատեանի։ Ափսո՜ս սակայն որ ակնկալուած չափով հասարակութիւն չկար այս անգամ։ Շատ շատեր, որոնք բացակայեցան, իրապէս բան մը կորսնցուցին այս անգամ։
*Ասպարէզ*, 15 *Ապրիլ* 1924, ***ԺԶ. տարի***, *Թիւ* 1073, *էջ* 4

## ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Ֆրէզնոյի Հուայթ թատրոնին մէջ Ապրիլ 13-ին տեղի ունեցաւ Պրն. Ս. Շահ-Մուրատեանի երգահանդէսը՝ որուն իրենց մասնակցութիւնը բերին ջութակահար Օր. Արաքսի Մարգարեան եւ դաշնակահար Օր. Պէաթրիս Տարագ։ Պրն. Շահ-Մուրատեան երգեց եւրոպական եւ հայկական կտորներ, որոնց ամենուն մէջ ալ ի յայտ բերաւ իր տաղանդը։ Նուագահանդէսին ներկայ էին նաեւ օտարականներ՝ որոնք մեծապէս գնահատեցին հայ երգչին արուեստը։
***Հայաստանի կոչնակ***, 3 ***Մայիս*** 1924, ***ԻԴ. տարի***, *Թիւ* 18, *էջ* 565

### ՀԻՆԳՇԱԲԹԻ, 1 ՄԱՅԻՍ 1924, ԼՈՍ ԱՆՃԵԼՈՍ

Լոս Անճելոսի Symphony Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- *Ասպարէզ*, 24 *Ապրիլ* 1924, ***ԺԶ. տարի***, *Թիւ* 1076-77, *էջ* 2։
- ***Գասպար Խաչատրեան***, «***Պ. Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը Լօս Անճըլէսում***», *Ասպարէզ*, 8 ***Մայիս*** 1924, ***ԺԶ. տարի***, *Թիւ* 1083, *էջ* 4։

## Պ. Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ ԼՕՍ ԱՆՃԸԼԷՍՈՒՄ

ԳԱՍՊԱՐ ԽԱՉԱՏՐԵԱՆ

Մայիս 1-ին, Հինգշաբթի օրը, Սիմֆօնի Հօլի երաժշտասրահում տեղի ունեցաւ Փարիզի Մեծ Օպերայի տաղանդաւոր տրամատիկ տենօր երգչի Պ. Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը։ Տարօնցի քաղցրանուշ երգիչը հրապարակ եկաւ այս անգամ հայ ժողովրդական երգերի նոր ծրագրով, երգերի, որոնք մինչ օրս չէին երգուել տեղս Ա. Շահ-Մուրատեանի կողմից եւ ի՜նչ խօսք, որ երգահանդէսը պատճառեց հոգեկան գերազանց բաւականութիւն եւ գեղարուեստական մեծ հաճոյք։

Ասում են որ *երգը հայրենիք չունի*, սակայն կարծես թէ մենք մի փոքր շեղում ենք կատարում այս ընդհանուր գծից շնորհիւ մեր հոգեկան ուրոյն

կառուցուածքի ու խառնուածքի, ապրումների ու ըմբռնումների, անյազօրէն բոլոր երգերի միջից որոնում ենք այն երգը, որը ծնունդ է առել ու երգուել հայ գեղջուկի ու գեջկուհու շրթունքներից իր իսկ հարազատ բնավայրում՝ լալիս թէ խնդալիս, աշխատելիս թէ հանգստանալիս, արտը գնալիս թէ տուն դառնալիս։ Ֆաուստն ու Կարմէնը, Տոսկան ու Տրավիատան մեր հոգուց, մեր սրտից չեն խօսում, մեզ չեն հասկանում եւ կամ լաւագոյն դէպքում մեզ շատ քիչ բան են ասում ու թերեւս այդ է գլխաւոր պատճառներից մէկը, որ բոլոր երգերից որոնում ու գերագնահատում ենք հայ գեղջուկի ու գեղջկուհու մրմունջը, որը միաժամանակ մերն է, մեր հոգու ու սրտի հիւսուածքն է, արտայայտութիւնն է։ Ո՞վ կարող է մեղադրել մեզ այս բանում, երբ սա բնական է, ինքնաբուղխ է եւ ինքնածին։ Երգահանդէսի ընթացքում քաղցրանուշ երգիչը դիւթել եւ հմայել էր բոլորիս իր գեղեցիկ ժողովրդական երգերով։ Պ. Ա. Շահ-Մուրատեանը աւելի քան քառորդ դար հայ եւ օտար բեմերից երգում է մայրենի հոգեշունչ երգը եւ ծանօթացնում հարազատ բնավայրին օտարացածների եւ օտարներին հայ երգի գեղեցկութիւնն ու քաղցրութիւնը։ Չնայած համեմատաբար այդ երկար ժամանակամիջոցին, այսօր էլ պ. Ա. Շահ-Մուրատեանի ձայնը հնչում է բարձր ու զիլ, յստակ ու վճիտ եւ նորա ձայնի ելեւէջների ու թրթռումների մէջ կայ հմայիչ քաղցրութիւն, դիւթիչ գեղեցկութիւն, որը ունկնդիրներին վերացնում, տանում է մի երազական աշխարհ, ուր ամենայն ինչ սէր է, ուր ամենայն ինչ գեղեցկութիւն է։ Համարձակօրէն կարող եմ ասել, որ բոլոր նրանք ովքեր չեն լսել պ. Շահ-Մուրատեանի *Հայաստան երկիր դրախտավայրը*, իրենց զրկել են մի խոշոր գեղարուեստական հաճոյքից ու վայելքից։ Բոլոր երգերը վարձատրուեցին բուռն ծափահարութեամբ, իսկ մասնաւորապէս ժողովրդական երգերը՝ կրկնակի ու եռակի ծափահարութեամբ։ Այս բոլորից յետոյ մնում է մեզ ցանկալ հայ երգիչին – ձայնդ անսպառ։

***Ասպարէզ***, 8 ***Մայիս*** 1924, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 1083, ***էջ*** 4

## ԿԻՐԱԿԻ, 11 ՄԱՅԻՍ 1924, ՓՐՈՎԻՏԵՆՍ

Փրովիտենսի Elk's Auditorium-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- «***Երգահանդէս***», ***Հայրենիք***, 18 ***Մարտ*** 1924, 25-***րդ տարի***, ***Թիւ*** 3612, ***էջ*** 2։
- ***Հայրենիք***, 8 ***Մայիս*** 1924, 25-***րդ տարի***, ***Թիւ*** 3654, ***էջ*** 3։

## ԿԻՐԱԿԻ, 18 ՄԱՅԻՍ 1924, ՌԻՍՏՐ

Ուստրի Horticultural Hall-ին՝ մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- ***Հայրենիք***, 27 ***Ապրիլ*** 1924, 26-***րդ տարի***, ***Թիւ*** 3646, ***էջ*** 4։
- ***Հայրենիք***, 16 ***Մայիս*** 1924, 26-***րդ տարի***, ***Թիւ*** 3661, ***էջ*** 4։

**ԿԻՐԱԿԻ, 1 ՅՈՒՆԻՍ 1924, ՏԻԹՐՈՅԹ**

Տիթրոյթի Glendale High School-ի սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր՝ Գրիգոր Սիւնի, Ռոմանոս Մելիքեան, *Հայաստան* եւ եւրոպական երգեր:

- ***Խ. Մ.***, «***Ամերիկահայ կեանք***», ***Հայրենիք***, 13 ***Յունիս*** 1924, 26-***րդ տարի***, ***Թիւ*** 3684, ***էջ*** 2:

## ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ԿԵԱՆՔ

Խ. Մ.

ՏԻԹՐՈՅԹ, Միչ. – Պրն. Շահ-Մուրատեանի երգահանդէսը տեղի ունեցաւ Կլէնտէլ Հայ Սքուլի սրահին մէջ, յունիս մէկի կիրակին: Պրն. Շահ-Մուրատեան երգեց Սիւնիի եւ Ռ. Մելիքեանի կտորներէն գլխաւորապէս եւ մէկ քանի եւրոպական երգեր, եւ վերջը *Հայաստան*ը:

***Հայրենիք***, 13 ***Յունիս*** 1924, 26-***րդ տարի***, ***Թիւ*** 3684, ***էջ*** 2

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 18 ՅՈՒՆԻՍ 1924, ԱՄՆ**

ԱՄՆ-էն (քաղաքը յայտնի չէ) Շ-Մ. նամակ կը գրէ ԱՄՆ գտնուող Արշակ Չօպանեանին, ուր կը տեղեկացնէ թէ իր վերջին երգահանդէսը տեղի պիտի ունենայ Յուլիս 3-ին (քաղաքը յայտնի չէ), որմէ ետք պիտի վերադառնայ Փարիզ:

- ***Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն***, 1998, ***էջ*** 57:

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ

18. 06. 1924

Սիրելի Չօպանեան

*Պայքար*էն իմացայ, որ ամսոյս վերջերը պիտի մեկնիս Փարիզ: Անկարելիութեան պատճառով պիտի զրկուիմ մէկտեղ ճամբորդելու գերագոյն հաճոյքն ունենալու:

Վերջին երգահանդէսս տեղի պիտի ունենայ յուլիս 3-ին:

Կը մաղթեմ քեզ հոգովս բարի ու զուարճալի ճամբորդութիւն մը:

Համբոյրներով՝ միշտ քոյդ

Շահ-Մուրատեան

*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 57

**ՇԱԲԱԹ, 28 ՅՈՒՆԻՍ 1924, ՏԻԹՐՈՅԹ**

Տիթրոյթի (Highland Park) High School-ի սրահին մէջ՝ ժողովրդական մեծ երգահանդէս, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Ազատամարտ ակումբին։ Կը մեներգէ՝ Շ-Մ.։

- «*Ժողովրդական մեծ երգահանդէս*», *Հայրենիք*, 18 *Յունիս* 1924, 26-*րդ տարի*, *թիւ* 3688, *էջ* 3։

- «*Երգահանդէս*», *Հայրենիք*, 21 *Յունիս* 1924, 26-*րդ տարի*, *թիւ* 3691, *էջ* 3։

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 3 ՅՈՒԼԻՍ 1924, ԱՄՆ**

ԱՄՆ-ի (քաղաքը յայտնի չէ) մէջ՝ Շ-Մ.ի վերջին երգահանդէսը։

- [*Նամակ Արշակ Զօպանեանին*], *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 57։

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 6 ՆՈՅԵՄԲԵՐ 1924, ԼՈՆՏՈՆ (՞)**

Շ-Մ. Լոնտոնէն (՞) նամակ կը գրէ Լոնտոն՝ տոքթ. Տէնձեանին։ Կը տեղեկացնէ՝ որ կը փափաքի Լոնտոնի մէջ երկու երգահանդէս տալ, բայց անգլիական հիւպատոսը կ՚առարկէ՝ որ երգելու նպատակով Լոնտոն երթալու համար անհրաժեշտ է ունենալ ընկերութեան մը կամ տեսուչի մը (manager) մը հրաւիրագիրը։ Տէնձեանէն կը խնդրէ որ այս առումով կարգադրութիւն մը տեսնէ։

- *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 57-58։

## ՆԱՄԱԿ ՏԷՆՃԵԱՆԻՆ

Լոնդոն [՞], 6. 11. 1924

Սիրելի տոքթ. Տէնճեան

Սիրելի բարեկամս, Անգլիա գալու երկու երգահանդէսներ տալու նպատակով երէկ անգլիական հիւպատոսը առարկութիւն ըրաւ փասփորթս visa ընելու,

առարկելով, թէ քանի որ երգելու համար պիտի երթանք Լոնդոն, պէտք է որ հրաւիրագիր մը ներկայացնենք ընկերութեան մը եւ կամ manager-ի մը կողմանէ, այլապէս այս տեղէն դիմեցէք minister-ի labor-ին Լոնդոն առանձին արտօնութիւն խնդրելու... Ալ արդէն եղածն եղած է, եւ պիտի խնդրէի Ձեր բարեկամութեան, որ բարեհաճէիք հաստատութեան մը անունով եւ կամ որեւէ կերպով արտօնութիւն ձեռք բերել ու ինձ ղրկել փոստով, որ կարողանայի ճամբայ ելնել, որուն համար պատրաստուած եմ արդէն: Այդ առթիւ գրեցի նաեւ դպրոցական ընկերոջս՝ Ա. Րաֆֆիին, այս թղթագրով՝ յուսալով միասին կամ առանձնապէս պիտի ընէք կարելին:

Այդպիսի խնդիրներու մասին պ. Սմբատ Քէսէճեան փորձառութիւն ունի. ինքը բերել տուած է հող անցեալ տարի պ. Աբէլեանը (դերասան), դժբախտաբար իր հասցէն չունի, որ Ձեզ ղրկեմ: Ձեզի կարող է օգնել, եթէ ժամանակ չունէք, պ. Ա. Սաֆրաստեան բարեկամս:

Կը խնդրեմ սիրելութենէդ, որ ներողամիտ լինէք Ձեր բարեկամութիւնը չարաչար, թերեւս գործածած լինելուս համար՝ խնդրելով Ձեր ներողամտութիւնն, բարեկամական անկեղծ զգացումներով Ձեզ եւ Ձեր պատուական տիկին (...) եւ օրիորդներուն:

Ձերդ Ա. Շահ-Մուրատեան

Յ.Գ. Եթէ կարողանամ հոդ վստահելի եւ ծանօթ manager-ի մը հետ համաձայնութեան մը գալ ու երգահանդէս տալ, շատ ուրախ պիտի լինէի:

*Արմենակ Շահմուրատեան*, կազմող՝ *Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 57-58

## ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 17 ՆՈՅԵՄԲԵՐ 1924, ՓԱՐԻԶ

Փարիզէն նամակ կը գրէ Լոնտոն՝ Արշակ Սաֆրաստեանին: Կը յիշեցնէ՝ որ Տէնճեան զբաղուած ըլլալուն պատճառով նամակը յանձնած է Սաֆրաստեանին: Լոնտոնի մէջ նուագահանդէս տալու համար կը խնդրէ Սաֆրաստեանէն հետամուտ ըլլալ թոյլտուութիւն ձեռք բերել: Կը տեղեկացնէ՝ որ Ամերիկայի մէջ ստացած քաղաքացիութիւնը կրնայ դիւրացնել թոյլտուութեան հարցը:

- *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 58-59:

# ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՍԱՖՐԱՍՏԵԱՆԻՆ

Փարիզ, 17. 11. 1924

Սիրելի Սաֆրաստեան,

Տոքթ. Տէնճեանին գրած նամակս, հողտեղ գալու առթիւ, ըստ իրեն՝ քեզի յանձնած ըլլալու է. ցարդ անոր մասին քենէ լուր մը չառնելու համար թոյլ կուտամ ինձի գրելու քեզ այս նամակը ու հարցնել սիրելութենէդ, թէ արդեօք հետամո՞ւտ ես պէտք եղած թոյլտուութիւնը ձեռք բերել, չեմ կարծեր դժուարութեան բախինք, մանաւանդ որ ամերիկեան քաղաքացի եմ:

Վստահ եմ, թէ սիրելութիւնդ հարկ եղածը պիտի ընէ ու արդիւնքի մասին ամենաուշը այս շաբթուս ինձ յայտնէ, որպէսզի գիտնամ այս սկսող saison-ի ինչ ընելիքիս մասին որոշ քայլեր առնուլ:

Սիրելի Արշակ, վստահ եմ, թէ ձեռքէդ եկածը չպիտի խնայես բարեկամիդ ու հայրենակցիդ համար:

Տոքթ. Տէնճեան, բարեկամս, իր ինձ գրած նամակում կ'ըսէր, թէ ինքը շատ զբաղուած լինելուն նամակս, ինչպէս ըսի վերեւում, քեզի յանձնած է ու վստահութիւն կը յայտնէ, թէ դուն ամէն ինչ կը կարգադրես շուտով: Քեզի տեսնեմ, սիրելիս, օ՜ն յառաջ... հապօն յառա՜ջ, յառա՜ջ...

Այստեղի գաղութը մեռած գբաղութ մ'է, ինչպէս միշտ՝ թուով շատ, որակով՝ քիչ ու իրարմէ բաժան, հայը ե՞րբ հաւաքական իտէալ կեանք մը ներկայացուցած է, մանաւանդ գաղութներու մէջ:

«Էմ լէ զէն Կիկոն, էմ լէ զէն Կիկոն», - ինչպէս պիտի ըսէր մշեցին...

Կը յուսամ, թէ աղէկ ես, ի մօտս քեզ տեսնելու հաճոյքով, քեզ միշտ անձնուէր բարեկամ-հայրենակից՝

Ա. Շահ-Մուրատեան

Յ.Գ. Սիրալիր բարեւներս Տէր եւ Տիկին Տէնճեանին եւ համբոյրներ քեզի:

Նոյն

*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, էջ 58-59

## ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 3 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1924, ՓԱՐԻԶ

Փարիզէն նամակ կը գրէ Լոնտոն՝ Արշակ Սաֆրաստեանին: Կը հարցնէ՝ արդեօք ստացա՞ծ է տասը օր առաջ գրած նամակը, եւ արդեօք արտօնութիւն բերելու համար անհրաժեշտ դիմումը ներկայացուցա՞ծ է: Հակառակ պարագային, մտադրութիւն ունի անմիջապէս մեկնիլ Մարսիլիա ու անկէ Եգիպտոս՝ երգահանդէսներու համար:

- *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչին-եան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 59։

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՍԱՖՐԱՍՏԵԱՆԻՆ

Փարիզ, 3. 12. 1924

Սիրելի Սաֆրաստեան,

Կը հաճի՞ս ինձ երկտողով մը ըսել՝ տաս օր առաջ քեզ գրած նամակս ստացա՞ծ ես։ Դիմում ըրա՞ծ էք հարկ եղած տեղը՝ արտօնութիւն ձեռք բերելու համար։ Եթէ կարելիութիւն կայ կամ չկայ, կը հաճէի՞ք քարթով մը ինձ գրել, որպէսզի հակառակ պարագային՝ եթէ անկարելի է հոդ գալ, ժամանակ չկորցրած, Մարսիլիա ու անկից ալ Եգիպտոս մեկնիմ։

Պարապութիւնը թէ՛ նիւթապէս եւ թէ՛ բարոյապէս շատ կը նեղէ զիս։ Համբոյրներով քոյդ՝

Շահ-Մուրատեան

Յ.Գ. Յարգանքներս տորքթ. Տէնճեանին եւ իր պատուական ընտանիքին։
*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 59

### ԿԻՐԱԿԻ, 11 ՅՈՒՆՈՒԱՐ 1925, ՓԱՐԻԶ

Փարիզի հայկական եկեղեցիին մէջ՝ հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն տիկ. Մելանի Խորասանճեանի մահուան քառասունքին առիթով։ Շ-Մ. կը մասնակցի երգեցողութեան։

- «*Բարիզահայ կեանք*», *Ապագայ*, 10 *Յունուար* 1925, *Ե. տարի*, *Թիւ* 9, *էջ* 3։

## ԲԱՐԻԶԱՀԱՅ ԿԵԱՆՔ

Բարեյիշատակ տկն. Մելանի Խորասանճեանի (ծնեալ Ժանիէթովիչ) մահուան քառասունքին առիթով, Գեր. Վռամշապուհ Ծ. Վրդպ. հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի մատուցանէ կիրակի 11 յունվար, ժամը ճիշտ 10-ին։ Կոմիտաս վրդ.ի բազմաձայն պատարագը պիտի երգուի պրն. Ն. Սարգսեանի ղեկավարութեամբ, Պ. Շահմուրատեան պիտի մասնակցի երգեցողութեանց, ի յարգանս յիշատակին հանգուցեալ տիկնոջ, որ հայ երաժշտութեան պաշտպան մը հանդիսացած է իր կենդանութեան։
*Ապագայ*, 10 *Յունուար* 1925, *Ե. տարի*, *Թիւ* 9, *էջ* 3

**ԿԻՐԱԿԻ, 25 ՅՈՒՆՈՒԱՐ 1925, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

Կը հասնի Աղեքսանդրիա:

- «*Հայկական կեանք*», *Արեւ*, 26 *Յունուար* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1800, *էջ* 2:

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 4 ՓԵՏՐՈՒԱՐ 1925, ԳԱՀԻՐԷ**

Աղեքսանդրիայէն կը ժամանէ Գահիրէ:

- «*Շահմուրատեան մեր մէջ*», *Արեւ*, 6 *Փետրուար* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1810, *էջ* 2:

**ԿԻՐԱԿԻ, 15 ՄԱՐՏ 1925, ԳԱՀԻՐԷ**

Գահիրէի Էզպէքիէյի Պարտէզի թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

Մակար Եկմալեան, *Քրիստոս պատարագեալ*, մեներգ՝ Շ-Մ.

Ալեքսանդր Սպենդիարեան, *Այ վարդ*, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը*, մեներգ՝ Շ-Մ.

*Ծաղկոց մտայ* եւ *Երեւան բաղ եմ արել*, մեներգ՝ Շ-Մ.

Արա Պօյաճեան, *Գնաց աշուն*, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Պինկէօլ* եւ *Վայրի ծաղիկ*, մեներգ՝ Շ-Մ.

*Հարսանեկան երգեր*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Jules Massenet: *Élégie* (‘Ô, doux printemps d’autre fois’), մեներգ՝ Շ-Մ.

*La villanelle*; *Chanson grecque*; *Romance*, թաւջութակ՝ պր. Պրինէտտի

Giovanni Pergolesi: *Se tu m’ami*, թաւջութակ՝ պր. Պրինէտտի

Դաշնակ՝ պր. Մարիօ Անթոլինի

- *Արեւ*, 7 *Մարտ* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1835, *էջ* 3:
- «*Շահ-Մուրատեան երգահանդէս*», *Արեւ*, 11 *Մարտ* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1838, *էջ* 2:
- *Օ. Մ.*, «*Շահմուրատեանի երգահանդէսը*», *Արեւ*, 17 *Մարտ* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1843, *էջ* 2:

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Օ. Մ.

Գեղարուեստական գողտրիկ վայելք մը եղաւ, ինչպէս կ’սպասէինք արդէն, տաղանդաւոր երգիչ Պ. Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը, որ տեղի ունեցաւ կիրակի գիշեր, Էզպէքիէյի պարտէզի թատրոնին մէջ, եւ որուն ներկայ գտնուե-

ցաւ ընտրեալ բազմութիւն մը։

Երգահանդէսին յայտագիրը կը բաղկանար ամբողջութեամբ նոր երգերէ, բացի Մ. Եկմալեանի *Քրիստոս պատարագեալ ի միջի մերում* եկեղեցական կտորէն, որ թէեւ իբր նիւթ հնութիւն մըն էր, իբրեւ երգեցողութիւն, սակայն, այնքան յաջող նորութիւն էր որ պիտի բաղձայինք յաճախ լսել զայն։

Պ. Շահ-Մուրատեան բացի այդ կտորէն յաջորդաբար երգեց *Այ վարդ*, *Վարդը*, *Ծաղկոց մտայ* եւ *Երեւան բաղ եմ արել* երգերը, որոնցմէ վերջին երկուքը անցան շատ յաջող, մասնաւորաբար վերջընթերը։

Յաջող էին իր ֆրանսերէն երգերը, որոնք առոգանութեան օտարոտի շեշտը սակայն ինքզինքը զգալի կ՚ընէր յայտնապէս, բայց հակառակ ատոր՝ իր երգեցողութեան հմայքը այնքան կենդանի էր ու տպաւորիչ, որ իր ‘O! Printemps d’autrefois’ն ուժգնօրէն կ՚արձագանգէր սրտէ սիրտ ու որոտընդոստ ծափերու մէջ կրկնել կու տար։

Պ. Շահ-Մուրատեան իր գեղեցկագոյն կտորները թողած էր վերջին մասին, *Գնաց աշուն*, *Պինկօլ*, *Հարսանեկան երգեր* եւ *Վայրի ծաղիկ*, բոլորն ալ մէկը միւսէն աւելի գեղեցիկ ու գողտրիկ. մէկը թախծոտ շեշտ մը ունէր իր նազելաշուք սիրուհւոյ հեւքէն ու յուշքէն, ուրիշ մը ջերմիկ արտօսր մը բիւրեղացած էր իր մարմարեայ ամբծութեան վրայ, մէկին մէջ զուարթ ու կայտառուն նօթ մը կը թրթռար երջանիկ սրտէ մը փրթած, մինչ միւսին մէջ ծարաւահիւծ երգ մը կը մարէր վիրաւոր ու լացող սրտի մը պէս։

Ու բոլորն ալ անխտիր յուզեցին ու խանդավառեցին եւ ծափահարուեցան երկարօրէն։

Ունկնդիրներու բուռն պահանջկոտութեան գոհացում տալու համար, յայտագրէն դուրս ըլլալով Պ. Շահ-Մուրատեան երգեց նաեւ իր այնքան սիրուած *Հայաստան*ը որ որոտագին անվերջ ծափահարութիւններով ընդունուեցաւ։

Երգահանդէսին իրենց թանկագին մասնակցութիւնը կը բերէին տաղանդաւոր թաւ-ջութակահար Մ. Պոլինէտտի եւ դաշնակահար Մ. Անտօլինի, երկուքն ալ այլեւս միջազգային հռչակ վայելող դէմքեր մեր մէջ։

Պոլինէտտի իր *Լա Վիլլանէլլա*յով, *Շանսօն կոէք*ով, բայց մանաւանդ իր *Ռոմանս*ով եւ *Սի թու մ՚էմի*ով իր ճպոտին մագնիսական հզօր հմայքին տակ պահեց, աւելի ճիշդ պիտի ըլլար ըսել՝ գերեց ունկնդիր հասարակութիւնը, որ խանդավառօրէն ծափահարեց զինքը, ու կրկնել տուաւ Փէոքօլէցիի գեղեցիկ կտորը։

Պ. Շահ-Մուրատեանի եւ Պոլինէտտիի ուղղեալ խանդավառ ծափահարութիւններէն պէտք է արդար բաժին մը հանել նաեւ տաղանդաւոր դաշնակահարին, որ գիտէ այնքան մեծ հաճոյքով ու մեծ ճարտարութեամբ շունչ եւ հոգի տալ անշունչ ստեղնաշարերուն։

Ու այս գեղեցիկ երգահանդէսին առթիւ շնորհաւորելէ աւելի մեր տաղան-

դաւոր երգիչը, պէտք է շնորհակալ ըլլալ իրեն՝ իր ընծայած այս գեղարուեստական ճշմարիտ վայելքին համար, եւ մաղթել որ նմանօրինակ ազնուական ու ազնուացնող վայելքներ յաճախ փնտռէ եւ ունենայ մեր հասարակութիւնը, երբ մանաւանդ այդ գեղարուեստական վայելքները իրեն կուտան հայրենի երգին ե՛ւ ճաշակը ե՛ւ կարօտը, որ պէտք է ներշնչէն մեզ բոլորս, օտար հորիզոններու տակ մասնաւորաբար։
*Արեւ*, 17 *Մարտ* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1843, *էջ* 2

**ՇԱԲԱԹ, 4 ԱՊՐԻԼ 1925, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

Աղեքսանդրիոյ Ամերիկեան Միսիոնի սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Անուշաւան Տէր-Ղեւոնդեան, *Ծաղկոց մտայ*, մեներգ՝ Շ-Մ.

Վաղարշակ Սրուանձտեանց, *Տըլէ եաման*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Ես սարէն կուգայի*, *Լուսնակն անուշ*, *Ջինչ ու զինչ* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը*, *Պինկէօլ* եւ *Վայրի ծաղիկ*, մեներգ՝ Շ-Մ.

Արա Պօյաճեան, *Գնաց աշուն*, մեներգ՝ Շ-Մ.

*Երեւան բաղ եմ արել*, *Շողեր*, *Գեղեցիկ հոտաւէտ*, մեներգ՝ Շ-Մ.

Pyotr Tchaikovsky: *Déception*, մեներգ՝ Շ-Մ., թաւջութակ՝ մաէսթրօ Լանզոնի

Jules Massenet: *Élégie* (‘Ô, doux printemps d’autre fois’), մեներգ՝ Շ-Մ., թաւջութակ՝ մաէսթրօ Լանզոնի

Édouard Lalo: *Chant russe*, թաւջութակ՝ մաէսթրօ Լանզոնի

Johann Sebastian Bach: *Air*, թաւջութակ՝ մաէսթրօ Լանզոնի

David Popper: *Arlequin*, թաւջութակ՝ մաէսթրօ Լանզոնի

Դաշնակի նուագակցութիւն՝ մաէսթրօ Ժ. Փասքարէլլօ

- *Արեւ*, 24 *Մարտ* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1849, *էջ* 3։
- «*Երգահանդէս Ա. Շահ-Մուրատեան*», *Սֆինքս*, 30 *Մարտ* 1925, *Ա. տարի*, *Թիւ* 4, *էջ* 3։
- *Ս. Շ.*, «*Պ. Ա. Շահմուրատեանի երգահանդէսը*», *Սֆինքս*, 6 *Ապրիլ* 1925, *Ա. տարի*, *Թիւ* 5, *էջ* 2։
- *Էլան*, «*Պ. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Արեւ*, 9 *Ապրիլ* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1863, *էջ* 2։
- *Բենիամին Թաշեան*, «*Մտաւորական կեանքը եգիպտահայ գաղութին մէջ*», *Մարմարա*, 21 *Ապրիլ* 1925, *Թիւ* 151, *էջ* 2։

## Պ. Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Ս. Շ.

Խուռն բազմութիւն մը եկած էր ծափողջունելու հայ ժողովուրդի սիրուած

երգիչը, որ հայրենի կարօտովը տոգորուող գաղութներու մէջ, տարիներէ իվեր կը պտտցնէ հայ երգին հմայքն ու հրապոյրը: Իր հուժկու եւ հնչեղ ձայնովը եւ մանաւանդ զգացումով լիքը երգասացութեամբը, Տարօնի մեր տարագիր սոխակը գիտէ դիւթել ու առինքնել ունկնդիրը, պահ մը զայն փոխադրելով մեր բնաշխարհը եւ ոգեւորելով ազգային աւանդութիւններով, հարազատ բարքերով եւ անկեղծ ու ջերմ հաւատքով:

Այս տպաւորութեան տակն էր որ բաժնուեցաւ հասարակութիւնը, որ շաբաթ գիշեր, Ամերիկեան Միսիօնի սրահին մէջ եկած էր անգամ մ'ալ լսելու մեր պատուական հայրենակիցը, որ հակառակ տարիներու հոլովոյթին, տակաւին շատ բան կը պահէ իր նախկին թարմութենէն:

Երգահանդէսին ճոխ յայտագիրը երկու բաժանում ունէր. հայկական եւ եւրոպական: Հայերէն երգերը, բոլորն ալ ժողովրդական (երգ – պարերգ – հարսաներգ եւլն), ընտրուած հին հայ հեղինակներու՝ Մելիքեանի, Սբէնտէրեանի, Տէր Ղեւոնդեանի եւ մանաւանդ անմահին Կոմիտասի երկերէն: Ու Պ. Շահմուրատեան, իր քաղձրահնչեղ ձայնովն ու զգայուն արտաբերումով, բոլորն ալ երգեց բացառիկ ոգեւորութեամբ մը, որոնց մէջէն մանաւանդ *Վարդ*ը, *Ծաղկոց մը*ն, *Ես սարէն կուգայի*ն, *Երեւան բաղ եմ արել*ը եւ *Վայրի ծաղիկ*ը կրկնակիօրէն ծափահարուեցան:

Նոյնքան յաջողութեամբ երգուեցան եւրոպական երգերը՝ *La Déception*ը Զայքովսկիէն, եւ *Elégie*ն Մասսէնիէն: Պ. Շահ-Մուրատեան խորունկ հասկացողութեամբ եւ զգացումով երգեց այս երկու գլուխ-գործոցները, ամբողջ սրահին հաղորդելով այդ հանճարներուն հոգեկան ապրումները: Անուրանալի է թէ, այս ու ասոնց նման եւրոպական կտորները, եւրոպացի կարողագոյն թէնօռներուն չափ եթէ ոչ աւելի յաջողութեամբ կրնայ երգել մեր սիրելի արուեստագէտը, միայն թէ իր լեզուական դժուարութիւնը բան մը կը պակսեցնէ երգին արժէքէն...:

Թաւջութակի վրայ, քաղաքիս յարգուած արուեստագէտներէն Մաէսթրօ Լանցօնի նուագեց Էտուար Լալօի *Chant russe*ը, Պախի *Air*ը եւ Բօբէրի *Arlecain*ը ընկերակցութեամբ ծանօթ դաշնակահար Մաէսթրօ Ժ. Բասկարէլլօի: Իսկական վայելք մըն էր նաեւ այս երկու վարպետներու ունկնդրութիւնը, որոնց ճարտար ճպոտն ու հմտալից դաշնակահարումը, կ'ստեղծէին ներկաները աստուածային երաժշտութեան գեղեցկութեամբը գինովցնող զմայլելի համանուագ մը:

Մեծ վարպետին՝ Կոմիտաս Վարդապետի *Հայաստան*ը յայտագրին վերջին երգն էր, զոր Պ. Շահ Մուրատեան իր ամբողջ հոգուովն ու ուժգնութեամբը երգեց բովանդակ սրահը խանդավառելով եւ ոգեւորելով: Որոտընդոստ ծափերու եւ խլացուցիչ կէցցէներու մէջ, մեր ժողովուրդի երգիչը դարձեալ կրկնեց երգին վերջին մասը, արթնցնելով թերեւս շատ շատերու թմրած ու մարած հայկական զգացումը...:

Աղեքսանդրիոյ հայութիւնը որ միշտ ալ գնահատած է գեղարուեստական այս

կարգի բոլոր ձեռնարկները, մեծ հաճոյքով բաժնուեցաւ սրահէն։

Կ'արժէ շնորհաւորել նաեւ յանձնախումբին ժրաջան ղեկավարը՝ Պ. Մ. Թէլեանը, որ յաջողած էր ապահովել երեկոյթին նիւթական մասին յաջողութիւնը ինչպէս եւ կարգն ու սարքը։

*Սֆինքս*, 6 *Ապրիլ* 1925, *Ա. տարի*, *Թիւ* 5, *էջ* 2

## Պ. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ԷԼԱՆ

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ, 6 Ապրիլ. – Սիրալիր համակրանքը զոր իրաւամբ կը վայելէ մեր մէջ Պ. Շահմուրատեան, ստուար եւ ընտրովի բազմութիւն մը փութացուցած էր Ամէրիքըն Միշընի Սրահը, շաբաթ երեկոյ, վայելելու համար հայ գեղարուեստին, հայ երգին անուշութիւնը։

Եւ Պ. Շահմուրատեան արդարացուց ամէն ակնկալութիւն, ամրապնդելով մեզ մեր այն հաւատքին մէջ թէ՝ Աղեքսանդրիոյ փոքրաթիւ հայութիւնը գիտէ գնահատել արժանիքները, այդ կերպով, ինքզինքը եւս պահելով արժանաւոր բարձրութեան մը վրայ։

Ամէն տեսակէտով Պ. Շահմուրատեանի հանդէսը յաջողութիւն մը եղաւ։ Ան գործ չունէր երգչախումբի հետ զոր կրթել պատրաստելը ահագին դժուարութիւններու կը բաղխի. տեղի ընտրութիւնն ալ լաւ կատարուած էր. աւելի լաւ թերեւս քան Սրուանձտեանցի երգահանդէսին տեղը՝ Քիւրսալը. ասկէ զատ հայ գեղարւեստագէտին հինուց անտի ժողովուրդին մէջ ունեցած տրամադրութիւնը եւ Մէթր Մ. Թէլեանի գլխաւորութեամբ Կարգադիր Յանձնախումբին ջանքերը եւս նպաստեցին յաջողութեան։

Երգահանդէսին յայտագիրը կը բաղկանար երեք մասերէ – առաջինն ու երրորդը գրեթէ ամբողջովին յատկացուած հայերէն երգերու, երկրորդը՝ եւրոպական կտորներու։

Առաջին մասին մէջ յաջող էին մանաւանդ Տէր-Ղեւոնդեանի *Ծաղկոց մտայ*ն, Սրուանձտեանցի *Տէլի եամանը*, բայց շատ աւելի լաւ էին Կոմիտաս Վրդ.ի *Ես սարէն կուգայի*ն եւ *Ջինչ ու զինչ* որոնք խանդավառօրէն ծափահարուեցան ժողովուրդէն։

Մաէսթրօ Լանզօնիի կողմէ թաւ ջութակի վրայ խիստ ճարտարօրէն նուագւած Էտ. Լալօի ռուսական երգէն յետոյ, Պ. Շահմուրատեան թաւ ջութակի ընկերակցութեամբ երգեց Չայքովսքիի՝ *La Déception*ը եւ Massenetի *Elégie*ն որոնց վերջինը կրկնել տրուեցաւ։

Մաէսթրօ Լանզօնի իր բաժինը տարաւ շատ գնահատելի յաջողութեամբ. իր

վարժ ճպոտին եւ ճկուն մատներուն տակ Պախի *Air*ը, Popperի *Arlecain* դժուարին կտորը – վերջինը մասնաւորապէս – գեղեցիկ վայելքներ եղան։

Բայց Պ. Շահմուրատեան իր յաջողագոյն երգերը պահած էր ետքի. – *Լուսնակը*, *Շողերը*, *Գնաց աշունը*. իսկ *Հայաստանը* (Կոմիտաս Վրդ.ի), այդ կ'երեւի թէ միայն Շահմուրատեանի տրուած է երգել։ Եւ ահա թէ ինչու ներկաները բուռն եւ երկարատեւ ծափահարութեամբ, որ լի էր անշուշտ նաեւ թախանձանքի զգացումով, պարտաւորեցին հայ տաղանդաւոր երգիչը կրկնելու զայն քիչ մը աւելի մնալու համար իր երգին եւ իր ձայնին ազդեցութեան տակ «երկիր դրախտավայր»ի պատկերին առջեւ։

Իր զտած յաջողութենէն խանդավառ Պ. Շահմուրատեան յայտագրէն դուրս ըլլալով երգեց նաեւ *Երեւան բաղը*, *Գեղեցիկ հոտաւէտը* եւ ուրիշ կտորներ։

Թէ երգերուն եւ թէ նուագներուն դաշնակի իր յաջող մասնակցութիւնը բերաւ Պ. Փասքարէլլօ։

Երեք շաբաթուան ընթացքին, Աղեքսանդրիան քաջալերեց երկու գեղարուեստական երեկոյթներ, զուր չհանելով զայն կազմակերպողներուն յոյսերը։ Գահիրէցիին՝ որ կ'ըսեն աւելի առատաձեռն է քան Աղեքսանդրիացին, կը մնայ իր վերջին խօսքը ըսել, երբ Շահմուրատը կրկին զիրենք փորձի ենթարկէ։

***Արեւ***, 9 ***Ապրիլ*** 1925, ***ԺԱ. տարի***, ***Թիւ*** 1863, ***էջ*** 2

## ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔԸ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԳԱՂՈՒԹԻՆ ՄԷՋ
**(հատուած)**

ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆ

Պ. Սրուանձնեանէն ետք ծանօթ երգիչ Պ. Շահ-Մուրատեանն էր, որ եկաւ ներշնչել մեզի արուեստին կենդանի դողդղանքը։ Ան իր առաջին համերգը տուաւ Ապրիլ 4-ին, բաւական ճոխ յայտագրով ու հին օրերու փառքը վերակենդանացուց մեր մէջ։ Երգեց, իր խռովիչ ձայնով, Մելիքեանի *Պինկէօլը*, Չայքովսքիի *Déception*, Պախի *Air*էն, Կոմիտասի *Լուսնակն անուշն* ու *Զինչ ու զինչը*, որ կրկնապէս ծափահարուեցաւ։ *Հայաստանը*, որ կարծես իր մենաշնորհը դարձած է այլեւս, մասնաւոր գուրգուրանքով մը երգեց ան, ներկաներու բուռն ու երկարատեւ ծափերուն մէջ։

***Մարմարա***, 21 ***Ապրիլ*** 1925, ***Թիւ*** 151, ***էջ*** 2

### ԿԻՐԱԿԻ, 3 ՄԱՅԻՍ 1925, ԳԱՀԻՐԷ

Գահիրէի Էզպէքիէի Պարտէզի թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Ա. ՄԱՍ

Կոմիտաս վարդապետ, *Երեւան բաղ եմ արել*, *Ես սարէն կուգայի* եւ *Զինչ ու չինչ*, մեներգ՝ Շ-Մ.

Գրիգոր Սիւնի, *Հոգիս մրմուռ*, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Տույ տույ*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Հով արէք*, մեներգ՝ օր. Քրիստինէ Գալֆայեան

Jean-Paul-Égide Martini: *Plaisir d'amour*, թաւջութակ՝ պր. Է. Պրինէտտի

Gabriel Pierné: *Sérénade*, թաւջութակ՝ պր. Է. Պրինէտտի

Herman Bemberg: *Chant hindou*, մեներգ՝ Շ-Մ., թաւջութակ՝ պր. Է. Պրինէտտի

Reynaldo Hahn: *L'Heure exquise*, մեներգ՝ Շ-Մ.

Բ. ՄԱՍ

Մակար Եկմալեան, *Խորհուրդ խորին* եւ *Հայր մեր*, մեներգ՝ Շ-Մ.

Camille Saint-Saëns: *Le cygne*, թաւջութակ՝ պր. Է. Պրինէտտի

César Cui: *Orientale*, թաւջութակ՝ պր. Է. Պրինէտտի

Գ. ՄԱՍ

Վաղարշակ Սրուանձտեանց, *Տըլէ եաման*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Հաբրբան* եւ *Ալ այլուղս*, զուգերգ՝ օր. Քրիստինէ Գալֆայեան եւ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Լուսնակն անուշ*, *Շողեր* եւ *Կանչէ կռունկ*, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Վայրի ծաղիկ*, մեներգ՝ Շ-Մ., թաւջութակ՝ պր. Է. Պրինէտտի

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Դաշնակի նուագակցութիւն՝ պր. Մարիօ Անթոլինի

- «*Շահ-Մուրատեան համերգ*», *Արեւ*, 23 *Մարտ* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1848, *էջ* 2։

- «*Ժողովրդական երգահանդէս*», *Արեւ*, 25 *Ապրիլ* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1874, *էջ* 2։

- *Արեւ*, 25 *Ապրիլ* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1874, *էջ* 3։

- «*Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Արեւ*, 29 *Ապրիլ* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1877, *էջ* 3։

- *Արեւ*, 2 *Մայիս* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1880, *էջ* 3։

- *Հայկական սինեմա*, 2 *Մայիս* 1925, *Թիւ* 15, *էջ* 7։

- *Օ. Մ.*, «*Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Արեւ*, 5 *Մայիս* 1925, *ԺԱ. տարի*, *Թիւ* 1882, *էջ* 2։

- «*Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Հայկական սինեմա*, 9 *Մայիս* 1925, *Թիւ* 16, *էջ* 7։

- *Թղթակից*, «*Հայ կեանքը Գահիրէի մէջ*», *Սֆինքս*, 11 *Մայիս* 1925, *Ա. տարի*, *Թիւ* 10, *էջ* 1։

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

Օգտուելով հայ տաղանդաւոր երգիչ Պ. Ա. Շահ-Մուրատեանի ներկայութե-նէն, խումբ մը բարեկամներէ բաղկացած կարգադիր Յանձնախումբ մը երկրորդ երգահանդէս մը կազմակերպած է, որ տեղի պիտի ունենայ յառաջիկայ Մայիս 3-ին, Էզպէքիէյի պարտէզի թատրոնին մէջ: Նկատելով որ առաջին երգահանդէսը մատչելի եղած չէր ժողովրդական խաւերուն, զայն չի զրկելու համար հայ բնաշխարհի գողտրիկ երգերէն, կարգադիր յանձնախումբը շատ համեստ եւ ժողովրդական գիներ դրած է: Վստահ ենք թէ հայրենասէր ժողովուրդը պիտի փութայ լեցնել թատրոնը ըմբոշխնելու համար հայրենի երաժշտութեան կարօտագին վայելքը:

***Արեւ***, 25 ***Ապրիլ*** 1925, ***ԺԱ. տարի***, ***Թիւ*** 1874, ***էջ*** 2

# ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Օ. Մ.

Գեղարուեստական ճշմարիտ վայելք մը եղաւ տաղանդաւոր երգիչ Պ. Ա. Շահ Մուրատեանի երգահանդէսը, մին անոնցմէ՝ որոնց քիչ անգամ հանդիպելու պատեհութիւնը կը տրուի մեզ եւ որոնք ամենէն աւելի փնտռուած ու քաջալերուած վայելքները պէտք էր եղած ըլլային մասնաւորապէս այս երկրին մէջ, ուր այնքա՜ն շատ են աժանագին վայելքներ, որոնք շատ քիչ բան ունին մեր սրտին խօսող ու ցեղին ճաշակն ու միտքը ազնուացնող:

Էզպէքիէյի Պարտէզի թատրոնը, կիրակի գիշեր, իր հանդիսականներու անբաւական թիւով դժբախտաբար կ'ըսէր թէ մեր հասարակութիւնը հեռու է արժանաւորապէս գնահատելէ այս տեսակ բարձր վայելքներ, որոնք կրկնապէս արժէքաւորուած են իրենց հայեցի դրոշմով, անո՛ր համար մանաւանդ որ մեզ լսել կուտան *հայ երգը*, յուզիչ՝ իր անպաճոյճ արուեստով, ու սիրելի՝ իբր հայ մտքի ստեղծագործութիւնը: Շահ-Մուրատեան լաւագոյն դէմքերէն մին է մեր մէջ որ գիտէ եւ կրնայ ներկայացնել հայ երաժշտութեան արուեստը իր բովանդակ հրապոյրով: Անոր շրթներուն վրայ թրթռացող հայ երգը հարազատ ու գեղեցիկ արձագանգն է մեր հայրենի երկրին մէջ ապրուած ու երազուած կեանքին, ու այդ արձագանգը՝ զուարթ թէ տխրագին՝ հրապուրիչ է իր արուեստով ու զօրեղ՝ իր ներշնչած կարօտի զգացումով:

Անոնք որ բացակայ էին, գեղարուեստական գեղեցիկ վայելքէ մը զրկեցին ինքզինքնին:

Շահ-Մուրատեանի այս վերջին երգահանդէսը թէ՛ իր յայտագրին




Շահ-Մուրատեանի դիմանկարը։
Ծաղրանկարիչ՝ Ալեքսանդր Սարուխան։
*Հայկական սինեմա*, 2 Մայիս 1925, թիւ 15, էջ 7

ճոխութեամբ եւ թէ՛ յաջողութեան տեսակէտով աւելի գերազանց էր քան առաջին երգահանդէսը։

Հայերէն երգերէն յաջողագոյն կտորներ եղան *Երեւան բաղ եմ արել* (Կոմիտաս Վարդապետ), *Տույ տույ* (Ռ. Մելիքեան), *Լուսնակն անուշ – Շողեր* (Կոմիտաս Վարդապետ) ու մանաւանդ *Տըլէ եաման* (Վ. Սրուանձտեանց) եւ *Վայրի ծաղիկ* երգերը, որոնք երաժշտական մէյ մէկ գոհարներ էին։ Չենք շեշտեր *Հայաստան*ը որ հակառակ իր ծանօթ հնութեան՝ միշտ ալ հրապուրիչ է վարպետի շրթներուն վրայ։

Երգահանդէսին համար նորութիւններ էին *Խորհուրդ խորին*ը եւ *Հայր մեր*ը որ իրենց միսթիք հրապոյրով յուզեցին ներկաները։

Օտար երգերուն մէջ յաջողագոյններն էին *Շան հէնտու* եւ *Լ'էօր էքսքիզ*։ Պ. Շահ-Մուրատեան, սակայն, ինչպէս ուրիշ առթիւ ալ ըսած ենք օտար երգերուն մէջ կը դնէ անհարազատ շեշտ մը, որ քիչ մը շա՛տ հայկական է եւ չունի այն հրապոյրը զոր այդ շեշտը բնականօրէն կուտայ հայ երգին։ Մեղաւորը ինքը չէ՝ այլ բնութիւնը։

Օր. Ք. Գալֆայեան յաջողապէս երգեց Կոմիտաս Վարդապետի *Հով արէք*ը եւ Պ. Շահ Մուրատեանի ընկերակցութեամբ ալ *Հաբրբան* եւ *Ալ այլուղը* զուգերգը։ Իր ձայնը թէեւ փոքր բայց սիրուն է եւ քնքուշ, ու իր յաջողութիւնը աւելի մեծ պիտի ըլլայ եթէ քիչ մը համարձակ ըլլայ երգեցողութեան մէջ։

Տաղանդաւոր թաւջութակահար Մ. Է. Պոհինէթի այս անգամ եւս իր դիւթիչ երաժշտութեամբ կ'ամբողջացնէր երեկոյթին յաջողութիւնը, որուն մասնակցեցաւ ծանօթ դաշնակահար Մ. Անտօլինի։
***Արեւ***, 5 ***Մայիս*** 1925, ***ԺԱ. տարի***, ***Թիւ*** 1882, ***էջ*** 2

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Անցեալ Կիրակի, Պ. Շահմուրատեանի երգահանդէսին *Խորհուրդ խորին* երգուած ատեն, առջեւի նստարաններէն մէկ երկու հոգի կը սկսին խնդալ։ Ձեռքի փոքրիկ շարժումով մը լռութիւն կը յանձնարարուի թէպէտ, բայց երբ խնդուքը կը շարունակուի, Պ. Շահմուրատեան երգը եւ դաշնակը կէս ձգելով, բարձր ձայնով կը յանձնարարէ որ լռեն եւ կամ մեկնին թատրոնէն։

Գուցէ դատարկ նստարանները քիչ մը ջղայնացուցած ըլլան մեծանուն Հայ երգիչը, սակայն ցաւալի է որ մեր հասարակութիւնը տակաւին շատ հեռու է թատրոնը իր բուն արժէքովը գնահատելու կարողութենէն։
***Հայկական սինեմա***, 9 ***Մայիս*** 1925, ***Թիւ*** 16, ***էջ*** 7

## ՀԱՅ ԿԵԱՆՔԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

ԹՂԹԱԿԻՑ

Կատարեալ յաջողութիւն մը եղաւ մեր մեծանուն երգիչին՝ Շահ-Մուրատեանի երկրորդ ժողովրդական երգահանդէսը, մասնակցութեամբ նորատի երգչուհիի մը՝ Օր. Գալֆայեանի, որ անցաւ աւելի յաջող քան առաջինը:

Պ. Շահ-Մուրատեան մօտերս պիտի մեկնի դէպի Սուրիա, անկէ անցնելու համար Ֆրանսա:

*Սֆինքս*, 11 *Մայիս* 1925, *Ա. տարի*, *Թիւ* 10, *էջ* 1

### ՄԱՅԻՍ 1925, ԵՐՈՒՍԱՂԷՄ

Երուսաղէմի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը, նախագահութեամբ տեղւոյն կառավարիչ Սըր Սթօրսի:

- «*Հայկական կեանք*», *Մարմարա*, 12 *Մայիս* 1925, *Ա. տարի*, *Թիւ* 168, *էջ* 3:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Պ. Շահմուրատեան, վերջերս երգահանդէս մը կազմակերպած է Երուսաղէմի մէջ, նախագահութեամբ տեղւոյն կառավարիչ Սըր Սթօրսի: Հայ թէ օտար շրջանակներէ բազմաթիւ անձեր ներկայ գտնուած են:

Հանդէսը լրանալուն, կառավարիչը ոտքի վրայ դիմաւորած է Պ. Շահմուրատեանը, եւ ներկաներու առջեւ շնորհաւորած անոր արուեստագէտի կարողութիւններն ու ձիրքը: Օտար պետութեան մը ներկայացուցիչն ալ, մասնաւոր գոհունակութիւն յայտնելէ ետք, փափաքած է կրկին զայն վայելել՝ մօտերս իրենց կազմակերպելիք մէկ հանդէսին մէջ:

*Մարմարա*, 12 *Մայիս* 1925, *Ա. տարի*, *Թիւ* 168, *էջ* 3

### ԱՄԱՌ, 1925, ԶԱՀԼԷ

1925-ի ամրան կը գտնուի Զահլէ, ուր կը լուսանկարուի Երուանդ Օտեանի եւ Գ. Նազարէթեանի հետ:

- «*Մենէ անդարձ մեկնողներ*», *Թէոդիկ*, *Ամէնուն տարեցոյցը*, 22-*րդ տարի*, 1928, *էջ* 636:

### ՍԵՊՏԵՄԲԵՐ 1925, ՓԱՐԻԶ

Կը վերադառնայ Փարիզ:

- «*Հայկական կեանք*», *Մարմարա*, 1 *Հոկտեմբեր* 1925, *Ա. տարի*, *Թիւ* 290, *էջ* 2:

**ՆՈՅԵՄԲԵՐ 1925, ԼՈՆՏՈՆ**

Կը մեկնի Լոնտոն՝ երգահանդէսներ տալու նպատակով։

- «*Հայկական կեանք*», *Մարմարա*, 2 *Դեկտեմբեր* 1925, *Բ. տարի*, *Թիւ* 342, *էջ* 2։

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 16 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1925, ԼՈՆՏՈՆ**

Լոնտոնի Grotrian Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Կոմիտաս վարդապետ (*Հայաստան*), Ալեքսանդր Սպենդիարեան, Ռոմանոս Մելիքեան, Մակար Եկմալեան, Camille Saint-Saëns, Gaetano Donizetti, Jules Massenet։

- *Սմբատ Քէսէճեան*, «*Հայ սոխակը*», *Հայաստանի կոչնակ*, 27 *Մարտ* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 13, *էջ* 531-532։

- «*Տարուոյն անցքերէն*», *Ընդարձակ տարեցոյց 1927*, *կազմեցին Մ. Ջուհաճեան եւ Թ. Ազատեան*, *նոր շրջան*, *Գ. տարի*, *էջ* 423։

## ՀԱՅ ՍՈԽԱԿԸ
### (հատուած)

ՍՄԲԱՏ ՔԷՍԷՃԵԱՆ

Առաջին անգամ ըլլալով Ա. Շահ-Մուրատեանը ծափահարեցինք 1911-ին Բարիզի Կռան Օբերայի բեմին վրայ, Ֆաուստի դերով։

Հայ երգիչն էր որ Բարիզի խստապահանջ ժիւռիներու ձեռքէն կը խլէր Ա. Միտալ եւ Ա. կարգի վկայական։ Այդ թուականէն յետոյ ա՛լ չէի հանդիպած Շահ-Մուրատեանին եւ միայն աշխարհի ամէն կողմ գտնուող հայ թերթերու մէջ կը կարդայի իր տուած երգահանդէսներու մասին։

1925 Դեկտ. 16-ին դարձեալ կը վայելենք զինքը Լոնտոն Գրօթրիըն Հօլի մէջ ի ներկայութեան տեղւոյս հայ գաղութի եւ Անգլիացիներու ընտրեալ հոծ բազմութեան։ Շահ-Մուրատեան Սպէնդիարեանի, Մելիքեանի եւ Եկմալեանի երգերով մեզ պահ մը Հայաստան փոխադրեց։ Երկրորդ մասը կը բաղկանար Սէն Սանսէն, Տօնիծէթթիէն եւ Մասընէէն վերցուած ընտիր կտորներէ, իսկ վերջին մասն էր *Հայաստան*ը որ Շահ-Մուրատեանի մենաշնորհին է լոկ։ Հնդկահայ Պր. Աբգար որ իբր հիւր այժմ Լոնտոն կը գտնուի, կ'ըսէ.-

«Մենք՝ Հնդկաստանի Հայերս՝ Շահ-Մուրատեանը ճանչցած եմք իր ֆօնօկրաֆի րէքըրտներով։ Չկայ հայ մը որ չունենայ զանոնք, մանաւանդ անոր եկեղեցական րէքըրտները։

«Եկեղեցի չունենալնուս համար Կիրակի առաւօտները այդ սրբազան երգերը նուագելով կ'աղօթեմք: Այդ երգերուն ազդեցութեան տակ Հնչկահայ մեծ զինւորական Սըր Չէսթըր, որ զրեթէ ուծացած է Հայութենէն, օր մը Պր. Աբգարի տան մէջ լսած ըլլալով հոգեւոր երգերէն *Հայր մեր*ը, վերյիշումով մը կ'անդրադառնայ իր մանկութեան օրերուն եւ կը խնդրէ Պրն. Աբգարէն որ իրեն տայ Շահ-Մուրատեանի բոլոր րէքըրտները: Վերջերս իր ըրած ազգային նուիրատըւութիւնները կը պարտինք այդ երգերուն իր վրայ ըրած ազդեցութեան:»
*Հայաստանի կոչնակ*, 27 *Մարտ* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 13, *էջ* 531-532

**ՇԱԲԱԹ, 16 ՅՈՒՆՈՒԱՐ 1926, ՄԱՆՉԵՍԹԸՐ**

Մանչեսթըրի Memorial Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը: Կ'երգէ հայերէն, ֆրանսերէն եւ իտալերէն երգեր: Ջութակ՝ Alfred Barker: Դաշնակի նուագակցութիւն՝ Harry S. Greenwood:

- *The Manchester Guardian*, 16 January 1926, No. 24,773, p. 1.
- 'Music and Drama,' *The Manchester Guardian*, 16 January 1926, No. 24,773, p. 7.
- Samuel Langford, 'Mr. Chah-Mouradian's Recital,' *The Manchester Guardian*, 18 January 1926, No. 24,774, p. 14.
- *Սմբատ Քէսէճեան*, «*Հայ սոխակը*», *Հայաստանի կոչնակ*, 27 *Մարտ* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 13, *էջ* 531-532:

## MR. CHAH-MOURADIAN'S RECITAL

Samuel Langford

Mr. A. Chah-Mouradian, the Armenian tenor from the Paris Opera, who, as a young man, gave a recital in Manchester at the Midland Hall some years before the war, gave a second recital here on Saturday in the Memorial Hall to an almost exclusively Armenian audience. He quickly showed himself to have used the intervening years very greatly to the advantage of his art, and his recital must have been a real joy to his countrymen in Manchester. He gave half a score or so of Armenian songs, some having all the melancholy and boisterous humour natural to the folk-song of an Eastern country famous above all for its dancing, and some, artfully arranged in their melodic-harmonic sequence, to bring into prominence the features of tonality peculiar to Oriental music. In one song the musician's art was ingeniously used to carry on the music and argument of an elaborate chained verse. In all he sang, both of Armenian song and from the French and Italian schools of opera, which have evidently been his chief study, Mr.

Chah-Mouradian ranged free and unhindered with the conviction of a master, both in the vocal art and in music generally. His vocalisation ranged from the most fastidious expression to the most passionate operatic style, and except for a little hardness at times, that seemed quite purposeful, about the upper E and F, one could not but admire every note he sang. It was all the more interesting to find that neither the freedom nor energy of his humour, nor any transition of emotional expression, could disturb in the least the great racial sadness which went through all his singing. Had he been a singer whose art was in any way defective or questionable, one might have doubted the racial quality of this underlying emotion. In his case one could not, and it was a convincing illustration that there is more in song than is accounted for by its conscious mental qualities.

Mr. Alfred Barker played violin solos and a couple of violin obbligati for the singer, the second of which, to an Armenian song, was played especially with a fine feeling for the transitions of Oriental tonality. The Sonata in D of Handel was music whose aggressive health and optimism were somewhat harshly removed from the general tone of the concert. The reading, too, had a modern aggressiveness that had lost something of the grace which Lady Hallé, we think, once imparted to the music. Mr. Barker is a fascinating yet sometimes disappointing player. He gives the artificialities of a Sarasate with a brilliance which, if it had the same precision of style, might vie with that of a Heifetz or of the composer. But precision, in their degree, is apparently not his line. Mr. Harry S. Greenwood accompanied the whole concert with the sympathy of a musician.

*The Manchester Guardian*, 18 January 1926, No. 24,774, p. 14

## ՀԱՅ ՍՈԽԱԿԸ
**(հատուած)**

ՍՄԲԱՏ ՔԷՍԷՃԵԱՆ

Շահ-Մուրատեանի Մանչէսթըրի մէջ տուած նուագահանդէսն ալ մեծ յաջողութիւններ կ՚ունենայ։

*Մանչէսթըր Կարտիըն*ի երաժշտական դժուարահաճ քննադատը՝ Սէմ Լէնկֆըրտ՝ իր թերթին մէջ Շահ-Մուրատեանի նուագահանդէսի մասին խօսելով կ՚ըսէ. - «Պ. Շահ-Մուրատեան, Հայ թէնօրը՝ Բարիզի օբերայէն, որ՝ որպէս դեռատի՝ իր առաջին երգահանդէսը տուաւ Մանչէսթըր Y. M. C. A.ի սրահին մէջ, պատերազմէն մէկ քանի տարի առաջ, իր երկրորդ երգահանդէսը տուաւ շաբաթ օր Մէմօրիըլ Հօլի մէջ, ի ներկայութեան գրեթէ ամբողջովին հայ ունկնդիրներու։ Ան ընդփոյթ ապացուցուց թէ անցնող տարիները գործած է մեծապէս ի շահ

իր արուեստին, եւ իր երգահանդէսը իրական վայելք մ'եղած ըլլալու է Մանչէսթըրի իր հայրենակիցներուն։ Ան երգեց շուրջ տասնեակ մը հայկական երգեր՝ որոնցմէ ոմանք կը կրէին այն մելամաղձոտութիւնն եւ ուժգին երգիծանքը՝ որ բնական են ամենէն աւելի պարի մէջ համբաւ շահող Արեւելեան երկրի մը ժողովրդական երգին, իսկ ոմանք ալ այնպիսի արուեստով ներդաշնակուած են իրենց մեղեդիական դաշն իրերայաջորդութեամբ որ ցայտուն կ'ընեն արեւելեան երաժշտութեան յատուկ հնչականութեան գիծերը։ Իր ամբողջ երգած կտորներուն մէջ, հայկ. երգերէն սկսեալ մինչեւ ֆրանսական եւ իտալական օբերաները՝ որոնք իր մասնագիտութեան գլխաւոր մասը կը կազմեն, Պրն. Շահ-Մուրատեան երգեց ձայնի լայն տարողութեամբ, ազատ եւ անսայթաք, վարպետի մը համոզմամբը՝ թէ՛ ձայնական արուեստին եւ թէ երաժշտական գիտութեան մէջ առ հասարակ։ Ձայնական իր երանգաւորումը կը տարածուէր ամենէն նրբին արտայայտութիւններէն մինչեւ ամենէն խանդոտ *օբերաթիք* ոճը, եւ բացի ժամանակ առ ժամանակ նշմարուող մասնակի խստութենէն՝ վերին E.ի եւ F.ի մէջ, ինչ որ այնպէս կը թուէր թէ նպատակաւ կ'ընէր երգիչը, մարդ ուրիշ բան չի կրնար ընել այլ միայն հիանալ անոր երգած ամէն մէկ խաղին։ Շատ աւելի հետաքրքրական էր տեսնել թէ ոչ իր երգիծանքին սաւառնումն ու կորովը եւ ոչ ալ յուզումնալի արտայայտութեան փոխանցումը կրնար ամենադոյզն կերպով խանգարել ցեղային այն վսեմ տխրութիւնը՝ որ կը տարածուէր իր երգեցողութեան մէջ։ Եթէ Շահ-Մուրատեան եղած ըլլար երգիչ մը՝ որուն արուեստը պակասաւոր եւ կամ խնդրական եղած ըլլար, այդ պարագային կարելի էր կասկածիլ այս թագուն յուզման ցեղային յատկանիշին։ Շահ-Մուրատեանի պարագային կարելի չէ կասկածիլ։ Ու կենդանի ապացոյց է թէ երգին մէջ կայ աւելի շատ բան քան որ անոր կը վերագրուի իր գիտակից մտաւորական յատկանիշներով։»
***Հայաստանի կոչնակ***, 27 ***Մարտ*** 1926, ***ԻԶ. տարի***, ***Թիւ*** 13, ***էջ*** 531-532

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 8 ՓԵՏՐՈՒԱՐ 1926, ՆԻՒ ԵՈՐՔ**

Անգլիայէն կը ժամանէ Նիւ Եորք։

**-** «***Արմենակ Շահ-Մուրատեան Ամերիկա հասած***», ***Հայրենիք***, 13 ***Փետրուար*** 1926, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4192, ***էջ*** 4։

**-** ***Եղուարդ Սահակեան***, «***Ա. Շահ-Մուրատեան***», ***Հայրենիք***, 14 ***Ապրիլ*** 1926, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4242, ***էջ*** 1։

## ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ԱՄԵՐԻԿԱ ՀԱՍԱԾ

Նիւ Եորքէն կը հաղորդեն մեզի.

Երէկ, փետրուար 8, Անգլիայէն հոս ժամանեց հայ ծանօթ երգիչ Արմենակ Շահ-Մուրատեան։

Պ. Շահ-Մուրատեան, ինչպէս ասկէ առաջ գրուած էր *Հայրենիք*ի գաղութային լուրերու բաժնին մէջ, վերջերս յաջորդաբար այցելեց Ֆրանսա, Եգիպտոս, Երուսաղէմ, Սիւրիա եւ ամենուրեք հայ գաղութներուն տուաւ իր հերթական երգահանդէսները։

Ամերիկայի մէջ եւս ան պիտի ընէ պտոյտ մը, տալու համար նուագահանդէսներ, որոնք այնքան ոգեւորած են հայ գաղութները։ Երգիչը իր առաջին երգահանդէսը պիտի տայ Նիւ Եորքի հայ գաղութին՝ մօտ ատենէն։

*Հայրենիք*, 13 Փետրուար 1926, 28-րդ տարի, թիւ 4192, էջ 4

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

ԵԴՈՒԱՐԴ ՍԱՀԱԿԵԱՆ

Նորէն մեզի հետ է աննման հայ երգիչը՝ Ա. Շահ-Մուրատեան։

Բաւական երկար ամերիկահայութեան մէջ ապրելէ յետոյ, այժմ տեղափոխուած Եւրոպա, անիկա երբեմն երբեմն կ՚այցելէ այս գաղութը համերգներու շարք մը տալու համար, եւ պէտք է ըսել, որ իր այս պարբերական այցելութիւնները մխիթարութեան պէս բան մըն են երգը սիրող մեր հասարակութեան։

Շահ-Մուրատեանի բացակայութիւնը միայն կարօտ կը ստեղծէ, կարօտը՝ իր ձայնին, կարօտը՝ իր արուեստին։ Որովհետեւ, այդպիսի աստուածատուր ձայն եւ այդպիսի առինքնող արուեստ հայ ժողովուրդը շատ չէ տուեր. աւելին՝ Շահ-Մուրատեան միակ երգիչն է, միակ *հայ երգիչը*, որ մենք ունինք այսօր։

Ամերիկահայութեան համար մասնաւորապէս անիկա ունի առանձնայատուկ տեղ մը։

Կարելի է անվարան կերպով ըսել, որ մեր գաղութը սկսաւ հայ երգը ճանչնալ ու սիրել առաջին անգամ Շահ-Մուրատեանով։ Երբ շուրջ 10 տարի առաջ անիկա ոտք կը դնէր մեր մէջ, թրքական *մանի*ներն ու *շարքի*ները տակաւին անգերազանցելի հրապոյր մը ունէին մեզի համար։ *Չարէսազ* եւայլն – չյիշելու համար ուրիշներ – այն երգերն էին որոնցմով ամերիկահայը յագուրդ կուտար իր երաժշտական պահանջներուն։

Խօսքը պէտք չէ ընել անշուշտ քանի մը հայ երգերու, ազգային, հայրենասիրական, ինչպէս՝ *Մեր հայրենիք*, *Դաշնակցական խումբ*, *Լուսին չկար*, եւայլն, որոնք վերապահուած էին հրապարակային ժողովներու, վայելքի տեսակէտէն բաւարար չնկատուելով տուներու եւ ընտանեկան-ընկերական ու այլ շրջանակներու մէջ երգուելու համար։ Չեղած բոպիկութիւն էր։

Բայց այսօր, այսօր բաւական տարբեր պատկեր մը կը ներկայանայ մեզի: *Արօր տատրակ*, *Անտունի*, *Հայաստան*, *Կանչէ կռունկ*, *Միրուհիս*, եւ բազմաթիւ ուրիշներ կը կազմեն լաւագոյն մասերը մեր երաժշտական պրոգրամներուն թէ՛ տուներու մէջ եւ թէ՛ հրապարակային երեւոյթներուն ժամանակ:

Ի՛նչ խօսք, որ *Չարէսազ*ները դեռ ամէն տեղ չեն վերցուած մէջտեղէն, յամառելով քաշքշուիլ շարք մը թրքախօս եւ երբեմն ալ ոչ-թրքախօս շրջանակներու մէջ, բայց արդէն հայ երգը գրաւած է առաջին գիծը ընդհանրապէս ամերիկահայութեան երաժշտական ճաշակին մէջ եւ դարձած է մէկը այն ազդակներէն որ Ամերիկայի հայ գաղթականութիւնը կը կապեն մայր երկրին:

Եւ այս ցանկալի փոփոխութեան մէջ առաջին դեր խաղացողը, առաջինը՝ ճամբան բացողներէն, եղած է Ա. Շահ-Մուրատեան:

Ազգային ծառայութիւն մըն է այս, մատուցուած հայ ժողովուրդին, որուն համար Ամերիկահայութիւնը չի կրնար չի գուրգուրալ, իր այս տաղանդաւոր հայրենակիցին վրայ:

Իրաւամբ Շահ-Մուրատեան ազգային երգիչ է, *հայ երգիչ*:

Չգիտենք ի՛նչպէս, դաստիարակուելով ֆրանսական երաժշտանոցի մէջ, ստանալով անկէ առաջին մրցանակը, քայլելով Ֆրանսայի ամենաբարձր երաժշտական բեմին վրայ, եւ վայելելով Պարիզի կոսմոպոլիտ հասարակութեան խանդավառ ծափերը, անիկա մնացեր է հայ երգիչ: Բայց մնացեր է: Եւ այդ հանգամանքն է, որ զինք կը կացուցանէ ամենէն սիրելին բոլոր այն երգիչներուն մէջ, որոնք դուրս եկած են ու կուգան հայ ժողովուրդի ծոցէն: Ոչ մէկ երգիչ այնքան արժանի է մեր գուրգուրանքին ու հոգածութեան որքան Ա. Շահ-Մուրատեան: Որովհետեւ *մեր*ն է ան:

Այսօր, ժամանակն է, աւելի քան երբեք, որ մենք՝ արժէքներու գնահատութեան մէջ, հայութիւնը գործածենք իբրեւ չափանիշ, կամ մէկը չափանիշներէն, եւ անպայման առաջինը:

Օտար բեմերու վրայ ալ մենք ունինք երգիչներ, որոնց համար չենք կրնար չհպարտանալ. դեռ կան ալ, որ կը պատրաստուին օտարներու առջեւ փայլելու համար. ասոնց եւս չենք կրնար չմաղթել ամէն կարգի յաջողութիւններ:

Բայց սէր եւ գուրգուրանք, հոգածութիւն եւ անխառն քաջալերութիւն, առաւել քան որեւէ ուրիշին, մենք կրնանք տալ միայն անոր, որ *հայ* երգիչ է, միայն անոր որ Շահ-Մուրատեան է. եւ դարձեալ անով է, որ մենք կը հպարտանանք առաւել քան ուրիշ որեւէ հայազգի երգիչով, որ կը փայլի օտար բեմերու վրայ:

Հայ երգիչ Շահ-Մուրատեանի այցելութիւնը, երկու տարուայ բացակայութենէ յետոյ, սպասուած ուրախութիւն մըն է, եւ պէտք է, որ ջերմօրէն ողջունուի Ամերիկահայ գաղութէն:

***Հայրենիք***, 14 ***Ապրիլ*** 1926, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4242, ***էջ*** 1

**ՈՒՐԲԱԹ, 12 ՄԱՐՏ 1926, ՖԻԼԱՏԵԼՖԻԱ**

Ֆիլատելֆիայի New Century Club-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Tommaso Giordani: *Caro mio ben*, մեներգ՝ Շ-Մ.

Gaetano Donizetti, մեներգ՝ Շ-Մ.

Jules Massenet: *Élégie* (‘Ô, doux printemps d’autre fois’), մեներգ՝ Շ-Մ.

Georges Bizet: *Les Pêcheurs de perles*, ‘Je crois entendre encore’, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Մոկաց Միրզա*, մեներգ՝ Շ-Մ.

Անուշաւան Տէր-Ղեւոնդեան, *Ծաղկոց մտայ*, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Սեւ կաքաւիկ* եւ *Ես բլբուլ եմ*, մեներգ՝ Շ-Մ.

Վաղարշակ Սրուանձտեանց, *Տըլէ եաման* եւ *Ալագեազ բարձր սարին*, մեներգ՝ Շ-Մ.

Թաւջութակ՝ օր. Հըբըդ

*- Կ. Սիտալ*, «*Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Հայաստանի կոչնակ*, 3 *Ապրիլ* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 14, *էջ* 564-565։

# Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Կ. ՍԻՏԱԼ

Աւելի քան երկու տարիներու բացակայութենէ մը վերջ՝ մեր անզուգական երգիչ՝ Ա. Շահ-Մուրատեան, տուաւ իր սպասուած երգահանդէսը 1926, Մարտ 12-ի իրիկուն Ֆիլատէլֆիոյ Նիւ Սէնչըրի Գլըպի սրահին մէջ։

Նուագահանդէսներու անսովոր եղող խուռն բազմութիւն մը ներկայ էր։ Կային մեծ թուով Ամերիկացիներ։ Լռջութիւն, կանոնաւորութիւն եւ ինքնաբուղխ խանդավառութիւն յատկանիշներ էին այդ արտասովոր երգահանդէսին։

Դեռատի թաւջութակահար Օր. Հըբըդ յայտնի զգացումով եւ թէքնիքով նուագեց բոլոր իր կտորները։

Շահ-Մուրատեան երգեց Ճիօրտանիէն եւ Տօնիզէթթիէն ըմբռնումով եւ արուեստով։ Իսկ Մասէնէի *Էլէժի*ն եւ մանաւանդ Բիզէի *Մարգարիտի որսորդները* այնքան ջերմ զգացումով, այնպիսի խորունկ անկեղծութիւնով եւ այնքան կատարեալ արուեստով արտայայտեց, որ յուզմունքէ յուզմունք եւ խանդավառութենէ խանդավառութիւն առաջնորդեց ունկնդիր հասարակութիւնը։

Յայտագիրը կը պարունակէր նոր շարք մը զգայուն, զմայլելի հայ գեղջուկ երգերու՝ ձայնագրուած Ռոմանոս Մելիքեանէ, Տէր Ղեւոնդեանէ, Սրուանձտեանցէ եւ Կոմիտաս Վարդապետէ։ Ասոնց ամէնքն ալ առաջին անգամ կը լսուէին Ֆիլատէլֆիայի Հայութեան կողմէ։ Կոմիտասի *Մոկաց Միրզէն* իր դիւցազներ-

գական պարզութեամբ, տրամատիկական ուժգնութիւնով ու բառերու եւ միւզիկի ճարտար ներդաշնակութեամբ Շահ-Մուրատի պէս գեղջկական երաժշտութեան քաջածանօթ ու հզօր երգիչի մը բերնին մէջ միայն կրնար ստանալ այն տոհմիկ ու տպաւորիչ գեղեցկութիւնը: Տէր Ղեւոնդեանի *Ծաղկոց մտա*ն, Մելիքեանի *Սեւ կաքաւիկ*ը եւ *Ես բլբուլ եմ*ը իրենց լիրիկ-քնարերգական վճիտ արտայայտութեամբ անմիջապէս ըմբռնուեցան եւ ջերմապէս գնահատուեցան հասարակութեան կողմէ: Շահ-Մուրատեանի հնչեղ-մելանոյշ ձայնը անոնց կուտար այնպիսի նուրբ երանգաւորումներ եւ ինքնայատուկ շեշտեր, որոնք միայն մեր ժողովրդին են յատուկ: *Պսակ-պսակ*, *Կլոր պար* եւ *Բինգօլ*ը մեր առհասարակ թախծոտ ժողովրդի սակաւադէպ չարաճճի, զուարթ պահերու արտայայտութիւններն են – ինքնատիպ, ախորժալուր եւ արեւոտ: Ցաւոտ ու մելանոյշ քնարերգութիւններէ վերջ այս զուարթ, շէնշող երգերը բուռն խանդավառութիւն առաջ բերին ոչ միայն հայ այլ նաեւ ամերիկացի ունկնդիրներու մէջ: Շահ-Մուրատեան հմուտ ըլլալ կը թուի Մշու եւ Վասպուրականի բնատոհմիկ պարերու ռիթմին, շեշտին եւ ընդհանուր կառուցուածքին, առանց այդ անհրաժեշտ ծանօթութեան անկարելի պիտի լինէր այդ երգերուն տալ այն հարազատ, առանձնայատուկ հրապոյրը, որով անոնք երեւան եկան: Սրուանձտեանցի *Դըլէ եամա*նը Վանի ծովէն փչող զեփիւռին պէս քնքոյշ հովուերգութիւն մըն է, - գալարուն, հոտաւէտ եւ երազուն: Այն իրիկուայ հայ երգերու ամենէն ինքնատիպն ու յուզիչը, ամենէն աւելի հուժկուն ու տիրականը Սրուանձտեանցի միւս կտորը *Ալագեազ բարձր սարի*ն էր:

Վերահաս ձմեռուան բուքի եւ անոր հետ եկող չքաւորութեան ահաւոր սարսափի երգն է այն խառնուած *Կանաչ-արօտ սարեր*ի անզուսպ կարօտին հետ: Ալագեազի կատարին աստիճանաբար դիզուող ձեան, դեղնող արօտներու, գոմերէն ներս բանտուող անասուններու, ամայացող ճամբաներու, խրճիթներու մէջ սաստկացող ցրտի հանդէպ հայ շինականի բովանդակ դառնութիւնը, կսկիծը, ափսոսանքը, սարսափն է որ կը հոսի այդ երգի մէջէն եւ Շահ-Մուրատեան կարծես տառապող իր գեղջուկ ժողովրդի բովանդակ հոգին էր որ կը բանար այդ երգովը:

Ոսկի ձայնով, հազուագիւտ արուեստով եւ յորդ զգացումով այս վարպետ երգիչը հոգեկան ամենահզօր կապն է որ կ՚ստեղծէ գաղթահայութեան եւ երկրի աշխատաւոր ժողովրդի միջեւ: Եւ որքան աւելի յաճախակի կը լինին անոր երգահանդէսները այնքան աւելի անքակտելի եւ ամուր կը դառնայ այդ հոգեկան զգացմունքային կապը, մինչեւ որ օր մ՚ալ իր ետին թողած հեռաւոր օտար ափերը – բովանդակ գաղութահայ զանգուածը երթայ վերջնականապէս հաստատուիլ այդ երգերու մեծ գանձատան ու հեղինակ երկրի ժողովրդին ծոցը:

Շահ-Մուրատեանի արուեստը հասարակական խոր նշանակութիւն եւ արժէք ունի: Նա մեր հին ցաւոտ օրերու տառապանքի ձայնն է, իսկ նոր օրերու յոյսի, աշխատանքի բեղմնաւոր ստեղծագործական կեանքի հուժկու կոչն ու

իրաւէրն է։
*Հայաստանի կոչնակ*, 3 *Ապրիլ* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 14, *էջ* 564-565

**ԿԻՐԱԿԻ, 28 ՄԱՐՏ 1926, ՆԻՒ ԵՈՐՔ**

Շ-Մ.ի երգահանդէսը Նիւ Եորքի մէջ՝ որ նախատեսուած էր Մարտ 28-ին, զատկական տօներուն առիթով կը յետաձգուի Ապրիլ 16-ին։

- «*Հայ ազգային կեանք*», *Հայաստանի կոչնակ*, 20 *Փետրուար* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 8, *էջ* 377։
- «*Հայ ազգային կեանք*», *Հայաստանի կոչնակ*, 27 *Մարտ* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 13, *էջ* 536։

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 7 ԱՊՐԻԼ 1926, ԹՐՈՅ**

Թրոյի Music Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը ի նպաստ ներգաղթին, նախաձեռնութեամբ Հ. Բ. Ը. Միութեան Թրոյ-Վոթրվլիթ մասնաճիւղին։ Կը մասնակցի՝ Արաքսի Յակոբեան (սոփրանօ)։

- *Հայրենիք*, 27 *Մարտ* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4227, *էջ* 4։

**ՈՒՐԲԱԹ, 16 ԱՊՐԻԼ 1926, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Adams Memorial Church-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։
Յայտագիր.
Tommaso Giordani: *Caro mio ben*, մեներգ՝ Շ-Մ.
Jules Massenet: *Élégie* (‘Ô, doux printemps d’autre fois’), մեներգ՝ Շ-Մ.
Կոմիտաս վարդապետ, *Մոկաց Միրզա*, *Ալագեազ* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.
Ռոմանոս Մելիքեան, *Տույ-տույ*, մեներգ՝ Շ-Մ.
Թաւջութակ՝ պր. Պուքինիք
Դաշնակ՝ Մ. Քուշնարէֆ

- «*Հայ ազգային կեանք*», *Հայաստանի կոչնակ*, 27 *Մարտ* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 13, *էջ* 536։
- *Հայաստանի կոչնակ*, 3 *Ապրիլ* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 14, *էջ* 576։
- *Հայրենիք*, 14 *Ապրիլ* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4242, *էջ* 2։
- *Յովհաննէս Աւագեան*, «*Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Հայաստանի կոչնակ*, 24 *Ապրիլ* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 17, *էջ* 661։

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳԵԱՆ

Հայ երգին, հայ շեշտին, Հայ առոգանութեան, Հայ հնչիւնին կարօտն զգացող

մեր հոգիները իրենց յագուրդը գտան պահիկ մը Ապրիլ 16-ի երեկոյին, Էտէմզ Մէմօրիըլ Չըրչի սրահին մէջ, *մեր* երգիչը, իր մարզուած, կիրթ ձայնին քաղցր առուգութեամբն ու հզօր տիրականութեամբը խանդավառեց, գերեց ունկնդիրները:

Շահ-Մուրատեան մեզի ներկայացաւ խնամեալ յայտագրով մը՝ ուր դրուած էին եկեղեցական, քնարական, հովուերգական ու դիւցազներգական կտորներ. – ամէնքն ալ մէկզմէկէ աւելի *թիփիք*, մէկզմէկէ աւելի յատկանշական: Ու որպէս զի դասական երաժշտութեան սիրահարներն ալ գոհացում գտնէին, Շահ-Մուրատեան տուաւ նաեւ եւրոպական մէկ քանի կտորներ՝ որոնց մէջ մեզ համար անմոռանալի պիտի մնան Ժիօրտանիի *Գարօ միօ պէն*ն ու մանաւանդ Մասընէի *Էլէժի*ն զոր մեր երգիչը երգեց վարպետի վայել ըմբռնումով, վարպետի վայել արուեստով:

Հայկական երգերու մէջ ամէնէն աւելի յատկանշական էին *Մոկաց Միրզէ*ն՝ հանրութեան անծանօթ նոր երգ մը՝ որ իրապէս դիւցազներգական առոյգ կտոր մը, գոհար մըն է, եւ *Ալագեազ*ը՝ ուր կարծես սարեր բարձրացան մեր առջեւ ու երգին արձագանգը բերին մեզի, այնպէս, ինչպէս սովոր էինք լսել մեր մայր հողին վրայ:

Յայտագրէն դուրս, ժողովուրդին խնդրանքին վրայ, Շահ-Մուրատեան երգեց *Տույ-տույ*ն ու *Հայաստան*ը՝ որ երգչին անուան հետ շաղախուած, նոյնացած է գրեթէ, ու կարելի չէ մին յիշել՝ առանց անմիջապէս անոր յարակցելու միւսը: Քիչ անգամ երգ ու երգիչ ա՜յնքան անքակտելի կապերով միացած կ՚ըլլան մէկմէկու:

Երգահանդէսին մասնակցեցան դաշնակահար Ս. Քուշնարէֆ ու թաւջութակահար Մ. Պուքինիք՝ որ ի մէջ այլոց նուագեց նաեւ իր հեղինակած մէկ սերենատը:

Ներկայ էր հոծ բազմութիւն մը՝ որ խանդավառ պահեր ապրեցաւ մինչեւ երգահանդէսին վերջանալը:

***Հայաստանի կոչնակ***, 24 ***Ապրիլ*** 1926, ***ԻԶ. տարի***, ***Թիւ*** 17, ***էջ*** 661

## ԿԻՐԱԿԻ, 18 ԱՊՐԻԼ 1926, ՊՐՈՒՔԼԻՆ (ՆԻՒ ԵՈՐՔ)

Պրուքլինի մէջ՝ հրապարակային հանդէս-խնճոյք, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նիւ Եորքի կոմիտէին: Կը մեներգէ Շ-Մ.:

- «***Հ. Յ. Դաշնակցութիւն***», ***Հայրենիք***, 9 ***Ապրիլ*** 1926, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4238, ***էջ*** 4:

- ***Ն. Փ.***, «***Ընկերա-Համակրական Հաւաքոյթ մը***», ***Հայրենիք***, 11 ***Մայիս*** 1926, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4264, ***էջ*** 2:

## ԸՆԿԵՐԱ-ՀԱՄԱԿՐԱԿԱՆ ՀԱՒԱՔՈՅԹ ՄԸ
**(հատուած)**

Ն. Փ.

Երգեց սիրուած հայ երգիչը՝ պր. Ա. Շահ-Մուրատեան, որ իր սիրտէն երգելով պահ մը մեզ փոխադրեց մեր հայրենի օճախը: Յաջորդաբար երգեցին տիկիններ՝ Աւագեան, Վարդերեսեան, Փափազեան եւ Չատրճեան, տիկ. Լ. Պօյաճեանի դաշնակի ընկերակցութեամբ: Իսկ ընկեր Մինասեանի կատակերգութիւնը կուշտ ու կուռ խնդացուց ներկաները:
*Հայրենիք*, 11 *Մայիս* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4264, *էջ* 2

**ԿԻՐԱԿԻ, 9 ՄԱՅԻՍ 1926, ՊՈՍԹՈՆ**

Պոսթոնի Franklin Union Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:
Յայտագիր.
Sergey Rachmaninoff: *Prelude*, դաշնակ՝ Լեւոն Վարդանեան
Frédéric Chopin: *Valse*; *Étude*; *Fantaisie-Impromptu*, դաշնակ՝ Լեւոն Վարդանեան
Fritz Kreisler, ջութակ՝ Feodorovsky
Pablo de Sarasate: *Zigeunerweisen*, ջութակ՝ պր. Feodorovsky
Tommaso Giordani: *Caro mio ben*, մեներգ՝ Շ-Մ.
Édouard Lalo: *Sérénade*, մեներգ՝ Շ-Մ.
Pyotr Tchaikovsky, մեներգ՝ Շ-Մ.
Վաղարշակ Սրուանձտեանց, *Դլէ եաման* եւ *Ալագեազ*, մեներգ՝ Շ-Մ.
Անուշաւան Տէր-Ղեւոնդեան, *Ծաղկոց մտայ*, մեներգ՝ Շ-Մ.
Մակար Եկմալեան, *Քրիստոս պատարագեալ*, մեներգ՝ Շ-Մ.
Կոմիտաս վարդապետ, *Մոկաց Միրզէ* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.
Ռոմանոս Մելիքեան, *Ես բլբուլ եմ* եւ *Տույ տույ*, մեներգ՝ Շ-Մ.
*Տուն արի*, մեներգ՝ Շ-Մ.
Jules Massenet: *Élégie* (‘Ô, doux printemps d’autre fois’), մեներգ՝ Շ-Մ., ջութակ՝ պր. Feodorovsky
Georges Bizet: *Les Pêcheurs de perles*, ‘Je crois entendre encore’, մեներգ՝ Շ-Մ.

- *Հայրենիք*, 14 *Ապրիլ* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4242, *էջ* 2:
- *Հայրենիք*, 22 *Ապրիլ* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4249, *էջ* 3:
- *Հայրենիք*, 4 *Մայիս* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4258, *էջ* 2:
- *Մեղու Շնորհալի*, «*Արմենակ Շահ-Մուրատեան*», *Հայրենիք*, 7 *Մայիս* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4261, *էջ* 2:

- **Յ.**, «*Ա. Շահ-Մուրատեան. երգիչն ու արուեստագէտը*», ***Հայրենիք***, 8 *Մայիս* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4262, *էջ* 2։

- ***Հայաստանցի***, «***Շահ-Մուրատեանի երգահանդէսը Բոստոնի մէջ***», ***Հայրենիք***, 18 *Մայիս* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4270, *էջ* 2։

## ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

ՄԵՂՈՒ ՇՆՈՐՀԱԼԻ

Այս անունը բաւական է ամբողջ գաղափար մը ըմբռնելու։ Արմենակ Շահ-Մուրատեան անձ մը չէ, անհատ մը չէ ինք իրեն համար, այլ բուն իսկ *հայ երգը*՝ *հայ ձայնով*։ Իր խռչափողի լարերը Տարօնի քաղցր մանանայով օծուած են։

Մեր գաղութին մէջ է ան նորէն, *Արմօն, շարժուն հայ երգը, շարժուն հայ ձայնը*։ Եկած է Պոսթըն, Ամերիկահայոց գրական մայրաքաղաքին մէջ, տալու իր հերթական նուագահանդէսը։ Եկած է քանի մը սիրելի երգերու հետ տալու նաեւ հայ վարպետներու նոր «*ստեղծագործութիւնները*», ըսելու մեզի՝ թէ ի՛նչպէս պէտք է երգել հայ երգը, հայ ձայնով ու հայ սրտով։

Արմենակ Շահ-Մուրատեան գին չունի իր կալուածին մէջ, դրամը չի կրնար գնել իր հայկական տիպար ձայնի արտայայտութիւնները։ Գերազանցապէս մեր երգիչն է ան, ոգեւորող, ապրեցնող եւ ինչքա՜ն քաղցր։

Մշեցի Արմոյին ձայնին մատա՜ղ, Սուրբ Կարապետի շնորհքը յաւէտ իր վրան։

Պիտի երգէ մեզի Հայաստանի սոխակը, իր սրտի լարերուն հետ՝ ձեռք պիտի առնէ եւ մեր սրտի լարերը, - *Մոկաց Միրզէն*, *Ծաղկոց մտայ*, *Տըլէ եաման*, *Տուն արի*, *Նոր ալագեազ* մաս պիտի կազմեն այս կիրակիի իր աղուոր յայտագրին։

Արմոյէն զատ չունինք ուրիշ *հայ երգիչ մը*։ Այո՛, ունինք շատեր, յայտնի, եւ խոստմնալից ուժեր, որոնք *պատիւ կը բերեն մեր ժողովուրդին* եւ կը փայլին միջազգային բեմերու վրայ։ Այլ է այս երգիչներու եւ երգչուհիներու կոչումը, այլ է Շահ-Մուրատեանինը։ Արմօն հայ բեմին է՝

***Հայ բեմի խետ ապրի,***
***Հայ բեմի խետ մեռնի,***
***Հայ երգի մատաղ զիմ տղէն.***

ըսած է իր ծերունի եւ դժբախտ մայրը։

Եւ, իրաւ, *Արմօն* է որ կը սիրցնէ մեզի հայ երգը, կը բարձրացնէ արժէքը մեր սեփական երաժշտութեան։ Միջազգային երաժշտութիւնը շատ սպասաւորներ ունի, տաղանդաւոր մարդիկ, աննման ձայներ, զմայլելի արուեստագէտներ, բայց հայ երգը, հայ երաժշտութիւնը կարօտ է խնամոտ եւ գուրգուրացող աշխատա-

ուրներու, որպէսզի երիտասարդանայ, զարգանայ եւ բարձրանայ։

Արմօն հայ երգի մէկ հատիկ զաւակն է։ Բայց ինչո՞ւ չեն յայտնուիր հայ երգի հարազատ արտայայտիչներ։ Արդեօ՞ք Տարօնի մանանան, Մեղրագետի ջուրը եւ Սուրբ Կարապետի շնորհքը պայման են *Արմոյական խոչակ մը* ունենալու համար։

Եւ ի՜նչ խռչակ։ Սակայն իրենը չէ այն, հայունն է, Հայաստանինն է։ Արմենակ փոխ առած է զայն եւ պիտի վերադարձնէ Հաաստանի թանգարանին, ինչպէս վերադարձուցին *իրենցները* մեծ իտալացի արուեստագէտներ, երբ այլեւս պէտք չունեցան անոնց...։

Այդ ընտանի, քաղցր եւ մեծապէս յուզող արուեստագէտ ձայնը յառաջիկայ Կիրակի օր անգամ մը եւս պիտի հնչէ իր բովանդակ թափով, հայ երգի նուիրական պատգամը բերելու մեզի։

***Մատա՜ղ իր ձայնին,***
***Մատա՜ղ իր երգին։***
***Հայրենիք***, 7 ***Մայիս*** 1926, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4261, ***էջ*** 2

# Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ
# ԵՐԳԻՉՆ ՈՒ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏԸ

Յ.

Հայ գեղջական երգերը ժողովրդի բերնէն առնելով անոնք յղկուած եւ մշակուած ձեւի տակ հրապարակ դնողը Կոմիտաս վարդապետն եղաւ։ Բայց այդ երգերը երբեք պիտի չի գտնէին այն խանդավառ ժողովրդականութիւնն ու վարակիչ հրապոյրը եթէ չլինէր Հայ մեծագոյն երգիչը – Ա. Շահ-Մուրատեան։

Շահ-Մուրատեան իբրեւ Հայաստանցի եւ իբրեւ գաւառի զաւակ ապրած է Հայ շինականի չարքաշ կեանքը եւ յուզուած ու ոգեւորուած է նոյն այդ շինական, աշխոյժ համայնքի ինքնատիպ եւ դիւրահաղորդ երգերով։ Նա ենթագիտակից կերպով ծանօթ է այդ ժողովրդի հոգին յուզող ամենանուրբ խաղերուն, շեշտերուն եւ երանգումներուն։ Նա իրեն ժառանգութիւն է ունեցած այս բոլոր անհրաժեշտ յատկանիշները ժողովրդական երգի եւ օժտուած է եղեր հազուագիւտ ձայնով մը որի դիւթական, ոսկի շեշտը եւ ոլորուն, արեւելեան քաղցրութիւնը՝ միայն Հայ միջավայրի բացառիկ տուրքը կարող էր լինել։ Շահ-Մուրատեանը դարձաւ Հայ ժողովրդական երաժշտութեան ամենատաղանդաւոր եւ զմայլելի մեկնաբանն ու տարածիչը։ Դեռ Թիֆլիսի մէջ, իր աշակերտական օրերու իսկ եղած է աշակերտ ու գործակից Հայ եկեղեցական երաժշտութեան մեծ վարպետ Եկմալեանի՝ ղեկավարելով անոր հոչակաւոր խումբը։

1904 թուին Շահ-Մուրատեանը կ'երթայ Փարիզ՝ հոն հետեւելու եւրոպական երաժշտութեան: Այնտեղ նա նախապէս հետեւած է մեծանուն երաժշտագէտ Vincent d'Indy-ի երաժշտական դպրոցի դասընթացքներուն, միաժամանակ աշակերտելով 19-րդ դարու մեծագոյն երգչուհիի Տիկ. Փ. Վիարտոթ-ի: 1906-ին մտած է աշխարհի մեծագոյն երաժշտանոցներէն մին՝ Փարիզի Ազգային քոնսերվաթուարը, ուրկէ մեծ պատիւներով եւ առաջին մրցանակով աւարտած է 1910-ին: Իբրեւ Փարիզի մեծ Օփերայի երգիչ երբ նա իր *տեպիւն* ըրաւ Ֆաուստի դերին մէջ, այնպիսի յաջողութիւն ձեռք բերաւ, որ բոլոր յայտնի երաժշտական քննադատներու խանդավառ գնահատութեան արժանացաւ: Անոնք անոր ոսկի, դիւթական ձայնին մէջ գտան նոր երանգաւորումներ, նոր գիծեր՝ ամբողջովին անծանօթ բոլոր միւս եւրոպական երգիչներու:

Շահ-Մուրատեան երգած է գրեթէ բոլոր ծանօթ եւրոպական երկիրներու մէջ եւ ամենուրեք առարկայ եղած երաժշտական քննադատներու բուռն գնահատանքին: Նա եղած է Անգլիա, Եգիպտոս, Ռուսաստան, Պոլիս, Իզմիր եւ Ամերիկա:

*Հայրենիք*, 8 *Մայիս* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4262, *էջ* 2

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ ԲՈՍԹՈՆԻ ՄԷՋ

ՀԱՅԱՍՏԱՆՑԻ

Մայիս 9-ի կիրակին, Ֆրանքլին սրահին մէջ կայացաւ հայ երգի ամենէն տաղանդաւոր եւ սիրուած ներկայացուցիչին՝ երգիչ Արմենակ Շահ-Մուրատեանի (տենոր) երգահանդէսը, որուն իրենց մասնակցութիւնը բերած էին հայ ծանօթ դաշնակահար Լեւոն Վարդանեան եւ պ. Ֆէօդորովսկի, ռուս ջութակահարը՝ Բոստոն Սիմֆօնի Օրկէստրայի առաջնակարգ նուագածուներէն:

Բաւական մեծ բազմութիւն մը գրաւած էր սրահին աթոռները:

Յայտագրի առաջին մասը յատկացուած էր դաշնակահար Լեւոն Վարդանեանի: Անիկա իր կտորները ընտրած էր Ռախմանինովէն (Prelude) եւ Շոփէնէն՝ Valse մը: Ապա յայտագրին վերջաւորուող մասերուն մէջ՝ դարձեալ երկու կտոր Շոփէնէն Etude եւ Fantastic Impromptu:

Պ. Լ. Վարդանեան նուագեց հազուագիւտ տրամադրութեամբ մը եւ տուաւ իր տաղանդին լաւագոյն ապացոյցը, իր բոլոր նուագներուն համար խլելով գնահատական բուռն ծափեր: Բացի առանձին նուագած կտորներէն, պ. Վարդանեանը իր դաշնակովը ընկերացաւ Շահ-Մուրատեանի երգերուն եւ պ. Ֆէօդորովսկիի նուագին:

Ջութակահար Ֆէօդորովսկին, մէջ ընդ մէջ նուագեց Քրայսլըրէն եւ Սարասատէն մի քանի դասական կտորներ՝ ստեղծելով իր շուրջը խանդավառութիւն:

Անոր *Gypsy Song*-ը ուժգին ծափերով ողջունուեցաւ: Առինքնող է պ. Ֆէօդո-րովսկիի վարպետ ճպոտը: Կ'արժէ որ ան յաճախ երեւի մեր մէջ, տալու համար մեզի իր ջութակին խօսուն հրապոյրները:

Շահ-Մուրատեան իր առաջին երեւումին երգեց դասական կտոր մը – *Caro mio ben*, Giordani-էն, որուն առընթեր նաեւ՝ Պ. Լալօ-ի Serenade – սիրային կտոր մը: Յետոյ երգեց նաեւ կտոր մը Չայկովսկիէն:

Հայերէն երգերէն Շահ-Մուրատեանը այս անգամ երգեց Սրուանձտեանցի *Դլէ եամանը*, Ա. Տէր Ղեւոնդեանի *Ծաղկոցը*, Մ. Եկմալեանի *Քս. պատարագեալը*, որոնք բաւականին խանդավառ տրամադրութիւն ստեղծեցին: Բայց ամենէն աւելի, Կոմիտասի ձայնագրած *Մոկաց Միրզէն* հմայեց հասարակութիւնը:

Սրուանձտեանցի նոր *Ալագեազը* եւ իբրեւ *անքօռ* հայերէններու՝ *Տուն արի*՛ եւ Ռոմանոսի *Ես բլբուլ եմ*, ինչպէս նաեւ *Տույ-տույը* տպաւորիչ էին: *Elegie*-ն զոր ան երգեց ջութակի ընկերակցութեամբ, անցաւ համեմատաբար թոյլ: *Les Pêcheurs de perles* արեւելեան խառնուրդով երգ մը՝ Bizet-էն – սրտագին ընդունուեցաւ: Ամէնէն վերջը, Շահ-Մուրատեան տուաւ իր համբաւուած *Հայաստան* երգը:
***Հայրենիք***, 18 ***Մայիս*** 1926, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4270, ***էջ*** 2

**ՈՒՐԲԱԹ, 14 ՄԱՅԻՍ 1926, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Adams Memorial Church-ին մէջ՝ նուագահանդէս ի նպաստ Նոր Եկեղեցւոյ Ֆոնտին, նախաձեռնութեամբ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ հոգաբարձութեան եւ Տիկնանց Միութեան:

Յայտագիր.

Albert Zabel: *By the soaring*, տաւիղ՝ տիկ. Հելէն Մեհրապեան

Franz Poenitz: *Nordische Ballade*, տաւիղ՝ տիկ. Հելէն Մեհրապեան

George Frideric Handel: *Serse*, 'Ombra mai fu,' մեներգ՝ Բիւզանդ Գաբրիէլ (պաս-պարիթոն)

Charles Gounod: *Avant de quitter ses lieux*, մեներգ՝ Բիւզանդ Գաբրիէլ

Jules Massenet: *Thaïs*, 'Méditation,' թաւջութակ՝ Էմիլիօ Մաէսթրօ

Camille Saint-Saëns: *Le cygne*, թաւջութակ՝ Էմիլիօ Մաէսթրօ

Gaetano Donizetti: *Don Pasquale*, Aria, մեներգ՝ տիկ. Զապէլ Արամ (Փանոսեան) (սոփրանօ)

Julian Howard: Սպանիական երգեր, մեներգ՝ տիկ. Զապէլ Արամ

Փրօֆֆ-Գալֆայեան, *Նոր օրօր*, մեներգ՝ տիկ. Զապէլ Արամ

Արա Պօյաճեան, *Գնաց աշուն եկաւ գարուն*, մեներգ՝ տիկ. Զապէլ Արամ

Francesco Paolo Tosti: *Ideale*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Ալագեազ*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Ալ այլուղս* եւ *Հաբրբան*, զուգերգ՝ տիկ. Զապէլ Արամ

եւ Շ-Մ.

Ռուբէն Որբերեան, *Աղամին անէծքը*, արտասանութիւն՝ տիկ. Ա. Տարսոն

Դաշնակի նուագակցութիւն՝ օր. Միլտրէտ Իսկեան, օր. Ի. Կրէնճ եւ պր. Ճ. Հուարթ

- ***Թղթակից***, «*եկեղեցական գործունէութիւն*», *Հայաստանի կոչնակ*, 15 ***Մայիս*** 1926, ***ԻԶ. տարի***, *Թիւ* 20, *էջ* 758։

- ***Յովհաննէս Աւագեան***, «*Նուագահանդէս*», *Հայաստանի կոչնակ*, 29 ***Մայիս*** 1926, ***ԻԶ. տարի***, *Թիւ* 22, *էջ* 822-823։

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳԵԱՆ

Ամսոյս 14-ի երեկոյին, Նիւ Եորք Էտէմզ Մէմօրիըլ Չըրչի մէջ, Սբ. Գր. Լուսաւորիչ Եկեղեցւոյ հոգաբարձութեան եւ Տիկնանց Միութեան կողմէ, ի նպաստ Նոր Եկեղեցւոյ Ֆօնտին տրուեցաւ նուագահանդէս մը՝ որուն իրենց մասնակցութիւնը բերած էին ծանօթ ու սիրուած արուեստագէտներ Տիկնայք Զապէլ Արամ, Հէլէն Մեհրապ, Ա. Տարսոն եւ Տեարք Ա. Շահ-Մուրատեան, Բ. Գաբրիէլեան եւ Էմիլիօ Մաէսթրօ։ Դաշնակի վրայ արուեստագէտներուն կ'ընկերակցէին Օր. Մ. Իսկեան, Միս Ի. Կրէնճ եւ Տիար Ճ. Հուարթ՝ որ սպանացի տաղանդաւոր ծանօթ երգահան մըն է միանգամայն։

Եկեղեցին լեցուած էր ծայրէ ի ծայր։ Բոլոր նստարանները գրաւուած էին։ Մենք որչափ որ գիտենք, առաջին անգամն էր որ Նիւ Եորքի Հայ Առաքելական Եկեղեցին նուագահանդէս կը սարքէր, ու փորձը ցոյց տուաւ որ ժողովուրդը գիտէ գնահատել նաեւ նուագահանդէսը՝ որուն ընծայած գեղարուեստական վայելքը, մանաւանդ, կարելի չէ բաղդատել ուրիշ ոեւէ վայելքի հետ։ Ու հոս, կ'արժէ շնորհաւորել Տիկնանց Միութիւնն ու Եկեղեցւոյ հոգաբարձութիւնը՝ որ յղացան այսպիսի միտք մը ու գործադրեցին զայն ամենայն յաջողութեամբ։

Իր տեսակին մէջ եզական նուագահանդէս մըն էր՝ որ կրցաւ խանդավառել ներկաները։ Տիկին Մեհրապ՝ որ ծանօթ է արդէն որպէս վարժ տաւղահար, իր արուեստին պահանջած նուիրականութեան հաւատարիմ նուագեց Զապէլի *Պայ տիր սօրինկը* եւ Փօէնիգի *Նօրտիշ պալլատը*։ Տիար Բիւզանդ Գաբրիէլ՝ ծանօթ Պաս-Պարիթօնը երգեց Հանտէլի «Ումպրա մէ ֆիւ»ն (*Սէրս* Օբերայէն) եւ Կունոյի «Ավան տը գիթէ»ն (*Ֆաուսթ* օբերայէն). Մր. Էմիլիօ Մաէսթրէն՝ թաւջութակահարը՝ նուագեց Մասընէի «Մէտիթէյշըն»ը (*Թայիս*) եւ Սան Սաէնսի *Տիը Սուանը*։ Տիկին Զապէլ Արամ՝ երգեց կտոր մը Տօնիզէթթիի *Տօն Փասգալ* զօմիք օբերայէն, երկու սպանական գոհարներ (հեղինակ՝ Ճիւլիըն Հուարթ), Գալֆայեանի *Նոր*

*օրօր*ն ու Պօյաճեանի *Գնաց աշուն եկաւ գարուն*ը։ Տիկին Զապէլ Արամ բոլոր կտորներն ալ երգեց արտակարգ աշխուժով, ապրուած յուզումով, բորբ զգացումով, խոր ըմբռնումով։ Իրօք Տիկին Զապէլ Արամ ունի երգելու, զգալու, մեկնաբանելու, արտայայտելու եղանակ մը՝ որ ինքնայատուկ է, եւ որ միանգամայն դիւթական է, գրաւիչ։ Իր ձայնը քաղցր է, ոլորուն, շեշտը ջինջ է, առոգանութիւնը յստակ, գիտէ տիրել բեմին, ու ասիկա իր յաղթանակն է։ Պրն. Ա. Շահ-Մուրատեան՝ այդ երեկոյ ալ խանդավառեց ներկաները, տիրեց անոնց սրտին երգելով Թօսթիի *Այտիլ*ն ու Կոմիտաս Վարդապետի *Ալագեազ*ը։ Շահ-Մուրատեանի արուեստը ունի առուգութիւն մը՝ որ մշտանորոգ երիտասարդութեան մը պէս կը պահէ իր թարմութիւնը, իր ազնուութիւնը, ու անօրինակ թափով մը կը ներխուժէ մինչեւ հոգիներու խորը՝ յարութեան կոչելով այնտեղ տարիներով թմրած, անշնչացած, երաժշտական ինչպէս նաեւ ազգային զգացումներ։ Ասիկա իր փառքն է։ Տիկին Զապէլ Արամ եւ Տիար Ա. Շահ-Մուրատեան միասնաբար (փոխն ի փոխ) երգեցին *Ալ այլուղ*ն ու *Հաբրբան*ը՝ որոնք մեծ ոգեւորութիւն յառաջ բերին ներկաներուն մէջ։

Տիկին Ա. Տարօն յաջողութեամբ արտասանեց ծանօթ բանաստեղծ Ռ. Որբերեանի *Աղամի անէծք*ը խորագրով քերթուածը։ Տիկին Տարօն իր արտասանութիւնը ըրաւ մերթ մեղմ, մերթ ուժգին, այնպէս՝ ինչպէս կը պահանջէր տեղը։ Անիկա կրցաւ իր շեշտին մէջ դնել ծնողքի մը գուրգուրանքին անսահմանութիւնը ու հօր մը վշտին ահագնութիւնը, ու անէծքի որոտումէն յետոյ, մեր առջեւ շողացուց յարութեան պայծառ արշալոյսը։ Մեզ համար բերկրառիթ է ամերիկահայ բեմին վրայ ողջունել Տիկին Տարօնի պէս յաջող արտասանողներ՝ որոնք կոչուած են խանդավառելու ունկնդիրները եւ անոնց մէջ վառ պահելու սէրը հայ հայրենիքին, հայ գրականութեան ու հայ գրողին հանդէպ։

Ժողովուրդին բուռն ծափահարութեանց առջեւ, բոլոր արուեստագէտներն ալ յայտագրէն դուրս կտորներ հրամցուցին հանրութեան։

***Հայաստանի կոչնակ***, 29 ***Մայիս*** 1926, ***ԻԶ. տարի***, ***Թիւ*** 22, ***էջ*** 822-823

## ԿԻՐԱԿԻ, 16 ՄԱՅԻՍ 1926, ՆԻՒ ՊՐԻԹԸՆ

Նիւ Պրիթընի Lyceum Theatre-ին մէջ՝ նուագահանդէս ի նպաստ Երեւանի վերջին աղէտեալներուն, նախաձեռնութեամբ Հայ Կարմիր Խաչի Նիւ Պրիթընի մասնաճիւղին։

Յայտագիր.

Tommaso Giordani: *Caro mio ben*, մեներգ՝ Շ-Մ.

Francesco Paolo Tosti: *Ideale*, մեներգ՝ Շ-Մ.

*Տէր կեցո*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Վաղարշակ Սրուանձտեանց, *Տըլէ եաման*, մեներգ՝ Շ-Մ.
Անուշաւան Տէր-Ղեւոնդեան, *Ծաղկոց մտայ*, մեներգ՝ Շ-Մ.
*Սարերի հովեր*, մեներգ՝ Շ-Մ.
Կոմիտաս վարդապետ, *Հաբրբան*, զուգերգ՝ տիկ. Սիրանոյշ Տէր Սարգիսեան եւ Շ-Մ.
Alphonse Hasselmas: *Ballade*; *Sérénade*, տաւիղ՝ տիկ. Հելէն Մեհրապեան
Woldemar Loukine: *Intermezzo*, տաւիղ՝ տիկ. Հելէն Մեհրապեան
Albert Zabel: *Légende*, տաւիղ՝ տիկ. Հելէն Մեհրապեան
Joseph Carl Breil: *Song of the Soul*, մեներգ՝ տիկ. Սիրանոյշ Տէր Սարգիսեան
Ալեքսանդր Սպենդիարեան, *Այ վարդ*, մեներգ՝ տիկ. Սիրանոյշ Տէր Սարգիսեան
Ռոմանոս Մելիքեան, *Սեւ կաքաւիկ*, մեներգ՝ տիկ. Սիրանոյշ Տէր Սարգիսեան
Գրիգոր Սիւնի, *Ես սէր կ'ուզեմ*, մեներգ՝ տիկ. Սիրանոյշ Տէր Սարգիսեան
Frédéric Chopin: *Polonaise militaire*, դաշնակ՝ պր. Ֆրանսէզ Քրոլ
Դաշնակի նուագակցութիւն՝ պր. Ֆրանսէզ Քրոլ
- *Հայրենիք*, 11 *Մայիս* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4264, *էջ* 3։
- *Հանդիսատես*, «*Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Հայրենիք*, 28 *Մայիս* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4279, *էջ* 3։

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ՀԱՆԴԻՍԱՏԵՍ

Նիւպրիդյն. – Մայիս 16-ին Լայսիւմ թատրոնին մէջ նախաձեռնութեամբ Հ. Կ. Խաչի Նիւ Պրիթընի մասնաճիւղին տեղի ունեցաւ նուագահանդէս մը մասնակցութեամբ Ա. Շահ-Մուրատեանի, տիկ. Հէլլին Մեհրապեանի եւ տիկ. Սիրանոյշ Տէր Սարգիսեանի։

Հանդէսը սկիզբէն մինչեւ վերջ անցաւ յաջող եւ տպաւորիչ։ Շնորհիւ Հ. Կ. Խաչի, Նիւ Պրիթընի, Հարթֆըրթի եւ շրջակայքի գեղարուեստասէր հայերը պատեհութիւնը ունեցան անգամ մը եւս վայելելու Շահ-Մուրատեանի երգը։ Ան ծափերու տեղատարափին տակ երգեց հետեւեալ երգերը՝ *Caro mio ben*, *Idial*, *Տէր կեցո*, *Հայաստան*, *Դլէ եաման*, *Ծաղկոց մտայ*, *Սարերի հովեր*։ Ինչպէս նաեւ տիկ. Տէր Սարգիսեանի հետ միասին երգեց *Հաբրբան*։ Գաղութիս համար նորութիւն մըն էր տիկ. Մեհրապեանի տաւիղը։ Տիկինը նուագեց Hasselmans-ի *Ballade*-ը եւ *Serenade*-ը, Լուքինի *Intermezzo*, Zabel-ի *Legende*-ը։

Իբրեւ նոր եւ երիտասարդ ուժ՝ նկատելի յաջողութիւն ցոյց տուաւ նաեւ տիկ.

Սիրանոյշ Տէր Սարգիսեանը։ Ան երգեց հետեւեալ երգերը՝ Ժոզէֆ Քարլ Պրիլի *Սօնկ ավ տիը սօլ*, Սպենդիարեանի *Այ վարդը*, Ռ. Մելիքեանի *Վայ կաքաւիկը* եւ Գ. Սիւնիի *Ես սէր կ'ուզեմ*։ Տիկինը կարճ ժամանակամիջոցի մէջ յառաջդիմութիւն է ունեցեր։

Մր. Ա. Ֆրանսէզ Քրօլի ծանօթ դաշնակահարը Հարթֆըրտի՝ բերած էր իր մասնակցութիւնը այս ձեռնարկին։ Ան անհատաբար նուագեց Շօբէնի *Փօլօնէզ միլիթէրը* եւ իր նուագով ընկերացաւ բոլոր երգերուն ու նուագներուն։

Նիւ Պրիթընի Հ. Կ. Խաչը այս նուագահանդէսով ձեռք բերեց բարոյական յաջողութիւն մը։ Յոյս ունինք, որ ան յաճախ կը կրկնէ նմանօրինակ ձեռնարկներ, որոնք դաստիարակիչ դեր մը կը կատարեն մեր հասարակութեան մէջ։

***Հայրենիք***, 28 ***Մայիս*** 1926, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4279, ***էջ*** 3

## ԿԻՐԱԿԻ, 23 ՄԱՅԻՍ 1926, ՈՒՍՏՐ

Ուստրի Tuckerman Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- ***Հայրենիք***, 11 ***Մայիս*** 1926, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4264, ***էջ*** 2։
- ***Հայրենիք***, 20 ***Մայիս*** 1926, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4272, ***էջ*** 2։

## ԿԻՐԱԿԻ, 30 ՄԱՅԻՍ 1926, ՓՐՈՎԻՏԵՆՍ

Փրովիտենսի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- ***Հայրենիք***, 11 ***Մայիս*** 1926, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4264, ***էջ*** 2։

## ՈՒՐԲԱԹ, 4 ՅՈՒՆԻՍ 1926, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Adams Memorial Church-ին մէջ՝ նուագահանդէս ի նպաստ վեթերաններու ֆոնտին, կազմակերպութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան Նիւ Եորքի կոմիտէին։

Յայտագիր.

Կոմիտաս վարդապետ, *Մոկաց Միրզա*, *Չիզ տու, քաշի* եւ *Անտունի*, մեներգ՝ Շ-Մ.

Édouard Lalo: *Sérénade*, մեներգ՝ Շ-Մ.

Pyotr Tchaikovsky: *Déception*, մեներգ՝ Շ-Մ.

Jean Cras: *Serviteurs, n'apportez pas les lampes*, մեներգ՝ տիկ. Ռոզ Զուլալեան (քնթրալթօ)

Camille Saint-Saëns: *Samson et Dalila*, 'Mon cœur s'ouvre à ta voix,' մեներգ՝ տիկ. Ռոզ Զուլալեան

Գրիգոր Սիւնի, *Ո՞վ դուք սարեր*, մեներգ՝ տիկ. Ռոզ Զուլալեան

Ռոմանոս Մելիքեան, *Տո՛ւյ, տո՛ւյ*, *Վարդը* եւ *Ինչո՞ւ պինկէօլ*, մեներգ՝ տիկ. Ռոզ Զուլալեան

Ռոմանոս Մելիքեան, *Ուռենի*, զուգերգ՝ տիկ. Ռոզ Զուլալեան եւ Շ-Մ.

Արա Պօյաճեան, *Գնաց աշուն*, զուգերգ՝ տիկ. Ռոզ Զուլալեան եւ Շ-Մ.

*Potery Elegy*; *French Dance*, թաւջութակ՝ Mikhail Bukinik

Mikhail Bukinik: *Tristesse*; *Danse orientale*, թաւջութակ՝ Mikhail Bukinik

Դաշնակի նուագակցութիւն՝ Mischa Fisherman

- *Հայրենիք*, 2 *Յունիս* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4282, *էջ* 4։

- *Յովհաննէս Աւագեան*, «*Նուագահանդէս*», *Հայաստանի կոչնակ*, 19 *Յունիս* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 25, *էջ* 917-918։

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳԵԱՆ

Յունիս 4-ին Նիւ Եորք, Էտէմզ Մէմօրիըլ Չըրչի մէջ տեղի ունեցաւ Հ. Յ. Դաշնակցութեան Նիւ Եորքի կոմիտէի կողմէ սարքուած նուագահանդէսը՝ ի նպաստ վեթերաններու ֆոնտին։ Կը մասնակցէին յայտնի արթիստներ. – Պրն. Ա. Շահ-Մուրատեան (թէնօր, Բարիզի Կրէնտ Օբերայէն), Տիկին Րօզ Զուլալեան (քօնթրալթօ) եւ Միզաէլ Պուքինիք (թաւջութակահար)։ Արթիստներուն դաշնակի վրայ կ'ընկերակցէր Միշա Ֆիշըրմըն։

Պրն. Շահ-Մուրատեան՝ որու մասին յաճախ յայտնած ենք մեր կարծիքը այս սիւնակներուն մէջ, նոյն երեկոյ, առաւել քան երբեք՝ իր *մուտ*ին, բարւոք *տրամադրութեան* մէջ էր, բառին գեղարուեստական առումովը։ Անիկա տիրականօրէն երգեց *Մոկաց Միրզէ*ն, ինչպէս նաեւ *Զիզ տու, քաշի* երգերը՝ երեւան բերելով անոնց բովանդակ յատկանիշները՝ իրենց նրբին մանրամասնութիւններով։ Էտ. Լալոյի Սէրէնատն ու Չայքովսքիի *Տիսէփիշըն*ն ալ երգուեցան արժանի արուեստով։ *Անտունի*ին մէջ աչքի զարնող սայթաքումները պէտք է յաւէտ վերագրել դաշնակի վրայ ընկերակցող արթիստին՝ որ, երեւի, ծանօթ չէր կտորին, մինչ միւս կտորներուն, մանաւանդ եւրոպական եղանակներու մէջ իր պաշտօնը կը կատարէր ճարտարութեամբ։

Տիկին Զուլալեան երգեց Քրասի *Սէրվիթէօր, նափօրթէ փա լէ լամփ*, Սէն Սաէնսի *Մօն քէօր սուվր ա թա վուա*, ինչպէս նաեւ Գ. Սիւնիի *Ո՜վ դուք սարեր* եւ Ռ. Մելիքեանի *Տո՛ւյ, տո՛ւյ*, *Վարդ* եւ *Ինչո՞ւ պինկէօլ*ը։ Արդարեւ Տիկին Զուլալեան ունի սքանչելի ձայն՝ որ վերին խազերուն մէջ իսկ կը պահէ անօրինակ յստակութիւն մը, այնպէս որ ունկնդիր ականջներուն աւելի հեշտին կը հնչէն վերին խազերը, քան վարինները, ուր ձայնը կարծես ակնկալուածէն աւելի թաւ թօն մը

կ'առնէ։ Եթէ Տիկին Զուլալեանի ստեղծել կրցած հաղորդական մթնոլորտին տաքութիւնը ըլլար այն համեմատութեամբ, ինչ որ է իր ձայնին ազնիւ ատաղձը ու իր ձեռք բերած գովելի մարզանքը, անտարակոյս տպաւորութիւնը կ'ըլլար անհամեմատ աւելի խոր։ Տարակոյս չիկայ, սակայն, որ Տիկին Զուլալեան կոչուած է նշուլագեղ փայլ մը տալու հայ երաժշտական բեմին՝ որ տակաւ կը պայծառանայ նորահաս տաղանդներու երեւումովը։

Պրն. Ա. Շահ-Մուրատեան եւ Տիկին Ռոզ Զուլալեան միասնաբար երգեցին Ռ. Մելիքեանի *Ուռենի*ն, եւ Ա. Պօյաճեանի *Գնաց աշունը*՝ որոնց վերջինը՝ մանաւանդ՝ մեծապէս խանդավառեց ունկնդիր հասարակութիւնը։

Մ. Պուքինիք նուագեց *Փաթըրի էլէճի*ն եւ *Ֆրէնչ տէնսը*, Սէն Սաէնսի *Տիը Սուանը* եւ իր հեղինակութենէն ալ երկու կտորներ. – *Թրիսթէս* եւ *Տանս օրիանթալ*։

Նուագահանդէսը՝ ընդհանուր առմամբ՝ թողուց հաճելի տպաւորութիւն, միակ գանգատը այն էր որ յայտարարուած ժամանակէն շատ ուշ սկսաւ։
*Հայաստանի կոչնակ*, 19 *Յունիս* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 25, *էջ* 917-918

**ԿԻՐԱԿԻ, 13 ՅՈՒՆԻՍ 1926, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Y.W.C.A.-ի սրահին մէջ՝ Մինաս Չերազի գործունէութեան 60-ամեայ յոբելենական հանդէսը, նախագահութեամբ Պատրիկ Կիւլպէնկեանի։ Խօսք՝ Արշակ Մահտէսեան, Յովհաննէս Աւագեան եւ Հայկ Խօճասարեան։ Մեներգ՝ Շ-Մ. եւ օր. Արաքսի Յակոբեան (սոփրանօ)։ Դաշնակի եւ ջութակի նուագածութիւն՝ օր. Միլտրիտ եւ տոքթ. Լ. Իսկեան։

- *Հայրենիք*, 5 *Յունիս* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4285, *էջ* 2։

- *Հայաստանի կոչնակ*, 5 *Յունիս* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 23, *էջ* 864։

- *Գրասէր*, «*Չերազի յոբելեանը Նիւ Եորքի մէջ*», *Հայաստանի կոչնակ*, 26 *Յունիս* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 26, *էջ* 950-951։

## ՉԵՐԱԶԻ ՅՈԲԵԼԵԱՆԸ ՆԻՒ ԵՈՐՔԻ ՄԷՋ
**(հատուած)**

ԳՐԱՍԷՐ

Օրուան հանդէսին, ի պատիւ Յոբելեարին, ազնուաբար իրենց տաղանդը նուիրած էին տաղանդաւոր երգիչներ Պ. Ա. Շահ-Մուրատեան եւ Օր. Արաքսի Յակոբեան, որոնք երկերկու հայ երգ երգեցին ներկաները խանդավառելով, ինչպէս նաեւ Օր. Միլտրիտ եւ Տք. Լ. Իսկեան, որոնք, դաշնակի վրայ եւ ջութակով

հանդէսին գեղարուեստական շնորհք մը կ’աւելցնէին:
*Հայաստանի կոչնակ*, 26 *Յունիս* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 26, *էջ* 950-951

**ԿԻՐԱԿԻ, 20 ՅՈՒՆԻՍ 1926, ՓՈՐԹԼԱՆՏ**

Փորթլանտի Pythian Temple Hall-ին մէջ՝ երգահանդէս, նախաձեռնութեամբ Հ. Կ. Խաչի Փորթլանտի մասնաճիւղին: Կը մասնակցի Շ-Մ.:

- «*Հայ Կարմիր Խաչ*», *Հայրենիք*, 5 *Յունիս* 1926, 28-*րդ տարի*, *Թիւ* 4285, *էջ* 4:

**ՕԳՈՍՏՈՍ (ԱՌԱՋԻՆ ՇԱԲԱԹ) 1926, ՆԻՒ ԵՈՐՔ-ՖՐԱՆՍԱ**

Նիւ Եորքէն նաւ կը նստի երթալու Ֆրանսա:

- *Հայաստանի կոչնակ*, 14 *Օգոստոս* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 33, *էջ* 1177:

**ՈՒՐԲԱԹ, 17 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1926, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Adams Memorial Church-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

Կոմիտաս վարդապետ, *Ծիրանի ծառ*, *Գութանի երգ*, *Չինար*, մեներգ՝ Շ-Մ., դաշնակի նուագակցութեամբ

Կոմիտաս վարդապետ, *Ով զարմանալի*, *Գետ մի զարհուրիր*, *Այսօր ձայնն հայրական*, մեներգ՝ Շ-Մ., երգեհոնի նուագակցութեամբ

*Մոկաց Միրզէ*, *Արիք հայեր*, մեներգ՝ Շ-Մ., դաշնակի նուագակցութեամբ

Վաղարշակ Սրուանձտեանց, *Տըլէ եաման*, մեներգ՝ Շ-Մ., դաշնակի նուագակցութեամբ

Xavier Leroux: *Le Nil*, մեներգ՝ Շ-Մ., ջութակ՝ Fima Fidelman, դաշնակի նուագակցութեամբ

Alexander Grechaninov: *Berceuse*, մեներգ՝ Շ-Մ., երգեհոնի նուագակցութեամբ

Բարսեղ Կանաչեան, *Օրօր*, մեներգ՝ Շ-Մ., երգեհոնի նուագակցութեամբ

Սիպիք, *Փօէմ*, ջութակ՝ Fima Fidelman, դաշնակի նուագակցութեամբ

Դաշնակի եւ երգեհոնի նուագակցութիւն՝ Sandro Corona

- *Հայաստանի կոչնակ*, 18 *Դեկտեմբեր* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 51, *էջ* 1732:

- *Յովհաննէս Աւագեան*, «*Երգահանդէս*», *Հայաստանի կոչնակ*, 25 *Դեկտեմբեր* 1926, *ԻԶ. տարի*, *Թիւ* 52, *էջ* 1775:

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳԵԱՆ

Հանրածանօթ սիրուած երգիչ Տիար Արմենակ Շահ-Մուրատեանի երգահան-

դէսը տեղի ունեցաւ Նիւ Եորք, Դեկտ. 17-ի երեկոյին, Էտէմս Մէմօրիըլ Չըրչի մէջ: Ներկայ էր երաժշտասէրներու բազմութիւն մը:

Տիար Շահ-Մուրատեան այս անգամ հանրութեան ներկայացաւ նոր յայտագրով մը. երգեց Կոմիտաս Վարդապետի *Ծիրանի ծառը*, *Գութան երգը*, *Չինարը*, Սրուանձտեանցի *Տըլէ եամանը*, Ք. Լըրուի *Նեղոսը*՝ ընկերակցութեամբ ջութակի, Կրէչանինօֆի եւ Կանաչեանի օրրերգները եւ դարձեալ Կոմիտաս Վարդապետի ձայնագրած *Ով զարմանալի*, *Գետ մի զարհուրիր* ու *Այսօր ձայնն հայրական* շարականները:

Շահ-Մուրատեանի ձայնը՝ մանաւանդ երգահանդէսի վերջին մասին՝ իր բնական, հաճելի *մուտ*ին մէջ էր: Ան պահեց իր ուժգին թօնը մասնաւորապէս *Մոկաց Միրզէ*ն եւ *Արիք հայեր* կտորներուն մէջ՝ որոնք մեծապէս խանդավառեցին ունկնդիրները: Օրրերգները եւ շարականները երգուեցան փողաւոր երգեհոնի ընկերակցութեամբ, ինչ որ, դժբաղդաբար, որոշ չափով խեղդեց երգիչին ձայնը: Այս կտորները՝ Շահ-Մուրատեանի արուեստին բերմամբը մանաւանդ՝ աւելի ազդու պիտի ըլլային եթէ երգուէին պարզ երգեհոնի ընկերակցութեամբ: Փողաւոր երգեհոնը *Քօրըս* երգեցողութեան համար տեղին է անշուշտ, բայց այս պարագային պարզ երգեհոնը պիտի ծառայէր առաւել եւս դուրս բերելու երգչին արուեստը՝ որ իրաւամբ գնահատուած է ոչ միայն ժողովրդական այլ եւ եկեղեցական կտորներու մէջ:

Ֆիմա Ֆիտըլմէն՝ (Պէրլինի երաժշտանոցէն) ջութակի վրայ նուագեց մէկ քանի կտորներ՝ որոնց մէջ յատկանշական էր մանաւանդ Սիպիքի *Փօէմ*ը: Իրապէս հաճոյք էր ունկնդրել այս ջութակահարին՝ որուն արուեստը գոյն ունէր ամենէն աւելի: Ֆիտըլմէն ունի լաւ թէքնիք:

Ըստ պատշաճի դաշնակի եւ կամ երգեհոնի վրայ արթիսթներուն կ'ընկերակցէր դաշնակահար-երգահան Սանտրօ Քօրօնա:

***Հայաստանի կոչնակ***, 25 ***Դեկտեմբեր*** 1926, ***ԻԶ. տարի***, ***Թիւ*** 52, ***էջ*** 1775

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 21 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1926, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Հայ Կրթական Հիմնարկութեան ժողովասրահին մէջ՝ դասախօսական ժողով: Տեղի կ'ունենան երկու դասախօսութիւններ.

1. *Հայ երաժիշտներն ու անոնց գործունէութիւնը*, դասախօս՝ Շ-Մ., մեներգ՝ օր. Լուսի Պօյաճեան եւ տիկ. Հայկանոյշ Բագրատունի, ջութակ՝ Արա Պօյաճեան:

2. *Ուաշինկթըն Ըրվինկ եւ անոր պատգամը*, դասախօս՝ տոքթ. Հրանդ Մատթէոսեան:

**- *Հայաստանի կոչնակ***, 18 ***Դեկտեմբեր*** 1926, ***ԻԶ. տարի***, ***Թիւ*** 51, ***էջ*** 1757:

**- *Լրատու***, ***«Հայ ազգային կեանք»***, ***Հայաստանի կոչնակ***, 1 ***Յունուար*** 1927, ***ԻԷ. տարի***, ***Թիւ*** 1, ***էջ*** 28-29:

*- Լրատու*, «*Հայ ազգային կեանք*», *Հայաստանի կոչնակ*, 8 *Յունուար* 1927, *Իէ. տարի*, *Թիւ* 2, *էջ* 54։

*- Լրատու*, «*Հայ երաժշտագէտներն ու իրենց գործունէութիւնը, Ուաշինկթըն Իրվինկ*», *Հայրենիք*, 14 *Յունուար* 1927, 28-*րդ տարի*, *Թիւ* 4470, *էջ* 4։

## ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ԿԵԱՆՔ

ԼՐԱՏՈՒ

Դեկտ. 21, Երեքշաբթի իրիկուն, ըստ սովորականին տեղի ունեցաւ Հայ Կրթական Հիմնարկութեան դասախօսական ժողովը, սովորական ժողովասրահին մէջ, ուր ներկայ էր հոծ բազմութիւն մը։

Մեր տաղանդաւոր *թէնոր* Պր. Շահ-Մուրատեան – որ իր բարձրօրէն կիրթ ձայնին ինքնատիպ հմայքով հայ երգին ճաշակն ու սէրը արծարծեր է հեռաւոր այս գաղութին մէջ – խօսեցաւ *Հայ երաժշտագէտներն ու անոնց գործունէութիւնը* նիւթին շուրջ։

Պարզ ու առանց բառերը ծամծմելու, Պր. Շահ-Մուրատեան պատմականն ըրաւ թէ ինչ փուլերէ անցնելով հայկական ձայնագրութիւնը մտած է իր արդի ձեւին մէջ, եւրոպականացած տարազով մը, եւ մի առ մի վեր առաւ, ընդհանուր գծերու մէջ, այն յամառ աշխատանքն ու դժուարութիւնները, որոնց ի գին հայ արուեստին անխոնջ մշակները ձեռք բերած են այդ գեղեցիկ արդիւնքը։

Արդարեւ, հաճելի էր լսել Պր. Շահ-Մուրատեանէն մեր երաժշտութեան անմոռաց վարպետներու – ինչպէս, ի մասնաւորի, Պապա Համբարձում Լիմոնճեանի, Կարա-Մուրզայի, Մակար Եկմալեանի, Մելիքեանի, Կոմիտաս Վրդտ.ի եւ այլոց մասին, որոնցմէ ոմանց հետ իր անձնական շփումն եւ ընկերակցութիւնը կենդանի գոյն մը կուտային իր խօսքերուն։ Յարգելի երգիչը աշխատեցաւ ներկայացնել այս ամէնը իրենց իսկական արժէքներով։ Ու արդարեւ որքան պէտք ունինք ճանչնալու մեր ազգային դէմքերն ու դէպքերը ինչպէս որ են, իրենց բուն դերին ու արժանիքին մէջ։

Տք. Հրանդ Մատթէոսեան, որ յատկապէս հրաւիրուած էր Ֆիլատելֆիայէն, դասախօսեց իրեն նիւթ ունենալով *Ուաշինկթըն Իրվինկ եւ անոր պատգամը*։

Յարգելի դասախօսը նկարեղ ոճով մը եւ պատկերալից դրուագներով վերլուծեց Իրվինկի *բրոֆէշընըլ* կեանքը, իբր հրապարակագիր, երգիծաբան, ու գրագէտ, ժամանակակից եւ մրցակից, բայց բարեկամ, Ուոլթըր Սքաթի եւ Չարլզ Տիքընզի պէս հանրածանօթ հեղինակներու։ Եւ այս բարացուցումներուն մէջէն, Տք. Մատթէոսեան, այնքան ճկուն դարձուածքներով, գեղեցիկ դասեր հանեց մեր անհատական եւ հաւաքական կեանքին համար։

Դուն ուրեք դասախօս մը կը յաջողի խորապէս հրապուրիչ ընծայել նիւթ մը, որ բոլորովին օտար է շատերուն, ընդարձակ է ինքն իր մէջ ու շատ դժուարին, այնքան խտացուած ու սեղմ ձեւի մը տակ ինչպէս կարողացաւ ընել յարգելի դասախօսը, սուղ ժամանակի մը միջոցին, պրիսմակելով Ըրվինկի կեանքն ու գրական գործունէութիւնը իր հարազատ երանգներուն:

Դասախօսական այս օգտաշատ ժողովին փայլն աւելցուց ջութակահար Արա Պօյաճեան, որուն ջութակահարած երկու դասական կտորներուն կ'ընկերանար իր քոյրը Օր. Լուսի Պօյաճեան դաշնակի վրայ:

***Հայաստանի կոչնակ***, 1 ***Յունուար*** 1927, ***Իէ. տարի***, ***Թիւ*** 1, ***էջ*** 28-29

## ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ԿԵԱՆՔ

ԼՐԱՏՈՒ

Հայ Կրթական Հիմնարկութեան Դեկտ. 21, Երեքշաբթի իրիկուան դասախօսութեան մասին՝ մեր տուած տեղեկութեան մէջ՝ ակամայ վրիպած էինք յիշել նաեւ Թաշճեանի ու Գ. Սիւնիի անունները, որոնց իբր երաժշտագէտ ունեցած գործունէութիւնը՝ մեծապէս դրուատեց Պր. Շահ-Մուրատեան իր դասախօսութեան մէջ:

***Հայաստանի կոչնակ***, 8 ***Յունուար*** 1927, ***Իէ. տարի***, ***Թիւ*** 2, ***էջ*** 54

## ՀԱՅ ԵՐԱԺՇՏԱԳԷՏՆԵՐՆ ՈՒ ԻՐԵՆՑ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ ՈՒԱՇԻՆԿԹԸՆ ԸՐՎԻՆԿ

ԼՐԱՏՈՒ

Նիւ Եորք. – Դեկտ. 21 – երեքշաբթի իրիկուն, ըստ սովորականին տեղի ունեցաւ Հայ Կրթական Հիմնարկութեան դասախօսական ժողովը, սովորական ժողովասրահին մէջ, ուր ներկայ էր հոծ բազմութիւն մը:

Մեր տաղանդաւոր *թէնըր* Պ. Շահ-Մուրատեան – որ իր բարձրօրէն կիրթ ձայնին ինքնատիպ հմայքով հայ երգին ճաշակն ու սէրը արծարծած է հեռաւոր այս գաղութին մէջ – խօսեցաւ *Հայ երաժշտագէտներն ու անոնց գործունէութիւնը* նիւթին շուրջ:

Պարզ ու առանց բառերը ծամծմելու, պ. Շահ-Մուրատեան պատմականն ըրաւ թէ ինչ փուլերէ անցնելով հայկական ձայնագրութիւնը մտած է իր արդի ձեւին մէջ, եւրոպականացած տարազով մը, եւ մի առ մի վեր առաւ, ընդհանուր

գծերու մէջ, այն յամառ աշխատանքն ու դժուարութիւնները, որոնց ի գին հայ արուեստին անխոնջ մշակները ձեռք բերած են այդ գեղեցիկ արդիւնքը:

Արդարեւ, հաճելի էր լսել պր. Շահ-Մուրատեանէն մեր երաժշտութեան անմոռաց վարպետներու – ինչպէս, ի մասնաւորի, Պապա Համբարձում Լէմոնճեանի, Կարա-Մուրզայի, Մակար Եկմալեանի, Ռ. Մելիքեանի, Կոմիտաս Վարդապետի եւ այլոց մասին, որոնցմէ ոմանց հետ իր անձնական շփումն եւ ընկերակցութիւնը կենդանի գոյն մը կուտային խօսքերուն: Յարգելի երգիչը աշխատեցաւ ներկայացնել այս ամէնը իրենց իսկական արժէքներով: Ու արդարեւ որքան պէտք ունինք ճանչնալու մեր ազգային դէմքերն ու դէպքերը ինչպէս որ են, իրենց բուն դերին ու արժանիքին մէջ:

Տօքթ. Հրանդ Մատթէոսեան, որ յատկապէս հրաւիրուած էր Ֆիլատէլֆիայէն, դասախօսեց իրեն նիւթ ունենալով *Ուաշինկթըն Ըրվինկ եւ անոր պատգամը*:

Յարգելի դասախօսը նկարեղ ոճով մը եւ պատկերալից դրուագներով վերլուծեց Ըրվինկի փրոֆէշընլ կեանքը, իբր հրապարակագիր, երգիծաբան ու գրագէտ, ժամանակակից եւ մրցակից, բայց բարեկամ, Ուալթըր Սքաթի եւ Չարլզ Տիքընզի պէս հանրածանօթ հեղինակներու: Եւ այս բացատրութիւններուն մէջէն, Տօքթ. Մատթէոսեան, այնքան ճկուն դարձուածքներով, գեղեցիկ դասեր հանեց մեր անհատական եւ հաւաքական կեանքին համար:

Դուն ուրեք դասախօս մը կը յաջողի խորապէս հրապուրիչ ընծայել նիւթ մը, որ բոլորովին օտար է իր ունկնդիրներուն, ընդարձակ է ինքն իր մէջ ու շատ դժուարին, այնքան խտացուած ու սեղմ ձեւի մը տակ, ինչպէս կարողացաւ ընել յարգելի դասախօսը, սուղ ժամանակի մը միջոցին, պրիսմակելով Ըրվինկի կեանքն ու գրական գործունէութիւնը իր հարազատ երանգներուն:

Դասախօսական այս օգտաշատ ժողովին փայլն աւելցուց ջութակահար Արա Պօյաճեան, որուն ջութակահարած երկու դասական կտորներուն կ'ընկերանար իր քոյրը՝ Օր. Լուսի Պօյաճեան դաշնակի վրայ:

***Հայրենիք***, 14 ***Յունուար*** 1927, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4470, ***էջ*** 4

**1926, ՆԻՒ ԵՈՐՔ**

ACM-ի համար Նիւ Եորքի մէջ կը ձայնագրէ 4 մեներգ՝ ջութակի, ֆլիւթի եւ դաշնակի նուագակցութեամբ: Բոլորն ալ 78 rpm: Ահաւասիկ անոնց ամբողջական ցանկը.

1. *Ով զարմանալի*
ACM 1 (matrix: 171-1)
2. Վաղարշակ Սրուանձտեանց, *Նոր ալագեազ*
ACM 2 (matrix: 172-1)
3. Վաղարշակ Սրուանձտեանց, *Տըլէ եաման*

ACM 3 (matrix: 173-1)
4. Կոմիտաս վարդապետ, *Ես սարէն կուգայի*
ACM 4 (matrix: 174-1)

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 22 ՓԵՏՐՈՒԱՐ 1927, ՆԻՒՈՒԱՐՔ**

Նիւուարքի Junior Auditorium Hall-ին մէջ՝ երգահանդէս եւ պարահանդէս ի նպաստ Շիրակի աղէտեալներուն, նախաձեռնութեամբ Հ. Կ. Խաչի Նիւուարքի մասնաճիւղին:

Գեղարուեստական բաժինի յայտագիր.

Ռոմանոս Մելիքեան, *Պլպուլ եմ* եւ *Բարի լուսին*, մեներգ՝ Շ-Մ.

Tommaso Giordani: *Caro mio ben*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Ալ այլուղս*, մեներգ՝ Շ-Մ.

*Ջիգ տոու քաշի* եւ ուրիշ երգեր, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Վայրի ծաղիկ*, մեներգ՝ տիկ. Ալիս Թոնամեան (սոփրանօ)

Կոմիտաս վարդապետ, *Ես սարէն կուգայի*, մեներգ՝ տիկ. Ալիս Թոնամեան

Giuseppe Verdi: *La forza del destino*, ‘Pace, pace, mio Dio’, մեներգ՝ տիկ. Ալիս Թոնամեան

Arcangelo Corelli: *Folie d’Espagne*, ջութակ՝ Արա Պօյաճեան, դաշնակ՝ օր. Լուսի Պօյաճեան

Tivadar Nachèz: *Romance*, ջութակ՝ Արա Պօյաճեան, դաշնակ՝ օր. Լուսի Պօյաճեան

Franz Ries: *Perpetuum mobile*, ջութակ՝ Արա Պօյաճեան, դաշնակ՝ օր. Լուսի Պօյաճեան

Կոմիտաս վարդապետ, *Ալ այլուղս*, զուգերգ՝ տիկ. Ալիս Թոնամեան եւ Շ-Մ.

- *Հայրենիք*, 19 *Փետրուար* 1927, 28-*րդ տարի*, *Թիւ* 4501, *էջ* 4:
- *Թղթակից*, «*Հ. Կ. Խաչի Հանդէսը*», *Հայրենիք*, 13 *Մարտ* 1927, 28-*րդ տարի*, *Թիւ* 4519, *էջ* 3:

## Հ. Կ. ԽԱՉԻ ՀԱՆԴԷՍԸ

ԹՂԹԱԿԻՑ

ՆԻՒԱՐՔ. – Ամէն տարուան պէս այս տարի եւս քաղաքիս Հ. Կ. Խաչի մասնաճիւղի նախաձեռնութեամբ – ի նպաստ Շիրակի աղէտեալներուն – կազմակերպուած երգահանդէս-պարահանդէսը տեղի ունեցաւ 22 փետր., 1927, Junior Auditorium սրահին մէջ:

Ժամը չորսին արդէն սրահը լեցուած էր հանդիսականներու բազմութեամբ մը, երբ ատենապետ ընկեր Ա. Շալճեանի կողմէ բեմ հրաւիրուեցաւ Տիկ. Ա. Աhաբոնեան, որ մեկին կերպով բացատրեց Հ. Կ. Խաչի նպատակը, յստակ կերպով պատկերացուց այն մեղուաջան աշխատանքը որ թափուած է ու կը թափուի, ըլլայ Ամերիկայի, ըլլայ արտասահմանի Հ. Կ. Խաչի մասնաճիւղերուն կողմէ, հայութեան թշուառ բեկորներու ցաւն ու վիշտը ամոքելու եւ ազգային կեանքի մէջ գոյութիւն ունեցող ծով կարիքին, կարելի եղած չափով, դարման տանելու համար։ Յարգելի տիկինը յայտնեց, թէ Հ. Կ. Խաչի կենսունակութիւնն ու արդիւնաւոր գործունէութիւնը, հայ իգական սեռի զոհաբերել գիտցող բարձր ոգիին եւ ազգասիրական վեհ զգացումով տոգորուած ըլլալուն ամենազեղեցիկ փաստն է։

Բանախօսութենէն վերջ սկսաւ հանդէսին գեղարուեստական մասը։

Սիրուած երգիչ պ. Ա. Շահ-Մուրատեան երգեց, հայկական ու եւրոպական մօտաւորապէս տասը կտորներ։

Ի՜նչ մոգական ու խորհրդաւոր ազդեցութիւն ունի երգը եւ նուագը մարդկային հոգիին վրայ։ Հանդէսն սկսելէն առաջ սրահի չորս բոլորտիքը աչք պտտցուցի եւ տեսնելով ներկաներուն մէջ երեխաներու եւ տղոց բաւական պատկառելի թիւ մը, ինքնիրենս ըսի. «*Խէրը* տես այս գեղարուեստական բաժնին»։

Սխալած էի սակայն իմ այս եզրակացութեանս մէջ։ Պ. Շահ-Մուրատեանի իւրաքանչիւր երգի տեւողութեան, ամբողջ սրահը մէկ մարդու պէս, շունչը բռնած մտիկ կ'ընէր կրօնական երկիւղածութեամբ, յուզումով, եւ հոգեկան անսահման գոհունակութեան մը արտայայտութեամբ։ Իւրաքանչիւր երգ վերջանալուն ծայր կուտար խանդավառ ու որոտընդոստ ծափահարութիւն մը, որ վերջ կը գտնէր միայն տաղանդաւոր երգիչին բեմին վրայ կրկին եւ կրկին երեւնալովը։

Թէպէտ ըստ ծրագրի, պ. Շահ-Մուրատեան պիտի երգէր Ռ. Մելիքեանի *Պլպուլ իմ* եւ *Բարի լուսին*, Giordani *Caro mio ben* ինչպէս նաեւ *Ալ այլուխս*, սակայն ան ներկաներու անսահման համակրանքի արտայայտութեան եւ զինք կարելի եղածին չափ շատ լսելու փափաքին ընդառաջ երթալով երգեց ծրագրէն դուրս չորս հինգ հայկական երգեր եւս։

*Զիզ տու քաշի* երգի վերջաւորութեան մասնաւորապէս, ամբողջ սրահը կրակ առած վառօդի ամբարի մը պէս պայթեցաւ որոտընդոստ ծափերու հեղեղով մը։ Ժողովուրդը կ'ուզէր կրկին ու կրկին լսել առանց ըմբռնելու երգիչին վիճակը։

Այդ պահուն յիշեցի հետեւեալ միջադէպը։ 1912-ին, Կոմիտաս վարդապետի խումբը երգահանդէս մը սարքած էր Բերայի մէջ, որուն իր մասնակցութիւնը կը բերէր նաեւ պ. Շահ-Մուրատեան։ Սրահը լեցուած էր հայ եւ եւրոպացի հանդիսականներու խուռն բազմութեամբ մը։ Պ. Շահ-Մուրատեանի իւրաքանչիւր երգը սրահը կ'ելեքտրականացնէր, եւ ժողովուրդը encoreի իր արտայայտութիւնը կ'ընէր ծափահարելով, սուլելով, բացականչելով եւ տաշտակամածը ծեծելով։ Պ.

Շահ-Մուրատեան ծրագրի իր բաժինը լրացնելէ վերջ, Կոմիտաս վարդապետ ըսաւ. «Հայրենակիցներ, ձեր մէջէն ծնունդ առնող այս հանճարին յարգը գիտցէք, ան artiste է եւ պէտք չէ որ ձեր encoreներով զինք ստիպէք դարձեալ երգելու, երբ ան ինքզինք յոգնած կը զգայ:»

Գեղարուեստական բաժնին առանց նիւթական վարձատրութեան իրենց մասնակցութիւնը բերած էին նաեւ տիկ. Ալիս Թռնամեան եւ պ. Արա Պօյաճեան ու իր քոյրը օր. Լուսի Պօյաճեան:

Տիկին Թռնամեան երգեց Ռ. Մելիքեանի *Վայրի ծաղիկ*ը եւ Կ. Վարդապետի *Ես վերէն կուգայի*ն ինչպէս նաեւ Verdi-ի ‘Pace, pace, mio Dio’: Այս վերջին կտորին մէջ մասնաւորապէս յարգելի տիկինը ցոյց տուաւ իր գնահատելի ընդունակութիւնն ու յստակ եւ վճիտ ձայնի ելեւէջները: Ժողովուրդը ծափահարեց զինք ամէն անգամ մասնաւոր խանդավառութեամբ:

Պօյաճեան երիտասարդ զոյգը, Պ. Արա եւ Օր. Լուսի, չափազանց յաջող կերպով նուագեց Corelli-ի *Folies d'Espagne*, T. Nachez-ի *Romance*-ը, F. Ries-ի *Perpetuum mobile*-ը: Պ. Արա՝ հակառակ իր չափազանց երիտասարդ տարիքին, ջութակի վրայ ցոյց կուտայ արտակարգ յաջողութիւն մը, որ իր մէջ կը ցուցնէ ապագայի հայ տաղանդաւոր գեղարուեստագէտը:

Ամենէն վերջ Տիկին Թռնամեան եւ պ. Շահմուրատեան երգեցին *Ալ այլուխս* (Կ. Վարդապետ): Հանդիսականները գինովցած, իրենց հրամցուած այնքան ճոխ եւ ընտրուած երգի եւ նուագի ազդեցութենէն, ծափահարեցին երկա՜ր, շատ երկար:

Տիկին Թռնամեան եւ օր. Պօյաճեան ունեցան ծաղկեփունջեր հանդէսի կազմակերպիչ յանձնախումբին կողմէ, երկուքն ալ այդ փունջերը ետ վերադարձուցին՝ հանդիսականներուն մէջ, նպատակին ի նպաստ ծախելու համար:

Հանդէսի վերջաւորութեան տեղի ունեցաւ տասն եւ հինգ հատ հինգ տարեկանէն վար փոքրիկներու, գեղեցկութեան եւ կոկիկ հագուստի ցուցադրութիւնը: Ներկաներու գնահատանքով գեղեցկութեան մրցանակը շահեցաւ Ծիլվան Ոսկերիչեան, իսկ կոկիկ հագուելու մրցանակը տրուեցաւ փոքրիկն Պրուչեանի: Պարն սկսաւ ժամը 8.30-ին եւ վերջացաւ ժամը 11.30-ին:

Այս հանդէս-պարահանդէսէն գոյացաւ բաւական կոկիկ գումար մը:

Շնորհաւորութեան արժանի են Նիւարքի Հ. Կ. Խաչի մասնաճիւղի ժրաջան անդամուհիները, որոնք հանդէսը կատարեալ եւ հաճոյալի դարձնելու համար ջանք չէին խնայած:

***Հայրենիք***, 13 ***Մարտ*** 1927, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4519, ***էջ*** 3

## ԿԻՐԱԿԻ, 27 ՓԵՏՐՈՒԱՐ 1927, ՓՐՈՎԻՏԵՆՍ

Փրովիտենսի Elk's Auditorium-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

- *Հայրենիք*, 20 *Յունուար* 1927, 28-*րդ տարի*, *Թիւ* 4475, *էջ* 2։
- *Հայրենիք*, 22 *Փետրուար* 1927, 28-*րդ տարի*, *Թիւ* 4503, *էջ* 4։

**ԿԻՐԱԿԻ, 20 ՄԱՐՏ 1927, ՊՈՍԹՈՆ**

Պոսթոնի Franklin Union Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

*Մոկաց Միրզա*, *Ծիրանի ծառ*, *Հայաստան*, *Ես բլբուլ եմ*, *Ես սարէն կուգայի*, *Հոգիս մրմուռ*, *Գութաներգ*, եւ այլն, մեներգ՝ Շ-Մ.

Ջութակ՝ օր. Սիրարփի Գոնտայեան

Դաշնակի նուագակցութիւն՝ օր. Զապէլ Պայենց

- *Հայրենիք*, 20 *Յունուար* 1927, 28-*րդ տարի*, *Թիւ* 4475, *էջ* 2։

- *Մեղու Շնորհալի*, «*Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը Պոսթընի մէջ*», *Հայրենիք*, 17 *Մարտ* 1927, 28-*րդ տարի*, *Թիւ* 4522, *էջ* 2։

- *Հայրենիք*, 18 *Մարտ* 1927, 28-*րդ տարի*, *Թիւ* 4523, *էջ* 2։

- «*Պր. Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Հայրենիք*, 23 *Մարտ* 1927, 28-*րդ տարի*, *Թիւ* 4527, *էջ* 1։

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ ՊՈՍԹԸՆԻ ՄԷՋ

ՄԵՂՈՒ ՇՆՈՐՀԱԼԻ

Ամիս մը առաջ լսեցինք Տիկին Նուարդ Շաղօյեան-Ճիվէլէկեանը, նախորդ կիրակի լսեցինք Տիկին Ռօզ Զուլալեանը, եւ ահա առաջինը ՄԵԾ արուեստագէտներէն այս կիրակի կուտայ վերջին երգահանդէսը՝ կնքելու համար արուեստի եղանակ մը, որ ա՛յնչափ յատկանշական եղաւ այս տարի։

Արդարեւ շատեր կը հարցնեն թէ այս անգամ ի՞նչ նոր երգեր պիտի երգէ մեզի պ. Արմենակ Շահ-Մուրատեան։

Այս հարցումը ուրիշ ոեւէ մէկուն չիարցուիր, այլ պ. Արմենակ Շահ-Մուրատեանի։ Եւ բացատրելի ու ըմբռնելի է թէ ինչո՞ւ ժողովուրդը երգին նորութիւնը կ'ուզէ անոր մօտ փնտռել։ Որովհետեւ պ. Արմենակ Շահ-Մուրատեան ներկայիս, ինչպէս եւ մեծ չափով անցեալին եղած է, կը մնայ, զուցէ միակ աղբիւրը, ուրկէ կը բխին հայ երգերու հարուստ նորութիւնները։

Արդ, պատիւ ունինք եւ ի վիճակի ենք յայտնելու, թէ պ. Շահ-Մուրատեան յառաջիկայ կիրակի պիտի տայ ժողովրդական եւ այլ երգերու այնպիսի նորութիւններ, որոնք, վստահ ենք, առանձնապէս հաճոյք պիտի պատճառեն հայ հասարակութեան։

Այսպէս, ան պիտի երգէ, ի միջի այլոց, *Չինարը*, որ բոլորովին տարբեր երգ մըն է *Իմ չինարի եարէ*ն։ Ապա գուցէ անակնկալ մը լինի համեստ հայ երգահանի մը (քոմփոզիթոր) պ. Կանաչեանի մէկ ուրիշ երգը։ Պ. Կանաչեան թէպէտ անծանօթ այս գաղութին, արդէն անուն ունի մանաւանդ Կիլիկիոյ եւ Սուրիոյ հայերուն մէջ։

Օտար երգերէն պ. Շահ-Մուրատեան կ'ընտրէ ու կ'երգէ այնպիսի կտորներ, որոնք կը խօսին մեր սրտին ու հոգիին – *Շան հէնտու*ն կամ Հնդկական երգը իր յայտագրին մաս պիտի կազմէ։

Ասոնք միայն քանի մը հատն են այն նոր երգերէն, զորս պիտի տայ մեզի Հայ երգիչը յառաջիկայ կիրակի։

Շահ-Մուրատեան անսպառ մթերք մը ունի հայ երգերու, որոնց ոգիին ինքնայատուկ արտայայտութիւնը իր անզուգական մասնագիտութիւնը ըրած է ցայսօր։

Այս առթիւ անգամ մը եւս պէտք է շեշտել, թէ պ. Շահ-Մուրատեան միակ երգիչն է որ *բացառապէս* նուիրուած է հայ երգին, եւ հայ երգասէր հասարակութեան։

Ան հրաժարած է օտար բեմերէ, օփերաներէ։ Օտարներու կողմէ հիւսուած դափնիներ չի փնտռեր, ուրիշներու գովեստն ու ներբողը իրեն համար բացառիկ նշանակութենէ զուրկ են այժմ։ Ան կը նախընտրէ իր հարազատ ժողովուրդին ծափերը, անոնց կողմէ տրուած փունջ մը ծաղիկը, եւ այն դոյզն նիւթականը, որ իրեն նման արուեստագէտի մը կեանքը գոնէ չեն կարճեցներ։

Քա՛ւ լիցի, եթէ մեր մտքէն կ'անցնի աննպաստ ակնարկութիւններ ընել ուրիշ հայ արուեստագէտներու, երգիչներու, երգչուհիներու, որոնք օտար շրջանակներու մէջ եւս կ'ուզեն փայլիլ։ Այդպիսի արդար մրցում մը կարեւոր է մեր մշակոյթի ծանութացման։ Ինչ որ կ'ուզենք ըսել, սա է թէ պ. Շահ-Մուրատեանի կեանքի մեծագոյն փառասիրութիւնը այլեւս եղած է ծառայումը հայ ժողովուրդին եւ հայ երգին։

Ասիկա մեծագոյն առաքելութիւնն է որ կրնար կատարել, բացի Կոմիտաս վարդապետէն, միայն եւ միմիայն պ. Շահ-Մուրատեան։

Կարելի է ըսել թէ ան հայ երգի Աստուածն է, մէկը որ *հայ երգ*ի խօսքին, խորքին, արտայայտութեան եւ ըմբռնումին լաւագոյն վարպետը, մեկնիչը կը ներկայանայ այսօր։

Ահա այս է նոյնինքն Շահ-Մուրատեան, - իր արուեստագէտի հոգին, էութիւնը, դերը եւ կեանքի նպատակը։

***Հայրենիք***, 17 ***Մարտ*** 1927, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4522, ***էջ*** 2

## ՊՐ. Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, մարտ 20, Ֆրէնքլին Եունիըն Հօլի մէջ, տեղի ունեցաւ պր. Ա. Շահ-

Մուրատեանի երգահանդէսը, որ Պոսթոնի հայ արուեստասէր հասարակութեան համար հաճելի ժամանց մը եղաւ:

*Հայ Երգիչը*, որ ժողովուրդի ծոցէն ելած ու անոր ստեղծագործական ոգիին խորը թափանցած է, մեծամասնաբար ընտրած էր հայկ. երգեր, ժողովրդական ու ազգային, որոնք հարազատ մթնոլորտ մը ստեղծեցին սրահին մէջ եւ ներկաներուն համար հայրենի շունչի եւ զգացումի կատարեալ վայելք մը եղան:

Ուշադրութեան արժանի է մանաւանդ այն պարագան, որ պ. Շահ-Մուրատեանի ձայնը կը պահէ իր գեղեցկութիւնն ու խրոխտութիւնը՝ մասնաւորաբար բարձր աստիճաններուն վրայ, որով իր յաջողութիւնը կատարեալ կ'ըլլար *Մոկաց Միրզա*յի, *Ծիրանի ծառ*ի եւ *Հայաստան*ի նման ազգային – դիւցազներգական կտորներու մէջ:

Բացի վերոյիշեալներէն՝ պ. Ա. Շահ-Մուրատեան յաջողութեամբ եւ ներկաներուն խանդավառութիւն ներշնչելով երգեց *Ես բլբուլ եմ*, *Ես սարէն կուգայի*, *Հոգիս մրմուռ*, *Գութաներգ* եւայլն:

Իր բոլոր երգերը գտան շատ լաւ ընդունելութիւն եւ երկար ծափահարութիւնները հարկադրեցին սիրուած Երգիչը յայտագրէն դուրս երգելու հինգ կտորներ:

Հաճելի զանազանութիւն մը բերաւ օր. Սիրարփի Գոնտայեան, որ օտար երաժիշտներէ լաւագոյն կտորներ նուագեց իր ջութակով, միանգամայն ցոյց տալով զգացում եւ հմտութիւն:

Ներկաներու երկարատեւ ծափահարութիւնները օր. Սիրարփի Գոնտայեանն ալ հարկադրեցին նուագել յայտագրէն դուրս կտորներ:

Պ. Ա. Շահ-Մուրատեանի եւ օր. Ս. Գոնտայեանի կ'ընկերակցէր դաշնակով օր. Զապէլ Պայենց, որ ճարտարութեամբ տարաւ իր գործը, այս կերպ նպաստելով երգահանդէսի ընդհանուր յաջողութեան:

Օր. Սիրարփի Գոնտայեան եւ օր. Զապէլ Պայենց ստացան մէյ մէկ ծաղկեփունջ:

***Հայրենիք***, 23 ***Մարտ*** 1927, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4527, ***էջ*** 1

## ԿԻՐԱԿԻ, 27 ՄԱՐՏ 1927, ԼՈՐԵՆՍ

Լորենսի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

- ***Հայրենիք***, 2 ***Մարտ*** 1927, 28-***րդ տարի***, ***Թիւ*** 4509, ***էջ*** 4:

## ԿԻՐԱԿԻ, 3 ԱՊՐԻԼ 1927, ԼՈՐԵՆՍ

Լորենսի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

Վաղարշակ Սրուանձտեանց, Ռոմանոս Մելիքեան, Կոմիտաս վարդապետ, Jules Massenet, Francesco Paolo Tosti, Տիգրանեան եւ Բարսեղ Կանաչեան, մեներգ՝ Շ-Մ.

Znosko-Borovsky, Béla [?Kéler], Charles Auguste de Bériot եւ Heinrich Ernst, ջութակ՝ Սիրարփի Գոնտայեան

- «*Հայ երգիչներ Ամերիկայի մէջ*», *Արեւ*, 27 *Մայիս* 1927, *ԺԳ. տարի*, *Թիւ* 2517, *էջ* 2։

## ԿԻՐԱԿԻ, 24 ԱՊՐԻԼ 1927, ՏԻԹՐՈՅԹ

Տիթրոյթի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- *Հայրենիք*, 2 *Մարտ* 1927, 28-*րդ տարի*, *Թիւ* 4509, *էջ* 4։

## ԿԻՐԱԿԻ, 8 ՄԱՅԻՍ 1927, ՔԼԻՎԼԱՆՏ

Քլիվլանտի Aliance Pols Auditorium-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Մակար Եկմալեան, *Տէր կեցո*, մեներգ՝ Շ-Մ.

Վաղարշակ Սրուանձտեանց, *Տըլէ եաման* եւ *Ալագեազ*, մեներգ՝ Շ-Մ.

Արա Պօյաճեան, *Գնաց աշուն*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Գութանի երգ*, *Մոկաց Միրզա* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Tommaso Giordani: *Caro mio ben*, մեներգ՝ Շ-Մ.

Pyotr Tchaikovsky: *Déception*, մեներգ՝ Շ-Մ.

Ջութակ՝ Քլարէնս Վէկնէր

- *Գ. Մելիտինեցի*, «*Ամերիկահայ կեանք*», *Հայրենիք*, 1 *Յունիս* 1927, 29-*րդ տարի*, *Թիւ* 4585, *էջ* 3։

## ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ԿԵԱՆՔ

Գ. ՄԵԼԻՏԻՆԵՑԻ

Մայիս 8-ի կիրակի երեկոյ, տեղի ունեցաւ պրն. Ա. Շահմուրատեանի երգահանդէսը Aliance Pols Auditorium-ի մէջ։ Ցաւալի էր որ հապճեպ կարգադրութեան եւ գաղութի պահպանողական տարրի բացասական վերաբերումին պատճառաւ, գոհացուցիչ բազմութիւն մը չկար սրահին մէջ։

Պրն. Ա. Շահմուրատեան առաջին բաժնին մէջ երգեց Մ. Եկմալեանի *Տէր կեցո*ն, Սրուանձտեանցի *Տըլէ եաման*ը, Պօյաճեանի *Գնաց աշուն*ը, C. Giordani-ի

*Caro mio ben*-ը, եւ P. Tschaikowski-ի *Deception*-ը։

Երկրորդ բաժնին մէջ երգեց Սրուանձտեանցի *Ալագեազ*ը, հայ երգի տաղանդաւոր վարպետ Կոմիտաս վարդապետի *Գութանի երգը* եւ *Մոկաց Միրզա*ն։ Քլարէնս Վէկնէրի ջութակէն վերջ պրն. Շահմուրատեան փրոկրամէն դուրս քանի մը երգեր երգելով հանդէսը փակեց *Հայաստանո*վ։

Անգամ մը եւս, եւ ցաւով կ'արձանագրենք, որ երգահանդէսի տեւողութեան ընթացքին խօսակցութիւններն ու աղմուկը այնքան բարձրացան, որ պրն. Շահմուրատեան կիսատ թողելով երգը յուզումով սաստեց առաջին շարքերուն վրայ նստող մօրուսաւոր մանուկները։ Այսպիսիներ որ տարրական քաղաքավարութիւնը չեն ունենար գէթ երգի ընթացքին լուռ մնալու, կը յուսանք թէ բաւ պիտի համարեն այս հրապարակային սաստումն ու մատնանշումը, յետ այսու յարգելու համար ժողովներու եւ հանդէսներու օրէնքը, - լռութիւնը. այլապէս պիտի ստիպուինք իրենց անուններով կարգի կոչել։

***Հայրենիք***, 1 ***Յունիս*** 1927, 29-***րդ տարի***, ***Թիւ*** 4585, ***էջ*** 3

## ԿԻՐԱԿԻ, 29 ՄԱՅԻՍ 1927, ՏԻԹՐՈՅԹ

Տիթրոյթի Armory Auditotium-ին մէջ՝ հրապարակային տօնակատարութիւն նուիրուած Հայաստանի Հանրապետութեան 9-րդ տարեդարձին եւ հայկական Փրէս Բիւրօի պրօպականտին։ Ատենախօսութիւն՝ պր. Կ. Թանտրճեան, պր. J. Ferris, պր. W. King., տոքթ. Chester Emerson եւ պր. Վահան Գարտաշեան։ Մեներգ՝ Շ-Մ., տիկ. Վարդանեան եւ տիկ. Պէրպէրեան։ Նուագ՝ տոքթ. Գասապուշեան եւ օր. Տէպէլեան։ Արտասանութիւն՝ պր. Եղիշէ եւ պր. Լեւոն Յարութ։

- ***Հայրենիք***, 27 ***Մայիս*** 1927, 29-***րդ տարի***, ***Թիւ*** 4582, ***էջ*** 3։

## ԿԻՐԱԿԻ, 26 ՅՈՒՆԻՍ 1927, ՌԷՍԻՆ

Ռէսինի (Ուիսքոնսին) Dania Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Tommaso Giordani: *Caro mio ben*, մեներգ՝ Շ-Մ.

Francesco Paolo Tosti: *Ideale*, մեներգ՝ Շ-Մ.

Alfredo D'Ambrosio: *Romance*, ջութակ՝ Ray Pribek

Samuel Gardner: *From the Canebrake*, ջութակ՝ Ray Pribek

Անուշաւան Տէր-Ղեւոնդեան, *Ծաղկոց*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Քէլէ, քէլէ*, մեներգ՝ Շ-Մ.

Արա Պօյաճեան, *Գարուն*, մեներգ՝ Շ-Մ.

Pyotr Tchaikovsky: *Déception*, մեներգ՝ Շ-Մ.

Jules Massenet: *Élégie* ('Ô, doux printemps d'autre fois'), with violin obbligato,

մեներգ՝ Շ-Մ., ջութակ՝ Ray Pribek

Alexander Grechaninov: *Berceuse*, մեներգ՝ Շ-Մ.

Fritz Kreisler: *Aloha Oe*, ջութակ՝ Ray Pribek

Emil Młynarski: *Mazurka in G*, ջութակ՝ Ray Pribek

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը* եւ *Snւյ, տnւյ*, մեներգ՝ Շ-Մ.

Բարսեղ Կանաչեան, *Օրօր*, with violin obbligato, մեներգ՝ Շ-Մ., ջութակ՝ Ray Pribek

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Դաշնակի նուագակցութիւն՝ Frederick Schulte

- 'A. Chah Mouradian to Sing Armenian Folk Songs Sunday,' *The Racine Journal-News*, 23 June 1927, Vol. LXXXXVIII, p. 12.
- 'Announce Program for Local Concert of Armenian Tenor,' *The Racine Journal-News*, 24 June 1927, Vol. LXXXXVIII, p. 14.
- 'A. Chah Mouradian, Armenian Tenor, is Enjoyed in Program', *The Racine Journal-News*, 27 June 1927, Vol. LXXXXVIII, No. 150, p. 8.

## A. CHAH MOURADIAN TO SING ARMENIAN FOLK SONGS SUNDAY

A. Chah Mouradian, the Armenian tenor from the Grand Opera of Paris who is giving a concert at Dania hall on Sunday afternoon, has had a very remarkable career. He was very successful as a member of the Grand Opera of Paris and since that time has toured the world, giving concerts on every continent. For his program at the State street hall on Sunday afternoon, he has chosen many of the beautiful Armenian folk songs together with some of the finest French and Italian arias.

Ray Pribek will be the assisting artist and will present two violin groups, playing D'Ambrosio's *Romance* and Gardner's *From a Cane Brake* as the first group and Kreisler's *Aloha Oe* and the *Mazurka in G* by Mrynarski as the second group. Mr. Pribek is well known in Racine, as he has been prominent in local musical activities for several years.

Frederick Schulte, pianist, will be Mouradian and Mr. Pribek as accompanist.

*The Racine Journal-News*, 23 June 1927, Vol. LXXXXVIII, p. 12

# A. CHAH MOURADIAN, ARMENIAN TENOR, IS ENJOYED IN PROGRAM

## RAY PRIBEK, VIOLINIST, AND FREDERICK SCHULTE ASSIST

A. Chah Mouradian, Armenian tenor, formerly of the Paris Grand Opera company, presented a most enjoyable concert at Dania hall yesterday afternoon. Those who had the opportunity to hear Mr. Mouradian were especially fortunate as he has an unusually strong tenor voice, and presented the Armenian folk songs besides the remainder of the program in a most capable manner. The Armenian folk songs are marked by a peculiar simplicity and rhythmic beauty, not found in songs of other peoples.

When a student at Paris, Mr. Mouradian was awarded the student prize and continued his studies in that city. He has been a member of the Paris Grand Opera for many years, and has also appeared in many other cities of the continent. For the past five months, he has been touring the United States, acquainting himself with the ways of America, and meeting at the same time, many of his people residing in this country. He is traveling upon his own initiative and sponsors his concerts, choosing his assisting artists upon arrival. A. Chah Mouradian is planning to instruct in music in NewYork city, after completing his tour.

Ray Pribek, well-known violinist, of Racine, assisted Mr. Mouradian in several selections, playing the obbligato, while Frederick Schulte, pianist, accompanied the artist. Mr. Pribek also presented two groups of violin solos which were enjoyed by the audience.

The program consisted of the following numbers:

Caro mio ben (Giordani) and Ideal (Tosti) – A. Chah Mouradian.

Romance (d'Ambrosio) and From the Cane Brake (Gardner) – Ray Pribek.

Dzaghkots (A. der Chevondian); Kele, Kele (Komitas Wardapet); Karoon (Spring) (A. Boyajuin) – A. Chah Mouradian.

Deception (Tschaikowsky); Elegie, with violin obbligato (J. Massenet); Berceuse (Gretchaninoff) – A. Chah Mouradian.

Aloha Oe (Kreisler) and Mazurka in G (Mtynarski) – Ray Pribek.

Vard (Rose), (R. Melikian); Tool, Tool (R. Melikian); Berceuse with violin obbligato (P. Ganatchtian); Hayastan (Armenia) (Komitas Wardapet) – A. Chah Mouradian.

*The Racine Journal-News*, 27 June 1927, Vol. LXXXXVIII, No. 150, p. 8

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1927, ՓԱՐԻԶ**

Փարիզի Petit Journal-ի սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Շ-Մ. կը մեներգէ հետեւեալ երգերը.

Մակար Եկմալեան, *Քրիստոս պատարագեալ*
Գրիգոր Սիւնի, *Հէ՜յ կաքաւիկ*, *Սարեր* եւ *Սարերի հովին*
Ռոմանոս Մելիքեան, *Բարի-Լոյս*, *Է՜յ ճան*, *Աշնան երգ* եւ *Վարդը*
Բարսեղ Կանաչեան, *Օրօր*
Կոմիտաս վարդապետ, *Մոկաց Միրզէ* եւ *Հայաստան*
Tommaso Giordani; Giacomo Puccini; Hermann Bemberg; Léo Delibes

- ***Շաւարշ Նարդունի***, «***Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը***», ***Յառաջ***, 23 ***Հոկտեմբեր*** 1927, ***Գ. տարի***, ***Թիւ*** 474, ***էջ*** 3։

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Հինգշաբթի երեկոյ Փըթի Ժուռնալի սրահին մէջ տեղի ունեցաւ Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը։ Բազմութիւնը կը վկայէր տաղանդաւոր երգիչին համբաւին։

* * *

Շահ-Մուրատեանի անունը, շատերու միտքին մէջ, կապուած է Կոմիտաս Վարդապետի, որուն արժանի ու տաղանդաւոր թարգմանն եղաւ։ Սակայն, այս անգամ, ժողովուրդը Կոմիտասի ստեղծագործութենէն քիչ ճաշակեց, որովհետեւ, թերեւս Շահ-Մուրատեան ուզած էր ներկայացնել փունջ մը մեր երգահաններէն։

Եւ իրապէս, յայտագիրը ծաղկաքաղ մըն էր, աղուոր հունձք մը մեր երգին մշակներուն պարտէզէն, պատրաստուած՝ յուզումով ու գորովով։ Այդ փունջին մէջ ցօղեր՝ օտար երկինքէն, Ճիօրտանի, Փուչչինի, Պէմպէրկ, Լէօ Տէլիպ։ Դար-ձեալ օտա՛ր արուեստագէտներ, դաշնակահար ու ջութակահար, քաղցր հովի մը նման, անցան այդ ծաղկեփունջին մէջէն։

Հայկական երգերէն երգեց *Քրիստոս պատարագեալ* (Եկմալեան), *Հէ՜յ կաքաւիկ*, *Սարեր*, *Սարերի հովին* (Գ. Սիւնի), *Բարի-Լոյս*, *Է՜յ ճան*, *Աշնան երգ*, *Վարդ* (Ռ. Մելիքեան), *Օրօր* (Կանաչեան), *Մոկաց Միրզէ*, *Հայաստան* (Կոմի-տաս)։

* * *

Որքա՜ն քաղցր է Շահ-Մուրատեանի ձայնին timbreը։ Ձայնի գիտութեան վարպետը ելեւէջներ ունի, որոնք այնքան անուշ են, որքան մեղրին կաթիլները լեզուին վրայ։ Անոնք որ երգը կը սիրեն, միշտ կը յիշեն ձայնի խաղեր, որ Շահ-Մուրատեանինն են։ «Հազար ափսոս»ը (*Մոկաց Միրզէ*) որքա՜ն հարուստ, որքա՜ն իրենէ անուշութեամբը, «Հայաստան»ը (Հայաստաներգին մէջ) իր դաշնա-ւոր ջերմութեամբ ու լեցուն յուզումով, «Օրհնեալ է» (*Քրիստոս պատարագեալ*)

գրաւիչ միսթիսիսմով, պիտի մնան եզրերը իր երգիչի ոճին, որուն հետ պիտի բաղդատենք ձայնը անոնց, որ պիտի երգեն այդ կտորները։ Եւ ուրիշ երգի մը, Կանաչեանի *Օրօր*ին մէջ, «Քուն եղիր, բալաս»ը նոյնպէս անբաղդատելի քաղցրութեան մը յիշատակը պիտի պահէ մեր մէջ։ Կը յիշեմ, այս պահուս, «Բալաս»ին առաջին վանկը, օ՜, ձայնի ի՜նչ տոհմիկ ջերմութիւն, արտայայտութեան ի՜նչ ճոխութիւն, - գոց լաց մը, մօրը անհասելի գորովը, երախային խաղաղութեան համար իր հոգիէն փրթած աղօթահեւ ըղձանքը, վերջապէս չարտայայտուած բանաստեղծութիւն մը, որ կը սեղմուի մէկ վանկի մէջ։ Եւ ունկնդիրը կը կծկուի, իր աթոռին վրայ, կը պզտիկնայ, կ'երախանայ, մօրը բաղձանքին հպատակելու համար նուիրումի մը կը պատրաստուի։ Ամբողջ միսդ կրակի կտոր մը կը դառնայ։

Եւ կ'օրհնես երգիչն ու հեռաւոր անծանօթ հայ մայրը, որ քնացուց մեզ, քնացուց գալոց մեծ օրերուն համար, մեր պատմութեան լաւագոյն երազին համար, որ պիտի կատարուի։ Իսկ մինչ այդ՝

- *Քուն եղիր, բալաս*...։

*Յառաջ*, 23 *Հոկտեմբեր* 1927, *Գ. տարի*, *Թիւ* 474, *էջ* 3

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 9 ՆՈՅԵՄԲԵՐ 1927, ՓԱՐԻԶ**

Փարիզէն նամակ կը գրէ Արշակ Չօպանեանին (վայրը անյայտ)։ Կը գրէ, թէ Փարիզ պիտի մնայ միայն քանի մը օր՝ երգահանդէսէն մնացած ապառիկները գանձելու համար։ Ապա կ'անդրադառնայ Չօպանեանի առաջարկած նուագահանդէսին մասնակցելու կարելիութիւններուն մասին, միաժամանակ տեղեկացնելով իր սակագինը։

- ***Արմենակ Շահմուրատեան**, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 60-61։

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ

Փարիզ, 9 նոյեմբեր, 1927

Սիրելի պ. Չօպանեան

Ինչպէս քեզ ըսի նախապէս, քանի օր միայն պիտի մնամ Փարիզ՝ երգահանդէսէս մնացած ապառիկները գանձելու։

Չգիտեմ քեզի գոհացում տուած պիտի ըլլա՞մ, եթէ ուշացնեմ մեկնումս 10-12 աւուր մը չափ։ Ինչպէս գիտես, Մարսէլիայէն ամէն օր մեկնող նաւեր չկան։ Եթէ

իրականին մէջ իմ ներկայութիւնս անհրաժեշտ կը նկատուի ու կրնայ որոշ քանակութեամբ մարդիկ քաշել, այդչափ զոհողութիւն մը յանձ կ'առնեմ պայմանով, որ իմ ծալքերս վճարուեն, քանի որ դուն ալ նամակիդ մէջ կը գրես՝ «ճանապարհիդ եւ ծախքերուդ համար, անշուշտ, Dédommagement մը յանձն պիտի առնեն տիկինները»:

Մտերմօրէն քեզի կ'ըսեմ, սիրելի Չօպանեան, որպէսզի թիւրիմացութիւն մը չըլլայ ապագային ու ըստ նախկին սովորութեանը ինձ վճարուի 50-100 ֆրանք մը, ստիպուած եմ որոշել այդ գումարը: Իմ պարագան, որովհետեւ բացառիկ հանգամանք կը կրէ, եթէ հոս եղած ըլլայի մշտապէս, միւս արթիստներու պէս, ուրախ կ'ըլլայի բոլորովին ձրի երգել, ինչպէս ըրած եմ միշտ ուրիշ անգամներ:

Համանման պարագաներու տակ Ամերիկայում, ինչպէս գիտէք, ինձ վճարուած է միշտ 100 տոլար եւ մօտ 25-40 տոլար եւս իբր ճանապարհածախս զատէն, նայած հեռաւորութեանը, սակայն այստեղ Ամերիկա չէ, եւ ես կ'ուզեմ միս մինակ ծախքերու անունով ինձ վճարուի (քանի որ ատոր համար պիտի յետաձգեմ մեկնումս) 500 ֆրանք:

Ինձմէ կախում ունի ընտանիքի մը գոյութիւնը, 10-12 աւուր մէջ կարող եմ առաջին պատեհութեամբ Աղեքսանդրիա երգահանդէս մը կազմել եւ ամենաքիչը 20-40 ոսկի շահիլ արդէն սկսուած saison-ի մը մէջ:

Այս յայտարարութիւնները չպիտի տայ ուրիշի մը, քեզ կը գրեմ, իբր հարազատ եղբօր մը որպէսզի տարբեր մեկնութիւններ չտրուին:

Ջերմ համբոյրներով՝ քոյդ

Ա. Շահ-Մուրատեան

Յ.Գ. Հարկ կա՞յ ըսել, որ պէտք է երկտող մը ստանալ սիրելութենէդ այդ առթիւ:

Նոյն

*Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, էջ 60-61

## ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 14 ՆՈՅԵՄԲԵՐ 1927, ՓԱՐԻԶ

Փարիզէն նամակ կը գրէ Արշակ Չօպանեանին (վայրը անյայտ): Կը գրէ Չօպանեանին առաջարկած նուագահանդէսին մասնակցելու կարելիութիւններուն մասին:

- *Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, էջ 61-62:

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ

Փարիզ, 14 նոյեմբեր, 1927

Սիրելի Չօպանեան

Կը ներես, սիրելիս, նամակիդ ուշ պատասխանելուս համար. անմիջապէս անկարելի էր ինձ որոշ բան մը ըսել:

Իմ նպատակս էր այս շաբթու մեկնիլ, սակայն, դժբախտաբար, շաբաթ օրուանէ ի վեր զօրաւոր հարբուխէ մը բռնած եմ, տունէն դուրս չեմ ելներ, որպէսզի քանի՞ մ'օրէն անցնի ան:

Հարկ կա՞յ ըսել, որ շաբթուս չպիտի կրնամ մեկնիլ Եգիպտոս: Գալով նուագահանդէսին մասնակցելու խնդրոյն, չգիտեմ ի՞նչ ըսել: Ուրախութեամբ կ'ուզեմ մասնակցիլ, գրածիդ համաձայն, եթէ ի վիճակի լինիմ vocalement-ի կը վախնամ, թէ խօսք տալէս վերջը, մինչեւ այդ օրը բոլորովին աղէկ չզգամ ինքզինքս ու չկրնամ խօսքս յարգել, ու մասնախումբը զիս քարկոծէ յանիրաւի: Թէեւ ինձ այնպէս կը թուի, թէ պիտի կարողանամ մասնակցիլ: Ձեզի կը յայտնեմ վերջնական որոշումը, եթէ այո ըսէք, այն ատեն accompagnement-ի (pianist) խնդիրը Ձեզի կը մնայ կարգադրել եւ յետոյ, ինչպէս սովորութիւն է, ինձ պիտի ընկերանան կինս ու աղջիկս, քանի որ արթիստ մը ուր որ երթայ, իրաւունք ունի ամենաքիչ երկու Invitation-ի... Միշտ Ձերդ անկեղծօրէն՝

Ա. Շահ-Մուրատեան

Յ.Գ. Այսօր քիչ մը աղէկ կը զգամ ինքզինքս եւ ամէն միջոց ձեռք առած եմ, որ քանի մ'օրէն անցնի հարբուխս:

Նոյն

***Արմենակ Շահմուրատեան**, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 61-62

### ԴԵԿՏԵՄԲԵՐ (ԱՌԱՋԻՆ ՇԱԲԱԹ) 1927, ԳԱՀԻՐԷ

Փարիզէն կը ժամանէ Գահիրէ եւ կ'այցելէ *Արեւ*ի խմբագրատունը:

- «*Շահմուրատեան մեր մէջ*», *Արեւ*, 8 *Դեկտեմբեր* 1927, *ԺԴ. տարի*, *թիւ* 2683, *էջ* 2:

### ՇԱԲԱԹ, 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1927, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

Աղեքսանդրիոյ Ամերիքըն Միշընի սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

Կոմիտաս վարդապետ (*Հայաստան, Մոկաց Միրզա*), Միքայէլ Միրզայեան, Վաղարշակ Սրուանձտեանց, Փրօֆ-Գալֆայեան, Ռոմանոս Մելիքեան (*Տուր,*

*տուլ*), Բարսեղ Կանաչեան, Léo Delibes, Jules Massenet եւ Pyotr Tchaikovsky, մեներգ՝ Շ-Մ.

Georg Goltermann: *Romance*, թաւջութակ՝ Ռ. Լանցոնի

David Popper: *Serenade*, թաւջութակ՝ Ռ. Լանցոնի

Luigi Cherubini – David Popper: *Ave Maria*, թաւջութակ՝ Ռ. Լանցոնի

Դաշնակ՝ Ժ. Փասքուարելլօ

- *Արաքս*, 17 *Դեկտեմբեր* 1927, *Գ. տարի*, *Թիւ* 1 (76), *էջ* 1, 3։

- *Արեւ*, 23 *Դեկտեմբեր* 1927, *ԺԴ. տարի*, *Թիւ* 2696, *էջ* 3։

- *Արա*, «*Ա. Շահ-Մուրատեանի քօնսէրը*», *Արաքս*, 31 *Դեկտեմբեր* 1927, *Գ. տարի*, *Թիւ* 3 (78), *էջ* 3։

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՔՕՆՍԷՐԸ

ԱՐԱ

Անցեալ շաբաթ գիշեր, տեղւոյս Ամերիքան Միշընի սրահին մէջ տեղի ունեցաւ Պ. Շահ-Մուրատեանի քօնսէրը, բաւական կոկիկ բազմութեան մը ներկայութեամբ, որոնք եկած էին լսել մեր տաղանդաւոր հայրենակիցը, որ իր աշխարհային *թուռնէ*ին մէջ, երկու տարուան բացակայութենէ մը յետոյ չէր մոռցած պատուելու նաեւ մեր գաղութը։

Պ. Շահ-Մուրատեան առաւել առոյգ էր քան իր նախորդ այցելութիւնը, եւ իր ձայնը աւելի ուժովցած եւ յստակացած։

Ան երգեց մեծ յաջողութեամբ հայկական կտորներ, Կոմիտաս Վ.է, Միրզայեանէ, Սրվանձտեանցէ, բրօֆ. Գալֆաեանէ, Մելիքեանէ եւ Կանաչեանէ, եւ եւրոպականներ՝ Լէօ Տէլիպէ, Մասընէէ, եւ Չայքովսքիէ, խլելով անվերջ ծափահարութիւններ։

Բրօկրամին մէջ նշանակուած երգերուն առընթեր ան երգեց *Տույ տուլ*ը, նոր եւ գեղեցիկ երգ մը, *Հայաստան*ը՝ շատ ուժով՝ որ յառաջ բերաւ մեծ ոգեւորութիւն եւ խլացուցիչ ծափահարութեանց արժանացաւ։

Պ. Շահ-Մուրատեան քանի մը բառով բացատրեց ներկաներէն շատերուն անծանօթ *Մոկաց Միրզա*յի աւանդավէպը եւ անոր վրայ շինուած դիւցազներգութենէն երգեց մէկ քանի կտորներ, խոր տպաւորութիւն թողլով ունկնդիրներուն վրայ։

Աւելորդ է ծանրանալ երգերէն ամեն մէկուն վրայ անջատաբար, քանզի ամենքն ալ երգուեցան կատարեալ յաջողութեամբ եւ մանաւանդ զգացումով եւ արժանացան ընդհանուր գնահատութեան։

Քօնսէրին կը մասնակցէր Պ. Բասքարէլլօ դաշնակով, իսկ Պ. Լանցօնի, որուն

թաւջութակահարի տաղանդը հանրածանօթ է, խիստ մեծ յաջողութեամբ նուագեց Կոլտէրմանէ *Ռոմանս* մը, Բօքքէրէ *Սէրէնատ* մը եւ Շէրիպիւնի Բօքքէրի *Ավէ-Մարիա*ն:

Երեկոյթը եղաւ խիստ յաջող գեղարուեստական տեսակէտով, եւ հանդիսականներուն առթեց հոգեկան վայելքի քանի մը պահեր:

***Արաքս***, 31 ***Դեկտեմբեր*** 1927, ***Գ. տարի***, ***Թիւ*** 3 (78), ***էջ*** 3

**ԿԻՐԱԿԻ, 15 ՅՈՒՆՈՒԱՐ 1928, ԳԱՀԻՐԷ**

Գահիրէի Էզպէքիէի Պարտէզի թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը* եւ *Աշուն*, մեներգ՝ Շ-Մ.

Վաղարշակ Սրուանձտեանց, *Ալագեազ*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Գութաներգ* եւ *Մոկաց Միրզէ*, մեներգ՝ Շ-Մ.

Փրօֆֆ-Գալֆայեան, *Նոր օրօր*, մեներգ՝ Շ-Մ.

Բարսեղ Կանաչեան, *Օրօր*, մեներգ՝ Շ-Մ.

Ֆրանսերէն երգեր, մեներգ՝ Շ-Մ.

Ջութակ՝ Նաում Փոլիաքին

Դաշնակ՝ Մարիօ Անթոլինի

- ***Արեւ***, 11 ***Յունուար*** 1928, ***ԺԴ. տարի***, ***Թիւ*** 2711, ***էջ*** 3:

- «***Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը***», ***Արեւ***, 16 ***Յունուար*** 1928, ***ԺԴ. տարի***, ***Թիւ*** 2715, ***էջ*** 2:

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Երէկ, Էզպէքիէի պարտէզի թատրոնին մէջ տեղի ունեցաւ տաղանդաւոր երգիչ Պ. Արմենակ Շահմուրատեանի երաժշտական ցերեկոյթը:

Պ. Շահմուրատեան պէտք չունի ներկայացուելու, քանի որ հանրածանօթ դէմք մըն է մեր մէջ, հայ մեծագոյն թէնօրը՝ որ կրցած է աւելի քան երեսուն տարի նուիրուիլ արուեստին ու ծառայել այս կերպով հայ գեղարուեստին զարգացման, զաղութէ զաղութ տանելով *հայ երգը*, ա՜յնքան հարուստ իր հմայքով ու սիրելի՝ անոր ծնունդ տուող հայ ժողովուրդին:

Յայտագիրը կը բաղկանար հայերէն եւ ֆրանսերէն հատընտիր կտորներէ, զորս երգեց կատարեալ յաջողութեամբ:

Պ. Շահմուրատեան երգեց Մելիքեանի *Վարդ* եւ *Աշուն*ը եւ Վ. Սրուանձտեանցի *Ալագեազ*ը, Կոմիտաս Վարդապետի *Գութաներգ*ը, Գալֆայեանի *Նոր օրօր*ը եւ Բ. Կանաչեանի *Օրօր*ը: Գութաներգը, ինչպէս նաեւ ֆրանսերէն քանի մը կտոր,

խանդավառ ծափահարութեանց մէջ կրկնուեցան։ Երգեց նաեւ Կոմիտաս Վարդապետի *Մոկաց Միրզէ*ն, բացատրելէ վերջ անոր պատմական *մօթիֆ*ը։ Սրահը որոտընդոստ ծափերով ընդունեց այս երգն ալ, ու տաղանդաւոր երգիչը յայտագրէն դուրս կտոր մըն ալ երգեց, գոհացում տալու համար հանդիսական-ներուն անտեղիտալի պահանջքին։

Երգահանդէսին յաջողութեան նպաստեցին ծանօթ արուեստագէտներ Մ. Նաում Փօլիաքին (ջութակահար) եւ դաշնակահար Մ. Մարիօ Անթօլինի, որոնք նոյնպէս խանդավառ ծափերով գնահատուեցան։

Երէկ, ցաւալի է հաստատել, սրահը կէսէն աւելի պարապ էր։ Եւ այս կէտը ցաւալի է ո՛չ թէ անոր համար որ տաղանդաւոր երգիչը չունեցաւ նիւթական յաջողութիւն մը, այլ առաւելապէս այն պատճառով որ Գահիրէի հասարակու-թիւնը զրկուեցաւ ճշմարիտ վայելքէ մը եւ այս առիթով հայ արուեստին եւ զայն արժանաւորապէս ներկայացնող հայ արուեստագէտին հանդէպ չկատարեց իր պարտականութիւնը։

Այս երեւոյթը կրկնապէս ցաւալի է, մինչեւ անգամ աններելի, գաղութահայ կեանքին մէջ, ուր կենսական անհրաժեշտութիւն մըն է ապրեցնել ազգային արժէքները, անոնցմով կենդանութիւն տալու համար ժողովուրդին։

Եւ այդ ժողովուրդն է որ անտարբեր գտնուեցաւ երէկ, եւ չկրցաւ վայելել Պ. Շահմուրատեանի այս փառաւոր հանդէսը։

*Արեւ*, 16 *Յունուար* 1928, *ԺԴ. տարի*, *Թիւ* 2715, *էջ* 2

## ՓԵՏՐՈՒԱՐ (ՍԿԻԶԲ) 1928, ՆԻԿՈՍԻԱ

Կը ժամանէ Նիկոսիա։

- *Թղթակից*, «*Հայ արուեստագէտներ Կիպրոսի մէջ*», *Արաքս*, 18 *Փետրուար* 1928, *Գ. տարի*, *Թիւ* 9 (84), *էջ* 3։

## ՇԱԲԱԹ, 4 ՓԵՏՐՈՒԱՐ 1928, ՆԻԿՈՍԻԱ

Նիկոսիայի մէջ՝ Բարսեղ Կանաչեանի երգահանդէսը։ Ներկայ կը գտնուի Շ-Մ., որ դիտել կու տայ՝ թէ Կանաչեան անկարելի գործ կատարած է ելոյթ ունենա-լով նման անվարժ երգչախումբի հետ։

- *Թղթակից*, «*Հայ արուեստագէտներ Կիպրոսի մէջ*», *Արաքս*, 18 *Փետրուար* 1928, *Գ. տարի*, *Թիւ* 9 (84), *էջ* 3։

- «*Հայ կեանքը Կիպրոսի մէջ*», *Հայաստանի կոչնակ*, 5 *Մայիս* 1928, *Թիւ* 18, *էջ* 571։

## ՀԱՅ ԿԵԱՆՔԸ ԿԻՊՐՈՍԻ ՄԷՋ
**(հատուած)**

Ուրիշ թղթակից մըն ալ, Կիպրոսի մէջ Պրն. Կանաչեանի սարքած գեղարուեստական համերգի մասին գրելով կ'ըսէ. - «Համերգը կը բաղկանար տասներկու քառաձայն ու վեցաձայն երգերէ, որոնցմէ *Տալիլա*ն ու *Օրօր*ը բուռն ու երկարատեւ ծափերու մէջ կրկնուեցան։ Այս համերգը, մեզ յիշեցուց հայրենաբաղձ հնագոյն հայութեան թրթռուն յոյզերը, ու մելամաղձոտ երանգները, որ կը ծորէին քառասուն երկսեռ երգողներուն բերնէն, որոնցմէ ոմանք դեռ հազիւ 13 տարեկան մանուկներ էին։ Համերգին ներդաշնակութիւնը զարմացուց ներկայ եղող երգիչ Շահ-Մուրատեանը, որ յարեց թէ նման փոքր ու անվարժ խումբով՝ Պրն. Կանաչեան կատարեց անկարելին ու ներկայացուց անզուգական երաժշտութիւն մը։
*Հայաստանի կոչնակ*, 5 *Մայիս* 1928, *Թիւ* 18, *էջ* 571

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 20 ՓԵՏՐՈՒԱՐ 1928, ՆԻԿՈՍԻԱ**

Նիկոսիայի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- *Թղթակից*, «*Հայ արուեստագէտներ Կիպրոսի մէջ*», *Արաքս*, 18 *Փետրուար* 1928, *Գ. տարի*, *Թիւ* 9 (84), *էջ* 3։

- «*Հայ կեանքը Կիպրոսի մէջ*», *Արեւ*, 19 *Ապրիլ* 1928, *ԺԴ. տարի*, *Թիւ* 2794, *էջ* 1։

- «*Գեղարուեստական կեանքը Կիպրոսի մէջ*», *Արաքս*, 5 *Մայիս* 1928, *Գ. տարի*, *Թիւ* 19 (94), *էջ* 2։

## ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐ ԿԻՊՐՈՍԻ ՄԷՋ

ԹՂԹԱԿԻՑ

Անցեալ շաթուան մէջ մեր մէջ ունեցանք Ա. Շահմուրատեանը, որ ամսոյս 20-ին պիտի տայ իր համերգը։

Հարկ կա՞յ, hոս յիշել թէ Կիպրահայութեան մեծ պատիւ մըն է Շահմուրատեանի ներկայութիւնը։

Մենք որ թիւով քիչ ենք ու կարծես ուծացած կեանք մը ունինք հայկական աւանդութիւններէն, Շահմուրատներ առիթ կստեղծեն որ հայութիւնը պարծենայ իրմով ու զգայ իր մէջ գաղտնի ոյժ մը որ մղէր զինքը դէպի ազգային նուիրականութեան, սէրին ու եղբայրութեան։

Շնորհակալութիւն, տաղանդաւոր աննման Սոխակին՝ որ բարեհաճ է առանց մեծ ակնկալութիւններու, զինքը վայելել տալու կիպրահայութեան, դժբախտա-

բար Կիպրոսի առաջնորդը հարկ եղած բարեացակամութիւնը ցոյց չի տար, հիւրաբար հոս եկող արուեստագէտներուն:
*Արաքս*, 18 *Փետրուար* 1928, *Գ. տարի*, *Թիւ* 9 (84), *էջ* 3

## ՀԱՅ ԿԵԱՆՔԸ ԿԻՊՐՈՍԻ ՄԷՋ
**(հատուած)**

Կիպրահայերը անակնկալ բախտաւորութիւնը ունեցան նաեւ վայելելու Պ. Ա. Շահմուրատեանի գեղեցիկ ձայնը եւ հպարտանալու անոր ներկայութեամբը, ինչպէս անցեալ տարի Տիկ. Սեւումեանով: Կուսակալ Ն. Վսեմ. Սըր Րօնալտ Սթօրս, որ իր հովանաւորութեան տակ առած էր Շահմուրատեանի երգահանդէսը եւ ուրիշ օտարներ, ջերմօրէն ծափահարեցին հայ արուեստագէտը:
*Արեւ*, 19 *Ապրիլ* 1928, *ԺԴ. տարի*, *Թիւ* 2794, *էջ* 1

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԿԵԱՆՔԸ ԿԻՊՐՈՍԻ ՄԷՋ
**(հատուած)**

Ա. Խ.

ՆԻԿՈՍԻԱ, 17 Ապրիլ. – Կիպրոս վերջերս բաղդը ունեցաւ վայելելու ծանօթ սիրուած արուեստագէտ պ. Արմենակ Շահմուրատեանը որ ասուպի պէս եկաւ անցաւ, իր երգահանդէսին քաղցր տպաւորութիւնը միայն թողլով մեզ:
*Արաքս*, 5 *Մայիս* 1928, *Գ. տարի*, *Թիւ* 19 (94), *էջ* 2

**ԿԻՐԱԿԻ, 1 ԱՊՐԻԼ 1928, ԳԱՀԻՐԷ**

Գահիրէի Էզպէքիէ Պարտէզի թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը: Դաշնակի նուագակցութիւն՝ Է. Լօնթոս:

Յայտագիր.

Ա. ՄԱՍ

Մակար Եկմալեան, *Քրիստոս պատարագեալ*, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Ջան, ա՛յ լուսին*, մեներգ՝ Շ-Մ.

Վաղարշակ Սրուանձտեանց, *Դըլէ եաման*, մեներգ՝ Շ-Մ.

Johan Svendsen: *Romance*, ջութակ՝ Ալֆրէտ Կրիւնպերկ

Francesco Paolo Tosti: *Ideale*, մեներգ՝ Շ-Մ.

Wolfgang Amadeus Mozart: *Don Giovanni*, Aria, մեներգ՝ Շ-Մ.

Բ. ՄԱՍ
Կոմիտաս վարդապետ, *Անտունի* եւ *Ալագեազ – Խնկի ծառ*, մեներգ՝ Շ-Մ.
Ռոմանոս Մելիքեան, *Վայրի ծաղիկ*, մեներգ՝ Շ-Մ.
Pablo de Sarasate: *Romanza Andaluza*, ջութակ՝ Ալֆրէտ Կրիւնպերկ
André Messager: *Fortunio*, ‘La maison grise’, մեներգ՝ Շ-Մ.
Édouard Lalo: *Le Roi d’Ys*, մեներգ՝ Շ-Մ.
Կոմիտաս վարդապետ, *Մոկաց Միրզա*, մեներգ՝ Շ-Մ.
- *Արեւ*, 22 *Մարտ* 1928, *ԺԴ. տարի*, *Թիւ* 2772, *էջ* 3։
- «*Շահմուրատեանի երգահանդէսը*», *Արեւ*, 24 *Մարտ* 1928, *ԺԴ. տարի*, *Թիւ* 2774, *էջ* 2։
- *Արեւ*, 28 *Մարտ* 1928, *ԺԴ. տարի*, *Թիւ* 2777, *էջ* 3։
- *Օ. Մ.*, «*Ա. Շահմուրատեանի երգահանդէսը*», *Արեւ*, 3 *Ապրիլ* 1928, *ԺԴ. տարի*, *Թիւ* 2782, *էջ* 2։

## Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Օ. Մ.

Պ. Շահմուրատեան կիրակի գիշեր Էզպէքիէի թատրոնին մէջ տուաւ իր հրաժեշտի երգահանդէսը, որ եղաւ, ինչպէս միշտ, գեղարուեստական քաղցր վայելք մը որ թանկագին է մա՛նաւանդ անոր համար որ մեզ լսել կուտայ *հայ երգը*, գրաւիչ՝ իր գողտրիկ պարզութեան մէջ եւ այնքան սիրելի իր բնաշխարհիկ արուեստով։

Այդ անուշ երգը, որ հայ ժողովուրդի սրտէն ծնաւ, ապրեցաւ ու արձագանգեց երբեմնի շէն մեր հայրենի երդիքներուն տակ ու դաշտերուն ծոցը, սրբազան բան մը ունի իր մէջ. իր հայեցի դրոշմն է ան՝ իր բանաստեղծութեամբ ու արուեստով. պէտք է գուրգուրալ անոր վրայ ու սերունդէ սերունդ ապրեցնել մեր սրտերուն մէջ, հոս ու ամէն տեղ։

Պ. Շահմուրատեան, որ գիտէ զգացումով ու տաղանդով երգել, ամէն գնահատանքի արժանի է երկար տարիներ գաղութէ գաղութ պտտցուցած ըլլալուն համար հայ երգը, մերթ ընդ մերթ անոր տաք շունչը սփռելու համար հեռաւոր գաղութներու վրայ։

Մարդ կը ցաւի, սակայն, երբ արժանաւոր գնահատութիւնը չըլլար այս գեղեցիկ պատեհութեան, երբ քիչեր կը վազեն թատրոն՝ լսելու հայ երգիչը որ արժանի է մասնաւոր ուշադրութեան ու քաջալերութեան։

Այդպէս եղաւ նաեւ այս անգամ։ Մինչդեռ տաղանդաւոր երգիչը, որուն ձայնը դեռ կը պահէ բարեբախտաբար իր գեղեցկութիւնը, այս անգամ երգեց շատ աւելի լաւ քան իր վերջին այցելութեան, ու իր երգը եղաւ շատ աւելի քաղցր ու

տպաւորիչ։

Պ. Շահմուրատեան երգեց Եկմալեանի *Քրիստոս պատարագեալը*, Ռ. Մելիք-եանի *Ջան ա՛յ լուսինը* եւ *Վայրի ծաղիկը*, Սրուանձտեանցի *Դըլէ եամանը* ու Կոմիտաս Վրդ.ի *Անտունին*, *Ալագեազ խնկի ծառը* եւ *Մոկաց Միրզէն*, բոլորն ալ զգացումով ու արուեստով։ Խորապէս տպաւորիչ էր *Քրիստոս պատարագեալը* ու գերազանցապէս գեղեցիկ՝ *Վայրի ծաղիկը* եւ *Մոկաց Միրզէն*։ Ասոնք, ինչպէս միւս բոլոր երգերն ալ խանդավառ ծափերով ընդունուեցան ու արուեստագէտը բազմիցս բեմ հրաւիրուեցաւ։ *Մոկաց Միրզէն*, որ յայտագրին վերջին երգն էր, ամենէն աւելի ծափահարուեցաւ, եւ, կրկնութեան պահանջքին վրայ, Պ. Շահմուրատեան երգեց իր փառաւոր *Հայաստանը*, որ՝ հակառակ իր հիննալուն՝ միշտ գեղեցիկ է ու անուշ իր ներշնչած կարօտով ու սիրով։

Պ. Շահմուրատեան երգեց նաեւ Թօսթիի *Իտէալը*, Մօզարտի *Արիան*, Ա. Մէսաժէի *Լա Մէզօն կռիզը* եւ Էտ. Լալօի *Ռուա տ'Իսը*։

Այս անգամ եւս, մենք զինքը սիրեցինք իր հայ երգերուն համար որոնց լաւա-գոյն արտայայտիչն է մեր մեծագոյն *թէնօռը*։

Երգահանդէսին մասնակցեցան ջութակահար Բրօֆ. Ա. Կրիւնպէրկ եւ դաշ-նակահար Բրօֆ. Լօնթօս մէյ մէկ գեղեցիկ կտորով, որոնք խանդավառ ծափերով ընդունուեցան։

*Արեւ*, 3 *Ապրիլ* 1928, *ԺԴ. տարի*, *Թիւ* 2782, *էջ* 2

**ՇԱԲԱԹ, 14 ԱՊՐԻԼ 1928, ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

Աղեքսանդրիոյ Ամերիքըն Միշընի սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։ Դաշ-նակ՝ Խաչատուրեան եղբայրներ։

- *Արաքս*, 14 *Ապրիլ* 1928, *Գ. տարի*, *Թիւ* 16 (91), *էջ* 2։

- *Արա*, «*Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Արաքս*, 21 *Ապրիլ* 1928, *Գ. տարի*, *Թիւ* 17 (92), *էջ* 3։

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

ԱՐԱ

Անցեալ շաբաթ գիշեր տեղւոյս Ամերիքան Միշընի մէջ տուաւ երգահանդէս մը եւս, համակրելի երգիչ Պ. Շահ-Մուրատեան որ Կիպրոսէ վերադարձին եւ Եգիպտոսէ չի մեկնած անգամ մը եւս այցի եկած էր Աղեքսանդրիա։

Շահ-Մուրատեանի արուեստին մասին կրկին խօսիլ աւելորդ է, քանի որ ան հանրածանօթ է արդէն հայութեան, ըլլայ անձնապէս կազմած իր երգահան-

դէններով, ըլլայ *կրամաֆօն*ի *փլաքն*երով որոնք տարածուած են աշխարհի չորս կողմը, իսկ իր ձայնը առաւել քան երբէք հուժկու է եւ գոռ ու ճկուն:

Այս անգամ յարգելի արուեստագէտը մեզ կը ներկայանար բոլորովին նոր յայտագրով, ուրկէ դուրս սակայն քանիցս տեղի տալով ժողովուրդին համակրական ցոյցերուն եւ ծափահարութիւններուն, երգեց մէկ քանի երգեր եւ մասնաւորաբար *Մոկաց Միրզա*ն:

Հակառակ ասոնց սակայն եւ յայտագրին լրացած ըլլալուն, հանդիսականները կը պահանջէին *Հայաստան*ը անվերջ ծափահարելով, թափահարելով եւ կեցցէ՜, *պրավօ*, *պիս* գոչելով անընդհատ:

Եւ Շահ-Մուրատեան վերջին անգամ բեմ գալով երգեց Հայաստանը այնքան խոր զգացումով, այնքան գեղեցիկ ու տպաւորիչ կերպով, որուն նմանը դժուար թէ յաճախ պատեհութիւն ունենանք լսելու:

Այս գիշեր Ամերիքան Միշըն գտնուողները անկասկած ունեցան գեղարուեստական վայելք մը ունկնդրելով զինքը, բայց նկատի պէտք է ունենալ որ անոնց թւոյն նուազութիւնը եւ բացականերու անարդարանալի ստուարութիւնը խոտոր կը համեմատի արուեստագէտներէ պահանջուած զոհողութեան, գեղարուեստի նախանձախնդրութեան եւ մեր իբր քաղաքակիրթ ու գեղարուեստասէր ժողովուրդ ցուցադրել ճգնած համբաւնուս հետ:

Կը յուսանք որ այս կէտը նկատի կ'առնեն բացակաները մասնաւորապէս, իսկ ներկաներն ալ բարի կ'ըլլան այդպիսի պարագայի մը նուազ պահանջկոտ ըլլալ եւ չի ծանրանալ արուեստագէտներու վրայ որոնք ծանրաբեռնելէ աւելի պէտք է քաջալերել:

Վերջացնելէ առաջ կ'արժէ գնահատանքով յիշատակել Բրօֆ. Խաչատուրեանի երկու հարազատները որոնք իրենց ճարտար մատներով դաշնակի վրայ թովեցին հանդիսականները:

***Արաքս***, 21 ***Ապրիլ*** 1928, ***Գ. տարի***, ***Թիւ*** 17 (92), ***էջ*** 3

## ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 23 ՄԱՅԻՍ 1928, ԵՐՈՒՍԱՂԷՄ

Երուսաղէմի Ֆրէրներու Գօլէճի սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը: Կը մասնակցին՝ պր. Մաքս Լէմբըլ (դաշնակ) եւ պր. Ֆոկըլ (ջութակ):

- «***Պ. Շահմուրատեան Երուսաղէմի մէջ***», ***Արեւ***, 25 ***Մայիս*** 1928, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 2825, ***էջ*** 2:

## ՀԻՆԳՇԱԲԹԻ, 7 ՅՈՒՆԻՍ 1928, ՊԷՅՐՈՒԹ

Պէյրութի Ամբիր սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

- ***Արեւ***, 1 ***Յունիս*** 1928, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 2831, ***էջ*** 2:

**ՕԳՈՍՏՈՍ-ՀՈԿՏԵՄԲԵՐ 1928, ՊԱՂՏԱՏ**

Պաղտատի մէջ կու տայ երեք երգահանդէսներ: Վերջինը կը կազմակերպէ Հ.Բ.Ը.Միութեան տեղւոյն մասնաճիւղը:

- «*Շահմուրատեան Պաղտատի մէջ*», *Արեւ*, 11 *Դեկտեմբեր* 1928, *ԺԵ. տարի*, *Թիւ* 2995, *էջ* 2:

## ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ ՊԱՂՏԱՏԻ ՄԷՋ

Պաղտատէն կը գրեն *Ապագայ*ի թէ Պ. Ա. Շահմուրատեան երեք ամիսի չափ Պաղտատ մնացած է եւ տուած է երեք երգահանդէս, որմէ շատ գոհ մնացած են նաեւ տեղւոյն անգլիացիները: Վերջին ներկայացումը տրուած է Հ.Բ.Ը.Միութեան տեղւոյն Մասնաճիւղին հետ միասին: Եւ թէեւ ծանօթ խմբակը աշխատած է խանգարել զայն, բայց չէ յաջողած: Պ. Շահմուրատեան Հոկտ. 22-ին Պարսկաստան մեկնած է եւ հոնկէ Հնդկաստան պիտի անցնի:

*Արեւ*, 11 *Դեկտեմբեր* 1928, *ԺԵ. տարի*, *Թիւ* 2995, *էջ* 2

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 22 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1928, ՊԱՐՍԿԱՍՏԱՆ**

Պաղտատէն կը հասնի Պարսկաստան:

- «*Շահմուրատեան Պաղտատի մէջ*», *Արեւ*, 11 *Դեկտեմբեր* 1928, *ԺԵ. տարի*, *Թիւ* 2995, *էջ* 2:

**ԿԻՐԱԿԻ, 2 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1928, ԹԷՀՐԱՆ**

Թէհրանի Զբաղաշտական Թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը*

Կոմիտաս վարդապետ, *Զիզ տու քաշի*

Մակար Եկմալեան, *Քրիստոս պատարագեալ*

Հայերէն, իտալերէն եւ ֆրանսերէն երգեր:

- «*Շահմուրատեան Թէհրանի մէջ*», *Արեւ*, 10 *Յունուար* 1929, *ԺԶ. տարի*, *Թիւ* 3019, *էջ* 2:

## ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ ԹԷՀՐԱՆԻ ՄԷՋ

Յայտնի երգիչ Պ. Ա. Շահմուրատեան, որ վերջերս Դաշտային Պարսկաստան անցած էր, Դեկտ. 2-ին երգահանդէս մը տուած է Թէհրանի մէջ, Զբաղաշտական թատրոնի սրահը: Շահմուրատեան յաջորդաբար երգած է հայերէն, իտալերէն եւ ֆրանսերէն երգեր, որոնց դաշնակի վրայ ընկերացած է Օր. Նուրուլլահ:

Հրճուանք, յուզում, տխրութիւն իրար խառնուած են, երբ երգիչը երգած է *Վարդը*, *Զիգ տու քաշի այ եզը*, *Քրիստոս պատարագեալ* եւն.:

Երգահանդէսին ներկայ գտնուած են նաեւ Պարսիկներ եւ Եւրոպացիներ, որոնք շատ լաւ տպաւորուած են: Հանդէսին վերջաւորութեան, ծաղկեփունջ մը նուիրուած է տաղանդաւոր երգիչին:

Շահմուրատեան Դեկտ. 5-ին մեկնած է Թաւրիզ, ուրկէ պիտի անցնի Հնդկաստան:

*Արեւ*, 10 ***Յունուար*** 1929, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 3019, *էջ* 2

### ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 5 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1928, ԹԱՒՐԻԶ

Պաղտատէն կը մեկնի Թաւրիզ:

- «***Շահմուրատեան Թէհրանի մէջ***», *Արեւ*, 10 ***Յունուար*** 1929, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 3019, *էջ* 2:

### ԴԵԿՏԵՄԲԵՐ 1928, ԹԱՒՐԻԶ

Թաւրիզի պետական թատրոնին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

- «***Ա. Շահմուրատեան Պարսկաստանի մէջ***», *Արեւ*, 22 ***Փետրուար*** 1929, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 3056, *էջ* 2:

## Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՄԷՋ

Յայտնի երգիչ Պ. Արմենակ Շահմուրատեան որ Պարսկաստանի գլխաւոր քաղաքները այցելած էր՝ երգահանդէսներ տալու համար, Թէհրանէն վերջ Թաւրիզի պետական թատրոնին մէջ եւս տուած է երկրորդ երգահանդէս մը: Պ. Շահմուրատեան Սուրիոյ ճամբով, մօտ ատենէն Եւրոպա կը վերադառնայ:

*Արեւ*, 22 ***Փետրուար*** 1929, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 3056, *էջ* 2

### ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 24 ԱՊՐԻԼ 1929, ՌԱՆԳՈՒՆ

Ռանգունի հայոց եկեղեցւոյ սրահին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

Յայտագիր.

Շ-Մ. կը մեներգէ՝

Մակար Եկմալեան, *Քրիստոս պատարագեալ*

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան* եւ *Ես սարէն կուգայի*

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը* եւ *Աշուն*

Դանիէլ Ղազարեան, *Անուշ գարուն*

Charles Gounod: *Sérénade*
Francesco Paolo Tosti: *Ideale*
Ուրիշ երգեր
Ջութակ՝ պր. Ր. Վ. Յարութիւնեան
Դաշնակի նուագակցութիւն՝ տիկ. Հընտր

- *Միք. Գասպարեան*, «*Շահմուրատեան Ծայր. Արեւելքի մէջ*», *Արեւ*, 4 *Յունիս* 1929, *ԺԶ. տարի*, *Թիւ* 3140, *էջ* 1-2:

## ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ ԾԱՅՐ. ԱՐԵՒԵԼՔԻ ՄԷՋ
**(Սեփ. թղթակցութիւն *Արեւի*)**

ՄԻՔ. ԳԱՍՊԱՐԵԱՆ

ՌԱՆԳՈՒՆ. 1 Մայիս. – Տեղւոյս փոքրաթիւ հայ համայնքը անակնկալ հաճոյքն ունեցաւ լսելու մեր հանրածանօթ ու տաղանդաւոր երգիչ Պ. Ա. Շահմուրատեանի կազմակերպած երգահանդէսը, որ տեղի ունեցաւ Ապրիլ 24-ի երեկոյեան, Հայոց եկեղեցւոյ սրահում:

Հանդէսի կազմակերպող յանձնախումբը աշխատել էր հնարաւոր չափով լայն ու գեղեցիկ ընծայելու այդ երեկոյթը եւ նախօրօք գաղութիս ամէն մի ընտանիքին եւս մի պատշաճ գրութեամբ տեղեկագրել ու հրաւիրել էր ներկայ գտնուելու:

Պ. Ա. Շահմուրատեանի աշխարհահռչակ անունը եւ շատ հայ ընտանիքի տներում գտնուող նրա երգած ռէքարտների քաղցրահնչիւն արձագանգը ոգեւորել էր ժողովրդին րոպէ առաջ նրան բեմի վրայ տեսնելու եւ նրա յուզիչ ու հմայիչ ձայնը լսելու:

Եւ ահա՛ որոշուած ժամին նա բեմ բարձրացաւ եւ բացաւ երգահանդէսը, որ սկսուեց *Քրիստոս պատարագեալ*ով եւ վերջացաւ *Հայաստան*ով:

Դաշնամուրի վրայ նրան ընկերակցում էր տեղւոյս մի հմուտ դաշնակահարուհի՝ Տիկին Հընտրը, իսկ միջոցներին ջութակի նուագածուն էր Պ. Ր. Վ. Յարութիւնեանը:

*Քրիստոս պատարագեալ* եւ *Հայաստա՛ն*, – ահա՛ հայ կեանքի ու իդէալի այն նուիրագործուած խորհրդանիշը, որին դարեր շարունակ ամուր փարած ու նրանց արիւնով սրբագործուած դրօշը միշտ բարձր բռնած՝ ազգովին քալել ենք դէպի առաջ:

Աստուածային մարդեղինիկ զոհաբերութեան եւ հայ ազգի աստուածային մարտիրոսագրութեան այդ երկու շարականներից՝ *Քրիստոս պատարագեալը* երգելուն Շահմուրատեանը կարծես թէ մեզ սաւառնեցնում էր դէպի ա՛յն մաքուր ու անծայրածիր եթերային բարձունքները, ուրտեղից Երկնաւոր Վարդապետը

աշխարհի իջաւ եւ իր արեան գնով բացեց մարդկութեան առաջ յաւերժական կեանքի ճանապարհը։

Իսկ Վանանդեցու սրտից բխած ու Շահմուրատեանի յուզիչ ու քաղցր *թօն*ով երգած *Հայաստան*ը լսելիս՝ կարծես թէ հոգով ու մտքով սլանում էինք դէպի Հայաստան աշխարհը, մեր հազարաւոր անմահ քաջերի ու հերոսների ապրած ու մեռած վայրերը, որոնք այդ «դրախտավայր երկրի» եւ ըստ բանաստեղծի գեղեցիկ որակումին՝ այդ «Լոյսի եւ յոյսի հայրենիք»-ի պահպանութեան ու ազատագրման համար իրենց թանկագին կեանքերը զոհաբերեցին։

Եւ ապա Ռ. Մելիքեանի *Վարդ*ը, *Աշուն*ը, Դ. Ղազարեանի *Անուշ գարուն*ը, Կոմիտաս Վրդ.ի *Ես սարէն կուգայի*, Կունօյի *Մէռէնատ*ը, Թոսթիի *Իտէալ*ը եւ մի քանի ուրիշ կտորներ, որոնք նոյնպէս բոլորի հիացումին ու գնահատումին արժանացան։

Անշո՛ւշտ, կարիք չկայ Պ. Շահմուրատեանին հանրութեան ծանօթացնելու, որովհետեւ նա արդէն իր ուրոյն տեղը գրաւած ունի հայ երգի եւ գեղարուեստի իրականութեան մէջ, բայց բարոյական պարտք ենք զգում այսքանն եւս աւելացնելու, որ այդպիսի տաղանդաւոր անձնաւորութիւնները մեր հայ ազգի փառքն են հանդիսանում եւ օտարների առաջ եւս մեզ պատիւ բերում։

Մի՛ շաբաթ այստեղ մնալուց յետոյ՝ Պ. Շահմուրատեան անցաւ Ջաւա, որտեղ թէ՛ հայ եւ թէ՛ օտար բեմերում իր համերգները տալու, յետոյ նորից վերադառնալու է տեղս՝ ամենամեծ միջազգային թատերասրահի մէջ մի կամ երկու օր երգելու եւ ապա անցնելու Կալկաթա ու Բօմբէյ՝ եւ վերադառնալու դէպ Եւրոպա։
*Արեւ*, 4 *Յունիս* 1929, *ԺԶ. տարի*, *Թիւ* 3140, *էջ* 1-2

**ՄԱՅԻՍ-ՅՈՒՆԻՍ 1929, ՃԱՒԱ, ԿԱԼԿԱԹԱ, ՊՕՄՊԷՅ**

Երգահանդէսներ Ճաւայի, Կալկաթայի եւ Պօմպէյի մէջ։

- *Միք. Գասպարեան*, «*Շահմուրատեան Ծայր. Արեւելքի մէջ*», *Արեւ*, 4 *Յունիս* 1929, *ԺԶ. տարի*, *Թիւ* 3140, *էջ* 2։

- «*Հետաքրքիր փաստ մեծ մարդու մասին*», *Ջահակիր*, *մարզական-երիտասարդական ամսօրեայ յաւելուած*, 27 *Նոյեմբեր* 1969, *Թիւ* 46 (306), *էջ* 4։

## ՀԵՏԱՔՐՔԻՐ ՓԱՍՏ ՄԵԾ ՄԱՐԴՈՒ ՄԱՍԻՆ

Արմենակ Շահմուրատեանը, որն անցել է արթիսթական փառաւոր ուղի եւ հռչակուել որպէս «Տարօնի սոխակ», 20-ական թուականներին Կալկաթայում համերգ է տալի։ Քաղաքի անգլիական թատրոնում ասեղ գցելու տեղ չկայ. ներկայ են հայեր, անգլիացիներ, հնդիկներ եւ այլ ազգերի ներկայացուցիչներ։

Նշանաւոր երգչին նրանք ընդունում են բացառիկ ջերմութեամբ։ Երբ հանդիսականների որոտընդոստ ծափահարութիւնների տակ համերգն աւարտւում է, ներկաները խանդավառուած կրկին բեմ են կանչում երգչին, խնդրելով եւս մի երգ։ Բազում ծափերից յետոյ Արմենակ Շահմուրատեանն ի վերջոյ տեղի է տալիս, բայց եւ յայտնում է հանդիսականներին, որ իր երգի կատարման ընթացքում, բոլորը պէտք է ոտքի կանգնեն։ Եւ հայրենասէր երգիչը սկսում է *Հայաստան, երկիր դրախտավայր* երգը։ Դահլիճը քարանում է։ Հայ ունկնդիրները, հայրենիքի կարօտն իրենց սրտերում, յուզւում են, իսկ դահլիճում սաւառնում են *Հայաստան...* հայրենաշունչ երգի հնչիւնները։
*Ջահակիր, մարզական-երիտասարդական ամսօրեայ յաւելուած*, 27 *Նոյեմբեր* 1969, *Թիւ* 46 (306), *էջ* 4

## ԿԻՐԱԿԻ, 6 ՅՈՒԼԻՍ 1930, ԹԷՀՐԱՆ

Թէհրանի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։
- «*Պարսկաստան*», *Հայաստանի կոչնակ*, 6 *Սեպտեմբեր* 1930, *Լ. տարի*, *Թիւ* 36, *էջ* 1148։

## ՈՒՐԲԱԹ, 25 ՅՈՒԼԻՍ 1930, ԹԷՀՐԱՆ

Թէհրանի Հայ Ակումբին մէջ՝ սգահանդէս Պօղոս Նուպարի մահուան առիթով, նախաձեռնութեամբ *Վերածնունդ* շաբաթաթերթին եւ կազմակերպութեամբ Շ-Մ.ի։
- «*Սգահանդէս Պօղոս Փաշա Նուպարի մահուան առթիւ*», *Արեւ*, 6 *Սեպտեմբեր* 1930, *ԺԶ. տարի*, *Թիւ* 3528, *էջ* 2։

## ԴԵԿՏԵՄԲԵՐ (ԵՐՐՈՐԴ ՇԱԲԱԹ) 1930, ՊԷՅՐՈՒԹ

Կը ժամանէ Պէյրութ։
- «*Պ. Ա. Շահմուրատեան*», *Արեւ*, 24 *Դեկտեմբեր* 1930, *ԺԶ. տարի*, *Թիւ* 3621, *էջ* 2։

## ՇԱԲԱԹ, 27 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1930, ՊԷՅՐՈՒԹ

Պէյրութի Ամերիկեան Համալսարանի West Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը, կազմակերպութեամբ հայկական եկեղեցիին։
- Nora Salmanian, ‘La contribution des Arméniens libanais à la vie musicale et artistique au Liban de 1920 à nos jours’, *Լիբանանի հայերը. անցեալի իշխանուհիներ ու գաղթականներ եւ ժամանակակից համայնք*, *Պէյրութ*, 2009, *էջ* 162։

**ՅՈՒՆՈՒԱՐ 1931, ՀԱԼԷՊ**

Հալէպի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

**- «*Շահմուրատեան Հալէպի մէջ*»**, *Արեւ*, 2 **Փետրուար** 1931, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 3653, ***էջ*** 2։

**ՇԱԲԱԹ, 14 ՄԱՐՏ 1931, ԱՏԻՍ ԱՊԷՊԱ**

Կը ժամանէ Ատիս Ապէպա։

**- *Իրազեկ***, «***Եթովպական Նամականի***», *Արեւ*, 20 *Ապրիլ* 1931, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 3717, ***էջ*** 1։

**ԿԻՐԱԿԻ, 29 ՄԱՐՏ 1931, ԱՏԻՍ ԱՊԷՊԱ**

Ատիս Ապէպային մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Դանիէլ Ղազարեան, *Անուշ գարուն*

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*

Ընդամէնը՝ 12 մեներգ, հայերէն, ֆրանսերէն, իտալերէն եւ ռուսերէն լեզուներով։

**- *Իրազեկ***, «***Եթովպական Նամականի***», *Արեւ*, 20 *Ապրիլ* 1931, ***ԺԶ. տարի***, ***Թիւ*** 3717, ***էջ*** 1։

## ԵԹՈՎՊԱԿԱՆ ՆԱՄԱԿԱՆԻ
### (Սեփական թղթակցութիւն *Արեւ*ի)

ԻՐԱԶԵԿ

ԱՏԻՍ ԱՊԷՊԱ, 4 Ապրիլ. – Մարտ 14-ին քաղաքս հասաւ Մշոյ սոխակը՝ Պ. Ա. Շահմուրատեան, մեծ հրճուանք պատճառելով գաղութիս եւ զարմանք՝ զինք հինէն ճանչցողներու, անոր համար որ Ատիս Ապէպա այցելել զոհողութիւն կը պարտադրէր, եւ դժուար էր երգահանդէսով մը ապահովել ճանապարհածախսը։ Ուրախ ենք որ Պ. Շահմուրատեան փոքր շեղում մը ընելով իր ուղեգծէն, այսօր ինքզինք կը գտնէ խաւարակուռն Ափրիկէի այս հեռաւոր ովասիսին մէջ՝ իրական ովասիս մը ստեղծելով Եթովպահայ գաղութին մէջ ալ։

Պ. Շահմուրատեան Մարտ 29-ին տուաւ իր առաջին երգահանդէսը՝ որուն հովանաւորութիւնը ստանձնած էր ֆրանսական դեսպան Ն. Վ. Վէրշէր տը Րիֆի։ Ներկայ էր քաղաքիս ընտրեալ դասակարգը իր մեծամասնութեամբ, հայ թէ օտար։ Պ. Շահմուրատեան իրեն վայել յաջողութեամբ երգեց 12 երգեր չորս լեզուներով՝ հայերէն, ֆրանսերէն, իտալերէն եւ ռուսերէն։ Հիանալի էր Ղազարեանի *Անուշ գարուն*ը, իսկ *Հայաստան*ը գլուխ գործոց մը, որուն մէջ Շահմու-

րատեան ինքզինք գերազանցեց երկարատեւ ծափեր խլելով։

Կ'իմանանք թէ Պ. Շահմուրատեան, ընդառաջելով ժողովուրդի փափաքին, երկրորդ երգահանդէս մըն ալ պիտի տայ, այս անգամ զուտ հայերէն եւ հայ ժողովրդական երգերով։
*Արեւ*, 20 *Ապրիլ* 1931, *ԺԶ. տարի*, *Թիւ* 3717, *էջ* 1

### ԱՊՐԻԼ-ՄԱՅԻՍ 1931, ԱՏԻՍ ԱՊԷՊԱ

Ատիս Ապէպայի մէջ՝ Շ-Մ.ի երկրորդ երգահանդէսը։

- *Թղթակից*, «*Կեանքը Հապէշիստանի մէջ*», *Արաքս*, 20 *Յունիս* 1931, *Զ. տարի*, *Թիւ* 25 (251), *էջ* 1։

## ԿԵԱՆՔԸ ՀԱՊԷՇԻՍՏԱՆԻ ՄԷՋ

ԹՂԹԱԿԻՑ

ԱՏԻՍ ԱՊԱՊԱ, 2 Յունիս. – Ծանօթ Թէնօռ Պ. Շահմուրատեան հոս տուաւ երկու երգահանդէսներ առաջինը միջազգային, երկրորդը զուտ հայկական։ Ան ովասիս մը ստեղծեց հոս իր այցելութեամբը։ Կ'իմանանք թէ երրորդ երգահանդէս մը պիտի տրուի կայսերական պալատան մէջ, Ն. Վ. Կայսր Հայլէ Սէլասէ Ա.ի համար, եւ այդ պատճառաւ Շահմուրատեան մայրաքաղաքս վերադարձած է Ճիպութիէն։
*Արաքս*, 20 *Յունիս* 1931, *Զ. տարի*, *Թիւ* 25 (251), *էջ* 1

### ՄԱՅԻՍ 1931, ՃԻՊՈՒԹԻ

Կ'այցելէ Ճիպութի։

- *Թղթակից*, «*Կեանքը Հապէշիստանի մէջ*», *Արաքս*, 20 *Յունիս* 1931, *Զ. տարի*, *Թիւ* 25 (251), *էջ* 1։

### ՅՈՒՆԻՍ-ՅՈՒԼԻՍ 1931, ԱՏԻՍ ԱՊԷՊԱ

Ատիս Ապէպայի մէջ՝ Շ-Մ.ի երրորդ երգահանդէսը։

- *Թղթակից*, «*Կեանքը Հապէշիստանի մէջ*», *Արաքս*, 20 *Յունիս* 1931, *Զ. տարի*, *Թիւ* 25 (251), *էջ* 1։

- *Թղթակից*, «*Եթովպիական նամականի*», *Արաքս*, 8 *Օգոստոս* 1931, *Զ. տարի*, *Թիւ* 32 (258), *էջ* 2։

## ԵԹՈՎՊԻԱԿԱՆ ՆԱՄԱԿԱՆԻ
**(Սեփական թղթակցութիւն *Արաքսի*)**

ԹՂԹԱԿԻՑ

ԱՏՏԻՍ ԱՊԱՊԱ, 22 Յուլիս. – Ծանօթ թէնոր Շահմուրատեան, ինչպէս գրած էի նախորդ թղթակցութեամբս, կրկին գալով մայրաքաղաքս, երրորդ նուագահանդէս եւս տուաւ եւ մեկնեցաւ:
*Արաքս*, 8 *Օգոստոս* 1931, *Զ. տարի*, *Թիւ* 32 (258), *էջ* 2

**ԿԻՐԱԿԻ, 25 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1931, ՄԱՐՍԻԼԻԱ**

Մարսիլիոյ Ս. Թարգմանչաց նորակառոյց եկեղեցիին օծումը: Շ-Մ. կը մասնակցի երգեցողութեան:

- «*Հայ ազգային կեանք*», *Հայաստանի կոչնակ*, 5 *Դեկտեմբեր* 1931, *ԼԱ. տարի*, *Թիւ* 49, *էջ* 1564:

## ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ԿԵԱՆՔ

Մարսէյլի Ս. Թարգմանչաց նորակառոյց եկեղեցւոյն օծումը տեղի ունեցաւ Հոկտ. 25-ին: Օծման հանդիսութեանց ներկայ էին ծովակալ Ժուպէր, երեսփոխան Վիտալ, հայասէր Քրաֆթ Պօնար, Մարսէյլի Նահանգապետին, Քաղաքապետին, Առեւտրական Սենեակին ու տեղական մամլոյ ներկայացուցիչները, եւ այլ օտար հիւրեր ու յոգնախուռն բազմութիւն մը Հայոց՝ Մարսէյլ ժամանած ամէն կողմէ: Պալաքեան եպիսկոպոս պատարագեց եւ աւուր պատշաճի քարոզ մը խօսեցաւ: Երգիչ Ա. Շահ-Մուրատեան մասնակցեցաւ երգեցողութեանց: Պաշտամունքէն ետք, ճաշասեղան մը տրուեցաւ հրաւիրեալ օտար եւ Հայ հիւրերուն, որոնցմէ շատեր պատշաճ ուղերձներ ըրին: Հուսկ եղան նուիրատուութիւններ զարդեղինական նոր օծուած այս եկեղեցւոյն, որուն կառուցման ծախսը հոգացողն է՝ Պր. Խօրասանճեան, եւ ճարտարապետը՝ Պր. Ա. Թահթաճեան:
*Հայաստանի կոչնակ*, 5 *Դեկտեմբեր* 1931, *ԼԱ. տարի*, *Թիւ* 49, *էջ* 1564

**ՇԱԲԱԹ, 31 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1931, ՓԱՐԻԶ**

Փարիզի Salle Pleyel-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը: Ջութակ՝ Ժորժ Սինանեան: Դաշնակ՝ Ժան Մասոն:

- «*Ա. Շահմուրատեան*», *Յառաջ*, 30 *Հոկտեմբեր* 1931, *Է. տարի*, *Թիւ* 1712, *էջ* 3, 4:

- *Շաւարշ Միսաքեան*, «*Արուեստին ուժը*», *Յառաջ*, 3 *Նոյեմբեր* 1931, *Է. տարի*, *Թիւ* 1715, *էջ* 1։

## Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ

Վաղը իրիկուն Փարիզի Փլէյէլի սրահին մէջ տաղանդաւոր երգիչ Արմ. Շահմուրատեան կուտայ երգահանդէս մը։ Պիտի երգէ հայերէն եւ եւրոպական, մեծ մասամբ հայ ժողովրդական ստեղծագործութիւններ։ Հայ ժողովուրդին դիւրութիւն մը տալու համար, տոմսերուն մեծ մասը նշանակուած է մատչելի գնով։

*Յառաջ*, 30 *Հոկտեմբեր* 1931, *Է. տարի*, *Թիւ* 1712, *էջ* 3

## ԱՐՈՒԵՍՏԻՆ ՈՒԺԸ

ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

Երկու հազար եւ աւելի ժողովուրդ խռնուած էր, կիրակի օր, Միւթիւալիթէի փառաւոր սրահը, տեսնելու եւ լսելու համար Յովh. Թումանեանի *Անուշ*ը։

Կ'ըսենք՝ ժողովուրդ, – ոչ թէ ընտրանի կամ «ընտրեալ հասարակութիւն»։

Այս բառը – ժողովուրդ – մեզի համար ունի այն իմաստը ինչ որ «պրոլետարիատ»-ը՝ դասակարգային առումով։ Բայց առանց այս վերջինին գիտական սեղմումներուն։

Անցեալ յունիսի Կոմիտասեան երգահանդէսէն յետոյ, այս երկրորդ անգամն է որ միեւնոյն սրահը կը թնդայ հայրենի խռովքի ալիքներուն մէջ, հարազատ յոյզերով եւ բուռն ծափերով։

Կը նշանակէ թէ որքան խոր է ծարաւը հայրենի երգին ու երդիքին։

Միեւնոյն պատկերը ունեցանք անցեալ շաբթու ալ, երբ կը տօնուէր Դաշնակցութեան Օրը, Փարիզի մէջ։ Եւ առ հասարակ մխիթարական է պատկերը՝ միւս բոլոր հանդէսներուն, քաղաքական, հայրենակցական թէ գեղարուեստական։

Բայց, չմոռնանք ափսոսալի պարագաներն ալ։ Շաբաթ գիշեր, Շահ-Մուրատեանի երգահանդէսին, ներկաներու թիւը հարիւրը չէր անցներ, թերեւս մէկ չորրորդն ալ՝ «հրաւիրեալ»...։

Կ'ընդունինք, պատճառը այն է որ, վերջին շաբաթներու ընթացքին, իրար կը հրմշտկեն երեկոյթներն ու ցերեկոյթները, եւ ժողովուրդը յաճախ կը շուարի։ Երբեմն ալ մանր-մանր կը հաշուէ, յիշելով տնտեսական տագնապը։

Աչք մը *Յառաջ*ի չորրորդ էջին վրայ, կրնայ գաղափար տալ սարքուած հանդէսներու եւ ներկայացումներու խճողման մասին, Փարիզէն մինչեւ յետին գիւղաքաղաքը։

Այսպէս կամ այնպէս, ակներեւ է պահանջը՝ հայրենի յուշերու, – երգին ու խաղին, բարբառին ու տենչերուն։ Եւ երախտագիտութեան արժանի են մտքի եւ արուեստի բոլոր այն մշակները, որ կը քամեն իրենք զիրենք, փոխարէն ապահովելով տարրական, երերուն ապրուստ մը։

Պէտք է ըլլալ երգիչ, դերասան, արուեստագէտ կամ վաստակաւոր, իմանալու համար թէ ի՛նչպէս կը վարձուի սրահ մը, ի՛նչպէս «կը տեղաւորուին» տոմսակները, եւ ի՛նչ հոգեհան երկունք է որ կը տեւէ, ներկայացման մը որոշումէն մինչեւ իրագործումը։

Եթէ կիրակի օր աչքերը կը կշտանային բազմութեան յորդումէն եւ խանդավառութենէն, շաբաթ գիշեր ալ, կարելի չէր զսպել դառնութեան կսկիծը, երբ, մոռնալով տիրող ամայութիւնը, ներկաները կը պահանջէին որ Շահ-Մուրատեան *Հայաստան*ը երգէ, յայտագրէն դուրս...

Ցիր ու ցան կը յիշենք այս իրողութիւնները, լուսաւորն ու կսկծալին, շեշտելու համար թէ ի՛նչպէս վառ կը պահուի ճրագը, այս պողոտաներուն վրայ։ Եւ քիչ մը ամէն տեղ։

Հարկ է որ ըմբռնենք, վերջապէս, թէ պղատոնական համակրանքը ամէն բան չէ, երբ կ՚ուզենք յագեցնել մեր հոգեկան ծարաւը, հայկականէն մինչեւ ամենաբարձր գեղարուեստականը։

Միջանկեալ յիշենք որ, շաբաթ գիշերուան երգահանդէսին, երիտասարդ ջութակահար Ժ. Սինանեանի նուագած երկու օտար կտորներուն համար՝ հեղինակի վարձք է պահանջուած երեք հարիւր ֆրանք։

Արդ, ինչ կ՚ընենք իբրեւ հաւաքական ճիգ, զօրացնելու համար մեր մտքի եւ արուեստի մշակներուն դիմադրական, արտադրական կարողութիւնը։

Խո՞րթ են այս բացատրութիւնները։ Բայց չէ՞ որ կը գտնուինք Եւրոպայի սալայատակներուն վրայ, ուր իւրաքանչիւր քայլին վճարքն է որ գլուխ կը ցցէ...

Անհատական ձեռնարկներ միշտ ալ պիտի ունենանք։ Մեր արուեստագէտներն ալ միեւնոյն ժողովուրդին զաւակներն են։ Տոկուն եւ աննկուն։

Ահաւասիկ երգչախումբ մը, Սիփանը, որ ձեւ ու մարմին առաւ անհատական ճիգերով, կրնայինք ըսել՝ գիշերաջան տքնութեամբ, եւ այսօր կը փնտռուի։ Կայ երկրորդ խումբ մը եւս, Կոմիտասը, աւելի համեստ։

Մարսէյլի եկեղեցիին բացման առթիւ, երգչախումբ մը կազմելու ձեռնարկեց Կոմիտասի առաջին սաներէն մէկը։ Պիտի ուզէինք որ դառնար տեւական։ Տեղական ուժերով խումբեր կազմուած են Լիոնի եւ Տէսինի մէջ։

Արդ, միայն վայելքի օրերո՞ւն պիտի յիշենք այս համակրելի ճիգերը։ Մեր պարտականութիւնը կը վերջանա՞յ տարին քանի մը տոմսակ առնելով։

Մեծագումար նուէրներ եւ կտակներ կ'ըլլան եկեղեցիներու համար։ Նոյն իսկ դրամ չի խնայուիր աւելի շքեղ շուրջառներ, զարդարուն շապիկներ գնելու համար։

Դուք լսեցի՞ք ո՛ր եւ է շօշափելի յատկացում՝ հայկական թատրոնի կամ երաժշտութեան համար։

Շռայլ գումարներ կը ծախսուին օտար նուագախումբեր վարձելու համար։ Իսկ ինչո՞ւ այնքան ժլատ ենք, կամ չունինք նախընտրութեան իրաւունք, երբ հայկական միութեան մը հետ է մեր գործը։

Արուեստը հայրենիք չունի։ Բայց ի՞նչ կ'արժէ հայրենիքը առանց սեփական արուեստի։ Առանց անոր ամենակալ ուժին։

*Յառաջ*, 3 *Նոյեմբեր* 1931, *է. տարի*, *թիւ* 1715, *էջ* 1

**ԵՐԵՔՇԱԲԹԻ, 17 ՆՈՅԵՄԲԵՐ 1931, ՓԱՐԻԶ**

Փարիզէն նամակ կը գրէ Արշակ Չօպանեանին (վայրը անյայտ)։ Կը տեղեկացնէ լաւ ձայն ունեցող 22 տարեկան Հ. Պլուզեանի մասին եւ կը խնդրէ Չօպանեանէն միջնորդել Մարգարիտ Բաբայեանին որպէսզի զայն ընդունի իր աշակերտը։

- *Արմենակ Շահմուրատեան, կազմող՝ Խաչիկ Սաֆարեան, խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 62։

## ՆԱՄԱԿ ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆԻՆ

Փարիզ, 17 Նոյեմբեր, 1931

Սիրելի Ա. Չօպանեան

Երէկ Հ. Պլուզեան անունով 22 տարեկան տղեկ մը ինձ ներկայացաւ, որուն տեսած, աւելի ճիշդ հանդիպած եմ տարիներ առաջ, Պէյրութ գտնուած պարագային։ Իր ըսածին նայելով, լաւ պարիթոն ձայն մ'ունի՝ ապագայ խոստանալու չափ։

Քանի որ օր. Մ. Բաբայեան զինքը լսած է, վստահ եմ թէ, եթէ ձայնը արժէքաւոր է, ապագայ կը խոստանայ – չպիտի մերժէ իրեն հետ պարապելու։ Գոնէ այնչափ մը պատրաստել զինքը, եկող տարուայ saison-ին Conservatoire-ի քննութեանց մասնակցելու չափ։ Օրիորդը Ձեզ շատ կը յարգէ եւ չպիտի մերժէ Ձեզ, եթէ գտնէ, որ տաղանդ ապագայ կը խոստանայ։ Իր ըսածին նայելով՝ կեանքը հազիւ կը շահի։ Ուրախ պիտի ըլլար այլապէս վճարելու օրիորդին։

Իբր թէ իտալացի professeur մը շատ հաւնած է իր ձայնին եւ փափազած է իրեն

դաս տալ, սակայն վճարումով մը։

Եթէ օրիորդը տեսնելու պատեհութիւն մ'ունենամ, կը խօսիմ իրեն, սակայն վստահ եմ, թէ Ձեր խօսքը շատ աւելի ազդեցութիւն պիտի ընէ...

Յարգանօք Ձերդ անձնուէր

Ա. Շահ-Մուրատեան

*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 62

## ՇԱԲԱԹ, 15 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1932, ՓԱՐԻԶ

Փարիզի Petit Journal-ի սրահին մէջ՝ Դաշնակցութեան Օրուայ տօնակատարութիւն, նախագահութեամբ Ռուբէնի։ Խօսք՝ Շաւարշ Միսաքեան եւ Ա. Ջամալեան։ Մեներգ՝ Շ-Մ. եւ օր. Իրիս Պիւլպիւլեան։ Արտասանութիւն՝ օր. Ա. Տէր-Թովմասեան։ Կը մասնակցի Կոմիտաս երգչախումբը, խմբավար՝ Նշան Սերգոյեան։

- *Յառաջ*, 12 *Հոկտեմբեր* 1932, *Ը. տարի*, *թիւ* 2006, *էջ* 4։

## ՈՒՐԲԱԹ, 10 ՓԵՏՐՈՒԱՐ 1933, ՓԱՐԻԶ

Փարիզէն նամակ կը գրէ Շահէնին՝ ԱՄՆ։ Կը տեղեկացնէ՝ որ արիւնապակասութեան արագ աճեցողութեան պատճառով ստիպուած եղած են իր դստեր փոխադրել Փարիզէն դուրս գտնուող սանաթորիում մը։ Ամէնօրեայ այցելութեան համար Շ-Մ. եւ տիկինը լքած են Փարիզը եւ տեղափոխուած սանաթորիումի մօտը գտնուող բնակարան մը։ Այս բոլորին պատճառով ծախսած է իր վաստակած գումարներուն նշանակալի մասը։ Կը տեղեկացնէ՝ որ կը փափաքի երգահանդէններու համար Ամերիկա մեկնիլ, բայց ճանապարհածախսին համար կը պակսի 60-70 տոլար։ Կը խնդրէ Շահէնէն կարգադրել այս գումարը։

- *Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 62-64։

# ՆԱՄԱԿ ՇԱՀԷՆԻՆ

Փարիզ, 10 փետրուար, 1933

Սիրելի եւ անմոռանալի Շահէն

Վեց տարիներու երկար ժամանակէ մը ետքը միայն կուզամ լռութիւնս խզել։

Նամակ գրելու դատապարտելի ծուլութիւն ունիմ։ Հօրեղբօրս միակ զաւակը կը գրէ ինձ ժամանակ առ ժամանակ ու կը դատապարտէ զիս աններելի ծուլութեանս համար։ Կինս է իրեն պատասխանողը։ Վերջինիս կինը ֆրանսերէն գիտնալով՝ կը թարգմանէ իրեն։

Քո վերջին նամակը եւ բանաստեղծութեան հատորը ստացած եմ ժամանակին ու երբեմն-երբեմն կը կարդամ ուշիուշով ու կը զոհանամ սրտով ու գլուխով։ Որոշած եմ ամէն կերպով վերադառնալ նոր հայրենիքս ու հաստատուել վերջնականապէս ու վերջ տալու այս շարժուն կեանքիս։ «Փոփոխական ծառը արմատ չի բռներ...»

Կարօտցած եմ Ամերիկան եւ աւելի շուտ՝ գաղափարական ընկերներս եւ բարեկամներս... Այստեղ կեանքը համեմատաբար աժան է, սակայն ապրուստը աննշան եւ անապագայ։ Ես, իմ վեց տարուայ ճամբորդութեանս, Փարիզէն մինչեւ Ճաւա... ամէն հանդիպած տեղ համերգներ տալով՝ լաւ դրամ շահեցայ, սակայն միւս կողմէ աղջկաս հիւանդութեանը՝ արիւնապակասութեան արագ աճեցողութեան պատճառով կորսնցնելու դժբախտութիւնը պիտի ունենայինք։ Անմիջապէս, մեր տան բժշկի խորհրդով՝ Փարիզէ դուրս, լեռան մը կողի վրան շինուած սանաթորիում (հիւանդանոց) փոխադրեցին, իմ բացակայութեանս ժամանակ։ Կինս տուն-տեղը քանդելով, հաստատուեցանք սանաթորիումին կից գիւղաքաղաքում։ Կրնաս ի նկատի ունենալ, թէ ինչպիսի խոշոր ծախսերու ենթարկուեցայ... Տուն մը քանդել, կարասիներով հանդերձ եւ նորէն նոր կահ ու կարասիքով ուրիշ տուն մը վարձել։ Որպէսզի մօտ լինի սանաթորիումին՝ օրական այցելութիւնը ընելու համար... Հապա հիւանդանոցի բոլոր խնամքներու ծախքերի համար... «Զորն ասեմ եւ զորն խոստովանեմ...»։ Մէկ խօսքով ասած, դրամներս ցնդեցան։

Էստեղ ապագայ մը կարելի չէ հիմնել եւ դրամ աշխատիլ, միայն միջակ ապրուստ մը։ Երկար պիտի ըլլայ այստեղի մասին նամակով ձեզ պատմել, հող եղած ատեն գլուխ-գլխի տանք սիրելի քրոջս՝ Հրանոյշի պատրաստած սուրճի կամ չայի բաժակը առջեւնիս, խմենք ու խօսինք ամէն նիւթերու՝ իմ ճամբորդութեան մասին։

Սիրելի Շահէն, հող գալու համար ստիպուած եմ փոխադրուիլ գոյքերով եւ վերջնականապէս։ Առայժմ կինս ու զաւակս կը մնան հոս եւ նիւթապէս վրաս բեռ մը չեն, բաւական կերպով իրենց կեանքը կը շահին եւ լիուլի։ Իմ ճանապարհածախս, անհրաժեշտ իրեղէններուս, երաժշտական գրքերուս եւ հող կարենալու առ առաւելն համերգ մը կազմակերպելու համար ինձի կը պակսի 60-70 տոլար, ահաւասիկ պիտի խնդրէի, իբր եղբայր, առանձին կամ պ. Գազանճեանին հետ մէկտեղ այդ գումարը ինձ առաջին փոստով ղրկելու հնարաւորութիւնն ունենայիք, չափազանց երախտապարտ պիտի մնամ... Այդտեղի համար գումարը մեծ չէ, առաջին երգահանդէսիս արդիւնքը, նոյնիսկ շատ մատչելի գներով, կը

բաւարարի վճարելու ձեր պարտքը։
Կը խնդրեմ պատասխանէք անմիջապէս, առանց ժամանակ կորսնցնելու։
Սիրոյ տաքուկ համբոյրներ՝ Սօնային եւ Սիլվային, յարգանքներս՝ տաքուկ եւ անկեղծ՝ պատուական տիկին Հրանոյշին, իսկ քեզի... կը խնայեմ, եւ Գազանճեան ընտանիքի բոլոր անդամներուն ջերմ յարգանքներս եւ անմոռաց գաղափարական յուշեր...
Ա. Շահ-Մուրատեան
Յ.Գ. Սիրելի քոյրի՛կս, նամակիս պատասխանը, այո՛ կամ ո՛չ, չձգես էդ վոըշիկ Շահէնը ուշացնէ... Միշտ ձերդ սիրով։
*Արմենակ ՇահՄուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 62-64

### ՀԻՆԳՇԱԲԹԻ, 23 ՄԱՐՏ 1933, ՓԱՐԻԶ

Փարիզէն նամակ կը գրէ Շահէնին՝ ԱՄՆ։ Կը տեղեկացնէ՝ թէ ստացած է չէքը, բայց դժուարութիւն ունեցած է զայն գանձելու ֆրանսական դրամատուներէն։ Միայն մէկ դրամատուն մը ընդունած է չէքը, պայմանով որ վճարումը կատարէ Ամերիկայէն դրամը ստանալէն ետք։ Այս գործողութիւնը պիտի տեւէ մէկ ամիս, որմէ ետք միայն պիտի կրնայ ճամբորդել Ամերիկա։
- *Արմենակ ՇահՄուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 64-65

## ՆԱՄԱԿ ՇԱՀԷՆԻՆ

Փարիզ, 23 մարտ, 1933

Սիրելի Շահէնս
Ժամանակին առած եմ նամակդ, քանիցս կարդացած։ Հոս ըլլայիր նէ, համբոյրներու լոզանք մը պիտի տայի քեզ... այնչափ որ կարօտցած եմ քեզ...
Այս տեղի բանքերէն ոչ մէկը ընդունեց չէքը, որովհետեւ չէքը պէտք էր տրուէր այս տեղի որեւէ բանքի անունովը։
Բարեկամներէն մէկը ըսաւ, բարեբախտաբար, որ հոլանդական բանքը միայն այդ կրնայ ընելու, ատով կը զբաղի։
Վազեցի հոն անմիջապէս։ Չէքդ առին ու անոր փոխարէն ստացագիր մը տուին ինձ, ըսելով՝ ամիս մը վերջը միայն, Ամերիկայէն գանձելէն ետքը կուգաք՝ գանձելու դրամդ։

Ես, որ հեւիհեւ էի մեկնելու այս մի քանի օրերու մէջ, ստիպուած եմ ամիս մ'ալ սպասել, անվճար, ինչպէս առածը կ'ըսէ. «Աւելի լաւ է ուշ, քան երբեք»: Քո նամակդ, այնչափ տաքուկ, եղբայրական զգացումներով լի, զիս չափազանց յուզեց:

Դուն միշտ նոյն հայերնաբաղձ բանաստեղծ վանեցի վոշիկն ես՝ զգացումով բանաստեղծական շաղախ եւ համամարդկային վերելքովդ միաժամանակ:

Դուն միշտ նոյն հայրենաբաղձ բանաստեղծ վանեցի վոշիկն ես՝ զգացումով բանաստեղծական շաղախ եւ համամարդկային վերելքովդ միաժամանակ...

Պ. Գազանճեանի հիւանդութիւնը ինձ շատ ցաւ պատճառեց... Արժէքաւոր եւ գաղափարական տիպար ընկեր մըն է: Մի՞թէ կարելի միջոցները կը պակսին... ափսո՛ս: Իմ կողմէ յատուկ յարգանքներս յայտնէ իրեն եւ ապաքինում մաղթէ: Բարեւներ նաեւ Սիւնիին, պ. Յօվսէփեանին եւ տոքտոր Կիւրէղեան ընտանիքներուն:

Պարտք կը դնեմ վրադ՝ իմ լաւագոյն եղաբայրական զգացումները տիկին Հրանոյշ քրոջս եւ բիւրաւոր համբոյրներ ու զգուանքներ՝ շատ սիրելի զոյգ մը դստրիկներուդ՝ Սիլվիային ու Սոնիային:

Սիրելի Շահէն, հիմիկուընէ սկսեալ ու առաւօտ կանուխ լուսաբացին կոչնակդ ձեռքդ առ ու խելառ հարուածներ իջեցուր տախտակին՝ գլխին, փորին եւ ուսին... կանչելով՝ օրհնեա՜լ է ժամը, հրամեցէ՜ք...

Սիրելիս, հոդ խօսելու պաշար չի մնաց, բան մը չեմ ըսեր հիմիկուընէ, այդ վերապահէ այնտեղի համար:

Հրանոյշ քոյրիկս անոյշ ապուրը՝ սոխով ու սոխռածով, կ'ուտենք ու կը խօսինք...

Առայժմ, տաքուկ համբոյրներով եւ անկեղծ ու գողտրիկ զգացումներով՝ մնամ Ձերդ միշտ

Ա. Շահ-Մուրատեան

*Արմենակ Շահմուրատեան*, *կազմող՝ Խաչիկ Սաֆարեան*, *խմբագիր՝ Հենրիկ Բախչինեան*, *Երեւան*, *Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն*, 1998, *էջ* 64-65

## ԿԻՐԱԿԻ, 26 ՄԱՐՏ 1933, ՓԱՐԻԶ

Գուրգէն Ալէմշահ, Շ-Մ. եւ տիկինը, երգչուհի Իրիս Պիլպիլեան եւ քոյրը եւ Աստղիկ Առաքելեան Վիլժիւիֆի հոգեբուժարանին մէջ կ'այցելեն Կոմիտաս վարդապետին:

- *Ա.*, «*Այց մը Կոմիտաս վարդապետի. վարդապետը կ'ողջագուրուի եւ կը խօսի երգիչ Շահ-Մուրատեանի հետ*», *Յառաջ*, 31 *Մարտ* 1933, 9-*րդ տարի*, *Թիւ* 2151, *էջ* 2:

- *Գ. Մ. Ալէմշահ*, «*Այց մը վարդապետին* (*յուշատետրէս*)», *Յառաջ*, 27 *Հոկտեմբեր* 1935, 11 *տարի*, *Թիւ* 2946, *էջ* 3:

# ԱՅՑ ՄԸ ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ
## ՎԱՐԴԱՊԵՏԸ Կ'ՈՂՋԱԳՈՒՐՈՒԻ ԵՒ ԿԸ ԽՕՍԻ ԵՐԳԻՉ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՀԵՏ

Ա.

Անցեալ կիրակի մեր մեծ արուեստագէտը Շահ-Մուրատեան եւ իր կինը, ընկերակցութեամբ երիտասարդ երգչուհի Պիլպիլեանի եւ քրոջ, երաժիշտ Գ. Ալէմշահի եւ Օր. Աստղիկ Առաքելեանի, այցելութեան կ'երթան Կոմիտաս վարդապետի: Թէեւ անցած էր այցելութեան ժամանակը, բայց տնօրէնութիւնը հաճոյակատարութեամբ կ'արտօնէ եւ պաշտօնեայ մը Կոմիտասը կ'առաջնորդէ այցելուներուն մօտ, ճաշասրահին մէջ: Կոմիտաս կ'երեւի շատ հանդարտ եւ զուարթ տրամադրութեամբ: Սրահ կը մտնէ, ուր շուրջանակի կանգնած էին այցելուները: Շրջանակ մը գծելով կ'անցնի բոլորին առջեւէն, կուգայ կը կենայ Պ. Շահ-Մուրատեանի մօտ եւ կ'ողջագուրէ զայն: Կարօտով համբուրուելէ յետոյ, Կոմիտաս որպիսութիւնը կը հարցնէ Շահ-Մուրատեանի, ու կը դառնայ Տիկին Շահ-Մուրատեանի (Ֆրանսուհի), ֆրանսերէն լեզուով կը հարցնէ որպիսութիւնը եւ կ'աւելցնէ. - «Ի՞նչպէս է, գո՞հ էք Շահ-Մուրատեանէն, շատ խիստ մարդ է Շահ-Մուրատեանը հա՛…»? Պահ մը կը խնդան: Յետոյ Կոմիտաս կը դառնայ միւսներուն եւ իր գոհունակութիւնը կը յայտնէ, որ այցելութեան եկած են իրեն: Շատ արագ կը խօսի, ինչպէս քիչ մը իր սովորութիւնն էր, անսայթաք արագութեամբ, բայց խօսքերը անկապ:

Կ'ըսէ թէ շատ գոհ է իր վիճակէն, պաշտօնէութենէն եւ հպարտ է որ իր… ծառայութեան մէջ ունի բազմահազար մարդիկ: Տեսակ մը զինուորական կազմակերպութիւն կը կարծէ այդ պաշտօնէութիւնը որուն «շէֆ»-ը ինք է: Երբ հարցումներ կ'ուղղուին սնունդին մասին, կը պատասխանէ թէ տրուած կերակուրով փորը կը լեցուի, բայց սնունդը քիչ կը ստանայ: Այսուհանդերձ գոհ է: Ժամ մը կը տեւէ խօսակցութիւնը եւ Կոմիտաս ոչ մէկ ձանձրոյթ, ոչ մէկ դժգոհութիւն ցոյց կուտայ: Չնեղացնելու համար, ցտեսութիւն կ'ըսեն այցելուները եւ կը մեկնին:

Կոմիտաս հագած էր վարդապետի իր վերարկուն, արդէն հինցած: Օձիքը, կոճակի փոխարէն, գնդասեղով մը իրարու կպցուցած: Շատ նիհար էր:

Կոմիտասի այս երկրորդ այցելութիւնն է, որ կուտայ Շահ-Մուրատեան: Եւ կը պատմէ թէ իր առաջին այցելութեան ընթացքին նկարիչ Թէրլէմէզեանի հետ, ասկից տասը տարի առաջ, Կոմիտաս շատ կատաղի ընթացք մը ցոյց տուած եւ վռնտած է, ընդհակառակն այս անգամ շատ հաճոյակատար, շատ հանդարտ եւ զուարթ էր:

Պ. Շահ-Մուրատեան կը թելադրէ տարուան մէջ «Կոմիտասի Օր» մը ստեղծել, որ այդ առթիւ հայ արուեստագէտներէ կազմուած յանձնախումբ մը հանդիսու-

թիւններ կատարէ եւ հասոյթը յատկացնէ Կոմիտասի Խնամատար Յանձնախում-բին՝ թեթեւցնելու համար անոր գործը։ Կոմիտաս այն արուեստագէտն է, որուն անունը դրոշմուած է բոլոր Հայերուն հոգւոյն մէջ Եւրոպայէն Ամերիկա, Եգիպ-տոսէն մինչեւ Ասիոյ ծայրագոյն մասերը։ Այսքան շատ սիրուած եւ այսքան մեծ ժողովրդականութիւն վայելող արուեստագէտ մը պէտք է որ ունենայ իր «Օր»-ը, թէ իբրեւ բարոյական վարձատրութիւն իր թանկագին գործին համար եւ թէ իբրեւ նիւթական վարձատրութիւն իր այս ֆիզիքական նեղութեան մէջ։

Պ. Շահ-Մուրատեան, շատ զգածուած Կոմիտասի ներկայ վիճակը տեսնելով, անոր փառքի հին օրերը վերյիշելով, մեզի յայտնեց թէ յառաջիկային, Ամերիկա եւ այլուր այցելութեան ընթացքին պիտի կազմակերպէ «Կոմիտաս Օր»-եր ի նպաստ հայ մեծ արուեստագէտին, վստահ թէ Կոմիտասը սիրող արուեստագէտ-ները պիտի խմբուին մէկտեղ այս նպատակով։

*Յառաջ*, 31 *Մարտ* 1933, 9-*րդ տարի*, *Թիւ* 2151, *էջ* 2

## ԱՅՑ ՄԸ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ (ՅՈՒՇԱՏԵՏՐԷՍ)

Գ. Մ. ԱԼԷՄՇԱՀ

26 Մարտ 1933. – Այսօր, ժամը 3-ին, Պիւլպիւլեան երկու քոյրերուն եւ Աստղի-կին հետ վարդապետին այցելութեան գացինք։ Վերջին պահուն Պ. Շահմուրատ-եանն ալ մեզի միացաւ իր տիկնոջ հետ։

Հիւանդներու այցելութեան ժամը արդէն անցած էր երբ հասանք Վիլժիւիֆ եւ երկար բանակցութիւններէ վերջ միայն կարելի եղաւ վարդապետը տեսնելու արտօնութիւն ստանալ։

Հիւանդանոցի տնօրէնը համոզելու համար, հարկ եղաւ Շահմուրատեանը ներկայացնել իբրեւ վարդապետին մտերիմներէն մին, որ նոյն օրն իսկ հասած էր Ամերիկայէն եւ քանի մը ժամ վերջ պիտի մեկնէր կրկին արտասահման։

Վերջապէս մեզ առաջնորդեցին վարդապետին գտնուած շէնքը։ Մտանք հիւրանոց, եւ հիւանդապահ մը գնաց վարդապետին իմացնելու, որ հիւրեր եկած էին իրեն։

Շահմուրատեան, որ տարիներէ ի վեր չէր տեսած զինքը, սկսաւ մտահոգու-թեան նշաններ ցոյց տալ։

- Ալէմշահ, ըսաւ, իմացայ որ վերջերս վարդապետը իր հին բարեկամները լաւ չընդունիր, աւելի լաւ է չերեւամ եւ դուրսը սպասեմ։ Եթէ տրամադրութիւնը լաւ ըլլայ, կանչէ, ես կուգամ։

Խօսքը դեռ չէր աւարտած, երբ վարդապետը վրայ հասաւ եւ էն առաջ

Շահմուրատեանը տեսնելով, ուրախութեամբ մօտեցաւ իրեն եւ «Արմէն, այս դո՞ւ ես, ո՞ւր էիր այսքան ատեն» ըսելով գրկեց զինքը եւ զարմանալի յիշողութեամբ մը լուրեր ուզեց, անուններ տուաւ։ Յետոյ, կարգաւ բոլորս աջը համբուրեցինք եւ սեղանի մը շուրջ նստանք միասին։ Վարդապետը՝ իրեն ուղղած մեր հարցերուն կը պատասխանէր երբեմն խիստ բանաւոր կերպով, բայց յաճախ մեզի համար բոլորովին անհասկնալի լեզուով մը, զոր մենք կատարելապէս հասկնալ կը ձեւացնէինք։

Առանց ընդմիջելու՝ երկար մտիկ ըրինք եւ ի վերջոյ խօսակցութեան նիւթը փոխելու համար հարցուցինք կատակով. «Վարդապե՛տ, Շահմուրատեանը քանի՞ տարեկան կ'ըլլայ. ինք կը պնդէ որ դեռ 45 չկայ»։ Խնդալով՝ «Քիչ էլ կենայ, կ'ասի թէ դեռ չէ ծնուել» ըսաւ ու շարունակեց կատակել։ Յետոյ սկսաւ մեզի հայրական խրատներ տալ. «Դուք բարի պէպէքներ, երեսնիդ որ այսպէս բարի ըլլայ, ձեր տուներուն մէջ միութիւն կ'ըլլայ, ապա թէ ոչ ընտանիքը կը քայքայուի»։

- Վարդապետ, հարցուցի ի՞նչպէս կ'անցընէք ձեր ժամանակը, կը կարդա՞ք, կը գրէ՞ք, կը շարունակէ՞ք ձեր թանկագին աշխատանքը։

- Ոչ, որքան ատեն որ հոս մնամ, կինս, զաւակներս չառնեմ ու նորէն տուն տեղ չըլլամ, չեմ կրնար աշխատիլ։ Հոս դեռ շատ գործ ունիմ, շատ զինուորներ կան, բոբոլոզներ են, ես բոլորին վրայ պէտք է հսկեմ։ Աշխատանքը ծանր է, շատ դժուար է, շատ։ Դուք որ եկաք, նոր էի աւարտեր, բայց դուք քիչ ուշ եկաք, ես կանուխ վերջացուցի եւ այդպէս լաւ եղաւ, կրցանք տեսնուիլ։

- Ուրեմն արգելք չըլլանք ձեր գործերուն, վարդապետ, հիմա կ'երթանք եւ նորէն կուգանք։ Եթէ զբաղած չըլլաք, դարձեալ այսպէս կը տեսնուինք։

Վարդապետը մեզի ընկերացաւ մինչեւ պարտէզ։ Շահմուրատեանն ու ես կրկին ու կրկին համբուրուեցանք հետը եւ օրիորդները նորէն աջը համբուրեցին։ Վարդապետը յանձնարարեց իրենց որ իր կողմէ բարեւ տանին «քերթէնքէլէներուն»։

Երբ հեռացանք մեր ուխտավայրէն, բոլորիս աչքերը խոնաւ էին։

Քսան տարիէ ի վեր չէի տեսած վարդապետը...։

***Յառաջ***, 27 ***Հոկտեմբեր*** 1935, 11 ***տարի***, ***Թիւ*** 2946, ***էջ*** 3

**ՇԱԲԱԹ, 8 ԱՊՐԻԼ 1933, ՓԱՐԻԶ**

Փարիզի Société Savante-ի սրահին մէջ՝ երեկոյթ ի նպաստ Պէյրութի աղէտեալներուն, նախաձեռնութեամբ Միջհայրենակցական Յանձնախումբին, նախագահութեամբ Աւետիս Ահարոնեանի։ Խօսք՝ Աւետիս Ահարոնեան, Լեւոն Բաշալեան եւ ուրիշներ։ Մեներգ՝ Հայկանուշ Թորոսեան (սոփրանօ) եւ Շ-Մ.։ Արտասանութիւն՝ պր. Մ. Մաքսուտեան, պր. Շահխաթունի եւ ուրիշներ։ Խմբերգ՝ Սիփան երգչախումբ։ Հայուհիներու պար։

- ***Յառաջ***, 6 ***Ապրիլ*** 1933, 9-***րդ տարի***, ***Թիւ*** 2156, ***էջ*** 4։

**ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 29 ՄԱՅԻՍ 1933, ՖԻԼԱՏԵԼՖԻԱ**

Ֆիլատելֆիայի New Century Club-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- *երգահանդէսին ծանուցումը, Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարան, Շահ-Մուրատեանի դիւան, Թիւ* 16։

**ՇԱԲԱԹ, 1 ՅՈՒԼԻՍ 1933, ՇԻՔԱԿՕ**

Շիքակոյի մէջ՝ Հայկական Օրուայ հանդիսութիւն, Շիքակոյի Համաշխարհային Ցուցահանդէսի ծիրէն ներս։

**Հայկական Օրուայ երեկոյեան բաժինի երաժշտական յայտագիր.**

Մակար Եկմալեան, *Քրիստոս պատարագեալ*, Հայ Ազգային Երգչախումբ, խմբավար՝ Յարութիւն Մեհրաբ

Յարութիւն Մեհրաբ, *Առաւօտ*, Հայ Ազգային Երգչախումբ, խմբավար՝ Յարութիւն Մեհրաբ

Սպիրիդոն Մելիքեան, *Հօյ հօյ*, Հայ Ազգային Երգչախումբ, խմբավար՝ Յարութիւն Մեհրաբ

Յարութիւն Մեհրաբ, *Էլի եարինն եմ*, Հայ Ազգային Երգչախումբ, խմբավար՝ Յարութիւն Մեհրաբ

Վարդան Սարգիսեան, *Հօյ նար*, մեներգ՝ տիկ. Մարի Արաքեան

Կոմիտաս վարդապետ, *Հովն անուշ* եւ *Ծիրանի ծառ*, մեներգ՝ տիկ. Մարի Արաքեան, Հայ Ազգային Երգչախումբ, խմբավար՝ Յարութիւն Մեհրաբ

Արա Պօյաճեան, *Գնաց աշուն*, մեներգ՝ տիկ. Ռօզ Զուլալեան (քոնթրալթօ)

Գրիգոր Սիւնի, *Ով դուք սարեր*, մեներգ՝ տիկ. Ռօզ Զուլալեան

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը*, մեներգ՝ օր. Լ. Ալթունճեան

Փրօֆֆ-Գալֆայեան, *Կռունկ*, մեներգ՝ օր. Լ. Ալթունճեան

Կոմիտաս վարդապետ, *Ալագեազ*, մեներգ՝ Շ-Մ.

Բարսեղ Կանաչեան, *Օրօր* («Քուն եղիր բալաս»), մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Անձրեւն եկաւ*, Հայ Ազգային Երգչախումբ, խմբավար՝ Յարութիւն Մեհրաբ

Յարութիւն Մեհրաբ, *Գնչուներ*, բոլոր մեներգիչները, Հայ Ազգային Երգչախումբ, խմբավար՝ Յարութիւն Մեհրաբ

**Ձայնասփիւռի երաժշտական բաժինի յայտագիր.**

*The Star-Spangled Banner*, մեներգ՝ տիկ. Ռօզ Զուլքալեան (քոնթրալթօ)

*Զէյթունի քայլերգ* եւ *Տէր կեցո՛*, մեներգ՝ տիկ. Մարի Արաքեան, Հայ Ազգային Երգչախումբ, խմբավար՝ Յարութիւն Մեհրաբ

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը*, մեներգ՝ օր. Լ. Ալթունճեան

Փրօֆֆ-Գալֆայեան, *Նոր օրօր*, մեներգ՝ տիկ. Ռօզ Զուլալեան

Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

*Եայլի*, Հայ Ազգային Երգչախումբ, խմբավար՝ Յարութիւն Մեհրաբ

- *Պ. Յ. Գըլըճեան*, «*Հայկական Օրը Շիքակոյի համաշխարհային ցուցահանդէսին մէջ*», *Հայաստանի կոչնակ*, 15 *Յուլիս* 1933, *ԼԳ. տարի*, *Թիւ* 28, *էջ* 661-663։

# ՀԱՅԿԱԿԱՆ ՕՐԸ ՇԻՔԱԿՈՅԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԻՆ ՄԷՋ

Պ. Յ. ԳԸԼԸՃԵԱՆ

Շիգակոյի եւ Ամերիկահայ գաղութի անհամբեր սպասման վայրկեանները վերջ գտան Յուլիս 1-ին։ Ամէն հայ մեծ հետաքրքրութեամբ իր յոյսն ու ակնկալութիւնները դրած էր այդ օրուան բեմադրութեան վրայ։ Ամերիկայի շատ մը նահանգներէն հարիւրաւոր մղոններ կտրող եւ Հայկական Օրին ներկայ եղող բազմութիւնը իրապէս քաջալերիչ բնոյթ մը կը ներկայացնէր։ Ամերիկահայ գաղութին մէջ թուով ամենամեծ հաւաքոյթն էր որ մեծ դէպքին համար տեղի կ'ունենար։ Արուեստագէտներու եւ ականաւոր հայերու մեծագոյն համախմբումն էր. ամէն հայու սիրտ կը տրոփէր. մեծ ակնկալութիւններով լեցուած էին անոնք։ Կը յուսային տեսնել արուեստահանդէսը եւ մանաւանդ հայկական բեմադրութիւնը ամերիկացի եւ ուրիշ օտար բարեկամներու հետ։ Գեղարուեստասէր օտարներ, լրագիրներու տեղեկաբերներ պատրաստ էին Արեւելքի տարազները, արուեստը, սովորութիւնները, պարերն ու արտադրոյթները տեսնելու։

Շատեր մտադրած էին ամբողջ օրը տօնավաճառի մէջ անցընել, եւ եղած թելադրութեանց անսալով իրենց ուտելիքը միասին առած՝ կանխաւ արուեստահանդէսի շէնքերը պտոյտ կ'ընէին. շատ անգամ լսելի կ'ըլլային անոնց զարմանքի արտայայտութիւնները՝ գիտական ցուցադրութիւններու եւ հսկայական շինութիւններու վերաբերմամբ, իրենց շարժուն ու փայլուն վիճակին մէջ։ Անոնց մէջ հետաքրքրութիւն մը արթնցած էր հասկնալու ցուցադրուող գիտական երեւոյթները։ Շատեր կանխաւ գիտութեան Սրահի գաւիթին մէջ իրենց աթոռները գրաւած՝ անհամբեր կը սպասէին բեմադրութեան, կէսօրէ վերջ ժամը 2:30-էն առաջ իսկ աթոռներէն շատերը գրաւուած էին։ Բեմին աջ կողմը զետեղուած էր եռագոյն դրօշակը, իսկ ձախ կողմը կը պարզուէր ամերիկեան դրօշակը։ Եռագոյնին տակ խմբուած էին մաս մը դրօշասէր հայեր, որոնց նպատակն էր այդ դրօշը հոն կանգուն պահել, ինչ որ ծրագիրէ դուրս եղած արարք մըն էր։

Ութսուն հոգիէ բաղկացած երկսեռ Հայ Ազգային Երգչախումբը, ղեկավարութեամբ Պր. Յ. Մեհրաբի, իր փայլուն տարազներով կը յառաջանայ դէպի բեմ։ Անոնց բոսոր, կապոյտ, նարնջագոյն, ոսկեգոյն, եւ արծաթագոյն հագուստները երջանկութեամբ կը լեցնէին ներկաներու սրտերը։ Հեռու տեղերէ հասնող

տաղանդաւոր երգիչ արուեստագէտներէն Տիկ. Մարի Արաքեան, Տիկ. Ռօզ Զուլալեան, Պր. Շահմուրատեան եւ Շիգակոյէն Օր. Ալթունճեան ուրիշ մասնակցողներու հետ բեմին փառքն ու պարծանքը կը կազմէին։ Բեմի աջ կողմը պատուոյ ականաւոր հիւրերու համար զետեղուած աթոռները պարապ կը մնային դեռ։ Ներկաներու մէջ եռագոյնի շուրջ փսփսուքը, վէճն ու աղմուկը հետզհետէ կը ծաւալին։ Ցուցահանդէսի Վարիչ Մարմինը անակնկալի կուգայ դրօշակի ներկայութենէն, քանի որ այդպիսի արարք մը ծրագրէն դուրս էր։ Դրօշակը կանգուն մնալու եւ չմնալու վէճի պահուն իսկ՝ յայտագրի յետմիջօրէին մասին բացումը կը կատարուի Մեհրաբի *Զէյթունցիի քայլերգ*ով եւ ուրիշ մի քանի երգերով զոր կ'երգէ երգչախումբը։ Տիկ. Զուլալեան կ'երգէ Գալֆայեանի *Մայրի Հայաստան*ը, մինչ միւս կողմէ հայկական օրուայ կազմակերպիչ մարմինը դրօշակը հաշտութեամբ հեռացնելու փորձեր կը կատարէ, այլ դժուարութեան կը բախի։ Դրօշակի շուրջը համախմբուող դրօշասէր փոքրաթիւ անձինք զայն հաւատարմօրէն կը պաշտպանեն եւ կ'ընդդիմանան դրօշակը հեռացնելու ծրագրին։ Յայտագրի համաձայն կարգը կուգայ Ղեւոնդ Արքեպսկ. Դուրեանի ուղերձին, սակայն Սրբազանը դրօշակի ներկայութիւնը անպատշաճ համարելով կը մերժէ իր ուղերձը ընել։ Հինգ հազար հոգիէ բաղկացած հայ եւ օտար բազմութիւնը հանդիսատես կ'ըլլայ այս անպատեհ պարագային։ Ցուցահանդէսի վարչական մարմնոյն հաւանութեամբ բեմ կը բարձրանայ Ֆէլիքս Սթրիքմէն՝ ազգութիւններու կազմակերպութեան նախագահը՝ եւ կը ջանայ վէճը դադրեցնել ու հաշտութիւն գոյացնել դրօշակը հեռացնելով, բայց պոռչտուք եւ աղմուկ կը ծագին. նախագահը հայերու մասին գովասանք մը հիւսելէ վերջ ամէն անպատեհութիւն կը պարզէ, այլ կրկին չյաջողիր. ուստի յայտագրի շարունակութիւնը փակուած կը յայտարարէ՝ մինչեւ դրօշակի հեռացումը։ Եւ սակայն դրօշակը յամառօրէն կանգուն կը պահուի դեռ, ի՜նչ փոյթ եթէ այդ ամբողջ բազմութեան յոյսերն ու ակնկալութիւնները երազ կը դառնային։ Պր. Ֆէլիքս քուէի կը դնէ հետեւեալ բանաձեւը. – Կամ յայտագիրը շարունակել դրօշակն հեռացնելով եւ կամ զայն չեղեալ համարիլ եւ բազմութիւնը ցրուել։ Մեծամասնութիւնը կը քուէարկեն դրօշակի հեռացումին ու յայտագրի շարունակումը. աղմուկ, իրարանցում տեւական են։ Դրօշակը բռնողները կ'ընդդիմանան հեռացնել, եւ հայ գլուխները կը տաքնան։ Վրայ կը հասնին ցուցահանդէսի հսկիչները, կը խուժեն կռիւի վայրը, այլ անկարող կ'ըլլան վերահաստատելու կարգը։ Դժոխային տեսարան մը կը պարզուի. վրայ կը հասնի ոստիկանութիւնը եւ խնդրոյն տեղեկանալէ վերջ կը փորձէ դրօշակը հեռացնել, եւ ահա աթոռներու տեղատարափ մը ծայր կուտայ։ Ոստիկանները զէնքերնին հանած դրօշակը կը հեռացնեն եւ զայն պաշտպանողներու պարագլուխներէն մի քանին բռնելով արուեստահանդէսէն կ'արտաքսեն։ Երեք ոստիկաններ փոքր վէրքեր կը ստանան աթոռներէն։ Ոստիկաններու հսկողութեան տակ վերջ կը գտնէ այս ողբերգական

ցուցադրութիւնը։ Դէպքը դիտողներու մեծ բազմութիւնը կը հեռացնի, այլ սոյն անպատուաբեր արարքին արձագանգ կուտան Շիգակոյի կարեւոր թերթերը՝ հրատարակելով միանգամայն անախորժ դէպքին լուսանկարները։ Ցուցահանդէսի պատմութեան մէջ հայերն էին որ այսպիսի արարք մը արձանագրեցին։

Յայտագիրը՝ որ ընդհատուած էր՝ վերսկսաւ. տրամադրութիւնները փոխուած էին պատահած զզուելի արարքին պատճառաւ։ Թէ՛ երգիչ արուեստագէտներու եւ թէ երգչախումբի եռանդը պահ մը մարեցաւ։ Ղեւոնդ Արքեպիսկ. Դուրեան աղօթք մը արտասանելէ յետոյ մաղթանքներ ըրաւ եւ ստեղծուած պատեհութեան համար շնորհակալութիւններ յայտնեց արուեստահանդէսի վարիչներուն, հայ արուեստագէտներուն, հայկական օրը կազմակերպող մարմնոյն եւ երգչախումբին։ Պր. Կ. Փուշման՝ Կազմակերպիչ Յանձնախումբին Նախագահը, ուղերձով մը բարիգալուստ մաղթեց ներկաներուն։ Հրաչ Եագուպեան ջութակի վրայ նուագեց Մեհրաբի *Կռունկ*ը։ Օր. Արաքսի Պալօյեան մենապարով մը ներկաներու հիացումը գրաւեց։ Տիկ. Պէզազեան դաշնակի վրայ նուագեց երաժշտական գեղեցիկ կտոր մը։ Յայտագրի յետ միջօրէի մասը վերջացաւ Լուսիա Ալթունեանի կողմէ երգուած *Էր սիրուհուս* ու *Հոյ հոյ* երգերով եւ երգչախումբի կողմէ երգուած *Սարերի վրով գնաց* եւ *Եայլի* կտորներով։

Յետ միջօրէի յայտագրի երկրորդ մասը կը բաղկանար մեներգներէ եւ խմբերգներէ։ Տիկ. Արաքեան իր ջինջ եւ անուշ ձայնով երգեց *Օրօր*ը եւ *Մանուշակ*ը՝ գնահատանքի արժանանալով։ Տիկ. Ռոզ Զուլալեան երգեց *Հորովել*ը եւ *Պիճինկ*ոն, ներկաներու հիացման առարկայ ըլլալով։ Երգչախումբի կողմէ երգուեցան *Առաւօտ*, *Անձրեւ եկաւ*, *Լորիկ*, *Գնչուներ* ու *Հովն անուշ* երգերը։ Կլէոփս Պէզազեան իր պարով հրապուրեց բազմութիւնը։ Յայտագրի այս մասը վերջ գտաւ պատեհութիւն տրուելով որ ներկաներ ճաշեն, տաքէն կազդուրուին, պտոյտ ընեն եւ հանգստանան։

Երեկոյին՝ արեւի կիզիչ տաքութիւնը մեղմացած էր, օդը զով էր եւ հաճելի։ Ժամը 8:30-էն առաջ բոլոր աթոռները գրաւուած էին, կրկին 5000-էն աւելի բազմութիւն մը անհամբեր կ՚սպասէր։ Ամէն ինչ հանդարտ էր եւ անախորժ դէպքերը ժամանակի մը համար մոռցուած էին։ Ամերիկայի զանազան նահանգներէն եկող հիւրերուն կը հրամցուին պատուոյ աթոռներ բեմի ձախ կողմը։ Ժամը 8:35-ին կը հասնի զարմանահրաշ վայրկեանը ուր արուեստահանդէսի կողմէ գիտութեան ըրած ամենամեծ հրաշալիքներէն մէկը կը ցուցադրուի Գիտութեան Սրահին գաւիթին մէջ։ Այդ վայրկեանին հեռաւոր աստղ մը՝ *Արքթըրըս*էն՝ լոյսի ճառագայթ մը կուգայ իր պատգամը բերելու, տօնավաճառի անիւը դարձնելու եւ գայն շողշողունի լոյսերու մէջ ծփացնելու։ Գիտուններու եւ աստղագէտներու տեսակէտով այդ աստղի լոյսը իւրաքանչիւր երկվայրկեանի մէջ 186.000 մղոն ճամբորդելով հազիւ քառասուն տարիէն մեզի կը հասնի։ Ահա թէ ի՜նչքան հեռու է այն մեզմէ։ Սոյն աստղը 1893-ին՝ ցուցահանդէսի փակման օրը կը շողայ եւ

լոյսը քառասուն տարի վերջ է որ մեզ կը հասնի, 1933-ի ցուցահանդէսի բացումը կատարելու։ Արուեստահանդէսի բացման օրը *Արքթըրըս*ի տօնակատարութեան հանդիսաւոր արարողութիւնը տեղի ունեցաւ եւ հայկական օրուան մէջ ալ նոյն տօնակատարութիւնը կրկնուեցաւ։ Երբ մեքենական եւ ելեքտրական գործիքները գործունէութեան կ՚սկսին, լաւատեղեակ ուսուցչի մը կողմէ բացատրութիւններ կը տրուին որոշ եւ յստակ։ Աստղին լոյսը՝ աստղագէտներու եւ բնագէտներու կողմէ, Ուինսքանսընի *Երքըս* դիտարանի մեծ խոշորացոյցով կը բռնուի, եւ ֆօթօելեքդրիք սէլի (photoelectric cell) միջոցաւ ելեքդրական ուժի կը վերածուի, ըէտիօյի օգնութեամբ կ՚ուժեղացուի, եւ հեռագրի թելերու միջոցաւ Շիգակօ կը ղրկուի։ Ցուցահանդէսի Գիտութեան Սրահի բաժնին մէջ գտնուող նուրբ եւ լուսաւորող մեքենականութեան աքցանը ինքնաբերաբար գործունէութեան կը մղուի, եւ կայծ մը արձակելով տօնավաճառը կը լուսաւորէ։ Սոյն աստղի լոյսը բռնելու հնարքը գիտնականներու մի քանի տարուայ աշխատանքին արդիւնքն է։ Ուրիշ երեք տարբեր դիտարաններ ալ մասնակցեցան լոյսը փոխադրելու գործողութեան. ասոնք իրենց խոշորացոյցները ուղղեցին Արքթըրըսի ինքնութիւնը ճշդելու եւ անոր լոյսը Շիգակօ ղրկելու։ Ամէնուն ուշադրութիւնը կեդրոնացած էր այդ կարեւոր եւ նոր հնարքներու ասպարէզ բացող ցուցադրութեան վրայ, որ տիեզերքի մարմիններուն հետ յարաբերութեան մէջ մտնելու կարելիութեանց նախադուռն է։ Սոյն արարողութիւնը երբ վերջ գտաւ՝ ներկաներ կրկին դարձան հայկական բեմադրութեան։

Երեկոյեան բաժինը սկսաւ Մ. Եկմալեանի *Քրիստոս պատարագեալ*ով զոր գերեց երգչախումբը։ Ասոր յաջորդեցին Պատ. Յ. Աշճեանի աղօթքն եւ ուղերձը։ Պատ. Յ. Աշճեան իր յուզիչ եւ տպաւորիչ ուղերձով ստեղծուած պատեհութեան համար շնորհակալութիւն յայտնեց։ Պր. Յ. Մեհրաբի *Առաւօտ*ը անգամ մը եւս ունկնդիրներու յիշեցուց հին օրերու սուրբ կիրակի առաւօտը երբ եկեղեցիի զանգակները պաշտամունքի հրաւէր կը կարդային։ Երգչախումբը եռանդուն եւ յաջող կերպով երգեց Մելիքեանի *Հօյ հօյ* եւ Մեհրաբի *Էլի եարինն եմ* երգերը, յուզելով ներկաները։ Տիկ. Մարի Արաքեան եռանդուն կերպով երգեց Վ. Սարգիսեանի *Հօյ նար*ը եւ երգչախումբին ընկերանալով մեներգներու բաժինը երգեց Կոմիտաս Վարդապետի *Հովն անուշ*ի եւ *Ծիրանի ծառ*ի մէջ։ Տիկ. Ջուլալեան երգեց Պօյաճեանի *Գնաց աշուն*ը եւ Սիւնիի *Ով դուք սարեր*ը՝ ի յայտ բերելով իր գերազանց կարողութիւնն եւ տաղանդը։ Լ. Ալթունճեան երգեց Մելիքեանի *Վարդը* եւ Գալֆաեանի *Կռունկ*ը։ Պրն. Շահմուրատեան յաջողութեամբ երգեց Կոմիտաս Վարդապետի *Ալագեազ*ը եւ Կանաչեանի *Քուն եղիր բալաս*ը։ Երգչախումբը երգեց Կոմիտաս Վարդապետի *Անձրեւ եկաւ*ը եւ Մեհրաբի *Գնչուներ*ը ընկերակցութեամբ բոլոր երգիչներու։

Կոկիկ եւ յաջող յայտագիր մը ներկայացուեցաւ ըէտիօյի վրայ, որու ընթացքին Ղեւոնդ Արքեպսկ. Դուրեան երկար ուղերձ մը ընելով պարզեց հայկական

մշակոյթի եւ եկեղեցիին դերը՝ Ամերիկայի մէջ: Նախապէս Տիկ. Զուլալեան երգեց *Սթար Սփէնկլտ Պէններ*ը: Պր. Ն. Պարսումեան՝ հայկական օրուան Վարչական Մարմնոյն քարտուղարը՝ ողջոյնի ուղերձ մը ըրաւ: Ֆէլիքս Սթրիքմէն՝ Ցուցահանդէսի Ազգութիւններու կազմին նախագահը՝ աղօթքի կարճ ուղերձ մը ընելէ յետոյ երգչախումբը երգեց *Զէյթունի քայլերգ*ը եւ *Տէր կեցո*՛ն Տիկ. Մարի Արաքեանի ընկերակցութեամբ: Երգիչ հայ արուեստագէտներէն Լ. Ալթունճեան երգեց *Վարդը*, Տիկ. Զուլալեան *Նոր օրօր*ը եւ Շահմուրատեան *Հայաստան*ը, երգչախումբի *Եայլի*ով վերջացաւ բէտիօյի յայտագիրը:

Սկսաւ զուարթ բաժինը, հարսանիքի արարողութիւնը, հարսնեւորներու բազմութեամբ լեցուած էր բեմը, որ շքեղ տեսարան մը կը պարզէր: Երգիչ խումբը հարսանիքի երգերով կը թնդացնէր սրահը: Ծափեր, պարեր աւելի տպաւորիչ կը դարձնէին հարսանեկան տեսարանը: Կլէյտիս Պէզազեան եւ Ճորճ Քիրմօյեան օգտակարութեամբ կը բերեն իրենց բաժինը՝ պարերու մէջ:

Գնահատանքի եւ յիշատակութեան արժանի են Պր. Մեհրաբ, երգիչներ, երգչուհիներ, երգչախումբը, մասնակցող պարուհիները, վարչական մարմինն եւ բոլոր դերակատարներ որոնք ամէն զոհողութիւն յանձն առած, աննկատ թողելով հայ սովորութեան համաձայն գոյութիւն ունեցող վէճերն ու քննադատութիւնները, յաջող կերպով պսակեցին եղած ձեռնարկն ու աշխատանքները:

***Հայաստանի կոչնակ***, 15 ***Յուլիս*** 1933, ***ԼԳ. տարի***, ***Թիւ*** 28, ***էջ*** 661-663

**ԿԻՐԱԿԻ, 2 ՅՈՒԼԻՍ 1933, ՇԻՔԱԿՕ**

Շիքակոյի Kimball Hall-ին մէջ՝ Հ.Բ.Ը.Միութեան տեղւոյն անդամներուն շքանշաններ եւ երախտագիրեր բաշխելու հանդէս: Երաժշտական բաժինին մէջ ելոյթ կ'ունենան՝ տիկ. Ռոզ Զուլալեան (քնթրալթօ), Շ-Մ. եւ օր. Րօզէլ Պէզազեան (դաշնակ):

- ***Լրատու***, «***Հ. Բ. Ը. Միութեան Հանդէս Շիքակոյի մէջ***», ***Հայաստանի կոչնակ***, 29 ***Յուլիս*** 1933, ***ԼԳ. տարի***, ***Թիւ*** 30, ***էջ*** 714-715:

## Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԷՍ ՇԻՔԱԿՈՅԻ ՄԷՋ

ԼՐԱՏՈՒ

Յուլիս 2-ը պատմական օր մը եղաւ Շիգակոյի մեր մասնաճիւղին համար: Այդ օրը Քիմպըլ Հօլը լեցուած էր Հայերու բազմութեամբ մը, որ եկած էին Շիգակոյէ, ինչպէս նաեւ հեռաւոր նահանգներէ՝ Ցուցահանդէսը տեսնելու համար: Բարեբախտութիւն էր որ մեզի հետ ունէինք Առաջնորդ Տ. Ղեւոնդ Արքեպիսկոպոս

Դուրեանը։ Օրուան հանդէսը մասնաւորապէս սարքուած էր Հ. Բ. Ը. Միութեան տեղւոյս վաստակաւոր անդամներուն բաշխելու համար Շքանշաններ եւ Երախտագիտութեան Վկայագիր, զորս ստացան Տեարք՝ Կ. Յ. Փուշման, Յովհաննէս Պէզազեան, Յակոբ Պէզազեան, Տէր եւ Տիկին Սարգիս Նահիկեան, Սամուէլ Տօնեան, Մանուկ Ծերօնեան, Տէն Թոմաճեան, Մելիքով Մեսճեան, Պօղոս Նորհատեան, Տէր եւ Տիկին Աւետիս Պէլոյեան, Տէր եւ Տիկին Վահան Պէլոյեան եւ Լեւոն Պէլոյեան։ Ժողովին կ՚ատենապետէր Տիար Սարգիս Նահիկեան, որ զուարթ պատմութիւնով մը բացաւ զայն, ստեղծելով շէնշող տրամադրութիւն։ Օրուան գլխաւոր ատենախօսն էր Առաջնորդ Սրբազանը, որ խօսեցաւ համոզիչ եւ ներշնչեալ ուղերձ մը։ Վարչութեան անդամներէն Տիար Արման Կիզիր տեղեկութիւններ տուաւ Միութեան գործունէութեանց մասին։ Իսկ Տիկին Կարինէ Փուշեան յաջողապէս արտասանեց Չօպանեանի *Գեղօն ի պատիւ հայ լեզուին*ը։ Ուրիշ բախտաւորութիւն մըն էր մեր մէջ ունենալ ծանօթ երգիչներ Տիկին Րօզ Զուլալեանը եւ Պր. Ա. Շահուրատեանը, որոնք իրենց սիրայօժար մասնակցութիւնը բերին, արժանանալով բուռն ծափահարութեան եւ գնահատանքի։ Գեղարուեստական վայելք մըն էր դաշնակի վրայ նուագը Օր. Րօզէլ Պէզազեանի, որ ջերմապէս ծափահարուեցաւ։ Ստեղծուած էր հաճելի եւ խանդավառ մթնոլորտ մը՝ ինքնաբերաբար։ Տոքթ. Լ. Մուղալեանի կոչին ի պատասխան եղան շատ մը նոր անդամագրութիւններ եւ նուէրներ։ Վարչութեան ջանքերուն շնորհիւ 40-է աւելի նոր անդամներ արձանագրուեցան այդ իրիկուն, քաջալերելու համար Հ. Բ. Ը. Միութեան ազգաշէն գործը։ Պատի՛ւ Շիգակոյի գիտակից Հայերուն։

***Հայաստանի կոչնակ***, 29 ***Յուլիս*** 1933, ***ԼԳ. տարի***, ***Թիւ*** 30, ***էջ*** 714-715

**ԿԻՐԱԿԻ, 9 ՅՈՒԼԻՍ 1933, ՓՐՈՎԻՏԵՆՍ**

Փրովիտենսի Nathanael Greene Junior High School-ին մէջ՝ հրապարակային ժողով Հ.Յ.Դ. Ամերիկայի շրջանի 40-րդ պատգամաւորական ժողովի առիթով, նախաձեռնութեամբ Հ.Յ.Դ. Ամերիկայի Կեդրոնական Կոմիտէի։ Բանախօսութիւն՝ Վարդգէս Աhարոնեան, Արսէն Միքայէլեան, Կոպեռնիկ Թանտրճեան եւ Գարեգին Նժդեհ։ Մեներգ՝ Շ-Մ., օր. Ս. Էլմասեան։ Դաշնակ՝ օր. Էլիզա Մանուկեան։ Ջութակ՝ Շաւարշ Մարգարեան։ Արտասանութիւն՝ ընկ. Կ. Պալիկեան եւ օր. Մ. Աւագեան։

- ***Հայրենիք***, 8 ***Յուլիս*** 1933, 35-***րդ տարի***, ***Թիւ*** 6438։

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 14 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1933, ՓՐՈՎԻՏԵՆՍ**

Փրովիտենսի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- *Հայրենիք*, 29 *Յուլիս* 1933, 35-*րդ տարի*, *Թիւ* 6456, *էջ* 3։

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 21 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1933, ՓՐՈՎԻՏԵՆՍ**

Փրովիտենսի Plantation Auditorium-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

- *Հայրենիք*, 20 *Սեպտեմբեր* 1933, 35-*րդ տարի*, *Թիւ* 6500, *էջ* 3։

**ԿԻՐԱԿԻ, 1 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1933, ՊՈՍԹՈՆ**

Պոսթոնի Franklin Union Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

Մակար Եկմալեան, *Տէր կեցո*, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Վարդը* եւ *Մի լար*, մեներգ՝ Շ-Մ.

Կոմիտաս վարդապետ, *Ծիրանի ծառ*, *Գութանի երգ*, *Մոկաց Միրզէ* եւ *Հայաստան*, մեներգ՝ Շ-Մ.

Դանիէլ Ղազարեան, *Անուշ գարուն*, մեներգ՝ Շ-Մ.

Վաղարշակ Սրուանձտեանց, *Հայրենի գարուն*, մեներգ՝ Շ-Մ.

Ուրիշ հայերէն երգեր, մեներգ՝ Շ-Մ.

Francesco Paolo Tosti, ?Victor Massé, Pyotr Tchaikovsky, մեներգ՝ Շ-Մ.

Վաղարշակ Սրուանձտեանց, *Սիրուհիս* եւ ուրիշ կտոր մը, ջութակ՝ տիկ. Սիրարփի Միքայէլեան

Օտար հեղինակներ, ջութակ՝ տիկ. Սիրարփի Միքայէլեան

Դաշնակի նուագակցութիւն՝ տիկ. Զապէլ Սուրեան (Պայենց)

- *Հայրենիք*, 29 *Յուլիս* 1933, 35-*րդ տարի*, *Թիւ* 6456, *էջ* 3։

- *Հայրենիք*, 27 *Սեպտեմբեր* 1933, 35-*րդ տարի*, *Թիւ* 6507, *էջ* 3։

- X, «*Շահ-Մուրատեանի երգահանդէսը Պոսթընի մէջ*», *Հայրենիք*, 6 *Հոկտեմբեր* 1933, 35-*րդ տարի*, *Թիւ* 6514, *էջ* 2։

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ ՊՈՍԹԸՆԻ ՄԷՋ

X

Հոկտ. 1-ի կիրակի օրը, Պոսթընի Ֆրանքլին Իւնիըն հոլին մէջ տեղի ունեցաւ պ. Ա. Շահմուրատեանի երգահանդէսը։ Ներկաներու թիւը 300-էն աւելի էր։

Համաձայն յայտագրի Շահմուրատեան յաջորդաբար երգեց Եկմալեանի *Տէր կեցո*ն, Ռոմանոս Մելիքեանի *Վարդը* եւ *Մի լարը*, Կոմիտասի *Ծիրանի ծառ*ը եւ *Գութանի երգը*, Դ. Ղազարեանի *Անուշ գարունը*, Սրուանձտեանցի *Հայրենի*

*զարուն*ը եւայլն: Աստնցմէ զատ յայտագիրը հարուստ էր նաեւ օտար երգերով՝ Թօսթիէն, Մասէէն, Չայքովսկիէն եւ ուրիշներէ: Ժողովուրդի կրկնակի ծափերուն տեղի տալով, Շահ-Մուրատ երգեց նաեւ *Մոկաց Միրզ*էն եւ *Հայաստան*ը:

Տարիները սկսած են այլեւս իրենց մաշեցնող կնիքը դնել Շահ-Մուրատի այնքան գեղեցիկ եւ շքեղ ձայնին վրայ: Հակառակ սակայն այս հանգամանքին, մեր վաստակաւոր երգիչը կրցաւ յուզումով եւ խոր ապրումով երգել՝ մանաւանդ Ղազարեանի *Անուշ զարուն*ը, Կոմիտասի երգերը, *Հայաստան*ը եւ ուրիշներ: Անոր ձայնը մերթ վշտոտ ու թախծալի, եւ մերթ թեթեւ եւ ուրախ, լեցուց սրահը եւ յուզեց ներկաները:

Երգահանդէսին մէջ կարեւոր բաժին մը ստանձնած էր տիկ. Սիրարփի Միքայէլեան, որ ջութակի վրայ նուագեց քանի մը ընտիր կտորներ օտար երաժշտական յայտնի հեղինակներէն: Յայտագրէ դուրս տիկ. Միքայէլեան մեծ յաջողութեամբ նուագեց նաեւ *Միրուհիս* եւ ուրիշ կտոր մը՝ Սրուանձտեանցէ:

Տիկ. Զապէլ Սուրեան դաշնակով ընկերացաւ պ. Շահմուրատեանին եւ տիկ. Միքայէլեանին:

***Հայրենիք***, 6 ***Հոկտեմբեր*** 1933, 35-***րդ տարի***, ***Թիւ*** 6514, ***էջ*** 2

### ԿԻՐԱԿԻ, 15 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1933, ՌԻՍՏՐ

Ռւստրի մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

- ***Հայրենիք***, 29 ***Յուլիս*** 1933, 35-***րդ տարի***, ***Թիւ*** 6456, ***էջ*** 3:

### ՇԱԲԱԹ, 24 ՆՈՅԵՄԲԵՐ 1933, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Ուաշինկթոն Հայթսի ճաշարաններէն մէկուն մէջ՝ ճաշկերոյթ ի պատիւ Նիւ Եորքի Հայ Ընկ. Ծառայութեան Մարմինի կամաւոր գործիչներուն: Գեղարուեստական բաժինին կը մասնակցին՝ տիկ. Ս. Քաջունի (երգչուհի), Շ-Մ. եւ 11 տարեկան իտալացի դաշնակահար մը:

- ***Թղթակից***, «***Ընկ. Ծառայութեան Մարմնոյ ճաշկերոյթը***», ***Հայաստանի կոչնակ***, 23 ***Դեկտեմբեր*** 1933, ***ԼԳ. տարի***, ***Թիւ*** 51, ***էջ*** 1218-1219:

## ԸՆԿ. ԾԱՌԱՅՈՒԹԵԱՆ ՄԱՐՄՆՈՅ ՃԱՇԿԵՐՈՅԹԸ

ԹՂԹԱԿԻՑ

Նիւ Եորքի Հայ Ընկ. Ծառայութեան Մարմինը Նոյեմբեր 24-ին Ուաշինկթըն Հայթսի ճաշարաններէն միոյն մէջ՝ սարքած էր ճաշկերոյթ մը՝ ի պատիւ իր

կամաւոր գործիչներուն։ Ներկայ էր ակնկալուածէն աւելի բազմութիւն մը։ Սեղանապետութեան պաշտօնը վարեց Նիւ Եորքի ծանօթ գորգավաճառներէն Պրն. Յ. Միքայէլեան, որ Միութեան գանձապահն է։ Բացման ուղերձը ըրաւ ատենապետուհի Տիկ. Ս. Եաղլեան։ Օրուան գլխաւոր ուղերձ ընողներն էին Պատ. Պէննէեան, որ խօսեցաւ կանանց դերին մասին հանրային կեանքի մէջ, եւ Օր. Է. Փաշայեան՝ որ մանրամասն տեղեկութիւններ տուաւ ցարդ Ամերիկեան կազմակերպութիւններու հետ մշակուած յարաբերութեանց եւ կատարուած աշխատանքներու մասին։ Կարճ բայց տպաւորիչ ուղերձ մը ըրաւ Տիկ. Յ. Փուշման, Միութեան պատուոյ Ատենապետուհին, ինչպէս նաեւ Տիկ. Լ. Քէօլէեան, Finance Committee-ի ատենապետուհին որ նոյն ատեն գանձապահի օգնական է։

Վերջին խօսողն էր Գեր. Տ. Տիրայր Սրբազան՝ որ Միութեան կամաւոր գործիչներուն բաշխեց զարդակոճակներ։ Տիրայր Սրբազան՝ զարդակոճակներու մասին բանասիրական քաղուածքով մը բացատրեց զանազան ժամանակներու մէջ անոնց ընդգրկած խորհուրդները եւ հանդիսականներուն ներկայացուց գեղեցիկ նկար մը՝ պատրաստուած Պ. Մ. Մինասեանի կողմէ։ Նկարը կը ներկայացնէր խոշոր քաղաք մը որուն բարձրաբերձ շէնքերէն վեր կը բարձրանար կանացի բարեգործ ձեռքը՝ լեցուն ցորենի հասկերով։ Այս նկարին վերարտադրումն էին զարդակոճակները զորս Սրբազանը հանդիսաւոր կերպով յանձնեց իրենց տէրերուն։

Նոյն երեկոյեան գեղարուեստական բաժնին իրենց մասնակցութիւնը բերին երգչուհի Տիկ. Ս. Քաջունի եւ հայ երգի վարպետ Պրն. Ա. Շահ-Մուրատեան։ Յիշատակելի էր նաեւ 11 տարեկան իտալացի տաղանդաւոր տղեկի մը նուագը դաշնակի վրայ։

Ձեռնարկը անցաւ շատ փայլուն, եւ խուռն բազմութեան ներկայութիւնը ապացոյց էր որ շրջանի հայութիւնը կը գնահատէ Միութեան նպատակները ինչպէս նաեւ անոր կատարած գեղեցիկ ջանքերը։

***Հայաստանի կոչնակ***, 23 ***Դեկտեմբեր*** 1933, ***ԼԳ. տարի***, ***Թիւ*** 51, ***էջ*** 1218-1219

**ԿԻՐԱԿԻ, 10 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1933, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի City College Auditorium-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը։

Յայտագիր.

*Ալագեազ բարձր սարին*, *Հայաստան*, *Մոկաց Միրզէ*, մեներգ՝ Շ-Մ.

Ռոմանոս Մելիքեան, *Մի լար*, մեներգ՝ Շ-Մ.

Մակար Եկմալեան, Վաղարշակ Սրուանձտեանց, Դանիէլ Ղազարեան, Francesco Paolo Tosti, Jules Massenet, մեներգ՝ Շ-Մ.

Երկու ֆրանսերէն երգեր, մեներգ՝ Շ-Մ.

Pablo de Sarasate եւ Fritz Kreisler, ջութակ՝ Jascha Fishberg
Դաշնակի նուագակցութիւն՝ Sandro Corona
- *Հայրենիք*, 14 *Նոյեմբեր* 1933, 35-*րդ տարի*, *Թիւ* 6545, *էջ* 3։
- *Հայրենիք*, 9 *Դեկտեմբեր* 1933, 35-*րդ տարի*, *Թիւ* 6566, *էջ* 3։
- «*Երգահանդէս*», *Հայաստանի կոչնակ*, 9 *Դեկտեմբեր* 1933, *ԼԳ. տարի*, *Թիւ* 49, *էջ* 1172։
- *Հայաստանի կոչնակ*, 9 *Դեկտեմբեր* 1933, *ԼԳ. տարի*, *Թիւ* 49, *էջ* 1176։
- *Զ. Ս.*, «*Շահ-Մուրատեանի երգահանդէսը*», *Հայրենիք*, 19 *Դեկտեմբեր* 1933, 35-*րդ տարի*, *Թիւ* 6574, *էջ* 2։
- *Յովհաննէս Աւագեան*, «*Երգահանդէս*», *Հայաստանի կոչնակ*, 23 *Դեկտեմբեր* 1933, *ԼԳ. տարի*, *Թիւ* 51, *էջ* 1219։

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԸ

Զ. Ս.

Դեկտ. 10-ի կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3-ին, Սիթի գոլէճի Auditorium-ին մէջ տեղի ունեցաւ հանրածանօթ երգիչ պրն. Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը, ընտրեալ հասարակութեան մը ներկայութեամբ։

Յայտագիրը կազմուած էր Մ. Եկմալեանի, Կոմիտաս վարդապետի, Վ. Սրուանձտեանցի, Ռ. Մելիքեանի, Դ. Ղազարեանի, եւ օտար երգահաններէն P. Tosti ու J. Massenet-ի լաւագոյն կտորներէն, որոնց տպաւորիչ ու գեղեցկագոյն մեկնաբանութիւնը տուաւ համբաւաւոր երգիչը, արուեստագէտի կատարեալ թեխնիքով, ըմբռնողութեամբ ու զգացումով, ջերմագինս ծափահարուելով ու կրկնակ անգամներ բեմ հրաւիրուելով։

Առանձնապէս յիշատակութեան արժանի էին *Ալագեազ բարձր սարէն*ը, *Մոկաց Միրզէ*ն ու *Հայաստան*ը՝ իրենց հայկական ջերմ շունչով ու զգացումով, որ յաւէտ պիտի յատկանշեն Շահ-Մուրատեանը, որքան ալ տարիներու յոգնութեան հետքը զգացուի իր ձայնին մէջ։

Երգահանդէսին մասնակցեցաւ նաեւ Եաշա Ֆիշպըրկ, անուանի ջութակահարը, որ տուաւ երկու սօլօներ Sarasate-էն եւ F. Kreisler-էն, խլելով խանդավառ ծափեր։

Շահ-Մուրատեանին դաշնակով ընկերակցեցաւ Sandro Corona ծանօթ երգահան-դաշնակահարը։

*Հայրենիք*, 19 *Դեկտեմբեր* 1933, 35-*րդ տարի*, *Թիւ* 6574, *էջ* 2

# ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳԵԱՆ

Ծանօթ երգիչ Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը տեղի ունեցաւ Դեկտ. 10-ին, Սիթի Գօլէճի դահլիճին մէջ. ներկայ էր երաժշտասէր ընտրեալ հասարակութիւն մը: Շահ-Մուրատեան երգեց առաւելապէս հայերէն եւ երկու կտոր ալ ֆրանսերէն երգեր: Յատկանշական էին մանաւանդ *Ալագեազ բարձր սարին*, *Հայաստան*, *Մոկաց Միրզէն* եւ Ռ. Մելիքեանի մէկ քնարական հեղինակութիւնը՝ *Մի լար*՝ զոր ա՛յնքան քնքշութեամբ երգեց տոհմաթիք երգերու վարպետ Շահ-Մուրատեան:

Հաճելի էր մեզ դիտել որ Շահ-Մուրատեանի ձայնը ուժեղապէս կը դիմադրէ ժամանակի ժանիքներուն, ու եթէ երբեմն յիշողութիւնը կը դաւէ իրեն, ինք առանց վրդովուելու, հայ երգեցողութեան վարպետի յատուկ շարժմամբ մը եւ ձայնի ու շեշտի խորազդեցիկ արտայայտութեամբ մը կուգայ ապացուցանելու թէ ինք տակաւին տէրն ու տիրական է հայ երգի բեմին եւ բոլոր նորահասները շատ բան ունին իրմէ սովրելիք: Ա՜հ թէ կարելի ըլլար յուռութքով մը տեւականացնել հայկական այն հարազատ առոգանութիւնն ու շեշտը՝ որ Շահ-Մուրատեան տարիներէ ի վեր կը պտտցնէ քաղաքէ քաղաք եւ երկիրէ երկիր, ուր որ հայ մեծ կամ պզտիկ գաղութ մը կայ թառած: Հայութիւնը շատ բան կը պարտի Շահ-Մուրատեանի, ո՛ւր էր որ ամէն գաղութ գիտակցէր իր պարտականութեան ու արդեամբ ապացուցանէր իր գնահատութիւնը:

Երգահանդէսին իր մասնակցութիւնը բերաւ նաեւ ջութակահար Եաշա Ֆիշպերկ՝ որ կտորներ նուագեց Սարասաթէն ու Քրայսլէրէն: Դաշնակի վրայ արթիսթներուն կ'ընկերակցէր Սանտրօ Քօրօնա:

*Հայաստանի կոչնակ*, 23 *Դեկտեմբեր* 1933, *ԼԳ. տարի*, *Թիւ* 51, *էջ* 1219

**ԿԻՐԱԿԻ, 21 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1934, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Audubon Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի երգահանդէսը:

- *Հայրենիք*, 18 *Հոկտեմբեր* 1934, 36-*րդ տարի*, *Թիւ* 6827, *էջ* 3:

- *Ս. Մ. Ծոցիկեան*, «*Արմենակ Շահ-Մուրատեան*», *Հայաստանի կոչնակ*, 20 *Հոկտեմբեր* 1934, *ԼԴ. տարի*, *Թիւ* 42, *էջ* 1000:

- *Հայաստանի կոչնակ*, 20 *Հոկտեմբեր* 1934, *ԼԴ. տարի*, *Թիւ* 42, *էջ* 1008:

# ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Ս. Մ. ԾՈՑԻԿԵԱՆ

Ամէնքս ալ կը ճանչնանք, եւ կը սիրենք զինքը, իր երգով:

Երգիչ Արմենակ Շահ-Մուրատեան, կարկառուն դէմք մը, Հայ երգի վսեմ քաղցրութիւնը մեզի ճաշակել տուած է:

Իր երգագործութիւնը, դարուս սկիզբներէն սկսած, միշտ ի հանդէս բերած է ամէնուրեք, ուր որ Հայութիւն մը կ'ապրի:

Ամերիկայի մէջ մասնաւորապէս իր ունեցած գործունէութիւնն եղած է երկարատեւ եւ բեմնաւոր:

Հայ երգիչ մըն է անիկա իսկական, զգացումով ու արուեստով:

Երգի օտար ասպարէզները, նիւթապէս աւելի արդիւնաբեր, անիկա թողած, եւ փարած է ազգային երգաբեմին, յաւէտ անբաժանելի սիրով մը:

Եւ այս կերպով, անիկա մեզի մատուցած է մեծ ծառայութիւն:

Բայց մենք, արդեօք, կրցա՞ծ ենք անոր մեզի մատուցած այդ թանկագին ծառայութիւնը գնահատել արժանապէս:

Հարցում մը, որուն վրայ կ'արժէ որ ամէն մէկս ալ անդրադառնանք խղճմտօրէն:

Իր նորագոյն այցելութիւնն յԱմերիկա, մասնաւորապէս, հազիւ թէ գոհ թողուց զինքը, տեղ տեղ չի գտնելով այն ջերմագին քաջալերութիւնը, որուն կը սպասէր ինք, արդար իրաւամբ:

Ու այժմ, պատրաստուած է անիկա, Նիւ Եորքի մէջ երգահանդէս մը եւս կազմակերպելու, եւ անգամ մըն ալ իր երգարուեստը մեզի վայելել տալու, Հայ երգի այդ վարպետը:

Ահա նոր առիթ մըն ալ, զինքը լսելու:

Օգտուինք ուստի այդ պատեհութենէն, ներկայ գտնուինք իր յառաջիկայ երգահանդէսին, եւ այդպէս մեր սիրոյ, գնահատութեան ու քաջալերութեան բաժինն ընծայաբերենք գործնականապէս վաստակաւոր արուեստագէտին, երգիչ Շահ-Մուրատեանին:

*Հայաստանի կոչնակ*, 20 *Հոկտեմբեր* 1934, *ԼԴ. տարի*, *Թիւ* 42, *էջ* 1000

**ԿԻՐԱԿԻ, 11 ՆՈՅԵՄԲԵՐ 1934, ՍԷՆԹ ՔԷԹՐԻՆՍ (ԳԱՆԱՏԱ)**

Սէնթ Քէթրինսի Հ. Յ. Դաշնակցութեան ակումբին մէջ՝ հրապարակային ժողով, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. տեղական կոմիտէին եւ մասնակցութեամբ Հ. Կ. Խաչի եւ Ցեղակրօն Ուխտին: Մէկ մեներգով ելոյթ կ'ունենայ Շ-Մ.:

- *Պեսօ*, «*Խանդավառ Հրապ. ժողով մը*», *Հայրենիք*, 22 *Նոյեմբեր* 1934, 36-*րդ տարի*, *Թիւ* 6856, *էջ* 2:

## ԽԱՆԴԱՎԱՌ ՀՐԱՊ. ԺՈՂՈՎ ՄԸ

ՊԵՏՕ

Ս. ՔԷԹՐԻՆՍ (Քան.). – Մեր գաղութի պատմութեան մէջ պիտի մնայ

անմոռանալի նոյ. 11-ի կիրակին։

Գաղութ մը որ շատ փոքր է, կը տառապի երկար տարիներու անգործութենէ, վերջերս իր նպատակներուն համար զոհեց աւելի քան 2,500 տոլար՝ գնելով Հ. Յ. Դ. տուն մը, կիրակի օր ալ իր խղճի պարտականութիւնը կատարեց ինը բանտարկեալ ընկերներու պաշտպանութեան գործին համար կարեւոր գումար մը տալով։

Նախաձեռնութեամբ կոմիտէիս եւ մասնակցութեամբ Հ. Կ. Խաչի եւ Ցեղակրօն Ուխտին, ունեցանք հրապարակային ժողով մը, կոմիտէիս ակումբին մէջ։ Ներկայ էր հոծ բազմութիւն մը։ Ժողովի բացումէն առաջ, Ցեղակրօն Ուխտը հայկական եւ քանատական դրօշներով ժողովասրահ մտաւ. բազմութիւնը բուռն ծափերով ընդունեց զանոնք։

Ժողովին ատենապետեց ընկեր Պ. Ալոյեան, որուն բացման խօսքերէն յետոյ երգուեցաւ *Մեր հայրենիք*ը։ Արտասանութիւններ ըրին օրիորդներ Մ. Ասատուրեան, Շ. Միրաքեան։ Այդ օրը ներկայ էր նաեւ հանրածանօթ երգիչ պրն. Շահ-Մուրատեան, որ սիրայօժար տուաւ մեզ գեղեցիկ երգ մը։

Ցեղակրօն Ուխտի կողմէ խօսեցաւ ընկ. Ա. Սիրունեան, Կարմիր Խաչի կողմէ տիկին Ս. Մելքոնեան։ Օրուան բանախօսն էր ընկ. Կ. Թանտրճեան, որ մեր գաղութի ներկայ վիճակը պարզեց եւ հրաւիրեց ներկաները որ իրենց նիւթական պարտականութիւնը կատարեն թրքօ-բոլշեւիկներու դաւերուն զոհ գացած մեր ինը ընկերներուն հանդէպ։

Հանգանակութիւնը բացաւ Հ. Կ. Խաչը 33 տոլարով, Ցեղակրօն Ուխտը նուիրեց 30 տոլար, Հայ Արծուիկները 12, նոր կազմուած Քըիի Հայրենակցական մասնաճիւղը՝ 5. յետոյ ներկաներէն ընկեր Ա. Փափազեան 40 տոլարով մասնակցեցաւ։ Յաջորդաբար 25, 20, 15, 10 եւ 5 տոլարներով մասնակցեցան ուրիշներ ալ։ Կարճ ժամանակի մէջ գոյացաւ 450 տոլար։ Ներկաներ յետոյ յաւելեալ նուէրներով գումարը 500 տոլարի բարձրացուցին։

Մեր ընկերներէն մէկը նուիրեց ժամացոյց մը, որ աճուրդի դրուեցաւ եւ գոյացաւ 15 տոլար։

Բազմութիւն ուշ ատեն մեկնեցաւ գոհ տպաւորութեամբ, խղճի պարտականութիւն մը կատարողի գիտակցութեամբ։

***Հայրենիք***, 22 ***Նոյեմբեր*** 1934, 36-***րդ տարի***, ***Թիւ*** 6856, ***էջ*** 2

**ՆՈՅԵՄԲԵՐ 1934, ՀԱՐԱՒԱՅԻՆ ԱՄԵՐԻԿԱ**

Կը մեկնի Հարաւային Ամերիկա երգահանդէսներու համար։

- «***Զանազան լուրեր***», ***Արեւ***, 22 ***Նոյեմբեր*** 1934, ***ԺԹ. տարի***, ***Թիւ*** 4827, ***էջ*** 1։

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ

Մեծանուն երգիչ Պ. Արմենակ Շահմուրատեան Նիւ Եօրքի մէջ հրաժեշտի երգահանդէս մը տուած է Հոկտեմբեր 21-ին, Հարաւային Ամերիկայ մեկնումին առթիւ։
*Արեւ*, 22 *Նոյեմբեր* 1934, *ԺԹ. տարի*, *թիւ* 4827, *էջ* 1

**1935, ՓԱՐԻԶ**

Ամերիկայէն Փարիզ վերադարձին կը սկսին յայտնաբերուիլ հոգեկան խանգարումի առաջին նշանները։ Ըստ Շ-Մ.ի դստեր Էվըլինի, ան արդէն հիւանդ էր երբ Փարիզ հասաւ։

**- *Արշակ Չօպանեան*, «*Քրոնիկ*», *Անահիտ*, *Հոկտեմբեր-Նոյեմբեր-Դեկտեմբեր* 1939, *նոր շրջան*, *Ժ. տարի*, *թիւ* 6, *էջ* 28։**

**- *Ֆերտինանտ Գայմագամեան*, «*Շահ-Մուրատեանի դուստրը կը վերյիշէ իր հօրը հետ ապրուած օրերը*», *Զահակիր*, 10 *Փետրուար* 1972, *նոր շրջան*, *թիւ* 415, *էջ* 4։**

## ՔՐՈՆԻԿ
### (հատուած)

ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ

Այս մեծ Հայը ունեցաւ կեանքի վերջին շրջան մը անհունապէս տխուր։ Հինգ վեց տարի առաջ, Ամերիկայէն դարձին, արդէն սկսած էր ցոյց տալ առաջին նշանները անգութ հիւանդութեան մը. այդ հիւանդութիւնը շարունակեց իր մռայլ բնաշրջութիւնը, քայլ առ քայլ քայքայելով իր ջղային դրութիւնն ու իր ուղեղը։ Չեմ կրնար մոռնալ այն խոր յուզմունքը զոր զգացի այն օրն ուր Տարօն-Տուրուբերանի Հայրենակցականի ընդհանուր քարտուղար Պ. Տօնիկեանին հետ գացի զինք տեսնել Ավընիւ տը Շուազիի իր բնակարանին մէջ։ Բաւական ատենէ ի վեր չէի հանդիպած իրեն։ Ճանչցաւ զիս, եւ մանկական ուրախութեամբ մը սկսաւ աղաղակել (բառերը կիսատ արտասանելով). «Օ՜, մեռա՜ծ էիր դուն, ողջնցե՜ր ես... ուրախ եմ... Ավընիւ Թրիւտէնին մէկ ծայրէ՜ն կուգայիր, յանկարծ վար ինկար, մեռա՜ր... Յարութիւն ես առեր... Ղազարո՜ս... ուրա՜խ եմ»։ Այդ երեւակայուած մահը իր հիւանդ էութեան մէկ ցնորքն էր։ Աւա՜ղ, ինչ որ եթէ ոչ մեռած, գէթ կիսամեռ էր արդէն, իր ուղեղն էր։ Քիչ յետոյ, իր հին փառաւոր օրերը թուեցաւ յիշել, ու սկսաւ իր համբաւաւոր *Հայաստան*ը երգել, այն *Հայաստան*ը որով ելեքտրականացուցած էր հազարաւոր Հայեր. բառերը չէր յիշեր, *լա լա լա*յով երգեց

ամբողջը, բայց եղանակը ճիշտ յիշեց, թէեւ չփրտելով կ՚երգէր, ու ձայնը, թէպէտ քիչ մը խեղդուկ, տեղ տեղ իր հին օրերուն ուժն ու ջերմութիւնը կը վերստանար: Վերջին անգամն էր, կարծեմ, որ կ՚երգէր:
***Արշակ Զօպանեան***, «***Քրոնիկ***», ***Անահիտ***, ***Հոկտեմբեր-Նոյեմբեր-Դեկտեմբեր*** 1939, ***նոր շրջան***, ***Ժ. տարի***, ***Թիւ*** 6, ***էջ*** 28

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԴՈՒՍՏՐԸ ԿԸ ՎԵՐՅԻՇԷ ԻՐ ՀՕՐԸ ՀԵՏ ԱՊՐՈՒԱԾ ՕՐԵՐԸ
**(հատուած)**

ՖԵՐՏԻՆԱՆՏ ԳԱՅՄԱԳԱՄԵԱՆ

Իր հօրը վերյիշումէն եկող զուարթութիւնը երբեմն կը մթագնի, երբ ան կ՚ոգեկոչէ այն վերջին տարիները՝ զոր Արմենակ Շահ-Մուրատեան ապրեցաւ Ֆրանսայի մայրաքաղաքին մէջ: Մեծանուն երգիչը շատ հիւանդ էր, երբ Փարիզ եկաւ:
***Ջահակիր***, 10 ***Փետրուար*** 1972, ***նոր շրջան***, ***Թիւ*** 415, ***էջ*** 4

**ՇԱԲԱԹ, 26 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1935, ՓԱՐԻԶ**

Կոմիտաս վարդապետի յուղարկաւորութեան նախորդ օրը Արամ Պետրոսեանի հետ Շ-Մ. կը գտնուի հայկական եկեղեցին՝ ուր դրուած էր դագաղը, եւ կ՚ապրի յիշողութեան ու յուզումի պահեր:
***- Արամ Պետրոսեան***, «***Անմոռանալի երգիչը Արմենակ Շահմուրատեան. մշեցի գիւղացին Փարիզի Օփերային մէջ***», ***Բուլիս***, 1 ***Յունուար*** 1963, 17-***րդ տարի***, ***Թիւ*** 1 (385), ***էջ*** 11:

## ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ԵՐԳԻՉԸ ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ ՄՇԵՑԻ ԳԻՒՂԱՑԻՆ ՓԱՐԻԶԻ ՕՓԵՐԱՅԻՆ ՄԷՋ
**(հատուած)**

ԱՐԱՄ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Տարօրինակ աղերս մը, համագոյութիւն մը կայ մարդկային հոգիներուն միջեւ: Օ՜հ, կ՚ուզէք նախախնամութեան վերագրեցէք այդ հոգեմիտումը, կ՚ուզէք համաստեղութեանց առեղծուածային մէկ բաղակցութեան:

Շահմուրատեանի աստղը, որ իր լոյսը կը ստանար Կոմիտասի ակէն, վարպետին մահէն ետքը խաւարեցաւ բոլորովին:

Կոմիտասի յուղարկաւորութեան նախորդ առտուն միասին էինք եկեղեցին: Չէր ուզեր բաժնուիլ իր մեծ գործակիցին քովէն, որուն հետ այնքա՜ն թանկագին պահեր ապրած էր նախապատերազմեան երանելի օրերուն: Լո՜ւռ, մտամփոփ, աչքերը կիսափակ եւ ձեռքերը կուրծքին խաչաձեւած, կը խոկար ծանրօրէն: Հարցուցի թէ վարպետը յաճախ երգա՞ծ է եկեղեցին: Հաստատական պատասխան տուաւ: Յետոյ ձայնին հաստատական շեշտ մը տալով յարեց.

- Տեսնո՞ւմ էք Վարդապետին, նրա ֆիզիքական գոյութիւնը վերջ գտած է, բայց ինչ որ կը մնայ նրանից, դա իր կատարած գործն է:
*Քուլիս*, 1 *Յունուար* 1963, 17-*րդ տարի*, *Թիւ* 1 (385), *էջ* 11

### 1935-Ի ԵՐԿՐՈՐԴ ԿԷՍ, ՓԱՐԻԶ

Համաձայն Շ-Մ.ի դստեր Էվըլինի տեղեկութիւններուն, իբր հետեւանք պնդերակութեան եւ ուրիշ բարդութիւններու, Շ-Մ. կ'ունենայ ուղեղային արիւնահոսութիւն, որ մեծապէս կը վնասէ ուղեղին, կորսնցնելով խօսելու կարողութիւնը:

- *Ֆերտինանտ Գայմագամեան*, «*Շահ-Մուրատեանի դուստրը կը վերյիշէ իր հօրը հետ ապրուած օրերը*», *Ջահակիր*, 10 *Փետրուար* 1972, *նոր շրջան*, *Թիւ* 415, *էջ* 4:

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԴՈՒՍՏՐԸ ԿԸ ՎԵՐՅԻՇԷ ԻՐ ՀՕՐԸ ՀԵՏ ԱՊՐՈՒԱԾ ՕՐԵՐԸ

**(հատուած)**

ՖԵՐՏԻՆԱՆՏ ԳԱՅՄԱԳԱՄԵԱՆ

[Փարիզ վերադառնալէն վեց] ամիս վերջ, իբր հետեւանք պնդերակութեան եւ ուրիշ կարգ մը բարդութիւններու, ունեցաւ ուղեղային արիւնահոսութիւն մը որ մեծ վնաս պատճառեց իր ուղեղին: Ան իսկոյն կորսնցուց Ֆրանսերէն լեզուի ամբողջ իր ծանօթութիւնը: Այլեւս հազիւ քիչ մը կը յիշէր իր մայրենի հայերէնը:
*Ջահակիր*, 10 *Փետրուար* 1972, *նոր շրջան*, *Թիւ* 415, *էջ* 4

### ՅՈՒՆՈՒԱՐ-ՓԵՏՐՈՒԱՐ 1938, ՓԱՐԻԶ

Կը փոխադրուի ապաքինարան:

- «*Երգիչ Շահմուրատեան*», *Արեւ*, 1 *Մարտ* 1938, *ԻԲ. տարի*, *Թիւ* 5826, *էջ* 1:

# ԵՐԳԻՉ ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ

Բարիզահայ մամուլէն ցաւով կը տեղեկանանք թէ ծանօթ երգիչ Արմենակ Շահմուրատեան կը տառապի ջղային հիւանդութենէ եւ ապաքինարան մը փոխադրուած է։

Բարիզի հայ մտաւորականներու խումբ մը կը մտածեն ընել անհրաժեշտ ձեռնարկները, փրկելու համար դժբախտ արուեստագէտը տխուր վախճանէ մը, զոր ունեցաւ Կոմիտաս Վարդապետը։

*Արեւ*, 1 *Մարտ* 1938, *ԻԲ. տարի*, *Թիւ* 5826, *էջ* 1

**ՄԱՐՏ 1938, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Շահ-Մուրատեանի Յիսնամեակի Կեդրոնական Յանձնախումբը կը հրապարակէ կոչ մը, ուր կը տեղեկացէ երգիչին ֆիզիքական տկարութիւնը եւ անմխիթար վիճակը, կը յայտարարէ Մայիս մէկին տեղի ունենալիք յիսնամեակի նուագահանդէսը եւ կոչ կ'ուղղէ հանրութեան դիմել նուիրատուութեան։

- «*ՇաՀՄուրատեանի Յիսնամեակի Կեդր. Յանձնախումբի կոչը*», *Հայաստանի կոչնակ*, 5 *Մարտ* 1938, *ԼԸ. տարի*, *Թիւ* 10, *էջ* 237։

# ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՅԻՍՆԱՄԵԱԿԻ ԿԵԴՐ. ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻ ԿՈՉԸ

Հայ ժողովո՛ւրդ,

Քու վաստակաւոր զաւակներէդ՝ Հայ երգի սոխակ՝ Արմենակ Շահմուրատեան, որու քաղցրալուր երգն ու մեղեդին նախ հնչած են հայրենիքի դաշտերուն եւ եկեղեցիներուն մէջ – Աշտիշատի տաճարէն մինչեւ Մշոյ Ս. Կարապետի վանքը, Կարնոյ Մայր եկեղեցիէն մինչեւ Էջմիածնայ սրբազնագոյն կաթողիկէն – եւ ապա, թռված եւ սփռված՝ աշխարհի չորս կողմը ցրուած պանդուխտ Հայութիւնը, այսօր, տարիներու բեռան եւ ֆիզիքական տկարութեան հետեւանքով մատնուած է լռութեան։ Քաջալերանքի եւ մխիթարութեան կարօտ իր ներկայ վիճակը անտարակոյս ամէն Հայու սիրտ գուրգուրանքով կը լեցնէ։ Ուստի, առ ի գնահատութիւն Հայ մշակոյթին մատուցած իր թանկագին ծառայութեանց, արժան է որ հանդիսաւորապէս տօնենք *Հայաստան*ի եւ *Մոկաց Միրզէ*ի անզուգական երգիչին գեղարուեստական յիսնամեակը եւ փութանք մեր լիառատ աջակցութիւնը բերել այդ առիթով։

Կեդր. Յանձնախումբս այս տարւոյ Մայիս 1-ին Նիւ Եորքի մէջ պիտի սարքէ փառաւոր նուագահանդէս մը։ Կազմած է նաեւ Տիկնանց տեղական Յանձնա-

ժողով մը, նուիրահաւաքութեան գործը վարելու համար։ Մօտ օրէն՝ նմանօրինակ մարմիններ պիտի կազմուին հայաշատ ուրիշ գաղութներու մէջ։

Կը խնդրուի որ ամէն Հայ աշխատի յաջողութեամբ պսակել այս ձեռնարկը։

Յովհան Կարապետեան, Ատենապետ

Տոքթ. Ա. Ալիխանեան, Ատենադպիր

Վահան Մոզեան, Գանձապետ

Գանձապետի հասցէն է. –

10 East 39th Street, New York, N. Y.

*Հայաստանի կոչնակ*, 5 *Մարտ* 1938, *ԼԸ. տարի*, *Թիւ* 10, *էջ* 237

**ԱՊՐԻԼ 1938, ՓԱՐԻԶ**

Փարիզի Տարօն-Տուրուբերանի Հայր. Միութեան կեդրոնական վարչութիւնը կը հրապարակէ «Կոչ» մը, ուր կը նշէ Շ-Մ.ի հիւանդ վիճակը եւ դարմանումի հրատապութիւնը, կը յայտարարէ յոբելեանը նշելու մտադրութիւնը եւ կոչ կ'ուղղէ նուիրատուութեան։

- «*Ա. Շահմուրատեանի համար* (*կոչ*)», *Յառաջ*, 12 *Ապրիլ* 1938, *ԺԴ. տարի*, *Թիւ* 3703, *էջ* 3։

## Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՀԱՄԱՐ
## (կոչ)

Հանրածանօթ եւ երախտաշատ երգիչ Պ. Արմենակ Շահմուրատեան կը գտնուի հիւանդ վիճակի մէջ։ Եթէ չառնուին դարմանումի արմատական միջոցներ, հիւանդութիւնը կրնայ դառնալ աղիտալի։

Նկատելով որ Շահմուրատեան կը վայելէ համազգային սէր ու համակրանք, որոշեցինք հրապարակաւ հայ ժողովուրդի աջակցութեանը դիմել, կարենալ օգնելու համար իր ապաքինմանը գործին։

Տարօն-Տուրուբերանի Ամերիկայի Պատգ. ժողովը որոշած էր այս տարուան ընթացքին տօնել անոր յոբելեանը։ Փարիզի հայ մտաւորականութեան հետ համախորհուրդ, մենք եւս որոշեցինք տօնել Շահմուրատեանը։ Այդ առթիւ ուրախութեամբ եւ շնորհակալութեամբ կ'արձանագրենք Պ. Ա. Չօպանեանի եռանդագին գործակցութիւնը մեզ հետ։ Ով որ տեսաւ իր գրութիւնը՝ Շահմուրատեանի մասին (*Ապագայ*, 19 մարտ), անհնար է որ կարենայ անտարբեր մնալ։ Վստահ ըլլալով ուրեմն մեր ժողովուրդի երախտագիտութեանը վրայ, անվարան կը դիմենք հանրային աջակցութեան, յուսալով յանգիլ գրական արդիւնքի, մանաւանդ որ հայ մամուլն ալ այնքան բարեացակամ տրամադրութեամբ լեցուած է

այս ձեռնարկին հանդէպ։

Օգնութիւնները կարելի է ղրկել *Յառաջ*ի եւ *Ապագայ*ի, ինչպէս մեր քարտուղարութեան, 52, Rue G. Courbet, Begneux (Seine), France։

Ի դիմաց Տ. Տուրուբերանի Հայր. Միութեան կեդր. վարչութեան. – Քարտուղար՝ Լեւոն Տօնիկեան, նախագահ՝ Ա. Չաքրեան։

Ա. ցանկ հանգանակութեան – Պ. Պ. Արշակ Չօպանեան, Առաքել Չաքրեան, Լեւոն Տօնիկեան, Օր. Մարգրիտ Բաբաեան, Պ. Նուպար Ալեքսանեան, Ստեփան Ալեքսանեան, Յաբեթ Յարութիւնեան, Կիրակոս աղբար (Անիէռ), Տիգրան Տիրոյեան 50-ական ֆրանք, Օր. Արուսեանկ Ալպան 25, Խաչիկ Մկրտիչեան 100, Յովսէփ Քուղիկեան 20, Սամսոն Ալեքսանեան 25, Առաքել Թաթուչեան 70, Անթիլիասի դպրեվանքի ուսուցիչներէն 145 ֆրանք, գումար 835 ֆրանք։

*Յառաջ*, 12 *Ապրիլ* 1938, *ԺԴ. տարի*, *Թիւ* 3703, *էջ* 3

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 28 ԱՊՐԻԼ 1938, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Սբ. Խաչ եկեղեցիի սրահը՝ տիկ. Զարուհի Գալէմքեարեանի դասախօսութիւնը։ Նիւթ՝ *Աննման Րաֆֆի, մեծանուն երգիչ Շահ-Մուրատեան, նորայայտ վիպասան Էմ. Վարանդեան*։

- *Հայաստանի կոչնակ*, 23 *Ապրիլ* 1938, *ԼԸ. տարի*, *Թիւ* 17, *էջ* 409։

**ԿԻՐԱԿԻ, 1 ՄԱՅԻՍ 1938, ՆԻՒ ԵՈՐՔ**

Նիւ Եորքի Pythian Temple Hall-ին մէջ՝ Շ-Մ.ի յոբելեանի նուագահանդէս։ Կը մասնակցին՝ տիկ. Մարի Արաքեան (երգչուհի), Արման Թօզաթեան (թենոր) եւ օր. Gisella Neu (ջութակ)։

- *Հայաստանի կոչնակ*, 16 *Ապրիլ* 1938, *ԼԸ. տարի*, *Թիւ* 16, *էջ* 386։

- «*Պատուոյ երգահանդէս*», *Հայաստանի կոչնակ*, 30 *Ապրիլ* 1938, *ԼԸ. տարի*, *Թիւ* 18, *էջ* 429։

- *Հայաստանի կոչնակ*, 30 *Ապրիլ* 1938, *ԼԸ. տարի*, *Թիւ* 18, *էջ* 434։

- *Յովհաննէս Աւագեան*, «*Պատուոյ նուագահանդէս*», *Հայաստանի կոչնակ*, 14 *Մայիս* 1938, *ԼԸ. տարի*, *Թիւ* 20, *էջ* 473։

## ՊԱՏՈՒՈՅ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳԵԱՆ

Մայի՛ս 1, գարնան տաքուկ արեւ մը կը շողայ դուրսը, մինչ Փիթիին

Թէմփըլի պատերէն ներս՝ Շահ-Մուրատեանի գոռ երգն է որ կ'արձագանգէ դարձեալ, շնորհիւ երգապնակներուն (plaque), որոնք իրենց վրայ նոյնութեամբ արձանագրուած կը պահեն երգչին ձայնը, շեշտը, եղանակը, դաշնոլորումը, - *Քրիստոս պատարագեալ*, *Անտունի*, *Արօր-տատրակ*։ Դէմդ, բեմին վրայ կանգնած կ'երեւակայես զինք իր յորդուն մազերով, ճկուն հասակով, դիմագծային յատկանշական արտայայտութիւններով, ու սիրտդ կը փլի, կը փղձկի յանկարծ, երբ ականջիդ կը հասնի. –

***Սիրտս նըման է էն փըլած տընէր.-***
***Կոտրեր գերաններ, խախտեր է սընէր,***
***Բուն պիտի դընեն մէջ վայրի հաւքեր,***
***... տօ լա՜ճ տընաւեր։***

Ու կը տխրիս, որ մեր գնահատութեան, յարգանքի մեր ցոյցին մէջ ուշ ենք դարձեալ։ *Հայ* երգին *հայ* երգիչը շրջեցաւ երկիրէ երկիր, գնաց մինչեւ... Հնդկաստան, պարպեց իր հոգին, սպառեց իր բովանդակ կորովը ու պանծացուց, սիրցուց, շրթներու վրայ թառեցուց հայ երգը – *Ալագեազ բարձր սարին*, *Սիրուհիս*, *Մոկաց Միրզէ*, *Հայաստան*, եւն. եւն, իսկ այսօր՝ աւա՜ղ, ճակատագրին մէկ խաղովը՝ պէտք է որ ինք մնայ վարագոյրին ետեւ, ովկիանոսէն անդին, եւ դուն տեսնես թափուր բեմը միայն...։

Ո՞ւշ ենք... այլ «լաւ է անազան քան ոչ երբեք», ու գովելի են անտարակոյս Տարօն Տուրուբերանի Հայրենակցական Միութիւնը՝ որ Շահ-Մուրատեանի գեղարուեստական գործունէութեան Յիսնամեակը տօնելու գաղափարը յղացաւ եւ Յոբելինական Կեդր. Յանձնախումբը՝ որ ա՛յնքան խնամեալ, ա՛յնքան ծափողջունելի նուագահանդէս մը հրամցուց հասարակութեան։

Հանդէսին բացումը կատարեց Յանձնախումբին արժանաւոր ատենապետը՝ Տիար Յովհան Կարապետեան՝ որ մէկ քանի վայրկեան տեւող կուռ ու մտածուած ուղերձով մը պարզեց մշակոյթին՝ ի մասնաւորի երգին դերը ազգի մը կեանքին մէջ, գովեց Շահ-Մուրատեանի գործունէութիւնը եւ ցաւ յայտնեց որ կարելի չէ եղած անձամբ վայելել ներկայութիւնը սիրուած ու փնտռուած յոբելեարին։

Նուագահանդէսին յօժարակամ իրենց մասնակցութիւնը բերած էին երգչուհի Մարի Արազեան, ջութակահար Կիզէլա Նեոյ եւ Մէթրոփոլիթընի յայտնի թէնօրներէն Արման Թօքաթեան՝ որոնք իրենց երգեցողութեամբ ու նուագածութեամբ երաժշտական զմայլելի վայելքի մը հաղորդակից ըրին ունկնդիրները։

Թօզաթեանի խանդավառող արուեստը ծանօթ է արդէն ամէնուն, ու մենք հաճոյքով դիտեցինք որ մեր ազգին պատիւ բերող այս երգիչը կը պահէ իր ձայնին ուժգնութիւնն ու քաղցրութիւնը, եւ իր անճիգ՝ ախորժալուր երգեցողութեամբ առաջին իսկ խաղին՝ մթնոլորտ մը կ'ստեղծէ։

Մարի Արազեանի մասին դեռ հազիւ քանի մը շաբաթ առաջ արտայայտուեցանք, ուրախութեամբ արձանագրելով այն պարագան թէ այս հայ

երգչուհին ալ ուշադրութիւնը գրաւեց ամերիկեան թերթերու քննադատներուն՝ որոնք մասնաւոր տողերով անդրադարձան իր երգահանդէսին։

Փրակա ուսած Կիզէլա Նեռյ՝ որ տասը տարեկանին արդէն իսկ ուշադրութիւն գրաւած ու հիացման արժանացած էր որպէս ջութակահար, ապացուցուց թէ ինք իրօք կազմուած, վարժ արթիսթ է նուագածութեան այդ ճիւղին մէջ։ Կիզէլա Նեռյ, յայտնապէս տէրն է աղեղին ու զայն կը կառավարէ այնպիսի ճարտարութեամբ՝ որ բոլոր թելերէն ու անոնց բոլոր մասերէն ալ թարմութիւն, առուգութիւն, քաղցրութիւն կը ծորեն։ Անոր ամէն մէկ խաղը ջինջ է, թօնը՝ յստակ, նուագը՝ հեշտալուր։ Դասական երաժշտութիւնն է միայն որ կը գերէ Կիզէլա Նեռյն եւ անիկա, իսպառ խոյս տալով ժողովրդական աժան նուագողներէ, ունկնդիր հասարակութեան կը մատուցանէ այնպիսի կտորներ՝ որոնք հոգին կը պարուրեն ու միտքը կը մարզեն միաժամանակ։ Ջութակահարին կ'ընկերակցէր Մինա Պէրնշթայն՝ դերին գիտակից, պաշտօնին հաւատարիմ, ճարտար դաշնակահարը։ Դաշնակի վրայ՝ Մարի Արագեանին կ'ընկերակցէր Ալէքսանդր Ասլանեան, իսկ Արման Թօգաթեանին ալ՝ Ինա Կրանժ։

Գովելի են արդարեւ Մարի Արագեան եւ Արման Թօգաթեան՝ այն համակրութեան համար զոր ցոյց տուին իրենց հայ արուեստագէտին՝ Շահ-Մուրատեանի վերաբերմամբ։ Գովելի է նաեւ Կիզէլա Նեռյ՝ որ օտար մը ըլլալով հանդերձ, արուեստի եղբօր մը հանդէպ այնքան գուրգուրանք ցոյց տուաւ, ինչ որ ինքնին կը փաստէ թէ այս ջութակահարին մէջ համամարդկային մեծ սիրտ մըն է որ կը բաբախէ։

Շահ-Մուրատեան արժանի էր պատուոյ այս ցոյցին։ Ա՜հ, թէ Ամերիկայի մէկ ծայրէն միւսը, բոլոր հայեր գիտակցէին իրենց պարտականութեան, ու հարկ եղած յարգանքն արդեամբ ընծայէին հայ մեծանուն երգչին՝ Ա. Շահ-Մուրատեանի։

*Հայաստանի կոչնակ*, 14 *Մայիս* 1938, *ԼԸ. տարի*, *Թիւ* 20, *էջ* 473

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 22 ՅՈՒՆԻՍ 1938, ՓԱՐԻԶ**

Շ-Մ. առաւօտեան դուրս կ'ելլէ բնակարանէն եւ կ'անհետանայ։

- «*Ա. ՇահՄուրատեան անՀետացած*», *Յառաջ*, 24 *Յունիս* 1938, *ԺԴ. տարի*, *Թիւ* 3765, *էջ* 1։

## Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ ԱՆՀԵՏԱՑԱԾ

Ցաւով կ'իմանանք թէ «Հայաստանի սոխակ»-ը, Արմենակ Շահմուրատեան, որ բաւական ատենէ ի վեր կը տառապի ջղային հիւանդութենէ մը, չորեքշաբթի առտու ժամը 9-ին մինակ մնացած ըլլալով իր բնակարանին մէջ, դուրս ելեր եւ

անհետացեր է: Մինչեւ թերթին տպագրութիւնը լուր չստացանք ոստիկանական քննութեանց արդիւնքի մասին:
*Յառաջ*, 24 *Յունիս* 1938, *ԺԴ. տարի*, *Թիւ* 3765, *էջ* 1

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 23 ՅՈՒՆԻՍ 1938, ՇԱՄՓԻՆՅԻ-ՍԻՒՐ-ՄԱՐՆ**

Շ-Մ.ը կը գտնեն Փարիզէն հեռու՝ Champigny-sur-Marne: Կը բացայայտուի՝ որ ան Չորեքշաբթի տունէն դուրս ելեր է մուճակով, շապիկով ու գլուխը բաց եւ յիշողութիւնը կորսնցնելով թափառեր է անյայտ ուղղութեամբ:

- «*Ա. Շահմուրատեան գտնուած*», *Յառաջ*, 25 *Յունիս* 1938, *ԺԴ. տարի*, *Թիւ* 3766, *էջ* 1:

## Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ ԳՏՆՈՒԱԾ

Երէկ հաղորդած էինք թէ ծանօթ երգիչ Ա. Շահմուրատեան չորեքշաբթի առտու մինակ մնացած ըլլալով իր տանը մէջ, դուրս ելած եւ հետքը կորսնցուցած է:

Այս լուրը հրատարակած էին նաեւ ֆրանսական թերթերը, աւելցնելով թէ Շահմուրատեան դուրս ելած է մուճակով, շապիկով եւ գլուխը բաց:

Ուրախութեամբ կը յայտնենք թէ դժբախտ արուեստագէտը գտնուած է հինգշաբթի օր, քաղաքէն հինգ ժամ հեռու, Շաթինեի-սիւռ-Մառնի մէջ: Ուրեմն դուրս ելլելէ վերջը յիշողութիւնը կորսնցնելով, ժամերով քալեր է անծանօթ ուղղութեամբ, մինչեւ որ ոստիկանները օգնութեան հասած են:
*Յառաջ*, 25 *Յունիս* 1938, *ԺԴ. տարի*, *Թիւ* 3766, *էջ* 1

**ՉՈՐԵՔՇԱԲԹԻ, 17 ՕԳՈՍՏՈՍ 1938, ՖՈՆԹԸՆԷ**

Շ-Մ.ը կը փոխադրեն Ֆոնթընէ, բուժարան Փիշար, ուր կը մնայ մէկ ամիս:

- *Լեւոն Տօնիկեան*, «*Ա. Շահմուրատեանի վիճակը*», *Յառաջ*, 20 *Ապրիլ* 1939, *ԺԵ. տարի*, *Թիւ* 4019, *էջ* 3:

## Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՎԻՃԱԿԸ

ԼԵՒՈՆ ՏՕՆԻԿԵԱՆ

Տարօն Տուրուբերանի Հայր. Միութեան Ֆրանսայի Շրջ. Վարչութիւնը, ինչպէս նաեւ կարգ մը բարեկամներ, ի մէջ այլոց Պ. Չօպանեանը, Տիկին Շահմուրատեանին առաջարկած էին անյապաղ բուժարան մը փոխադրել հիւանդը, քննելու

հասկնալու համար բուն հիւանդութիւնը։

Տիկինը որ Ֆրանսուհի մըն է, հակառակ իր կամքին 1938 17 օգոստոսին հաւանեցաւ որ իր սիրելի հիւանդը փոխադրուի Ֆոնթընէ, քլինիք Փիշար։ Հոն դժբախտաբար հիւանդին վիճակը վատթարացաւ, պարզ այն պատճառաւ որ ինք չէր ուզեր արգելափակուիլ։ Բայց բժիշկները հարկադրեցին 17 օգոստոս – 15 սեպտեմբեր, զամուիլ անկողնին։ Այն ատեն փորձած ըլլալով պատուհանէն վար իջնել, մահճակալին կապած էին զինքը, ինչ որ կատաղութիւն յառաջ բերաւ հիւանդին մէջ։ Չորս շաբաթ վերջ երբ տուն փոխադրուեցաւ, այլեւս իր վստահութիւնը խախտած էր իր խեղճ կնոջը վրայ, եւ անոր երեսին կը գոռար.

- «Գիտեմ, գիտեմ»...

Ըսել կ'ուզէր թէ զինքը արգելատուն պիտի առաջնորդէ, եւ ամէն անգամ դուռ բացուելուն մտքի վրայ էր, դուրս ցատկելու եւ անհետանալու համար։ Մէկ խօսքով, մինչ այդ միայն համրացած, եւ յիշողութիւնը կորսնցուցած Շահմուրատեանը, յիմարացած ճիշդ հանգուցեալ Կոմիտաս վարդապետի օրին հասած էր։ Ստիպուեցանք այս անգամ փոխադրել Սէնթ Ան յիմարանոցը, 19 սեպտ.ին ուր մնաց մինչեւ 19 մարտ 1939։

Ֆոնթընէի բուժարանին մէջ հաստատուեցաւ որ հիւանդը սիֆիլիզի որ եւ է հետք չունի։ Իսկ Սէնթ Անի մէջ վեց ամիս խնամուելէ ետք, նոյն եզրակացութեանը եկան։ Ուրեմն յառաջացած տարիքին հետ չափազանց յոգնութիւնն ու յանկարծակի ցնցումը այդ վիճակին հասցուցած են դժբախտ երգիչը։ Այս առթիւ Տիկինը կը պատմէ որ օփերայի իր վկայականները, կարգ մը զարդանիշերը վրայէն գողցուած են ճամբորդութեան մը ընթացքին, թերեւս ուրիշ փորձանքներ ալ անցած են գլխէն, նկատի ունենալով իր վերջի երկու տարիներու ճամբորդութիւնը, Հնդկաստան, Ամերիկա եւն.։

Կիրակի օր, 16 ապրիլ, երեք հայրենակիցներ, Խաչիկ Մկրտիչեան, Տիգրան Տէրոյեան եւ ես յատուկ ժամադրութեամբ այցելեցինք հիւանդին նոր բնակարանը 42 Ave. V. Raspail, Arcueil։ Ներս մտած ատեն Տիկին Շահմուրատեանը արտասուախառն աչքերով, եւ տրցակ մը բանալիներ ձեռքը դիմաւորեց մեզ, առաջնորդելով հիւանդին մօտը։ Շահմուրատեան գիշերազգեստով եւ հողաթափներով, գլխաբաց ոտքի վրայ, պատուհանէն փոքրիկ պարտէզի ածուներն եւ հեռուէն երեւցող պտղատու ծառերու նորաբողբոջ ծաղիկները կը դիտէր։ Բոլորովին դեղնած էր եւ յոգնած։

Երբ յանկարծ մեզ տեսաւ, հարցական ակնարկով մը կնոջը դառնալով կ'ուզէր իմանալ թէ ասոնք ուրկի՞ց եկան։ Յետոյ դառնալով մեզի, փորձեց արտայայտուիլ, բայց լեզուն դաւաճանեց.-

Յուզումը պատեց բոլորս, բայց կը փորձենք անտարբեր երեւալ, գէշ չազդելու համար, Խաչիկ փորձեց խօսիլ հետը։

- Շահմուրատեան, Ռուբէն Զարդարեանի տղու, եւ մեր լաւագոյն արուեստա-

գէտներու հետ յոբելեանդ պիտի տօնենք մայիս 7ին։

- Ի՞նչ Ռ... Ռ... Զա՞ր...

- Ոչ, իր տղուն, Հրաչը, ատամնաբոյժը։

Գլխու շարժումով կը հաստատէ մեր ըսածը ու կը լռէ։ Տիկինը մեզ պտտցուց բնակարանը, ցոյց տալով յարմարութիւն, - երեք սենեակ, մէկ խոհանոց, եւ երկու փոքր պարտէզ, տան առջեւի եւ ետեւի կողմը։ Սենեակներէն մէկը իրենց է, մէկը փեսին եւ աղջկան, իսկ երրորդը որ փոքր սենեակ մըն է, կը մտածեն տալ Հայու-հիի մը, բոլորովին ձրի, որպէսզի երբեմն Շահմուրատի հետ հայերէն խօսի եւ հիւանդին սիրտը բացուի։

Երբ Տիկինը սուրճ եւ անուշեղէն կը հրամցնէր, Շահմուրատեանը եւս մաս-նակցեցաւ, բայց կնոջը օգնութեամբ էր որ իր պատառը կ՚առնէր, պնակը ձեռքին մէջ։ Յանկարծ յուզումը պատեց զինք եւ մերժեց երկրորդ պատառը... Կ՚ուզենք որ *Հայաստանը* երգէ։

«Չէ, չէ, չէ։ - Քելէ, քելէ երգէ։» Կը սկսի առանց առարկութեան, միշտ մնալով առաջին երկու բառին վրայ, քիչ մըն ալ աղաւաղելով իր սեփական եղանակը։

Բաւական զուարթացաւ դիմազիծը մեր այցելութեամբ, բայց երբ կը մեկնէինք, վշտացաւ, կռնակը դարձնելով մեզի։ Տիկինը պատմեց թէ իր օրն ու գիշերը կ՚անցընէր երգելով, անշուշտ միայն եղանակով, առանց բառի։ Առջի օր անցու-ցած է նոր տագնապ մը, աչքերը դարձած եւ բերանը փրփրած, *ամօնեաքի* քացա-խի եւ մարձումի շնորհիւ տագնապը փարատած է։

Նիւթական վիճակը խիստ անձուկ է։ Յիշեցնե՞նք թէ իւրաքանչիւրը իր չափով պէտք է օգնէ վաստակաւոր երգիչին, տառապանքը մեղմացնելու համար։ *Յառաջը* սիրով կ՚արձանագրէ նուէրները։

***Յառաջ***, 20 ***Ապրիլ*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4019, ***էջ*** 3

## ՀԻՆԳՇԱԲԹԻ, 15 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1938, ՇԱՄՓԻՆՅԻ-ՍԻՐ-ՄԱՐՆ

Բուժարանէն կը վերադառնայ տուն, առանց բարելաւումի։

**- *Լեւոն Տօնիկեան***, «***Ա. Շահմուրատեանի վիճակը***», ***Յառաջ***, 20 ***Ապրիլ*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4019, ***էջ*** 3։

## ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, 19 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1938, ՓԱՐԻԶ

Շ-Մ.ը կը փոխադրեն Սէնթ-Ան հոգեբուժարանը, ուր կը մնայ վեց ամիս։

**- *Լեւոն Տօնիկեան***, «***Ա. Շահմուրատեանի վիճակը***», ***Յառաջ***, 20 ***Ապրիլ*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4019, ***էջ*** 3։

**ԿԻՐԱԿԻ, 19 ՄԱՐՏ 1939**

Շ-Մ.ը Սէնթ-Ան հոգեբուժարանէն կը փոխադրեն իր բնակարանը։

**ԿԻՐԱԿԻ, 16 ԱՊՐԻԼ 1939, ԱՐՔԷՕՅ**

Խաչիկ Մկրտիչեան, Տիգրան Տէրոյեան եւ Լեւոն Տօնիկեան կ'այցելեն Շ-Մ.ի նոր բնակարանը՝ 42 ave. V. Raspail, Arcueil, ուր կ'ապրի իր տիկնոջ, դստեր եւ փեսային հետ։ Տօնիկեան կը նկարագրէ հանդիպումը, կը տեղեկացնէ՝ որ Շ-Մ. անկարող է խօսիլ, կ'ուտէ կնոջ օգնութեամբ եւ կ'ապրի մելամաղձոտ հոգեվիճակ մը։

- *Լեւոն Տօնիկեան*, «*Ա. Շահմուրատեանի վիճակը*», *Յառաջ*, 20 *Ապրիլ* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4019, *էջ* 3։

**ԿԻՐԱԿԻ, 7 ՄԱՅԻՍ 1939, ՓԱՐԻԶ**

Փարիզի Salle Gaveau-ին մէջ՝ յոբելենական հանդէս Շ-Մ.ի։ Խօսք՝ Գեր. Հայր Ս. Տէր Մովսէսեան, Հրանդ Բալուեան, օր. Մարգարիտ Բաբայեան, Արշակ Չօպանեան, Օննիկ Պէրպէրեան, Շաւարշ Միսաքեան եւ Հրաչ Զարդարեան։ Դաշնակ՝ օր. Գոհարիկ Ղազարոսեան եւ Ժուան Նազարեան։ Մեներգ՝ օր. Արուսեակ Ալպան, օր. Իրիս Պիլպիլեան, տիկ. Ա. Գեւոնեան։ Ջութակ՝ Ֆիլիփ Աղազարեան։ Արտասանութիւն՝ Նուրիան Մարգարեան։ Սիփան-Կոմիտաս երգչախումբ, խմբավար՝ Արա Պարթեւեան։

- *Յառաջ*, 5 *Ապրիլ* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4007, *էջ* 4։
- *Յառաջ*, 9 *Ապրիլ* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4011, *էջ* 4։
- «*Ի պատիւ Ա. Շահմուրատեանի*», *Յառաջ*, 26 *Ապրիլ* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4024, *էջ* 3։
- *Յառաջ*, 27 *Ապրիլ* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4025, *էջ* 4։
- *Յառաջ*, 6 *Մայիս* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4033, *էջ* 4։
- *Յառաջ*, 7 *Մայիս* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4034, *էջ* 1։
- *Հրանդ Բալուեան*, «*Արմենակ Շահ-Մուրատեան*», *Յառաջ*, 7 *Մայիս* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4034, *էջ* 2։
- *Մարգարիտ Բաբայեան*, «*Ա. Շահմուրատեանի յոբելեանին առթիւ*», *Յառաջ*, 7 *Մայիս* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4034, *էջ* 2։
- *Հայկանուշ Թորոսեան*, «*Արմենակ Շահմուրատեան*», *Յառաջ*, 7 *Մայիս* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4034, *էջ* 3։
- *Արամ Պետրոսեան*, «*Ի պատիւ Տարօնի Սոխակին*», *Յառաջ*, 13 *Մայիս* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4039, *էջ* 3։
- «*Արուեստագէտին տօնը*», *Արեւ*, 26 *Մայիս* 1939, ***ԻԳ. տարի***, *Թիւ* 6205, *էջ* 1, 4 [*Ապագայի Մայիս* 13 *Թուակիր յօդուածի արտատպութիւնը*]։
- *Ս. Շալճեան*, «*Տարօնի Սոխակը*», *Արեւ*, 31 *Մայիս* 1939, ***ԻԳ. տարի***, *Թիւ* 6209, *էջ* 2-3։

## Ի ՊԱՏԻՒ Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ

Վերջերս բարիզահայ մամուլին, մշակութային միութեանց եւ գրողներու միջեւ կատարուած խորհրդակցութենէ մը վերջ, որոշուեցաւ հանդէս մը սարքել ի պատիւ Ազգ. տաղանդաւոր երգիչ Արմենակ Շահմուրատեանի։

Այս յարգանքի ցոյցը տեղի պիտի ունենայ յառաջիկայ Մայիս 7-ի կիրակի օրը, կէսօրէ վերջ ժամը 3-ին, Սալ Կավոյի մէջ։

Շահմուրատեան անունը անբաժան մասնիկն է Կոմիտասեան արուեստին։ Մին կերտեց, միւսն ալ՝ տարածեց։ Շահմուրատեանի երգը երաժշտական վարդապետութիւն մըն է։ Այդ էր պատճառը, որ 1913-ին, Կոմիտաս վարդապետ, Կ. Պոլսոյ Փրթի-Շանի հանրածանօթ նուագահանդէսին քանի մը օր առաջ, անընդհատ մէկ ժամ կը բանաձեւէր խորաթափանց դասախօսութեամբ մը Շահմուրատեանի արուեստը։ Այդ օրէն աւդին սահեր է քառորդ դար։ Շահմուրատեանի գործն ու դերը ալ աւելի ուռճանալով մեզի ժառանգ յանձներ է արդէն *Արօր տատրակի*, *Հայրիկ-հայրիկի*, *Խորհուրդ խորին*ի նման չքնաղակերտ երգեր։ Այլեւս չենք յիշատակեր իր հայրենապաշտ շունչն ու երկրէ երկիր պտըտցուցած հայրենակարօտ բոցը։

Եւ այժմ, «Հայաստանի Սոխակ»-ը, - ինչպէս կը սիրէ կոչել ժողովուրդը՝ իր այդ հայրենակերտ բոցը տարածած ամէնուն, իր կեանքի վերջնալոյսին ինկեր է վիրաւոր այն միջավայրին մէջ՝ ուր երկար տարիներ Կոմիտասը բանտուած մնաց...։

Սարքուած հանդէսը պիտի բաղկանայ չորս մասերէ, - 1. Բուն յարգանքի մասը՝ ուր խօսք պիտի առնեն երաժշտագէտներ, գրագէտներ եւ մամուլի ներկայացուցիչներ։ 2. Մեր բոլոր անուանի արուեստագէտներուն եւ օտար երգիչներուն յարգանքի մասնակցութիւնը (երգիչ-երգչուհիներ, դաշնակ, ջութակ)։ 3. Մրահ պիտի փոխադրուի Ա. Շահմուրատեանին ձայնը (սկաւառակ)։ Ձայնասփիւռի օժանդակութեամբ պիտի լուին իր ժողովրդական եւ եկեղեցական երգերը։ Վերջապէս Դ. բաժինով՝ երգչախումբ։

Տոմսերը այժմէն հրապարակ հանուած են։ Վստահ ենք թէ հայ հասարակութիւնը խուռներամ պիտի գայ իր դրական պատասխանը տալու յարգանքի այս ցոյցէն, ի պատիւ վաստակաւոր եւ վիրաւոր երգիչին։

***Յառաջ***, 26 ***Ապրիլ*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4024, ***էջ*** 3

## ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

ՀՐԱՆԴ ԲԱԼՈՒԵԱՆ

Այսօր փարիզեան ամէնէն շքեղ սրահներէն մէկուն մէջ, վայելուչ կերպով կը

տօնուի, ազգային երգիչ Պր. Շահ-Մուրատեանի յոբելեանը։

Յարգանքի այսպիսի մեծարանքներ մեր մէջ առիթներ եղած են, նիւթական համեստ միջոց մը ընձեռելով, յոբելեարները մղելու ա՛լ աւելի ստեղծագործ աշխատանքներու։ Դժբախտաբար ներկայիս կը գտնուինք բոլորովին տարբեր արդիւնքի մը դիմաց։ Այսօր կը տօնենք աշխատանք մը, որ, ափսոս, իր վերջակէտն է առեր, եւ եթէ պիտի գոյանայ պզտիկ գումար մը, այդ ալ պիտի օժանդակէ Շահ-Մուրատեանի հիւանդութեան ծանր ծախքերը թեթեւցնելու, եւ ա՛յքան։

Ուրեմն իր յոբելեանը, կամ այդ առթիւ արտասանուելիք խօսքերը վերջնական եզրակացութիւններ են իր գործին մասին։ Աւելի ճիշդ, Շահ-Մուրատեան այլեւս մեզի տալիք ոչինչ ունի։ Ինչ որ պիտի գնահատենք, ցարդ իրմէ արտաբերուածին համադրումը պիտի ըլլայ։ Եթէ չոր չափանիշով մօտենանք այդ արդիւնքին, նիւթականացած քանակ փնտռենք, կը մնան 10-15 սկաւառակներ՝ (disque) եւ ուրիշ ոչինչ։ Բայց անմիջապէս ըսենք թէ՝ Շահ-Մուրատեանի մեծութիւնը այս ճղճիմ, կոտորակուած մնացորդին մէջ չամփոփուիր, որ շատ հեռաւոր մէկ արձագանգն է իր երբեմնի ահեղագոռ գնացքին։ Անոր գործունէութեան շրջագիծը կ'ընդգրկէ, կը գունաւորէ Կ. Պոլսոյ 1910-էն 14-ի գրական եւ գեղարուեստական նորաստեղծ վարդապետութեան մը ամբողջ նկարագիրը։ Կոմիտաս ինչ որ կերտեց, անոր տարածիլը հանդիսացաւ Շահ-Մուրատեանը։

Շահ-Մուրատեանի կեանքին եւ գործունէութեանը շուրջ կարելի էր յօդուածաշարք մը բանալ։ Ատոր կարելիութիւնները այս պահուս կը պակսին ինծ։ Բայց միւս կողմէ, չեմ կրնար անտեսել կարգ մը էական երեւոյթներ, որոնց լուծումը, պարզացումը կ'երթան կապուիլ մեր այսօրուան յոբելեարին արժանիքներուն։ Առանց մանրամասնութեանց մէջ մտնելու, մեղմ տողերով մատնանշենք կարգ մը արդիւնքներ։

Նախ, ինչպէս ըսինք, Շահ-Մուրատեան դրօշակակիրը, տարածիչը հանդիսացաւ նորաստեղծ գրական եւ մշակութային վարդապետութեան մը։ Մեր ակնարկութիւնը կը վերաբերի 1910-էն 14-ի արուեստագէտ սերունդին եւ իրենց մտորումներուն։ Այդ շարժումին հիմնադիրները եղան Դանիէլ Վարուժան, Կոմիտաս Վարդապետ, Փանոս Թէրլէմէզեան, Սիամանթօ, եւ ինչո՞ւ չէ, նոյնպէս Արմենակ Շահ-Մուրատեան։ Մին իր պերճապաշտ ոճն ու պատկերաւոր խոյանքը բերաւ. մէկ ուրիշը՝ իր վրձինով՝ հայրենի տեսարանները, Կոմիտաս Վարդապետ, հայ ազգային ժողովրդական երաժշտութեան ոճը, հետեւաբար ոգին ու իր ձայնը- չորրորդ մը տարփողեց հայրենի դաշտերուն հրաւէրները։ Խորքին մէջ շարժումը դրական քաղաքականութիւն մըն էր, իրեն ենթահող առնելով հայ բնաշխարհը։ Ուրեմն Շահ-Մուրատեան, երբ մինչեւ հեռաւոր Ամերիկաներն հայրենակարօտ շեշտերով, հայրենապաշտ թախծութեամբ *Անտունի*, *Արօր տատրակ*, *Հայրիկ-հայրիկ*, *Ջիմ Կիլիկիա* կը հնչեցնէր, այդ բնութենապաշտ վարդապետութեան կանչերն էր որ կը ցանէր մարդոց հոգիներէն ներս. այլ

բառով՝ հոգեղէն Հայաստան մը կ'անցնէր գաղթաշխարհի սրտէն ներս:

* * *

Անշուշտ Շահ-Մուրատեանի կոկորդը, բնութեան պարգեւած այս անգնահատելի կազմախօսական շնորհը, իր դերը կը կատարէր այդ առաքելութեան ընթացքին: Շնորհիւ այդ թաւշանուշ, տարածուող, հմայիչ ձայնին, ան կրնար մարդոց հոգիները կախարդել: Հոս գուցէ ճիշդ պիտի նկատուէր ֆրանսացի անուանի գրագէտ փիլիսոփայ Անրի Տըլաքրուայի այն գիտաւոր բացատրութիւնը թէ՝ «Երաժշտութիւնը կ'երաժշտականացնէ մեր զգացումները»: Այո՛, Շահ-Մուրատեան իր երգով կ'երաժշտականացնէր մեր զգացումները, բայց միեւնոյն ատեն անբացատրելի յատկութեամբ մըն ալ *կ'ազգայնացնէր* մեր զգացումները: Հոս արդէն Շահ-Մուրատեան կը կապուի, կը նոյնանայ հայ մշակոյթին դարերու ընթացքին ցուցադրած անբաղդատելի, ուրիշ ոչ մէկ ժողովուրդի մէջ տեսնուած արժանիքին հետ: Այսինքն շնորհիւ մեր մշակոյթին ազգայնական նկարագրին, Հայը մնացած է Հայ: Ի զուր այդ դերը մեր եկեղեցիին կը վերագրուի: Մեր գեղարուեստին ամէն մէկ մանրամասնութիւնները պետական շրջուն խորհրդանիշեր են: Շատ ճիշդ կը նկատէր Սարչովսկին, երբ մեր գմբէթին վերագրելով փիլիսոփայական խորք, անոր համապարփակող կազմախօսութեանը կուտար, տեսակ մը ազգապահպանման կեցուածք: Նոյնը պիտի լսենք Ջուարթնոցի արծուաձեւ խոյակներուն համար, որոնք գոհացնելով զարդարուեստական պահանջքներ, իրենց մէջ կը խտացնէին ազգային գիտակցութեան, խոյանքի, վեհերոտութեան ըմբռնողութիւնը:

Շահ-Մուրատեանի ձայնն ալ, ամէն գեղարուեստական արժանիքներէ առաջ, այդ առաքելութեամբ լեցուած էր: Մտիկ ըրէք մեր ժողովրդական երգերէն *Արօր տատրակ*ը կամ *Անտունի*ն տարբեր տարբեր երգիչներու մօտ: Անշուշտ բոլորն ալ, առաւել կամ նուազ տարբերութիւններով պիտի կրնային «երաժշտականացնել ձեր զգացումները», բայց ոչ ոք Շահ-Մուրատեանին պէս պիտի կրնայ «այզայնացնել» ձեր զգացումները, եթէ կ'ուզէք ըսենք ձեր էութիւնն իսկ:

Շահ-Մուրատեանը տարբեր դիրքէ մըն ալ դիտուած՝ մեր ազգային հպարտանքներէն մէկն էր, որ կը փայլէր Եւրոպայի ամենէն պատուաբեր բեմերէն Փարիզի Օփէրային մէջ: 1910-ին *Ֆաուստ*ի ներկայացման, փարիզեան լուրջ քննադատներ կ'ըսէին. - «Հայազգի թէնօր Պ. Շահ-Մուրատեանը լսեցինք: Անկարելի է երեւակայել աւելի կախարդիչ ձայն մը: Ի՜նչ հազուագիւտ դրոշմ մը ու ի՜նչ հմայք երանգներուն մէջ: (*Քոմէտիա*»): *Լա Փըթիթ Ռէփիւպլիք* կը գրէր. - «Շահ-Մուրատեան շատ լաւ երգել գիտէ. ան ցոյց տուաւ թէ վարպետ երաժիշտ մըն է: Իր գտած ընդունելութիւնը շատ ջերմ եղաւ»: Իսկ *Ռատիքալ* կ'ըսէր. - «Օփերան շատ յաջող ընտրութիւն մը ըրած է յանձին Պ. Շահ-Մուրատեանի»:

Այս արտաքինէն մտնենք իր մտերմիկ կեանքին մէջ: Ձեռքի տակ ունինք բուն իսկ Շահ-Մուրատեանին կողմէ գրի առնուած երկարաշունչ ինքնակեն-

սագրութիւն մը (լրիւ երկու տետր)։ Այդ *Ֆաուստ*ի ներկայացման ժամանակաշրջանին ակնարկելով կը գրէ.-

«Ուսանողական շրջանէս մինչեւ Օփերա մուտքս, շնորհիւ Մանթաշեանին, Էգնայեանին եւ Ներսէս Խան Ներսէսեանին, նիւթական ոչ մէկ նեղութիւն կրեցի։ Լիառատ կուտային նոյնիսկ ամառնային հանգիստի օրերուս դրամը»։

Ուրեմն փառք, նիւթական ճոխութիւն, պատիւ շռայլօրէն կը տրամադրէին իրեն՝ ամէն կողմէ։ Գիտենք թէ այս տեսակ պատեհութիւններով օժտուած արուեստագէտի մը համար դժուար չէր այլեւս փառքէ փառք գլորիլ։ Բայց պատի՛ւ յոբելեարին, լքեց այս փարթամութիւնը, զգաց իրեն վիճակուած դերը ու իջաւ Պոլիս՝ Կոմիտասին մօտը։ Ուրիշ խօսքով, հայկական շունչը, հայկական միջավայրը գերադաս համարեց, փարիզեան խորթ ծափերէն։

* * *

Այլեւս չենք անդրադառնար իր սկաւառակներուն վրայ։ Կա՞յ հայ անհատ մը որ լսած ու փղձկած չըլլայ իր աննման *Անտունի*էն, *Ալագեազ*էն, *Խորհուրդ խորին*էն։ Ասոնց ամէն մէկուն վրայ մանրամասն թափառումներ, մեզի հեռուները պիտի տանէին։ Բայց այսօրուան տօնակատարութեան առթիւ պիտի ուզէինք տարբեր դրուագ մըն ալ յիշատակել՝ եւ ասով փակել մեր յօդուածը։

1913 Նոյեմբեր 3-ի Շաբաթ օրը, Պոլսոյ Փըթի-Շան թատրոնին մէջ Շահ-Մուրատեան կուտար իր անմոռանալի նուագահանդէսը։ Քանի մը օր վերջ, *Ազատամարտ* օրաթերթը, կատարելով հանդէսին տեղեկատուութիւնը կը գրէր.

«... Իսկ յայտագրէն դուրս երգուած *Հայաստան*ը վերջացաւ խանդազեղումի մը մէջ, մինչ Կոմիտաս Վարդապետ թեւանցուկ բեմ գալով Շահ-Մուրատեանի հետ՝ քանի մը զգածուած բառերէ ետք յանուն իր երգչախումբին ոսկիէ նրբակերտ խորհրդանշան մը նուիրեց»։

Նոյն նուագահանդէսին առթիւ *Լա Թիւրք*ի, Հայկական տօն մը» խորագիրով յօդուածի մը մէջ ի միջի այլոց կ'ըսէր. «... Ներկայ էր իշխան Ապտիւլ Մէճիտ Էֆէնտի։ Պիտի չյիշենք ներկայ հայ անուանի դէմքերուն անունները։ Կը բաւականանանք Եւրոպացիներուն յիշելով. – Սպանիական դեսպան Պ. Օրի, Տիկին Պոման վաշա, Կոմսուհի Օսթրօրսկ, Օր. Րամպէն եւն., եւն.»։

Այս մէկ երկու փոքր մանրամասնութիւնները հոս արծարծելով, կ'ուզենք մատնանիշ ընել փարիզահայ հասարակութեան, թէ Շահ-Մուրատեան փառքի ի՛նչ բարձունքներէն իջեր է ներկայիս ֆիզիքական եւ հոգեկան քայքայման։ Երբ գահաժառանգ իշխաններ կը պատուէին զինքը, երբ Կոմիտաս պատիւ կը սեպէր իրեն, թեւանցուկ Շահ-Մուրատեանը առաջնորդել բեմ, այսօր արդար է եւ անհրաժեշտ որ համախումբ ներկայ գտնուինք իր յոբելենական հանդէսին, լիաբուռն տալու համար մեր վերջին ծափերը՝ արդիւնաշատ եւ տաղանդաւոր յոբելեարին։

Միեւնոյն ատեն, կը տեղեկանանք թէ, Շահ-Մուրատեան, շրջապատուած իր

ընտանիքին անդամներովն ու բժիշկով մը, միայն քանի մը րոպէով ներկայ պիտի ըլլայ հանդիսութեան: Ուրեմն, ցոյց տանք թէ միշտ ընդունակ ենք իրական արժէքները գործնապէս գնահատելու:
***Յառաջ***, 7 ***Մայիս*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4034, ***էջ*** 2

## Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՅՈԲԵԼԵԱՆԻՆ ԱՌԹԻՒ

ՄԱՐԳԱՐԻՏ ԲԱԲԱՅԵԱՆ

Այսօր կիրակի, մեր հասարակութեանը առիթ կը տրուի իր արժէքաւոր զաւակներից մէկի – Արմենակ Շահմուրատեանի – յոբելեանը կատարել եւ պէտք է յուսալ որ, աչքի առջեւ ունենալով նրա անցեալը, նշանաւոր ձայնը եւ յիշատակը, իբրեւ երգիչ, մեր հայրենակիցները պիտի ուզեն պատուել արուեստագէտը, որի ձայնը այնքան հիացում պատճառած է ժամանակին:

Մեր երիտասարդ համակրելի սերունդը, որ կը մեծանայ օտար միջավայրում, ինչ սիրուն առիթ պիտի ունենայ ունկնդրելու այդ ձայնը գոնէ disqueերի միջոցաւ եւ լսէ մեր անմահ եկեղեցական եղանակները ու մեղեդիները այդպիսի ճշգրիտ թարգմանութեամբ եւ յիշատակ պահէ Շահմուրատեանի հոյակապ ձայնին:
***Յառաջ***, 7 ***Մայիս*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4034, ***էջ*** 2

## ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ

ՀԱՅԿԱՆՈՒՇ ԹՈՐՈՍԵԱՆ

Այսօր, Կիրակի փարիզահայ գաղութը սարքած է մեծարանքի հանդէս մը ի պատիւ Արմենակ Շահմուրատեանի:

Փարիզը յուզումով ու յարգանքով կը խոնարհի տարաբախտ ճակատագրին առջեւ այս վաստակաւոր արուեստագէտին որ այժմ կայ ու չկայ: Լռած է հայ երգի վարպետը:

Շահմուրատեան կ’աւարտէ Փարիզի պետական Երաժշտանոցի շրջանը ամէնէն պատեհ պահուն: Յայտարարուած էր Օսմանեան սահմանադրութիւնը ու Կոմիտաս Վարդապետ հաստատուած Պոլիս, որ կը դառնար ազգային վերածնունդի ոստանը: Վերազարթումի ու վերագնահատութեան այս խանդավառ մթնոլորտին մէջ կը հասնի Շահմուրատեան իր գեղեցիկ ձայնով ու կենդանի արուեստով:

Աւելի կանուխ՝ անոր պիտի պակսէր հայ ժողովրդական երգը ու հետեւաբար

գործելու միջավայրը, աւելի ուշ՝ խորշակը արմատախիլ ըրած էր հայ գաւառը ու Պոլիսը վերածած սգաւոր խլեակներու համր զանուածի մը։

Հայ ժողովուրդի գրական ու երաժշտական վերածնունդի այդ շրջանին, Շահմուրատեան կը հնչեցնէ հայ ժողովրդական երգը Պոլիսէն գաւառ, գաւառէն արտասահման։

Այդ երգը, կեանքով բաբախուն, թափանցիկ էր ու թեթեւ ինչպէս զուլալ ջուրերը մեր հայրենի բնութեան, տաք էր ու պայծառ ինչպէս արեւը մեր հայրենի երկնքին, հպարտ էր ու ազնուական ինչպէս վեհ սարերը մեր հայրենի աշխարհին։

Շահմուրատեանի շնորհիւ կը զգայինք գեղեցկութիւնը մեր ժողովրդական երգերուն որոնց մէջ երկու աշխարհներ, Արեւելքն ու Արեւմուտքը, իրար կ'ողջագուրեն կենդանի կշռոյթով մը, ներդաշնակ քաղցրութեամբ մը։

Շահմուրատեան եւս իր մէջ կը մարմնացնէր այդ ներդաշնակ համերաշխութիւնը երկու բնութիւններու, երկու կրթութիւններու։

Բնիկ Մշեցի, ան իր հոգիին ու իր ձայնին մէջ ունէր հայրենի գեղեցկութիւններու անդրադարձումը։ Փարիզ, երաժշտութեան այս ոստանին մեծագոյն հաստատութեան մէջ, ան կը ստանար դասական կրթութիւնը որ պիտի սանձէր ու կաղապարէր բնութեան շնորհները ու պիտի կազմէր *արուեստագէտ*ը։

Ու իր երգին ուժով, Շահմուրատեան կը դարբնէ նոր հոգի մը հայութեան, հոգի մը գիտակից իր սեփական արժէքներուն։

Աւա՜ղ, լռած է այսօր վաստակաւոր երգիչը ու կծկուած իր հոգիին աղջամուղջին մէջ, բայց կը մնայ անոր տուրքը հայ արուեստի տաճարին։ Ու այդ պիտի արձանագրէ պատմութիւնը։

Իսկ մինչ հին ու նոր աշխարհներու վրայ կը կուտակուին ռազմաշունչ ամպեր, հայ ժողովուրդը, միշտ կենսունակ, ջերմեռանդ հաւատքով կը բերէ իր խունկն ու կնդրուկը հայ արուեստի տաճարին, որուն հաւատարմօրէն ծառայեց Շահմուրատեան։

Յարգանք իր վաստակին։

***Յառաջ***, 7 ***Մայիս*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4034, ***էջ*** 3

## Ի ՊԱՏԻՒ ՏԱՐՕՆԻ ՍՈԽԱԿԻՆ

ԱՐԱՄ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Երեսնամեայ բազմաբեղուն գործունէութիւն մը հազիւ կրցած էր լեցնել Կավոյի մեծ սրահը, ի յարգանս ազգ. երգիչ Ա. Շահ-Մուրատեանի, որ այնքան յարատեւօրէն պայծառացուցած էր հայ հոգին իր տաղանդին ցոլքերով։ Նորէն

ժողովուրդն էր որ լեցուցած էր վերնայարկերը, իսկ օթեակնե՞րը...

Եղերաբախտ երգիչը չկայ հոն: Վերջին պահուն ուզած էին խնայել իր դիւրազգածութիւնը: Բայց ներկայ էր, ինքը, մեծ վարդապետին կենդանի ոգին, այդ երգի տաճարին կամարներուն տակ: Մենք զգացինք, լսեցինք զինքը, նոյնիսկ տեսանք մեր հոգիի աչքերով: *Մայր Արաքս*ին, արձագանգը հնաւուրց անցեալի մը դառն եւ անուշ յիշատակներուն, ոգեղէն կամուրջը դարձաւ այդ սրտերու հաղորդակցութեան:

Յարգանքի առաջին տուրքը վիճակած էր Մխիթարեան Վարժարանի ուսումնապետին՝ Հայր Ս. Տէր Մովսէսեանի, որ հաճելի ոճով մը կենսագրականն ըրաւ մեծ երգիչին, վեր հանեց մեր արուեստագէտներուն կատարած բարերար դերը, ինչպէս եւ մեկենասներունը, իբրեւ գիտակից ոգի, հայ տաղանդաւոր զաւակներու արուեստի զարգացման մէջ:

*Զուարթնոց*ի խմբագիրը, Պ. Հրանդ Բալուեան ոգեկոչեց այն երանելի շրջանը, երբ հայ գրագէտը, նկարիչն ու արուեստագէտը հիմը կը դնէին նորաստեղծ վարդապետութեան մը: Ա. Շահ-Մուրատեան մէկ դրօշակիրը կը հանդիսանար այդ շարժման, երբ իբրեւ ենթահող առնելով հայրենի բնաշխարհը, հոգեղէն Հայաստան մը կը կառուցանէր տարագիր բազմութեանց սրտին մէջ:

Օր Մ. Բաբազեան, առաջնորդն եւ խրախուսիչը Շահ-Մուրատեանի սկզբնական քայլերուն, յուշեր պատմեց անոր ուսանողական շրջանէն, ապա կարդաց *Կոլուա*ի, *Քոմէտիա*ի եւ *Փըթի-Փարիզիէն*ի գեղարուեստական աշխատակիցներուն գնահատականները, որոնք շատ պատուաբեր էին մեր հայրենակիցին: Քննադատներէն մին նոյնիսկ «Ոսկեայ ձայն» մը կ՚որակէր Շահ-Մուրատեանի ձայնը:

Պ. Ա. Չօպանեան պատմեց իր առաջին հանդիպումը երգիչին հետ, մեծ գովեստով խօսեցաւ Շահ-Մուրատեանի կամքին եւ կորովին վրայ, զոր նկատեց իբրեւ գլխաւոր ազդակը իր յաջողութեան: Յետոյ նկարագրեց իր մուտքը Օփերայի մէջ, երկարատեւ, հեւասպառ նախապատրաստութիւններէ ետք: Մեծանուն երգիչը նախ քան բեմ բարձրանալը ոգեկոչած է Տարօնի հինաւուրց պաշտպանը՝ Սուրբ Կարապետը, բնաշխարհի հարազատ բարբառով: Եւ այնքան հանդարտ եւ պաղարիւն եղած է խաղի ընթացքին, որ ճանչցած է իր բոլոր բարեկամները:

Շ. Միսաքեան իր սովորական կուռ եւ պատկերալից ոճով ներկայացուց երգին նախախնամական դերը, բայց մանաւանդ իր մոգական ազդեցութիւնը դիւցազն հոգիներու դարբնումին մէջ: Այս առթիւ տուաւ հրահանգիչ օրինակներ: Շահ-Մուրատեանը նկատեց իբր գերազանցապէս հայրենի հողին եւ աւանդութիւններուն կապուած արուեստագէտ մը: Առաջարկեց ստեղծել մասնաւոր կազմակերպութիւն մը, տարածելու համար հայկական երգը տարագիր բազմութեանց մէջ, իբրեւ աղբիւր կենդանութեան: Եւ իր խօսքն աւարտեց ոչ թէ «երգելով մեռնելու», այլ «երգելով ապրելու» վճռական թելադրութեամբ:

Վերջին խօսողն եղաւ Պ. Հ. Զարդարեան, որ մանաւորապէս կանգ առաւ երգիչին ներկայ կեանքին վրայ։ Յիշեց թէ այս խեղակորոյս վիճակին մէջ իսկ, դժբախտ արուեստագէտը գիշեր-ցերեկ կ՚երգէ, այն ալ միայն հայերէն, մոռցած ամէն օտար երգ եւ բարբառ։ Յանձին Շահ-Մուրատեանի պանծացուց իսկական հայ երգիչը, որ բնականաբար կրնար դափնիներ խլել եւրոպական բեմերու վրայ, բայց ինք նախընտրեց իր ազգակիցներուն միայն ծառայել, ամէն տեսակ զրկանքներու գնով։

Հատընտիր երաժիշտներու հոյլ մը, աւելի եւս բարձրացուց այս բոլոր պերճախօս արտայայտութիւններուն հմայքը, յօժարակամ մասնակցութեամբ։

Օր. Գ. Ղազարոսեան, իբրեւ հեղինակ-դաշնակահարուհի մը, յատկանշական ճկունութեամբ մը նուագեց Կոմիտաս վրդ.ի *Շուշիկ*ին եւ *Տէր ողորմեա*յին մէկ փոփոխակը, զոր ինքն իսկ դաշնաւորած էր այնքան ճարտարօրէն։

Իրեն յաջորդեց Օր. Ա. Ալպան, որ ընկերակցութեամբ տաւիղի, զգայուն շեշտերով երգեց *Ծիրանի ծառ*ը եւ *Երկինք ամպել ա*ն։ Նորահաս երգչուհին անցեալ տարուան վրայ մեծ յառաջդիմութիւն մը կ՚արձանագրէ։

Մեր արժէքաւոր ուժերէն Պ. Նուրիան Մարգարեան, Անկիէնի ֆրանս. Տրամաթիք Թատերախումբէն, դասական տպաւորիչ շունչով մը արտասանեց Պ. Միրիճանեանի *Հնչեակ առ Ա. Շահ-Մուրատեան*ը եւ Ա. Չօպանեանի *Աստղերը* (ֆրանսերէն)։

Համակրելի ջութակահար Պ. Ֆ. Աղազարեան, դեռ նոր վերադարձած Եգիպտոսի եւ Մարսէյլի իր յաղթական պտոյտէն, իր դիւթական ճպոտին սարսուռը պտտցուց մեր հոգիներուն մէջ, հետզհետէ նուագելով *Andante de la Symphonie espagnole* (Լալօ), *Bondella aragonesa* (Կրանատոս), *Berceuse* (ինքնագիր) եւ *Hopak* (Մուսորկսքի)։

Օր. Ի. Պիւլպիւլեան խոր զգայնութեամբ երգեց Կոմիտաս վրդ.ի *Անտունի*ն, Ալէմշահի *Իմ երգը*, իսկ կրկնահրաւէրներու վրայ *Քէլէ քէլէ*ն, ընկերակցութեամբ Օր. Ազէթօնի։

Դաշնակահար Պ. Ժ. Նազարեան Տեպիւսիի *Նախերգանք*ին, Շոփէնի *Յայգային*ին եւ *Սքերցօ*ին մէջ, անգամ մը եւս արտայայտեց իր կուռ արուեստին այլազան երանգները։

Եւ ահա, յանպատրաստից բեմ կը բարձրանայ Տիկին Ա. Գեւոնեան, Տարօնի աղջկան գողտր եւ պարզունակ շունչով երգելու համար ժողովրդական սիրերգ մը, *Եարիմօ եարիմօ*ն, յետոյ *Արօր տատրակ*ը։

Բոլոր արուեստագէտներն ալ ծափահարուեցան ջերմապէս։

Դարձեալ Շահ-Մուրատեանի ձայնն է որ կ՚արձագանգէ սրահին մէջ։ Հետզհետէ կ՚ունկնդրենք *Ալագեազը*, *Կիլիկիա*ն, *Անտունի*ն, *Քրիստոս պատարագեալ*ն ու *Հայաստան*ը։ Բարձրախօսը եղծանած էր իր երգը, թերեւս սկաւառակներու հնութեան պատճառով, բայց հակառակ այս բոլորին, երգիչին ձայնին

մէջ կ’արտացոլար երբեմնի քաղցրութիւնը։

Սիփան-Կոմիտաս երգչախումբը՝ հուսկ բանքը կատարեց հանդէսին երգելով *Լուսնակ գիշերը*, *Ա՜յ վարդ*ն ու *Տալիլօ*ն։

Այս յամեցած մեծարանքի հարկը, թէեւ խիստ տպաւորիչ վաստակաւոր երգիչի մը գործը գնահատելու տեսակէտէն, դժբախտաբար տժգոյն էր իր նիւթական արդիւնքով։ Հայ արուեստագէտին վերապահուած եղերակա՜ն ճակատագիր։

***Յառաջ***, 13 ***Մայիս*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4039, ***էջ*** 3

# ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏԻՆ ՏՕՆԸ

*Ապազայ*ի 13 Մայիսի թիւին մէջ կը կարդանք. –

Անցեալ կիրակի (7 Մայիս) բարիզահայութիւնը տօնեց Արմենակ Շահմուրատեանի յոբելեանը։ Հանդէսը տեղի ունեցաւ Սալ Կավոյի մէջ, ուր փութացած էր ամէն խաւերէ գոհացուցիչ բազմութիւն մը։

Ծանօթ է այս տաղանդաւոր արուեստագէտին վերապահուած դժբախտ ճակատագիրը։ Այսօր Ա. Շահմուրատեան փակուած է արուարձանի մը անկիւնը, իր ընտանիքին եւ բարեկամներուն անձնուէր խնամքներուն առարկայ, բայց զուրկ նիւթական բաւարար միջոցներէ։

Տիկին Շահմուրատեանի դիմումին ընդառաջ երթալով բարիզահայ մամուլը եւ մշակութային միութիւններ մէկ քանի խորհրդակցութենէ վերջ որոշեցին կազմակերպել կիրակի օրուան յարգանքի ցոյցը, որ կարելի է ըսել թէ իր գտած ընդունելութեամբ պիտի կարենայ մասամբ իր նպատակին ծառայել։ Հանդէսին յայտագիրը կազմուած էր երկու մասերէ, ուղերձներ եւ գեղարուեստական բաժին։ Բանախօսութիւններէ ետք տեղի ունեցաւ գեղարուեստական բաժինը որուն կը մասնակցէին բարիզահայ սիրուած եւ տաղանդաւոր արուեստագէտներ։ Յիշենք անոնցմէ Օրք. Գոհարիկ Ղազարոսեան (դաշնակ), Իրիս Պիւլպիւլեան (երգ), ՊՊ. Ֆիլիբ Աղազարեան (ջութակ), Ժուան Նազարեան (դաշնակ) եւ Ն. Մարգարեան (արտասանութիւն), ինչպէս նաեւ Տիկին Գեւոնեան՝ որ իր փափաքով երգեց Տարօնի ժողովրդական երգերը։

Ունկնդրուեցան Շահմուրատեանի սկաւառակները եւ համերգը փակուեցաւ Սիփան Կոմիտաս երգչախումբի մէկ քանի երգերով ղեկավարութեամբ Պ. Ա. Պարթեւեանի։

***Արեւ***, 26 ***Մայիս*** 1939, ***ԻԳ. տարի***, ***Թիւ*** 6205, ***էջ*** 1, 4

# ՏԱՐՕՆԻ ՍՈԽԱԿԸ

Ս. ՇԱԼՃԵԱՆ

Լռած է Տարօնի Սոխակը եւ ի՜նչ տխուր, ի՜նչ տաժանելի պայմաններու մէջ...: Մշոյ Ս. Կարապետէն՝ Վան եւ Ս. Էջմիածին, ու հոնկէ՝ եւրոպական ոստաններու մէջ կատարելագործուելու դրկուած Հայաստանեայց եկեղեցւոյ այս դպիրը, շուտով դարձաւ համաշխարհային չափանիշով հռչակաւոր երգիչ մը, ճանչնալէ վերջ արուեստագէտի մը վերապահուած ծանր դժուարութիւնները: Շահ-Մուրատեանի հայրենասէր ու հայրենաբաղձ հոգին, սակայն, օտարութեան մէջ եւ յաջողութեան օրերուն, չմոլորեցաւ: Ան իր *հայ արուեստագէտի գիտակցութեամբը* նախընտրեց մեծ վարդապետին՝ Կոմիտասի գործակիցն ըլլալ, հայրենի աշխարհին հեռաւոր անկիւններէն, մոռցուած գիւղերու խորերէն լոյս աշխարհ բերուած հարազա՜տ, ժողովրդական *մեր* երգերուն երգիչը դառնալ, եւ իր տաղանդին ուժովն ու ձայնին գրաւչութեամբը զանոնք տարածել եւ ընդհանրացնել...: Տարածե՜ց եւ ընդհանրացուց, այո՜, առանց սակայն նիւթական յաջողութեանց տիրանալու, համբաւաւոր արուեստագէտներու նման ճոխ եւ փարթամ ապրելակերպ մը ունենալու: Հայ արուեստին անսահման սէրը եւ հայ արուեստագէտին համեստ, աղքատիկ կենցաղը՝ կարծես աւելի ուժգին, աւելի ամուր կերպով զօդեցին զինքը հայ կեանքին հետ, որուն կապուած մնաց մինչեւ ցարդ, ճաշակելով շատ մը յուսախաբութիւններ, զրկանքներ եւ դառնութիւններ...: Ու այսօր, լման երեսուն տարիներ հայ երգին մոգական հրապոյրը աշխարհէ աշխարհ պտտցնելէ եւ սառած հոգիները հայրենի շունչով ոգեւորելէ վերջ, երբ այլեւս կ'իյնայ իր պարտականութեան ճամբուն վրայ, ոչի՜նչ ունի իր տարիներու վտիտ վաստակէն՝ իրեն եւ իր սեւ օրերուն բաղդակից կնոջն ու զաւկին համար...: Աղքատութեան մէջ կը խաւարի իր արեւը, որ երբեմն այնքա՜ն լուսափաղփ կը ճառագայթէր հայ հորիզոններու վերեւ...:

Ահա՜ թէ ինչո՞ւ Բարիզի հայ մտաւորականները, յուզուած եղերաբախտ արուեստագէտին դժնդակ վիճակէն, յարգանքի ցոյց մը կազմակերպած են, որուն հասոյթը սակայն հեռու եղած է գոհացուցիչ ըլլալէ...:

Ու մտածել թէ հայ արուեստի այս հմայիչ քուրմը դատապարտուած է վաղը նոյն տխուր եւ ողբերգական կեանքը ապրելու...:

Պէտք է կրկնել եւ ամէն կողմէ օժանդակութիւն պահանջել այն բացարձակ վստահութեամբ՝ թէ Հայ *ժողովուրդը* չուրանար իր մեծ եւ անշահախնդիր վաստակաւորները, որոնցմէ մէկն է Արմենակ Շահ-Մուրատեան՝ որուն երգահանդէսները այնքան ոգեւորութեամբ ունկնդրած ենք նաեւ հոս՝ Գահիրէի մէջ: Այս պատճառաւ ալ, կը յուսամ թէ մենք եգիպտահայերս պիտի չզլանանք մեր լուման, որ արուեսստագէտին խիստ անցուկ կացութեան դարման մը պիտի ըլլայ:

Հետեւաբար անհրաժեշտ է որ եգիպտահայ մտաւորականները հետեւին Բարիզի գեղեցիկ օրինակին եւ քով-քովի գալով մէջտեղ բերեն հասութաբեր ձեռնարկ մը եղերաբախտ արուեստագէտին ի նպաստ: Ապահովաբար, մեր *Գեղարուեստասիրացը*, որուն ծրագրին մաս կը կազմէ *հայ արուեստ*ին եւ *հայ արուեստագէտ*ին օգնութիւն ընծայելու պարտականութիւնը, իր լայն օժանդակութիւնը պիտի բերէ այսպիսի գործի մը յաջողութիւնը նպաստաւորելու համար: Դանդաղիլը ներելի չէ՛. պէտք է շարժիլ եւ շո՛ւտ շարժիլ՝ փրկելու համար թանկագին կեանք մը, որ այնքան սիրով եւ գորովով աշխարհի բոլոր անկիւնները հայ երգը երգեց եւ մեր պաշտելի *Հայաստան*ը ոգեկոչեց:
***Արեւ***, 31 ***Մայիս*** 1939, ***ԻԳ. տարի***, ***Թիւ*** 6209, ***էջ*** 2-3

**ՄԱՅԻՍ 1939, ՓԱՐԻԶ**

Հանդէսէն եւ նուիրատուութիւններէն զուտ շահ գոյացած գումարը՝ 2600 ֆրանք, կը յանձնուի Շ-Մ.ի տիկնոջ:

- «***Շահմուրատեանի Համար***», ***Յառաջ***, 17 ***Մայիս*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4042, ***էջ*** 1:
- «***Շահմուրատեանի Համար***», ***Յառաջ***, 30 ***Մայիս*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4053, ***էջ*** 4:

## ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՀԱՄԱՐ

Մարսէյլէն՝ Եղիշէ քհնյ. Մխիթարեանի եւ Խաչիկ Յովհաննէսեանի միջոցաւ հաւաքուած 200

| | |
|---|---|
| Բ. Չիլճեան ընտանիք, Մարսէյլ | 50 |
| Գումար | 250 |
| Մայիս 3 գումարը | 1116 |
| Ընդհ. գումար | 1366 |

***Յառաջ***, 17 ***Մայիս*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4042, ***էջ*** 1

## ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՀԱՄԱՐ

Ա. Շահմուրատեանի յոբ. հանդիսի կարգադիր յանձնախումբը մեզի կը տեղեկացնէ թէ, Մայիս 7-ի հանդէսէն եւ նուիրատուութիւններէ զուտ շահ գոյացած է երկու հազար վեց հարիւր (2600) ֆրանք, եւ այս գումարը յանձնուած է Տիկ. Շահմուրատեանին՝ մեր ազգային երգիչին ընթացիկ ծախքերուն մէկ մասը հոգալու համար:
***Յառաջ***, 30 ***Մայիս*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4053, ***էջ*** 4

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 14 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1939, ԱՐՔԷՕՅ**

Արքէօյ թաղամասի իր բնակարանին մէջ՝ 42, Ave. Raspail, Arcueil, առաւօտեան կը մահանայ Շ-Մ.։

- «*Արմ. Շահմուրատեան յանկարծամահ*», *Յառաջ*, 16 *Սեպտեմբեր* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4145, *էջ* 1։

## ԱՐՄ. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ ՅԱՆԿԱՐԾԱՄԱՀ

Ճիշդ այն պահուն երբ Եւրոպան արիւնռուշտ փոթորիկի մը բռնուած է, Արմենակ Շահ-Մուրատեան կը հանգչի խաղաղութեամբ։

Տակաւին երկու օր առաջ, իր տիկինը (Ֆրանսուհի) մեր խմբագրին ուղղած նամակով մը իր ջերմագին շնորհակալութիւնը կը յայտնէր բոլոր անոնց որ եղբայրական աջակցութիւն ընծայեցին *Յառաջ*ի միջոցաւ։ Այս առթիւ, պարզելով տարաբախտ երգիչին առողջական վիճակը, կը խորհէր գաւառ փոխադրել կամ հիւանդանոց մը տեղաւորել զայն։ Եւ ահա Շահմուրատեան մեռեր է հինգշաբթի առտու...

Իր կեանքն ու գո՞րծը։ Դեռ վեց ամիս չըներ որ տօնեցինք իր յոբելեանը, Փարիզի մէջ (7 Մայիս)։ Այս առթիւ ներկայացուցինք իր ինքնակենսագրութիւնը, մինչեւ 1912, ինչպէս եւ վերլուծումներ իր գեղարուեստական գործունէութեան մասին։

«Բնիկ Մշեցի եմ, Շահ-Մուրատենց Դարբին Սրգոյի տղան», կը գրէր իր պարզուկ լեզուով։ Ծննդեան թուականը չէր յիշած, բայց 65-ը անց էր։ Մուշէն Էջմիածին, Գէորգեան Ճեմարանը, յետոյ Թիֆլիսի Ներսէսեան վարժարան, ապա Եւրոպա, Օփերա, եւ պտոյտներ հայկական գաղութներու մէջ, մինչեւ Ամերիկա եւ Հնդկաստան...

Ահա իր կեանքը, քանի մը աղօտ գիծերով։ Օրուան կացութիւնը թոյլ չի տար աւելի խորանալ։

Հանգիստ իր տառապակոծ ոսկորներուն եւ մեր խորին վշտակցութիւնը՝ իր անձնուէր տիկնոջ եւ պարագաներուն։

* * * Ողբացեալ արուեստագէտին յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այսօր, շաբաթ, ժամը 3.45-ին, իր բնակարանին մէջ, 42, Ave. Raspail, Arcueil: Հաւաքուիլ ժամը 3.30-ին։

*Յառաջ*, 16 *Սեպտեմբեր* 1939, ***ԺԵ. տարի***, *Թիւ* 4145, *էջ* 1

**ՇԱԲԱԹ, 16 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1939, ԱՐՔԷՕՅ**

Թաղումի արարողութիւնը տեղի կ'ունենայ Շ-Մ.ի բնակարանին մէջ, որմէ ետք դագաղը կը փոխադրուի Արքէօյի մօտակայ գերեզմանատունը։ Նկատի

ունենալով պատերազմական վիճակը, արարողութիւնն ու յուղարկաւորութիւնը կը կատարուին անշուք։

- *Արամ Պետրոսեան*, «*Տարօնի սոխակին յուղարկաւորութիւնը*», *Յառաջ*, 21 *Սեպտեմբեր* 1939, *ԺԵ. տարի*, *թիւ* 4149, *էջ* 2։

- «*Արմենակ Շահ-Մուրատեան*», *Հայրենիք*, 6 *Հոկտեմբեր* 1939, 41-*րդ տարի*, *թիւ* 8331, *էջ* 1։

- «*Մահ երգիչ Շահ-Մուրատեանի*», *Հայաստանի կոչնակ*, 21 *Հոկտեմբեր* 1939, *ԼԹ. տարի*, *թիւ* 42, *էջ* 1153։

**Մահուան առիթով գրուած յօդուածներ.**

- *Ս. Մ. Ծոցիկեան*, «*Արմենակ Շահ-Մուրատեան*», *Հայաստանեայց եկեղեցի*, 1 *Նոյեմբեր* 1939, *Ա. տարի*, *թիւ* 3-4, *էջ* 22-24։

- *Արշակ Չօպանեան*, «*Քրոնիկ*», *Անահիտ*, *Հոկտեմբեր-Նոյեմբեր-Դեկտեմբեր* 1939, *նոր շրջան*, *Ժ. տարի*, *թիւ* 6, *էջ* 24-29։

- *Հ. Աւետիք Ծովեան*, «*Արմենակ Շահմուրատեան* (*Տարօնի Սոխակը*)», *Բազմավէպ*, *Նոյեմբեր-Դեկտեմբեր* 1939, *թիւ* 11-12, *էջ* 317։

- *Տոքթ. Պ. Մ.*, «*Անդարձ մեկնողներ. Արմենակ Շահ-Մուրատեան*», *Ընդարձակ տարեցոյց հիւանդանոցի*, 1940, *նոր շրջան*, *ԺԶ. տարի*, *էջ* 363-366։

- *Մանկունի*, «*Արմենակ Շահ-Մուրատեան* (*Տարօնոյ Սոխակ*) (1878-1939)», *Սարկաւագ*, *Եգիպտահայ տարեցոյց*, 1940, 28-*րդ տարի*, *էջ* 111-112։

- *Դոկտ. Գ. Ամատեան*, «*Երգիչ Շահ-Մուրատեան. մահուան առիթով* (*յիշողութիւններ*)», *Արեւ*, 2 *Յունուար* 1940, *ԻԵ. տարի*, *թիւ* 6390, *էջ* 2։

## ՏԱՐՕՆԻ ՍՈԽԱԿԻՆ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

ԱՐԱՄ ՊԵՏՐՈՍԵԱՆ

... Շաբաթ օր, ժամը չորսին մօտ, երբ կը հասնինք իր խոնարհ բնակարանին առջեւ, հոն հաւաքուած կը գտնենք հազիւ 15-20 հոգի, մեծ մասով ընտանեկան պարագաներ, հայրենակիցներ եւ ցանցառ մտաւորականներ։ Անշուշտ անմահ երգիչը արժանի էր համազգային մեծարանքի մը, բայց դժբախտաբար իր մահը զուգադիպեցաւ փոթորկալի շրջանի մը։

Տարօնի Սոխակը կը հանգչէր իր համեստ մահճակալին առընթեր, թմբիէ դեղնաւուն դագաղի մը մէջ, բեռնաւոր թարմ եւ բուրումնաւէտ ծաղիկներով։ Հոն՝ այդ անշուք ննջարանին մէջ, - որ իբր զարդ ունէր միայն... ռատիօ մը - ահա սահած էին եղերաբախտ երգիչին վերջին օրերը։ Ծաղկեպսակներ ունէին իր աղջիկը, Տարօն-Տուրուբերանի Հայր. Միութիւնը, Նիսի Գործակցականը եւ ընտանեկան պարագաներ։

Կարճ, այլ պատշաճ արարողութիւն մը տեղի ունեցաւ, որմէ վերջ դագաղը զետեղուեցաւ համեստ կառքի մը մէջ: Յամր եւ երկիւղած քայլերով, յուղարկաւորներու փոքրիկ թափորը ուղղուեցաւ մօտակայ գերեզմանատունը, մինչ քահանան եւ իր օգնականները կը մրմնջէին մեռելական յետին տաղերը: Ոչ ճառ, ոչ ալ յարգանքի հանդիսաւոր ցոյցեր: Կատարեալ «դարիպի թաղում» մը:

Արքէոյի գերեզմանատան նոր մասնաբաժնին բարձունքը, ահա հիմա խաղաղօրէն կը հանգչի մեծ Վարդապետին գործակիցը, միշտ կարօտ Նայիրի աշխարհին զոր այնքան խանդավառօրէն երգած էր իր երկրաւոր գոյութեան ընթացքին:

* * * Ա. Շահմուրատեանի յիշատակին հոգեհանգիստ պիտի կատարուի այս կիրակի, պատարագէն վերջ, իր կնոջ եւ աղջկան խնդրանքով:

***Յառաջ***, 21 ***Սեպտեմբեր*** 1939, ***ԺԵ. տարի***, ***Թիւ*** 4149, ***էջ*** 2

## ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Սեպտեմբեր 14-ին, առաւօտեան ժամը 9-ին, Փարիզի արուարձան Արքէոյի մէջ, 61 տարեկան հասակին, իր վերջին շունչը փչած է Արմենակ Շահ-Մուրատեանը եւ սեպտ. 16-ին հոգին յանձնուած է նոյն արուարձանի գերեզմանատանը:

Պատերազմի պատճառով թաղումը կատարուած է անշուք: Միայն մէկ քահանայ ներկայ գտնուած է եւ իր մօտիկ բարեկամները, համակիրներն ու հայրենակիցները:

Հանգուցեալի կնոջ նամակներէն՝ գրուած ընկ. Յ. Պարոյրեանին, կը քաղենք հետեւեալ տեղեկութիւնները մեր անզուգական երգիչի վերջին օրերու, մահուան եւ յուղարկաւորութեան մասին:

Շահ-Մուրատեանը ժամանակէ մը ի վեր կը տառապէր մտային հիւանդութենէ, բայց իր կեանքի վերջին վայրկեանները ցաւագին չեն եղած: Ան մեռած է հարազատներու շրջապատին մէջ եւ գիտակցութիւնը տեղը:

«Մահուընէ երկու օր առաջ, - կը գրէ Տիկին Շահ-Մուրատեան, - Արմենակը կ'երգէր անկողնին մէջ ձայնով մը, որ դժուարութեամբ դուրս կուգար կոկորդէն. կը բարձրացնէր գլուխը, կը դիտէր շուրջը եւ կը հանգստանար՝ տեսնելով մեզ: Իմ մեծ վշտի մէջ ես երջանիկ եմ, որ կարողացայ գոհունակութիւն պատճառել հանգուցեալին իր կեանքի վերջին վայրկեաններուն եւ երբեք չեմ մոռնար, որ ատիկա կարելի եղաւ միայն շնորհիւ ձեր, իր բարեկամներու եւ իրմով հիացողներու աջակցութեան»:

Մահը եկած է առանց տանջանք պատճառելու: Շահ-Մուրատեանը մեռած է հանդարտ, առանց ցաւի:

Մահուընէ առաջ հրաւիրուած է հայ քահանայ մը, որ կատարած է նաեւ թաղման արարողութիւնը, հանգուցեալի բնակարանին մէջ: Փարիզի եկեղեցին

կարելի չէ եղած տանիլ, որովհետեւ արուարձանէն եկեղեցի տանելու համար պահանջուած է 5,000 ֆր., ինչ որ հնարաւոր չէ եղած հոգալ։

Տիկին Շահ-Մուրատեան ջանք չէ խնայած պատշաճ շուքով կատարելու յուղարկաւորութիւնը եւ այդ կարելի դարձած է բացառապէս Ամերիկայի տարօնցի հայրենակիցներու նիւթական հոգածութեամբ։ Եւ արդէն իր կեանքի վերջին օրերն ալ Շահ-Մուրատեան ապրած է գլխաւորապէս Ամերիկայէն ստացած օժանդակութեամբ։

Տիկինը կը հաղորդէ, որ Շահ-Մուրատեանի գերեզմանի վրայ պիտի դրուի տապանաքար մը եւ ատոր համար պէտք ունի հայրենակիցներու նիւթական աջակցութեան։

Շահ-Մուրատեանի գերեզմանը կը գտնուի Արքէոյի բարձունքին վրայ եւ կ'իշխէ շրջապատին, ինչպէս կ'իշխէր իր ձայնը բազմահազար ունկնդիրներու զգացումներուն վրայ։

***Հայրենիք***, 6 ***Հոկտեմբեր*** 1939, 41-***րդ տարի***, ***Թիւ*** 8331, ***էջ*** 1

## ՄԱՀ ԵՐԳԻՉ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ

Փարիզի *Ապագայ* թերթի Սեպտ. 16-ի թիւէն ցաւով կ'իմանանք թէ Սեպտ. 14-ի առաւօտուն քաջածանօթ երգիչ Արմենակ Շահ-Մուրատեան կնքած է մահկանացուն։ Շահ-Մուրատեանի մահով ազգը կը կորսնցնէ հայ երգի ամենէն հարազատ թարգմանիչը։ Հայ հասարակութիւնը, ամէն ուրեք, երախտագիտութեամբ պիտի յիշէ այն մեծ ծառայութիւնը՝ զոր մատուց Շահ-Մուրատեան, պտտելով գիւղէ գիւղ, քաղաքէ քաղաք, երկրէ երկիր, եւ ընդհանրացնելով հայ երգը՝ ընտանեկան սեմերէ ներս եւ հանդէսներու բեմերուն վրայ։ Յարգա՛նք իր փայփայելի յիշատակին։

Հանգուցեալի տիկնոջ կողմէ՝ Շահ-Մուրատեանի հայրենակից ծանօթ գորգավաճառ Պրն. Յ. Պարոյրեանի գրուած նամակէ մը կ'իմանանք թէ մեր մեծանուն երգչին մահը տեղի ունեցած է Փարիզի արուարձաններէն Արքէոյի մէջ, թաղումը կատարուած է Սեպտ. 16-ին, եւ մարմինը հողին յանձնուած է նոյն արուարձանի գերեզմանատունը։ Շահ-Մուրատեան՝ որ ժամանակէ մը ի վեր կը տառապէր մտային հիւանդութենէ, ունեցեր է խաղաղ մահ մը, գիտակցութիւնը տեղը, եւ շրջապատուած հարազատներէն։

Տիկին Շահ-Մուրատեան՝ երախտագիտութեամբ կը յիշէ այն աջակցութիւնը՝ զոր ինքը Պր. Պարոյրեան, ինչպէս նաեւ Տարօնցի հայրենակիցներ, բարեկամներ եւ հիացողներ ընծայեցին երգչին, աննշմարելի դարձնելով անոր նիւթական անձուկ կացութիւնը։ Տիկին Շահ-Մուրատեան միանգամայն կը տեղեկագրէ թէ Շահ-Մուրատեանի գերեզմանին վրայ պիտի դրուի տապա-

նաքար մը։ Եւ ատոր համար ալ կ'զգացուի պէտքը հայրենակիցներու նիւթական աջակցութեան։
*Հայաստանի կոչնակ*, 21 *Հոկտեմբեր* 1939, *ԼԹ. տարի*, *Թիւ* 42, *էջ* 1153

### ԿԻՐԱԿԻ, 5 ՆՈՅԵՄԲԵՐ 1939, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Heckscher Theatre-ին մէջ՝ դերասան Ս. Սուրաբեանի բեմական գործունէութեան 25-ամեակի յոբելինական ներկայացում։

Յոբելեարը ի յարգանս Շ-Մ.ի կը յայտարարէ մէկ վայրկեան յոտնկայս լռութիւն։

- *Թատերասէր*, «*Յոբելինական ներկայացում*», *Հայաստանի կոչնակ*, 18 *Նոյեմբեր* 1939, *ԼԹ. տարի*, *Թիւ* 46, *էջ* 1251։

### ԿԻՐԱԿԻ, 21 ՅՈՒՆՈՒԱՐ 1940, ՆԻՒ ԵՈՐՔ

Նիւ Եորքի Washington Irving High School-ին մէջ՝ սգատօն նուիրուած Շ-Մ.ի յիշատակին։ Կը մասնակցին՝ Յովհան Կարապետեան, Ա. Ալիխանեան եւ Յովհաննէս Աւագեան (ուղերձներ), Էմիլ Սիմոն (թաւջութակ) եւ տիկ. Մառի Արագեան (մեներգ)։

- «*Ամէն ոք կը հրաւիրուի Շահ-Մուրատեանի սգատօնին*», *Հայաստանի կոչնակ*, 20 *Յունուար* 1940, *Խ. տարի*, *Թիւ* 3, *էջ* 67։

- *Հայաստանի կոչնակ*, 20 *Յունուար* 1940, *Խ. տարի*, *Թիւ* 3, *էջ* 72։

- *Յովհաննէս Աւագեան*, «*Արմենակ Շահ-Մուրատեան* (*խօսուած Շահ-Մուրատեանի սգատօնին*)», *Հայաստանի կոչնակ*, 3 *Փետրուար* 1940, *Խ. տարի*, *Թիւ* 5, *էջ* 110-111։

- «*Ա. Շահ-Մուրատեանի յիշատակին*», *Հայաստանի կոչնակ*, 3 *Փետրուար* 1940, *Խ. տարի*, *Թիւ* 5, *էջ* 114։

- *Ժիրայր*, «*Երկու բաց խօսք սիրելի պրն. Յ. Աւագեանին*», *Հայաստանի կոչնակ*, 17 *Փետրուար* 1940, *Խ. տարի*, *Թիւ* 7, *էջ* 160։

## ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ
**(խօսուած Շահ-Մուրատեանի սգատօնին)**

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳԵԱՆ

Պատերազմի ներկայ թոհուբոհին մէջ պահիկ մը կարծես մոռացումի, անտարբերութեան մատնուելու սպառնալիքին ներքեւ գտնուեցաւ անունը Արմենակ Շահ-Մուրատեանի՝ որուն մահուան բօթը՝ տարբեր պարագաներու

ներքեւ՝ գաղութէ գաղութ, թերթէ թերթ, բեմէ բեմ, մերձաւորագոյն վայրերէն մինչեւ հեռաւորագոյն անկիւնները, մինչեւ Խորհրդային Հայաստան՝ ուժգնօրէն պիտի արձագանգէր եւ տխրութեամբ ու թախիծով պիտի համակէր ամէն հայու սիրտ։ Այսօր սակայն, գէթ մեզի՝ Նիւ Եորքի եւ շրջակայքի հայերուս համար փարատած է այդ սպառնալիքը, ու մենք, ի սրտէ շնորհակալ ենք Կարգադիր Յանձնախումբին՝ որ սարքեց այս հանդէսը, ուր եկած ենք մեր յարգանքի տուրքն ընծայելու ողբացեալ արուեստագէտի անթարշամ յիշատակին։

Շահ-Մուրատեան՝ սարի զաւակ՝ Մուշէն մինչեւ Էջմիածնայ Ճեմարանն ու Թիֆլիսի Ներսէսեան վարժարանը, ու անտի մինչեւ Փարիզ՝ Սքօլա Քանթօրում ու Քոնսէրվաթուառ, պահեց դժուարաւ թեքելի, կարելի է ըսել անթեքելի իր գիծը, ու Քոնսէրվաթուառէն պատուով շրջանաւարտ ըլլալէ ու օբերայի բեմին վրայ, Ֆաուսթի դերին մէջ՝ յաղթական դուրս գալէ յետոյ ալ մնաց նոյն աննուաճ հոգին, ու երկրորդական դերեր ստանձնելէ աւելի նախամեծար համարեց տիրապետել բեմին ինքնիշխան, սանձարձակ։

Սակայն, երբ ոտք դրաւ Նիւ Եորքի այս ափերը, օբերայի պարիկը նորէն հմայեց զինք, ու անիկա՝ բարեդէպ կարգադրութեամբ մը մասնաւոր ունկնդրութեան, audition-ի արժանացաւ. իր ձայնը լեցուն, երանգաւոր, հնչեղ՝ թովեց քննիչ մարմինը, եւ սակայն մշակումն անբաւարար նկատուելով առաւել մարզանք յանձնարարուեցաւ. Շահ-Մուրատեանի ըմբոստ ոգին հոս ալ ցցեց ինքզինք, ու անիկա՝ թերեւս քիչ մը յանձնապաստանութենէ ու շատ մըն ալ իր մէջ խլրտող առհաւական բնազդէն, ցեղին ձայնէն դրդուած, փոքրիկ դեղեւումէ մը յետոյ, որոշեց իսպառ հրաժեշտ տալ օբերայի փառահեղ հեռանկարին ու ընդգրկել հայ եկեղեցական, ազգային ու մանաւանդ ժողովրդական երգի գէթ առ երեւոյթս անփառունակ, անշուք դաշտը։ Պիտի ներե՞ն արդեօք ինձ՝ գեղարուեստի, բարձրագոյն երաժշտութեան սիրահարները, եթէ սրտիս խորերէն, հագագալիր *շատ լաւ ըրաւ* աղաղակեմ, վստահ գիտնալով թէ ինչ որ Շահ-Մուրատի կորուստը նկատուեցաւ, մեզի՝ Հայերուս՝ անփոխարինելի շահը դարձաւ։ Շահ-Մուրատեան՝ որպէս Փարիզի Կրանտ Օբերայի եւ կամ Նիւ Եորքի Մէթ-րօբօլիթըն Օբերայի երգիչ, կրնար, շատ շատ, գգուել մեր ազգային փառասիրութիւնը եւ հպարտութեամբ ուռեցնել մեր սիրտը, եւ սակայն անիկա երբէք պիտի չի կրնար շահիլ այն տաքուկ անկիւնը՝ զոր գրաւած է այսօր, անխտիր ամէն հայու, ամենէն նրբաճաշակ քաղքենիէն մինչեւ ամենէն անտաշ գեղջուկին հոգւոյն խորը։ Առանց Շահ-Մուրատեանի՝ Հայութիւնը գուցէ չի կարենար ճաշակել այն վայելքը՝ զոր հայ սրտով, հայ առոգանութեամբ, հայ շեշտով թրծուած այդ երգիչը պուտ պուտ կը ծորեցնէր ամէն մէկ հայ երգէ, - շարական ըլլար այն թէ աշուղական, ազգային թէ ժողովրդական, դիւցազներ-գական թէ՛ քնարական, հովուերգական թէ սիրային, *Քրիստոս պատարգեալ*էն մինչեւ *Միրուհիս*, ուր կարծես կը նկարէր, դէմդ կը կանգնեցնէր շքեղ անունով,

սեւորակ աչքով, երկնածիր ունքով գեղանի աղջիկը, չքնագեղ հայուհին: Ո՞ր Հայու սիրտ թունդ չէր ելներ, երբ Շահ-Մուրատեան կը գեղգեղէր *Անտունի*ն.-
***Սիրտըս նըման է էն փըլած տըներ,***
***Կոտրեր գերաններ, խախտեր է սըներ.***

Ո՞ր հայ դարիպի – ու ո՞վ դարիպ չէ օտար երկինքներու տակ, որքան ալ հիւրընկալ եղած ըլլան անոնք – ո՞ր հայ դարիպի կոկորդը յուզումէն չէր խեղդուեր, երբ Շահ-Մուրատեան՝ դաշնոլոր երգեցողութեամբ մը կարօտի իր պաղատանքը կ՚ուղղէր կռունկին.-
***Կանչէ՜ կռունկ, կանչէ՜, քանի արեւ է,***
***Աչնան կ՚երԹաս երկիր, եարիս բարեւէ:***

Հայկական բարձրաւանդակներու կանչն էր գոգցես որ կը հասնէր ականջիդ՝ երբ Շահ-Մուրատեան՝ *Ալագեազ բարձր սարին* երգած ատեն՝ հոգին լայնցնելով՝ կարծես հրաման էր որ կ՚արձակէր.-
***Սարի՛ ճամբէք, բաց ելէք,***
***ԵրԹամ Հասնիմ իմ եարին:***

Հապա ան ի՜նչ կերկերուն շունչ էր որ կը ծաւալէր անոր երգած *Մոկաց Միրզէ*ն, մինչ «Հայաստա՜ն, երկիր դրախտավայր» ոգեկոչած ատեն՝ վստահ եղէք, մեր նախահարց ոսկորոտիքն իսկ կը խայտային իրենց շիրիմներուն մէջ:

Ճիշդ է որ երգ մը՝ երբ բանաստեղծական արժէք ալ ունի, վարակիչ՝ հաղորդական է ինքնին, բայց Շահ-Մուրատեան երգիչ մըն էր, որ նուազ բանաստեղծական, ոչ-բանաստեղծական կտորներն իսկ կը կենդանացնէր գեղարուեստի իր շունչովը:

Վայրկեան մը պրպտեցէ՛ք ձեր յիշողութիւնները, վերապրեցէ՛ք ան երեսուն տարիները՝ որոնց ընթացքին մերթ ընդ մերթ ունկնդրեցիք Շահ-Մուրատեանի, ու պիտի գտնէք թէ անիկա՝ իր կենդանի երգեցողութեամբ՝ յաղթական ի՜նչ արարքներ յաւերժացուց, ի՜նչ քաջագործութիւններ պանծացուց, ի՜նչ դէմքեր անմահացուց, ի՜նչքան ուղերձներու համար տաքուկ, ընկալուչ մթնոլորտ ստեղծեց, եղբայրական ի՜նչ զգացումներ արծարծեց, առօրեայ ի՜նչ մտահոգութիւններ, ի՜նչ տխրութիւններ փարատեց, ի՜նչքան երգեր թառեցուց շրթներու վրայ: Որքա՜ն յաճախ երաժշտական մեր բեմերը ճոխացան անոր զուգերգներով. – *Ալ Այլուխ*, *Հաբրբա՜ն*, *Գնաց աշուն*՝ զոր կ՚երգէր ընկերակցութեամբ մեր յայտնի երգչուհիներէն մէկուն կամ միւսին:

Չեմ ըսեր թէ Շահ-Մուրատեան եղաւ միակ տարածիչը հայ երգերուն: Ո՛չ: Իրմէ առաջ Կոմիտաս Վարդապետ արդէն իսկ հարթած էր ճամբան, ու առաքեալի դեր սկսեր էին կատարել իր աշակերտները՝ որոնց յետոյ միացան երգչախմբի ուրիշ վարիչներ ալ՝ եկած Արեւել. կամ Արեւմտ. Հայաստանի սահմաններէն, եւ սակայն հայ երգը Շահ-Մուրատեանի մենաշնորհը մնաց կարծես, ու մինչեւ այսօր ալ՝ ակամայ, գուցէ նոյն իսկ անգիտակցաբար՝ մեր մտքին մէջ բաղդա-

տութիւն մը կը կատարուի, ու մենք կրկնապէս աղէտալի, բազմիցս սգալի կը գտնենք Շահ-Մուրատի անողոք հիւանդութիւնն եւ անոր յաջորդող... մահը։

Շահ-Մուրատեան՝ գէթ գաղութի Հայութեան համար *քրայթէրիընն* է այլեւս, չափանիշը հայ երգին, ու բիւր երանի՜ այն երգչին որ մօտ կուգայ այդ չափանիշին։

Ու մինչ ա՜յնքան շեշտ կը դնենք Շահ-Մուրատեանի չքնաղ ձիրքերուն վրայ որպէս հայ երգչի, մեր միտքը միանգամայն կը յամենայ անոր այնքան քաղցրութեամբ, ա՜յնքան նրբին արուեստով երգած օտար կտորներու վրայ ալ, ինչպէս օրինակ, Մասընէի *Էլէժի*ն, Հալըվիի *Հրէուհին* ու Փուչինիին *Թօսքա*յէն ան էրիան, ուր Մարիօ Քավառատօսսի սիրոյ իր երազանքը, յուսավրիպումի իր աղաղակը կ'եղանակէ ա՜յնքան կողկողագին։

Շահ-Մուրատեան՝ ազգային ու ժողովրդական երգերու ճոխ պաշար մը ունենալով հանդերձ՝ հետամուտ էր նոր երգերու։ Ձեզմէ ամէն անոնք որ ասկէ շուրջ քաներկու տարի առաջ Պոստոն կը գտնուէին ու ներկայ եղան Ճօրտըն Հօլի մէջ անոր սարքած նուագահանդէսին, կը յիշեն թերեւս թէ ի՜նչպէս անիկա բեմէն՝ հրապարակաւ՝ իր ցաւը յայտնեց որ հայ նոր երգագիրներ՝ հետեւաբար նաեւ նոր երգեր չեն հասնիր, ու երգիչը՝ որ երգահան չէ վերջապէս՝ կը հարկադրուի արդէն իսկ ծանօթ եղանակներ հրամցնել հասարակութեան։ Այդ օրերուն՝ իրօք, հազուագիւտ էին հայ նոր երգեր, իսկ այժմ՝ որ մանաւանդ Խ. Հայաստանէն ա՜յնքան կենսախայտ, կենսալիր նոր երգեր կը հասնին, աւա՜ղ, ընդմիշտ լռած է հայ երգչին շրթունքը։

Մեծ երգիչ էր Շահ-Մուրատեան։ Մեծ երգիչ՝ նոյն իսկ բառին գեղարուեստական ըմբռնումովը։ Իր բնատուր, Աստուածատուր ձայնը՝ մարզուած նախ Եկմալեանի ու Կոմիտասի շունչին ներքեւ, եւ վերջէն ալ՝ քօնսէրվաթուառի մէջ, յստակութեան, ողորկութեան, գունագեղութեան գրեթէ ամէն տարրերը կը մարմնացնէր իր վրայ։ Այն տարածականութիւնն ու ուժգնութիւնը՝ որ առաջնակարգ թէնօրի մը էական յատկանիշներն են, ըստ պահանջի հակակշռի ներքեւ կ'առնուէին, շնորհիւ այն մարզանքին՝ զոր ստացաւ Շահ-Մուրատեան տարիներու ընթացքին։

Շահ-Մուրատեան՝ ժողովուրդի ծոցէն ծնած ժողովուրդի զաւակ՝ խորապէս հմտացաւ ժողովուրդի հոգեբանութեան ու զայն արտայայտեց կարի հարազատութեամբ։ Անիկա օժտուած էր ոչ միայն զմայլելի ձայնով, այլեւ զայն կառավարելու արուեստը ունէր։ Բարձրագոյն խաղերն իսկ անճիգ կը հոսէին անոր հագագէն, մինչ ստորնագոյն խաղերը՝ նրբին ոճով մը արտաբերուած՝ մասնիկ մ'իսկ չէին կորսնցներ իրենց ազդուութենէն։

Շահ-Մուրատեանի մեկնաբանական արուեստն ալ սովորականէն շատ բարձր էր թէ՛ ազգային եւ թէ՛ օտար երգերու մէջ։ Երգչի համար շատ կարեւոր է նաեւ շնչառութեան եւ շնչատուութեան արուեստը՝ որուն տիրացած է Շահ-

Մուրատեան, ու այս տեսակէտով ալ կը դասուէր առաջնակարգ արթիսթներու շարքը։ Իսկ շեշտի ու մանուանդ առոգանութեան մէջ ա՜յնքան ճարտար էր անիկա, ա՜յնքան վարպետ, որ վանկերն իսկ յստակ լսելի կ'ընծայէր։

Բնական էր ուրեմն, որ այսպիսի բազմապիսի ձիրքերով օժտուած երգչի մը ազդեցութիւնը ըլլար մնայուն, ու դուք ամէնքդ սիրայօժար համախմբուէիք այս սրահը՝ ուր սա պահուս ձեր սրտաբուխ յարգանքը միացուցած իմինիս՝ ակնածանքով ու գուրգուրանքով կ'ընծայեմ հայ երգի ամենէն հարազատ արտայայտիչին՝ մեծ երգիչ՝ Արմենակ Շահ-Մուրատեանի փայփայելի, խնկելի յիշատակին։

*Հայաստանի կոչնակ*, 3 *Փետրուար* 1940, *Խ. տարի*, *Թիւ* 5, *էջ* 110-111

## Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Յունուար 21-ին, Նիւ Եորք՝ Ուաշինկթըն Ըրվինկ Բարձ. Վարժարանի սրահին մէջ տեղի ունեցաւ հանդէս մը, ողբացեալ Ա. Շահ-Մուրատեանի յիշատակին։ Կ'ատենապետէր Տիար Յովհան Կարապետեան, որ բացման ուղերձով մը պարզեց հանգուցեալ երգչի թողած քաղցր ազդեցութիւնը եւ գնահատեց հասարակութեան կողմէ ցոյց տրուած խրախուսական վերաբերութիւնը՝ արուեստագէտին նկատմամբ։ Երգչի կենսագրական գիծերը տուաւ Տր. Ա. Ալիխանեան, որ միանգամայն պատկերացուց անոր միջավայրը՝ ընդհանուր գիծերու մէջ, եւ ներբողեց անոր հայրենասիրական ոգին։ Պրն. Յովհ. Աւագեան նկարագրեց Շահ-Մուրատեան երգչի բազմապիսի ձիրքերը, եւ շեշտեց այն մնայուն տպաւորութիւնը զոր թողուց անիկա թէ՛ որպէս հայ երգի ամենէն հարազատ արտայայտիչ, եւ թէ որպէս ազգանուէր անձնաւորութիւն։ (Այս ուղերձը կ'երեւի թերթիս ուրիշ մէկ էջին վրայ)։

Ֆրանսացի վարպետ թաւջութակահար Մր. Էմիլ Սիմոն՝ արուեստագէտի մը հարազատ զգացումներով ու թրթռուն յուզումնականութեամբ նուագեց երկու կտորներ։ Տիար Կարապետեան ֆրանսերէնով շնորհակալութիւն յայտնեց Մր. Սիմոնի, որ յօժարակամ իր մասնակցութիւնը բերաւ հանդէսին՝ որպէս յարգանքի ցոյց ողբացեալ արուեստակցի մը։ Մր. Սիմոն եւս՝ մէկ քանի յարգալիր խօսքեր ուղղեց իր կարգին։

Ծանօթ սիրուած երգչուհի Տիկին Մառի Արագեան հաղորդական ջերմիկ շունչով երգեց մէկ քանի կտորներ, հայերէն եւ օտար լեզուներով։

Ողբացեալ երգչին՝ Շահ-Մուրատեանի երգի *րէքըրտ*ներէն մէկ քանին նուագուեցան, որպէս նմուշ այն կենդանարար երգեցողութեան զոր անիկա կը մատուցանէր հանրութեան, հայաշատ ամէն քաղաքի մէջ։

Շնորհաւորելի է Կարգադիր Յանձնախումբը՝ որ Մշեցի հայրենակիցներու հետ ձեռք ձեռքի՝ սարքեց սոյն հանդէսը՝ ուր երգիչը սիրող անձինք հա-

մախմբուեցան իրենց սրտաբուխ յարգանքը ընծայելու Շահ-Մուրատեանի անթառամ յիշատակին:
*Հայաստանի կոչնակ*, 3 *Փետրուար* 1940, *Խ. տարի*, *Թիւ* 5, *էջ* 114

## ԵՐԿՈՒ ԲԱՑ ԽՕՍՔ ՍԻՐԵԼԻ ՊՐՆ. Յ. ԱՒԱԳԵԱՆԻՆ

*Հայաստանի կոչնակ*ի ներկայ տարուայ հինգերորդ թիւին մէջ, Նիւ Եորք, Ա. Շահ-Մուրատեանի սգահանդէսին ըրածդ ատենախօսութեան արտագրութիւնը յուզումով կարդացի:

Մինչեւ այսօր հայ թերթերուն մէջ կարդացածներէս ձերինը ամենէն արտաս-ւաթոր ու միանգամայն սփոփարարն էր անզուգական երգիչին դեռ նոր գոցուած գերեզմանին վրայ:

Դուք դիտող աչքեր, գեղապաշտ հոգի ու հայու սիրտ ունիք: Ձեր շնորհալի գրիչը քանի մը սեղմ էջերու մէջ հնարաւորութիւնը չէր ունեցած ողբացեալ երգիչին զմայլելի էութիւնը իր կատարելութեանը մէջ նկարելու, բայց յաջողած էր զայն ապրեցնել տալու անգամ մը եւս զինքը ճանչցողներուն, ձայնէն արբե-ցողներուն մէջ:

Կը կարծենք թէ ան բեմին վրան մեր առջեւը կանգնած է Հայաստանցու համեստ կերպարանքով, Տարօնցու հարազատ դէմքով, Մշեցու լեցուն սրտով ու՝ կ՛երգէ՜...: Կարծես անոր օրհնեալ շրթներէն ձայնը կը լսենք դեռ, որ հայ երգերուն անուշութիւններն ու յոյզերը «պո՛ւտ, պո՛ւտ, մեր սրտերուն կը թոփէ»...:

Ապահովաբար դուք եւս սգահանդէսին խօսած պահերնուդ՝ անոր ձայնն էր զոր կը լսէիք ձեր սրտէն, երբ անոր չքնաղ *Ալագեազը*, *Հայաստան դրախտա-վայրը*, *Սիրուհիս*, ու անգերազանցելի *Կռունկ*ն ու *Սիրտս փլած է...* երգերը արցունքոտ բառերով կը վերյիշեցնէիք ձեր ունկնդիրներուն:

Հայ երգիչ էր Շահ-Մուրատեան: Առաւելապէս հոգին, ճիկարը այրած Տարօն-ցի հայ երգիչ:

Կը յիշէ՞ք, ան ի՜նչ հոգիի իրական խշխշով, արտասուալից աչքերով կ՛երգէր բնաւեր թռչունին երգը:

***Ինչո՞ւ կուլաս գո՛ւղձ, գո՛ւղձ արուն,***

***Կ՛երթայ լեցուի բարակ առուն...***

Բոյնը փլած, ձագերը կորուսած, թեւաբեկ ու տխուր թռչունն է առուի մը եզրին, քանի մը վրան պոպողած գուղձ, գուղձ, կուլայ...: Շահ-Մուրատեան այս երգած ատեն ինձ կը թուէր թէ անոր հոգին տունէ զրկուած ու հալածական Մշեցի հայ մայրերն էր զոր կը վերյիշէր, որոնք Եփրատի ու Տիգրիսի ափերուն իրենց կորսուած զաւակներուն միշտ սպասեցին գուղձ, գուղձ, լալով:

Շահ-Մուրատեան, սիրտը, հոգին լեցուն, ձայնը անմահանո՜ւշ մեծ երգիչ էր: «Անիկա օտար բեմերուն աստղը պիտի դառնար ապահովաբար, բայց իր ցեղին

ձայնը կանչեց զայն, հոգին յուզումով խլրտաց, ու ան՝ ուխտեց հայ երգիչ մնալ»... ըսած էք։

«Անիկա օտար բեմին կռնակ դարձնելովը մեր շահը, բայց՝ իր կորուստը... եղաւ» կը յարէք։

Թագնուած ողբերգութիւն մը կայ վերջին տողերուդ տակ, եւ արցունք...։ Հայ գրագէտի ձեր ազնուական ու հպարտ հոգին թոյլ չէ տուած ձեզ վարագոյրը վերցնելու աչքերու առջեւ։ Բայց դիտող աչքերու դիմաց այդ տողերուն տակ Շահ-Մուրատեանն է որ կը նշէ իր քիչ մը չարչարուած դէմքով, խուփ... շրթներով։

Անիկա Մուշէն ելաւ սրտին ու ձայնին հետ ու հեռաւոր երկիրներ՝ ուր որ խումբ մը հայ կար՝ գնաց, անոնց «Երկիր դրախտավայր»-ին... սէրը, իտէալը երգելու, պանդուխտի կարօտ հոգիներ մխիթարելու։ Մենք անխտրական հոգիով պէտք էր գուրգուրայինք ու շատ սիրէինք զայն, բայց շատ անգամ մոռցանք, ու ան «Որբի»... մը պէս ապրեցաւ վերջին օրերը ինչպէս իրմէ առաջ ցեղին նուիրուածներէն շատեր ապրեցան։

Հոգիս սգահանդէսին ունկնդիրներուդ միացած երկու անգամ, կորուստի ու խղճմտանքի չարչարանքով լացաւ, սիրելի Աւագեան, անգերազանցելի հայ երգիչին համար։

Անկեղծօրէն ձերդ՝
Ժիրայր
9 Փետր. 1940
Նիւ Եորք, Ն. Ե.

*Հայաստանի կոչնակ*, 17 *փետրուար* 1940, *Խ. տարի*, *թիւ* 7, *էջ* 160

**1942, ՓԱՐԻԶ**

Համաձայն Շ-Մ.ի դստեր Էվըլինի պատմածին, մայրը (Շ-Մ.ի կինը) 1942-ին կ’ուղարկուի գերմանական ճամբար, Ամերիկայի մէջ քաղաքացիութիւն ստացած ըլլալու մեղադրանքով։

- *Ֆերտինանտ Գայմագամեան*, «*Շահ-Մուրատեանի դուստրը կը վերյիշէ իր հօրը հետ ապրուած օրերը*», *Ջահակիր*, 10 *փետրուար* 1972, *նոր շրջան*, *թիւ* 415, *էջ* 4։

## ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆԻ ԴՈՒՍՏՐԸ ԿԸ ՎԵՐՅԻՇԷ ԻՐ ՀՕՐԸ ՀԵՏ ԱՊՐՈՒԱԾ ՕՐԵՐԸ

**(հատուած)**

ՖԵՐՏԻՆԱՆՏ ԳԱՅՄԱԳԱՄԵԱՆ

Իվըլինի մայրն ալ 1942-ին անհետացաւ Գերման կեդրոնացման ճամբարի մը

մէջ։ Հոն տարուած էր անոր համար, որ իր ամուսինին հետ ընդունած էին ամերիկեան քաղաքացիութիւնը։
*Զահակիր*, 10 *Փետրուար* 1972, *նոր շրջան*, *թիւ* 415, *էջ* 4

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 3 ԱՊՐԻԼ 1952, ՓԱՐԻԶ**

Փարիզի մէջ կը մահահայ Շ-Մ.ի այրին՝ Մարկըրիթ Շահ-Մուրատեան, ծնեալ՝ Marguerite Sallé, 72 տարեկանին։ Ծնած 1880-ին։

- *Մահուան վկայական, Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարան, Շահ-Մուրատեանի դիւան, չթուագրուած նիւթ։*

**ՀՈԿՏԵՄԲԵՐ 1971, ՆԻՒ ԵՈՐՔ**

Ֆրանսայէն Նիւ Եորք կ՚այցելէ Շ-Մ.ի դուստրը՝ Էվըլին Շահ-Մուրատեան։ Կ՚այցելէ Ամերիկայի հայոց առաջնորդ Գերշ. Տ. Թորգոմ Արք. Մանուկեանին, որուն կը պատմէ իր ընտանեկան յիշատակները։

- «*Արմենակ Շահմուրատեանի դուստրը Ամերիկա կ՚այցելէ*», *Զահակիր*, 18 *Դեկտեմբեր* 1971, *նոր շրջան*, *թիւ* 403, *էջ* 2։

- *Ֆերտինանտ Գայմազամեան*, «*Շահ-Մուրատեանի դուստրը կը վերյիշէ իր հօրը հետ ապրուած օրերը*», *Զահակիր*, 10 *Փետրուար* 1972, *նոր շրջան*, *թիւ* 415, *էջ* 4։

# ՀԱՅ ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆԸ

Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ
(Փարիզի ազգային մեծ Օփերայէն)

Նախապատմական Հայուն բաղաքակրթութիւնը, ինչպէս եւ երաժշտութիւնը՝ թաղուած է հնութեան մէջ։ Պատմական յիշատակարաններու, վաւերական աղբիւրներու անբաւականութեանց պատճառաւ – եթէ երբեք չըսեմ չգոյութեան – դժուար է լուսաբանել ու ճշդել, այդ շրջանի հայ երաժշտութեան ծագումը եւ անոր որ աստիճանի հայ ըլլալը։ Մինչեւ ցարդ գոյութիւն ունեցած ուսումնասիրութիւնները, հիմնուած են եղեր, պատմութեան մեզ տուած հատ ու կտոր վկայութիւններու եւ ենթադրութիւններու վրայ։

Եթէ կարելի ըլլար ընդունիլ, թէ Հայը, իր նախապատմական շրջանին մէջ, ունեցած է իր ինքնուրոյն քաղաքակրթութիւնը, ապահովաբար ունեցած պիտի ըլլար հոն իր ինքնուրոյն երաժշտութիւնը։ Սակայն, պատմութիւնը ցոյց կու տայ թէ Հայերը ենթարկուած են եղեր, մշակոյթով, Ասորեստանցիներու, ետքէն ալ, Պարսիկներու քաղաքակրթութեանց ազդեցութեան տակ։ Անոնցմէ իւրացուցած են արուեստներ։

Քրիստոսէ դար մը յառաջ, Արտաշէսի եւ ետքէն Տիգրանի օրով տեղի կ՚ունենայ յունական քաղաքակրթութեան մուտքը Հայերուս մէջ։ Պատմութիւնը, հաստատելով այդ իրողութիւնը կ՚ըսէ, որ Տիգրանի որդի Արտաւազդն՝ հմուտ էր յոյն դպրութեան եւ երաժշտութեան։ Ըսել է թէ Հայերս ալ ունեցեր ենք մեր դպրութիւն, ճարտարարուեստ, մեհենական գրութիւններ, գուսանական գիւցազներգութիւններ, պատուաստուած Ասորական, Պարսկական, Յունական քաղաքակրթութիւններէն։ Ինչպէս որ մեր անմահ Խորենացին ալ կը վկայէ թէ, իր ժամանակ կ՚երգուէին տակաւին դիւցազնական ստեղծագործութիւններ, որոնց մէջ կը փառաբանուէին հեթանոս Հայաստանի աստուածներն ու հերոսները։ Հայն ալ ունեցած է իր Վահագնեան, Արտաշէսեան եւ Արտաւազդեան, ազգային-կրօնական դիւցազներգութիւնները։ Վերեւ յիշուած օտար ազգութիւնները կը շեշտուին դարձեալ։

Քրիստոնէական շրջանի սկզբնաւորութեան, ազգային, եկեղեցական եւ նոյն իսկ լեզուական կազմութեանց ատեն, երաժշտութիւնն ալ իր կարգին, կրեց

միեւնոյն ազդեցութիւնները։ Նոյն իսկ մեր եկեղեցական ութը ձայներուն կազմութիւնը հիմնուած է, յունական ութ ձայներու դրութեան վրայ։ - Եթէ հայ երաժշտութիւնը, սպասուած արդիւնքը չէ տուած ու չէ հասած գեղարուեստական բարձր զարգացման, ատոր պատճառը վերագրելու չէ Հայուն անընդունակութեանը, - ունինք շարականներու անսպառ գանձ մը, երաժշտական եւ բանաստեղծական զարմանալիօրէն սքանչելի արտայայտութիւն մը - այլ քաղաքական, ներքին դժնդակ կեանքի պայմաններուն. ինչպէս՝ գերութիւն, հալածանք, աքսոր, անընդհատ պատերազմները։ Ուրեմն, ամփոփելով այսպէս մեր ըսածները, յայտարարենք թէ Հայը սկիզբէն ի վեր, մինչեւ քրիստոնէական նախնական շրջանի առաջին տարիները, կրած է յաջորդաբար՝ Ասորական, Պարսկական եւ Յունական քաղաքակրթութեանց ազդեցութիւնքը։ Սակայն երբ տառերու գիւտի եւ թարգմանիչներու շնորհիւ հիմը դրուեցաւ բնատոհմիկ ինքնուրոյն գրականութեան մը, բնական է թէ լեզու ու գրականութիւն ունեցող ազգ մը պիտի ունենար իր բնիկ երաժշտութիւնը, միշտ իր համեմատական զարգացումի աստիճանին համահաւասար։

Դարձեալ ատոր փաստ կարող է ծառայել թէ գիտնականօրէն կը ցուցուի թէ լեզուական հնչականութիւնը, կլիման, երկրի մը նոյն իսկ աշխարհագրական դիրքը, գլխաւոր ազդակներ են ազգի մը ֆիզիքական, բարոյական, մտաւոր եւ ֆիզիքական, իմացական եւ զգայական կեանքին ու նկարագրին կառուցումին։ «Լեզուէն ծնած է արուեստը որ առանց անոր գոյութիւն չի կրնար ունենալ. եւ գիտութիւնը, իր կարգին, կը բացատրէ ու ոյժ կուտայ, կերպով մը զայն առաջնորդելով իր զարգացումին մէջ եւ շատ յաճախ կ’արգիլէ անոր խոտորումը վտանգաւոր ճամբաներէ։

Եթէ գրականութիւնը իրական կեանքի հայելին է, երաժշտութիւնը՝ զգացումներու եւ հոգիին հայելին է, հետեւարար հայ երաժշտութիւնը հայ զգացումներու եւ հոգեբանութեան իրական արտայայտիչն է։

Արեւմտեան բոլոր ազգերը սնունդ առին, զարգացան – Լատինականի միջոցաւ – Յունական քաղաքակրթութեան վերջին մնացորդներէն, սակայն այդ ազգերէն իւրաքանչիւրն այսօր ունի իր ինքնուրոյն գրականութիւնն ու երաժըշտութիւնը։

Ինքնուրոյն բառը, չը մոռնամ ըսել, յարաբերական մտքով առնելու է. որովհետեւ ոչինչ կայ բացարձակ՝ արեւին տակ։

Կեանքի բոլոր արտայայտութիւններու մէջ – ըլլայ անիկա, անհատական թէ հաւաքական – նմանութիւններ, ազդեցութիւններ, ուղղակի թէ անուղղակի, կը տեսնուին ու գոյութիւն ունին. սակայն, անոնք բոլորն ալ երկրորդական տեղ մը կը բռնեն, տեղի տալով, երբեմն իսկ ձուլուելով տիրապետող հարազատ ոգիին ու զգացումին հետ։

Ռուսական երաժշտութեան արդի հիմնադիրները՝ Կլինկա, Բորոտին,

Մուզորկսկին, Չայկովսկին, Պալակերեւ, Ռիմսկի-Քորսաքով եւն, օգտուեցան արեւելեան երաժշտութենէ – մասնաւորապէս Պարսկականէն եւ Հայկականէն – Եւրոպական-Գերմանականին զօրաւոր ազդեցութեան տակ՝ ստեղծեցին, հիմը դրին ռուս ազգային ինքնուրոյն երաժշտութեանը, որուն մէջ տիրող ոգին ու զգացումը, գերազանցօրէն Ռուսական է:

Միեւնոյն երեւոյթը մենք կը տեսնենք այսօր մեր կրօնական երգերու, շարականներու եւ ժողովրդական-գեղջուկ երգերուն մէջ: Հոն Հայուն հոգին ու զգացումը կ'երեւի յստակ ու պարզ, չնայելով որ անոնք մեզ հասած լինին բերանէ բերան, անմշակ, հետեւաբար գիտական խղճամիտ ուսումնասիրութեան եւ դասաւորութեան կարօտ:

Առաջին անգամ ըլլալով, մեր եկեղեցական բոլոր երգասացութիւնները, ընդ որս եւ շարականները, ձայնագրուած են, անցեալ դարու կէսերուն, եթէ չեմ սխալիր, յԱրմաշ Համբարձում Պապայէն – որը այնչափ հմուտ էր եւ հեղինակ արեւելեան երաժշտութեան – եւ ընդհանրացած են իրմէ ետքը եկող հայ ձայնագրագէտներէ: Միեւնոյն գեղեցիկ շարժումը կը սկսի էջմիածին Գէորգ Դ. կաթողիկոսի օրով: Էջմիածին կը հրաւիրէ Պոլսեցի Նիկողայոս Թաշճեանը, բաւական հմուտ եւրոպական երաժշտութեան եւ հայկականին, որը քիչ ատենէն կը հասցնէ կարգ մը աշակերտներ, որպիսիք են՝ Մակար Եկմալեան – որու մասին յետոյ պիտի խօսիմ առանձնապէս – Բարթուղիմէոս եպիսկոպոս Գէորգեան, Սահակ եպիսկոպոս Ամատունի, եւ ուրիշներ: Ասոնց հետ միասին, Թաշճեանը, կը սկսի ձայնագրել բոլոր եկեղեցական երգերը, ժամագիրք, շարական եւ պատարագի արարողութիւնը:

Վերեւ յիշուած երգասացութիւններուն մեծ մասը, սրբազնագոյն հայրապետը ինքն երգած է, լինելով իր ժամանակին աչքի զարնող երգիչ մը: Ձեռնարկը, իր սկզբնաւորութեանը մէջ, մանաւանդ այն ժամանակ չափազանց մեծ կարեւորութիւն ունէր: Միանգամ ընդ միշտ հայ եկեղեցական երաժշտութիւնը կորուստէ եւ խեղաթիւրումէ կ'ազատէր, անսպառ ուսումնասիրութեան դիւրութիւն կ'ընձեռէր, եւ նիւթի աղբիւր մը յետագայ բանասիրական աշխարհի:

Անկէ ետքը Կաթողիկոսին մասնաւոր կոնդակովը պարտաւորիչ դարձաւ, հայկական եկեղեցական ձայնագրութեան ուսուցումը, բոլոր հայ դպրոցներու մէջ. եւ այդ ազգասէր գեղեցիկ շարժումին կը պարտինք այսօր, Կովկասի, Պարսկաստանի եւ Տաճկահայաստանի գրեթէ բոլոր քաղաքներուն եւ մասամբ ալ գիւղերուն մէջ եկեղեցական միօրինակ երգեցողութեան կանոնաւորութիւնը:

Հայ ժողովրդական երգերը շարունակութիւն են, նախապատմական շրջանի գուսանական ստեղծագործութիւններուն: Քրիստոնէական շրջանին մէջ, անոնք տեղի տուին մեծաւ մասամբ, կրօնական միսթիք մտածումներու: Հայ գրականութիւնը իրական պատկերը դարձաւ, հայրենիքի շարան մը թշուառութիւններուն, ողբի, սպանութիւններու, եւն., եւն.: Միեւնոյն կեանքի ցոլացումը կը տեսնենք,

երաժշտութեան մէջ թէեւ անիկա ունէր գլխաւորապէս կրօնական միսթիք գոյն ու դրօշմը: Մեր այդ շրջանի եկեղեցական երգեցողութիւններէն՝ հոյակապ շարականներէն – ուր այնչափ ցայտուն եւ մեծ կը տեսնուին Հայուն ստեղծագործական ոգւոյն ու զգացումին վսեմ թռիչքն ու հոյակապ սլացքը – սաղմոսերգութիւններէն դուրս, ապրած են նաեւ ժողովրդական-գեղջուկ երգերը:

Մենք ունինք անսպառելի պաշար մը այդ երգերէն, վճիտ, անմեղուկ եւ պարզ:

Ժողովրդական երգը՝ պատմութիւնն է ժողովուրդի հոգիին ու սրտին, հետեւաբար ունի իր անցեալը: Քննենք, ուսումնասիրենք զայն, մտնենք անոնց մանրամասնութեանց մէջ եւ պիտի տեսնենք, որ անիկա կը հրճուի, կը հառաչէ, կը սիրէ, կ՚անիծէ միաժամանակ:

Հայ ժողովրդական երգերու ուսումնասիրութիւնը, երկար տարիներու պատմութիւն չունի: Պիտի ջանամ, յաջորդ յօդուածի մը մէջ ամփոփել, այդ շարժումին կարապետները, մասնաւորապէս եւ խօսիլ հայ երաժիշտներու մասին ընդհանրապէս:

*Կոչնակ*, 15 *Դեկտեմբեր* 1917, *ԺԷ. տարի*, *Թիւ* 50, *էջ* 1472-1473

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ԾԱԳՄԱՆ ՄԱՍԻՆ
## Ի՞ՆՉ Է ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԸ

Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ
Փարիզի Ազգ. Մեծ Օփերայէն

ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐ

Երաժշտութեան եւ լեզուի սկզբնական ծագումը միեւնոյն ժամանակ տեղի ունեցած են: Նախաձայները – ինչպէս քառալարի (թէթրաքօրտէ) եւ ութեակէ (օքթավէ) ի յայտ եկած են մարդուն մէջ՝ բնութենէն, նոյնպէս եւ լեզուն: Անոնք համագործակցութեամբ եղած են միջոցը, գաղափարներու փոխանցումին, սերունդէ սերունդ: Յիրաւի, եթէ *հնչիւնը*, *ձայնը* եւ *ժամանակը*, էական տարրերն են երաժշտական շէնքի կառուցումին, որ առանց անոնց գոյութիւն չպիտի ունենար, անոնք, միեւնոյն ատեն, կ՚ընկերանան նաեւ աղմուկին, շառաչին, շշուկին, եւն. եւն., որոնք հակընդդէմ են երաժշտական արուեստին:

Կենդանիներու աղաղակները, թռչուններու երգերը կ՚ենթարկուին միեւնոյն օրէնքներուն: Բնութիւնն ալ ունի իր երաժշտութիւնը, համերգը. անհունօրէն այլազան, երբեմն դիւթիչ, երբեմն յուզիչ եւ սոսկացնող: Այո, երաժշտութիւնն ալ ունի իր խորհրդաւոր օրէնքները: Անիկա կը խօսի մեր երեւակայութեան հետ, կ՚արթնցնէ մեր գաղափարները, կը յղացնէ, իր ներոյժ տպաւորութեանց տակ, պատկերներ եւ տեսարաններ, որոնք, իրականին մէջ կը մնան անընդօրինակելի:

Երգը մարդու համար կը թուի եղած ըլլալ նախնական միջոցներէն մէկը, հաղորդելու իր մտածումները, պատասխանելու եւ արտայայտելու՝ իր պէտքերը, իր յոյզերը, իր գաղափարները, իր ուրախութիւնները, եւն: Հէնց իր այդ անդիմադրելի պահանջներուն ստիպումին տակ պարտաւորուած է դիմել՝ *ձայնարկութիւններուն*, որոնցմէ յառաջ եկած են աստիճանաբար *ձայնելեւէջները*, *երգը* եւ *մեղեդին*:

**Ի՞նչ է ժողովրդական երգը**. – Ժողովրդական երգը նախնական երաժշտութեան մը կենդանի պատմութիւնն է: Անոր հեղինակը նոյն ինքն ժողովուրդն է: Անոր մէջ անհատական աշխատութեան մը հետք չերեւիր: Անիկա բղխած է համայնական զգացումէ մը, անիկա հարազատ *շեշտն* է ամբողջ ժողովուրդի մը ձայնին եւ պտուղը՝ հաւաքական ստեղծագործութեան մը: Բոլոր հին եւ նոր ազգերու ժողովրդական երգերն են, չափով մը, իրենց աւանդական պատմութիւնը: Տխուր թէ ուրախ, պարզուկ, անմեղուկ թէ յուզումնալից, մեզ կը պատկերացնեն բարոյական եւ քաղաքական կացութիւնը այն ազգերուն, որոնցմէ ծնունդ առած են: Անոնք արդիւնք են մէկ ընդհանուր գաղափարի, զգացումի եւ հաւատքի:

Քաղաքակրթութեան օրըստօրեայ յառաջդիմութիւնը կը բարեփոխէ ժողովուրդի մը բնազդական ընդունակութիւնները եւ կ'այլայլէ անոնց ինքնատպութիւնը: Այսպէս, ժողովրդական երգի եւ բանահիւսութեան ինքնաբուխ կարողութիւնները կը տկարանան, աստիճանաբար, եւ այդ այն րոպէին միայն, երբ մասնակի հանճարներ կը սկսին երեւան գալ:

Ժողովրդական երգերը սեփականութիւն չեն այն գաւառին միայն, ուրկէ հաւաքուած են. ընդհակառակն, միեւնոյն երկրի բոլոր մասերուն մէջ կը հանդիպինք անոնց, թէպէտեւ, շատ անգամ, տարբեր երեւոյթներովը. սակայն միշտ հիմնուած միեւնոյն *թէմա*յի վրայ եւ յօրինուած միեւնոյն ձեւերովը: Ժողովրդական երգերը, ընդհանրապէս միանուագ (մօնօթօն) են, կրկնութիւններով լեցուն, եւ սովորական կանոնէ դուրս չեն գար: Երգը եւ բառը, իրարու հետ շաղկապուած, ձուլուած են, շատ մտերմօրէն: Թէեւ երկրի մը պարագաներն են որ ծնունդ կուտան ժողովրդական երգերուն եւ կը պահեն իրենց մէջ բանաստեղծութեան հրապոյրը, սակայն, ինչպէս կ'ըսէ ֆրանսական առածը, «Եղանակն է որ կը կազմէ երգը»: Երգը, բառէն աւելի, զգացնել կուտայ ժողովուրդի մը նկարագիրը: Ի վեր կը հանէ անոր ներքին զգացումները եւ հոգեբանութիւնը այնչափ ճշգրտօրէն: Ժողովրդական երգերու իրական արժէքը հասկնալու համար նկատի ունենալու է միջավայրն եւ պայմանները, որոնցմէ անոնք ծնունդ առած են:

*Հայ ժողովրդական երգն* ալ հայ հովուական երաժշտութեան կենդանի պատմութիւնն է, ուր այնչափ պարզ, անմեղ եւ աննման կերպով ցոլացած են հայուն հոգին ու սիրտը:

Անոր ծագումը շատ հին է, ա՛յնչափ հին որչափ հայ լեզուն: Թէ

հեթանոսական շատ հին ժամանակներէ ի վեր, հայերն ալ ունէին մասնաւորապէս իրենց երաժշտութիւնը՝ ատոր ապացոյց են հետեւեալ պատմական իրողութիւնները. Աստուածներուն ուղղուած փառաբանութիւնները, հերոսներու յիշատակներուն ուղղուած գովքերը, հարսանիքը, խնճոյքները, յուղարկաւորութիւնները, կը կատարուէին երգերով, պարերով եւ նուագներով։

Նոյնը կը հաստատեն, պատմութեննէն մեզի իբր մնացորդ, Գողթան Երգերը, Գուսաներգութիւնները։ Ո՞վ չգիտեր Վահագնի նուիրուած զմայլելի *Երկնէր երկին*ը, Արտաշէս երկրորդի եւ Սաթենիկի նշանախօսութեան, հարսանիքի, մահուան վերագրուած դրուագները։

*Գուսան* բառը հին հայոց մէջ գործածուած է երեք իմաստներով. *երաժիշտ*, *երգիչ* եւ *դերասան*։

*Վարձակ* անունով կը կոչուէին երգչուհիները եւ պարուհիները, որոնք իրենց արուեստը կը գործածէին հրապարակային տեղերու եւ ապարանքներու մէջ։

Հայ հեթանոսական շրջանի գողթան երգերէն յետոյ, հայ գուսանին քնարը լռած էր, երկար տարիներ, գոնէ ըստ երեւոյթին։ Ատոր զօրաւոր պատճառն էր քրիստոնէութեան մուտքը հայոց մէջ։ Նոր կրօնի հիմնադիրները ջնջեցին, ոչնչացուցին, անմտօրէն այն բոլորը, ինչ որ հայ նախապատմական շրջանի քաղաքակրթութեան կենդանի եւ փառաւոր կեանքին կը վերաբերէր։ Հետեւաբար պէտք չէ զարմանալ թէ ինչո՞ւ ընդհանուր հալածանք մը սկսան ժողովրդական խաղերու, պարերու, աշխարհիկ երգերու եւ բանահիւսութեան դէմ։ Մեր եկեղեցական մատենագիրները կ'որակեն զանոնք տգեղ ածականներով, որպէս «հեթանոսական, դիւական, ամօթալի, մորոսական, գարշաբանական, եւն. եւն։» Դարձեալ՝ Խորենացին կը յանդիմանէ Արշակ թագաւորը, իր ժամանակը «ի զինէրբուս եւ յերգս վարձակաց» անցնելուն համար։ Փաւստոս Բիւզանդը կը կշտամբէ ազնուականները, որ զինի կը խմեն. «բոզօք, վարձակօք, գուսանօք եւ կատակօք»։

Հայ զինուորականները, վանքեր իջեւանելու պարագային, կ'ուրախանան եղեր եւ Ներսէս Շինող կաթողիկոսը կը գանգատի այդ առթիւ. «Գուսանօք եւ վարձակօք պղծեն զնուիրեալ ազգիս Աստուծոյ»։

Հակառակ այդ խիստ վերաբերումներուն, իբր ժամանակի մոլեռանդ հասկացողութիւն ժողովրդական տաղերգութիւնները շարունակած ըլլալու են ապրիլ, եկեղեցիի շրջափակէն դուրս, հայ աշխարհական բանահիւսներու շնորհիւ։ Ճիշդ է որ այդ մասին չունինք գրաւոր ապացոյցներ, ատոր պատճառն ալ այն է, որ ոչ ոք ուզած է զանոնք գրի առնելու գայթակղութիւնը յանձն առնուլ եւ եկեղեցական բանադրանքի ենթարկուիլ։ Այդ անորոշ եւ ամուլ շրջանը կը տեւէ մինչեւ ԺԳ դարու վերջերը, որ ատեն յանկարծ, ծայր կուտայ միջնադարեան շարան մը տաղերգութիւններու անակնկալ երեւումը, որով հիմը կը դրուի աշուղական զմայլելի դպրոցին, տոգորուած աշխարհիկ ոգիով եւ ըմբռնումովը։ Զարմանալին

հոն է որ բանաստեղծական այդ զուտ աշխարհիկ դպրոցը կ՚անիծուի հայ կրօնաւորներու միջոցաւ:

Հայ կրօնաւորը որ իր վանական խստըմբեր մթնոլորտին մէջ ապրած ու դաստիարակուած, մինչեւ այն ատեն գրիչը չէր շարժեր, աշխարհիկ պիղծ նիւթերու մասին, այդ թուականէն յետոյ կը զգայ իր մէջ բանաստեղծական անկաշկանդ հուրի սրբազան ներշնչումը, կը սկսի ազատ թափ ու թռիչ տալ իր վառ երեւակայութեան, իր մարդկային զգացումներուն, խիզախօրէն տաղերգելով բնութիւնը, հայրենի օճախը, պանդուխտին կարօտը, գարունը, վարդը, պլպուլը, զգացումներէն ամենէն ամբարիշտը – սեռային սէրն ու գեղեցկութիւնը:

Ցարդ ճանչցուած միջնադարեան աշուղներէն, ամենէն երէցը՝ Կոստանդին Երզնկացին է, կրօնաւոր մը, ապրած ԺԳ դարու վերջերէն մինչեւ ԺԴ դարու սկիզբները: Անկէ ետքը եկողներու մեծագոյն մասը եկեղեցականներ են, քահանայէ սկսեալ մինչեւ պատրիարք, կաթողիկոս: Կ՚արժէ յիշել հոս անոնցմէ ամենէն կարկառուն դէմքերը – Սիսի Յովհաննէս Թլկուրանցի, եւ Գրիգոր Աղթամարցի կաթողիկոսները, աննման Նահապետ Քուչակ, Մկրտիչ Նաղաշ, Ղազար Սեբաստացի, եւն. իբրեւ սիրոյ, գեղեցկութեան, տարօրինակօրէն գերազանց երգիչները:

Մեր մէջ, հնագոյն դարերէ ի վեր, մտաւորական զարգացած դասակարգը կը համարուէին կրօնաւորները. ուստի զարմանալի չէ, որ ամէն գրական ու մատենագրական շարժումը տեղի ունեցած ըլլայ անոնց ձեռքով: Այսպէս եղած է մինչեւ ԺԹ դարու սկիզբը, երբ առաջին անգամ ըլլալով, աշխարհական տարրը կը սկսի գերակշիռ հանդիսանալ:

Գեղարուեստը, գրականութեան հետ, ամենազօրաւոր ազդակներէն մէկն ըլլալով ազգի մը ինքնապահպանութեան եւ չափանիշը քաղաքակրթութեան եւ մշակոյթին՝ բնական է որ չպիտի անտեսուէր, մանաւանդ ԺԹ դարու վերածնութեան այս շրջանին: Ունեցանք ժողովրդական ինքնատիպ աշուղներ, ինչպէս Սայաթ Նովա, Շիրին, Ճիվանի եւ ուրիշներ:

Խօսքս վերջացնելէ առաջ ցաւով պիտի ըսեմ, թէ մեր յեղափոխական քառորդ դարու եւ մանաւանդ սահմանադրութեան այս մի քանի տարիներու պատկանած հայ ժողովրդական երգերը, գրեթէ առանց բացառութեան, անգոյն, տղայական եւ ինքնուրոյն նկարագրէ զուրկ են: Եկեղեցական ժամերգութիւններու եւ հոյակապ շարականներու հետ՝ գեղջուկ երգերն են միայն որոնք մասնաւոր ուշադրութեան եւ ուսումնասիրութեան արժանի են ու կարօտ: Մեր նախնիքներէն մեզի հասած ամենէն թանկագին աւանդն են անոնք, զուրգուրանքի եւ հպարտութեան առարկայ: Հոն կը տեսնուին ցայտուն կերպով հայուն ստեղծագործական ոգւոյն ու զգացումին հրաշալիօրէն վսեմ թռիչքն ու հոյակապ սլացքը: Հոն, վճիտ կերպով կ՚երեւի հայութիւնը իր անցեալ ու ներկայ բովանդակ կեանքովը:

*Ասպարէզ ժողովածու*, 1918, էջ 275-277

# ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ
# ԻՐ ԿԵԱՆՔՆ ՈՒ ԳՈՐԾԸ

Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ
Փարիզի Ազգ. Մեծ Օփէրայէն

Ժամանակէ մ'իվեր՝ Կոմիտաս Վարդապետի բարեբախտաբար բուժելի հիւանդութիւնը կը մտազբաղէ բովանդակ Հայութիւնը։ Ամեն կողմէ ցաւի, գուրգուրանքի եւ գնահատութեան հնչուն արտայայտութիւններ կ'ըլլան Հայութեան այս մեծ զաւկին հանդէպ։ Հայ ժողովուրդէ այս ինքնաբուղխ արտայայտութիւնները մասնաւոր ուշադրութեան արժանի են, զի անով նա, գործնական ժէսթով մը, կուգայ առնացիօրէն կից տալու «Գնա մեռիր, արի սիրեմ»-ի պատմական, դատապարտելի սովորութեանը։ Կոմիտաս Վարդապետ քառորդ դարու բեղմնաւոր գործունէութիւն մը ունեցած է հայ գեղարուեստական գետնին վրայ։ Տակաւին իր վերջին խօսքը ըսած չէ ան. հետեւաբար դեռ վաղ է՝ իր կեանքին եւ գործունէութեանը վրայ ամբողջական, բազմակողմանի վերլուծութիւն մ'ընել։ Ես՝ իբրեւ վաղեմի աշակերտ մը, շատ մօտէն ծանօթ իր գործին, իր կեանքին զանազան փուլերուն, խորունկ համակրութեամբ մը հետեւած եմ իր բոլոր ջանքերուն ու դժուարութիւններուն որոնք արուեստագէտին հետ մարդը, հա՛յ մարդը կը բնորոշեն միեւնոյն ատեն։

Ահա այդ ջանքերու եւ դժուարութիւններու եւ ատոնց հետ միասին իր կենսագրական թռուցիկ նօթերու մէկ համառօտ պատկերը կ'ուզեմ տալ *Կոչնակ*ի միջոցաւ ընթերցող հայ հասարակութեան։

Կոմիտաս Վարդապետ Փոքր-Ասիոյ Քէօթահիա կամ Կուտինայ քաղաքը ծնած է։ Տղայ հասակին մէջ – մօտ 19 տարեկան – թրքախօս քանի մը պատանիներու հետ կը ղրկուի Սբ. Էջմիածին, Գէորգեան Ճեմարան, Գէորգ Դ. Կաթողիկոսի օրով։ Պատանի Սողոմոն – վարդապետ ըլլալէ առաջ – ուշիմ, վառվռուն եւ քաղցր ձայնով օժտուած էր պզտիկուց։ Կաթողիկոսի մասնաւոր հոգածութեան տակ կարճ միջոցի մը մէջ կը սովորի պէտք եղած չափով հայերէն լեզուն ու անկէ յետոյ, իբր աշակերտ, կը հետեւի Ճեմարանի դասընթացքներուն։ Ինչպէս ամեն աշակերտ՝ Կոմիտաս վարդապետն ալ կ'ունենայ իր նախասիրած առարկան, բնական նախազգացումով մը կը հետեւի ու կը մշակէ, սիստեմաթիքաբար, հայ երաժշտութիւնը։ Պէտք չէ մոռնալ հետեւեալ երկու պատմական զօրաւոր եւ հիմնական փոփոխութիւններն ու դէպքերը, որ տեղի ունեցած էին իրմէ առաջ, եւ որոնք մեծապէս նպաստեցին Կոմիտաս Վարդապետի իմացական կարողութիւններու մշակումին, նկարագրի կազմութեան եւ երաժշտական բնատուր տաղանդի ընդլայնումին ու ձեւակերպումին։

Ա. – Ճեմարանը նկատուած էր՝ հայ կեանքին մէջ ամենամեծ հաստատու-

թիւնը, իր դասարանական եւ լսարանական ընթացքներովը. ունէր հարուստ գրադարան մը։ Ուսուցչական խումբը ամեն անգամ կազմուած էր ժամանակակից աչքառու համալսարանականներէ։ Ճեմարանի ոսկեդարեան շրջանին կը պատկանի Կոմիտաս Վարդապետը։

Բ. – Իրմէ ոչ շատ առաջ գաղափարական մեծ շարժում մը սկսած էր՝ յեղափոխելով ու կանոնաւոր հիմերու վրայ դնելով հայ երաժշտութիւնը։ Այդ կրկնակ ազգային, կրթական, կրօնական շարժումներու գլուխն ու հոգին եղաւ Գէորգ Դ. ազգասէր կաթողիկոսը, իրեն հետ ունենալով՝ իր ատենին հանրածանօթ երաժշտագէտ Նիկ. Թաշճեան։ Այսպէս պատմական այս մեծ դէմքերը դարձան 19-րդ դարու հայ եկեղեցական երաժշտութեան վերանորոգիչները, - նոր Սահակ-Մեսրոպներ։

1892-ի աշունին՝ հանգուցեալ Ներսէս եպիսկոպոս Խարախանեան, բարեբարս, զիս ղրկեց Ճեմարան ուսանելու. այդ թուականին՝ Կոմիտաս Վարդապետ Ճեմարանի լսարանական բաժնի վերջին դասընթացքին կը հետեւէր։ Յաջորդ տարին՝ հոգելոյս «Հայրիկ»-ը իր աքսորավայրէն՝ Երուսաղէմէն Սուրբ Էջմիածին ժամանեց, իբր տարի մը առաջ ընտրուած կաթողիկոս։ Անոր առաջին գործն եղաւ Սեդրակեան Սրբազանի՝ Ճեմարանի ազատամիտ եւ արդիւնաշատ վարչութեան տեղը կարգել Գասպարեան Եպիսկոպոսի – Կոստանեանի պահպանողական վարչութիւնը։ Կոմիտաս Վարդապետ, այս շրջանին առաջին անգամ լինելով, երաժշտութեան (հայ ձայնագրութեան) ուսուցիչ կը լինի Ճեմարանին, որուն աշակերտելու բախտն կ՚ունենամ՝ այժմ յայտնի երաժշտագէտ Գրիգոր Միրզայեանցի հետ։ Դժբախտարար Ճեմարանի խռովութիւնները վրայ կը հասնին – իբր արդիւնք պահպանողական խստըմբեր վարչական ռէժիմի, եւ մենք ուրիշ հարիւրի չափ խռովարարներու հետ կը հեռացուինք Ճեմարանէն, զինուորական հսկողութեան տակ։ Մեզմէ շատերս ընդունուեցանք Թիֆլիսի Ներսէսեան Դպրոցը։

Կոմիտաս Վարդապետի Ճեմարանի մէջ ունեցած պաշտօնավարութիւնը գրեթէ երկու տարի կը տեւէ։ Ան իր դասերէ դուրս՝ մէկ կողմէն կ՚ուսումնասիրէ հայ եւ արեւելեան երաժշտութիւնը եւ միւս կողմէն ալ հետամուտ կ՚ըլլայ հաւաքելու եւ ձայնագրելու ժողովրդական գեղջուկ երգերը։

Սակայն Կոմիտաս Վարդապետ իբր ժամանակակից լայն հասկացողութեամբ օժտուած՝ տաղանդաւոր, զօրաւոր նկարագիր ունեցող մարդ մը, չը պիտի բաւականանար սոսկ, հայ եւ արեւելեան սկզբնական երաժշտութեանց, միակողմանի, անկատար հանգամանքներով։ Ընդհակառակն՝ գործելու ու յառաջդիմութեան աստիճաններէն վեր մագլցելու, ազգին ու մարդկութեան օգտակար լինելու գերագոյն տենչը պիտի մղէր զինք իր մտաւորական, գեղարուեստական կարողութիւններն արտայայտելու եւ փայփայած երազներու իրականացման համար անհրաժեշտ միջոցներու մասին խորհելու։

1895-6 թուականը սեւ էջ մը կը բանայ հայ տարեգրութեան պատմութեան մէջ: Համիտեան կոտորածներու սարսափները ամեն խղճի ու զգացումի մարդուն արեան վազքը կը սառեցնեն: Հարիւր հազարի չափ Տաճկահայեր կը խուժեն Կովկաս՝ վախի, ցուրտի ու անօթութեան երեսէն: Վաղուց սկսուած ռուսական կեղծ, վտանգաւոր, նենգ կառավարութեան թշնամանքն բացայայտօրէն կ'երեւի Հայերուս դէմ ամեն ատենէ աւելի: Հայութիւնը երկու սուրի մէջ կը զգայ ինքզինքը, եւ բոպէին յատուկ յստակատեսութեամբ մը ձեռք կ'առնէ կտրուկ միջոցներ, ազգակործան այս անդունդէն, նեղ ճգնաժամէն ապահով դուրս գալու համար: Այս ըմբռնումով ալ միջնակարգ դպրոցներու շրջանաւարտներէն շատերը գունդ գունդ Ռուսաստան եւ Եւրոպա կը մեկնին բարձրագոյն ուսում ստանալու մտածողութեամբ: Այդ շրջանի ուսանողներու շարքին կը պատկանի Կոմիտաս Վարդապետ: Իբրեւ աշակերտ Պէրլինի քօնսէրվաթօրի փրօֆէսօր Շմիտին, կ'ուսանի երաժշտութեան Compositionի (երգահանութեան) մասը, իսկ միւս կողմէն կը հետեւի համալսարանի փիլիսոփայութեան դասընթացքներուն: Կոմիտաս Վարդապետ՝ նախապէս պատրաստուած ըլլալուն պատճառաւ էր որ կրցաւ չորս տարուայ կարճ ժամանակամիջոցի մը մէջ ուսումնասիրել երգահանութեան դժուարին ու նուրբ արուեստը, որուն տիրանալու համար տասնեակ տարիներու կը կարօտի բոլորովին սկսնակ մը: Ետքը տարիքը առած – մօտաւորապէս 25-26 տարեկան – մեկնեցաւ Եւրոպա, մինչդեռ այդ տարիքի մէջ դժուար է, գրեթէ անկարելի է ձեռք բերել երաժշտութեան արուեստը՝ մանաւանդ երգահանութիւնը, ըստ Ռուբէնշթայնի: Կոմիտաս Վրդ.ի աւարտական քննութիւնը, մանաւանդ թէզը՝ որ եթէ չեմ սխալիր, հայ երաժշտութեան մասին էր, մեծ աղմուկ հանեց իր ժամանակին Պէրլինի երաժշտական շրջանակներու մամուլին մէջ: Կոմիտաս Վարդապետ այսպէս իր վաղեմի երազներուն, փայփայած նպատակին հասնելէ ետքը, կը վերադառնայ՝ զօտեպնդուած, պատրաստ զինուորի մը պէս, կռուի դաշտը, ուր իրեն կ'սպասէին իր պաշտելի Էջմիածինն ու հայ ժողովուրդը - մանաւանդ գեղջուկը եւ վանական միաբանութիւնը: Ասպարէզը խիստ մեծ էր ու գործող ձեռքերու պէտքը չափազանց զգալի: Կոմիտաս Վարդապետ կուզար եւրոպական գիտութեամբ օժտուած, գաղափարի ճշմարիտ առաքեալի մը գիտակցութեամբ, մեծ չափով բաւարարութիւն տալու այդ պէտքին:

* * *

Հայ հեթանոսական շրջանը ընդհանուր առումով նշանաւոր եղաւ իր գողթան երգերովը: Ասոնցմէ եւ ո՛չ մէկը մեր ձեռքը պիտի հասնէր եթէ չունենայինք Խորենացի մը, Մուշեցի մեծ քերթողահայրը: Քրիստոնէութեան մուտքը վնասակար եղաւ ժողովրդական բանահիւսութեան, երաժշտութեան հայեցակէտէն: Երկար դարեր՝ հայ գուսանին քնարը լռած կը թուէր, գէթ ըստ երեւոյթին:

Նոր կրօնի հիմնադիրները մոլեռանդաբար – իբրեւ ժամանակի նեղ հասկացողութիւն – հալածեցին, ոչնչացուցին, բանադրեցին այն բոլորը՝ որոնք հին

բնատոհմիկ քաղաքակրթութեան փառաւոր ու կենդանի կեանքին կը պատկանէին, այսինքն շարժում մը սկսաւ աշխարհիկ պարերու, խաղերու, երգերու, մէկ խօսքով ընդհանուր բանահիւսութեան դէմ։ Սակայն հակառակ այդ բոլոր խստութիւններուն՝ ժողովուրդը կորովի ընդվզումով մը, մանաւանդ միջին դարերուն, տարօրինակ թափ ու թռիչք տուաւ իր բանաստեղծական երեւակայութեան, իր մարդկային զգացումներուն, խիզախօրէն տաղերգելով բնութիւնը, հայրենի օճախը, պանդուխտին կարօտը, գարունը, վարդը, պլպուլը, մէկ խօսքով կրօնականներէն «աշխարհիկ», «պիղծ» համարուածները...։ Մեր մէջ հնագոյն դարերէ ի վեր, մտաւորական առանձնաշնորհեալ դասակարգը կը համարուին հոգեւորականները. ուստի զարմանալի չէ որ հայ պատմական կեանքի բոլոր շրջաններու գրական-մատենագրական շարժումները տեղի ունեցած լինին անոնցմով։ ԺԹ. դարը կուգայ ու վերջ մը կը դնէ կրօնական դասակարգի առանձնաշնորհեալ տիրապետութեան եւ առաջնութեան։ Այս դարու հայ իմացական, գեղարուեստական կեանքի վերածնութիւնը տեղի կ'ունենայ աշխարհականներու ձեռքովը, եւրոպական հասկացողութեամբ եւ գործելակերպովը։ Ունեցանք շարան մը նոր գուսաներգողներ, ինչպէս Սայաթ Նովա, Շիրին, Ջիվանի, Գամառ-Քաթիպա եւն. եւն., իբրեւ շարունակութիւն միջնադարեան աշուղներու. իսկ եւրոպական ըմբռնումով՝ Կարա-Մուրզա, Նիկ. Տիգրանեան, Մ. Եկմալեան, Կորգանեան – մասամբ մը – եւ վերջապէս ամենէն բարձր՝ իր բանասիրական-գիտական կարողութեամբն ու տաղանդովը մեր ամենքէն պաշտելի Կոմիտաս Վարդապետը։

*Կոչնակ*, 30 *Օգոստոս* 1919, *ԺԹ. տարի*, *Թիւ* 35, *էջ* 1115-1117

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԸ

Ա. ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆ

Հայ ժողովրդական երգը Հայ Հովուական երաժշտութեան կենդանի պատմութիւնն է, որ այնչափ պարզ, անմեղ եւ աննման կերպով ցոլացուցած է Հայուն հոգին ու սիրտը։

Անոր ծագումը չատ հին է, ա՜յնչափ հին որքան հայ լեզուն։ Թէ հեթանոսական շատ հին ժամանակներէ ի վեր, Հայերն ալ ունէին մասնաւորապէս իրենց երաժշտութիւնը՝ ատոր ապացոյց են հետեւեալ պատմական իրողութիւնները, հերոսներու յիշատակներուն փառաբանութիւնները, հերոսներու յիշատակներուն ուղղուած գովքերը, հարսանիքը, խնջոյքները, յուղարկաւորութիւնները, կը կատարուէին երգերով, պարերով եւ նուագներով։

Նոյնը կը հաստատեն, պատմութենէն մեզի իբր մնացորդ Գողթան երգերը,

Գուսաներգութիւնները։ Ո՞վ չգիտեր Վահագնի նուիրուած զմայլելի *Երկնէր երկին եւ երկիր*ը, Արտաշէս երկրորդի եւ Սաթենիկի նշանախօսութեան, հարսնիքի եւ մահուան վերագրուած դրուագները։

Գուսան բառը հին Հայոց մէջ գործածուած է երեք իմաստներով, երաժիշտ, երգիչ եւ դերասան։

Վարձակ անունով կը կոչուէին երգչուհիները եւ պատումները, որոնք իրենց արուեստը ի գործ կը դնէին հրապարակային տեղերու եւ ապարանքներու մէջ։

Հայ հեթանոսական շրջանի Գողթան երգերէն յետոյ, հայ գուսանին քնարը լռած էր, երկար տարիներ, գոնէ ըստ երեւոյթին։ Ատոր զօրաւոր պատճառն էր Քրիստոնէութեան մուտքը Հայոց մէջ։ Նոր կրօնի հիմնադիրները ջնջեցին, ոչնչացուցին, անմտօրէն այն բոլորը, ինչ որ հայ նախապատմական շրջանի քաղաքակրթութեան կենդանի եւ փառաւոր կեանքին կը վերաբերէր։ Հետեւաբար պէտք չէ զարմանալ թէ ինչո՞ւ ընդհանուր հալածանք մը սկսած է ժողովրդական խաղերու, պարերու, աշխարհիկ երգերու եւ բանահիւսութեան դէմ։ Մեր եկեղեցական մատենագիրները կ'որակեն զանոնք տգեղ ածականներով, որպէս «հեթանոսական, դիւական, ամօթալի, մորոսական, զարշաբանական, եւն. եւն.» Դարձեալ՝ Խորենացին կը յանդիմանէ Արշակ թագաւորը, իր ժամանակը «Ի զիներբուս եւ յերգս վարձակաց» անցընելուն համար։ Փաւստոս Բիւզանդ կը կշտամբէ ազնուականները, որ գինի կը խմեն. «Բողոք, վարձակօք, գուսանօք եւ կատակօք»։

Հայ զինուորականները, վանքեր իջեւանելու պարագային, կ'ուրախանան եղեր եւ Ներսէս Շինող կաթողիկոսը կը գանգատի այդ առթիւ, «գուսանօք եւ վարձակօք պղծեն զնուիրեալ տեղիս Աստուծոյ։»

Հակառակ այդ խիստ վերաբերումներուն, իբր ժամանակի մոլեռանդ հասկացողութիւն, ժողովրդական տաղերգութիւնները շարունակած են ապրիլ եկեղեցիի շրջափակէն դուրս, հայ աշխարհական բանահիւսներու շնորհիւ։ Ճիշտ է որ այդ մասին չունինք գրաւոր ապացոյցներ, ատոր պատճառն ալ այն է որ ոչ ոք ուզած է զանոնք գրի առնելու գայթակղութիւնը յանձն առնուլ եւ եկեղեցական բանադրանքի ենթարկուիլ։ Այդ անորոշ եւ ամուլ շրջանը կը տեւէ մինչեւ ԺԳ. դարու վերջերը, երբ յանկարծ, ծայր կուտայ միջնադարեան կարգ մը տաղերգութիւններու անակնկալ երեւումը, որով հիմը կը դրուի աշուղական զմայլելի դպրոցին, տոգորուած աշխարհիկ ոգիով եւ ըմբռնումով։ Զարմանալին հոն է որ բանաստեղծական այդ զուտ աշխարհիկ դպրոցը կ'անիծուի հայ կրօնաւորներու միջոցաւ։

Հայ կրօնաւորը որ իր վանական խստաբեր մթնոլորտին մէջ ապրած ու դաստիարակուած, մինչեւ այն ատեն գրիչը չէր շարժեր, աշխարհիկ պիղծ նիւթերու մասին, այդ թուականէն յետոյ կ'զգայ իր մէջ բանաստեղծական անկաշկանդ հուրի սրբազան ներշնչումը, կ'սկսի ազատ թափ ու թռիչ տալ իր վառ

երեւակայութեան, իր մարդկային զգացումներուն, խիզախօրէն տաղերգելով բնութիւնը, հայրենի օճախը, պանդուխտին կարօտը, գարունը, վարդը, պլպուլը, զգացումներէն ամէնէն ամբարիշտը, սեռային սէրն ու գեղեցկութիւնը:

Յարդ ճանչցուած միջնադարեան աշուղներէն, ամէնէն երէցը՝ Կոստանդին Երզնկացին է, կրօնաւոր մը, ապրած ԺԳ. դարու վերջերէն մինչեւ ԺԴ. դարու սկիզբները: Անկէ ետք եկողներու մեծագոյն մասը եկեղեցականներ են, քահանայէ սկսեալ մինչեւ պատրիարք, կաթողիկոս: Կ'արժէ յիշել հոս անոնցմէ ամէնէն կարկառուն դէմքերը – Սիսի Յովաննէս Թլկուրանցի, եւ Գրիգոր Աղթամարցի կաթողիկոսները, աննման Նահապետ Քուչակ, Մկրտիչ Նաղաշ, Ղազար Աեբաստացի, եւն. իբրեւ սիրոյ, գեղեցկութեան, տարօրինակօրէն գերազանց երգիչները:

Մեր մէջ, հնագոյն դարերէ ի վեր, մտաւորական զարգացած դասակարգը կը համարուէին կրօնաւորները. ուստի զարմանալի չէ, որ ամէն գրական ու մատենագրական շարժում տեղի ունեցած ըլլայ անոնց ձեռքով: Այնպէս եղած է մինչեւ ԺԹ. դարու սկիզբը, երբ առաջին անգամ ըլլալով աշխարհական տարրը կը սկսի գերակշիռ հանդիսանալ:

Գեղարուեստը, գրականութեան հետ, ամենազօրաւոր ազդակներէն մին ըլլալով, ազգի մը ինքնապաշտպանութեան, եւ չափանիշը քաղաքակրթութեան եւ մշակոյթին՝ բնական է որ չպիտի անտեսուէր, մանաւանդ ԺԹ. դարու վերածնութեան այս շրջանին: Ունեցանք ժողովրդական ինքնատիպ աշուղներ, ինչպէս Աայեաթ Նովա, Շիրին , Ջիվանի եւ ուրիշներ:

Խօսքս վերջացնելէ առաջ ցաւով պիտի ըսեմ, թէ մեր յեղափոխական քառորդ դարու եւ մանաւանդ սահմանադրութեան այս մի քանի տարիներու պատկանած հայ ժողովրդական երգերը, գրեթէ առանց բացառութեան, անգոյն, տղայական եւ ինքնուրոյն նկարագրէ զուրկ են: Եկեղեցական ժամերգութիւններու եւ հոյակապ շարականներու հետ՝ գեղջուկ երգերն են միայն որոնք մասնաւոր ուշադրութեան եւ ուսումնասիրութեան արժանի են ու կարօտ: Մեր նախնիքներէն մեզի հասած ամէնէն թանկագին աւանդն են անոնք, զուրգուրանքի եւ հպարտութեան առարկայ: Հոն կը տեսնուին ցայտուն կերպով, Հայուն ստեղծագործական ոգւոյն ու զգացումին հրաշալիօրէն վսեմ թռիչքն ու հոյակապ սլացքը: Հոն, վճիտ կերպով կ'երեւի Հայութիւնը իր անցեալ եւ ներկայ բովանդակ կեանքովը:

*Լուսաւ*, 16 *Դեկտեմբեր* 1919, *Գ. տարի*, *Թիւ* (4) 10, *էջ* 182-184

# ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ
## Իր կեանքն ու գործը
## Բ.

Ա. ՇԱՀ-ՄՈՒՐԱՏԵԱՆ

Նախորդ յօդուածով, ըսինք արդէն անցողակի կերպով, թէ մեր քաղաքական, իմացական եւ գեղարուեստական կեանքի վերածնութիւնը կ'սկսի 19-րդ դարուն, Հայութեան երկու մեծ հատուածներու մէջ՝ գրեթէ քառորդ դարու զանազանութեամբ։

Արեւելահայութեան ազգային այս մեծ շարժումը – քառասնական թուականներուն սկսած – հսկայական համեմատութիւններու յանգեցաւ, խիստ կարճ ժամանակամիջոցի մը մէջ։

Ճիշտ է որ ատոր մեծաւ մասամբ սատարեցին համեմատաբար, քաղաքական նպաստաւոր հանգամանքներ, սակայն, ճիշտ է նաեւ թէ Արեւելահայ մտաւորականներու շատերը ի դարձին Գերմանիայէ եւ Ռուսաստանէ, բոլորովին նոր թափով մը եւ գաղափարականութեամբ զօտեպնդուած, ժողովրդական մօտիւներու հետ խառնեցին, ձուլեցին, իրենց հետ բերած եւրոպական նոր նոր գաղափարները եւ այդպիսով հիմը դրին, բնատոհմիկ գրականութեան մը եւ գեղարուեստին։

Անոնք լաւ կերպով ըմբռնած էին թէ ճշմարիտ, ազգային գրականութեան ու գեղարուեստի աղբիւրը, ակը՝ ինքն իսկ ժողովուրդն է, իր դարաւոր՝ հոգեկան, զգայական, իմացական եւ քաղաքական կեանքի տուիքներովը, իր գունակ գունակ ապրումներովը, գեղջուկ երգերովը, հէքեաթներովը, աւանդավէպերովը, եւն. եւն., այն ամէն բաներովը, որ ցեղային դրոշմը կը կրեն։ Բնականաբար, այդ ըմբռնումով յղացուած, ձեւուած ու կերտուած գրական-գեղարուեստական մթնոլորտ մը, կեանք մը՝ պիտի հասցնէր, իւրաքանչիւր սեռի յատուկ ներկայացուցիչներ։

Այսպէս, Կոմիտաս Վարդապետ՝ Էջմիածին – ճեմարան վերադարձին, իր առջեւ գտաւ պատրաստ գետին մը գործելու ու շարունակելու իր նախորդներուն սկսած գործը։

Կարա-Մուրզան եւ Մ. Եկմալեանն եղան գլխաւորաբար մեր եկեղեցական եւ մանաւանդ ժողովրդական երգերու ուսուցման ու տարածման նախակարապետները։ Առաջինը՝ նմանը չը տեսնուած փութկոտութեամբ մը ու ոգեւորութեամբ մը քառաձայն երկսեռ երգեցիկ խումբեր կազմակերպեց կովկասահայ մեծ ու փոքր կեդրոններու մէջ. իսկ վերջինը՝ Թիֆլիս, Ներսէսեան դպրանոցի մէջ, որուն նմանը չը տեսնուած աշակերտական քառաձայն խումբը կուզար բովանդակ ռուսական կայսրութեան լաւագոյն chorusներէն մին ըլլալու։

Կոմիտաս Վարդապետի այս շրջանի գործունէութիւնը՝ - Կովկաս, Եւրոպա, Պոլիս – բազմակողմանի պատկեր մը կը ներկայացնէ՝ կրթական, բանասիրական, գիտական եւ ազգագրական տեսակէտներով: Նախ իբրեւ երաժշտութեան ուսուցիչ Ճեմարանի, ընդհանուր աշակերտութեան, հայկական եւ եւրոպական ձայնագրութիւններ ուսուց: Անոնցմէ քառաձայն խումբ մը պատրաստեց, ինչպէս եւ նուագախումբ մը, պէտք եղած նուագարանները բերել տալով:

Ճեմարանի ուսուցիչ՝ Պր. Մանուկ Աբեղեանի գործակցութեամբ կազմեց ժողովրդական երգարան մը *Հազար ու մի խաղ* անունով, որու առաջին եւ երկրորդ յիսնակներն միայն երեւցած են ցարդ: Բոլոր այդ ժողովրդական երգերը, իրենց յատուկ եղանակներն ունին, ըստ հեղինակներու:

Կոմիտաս Վարդապետի ընդհանուր գործունէութիւնը եթէ թոյլ տրուի վերլուծութեան մ'ենթարկել, կամ քննադական մաղէ մ'անցնել, պիտի տեսնենք որ մեր հին, կրօնական երաժշտութեան, խաղերու եւ մանաւանդ ժողովրդական, գեղջկական ուսումնասիրութեանց մէջ ցոյց տուած տաղանդն ու ձեռնհասութիւնը զուտ բանասիրական – գիտական մեթոտով – կը կազմեն իր գործունէութեան աղն ու ծուծը եւ որուն կը պարտի այսօր իր հռչակն ու ժողովրդականութիւնը: Ասոնց մասին, կ'արժէ, ուրեմն, առանձնապէս ծանրանալ յետոյ, իր ատենին:

Կոմիտաս Վարդապետ – Եւրոպա գնալէ առաջ ու յետոյ – չը բաւականալով՝ Էջմիածին եկող, արեւելահայ ու արեւմտահայ գաւառացիներէն, ձայնագրած ժողովրդական երգերէն, յաճախ խուզարկու հնագէտի մը պէս, միայնակ, իբրեւ bagage առատ թուղթ ու մատիտ առնելով իր հետ, շրջած է արարատեան նահանգի շատ մը հայ գիւղերն ու քաղաքները, հայ պարզուկ գեղջուկի առից տակը, թոնիրին շուրջը, բնութեան ազատ գրկին, կալերուն մէջ. պարել ու երգել տուած է հայ աւանդապահ մամիկին ու պապիկին, պարզուկ շինականին ու շինականուհիին, քաղցրազրուցիկ խաղզեռներուն, հովուին ու հովուուհիին, ձայնագրելով զանոնք ու ուշի ուշով զննելով, իւրաքանչիւրին ձայնին շեշտը, դէմքի, աչքերու բոլոր արտայայտութիւնները, մարմնոյ՝ հուժկու ու կեանքոտ շարժ ու ձեւերը, որոնց իւրաքանչիւրը պատմութիւն մը, դէպք մը, յիշատակ մը, զգացում մը – սիրոյ կամ տառապանքի, հերոսութեան կամ դժբաղդութեան – ունին իրենց մէջ ծրարուած: Նա այս միջոցներով կրցած է մեր աւանդապահ գեղջուկին հոգիէն ու սրտի խորերէն, մոռացութեան փլատակներէն լոյս աշխարհ հանել՝ ձայնագրել՝ գութաներգեր, խաղերգեր, անէծքի երգեր, օրհներգեր, պանդուխտի երգեր, սիրերգեր, տաղեր, եւն. եւն., որոնց ամբողջութիւնը կը կազմէ, մեր ժողովուրդի համայնական երաժշտութեան կենդանի պատմութիւնը, հեղինակն լինելով բուն իսկ ժողովուրդը: Անոնք արդիւնք են համայնական զգացումի մը եւ պտուղը՝ հաւաքական ստեղծագործութեան մը:

Կոմիտաս Վարդապետ Կովկասահայութեան փափաքին գոհացում տալու

մտքով, իր աշակերտական քառաձայն խումբովը քանի մը նուագահանդէսներ տուաւ Թիֆլիս, Պագու։ Սակայն հակառակ այնչափ խանդավառ ընդունելութեան եւ սպասումներու ակնկալուած յաջողութիւնը չը գտաւ։ Լսենք այդ մասին մեր համբաւաւոր երգուհի Օր. Մարգարիտ Բաբայեան.-

«Այստեղ թոյլ եմ տալիս մի քանի նկատողութիւն անելու Կոմիտաս Վարդապետին, այդ անցած շրջանի մասին, որ լինելով դեռ շտեմարանական, նրա արտադրութիւնը դեռ կատարելապէս ժողովրդական չէ։ Պարզ է դրա պատճառը։ Որովհետեւ ան խորապէս տարուած լինելով գերման մեծ վարպետներու երկերով, ի հարկէ երազում էր նոյնանման հոյակապ ստեղծագործութիւնների մասին եւ մեր արուեստին համար։ Իր առաջին խմբական (choral) երգերը, թէեւ ամէն քիչ թէ շատ հասկացող երաժիշտի կարող են հիացում պատճառել, իրենց կառուցւածքի (structure) կատարելութեամբ, զարմանալի ներդաշնակ combinaison-ներով, բազմաթիւ երկրորդական ձայների, եղանակին սրամիտ variante-ներով բայց իրենց ամբողջութեան մէջ, նրանք գալիս խեղդում էին, պարզ գեղջկական երգը կամ եկեղեցական եղանակը եւ այդպիսով լսողը կրում էր այդ գերմանական երաժշտութեան ազդեցութիւնը, որ այնքան հեռու է մեր քնքոյշ, մելամաղձոտ, տարօրինակ, երազուն եւ իտէալական երաժշտութիւնից։ Այդ իսկ պատճառով, վարդապետին առաջին համերգները, Թիֆլիս ու Պագու, շատ սպասուած ու շատ աղմուկ հանած, այն կատարեալ ժողովրդականութիւնը չէին կարող տալ մեր մեծ երաժիշտին՝ ինչ որ նա վայելում է այժմս հասնելով ինքնուրոյնութեան գագաթնակէտին։»

*Ա. Շահ-Մուրատեան*, «*Կոմիտաս վարդապետ. իր կեանքն ու գործը, Բ.*», *Կոչնակ Հայաստանի*, 7 *Փետրուար* 1920, *Ի. տարի*, *Թիւ* 6, *էջ* 178-180

# ԵՐԳԱՑԱՆԿ

## ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒՈՎ

### ՄԵՆԵՐԳՆԵՐ

#### 1. ԵՐԳԵՐ ԵՒ ՌՈՄԱՆՍՆԵՐ

Բարսեղ Կանաչեան, *Օրօր*
Կոմիտաս վարդապետ, *Ալագեազ սարն ամպել ա / Խնկի ծառ*
Կոմիտաս վարդապետ, *Այսօր ձայնն հայրական*
Կոմիտաս վարդապետ, *Անտունի*
Կոմիտաս վարդապետ, *Արօր, տատրակ*
Կոմիտաս վարդապետ, *Բամբ որոտան*
Կոմիտաս վարդապետ, *Գարուն ա, ձուն ա արել*
Կոմիտաս վարդապետ, *Գետ մի զարհուրիր*
Կոմիտաս վարդապետ, *Գնաց զարուն, եկաւ աշուն*
Կոմիտաս վարդապետ, *Գութաներգ*
Կոմիտաս վարդապետ, *Երեւան բաղ եմ արել*
Կոմիտաս վարդապետ, *Երկինքն ամպել ա*
Կոմիտաս վարդապետ, *Զինչ ու զինչ*
Կոմիտաս վարդապետ, *Էս գիշեր*
Կոմիտաս վարդապետ, *Լուսնակն անուշ*
Կոմիտաս վարդապետ, *Կանչէ, կռունկ*
Կոմիտաս վարդապետ, *Կուժն առա / Գնա, գնա*
Կոմիտաս վարդապետ, *Կռունկ*
Կոմիտաս վարդապետ, *Հաբրբան*
Կոմիտաս վարդապետ, *Հայաստան*
Կոմիտաս վարդապետ, *Հայրիկ, հայրիկ, քո հայրենիք*
Կոմիտաս վարդապետ, *Հով արէք, սարեր ջան*
Կոմիտաս վարդապետ, *Չիզ տու քաշի*
Կոմիտաս վարդապետ, *Մոկաց Միրզա*
Կոմիտաս վարդապետ, *Շողեր ջան*
Կոմիտաս վարդապետ, *Ով զարմանալի*
Կոմիտաս վարդապետ, *Սարերի վրով գնաց*
Կոմիտաս վարդապետ, *Քէլէ, քէլէ*
Դանիէլ Ղազարեան, *Անուշ գարուն*

Ռոմանոս Մելիքեան, *Աշուն*
Ռոմանոս Մելիքեան, *Ես բլբուլ եմ*
Ռոմանոս Մելիքեան, *Մի լար*
Ռոմանոս Մելիքեան, *Պինկէօլ*
Ռոմանոս Մելիքեան, *Սեւ կաքաւիկ*
Ռոմանոս Մելիքեան, *Վայրի ծաղիկ*
Ռոմանոս Մելիքեան, *Վարդը*
Միքայէլ Միրզայեան, երգ
Տիգրան Չուխաճեան, *Ո՜հ, ինչ անուշ*
Արա Պօյաճեան, *Գարուն*
Արա Պօյաճեան, *Գնաց աշուն*
Վարդան Սարգսեան, երգ
Գրիգոր Սինի, *Հէ՜յ կաքաւիկ*
Գրիգոր Սինի, *Հոգիս մրմուռ*
Գրիգոր Սինի, *Սարեր*
Գրիգոր Սինի, *Սարերի հովին*
Ալեքսանդր Սպենդիարեան, *Այ վարդ*
Վաղարշակ Սրուանձտեանց, *Ալագեազ բարձր սարին*
Վաղարշակ Սրուանձտեանց, *Նոր ալագեազ*
Վաղարշակ Սրուանձտեանց, *Տըլէ եաման*
Անուշաւան Տէր-Ղեւոնդեան, *Ծաղկաց մտայ*
Փրօֆֆ-Գալֆայեան, *Ապրի Հայաստան*
Փրօֆֆ-Գալֆայեան, *[Երգ հայրենիքի մասին]*
Փրօֆֆ-Գալֆայեան, *Նոր օրօր*
Փրօֆֆ-Գալֆայեան, *Օրօր*
*Արաքսի արտասուքը* («Մայր Արաքսի»)
*Արիք հայեր*
*Գեղեցիկ հոտաւէտ*
*Դու զով խնդրես*
*Երազ* («Ես լսեցի մի անոյշ ձայն»)
*Թող չերգէ բլբուլ*
*Խաւարել եմ*
*Կիլիկիա* («Երբոր բացուին»)
*Հայրիկ, հայրիկ, քո հայրենեաց*
*Հերի՛ք, որդեակ*
*Հէրիք ալ հայեր*
*Ձայն տուր, ո՛վ ծովակ*
*Սարերի հովին մեռնիմ*

*Սարերը ման եմ եկել*
*Սիրուհիս*
*Տէր, կեցո դու զհայս*
*Տույ տույ*

### 2. ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԵՐԳԵՐ
Մակար Եկմալեան, Պատարագ, *Հայր մեր*
Մակար Եկմալեան, Պատարագ, *Ամէն. Հայր սուրբ*
Մակար Եկմալեան, Պատարագ, *Օրհնեալ է Աստուած. Քրիստոս պատարագեալ*
Մակար Եկմալեան, Պատարագ, *Սուրբ, սուրբ*
Փրօֆֆ-Գալֆայեան, Պատարագ, մեներգային բաժինը
Պատարագ, *Ամենակալ*
Պատարագ, *Խորհուրդ խորին*
Պատարագ, *Հայր մեր*
Պատարագ, *Տէր ողորմեա*
*Անսկիզբն, էակից*
*Յիշեսցուք ի գիշերի*
*Ուրախ լեր, սուրբ եկեղեցի*
*Տարածեալ*
*Տիրամայրն կայր հանդէպ խաչին*

### ԶՈՒԳԵՐԳՆԵՐ
Կոմիտաս վարդապետ, *Ալ այլուղս* (սոփրանօ եւ թենոր)
Կոմիտաս վարդապետ, *Հաբրբան* (սոփրանօ եւ թենոր)
Ռոմանոս Մելիքեան, *Ուռենի* (քոնթրալթօ եւ թենոր)
Արա Պօյաճեան, *Գնաց աշուն* (քոնթրալթօ եւ թենոր)

## ՕՏԱՐ ԼԵԶՈՒՆԵՐՈՎ

### ՕՓԵՐԱ
Charles Gounod: *Faust*

### ՄԵՆԵՐԳՆԵՐ
### 1. ՕՓԵՐԱՅԻ ԱՐԻԱՆԵՐ
Hector Berlioz: *La Damnation de Faust*, ‘...’
Georges Bizet: *Carmen*, ‘La fleur que tu m’avais jetée’
Georges Bizet: *Les Pêcheurs de perles*, ‘Je crois entendre encore’

Luigi Cherubini: *Les Abencérages*, ‘Suspendez à ces murs mes armes’
Gaetano Donizetti: *L’elisir d’amore*, ‘Una furtiva lagrima’
Gaetano Donizetti: *Lucie de lammermoor*, ‘...’
Christoph Willibald Gluck: *Armide*, ‘Sommeil de Renaud’
Christoph Willibald Gluck: *Iphigénie en Tauride*, ‘...’
Fromental Halévy: *La Juive*, ‘...’
Édouard Lalo: *Le Roi d’Ys*, ‘...’
Ruggero Leoncavallo: *Pagliacci*, ‘...’
Jules Massenet: *Hérodiade*, ‘...’
Étienne Méhul: *Joseph*, ‘Vainement Pharaon’
Étienne Méhul: *Joseph*, ‘Champs paternels, Hébron, douce vallée’
André Messager: *Fortunio*, ‘La maison grise’
Wolfgang Amadeus Mozart: *Don Giovanni*, ‘...’
Giacomo Puccini: *Tosca*, ‘E lucevan le stelle’
Ernest Reyer: *Sigurd*, ‘...’
Camille Saint-Saëns: *Samson et Dalila*, ‘...’
Ambroise Thomas: *Mignon*, ‘...’
Giuseppe Verdi: *Don Carlos*, ‘...’
Carl Maria von Weber: *Der Freischütz*, Ա. արարի Մաքսի արիան

**2. ԵՐԳԵՐ ԵՒ ՌՈՄԱՆՍՆԵՐ**

Herman Bemberg: *Chant hindou*
Léo Delibes: *Arioso*
César Franck: *La Procession*
Tommaso Giordani: *Caro mio ben*
Alexander Grechaninov: *Berceuse*
Reynaldo Hahn: *Chanson grise*
Reynaldo Hahn: *L’Heure exquise*
Reynaldo Hahn: *Paysage*
George Frideric Handel: *Largo*
Édouard Lalo: *Sérénade*
Xavier Leroux: *Le Nil*
Jules Massenet: *Élégie* (‘Ô, doux printemps d’autre fois’)
René Rabey: *Tes yeux!*
Nikolai Rimsky-Korsakov, ...
Claude Joseph Rouget de Lisle: *La Marseillaise*
Camille Saint-Saëns: *La Cloche*
Pyotr Tchaikovsky: *Déception*

Francesco Paolo Tosti: *Good-Bye*

### 3. ՕՐԱԹՈՐԻՈՆԵՐ
Georg Frideric Handel: *Messiah*, ‘Comfort ye’ (ֆրանսերէն)
Georg Frideric Handel: *Messiah*, ‘Every valley’ (ֆրանսերէն)

### ԶՈՒԳԵՐԳՆԵՐ
Claude Joseph Rouget de Lisle: *La Marseillaise* (սոփրանօ եւ թենոր)
Agostino Steffani: *Forma un mare* (մեծծօ-սոփրանօ եւ թենոր)
Agostino Steffani: *Lungi dell’ idol* (մեծծօ-սոփրանօ եւ թենոր)

### ՕՓԵՐԱՅԻ ՏԵՍԱՐԱՆՆԵՐ
Arrigo Boito: *Mefistofele*, Տեսարան, Ա. արար (թենոր եւ պաս)
Alfred Bruneau: *L’Attaque du moulin*, Տոմինիքի դերերգը, Բ. արար (սոփրանօ եւ թենոր)
Gaetano Donizetti: *Lucie de lammermoor*, ‘Bientôt l’herbe des champs croîtra’ (թենոր, պարիթոն եւ երգչախումբ)
Christoph Willibald Gluck: *Armide*, Ռընոյի դերերգ, Ե. արար (թենոր եւ երկու սոփրանօ)
Charles Gounod: *Roméo et Juliette*, Տեսարան, Գ. արար (սոփրանօ եւ թենոր)
Jules Massenet: *Werther*, Տեսարան, Գ. արար (թենոր եւ մեծծօ-սոփրանօ)
Étienne Méhul: *Joseph*, Տեսարան, Ա. արար (սոփրանօ եւ երկու թենոր)
Modest Mussorgsky: *Boris Godunov*, Կեղծ Տիմիթրիի դերերգ, Գ. արար (մեծծօ-սոփրանօ, թենոր եւ պաս)
Camille Saint-Saëns: *Samson et Dalila*, Տեսարան, Բ. արար (մեծծօ-սոփրանօ եւ թենոր)
Giuseppe Verdi: *Aida*, Ռատամէսի դերերգ, Ա. արար (սոփրանօ, մեծծօ-սոփրանօ եւ թենոր)
Richard Wagner: *Maîtres chanteurs*, Quintette

# ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ *ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

## 2016

Յաւելուած Ա.
*Չորս հարցազրոյց Հրանդ Տինքի հետ* (59 էջ)

Յաւելուած Բ.
Հայր Լեւոն Զէքիեան, *Մեծ Եղեռնի հարիւրամեակ՝ յիշողութիւն եւ մարտահրաւէր (դասախօսութիւն)* (40 էջ)

Յաւելուած Գ.
*Թէոդիկի նամակները Արարատ Քրիսեանին*, խմբագիր՝ Հ. Աւագեան (61 էջ)

Յաւելուած Դ.
Հայկ Աւագեան, *Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ հայոց ցեղասպանութիւնը. մարքսիսթական-անարշիսթական ընթերցում մը* (202 էջ)

## 2017

Յաւելուած Ե.
*Papasian & Co. երաժշտական ընկերութիւնը (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան (317 էջ)

Յաւելուած Զ.
*Աղեքսանդրիոյ հայկական երաժշտական կեանքի ուրուագիծ (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան (201 էջ)

Յաւելուած Է.
*Խմբավար եւ երաժշտահան Հայկ Սարգիսեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան ուրուագիծ (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան (561 էջ)

Յաւելուած Ը.
*Դաշնակահար եւ մանկավարժ Նուարդ Տամատեանի կեանքի ուղեգրութիւնը (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան (546 էջ)

Յաւելուած Թ.
*Ուրուագիծ Գոհար Գասպարեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան (1940-1948)*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (88 էջ)

Յաւելուած Ժ.
*Տիրան Կարապետեան. յօդուածներ իր մասին, նկարներու ալպոմ (ծննդեան 135-ամեակին առիթով),* հաւաքեց՝ Հ. Աւագեան (73 էջ)

Յաւելուած ԺԱ.
*Վանիա Էքսէրճեան. բազմերանգ աշխարհ մը համակ կենսունակութեամբ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (53 էջ)

## 2018

Յաւելուած ԺԲ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Ա.- Հայկ Աւագեան, *Արփիար Արփիարեանի սպանութիւնը* (155 էջ)

Յաւելուած ԺԳ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Բ.- *Արփիար Արփիարեանի լոնտոնեան թղթածրարը Գահիրէի մէջ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (497 էջ)

Յաւելուած ԺԴ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Գ.- *Մարդը ընդդէմ մարդու. մահափորձեր եւ սպանութիւններ հայկական օրինակով (1890-1908)*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան (169 էջ)

Յաւելուած ԺԵ.
*2008 Մարտ 1-ը ըստ* Lragir.am-*ի,* A1+-*ի եւ Հետքի (10-ամեակին առիթով)*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան (625 էջ)

Յաւելուած ԺԶ.
Հայկ Աւագեան, *Թաւշեայ Յեղափոխութիւն Հայաստանի մէջ. Ա. փուլ (13 – 23 Ապրիլ 2018)* (32 էջ)

Յաւելուած ԺԷ.
Հայկ Աւագեան, *Թաւշեայ Յեղափոխութիւն Հայաստանի մէջ. Բ. փուլ (25 Ապրիլ – 1 Մայիս 2018)* (58 էջ)

Յաւելուած ԺԸ.
*Արմենակ Շահ-Մուրատեան. Ժամանակագրութիւն, յօդուածներ, երգացանկ,* Պատրաստեց՝ Հայկ Աւագեան (580 էջ)